ՍՈԿՐԱՏԱՅ ՍՔՈԼԱՍՏԻԿՈՍԻ

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԵՒ

ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ

ՍՐԲՈՅՆ ՍԻՂԲԵՍՏՐՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ

ՀՌՈՎՄԱՅ

# ΣΩΚΡΑΤΟΥΣ ΣΧΟΛΑΣΤΙΚΟΥ

ΕΚΚΛΗΣΙΑΣΤΙΚΗ ΙΣΤΟΡΙΑ

ΚΑΙ

# ΒΙΟΣ ΤΟΥ ΜΑΚΑΡΙΟΥ ΣΙΛΒΕΣΤΡΟΥ

ΕΠΙΣΚΟΠΟΥ ΡΩΜΗΣ ΤΗΣ ΜΕΓΑΛΗΣ·

Ter Movsisean, Mesrop
Sokratoy Skolastikosi Ekeghetsaka



# ՍՈԿՐԱՏԱՅ ՍՔՈԼԱՍՏԻԿՈՍԻ

# ԵԿԵՂԵՑԱԿԱՆ ՊԱՏՄՈՒԹԻՒՆ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ

**ՓԻԼՈՆ ՏԻՐԱԿԱՑԻ**

ԵՒ

## ՊԱՏՄՈՒԹԻՒՆ ՎԱՐՈՒՑ
## ՍՐԲՈՅՆ ՍԻՂԲԵՍՏՐՈՍԻ ԵՊԻՍԿՈՊՈՍԻՆ
## ՀՌՈՎՄԱՅ

ԹԱՐԳՄԱՆԵԱԼ

**ԱՐՔԱՅՈՒՆ ԳՐԻԳՈՐԻ ԶՈՐԱՓՈՐԵՑՒՈՅ**

ՀԱՏՈՐ Ա.

*Աշխատասիրութեամբ*

ՄԵՍՐՈՊ Վ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ

*Միաբանի Ս. Էջմիածնի*

ՀՐԱՄԱՆԱՒ

**Տ. Տ. ՄԿՐՏՉԻ Ա.**

ՎԵՀԱՓԱՌ ԵՒ ՍՐԲԱԶՆԱԳՈՅՆ ԿԱԹՈՒՂԻԿՈՍԻ

**ԱՄԵՆԱՅՆ ՀԱՅՈՑ**

ՎԱՂԱՐՇԱՊԱՏ
ՏՊԱՐԱՆ ՄԱՅՐ ԱԹՈՌՈՅ Ս. ԷՋՄԻԱԾՆԻ
1897




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## Ա.

Սոկրատ յոյն պատմչի եկեղեցական պատմութիւնը մեր գրականութեան մէջ յայտնի է երկու օրինակով՝ Մեծ և Փոքր Սոկրատ անունով։ Առաջին անգամ երկուսն ի միասին տպագրութեամբ ի լոյս ածելով, լրացնում ենք մի պակասութիւն որ խիստ զգալի էր։ Այդ պատմութիւնը Յունաց չորրորդ դարու գրականութեան բաւական յայտնի արդիւնքներից մէկն է, միջին դարում թարգմանուելով հայերէն լեզուով դարձել էր և մեր նախնիքների համար հեղինակաւոր և գործածական գիրք, մեզ հասած համեմատաբար բազմաթիւ ձեռագիր ընդօրինակութիւնները լաւ ապացոյց են այդ բանի։ Պէտք է յուսալ որ նա ներկայումս էլ կունենայ բազմաթիւ հետաքրքրուող անձինք, եթէ դեռ վառ է ճշմարիտ գրասիրութիւնը, եթէ դեռ կան մարդիկ որ սիրում են հետամուտ լինել անցած դարերի պատմական մեծ դէպքերին։ Սոկրատը ունի առանձին նշանակութիւն և Հայոց գրականութեան համար. Նրա պատմութեան հետ վերջերս կապուեց Հայոց պատմութեան հայր Մովսէս Խորենացու գիրքը. յայտնեցին և փորձեցին հաստատել այն միտքը, որ Մովսէս Խորենացին




# ՅԱՌԱՋԱԲԱՆ

## Ա․

Սոկրատ յոյն պատմչի եկեղեցական պատմութիւնը մեր գրականութեան մէջ յայտնի է երկու օրինակով՝ Մեծ և Փոքր Սոկրատ անունով։ Առաջին անգամ երկուսն ի միասին տպագրութեամբ ի լոյս ածելով, լրացնում ենք մի պակասութիւն որ խիստ զգալի էր։ Այդ պատմութիւնը Յունաց չորրորդ դարու գրականութեան բաւական յայտնի արդիւնքներից մէկն է, միջին դարում թարգմանուելով հայերէն լեզուով դարձել էր և մեր նախնիքների համար հեղինակաւոր և գործածական գիրք, մեզ հասած համեմատաբար բազմաթիւ ձեռագիր ընդօրինակութիւնները լաւ ապացոյց են այդ բանի։ Պէտք է յուսալ որ նա ներկայումս էլ կունենայ բազմաթիւ հետաքրքրուող անձինք, եթէ դեռ վառ է ճըշմարիտ գրասիրութիւնը, եթէ դեռ կան մարդիկ որ սիրում են հետամուտ լինել անցած դարերի պատմական մեծ դէպքերին։ Սոկրատը ունի առանձին նշանակութիւն և Հայոց գրականութեան համար․ Նրա պատմութեան հետ վերջերս կապուեց Հայոց պատմութեան հայր Մովսէս Խորենացու գիրքը․ յայտնեցին և փորձեցին հաստատել այն միտքը, որ Մովսէս Խորենացին

օգտուել է Մոկրատի պատմութեան հայերէն թարգմանութիւնից՝ ութերորդ դարում կատարուած, հետևապէս Խորենացին այդ դարուց առաջ չէ գրել։ Յառաջաբանիս մէջ մանրամասն և բազմակողմանի կերպով կաշխատենք պարզաբանել այդ խիստ կարևոր խնդիրը։

Արդէն երեք տարի է անցել այն օրից, երբ առաջին անգամ «Արարատ[1]» ամսաթերթի միջոցաւ յայտարարեցինք մեր մտադրութիւնը՝ հրատարակել Մոկրատի պատմութիւնը։ 1894 թ. Ապրիլի 15-ն Ազգիս Վեհափառ Հայրապետի բարեհաճ թոյլտուութեամբ սկսուեց պատրաստ ձեռագրիս տպագրութիւնը։ Հանգամանքներ որոնց յիշատակութիւնը մեզ հեռուն կըտանէր, ձգձգեցին և մինչև այսօր ուշացրին շատերից[2] անհամբերութեամբ սպասած գրքի լոյս տեսնելը, և որ գլխաւորն է նոյն այդ հանգամանքները թողին իրանց հետքերը գրքի ներքինի և արտաքինի վրայ։ Ծանր երկարատև աշխատութիւն և համբերութիւն պահանջող մի գործ էր մեր սկսածը, ոչ համապատասխան նոր սկսողի և անփորձ անձի ույժերին. Նրա մէջ կան թերութիւններ որ կարելի էր չանել և որը մեզ համար ամենից շատ է զգալի։

Աշխատանքի ժամանակ շատերն են ինձ օգնել համեմատութեան և սրբագրութեան մէջ, անուանական ցանկը կազմելիս՝ մանաւանդ Բագրատ աբեղան, Արսէն վարդապետը, Պ. Բագրատ Մատթէոսեանը. Միաբան Գալուստ Տէր Մկրտչեանը իւր հաղորդած մի քանի տեղեկութիւններով և ուրիշները. բոլորին հրա-

1. Արարատ 1893. Յունուար. էջ 61.

2. Հանդէս Ամսօրեայ՝ 1896 Խալաթեան՝ Армянскій эпосъ. էջ 23. Կարիէր Հանդ. Ամ. 1893 էջ 184.

պարական շնորհակալութիւնս եմ յայտնում։ Սրբագրութիւնը ինքս եմ կատարել, անվարժ լինելով թոյլ եմ տուել սխալներ, որոնց ցանկը կայ գրքի վերջում. խնդրում եմ գործածողներին գիրքը գործածելուց առաջ բարի լինել համեմատել բնագրի հետ։

## Բ.

Գրքիս տպագրութեան համար գործ եմ դրել Մեծ Սոկրատ՝ Ձեռ. Մայր Աթոռի թիւ 1682 (ըստ Կարինեանի ցուցակի թիւ 1640), Փոքր Սոկրատ Ձեռ. Մայր Աթոռի թիւ 1670 (ըստ Կարինեանի ցուցակի թիւ 1628)։ Առաջինից միայն մի օրինակ ունէի տրամադրութեանս տակ, երկրորդից եօթ օրինակ։ Մեծ Սոկրատը որ բառացի ստրկական թարգմանութիւն է յունարէն բնագրից, ամբողջութեամբ բաղդատել եմ յունարէն հրատարակած երկու յայտնի հրատարակութիւնների հետ՝ Ռոբերտ Հուսեյի և Վիլիամ Բրայտի[1]։ Համեմատութեամբ սրբագրել եմ մեր ձեռագրի սխալ-

1. ա. Socratis scholastici ecclesiastica historia, ed. Robertus Hussey, S. T. B. Oxonii, 1853. Այս հրատարակութիւնը բաղկացած է երեք հատորից, երկու հատորում բնագիրն է լատիներէն թարգմանութեամբ և ընթերցուածների տարբերութեամբ, իսկ ամբողջ երրորդ հատորը պարունակում է լատիներէն լեզուով ծանօթութիւններ, որ անփոփոխ կերպով արտատպուած է Վալեսիոսի և Ռեդինգի հրատարակութիւններից։

բ. Socrates Ecclesiastical history according to the text of Hussey by William Bright. Oxford, 1893. Սա ունի միայն յունարէն բնագիրը և գեղեցիկ յառաջաբան անգլիերէն լեզուով։ Սա անփոփոխ արտատպութիւն է առաջինից։

ները, որոշել բնագրի և թարգմանութեան մէջ եղած տարբերութիւնները, իսկ Հուսեյի երրորդ հատորից վերցրել եմ ընտրութեամբ կարևոր ծանօթութիւնները կամ ամբողջովին թարգմանելով, կամ կրճատելով։ Այնքան պարզ է՝ թէ ինչ կարող եմ փոխառած լինել, որ աւելորդ համարեցի ամեն անգամ յիշատակել աղբիւրը։

Երկու տարի առաջ՝ 1894 ամառը Վիեննայի Մխիթարեանների մօտ տեսայ պ. Նորայր Բիւզանդի Փոքր Սոկրատի պատրաստի ձեռագրի ընդօրինակութիւնը՝ գեղեցիկ ծանօթութիւններով և մեկնութիւններով. Նամակով դիմեցի նրան և շնորհակալութեամբ թոյլտուութիւն ստացայ օգտուել այդ ձեռագրից։ Մինչև նամակի պատասխանը ստանալը, արդէն հասել էր արտասահմանից վերադառնալուս ժամանակը, բարեբախտաբար Վիեննայի յարգելի միաբանութիւնը յօժարութեամբ թոյլ տուեց ձեռագիրը հետս բերել Ս. Էջմիածին և այնտեղ օգտուել։ Այդ օրինակից ընդօրինակել եմ բաւական թուով ծանօթիւններ Փոքր Սոկրատի համար, որոնք վերաբերւում են գլխաւորապէս Հայոց գրականութեան[1]։ Պ. Ն. Բիւզանդը գրում է գրաբար, ամեն անգամ նրա ծանօթութիւնը ընդօրինակել եմ անփոփոխ կերպով, յիշել եմ անունը, և չակերտներով որոշել վերցրածս։

Ընդարձակն ու համառօտ, կամ Մեծ ու Փոքր Սոկրատը միաժամանակ՝ համապատասխան հատուածները ըստ բովանդակութեան իրար հանդէպ մի երեսի վրայ տեղաւորելով, յոյս ունենք մեծ դիւրութիւն տուած

1. Մի քանի ծանօթութիւններ մտցրել եմ Փոքր Սոկրատի արտատպութեան մէջ, որովհետև Մեծի համապատասխան մասը արդէն տպուած էր։

ըլինենք այդ երկու նոյն աղբիւրից բղխող, բայց շատ տարբեր բնագրերը բաղդատողներին, թէև այդ ձևը տպագրական մեծամեծ անյարմարութիւններ ունէր, միացած մեկնողական և ձեռագրական ծանօթութիւնների հետ:

Վերև տեսացինք որ գրքի տպագրութեան ուշանալը թողել է իւր հետքերը. ժամանակի ընթացքում մի քանի անգամ փոխուել են ծանօթութեան տառերը տպարանի վարչութեան կողմից. իսկ բնագրի տպուելու ձևի մէջ ես եմ փոփոխութիւն մտցրել: Սկզբում ընդարձակ օրինակը արտատպում էին Ձեռագրից ամենայն հաւատարմութեամբ. Ձեռագրի կէտադրութեամբ, շեշտերով, տառասխալներով, բայց վերջը համոզուեցի որ տարկէական յունաբան թարգմանութիւնը եթէ կէտադրութեամբ չորոշուի, շատերի համար աւելի անհասկանալի կլինի, վճռեցի հետևել յունարէն բնագրի կէտադրութեանը, քանի որ Ձեռագրինը ոչ մի կանոնի չէ ենթարկւում: Չնայած դրան այնուամենայնիւ Մեծ Սոկրատի յունաբան բնագիրը շատ անհասկանելի կամ դժուար հասկանալի հատուածներ ունի, որ միայն յունարէնի օգնութեամբ կհասկացուի. այս ուղղութեամբ աշխատել եմ ծանօթութիւններով փոքր թեթևութիւն տալ: Անհամեմատ պարզ և դիւրահասկանալի է Փոքր Սոկրատը, որը արտատպեցի առանձին հատորիկով իբրև դիւրին ընթեռնելի գիրք:

## Գ.

Մեծ և Փոքր անուններով Սոկրատի կրկնակի օրինակի որոշումն գտնում ենք առաջին անգամ տասնչորրորդ դարու սկզբում ապրող և գրող Այրիվանեցու

պատմութեան[1] մէջ՝ «Սոկրատիս Մեծ և Փոքր»։ Իսկ այնուհետև երկար ժամանակ մեր գրողների մօտ յայտնի է եղել միայն Փոքր Սոկրատը։ Աննկատելի է մնացել նոյն իսկ Մադրասայում հրատարակուող Ազդարար թերթի[2] թէև համառօտ բայց շատ ուղիղ նկատողութիւնը։ Թերթի հրատարակիչ տէր Յովհան քահանան տպել է մի հետաքրքիր ցուցակ նախնեաց հեղինակած և թարգմանած գրեաց[3]։ Ցուցակի մէջ յիշուած են 41 ազգային և 18 թարգմանուած պատմագիր։ Թարգմանականի ցանկը ունի հետևեալ կարգը. Յովսեփոս Երանոս, Եւսեբիոս, Աթանաս Հայրապետ, Եպիփան Կիպրացի, Պատմութիւնք Աղեքսեան վկայից և «Սոկրատ սկսեալ ի Կոստանդիանոսէ մինչև ցմահն Թէոդոսի փոքու հատորս Է և զայս ես յունաց լեզուէ թարգմանեցաւ զոր համառօտեցաւ վասն խնդրոյ Ներսիսի իշխանին ի ժամանակս կաթուղիկոսութեան Անաստասայ, և այժմ զերկուսն միայն երևի զոր ասեն Մեծ Սոկրատ, և Փոքր Սոկրատ, զայս Է գիրքն ես ի թարգմանչացն եղև թարգմանեցեալ»։ Նկատողութեանս գրողը բացի այն որ առաջեր ձեռագրեր է ունեցել, օգտուել է նաև Ասողիկի պատմութեան

1. Տես Մխիթ. Այրիվանեցի Ձեռ. Ս. Էջմիածնի Թիւ 241(9 ) Թղ. 260.

2. Ազդարար 1795 էջ 188—192. Հմտ. Գր. վ. Գալէմքարեան՝ պատմ. Հայ լրագր. Վիեննա 1893. էջ 205—210.

3. Գալէմք. յ. ա. «Գրեանց ցանկը անշուշտ գրողն ինքնին կազմած է առաջեր ձեռագիրներ ունենալով» 1 Ծն. և յ. ա. «Հ. Գ. Զարբ. իւր Հայկ. Հ. Դ. (Վեն. 1886) մէջ յիշատակած է այս գործը էջ 278, 446, 485 ևլն.» «Ցուցակագիրն Հ. Զամչեանի պատմութենէն չէ առած այս ցուցակը»։

մէջ եղած տեղեկութիւնից։ Մենք յետոյ ցոյց կտանք որ Տէր Շմաւոնը Մեծ Սոկրատի այն Ձեռագիրն է ունեցել, որ բարեբախտաբար պահուել է։

Ամենահին յիշատակութիւնը Սոկրատի անուան Ասողիկինն է տասներորդ դարում։ Նա թուելով յայտնի պատմագրաց շարքը. Աստուածաշունչ գիրք, Յովսեփոս, «Եւսեբիոս Պամփիլեայ[1] աւարտաբանէ ի քսանամեակն Կոստանդիանոսի Թագաւորի Մեծի։ Եւ զկնի նորա Սոկրատէս։ Նաև այլ ևս անթիւք են ի մէջ Յունաց Պատմագիրք. բայց սոքա երկուքս որպէս լուսաւորք մեծամեծ քան զաստեղս՝ առաւելան պայծառութեամբ»։ Ասողիկը Սոկրատին Եւսեբիոս Կեսարացուն հաւասարակից, բոլոր յոյն պատմիչների ամենամեծ և լուսաւոր աստղն է համարում. նա յայտնելով թէ Եւսեբիոսը գրել հասցրել է իւր պատմութիւնը մինչև Կոստանդիանոսի Թագաւորութեան 20-երորդ տարին կցում է անմիջապէս՝ «և զկնի նորա Սոկրատէս», տեղիք է տալիս ընդունելու, որ ճանաչում է միայն բուն Մեծ Սոկրատը, որ դեռ չէր միացել Սեղբեստրոսի վարքի հետ, որովհետև նրանից յետոյ յիշատակող պատմագիրները բացի Սամուէլ Անեցուց և Միքայէլ Ասորուց գիտեն միայն Փոքր Սոկրատին։ Սամուէլ Անեցին իւր պատմութեան սկիզբը վերցրել է Ասողկից (գլ. Ա էջ 5—7) մի քանի փոփոխութիւններ և յաւելուածներ անելով, ուստի և նրա հետևեալ տեղեկութիւնը՝ «առ որս երևելագոյն քան զլոյսս եղև Եւսեբի երանելի ի մէջ առաջնոյն և վերջնոյն. և զհետ նորա Սոկրատէս պատմագիր այլօք բազ-

1. Ստեփ. Տար. Ասողկան պատմութիւն տիեզերական հրատ. Ստ. Մալխասեան. Ս. Պետերբուրգ 1885. էջ 6.

մօք»,[1] առանձին նշանակութիւն չունի քանի որ բուն աղբիւրը առաջներս ունենք։

Միքայել Ասորին յիշում է երկու տեղ՝ գրքի սկզբում պատմագիրների անունները տալիս. «Զոսիմոս և Սոկրատ և Թէոդորիտոս հերետիկոս, ի Կոստանդիանոսէ սկսեալ մինչ ի Թէոդոս Փոքրին գրեցին[2]», ուրեմն նա Ասողկից անկախ գիտէ Սոկրատի պատմութեան ուղիղ բովանդակութիւնը, առանց որևէ յաւելուածի։ Սակայն նրա երկրորդ յիշատակութիւնը մեզ կարող էր ենթադրել տալ որ Մ. Ասորին օգտուել է իսկապէս Փոքր Սոկրատից։ Նա Կոստանդնի հօր Կոստասի մասին պատմում է. «Յովհաննէս Ասիացին ասէ. թէ հայր Կոստանդիանոսի դարձաւ յաստուածպաշտութիւն, և Սեղբեստրոս զհայրն բժշկեաց ի բորոտութենէ. և Պետրոս և Պաւղոս երևեալ կոստայ՝ խրատեցին զնա կոչել զՍեղբեստրոս մկրտել զնա։ Այսմ վկայէ Սոկրատ Հռովմայեցի[3]»։ Այստեղ նկարագրած պատմութիւնը կայ Սեղբեստրոսի վարքի մէջ միայն այն տարբերութեամբ, որ այն ինչ Յովհաննէս Ասիացին Կոստասին է վերագրում, Սեղբեստրոսի վարքի հեղինակը նրա որդի Կոստանդին մեծի մասին է պատմում։ Հարց է ծագում, Միքայէլ Ասորին իւր պատմած դէպքի աղբիւրը արդէն յիշելով, ինչ կարիք ունէր անմիջապէս յետոյ երկրորդ պատմչի անունն ևս տալ, որը դէպքը բաւական տարբեր է պատմում. և երկրորդ

1. Սամուէլ Անեցի Հրատ. Տէր Միք. Վաղարշապատ 1895 թ. էջ 2, 3։

2. Միքայել Ասորի Հրատ. Երուսաղէմի 1871 թ. էջ 2.

3. Միք. Ասորի էջ 126. Տես և Սոկր. Վարք Սեղբեստրոսի էջ 737. ծն. 1։

քանի որ առաջի յիշատակութիւնից երևում է որ միայն Մեծ Սոկրատին գիտէ, ինչպէ՞ս է նա Սեղբեստրոսի վարքը Սոկրատի գործ համարել, ասորերէն բնագիրը հէշտ կլուծէր խնդիրը, որի հետ ծանօթ չենք։ Այդ անհեթեթութիւնը կվերանայ սակայն եթէ «այսմ վկայէ Սոկրատ Հռովմայեցի[1]» սկզբնական պատմութեան հետ կապ չունեցող բառերը, իբրև յաւելուած դուրս հանենք. Նրա աւելացնողը Միքայելի պատմութեան թարգման Վարդանն է ժամանակակից Կիրակոս Գանձակեցու, որին միայն Փոքր Սոկրատն է յայտնի։

Կիր. Գանձակեցու վկայութիւնը այս է. «Եւ[2] ապա մեծիմաստն Սոկրատէս կորովակի բանիւք, սկսեալ ի սրբոյն Սեղբեստրոսէ Հռոմայ հայրապետէն և ի Կոստանդիանոսէ մեծէ, և անդ մինչև յաւուրս Թէոդոսի փոքու. զարարս և զգործս իւրաքանչիւր թագաւորաց և եպիսկոպոսաց՝ զառաքինեաց և վատթարաց, և զժողովելոց բազմաց եղելոց, պիտանեաց և խոտանեաց ընդարձակ և յաճախ պատմութեամբ աւանդէ»։ Սա արդէն Փոքր Սոկրատին գիտէ և կարդացել է։ Մխիթար Այրիվանեցուց յետոյ, որը սակայն երկու բառով է վերջացրել իւր ասելիքը, փոքր ի շատէ կարևոր տեղեկութիւնն այս է, որով կարելի է յայտնի կերպով մատնանիշ անել թէ երբ են մեր պատմագիր-

1. Հ. Բ. Սարգսեան՝ Տեսութիւն Սեղբեստրոսի Պատմ. և Մ. Խորէն. աղբերաց, Վենետիկ 1893 Թ. էջ Թ յիշում է որ Միք. Ասորին առել է Ասորի Հեղինակից, և չէ բացատրում թէ Սոկրատի անունն ինչու համար է աւելցրած.

2. Կիր. Գանձակ. Պատ. Հրատ. Վենետիկ 1865 Թ էջ 2. բայց մենք վերցնում ենք Էջմիածնի Ձեռ. Թիւ 1670 իբրև աւելի լաւ օրինակի.

ները գործ ածել Փոքր Սոկրատին։ Սոկրատի անունը կայ յիշուած հներից նաև Մխիթար Անեցու մօտ[1]։

Նորերին մինչև ամենավերջին ժամանակներս միայն մի թարգմանութիւն է ծանօթ եղել։ Չամչեանը փոքրը ձեռին ունենալով, բաղդատել է յունարէն բնագրի հետ և գտնելով ակնյայտնի տարբերութիւններ, եզրակացրել է. որ կամ խանգարուած օրինակից է թարգմանուել կամ յետոյ է խանգարուել[2]։ Նոր Հայկ. բառգիրք կազմողները կրկնում են մօտաւորապէս Չամչեանի ասածները[3], հ. Գ. Զարբհանալեանը իւր 1886 թ. երկրորդ տպագրութեամբ լոյս տեսած Պատմ. Հ. Մատ. դեռ ոչինչ չէ ասում Սոկրատի կրկնակի օրինակների գոյութեան մասին, իսկ մի քանի տարի ուշ լոյս հանած Պատ. Հայ. Թարգմ. Մատ. մէջ որոշում է երկուսը միմեանցից, այն էլ Երուսաղէմի Մեծ Սոկրատ Ձեռագրից մի քանի հատուածների արտագրութիւն ստանալուց յետոյ[4]։

Ամփոփելով ի մի մեր հաւաքած տեղեկութիւնները կարող ենք եզրափակել. Մեծ Սոկրատը սկսւում է յիշուել սկսած տասներորդ դարից. յիշում են Ասողիկ,

1. Մխիթար անեցի, Հրատ. Ք. Պատկանեանի. Ս. Պետերբուրգ 1879. էջ 15.

2. Չամչեան. Պատմ. Հայոց Հ. Ա. էջ 27. «Թուի թէ այն օրինակ յորմէ թարգմանեալ է. խանգարեալ էր և կամ զկնի անզգոյշ անձանց խանգարեալ իցէ. զի բազում տեղիս օտարաձայն տեսանի յուղիղ բնագրէ յունաց».

3. Նոր բառգ. Հայկ. լեզ. Վենետ. 1836. էջ 19. «կէս մի հարթ, և կէս մի անհարթ ոճով. թող զբազմապատիկ սխալանս գրչաց».

4. Հ. Գ. Զարբ. Հայկական թարգմանութիւնք Նախնեաց Վենետիկ 1889 էջ 696.

ԺԱ.

Սամուէլ Անեցի և Միքայէլ Ասորի՝ Փոքր Սոկրատը տասներկուերորդ դարից՝ Կիրակոս Գանձակեցի՝ Միքայէլ Ասորու թարգմանիչ Վարդանը և մի քանի նորեր. և վերջապէս երկուսը միասին ճանաչում են միայն տասը-նչորրորդ դարում Մխիթար Այրիվանեցին և շատ աւելի ուշ Ազդարար Թերթի հրատարակիչը։ Մեծ Սոկրատից կամ նման աղբիւրից օգտուել է Միքայել Ասորին (տես Սոկր. էջ 125, 163, 383) Փոքրից Վարդան պատմագիրը (տես Սոկր. էջ 335.)

Դ.

Ուխտանէս եպիսկոպոսը իւր պատմութեան Ա. գլ. հա և հբ պատմում է Կոստանդին Մեծի քրիստոնէանալը Սեղբեստրոս հայրապետի ձեռքով և Հեղինէ թագուհու Երուսաղէմ գնալը Փրկչի խաչը գտնելու համար։ Հեղինէի Երուսաղէմ գնալը յիշուած է Սոկրատի Պատմ. մէջ ևս, բայց ամենաթեթև բաղդատութիւնը[1] բաւական է ցոյց տալու, որ այդ չի եղել Ուխտանէսի աղբիւրը, մնում է Կոստանդնի դարձի պատմութիւնը։ Մանրամասնութիւնները և նոյն իսկ ամբողջ պատմուածքը նման է ընդարձակ Սեղբեստրոսի վարքին. բայց այնու ամենայնիւ տասներորդ դարում գրող Ուխտանէսը չէ ճանաչել այդ թարգմանութիւնը։ Յայսմաւուրքի մէջ Քաղոց ԻԵ և Յունուարի Բ ունինք. վարք եւ յիշատակ սրբոյն Սեղբեստրոսի Հռոմայ հայրապետին՝ որի շարունակութիւնը կազմում է առանձին վերնագրով որոշած «Հաւատալն ի Քրիստոս Կոստանդիանոսի թագաւորին»։

1. Տես Սոկր. Ա. էջ 17.

ԺԲ.

Ամենահին Յայսմաւուրքը Յունաց Բարսեղ Բ. կայսեր անունով 975—984 թուի յօրինածն է համարւում, որի մէջ Յունուարի 2 է կարգուած Ս. Սեղբեստրոսի տօնը, սակայն մեծ տարբերութիւն կայ այդ վարքի և մեր Յայսմաւուրքի մէջ եղածի[1]. Վատիկանի մէջ կայ տասներորդ դարում գրած մի Յայսմաւուրք ուր «բաց ի մկրտութեան յիշատակութենէն, կը պարունակուեն նոյնպէս արիողական կախարդաց մարոկեան բժշկաց, և մանկանց կոտորածի մանրամասնութիւնքը[2]»: Հետևապէս մեր Յայսմաւուրքի հատուածը երկրորդ խմբագրութիւնից է թարգմանուած, այն էլ անպատճառ տասներորդ դարուց առաջ կատարուած, այլապէս Ուխտանէսը չէր կարող օգտուել:

| Ուխտանէս[3] | Յայսմաւուրք |
| --- | --- |
| Թագաւորն Հռոմայ Կոստանդիանոս կռապաշտ էր և հրապուրեալ ի Մաքսիմիանէ կնոջէն իւրմէ՝[4] որ էր Թոռն Դիոկղետիանոսի կայսեր. սա հալածէր քրիստոնեայսն . . . . իսկ երանելին առեալ զաշակերտսն փախեաւ ի լեառնն և էր | Թագաւորն Հռոմոց Կոստանդիանոս կռապաշտ էր և հրապուրեալ ի Մաքսիմինդեայ կնոջէն իւրմէ (որ էր դուստր Մաքսեմիանոսի Թագաւորի) և Թոռն Դիոկղետիանոսի կայսեր . . . . սուրբն Սեղբեստրոս . . . . առեալ զաշա- |

1. Համեմատիր Հ. Բ. Սարգ. յ. տ. էջ ԻԲ.

2. Հ. Բ. Սարգ. յ. տ.

3. Ուխտանէս Հրատ. Ս. Էջմիածնի 1871· էջ 102—103:

4. Խոր. և Փոքր Սոկրատից անկախ բայց միանգամայն նոյն ձևով է թարգմանում յոյն բնագիրը ուշադրութեան արժանի է:

տոյդ ի Թագաւորի։

Եւ եղև բորոտութիւն Կոստանդիանոսի Թագաւորին իբրև տապաստ և բժիշկք ամենեւին ոչ կարացին բժշկել։

Ասացին աղանդաւորքն, եթէ անհնարին է քեզ բժշկել, բայց միայն եթէ անարատ մանկունք ժողովեսցես և արեամբ նոցա լցցին զաւազան և մինչդեռ ջերմ է արիւն մտցես ի նա մերկ յաւազան և լուայցես արեամբքն . . . .

և հեծեալ Թագաւորին երթայր ի Կապետողւոյն տաճար կռոցն։

կելւան իւր փախեաւ ի լեառն և էր ի Թագաւորի։

Եւ եղև բորոտութիւն Կոստանդիանոսի որպէս տապաստ և ամենեւին ոչ կարէին բժշկել զնա բազում բժիշկք։

Եւ աղանդաւորք ասացին թէ անհնարին է քեզ (ողջանալ) և բժշկել (ի յայդ ցաւոյդ), բայց թէ ժողովես (հազար մանկունս անմեղս) և նոցին դու յաւազանս . . . և լուացես ջերմ արեամբ աղայոցն և ապա ողջանաս . . . .

. . . և ելեալ Թագաւորին երթայր ի Կապետոլիոն ի տաճար կռոցն։

Ինչպէս տեսնում ենք Ուխտանէսը բառացի արտագրել է Յայսմաւուրքից։ Յայսմաւուրքի վարքը աւելի նման է Մեծ Սոկրատին, բաց յայտնի դարձուածներ յիշեցնում են Փոքր Սոկրատին, միայն վստահօրէն կարելի է ասել ոչ մէկից է առնուած ոչ միւսից։ Հ. Սարգսեանը յառաջաբանի մէջ աւելորդ է համարել բաղդատել յունարէն Յայսմաւուրքի հետ, իսկ մենք դժբախտաբար մեր ձեռին չունէինք բնագիրը։ Առ այժմ բաւականանում ենք հարցը միայն շօշափելով, իսկ Խորենացու համեմատութեան մէջ կրկին կդառնանք նոյն խնդրին

ցոյց տալու այդ աղբիւրների մէջ եղած առնչութիւնն ու կապը։

## Ե.

Ինչպէս Սոկրատի հայերէն թարգմանութիւնը մինչև այժմ առանձին ուշադրութեան չէր արժանացել, նրա ձեռագիր օրինակների ծանօթութիւնը և պատահական համառօտ նկատողութիւններ են եղել «Արշալոյս Արարատեանի» «Սիօն ամսաթերթի» և «Արարատի» մէջ։ Նոյն իսկ Բ. Սարգսեանը իւր ուսումնասիրութեան մէջ բաւականացել է միայն Վենետիկի մատենադարանի չորս օրինակ Սոկրատի մասին գրչութեան տարէթուից զատ ուրիշ տեղեկութիւն չտալ։ Ահա այս պատճառով մենք քիչ երկար կանգ կառնենք նրանց նկարագրութեան վրայ։

Ընդարձակ կամ Մեծ Սոկրատից յայտնի են երկու օրինակ. Մայր Աթոռիս մատենադարանինը և Երուսաղէմում Հայոց Ս. Յակոբեանց վանքում եղած օրինակը։ Երբ 1893 թ. իբրև հրաւիրակ Տ. Տ. Մկրտիչ Ա. Կաթուղիկոսի Երուսաղէմ գնացի, հետս ունէի մեր մատենադարանի ձեռագրի ընդօրինակութիւնը, որը ցանկանում էի համեմատել նրանց օրինակի հետ, ինչքան կներէր ինձ այդտեղ մնալիք կարճ ժամանակս։ Մատենադարանապետ Գեր. Սահակ եպիսկոպոսը բարի եղաւ սիրայօժարութեամբ թոյլ տալ մատենադարանում ծանօթանալ իրանց ձեռագրերի հետ, յայտնեց միևնոյն ժամանակ որ Սոկրատի ընդարձակ օրինակը մատենադարանում չէ պահւում, այլ պատրիարքական առանձին գրատան մէջ և քանի ժամանակից ի վեր չէ երևում։

Վեհափառ Հայրապետի Մայր Աթոռս ժամանելուց մի քանի ամիս անց, նոյն եպիսկոպոսը նամակով դիմեց Վեհին և խնդրեց, որ մեր վանքի ձեռագրի ընդօրինակութիւնը Երուսաղէմ ուղարկուի որպէսզի իրանց ունեցած օրինակի բաղդատութեամբ այնտեղ ի լոյս ածուի, արդէն կարգադրութիւն էր եղած գրքի տպագրութեան համար, որ և հաղորդուեց։ Բայց երբ ես տեղեկացայ որ կորած ձեռագիրը նորից գտնուել է, նամակով դիմեցի սրբազանին և խնդրեցի ձեռագրի նկարագրութիւնը և մի քանի թերթի և կորած էջերի արտագրութիւն, նամակս մնաց անպատասխան. Գեր. Սահակ եպիսկոպոսը իմ երկրորդ նամակին սոյն թուի Ապրելի 2 պատասխանելով,—որի մէջ նկարագրում է իրանց երեք օրինակ ձեռագրերը,—յայտնում է որ առաջի նամակը չէ ստացուել։ Հրապարակաւ յատուկ շնորհակալութիւնս եմ յայտնում սրբազանին իւր ուղարկած նկարագրութեան համար։ Աւելի ուշ 1894 թ. Վիեննայում Հայր Յակոբոս Տաշեանից ստացայ մի քանի շատ կարևոր տեղեկութիւններ նոյն այդ ձեռագրի մասին։ Ձեռագիրը բերուել է Հնդկաստանից, նուիրակ Ներսէս եպիսկոպոսի ձեռքով՝ նուիրուած Տ. Յովհաննէս քահանայ Խաչիկեանից 1868 թուին[1]։ Գեր. Սա-

1. Արշալոյս Արարատեան 1868 (23 Նոյեմբ.) թ. 845. «Եկեղեցական ի Կալկաթայէ կըխաւրէ ձեռագիրներ՝ ազգային հաստատութեան մը տալու և որ են այժմ յԵրուսաղէմ, ի միջի այլոց պատմութիւն Փիլոնի Տիրակացւոյ որոյ սկսուած քանից եդաւ ի սորին ի տեղեկութիւն հնասիրաց. Մատեանս այս բամբակաթուղթ է հնութենէ ժամանակին թուի փտեալ, սակայն անարատ ունի զգրեալսն». Ապա տալիս է գրքի յիշատակարանը և սկզբից մի մեծ հատուած (տես Սոկր. էջ 1—3)։

Հայ եպիսկոպոսի նկարագրութիւնն է[1]. «Բուն եկեղեցական պատմութիւնը 29 տետրերէ կբաղկանայ. մէկ մի տետրակ ութն թերթ կամ 16 էջ. բայց մէկ երկու տետրակ, օրինակի համար ԺԶ տետրը եօթն թերթ ունի, թերեւս մէջէմէջ թերթեր պակաս լինի։ Մեծութիւն, 26×17 սանտ. գրութիւն, միասիւն 10,5×12 սանտ. տողք. 24. գիր բոլորգիր, բաւական մաքուր՝ ի լուսանցս ուրեք ուրեք նոյն գրչով մոռացուածներու յաւելուած. Նիւթ, թուղթ անողորկ և անմաքուր. կազմ չունի, ցրուած տետր առտետր երբեմն թղթատուած. Հանգամանք, խոնաւութենէ գրքին վերի կողմը բամբակոտած և պատռտած, որով շատ տեղ անընթեռնելի, նաև տեղ տեղ ցեցոտած. խորագիրք և վերնագիրք կարմրաւ. սկզբնատառք գլխոց՝ ծաղկագիր. Ժամանակ՝ անյայտ. գրիչ. Թովմաս դպիր. տեղի, տէր և ստացող կպակսին։

Սեղբեստրոսի պատմութենէն միայն երեք տետրակ կայ, վերջերը կպակսի, ուստի յիշատակարան և տարեթիւ չկան։ Միայն թղթի տեսակից, որ շատ անողորկ և անմաքուր է, նաև գրի տեսակից, կարելի է հետեցնել, թէ գրչութիւնը եղած է ԺԲ-րդ դարում[2]։

1. Սիոն ամսագիր 1869 Թ. 9. էջ 216 «Հնդկաստանէն սուրբ Աթոռոյս Թանգարանին նուիրուած գրչագիր գրեանքը. 1 Սոկրատ պատմագիր՝ առաջին թարգմանութիւն հարազատ, բոլորագիր գրեալ ի վերայ բամբակեայ հին թղթոյ, քանի մի տարի յետոյ քան զթարգմանութիւնն»։

2. Հարկաւոր ենք համարում նկատել որ Գեր. եպիսկոպոսի Ձեռ. ժամանակի որոշումը իբրև ենթադրութիւն, այդպէս էլ պէտք է ընդունել։

Գիրքը դուռ չունի, այլ անգոյն կիսախորանի մը տակ եղծուած Պ...... անունով կըսկսի այսպէս։

Ցամի վեցհազարերոր | դի երկերերորդի չորրորդի կենցա | ղում ան-ցաւորի որպէս ունի ժամանակագրութիւն սուրբ | Սոփի աւագ եկե-ղեցի ածեղերական մայրաքաղ | աքին կոստանդնուպաւլսի։

Եւ յուլթն [1] | հարիւրերորդի չորրորդի Քրիստոսի գալստեանն | եւ ի հարիւր քառասուն եւ ի չորս թուականին։ ի յինն | երրորդումն ընտիկքաղաքին։ յառաջնում ամի թագաւորութեանն եր(կր)որդ Ղեւոնի ինքնակալի Աւգոստոսի

Թարգմանեաց փիլոն Տիրակացի առաջին ձեռնարկութեամբ՝ զգիրս զայս մանաւոր ծայրաքաղ ի Սոկրատայ Եկեղեցական Պատ-մութենէն. թողեալ 2 գլուխս(ախտաւսութիւնս) եւ զթուղթս այլոց եւ զ(ճառս յաղագս նուագու)թեան քարտի եւ մագաղաթի (եղեալ յաւտարութեան)։։ 3

Այս վերին ստորիճանի կարեւոր յիշատակարանը չկայ Մայր Աթոռի Ձեռագրի մէջ, բայց Ձեռագրի միւս յիշատակարանը, Սոկրատի պատմութեան վերջը և Միղբեստրոսի վարքի սկզբում դրած, երկու ձեռագրում էլ նոյն է։

«Ցառաջ քան զութուտասն ամ ի թարգմանելոյ փիլովնի զգիրսդ զայդ՝ Սոկրատայ զԵկեղեցական պատմութիւն, թարգմանեալ էր առաւ-ասն Գրիգորի Ջորոյփորեցւոյ (Հրամանաւ) ընդ փառաւորս յիշելոյ Ներսէհի Վրաց իշխանի փեսայէն կամսարականաց, զգիրս Պատմութեան վարուց Սրբոյն Սիղբեստրոսի եպիսկոպոսին Հռովմայ. եւ կայր ի քարտիզի.

Այժմ պատշաճ համարեցաք առ նմին գրոց գրել» Երուսաղէմի Ձեռ. ունի. «Ձեռամբ Թովմայ դպրի պատ-րաստ լինելով մագաղաթին»։

Երկու յիշատակարանը միմեանց լրացնելով կատա-

1. Արշ. Արատ. «յեւթն» որ անկասկած ուղիղն է։

2. Սահակ եպ. «թող եւս», Արշ. Արատ. «թողեալ»։

• Փակագծերում դրած բառերը և բառամասերը վեր-ցրել ենք Արշ. Արատ. երեւում է Ձեռ. Հնդկաստանից բերած ժամանակ անվնաս է եղել. իսկ յետոյ Երուսաղէմի վանքում անխնամ պահուելով վնասուել է. շատ ցաւալի երեւոյթ։

բեալ ամբողջութիւն են տալիս գրքի՝ թարգմանութեան, ժամանակի, թարգմանողի և թարգմանել տուողի մասին։ Այս մասին յետոյ։ Մենք ասել էինք որ Տէր Շմաւոնի գործածած Ձեռագիրը անկորուստ է մնացել, կարծում ենք հազիւ կարելի լինի կասկածել, որ Հնդկաստանից Երուսաղէմ բերած օրինակը նոյն այդ օրինակն է։ Այդ Ձեռագրից մի փոքր հատուած կայ տպուած Հ. Զարբանալեանի Թարգմանական Մատենագրութեան մէջ, բայց դժբախտաբար մոռացել ենք մեր գիրքը տպելիս համապատասխան հատուածը բաղդատել, քանի որ ընթերցուածոց տարբերութիւնը կարող էր այս Ձեռ. մասին որոշ գաղափար տալ[1]։

Երկրորդ օրինակը Մեծ Սոկրատի Մայր Աթոռի մատենադարանինն է։ Կարինեանը շատ համառօտ է նկարագրել. «Թիւ 1628՝ Սոկրատայ պատմութիւն եկեղեցական մեծ, մեծադիր բոլորագիր գրեալ ի թղթի ի վանս Յովհաննու որ ի Կարբի։ Պարունակեն ի սմին ա. Պատմութիւն վարուց սրբոյն Սեղբեստրոսի Հռովմայ հայրապետին. բ. պատմութիւն Աղուանից ի Մովսէսէ Կաղանկատուացւոյ։ Ունի զյիշատակարան նորոգութեան[2]»։

Աւելի ընդարձակ էր «Արարատի» մէջ մեր մի յօդուածում տուած նկարագրութիւնը[3]։ Դեռ այն ժամանակ ասել ենք։ «Սա է իսկապէս Փիլոն Տիրակացու

1. Համեմ. Գ. Զարբ. Մատ. Հայկ. Թարգմ. էջ. 697 և Սոկրատ Բ. գլ. 38 էջ 186—187։

2. Կարինեան՝ Ցուցակ Ձեռ. Մայր Աթոռոյ Թիֆլիզ 1869. էջ 182։

3. Մովսէս Խոր. մէկ Նոր Աղբիւր. Արար. 1893 Թ. էջ 65։

Թարգմանածը. մի թարգմանութիւն որ լի է յունաբանութիւններով, շատ մօտ է յունական բնագրին և հակառակ Հ. Զարբհանալեանի վկայութեան[1] շատ հեռու «ընտիր լեզու» ունենալուց։ Աւելի մանրամասն քննութիւնը և ծանօթութիւնը, որով միանգամայն պարզւում են ընդարձակ և համառօտ Սոկրատների մէջ եղած յարաբերութիւնը, հաստատում են մեր յայտնած կարծիքը, թէև յօդուածի մէջ կան արդէն հերքելի կէտեր։

Մեծադիր[2] (folio) բամբակեայ ընտիր յղկած և մոմած թղթի վրայ, խոշոր պարզ և միատեսակ գրչութեամբ գրած գեղեցիկ ձեռագիրը պարունակում է.

ա. Սոկրատայ Սքոլաստիկոսի Պատմութիւն Եկեղեցական։

բ. Վարք Ս. Սիլբեստրոսի Հռովմայ եպիսկոպոսին։

1. Հ. Զարբ. յ. տ. էջ 693—698։

2. Նիւթ. Հաստ բամբակեայ յղկած թուղթ։

Կազմ՝ կաշեայ, պաճուճեալ, ունի ախ. եզերքը կարմիր ներկած, կազմուած է երկրորդ անգամ, ամուր և ճաշակով։

Հանգամանք. սկզբից, միջից և վերջից թերթեր են պակաս. գիրքը ունի լայն լուսանցք՝ թերթերից շատերի լուսանցքները դանակով կտրել են, կամ ուղղակի պատռել ըստ երևոյթին առօրեայ գործածութեան համար. Կրկին կազմողը կտրածի տեղ Չեռ. թղթի նման թուղթ է կպցրել, ծածկելով տառերի մի մասը. գործածելիս ստիպուած էի պոկել այդ աւելցրածը։

Դատարկ. երկու թերթ սկզբից և թղ. 187։

Մեծութիւն. 48×32,5 սանտ. Թուղթք, 377.

Գրութիւն. երկսիւն. 40×10,5 ս. Տողեր. 32.

Գիր. խոշոր և պարզ գրած ընտիր միջ. երկաթագիր. տառերի մէջ դեռ շատ գլխագրեր խառն են սովորական բոլորագրերի հետ.

Ի.

և գ. Մովս. Կաղ. Պատմութիւն Աղուանից։

Սոկրատի պատմութիւնը և Սիղբեստրոսի վարքը՝ գրուած են միապաղաղ, անընդհատ, առանց բաժանմունքների և գլխակարգութեանց։ Առաջինը որ բաղկացած է եւթ գրքից, ունի Ա. Բ. Գ. որոշող տառերը. իւրաքանչիւր նոր սկսող գրքի առաջի տողը գրած է խոշոր գլխագրերով։ Տեղ տեղ պարբերութիւնները կարծես առանձին կերպով որոշուած են կամ խոշոր գլխագրերով, կամ աստղանշաններով։ Յունարէն սկզբնական բնագիրը գլխակարգութիւն չէ ունեցել, յետոյ են մտցրել ինչպէս մեր մի քանի համառօտ օրինակների մէջ։ Գործածութեան դիւրութեան համար տըպագրութեան մէջ մտցրինք Յոյնի գլխակարգութիւնը, առանց նրա խորագրերի, բայց միանգամ շեղուել ենք (Ե. գլ. 6 էջ 407) բնագրից և առաջնորդուելով մեր Ձեռ. աստղանշանով՝ գլուխը ըստ այնմ ենք բաժանել, որովհետև մտքի կապն այդ էր պահանջում։

Ձեռագիրն ունի թերութիւններ. պոկուած կորած են երկու թերթ սկզբից (տես տպագ. էջ 1—10), մի թերթ երես 300 և 301 մէջ (տես տպագ. 491—495), մի ամբողջ թուղթ՝ էջ 371—372 մաքուր է թողնուած. հաւանական է սկզբնական օրինակի մէջ այդ

Լուսանցքազարդ. տեղ տեղ սև թանաքով պաճուճանքներ են նկարած, անճաշակ և կիսակատար թողած։

Ստացող. Տէր Համազասպ եպիսկոպոս առաջնորդ Յովհաննու վանուց որ ի Կարբի։

Ժամանակ. ՉԼԸ-ից յետոյ (1289)։

Տեղի. Յովհաննու վանքում ի Կարբի։

Յիշատակագրութիւն. բազմաթիւ. Վերջում կայ նորոգողի ընդարձակ յիշատակարանը ՌՃԻԵ (1676) թուին գրած։

թերթը չէ եղել և արտագրողը մաքուր թողել է թո-ղել թերթին լրացնելու յոյսով, այդպէս մնաց, է առանց լրացնելու (տես ապագ. էջ 615—619.) մի թերթ կի-սով չափ կտրուած է, էջ 387—388 այնպէս որ իւ-րաքանչիւր երեսի մի մի սիւնեակի կէս մասը չկար (տես ապագ. էջ 648—650): Երուսաղէմից խնդրել էինք թերի մասերը չստացանք, յոյն բնագրից թարգմանելով լրացրել ենք, և առանձին փակագծերով զատել ենք մեր թարգմանած մասը. բայց բարեբախտաբար էջ 1—3 կարելի եղաւ լրացնել Երուսաղէմի Ձեռագրից Արշալոյս Արարատեանի մէջ արտատպած հատուածներով:

Ձեռագիրը կրկին կազմուել և նորոգուել է 1676 թուին[1]. Կարբեցի Յովհաննէս վարդապետի վանահայ-րութեան ժամանակ և «Հոգաբարձութեամբ և օգնու-

1. Յիշատակարան նորոգողի. Թղ. 377ա. Շնորհօք և մարդասիրութեամբ ամենակալին Աստուծոյ և Սուրբ Հոգւոյն եղև նորոգումն գրոցս որ կոչի Սոկրատ և Աղուանից պատմա-գիր. ի թվին ՌՃ և ԻԵ, յերկիրս Արարատու ի գաւառս Կարբու ի գերահռչակ. հրաշափառ և աստուածաբնակ սուրբ մենաստանս Յովհաննու Վանից. ընդ հովանեաւ սուրբ Կարապետին և Կաթուղիկէին և այլ միայնեղէն սրբոցն. Ի բռնա-կալութեան Պարսից Շահ Սուլէյմանին և յիշխանութեան տանս Արարատեան Սաֆիղուլի խանին երկրորդի, ի կաթուղի-կոսութիւն Ս. Էջմիածնի Տեառն Յակոբայ և առաջնոր-դութեան սուրբ մենաստանիս Յովհաննէս վարդա-պետի Կարբեցւոյ. Հոգաբարձութեամբ և օգնութեամբ նորին եղև նորոգեալ (գ) գիրքս և աւարտեցաւ ի դրունս սուրբ Կարապետիս. Արդ օգտիք ի սմանէ յիշեցէք յաղօթս ձեր զա-ռաջնորդ Յովհաննէս րաբունապետն և զաթոռակալն զՏէր Գրիգոր վարդապետն և զխալիփայ Զաքարիայն աշխատող հնացեալ գրոցս և զիս անարժան Աթանաս դրչաս»:

թեամբ նորին»։ Աթանաս գրչի ձեռքով։ Ահա այդ քայքայուած լինելն է պատճառ որ չէ պահուած Ձեռագրի վերջում եղող օրիգինական յիշատակարանը. կորուստը աւելի զգալի է որովհետև Երուսաղէմի Ձեռագրի վերջն էլ չկայ. դրա փոխարէն մէջը բաւական թուով փոքր յիշատակարաններ կան, որոնցից երկուսը իբրև աւելի կարևոր կյիշատակենք.

ա. Թղ. 230բ. Սոկրատի պատմութեան վերջում.

«Այս պատմութիւն իմաստասիրական ոչ գոլով ի սուրբ Մնասաանիս ի վ ա ն ս Յ ո վ հ ա ն ն ո ւ, ես Տէր Հ ա մ ա զ ա ս պ բազում փափագանաւք ի խնդիր էի զի յետ իմ հասցէ ինձ ընծայ ընդ մեծամեծս ի սուրբս այս Սիոնի կաթուղիկէի....»։

բ. Թղ. 306. Աղուանից պատմութեան մէջ լուսանցքում գրած է.

«Աւաղ մեծի ալեկոծս և անմխիթար ողբոյս որ եհաս աշխս Վրաց և քրիստոնէից. զի սպանաւ Թագաւորն Գէորգէ յազգէն Նեռողայ, ոչինչ մահու պարտականս, ի սաստկի ամառայ և էր թիւն ՉԼԸ։ Եւ ահա ի մեծի վտանգի կանք։ Տէր փրկեա զմեզ»։

Այդ վանքի մէջ վանահայրութիւնը տևել է մինչև Սիմէոն և Ղուկաս կաթուղիկոսների ժամանակը անցեալ դարու վերջերում։ Այնուհետև, անխնամ հալով վանքը սկսել է քայքայուել. հաւանական է այդ ժամանակները Ձեռագիրը բերուած լինի Ս. Էջմիածին[1]։

Ձեռագիր գրել տուող Համազասպ եպիսկոպոսի

1. Երկրորդ յիշատակարան կայ գրած ՌՃԶԲ (1733) դարձեալ Յոհաննավանքում Յովհաննէս վարդապետի վանահայրութեան ժամանակ. իսկ երրորդ յիշատ. անթուական գրած է Էջմիածնում. «Յիշատակ է գիրքս այս սուրբ Էջմիածնայ»։

մասին Յով. եպիսկոպոս Շահխաթունեանը մի քանի կարեւոր տեղեկութիւն է տալիս։ Նա թւում է Յովհաննաւանքի առաջնորդներին օգուտ քաղելով Զաքարիա Սարկաւագի պատմութիւնից[1]։

«Ժա՛ Համազասպ ի թուին ՉԻԸ, յամի 1279. յաջորդէ Մամիկոնէից՝ այր փառահեղ և ահարկու՝ որ ի ժամանակի առաջնորդութեան իւրոյ փարթամացոյց զվանատունն. և ստացաւ զբազում գրեանս և յաւել ի գրանց մենաստանիս, յորոց արդէն քանիք գտանին աստ ի գրանոց աթոռոյս Էջմիածնի. որպիսի են մի հատ ճառընտիր մեծ գրութեամբ (թ. 916, 3 և 919,6) և Պատմութիւնն Աղուանից հանդերձ պատմութեամբն Սոկրատայ յունի, և ընդարձակ պատմութեամբն Սեղբեստրոսի հայրապետին՝ թարգմանեալ ի Գրիգորէ Զորափորեցւոյ[2]»։

Նոյն վանքի հին արձանագրութեանց մէջ ևս պահուած է Համազասպ եպս. անունը[3], նա իւր առաջնորդութեան ժամանակ 1279, 1283 և 1300 թուերին պայմանաւորուել է վանքի զանազան նուիրատուներին յիշատակել յատուկ որոշեալ պատարագներում։

Համազասպը յիշւում է նաև Օշականի եկեղեցու մի քանի արձանագրութեանց մէջ. «Ի թուականին ՉԼԷ (1288) յառաջնորդութեան Տէր Համազասպայ . . .[4]» մի ուրիշ անգամ նա յիշւում է մինչև անգամ իբրև հայրապետ. «Ի թուին ՉԽԴ (1295) ի թագաւորու-

1. Զաքարիայ Սարկաւագի Պատմութիւն Վաղարշապատ 1870 հատ. Գ. էջ 30.

2. Ստորագրութիւն Կաթուղիկէ Էջմիածնի Յովհ. եպիսկոպոս Շահխաթունեանց Վաղարշապատ. 1842. Հատ. 2. էջ 112. Ալիշան Արար. էջ 170 ծն. 2. 3. էջ 171. ծն. 1. 4. էջ 190։

3. Տես նոյն տեղ. էջ 102. 103. 104։

4. Յ. տ. էջ 79։

թեան աստուածասէր ալքայ Քեազաթու ղանին, և ի հայրապետութեանն Տէր Համազասպայ . . .[1]: Այս արձանագրութիւնները յայտնի ապացոյց են, որ Համազասպը ոչ միայն սոսկ վանահայր էր, այլ և շրջակայքի առաջնորդ, և այդ բարձր դիրքը գործ էր դրել վանքը պայծառացնելու և դպրականութեանն ծաղկման օժանդակ լինելու:

Երուսաղէմի և Էջմիածնի ձեռագրերի մասին այսքան խօսելուց յետոյ, կցանկայինք մի եզրակացութիւն ևս կցել: Արդեօ՞ք Երուսաղէմի ձեռագրերը Արարատեան դաշտից չէ տարուել Հնդկաստան Շահաբասի մեծ պանդթականութեան ժամանակ, և արդեօ՞ք նա համարեա մեր Ձեռագրի ժամանակակից լինելով միմեանցից արտագրուած չեն: Երուսաղէմի վարդապետները հեշտութեամբ կարող են տպագրած օրինակը բաղդատելով իրանց Ձեռագրի հետ լուծել այս հարցը: Ընդունելով այդ ենթադրութիւնը իբրև հիմք, միջոց կունենանք այսպիսի մի կարծիք յայտնել. Շիրակում թարգմանուած Սոկրատը իւր սկզբնական, ընդարձակ ձևով իբրև դժուար հասկանալի, առանձին տարածում չէ ստացել, նա միայն քիչ օրինակներով արտագրուել և մնացել է Արարատեան դաշտում և գուցէ հէնց մեր ձեռքը հասած օրինակներն են տեսել Մխիթար Այրիվանեցին 14 դարի սկզբում և Մխիթար Անեցին 13 դարում: Իսկ համառօտ օրինակը լեզուի դիւրութեան և ծաւալի փոքրութեան պատճառաւ տարածուել է Հայաստանի ամեն կողմերը և համեմատաբար շատերին է յայտնի:

1. Ց. ա. էջ 78:

## Զ.

Համառօտ կամ Փոքր Սոկրատից անհամեմատ աւելի շատ թուով ձեռագրեր ունենք։

ա. Էջմիածնի Մատենադարանում պահւում են վեց օրինակ. Ա. թիւ 1670 (Կար. թիւ 1640), Բ. թիւ 1661 (Կար. թիւ 1629), Գ. թիւ 264 (Գէորգ կաթուղիկոսի՝ չտպուած ցուցակի թուահամարն է), Դ. թիւ 76 (Գէորգ կաթ. ցուց.) Ա[1]. թիւ 620 (Գ. կ ց.) և Ա[2]. թիւ 621 (Գ. կ. ց.)։ Ա—Դ օրինակները գրած են ինչպէս Մեծ օրինակը միապաղաղ, առանց գլուխների բաժանման, իսկ Ա[1] և Ա[2] ունեն գլխակարգութիւն և միմեանցից են արտագրուած։ Գ և Դ ձեռագրերը ունեն թերի մասեր, մանաւանդ Դ. իսկ միւսները ոչ։

բ. Երուսաղէմի Ս. Յակոբայ վանքում կան երկու օրինակ թիւ 999 և 1,711։

գ. Չորս օրինակ Վենետկի ս. Ղազարի վանքում Ա. թիւ 781, Բ. թիւ 738, Գ. թիւ 207. և Դ. թիւ 693։

դ. Մի օրինակ պ. Կ. Եզեանի մասնաւոր սեփհականութիւնն է Պետերբուրգում։

Եւրոպական յայտնի մատենադարաններում, ուր կան հայերէն ձեռագրեր, Սոկրատի ձեռագիր չկայ. մասնաւոր անձանց գրատներում կարող են նոր օրինակներ երևան գալ, բայց նոր բան հազիւ թէ կարողանանք նրանցից իմանալ։ Ես բարեյաջող պայմաններում հնարաւորութիւն եմ ունեցել, բացի Վենետկի օրինակներից, միւսների հետ և անձամբ ծանօթանալ

կամ գոնէ տեսնել, իսկ Վենետիկի ձեռ. մասին համառօտ տեղեկութիւն ունեմ։

1. Տպագրութեան համար մեր ունեցած վեց ձեռագրերից ընտրել եմ ամենահին և գեղեցիկ ձեռագիրը՝ Ա. թիւ 1670[1]. Նա գրուած է բամբակի լաւ հաստ և յղկած թղթի վրայ, մեծադիր է (gross-quart 38×28,5 սանտ.) բացի առաջի երեսից, որը զարդարուած է խորանով և թռչնագրերով, ամբողջ երկսիւն գրութեամբ է (29×9,5 սանտ.) վարժ և ճաշակով գրող գրչի գործ. բոլոր գրով։ Վերնագրերը կարմիր թանաքով են գրուած, ունի երկու խորան, մի քանի լուսանցքազարդ և քիչ թռչնագրեր։ Ունի պատիւներով սղումներ և ամենասովորական նշանագրեր, կանոնաւոր ուղղագրութիւն, եթէ չհաշուենք գ-ից առաջ փոխանակ ղ-ի ս-ի գործածելը օր. սգեստ, սգաստ, սգաստու-

1. Ձեռ. ժողովածու է հետևեալ բովանդակութեամբ.

ա. Տեառն Միքայէլի Համառօտ ժամանակագրոց։

բ. Լուսաւոր վարդապետի Վարդանայ, բան պատմագրութեան։

գ. Աշխարհագրութիւն, առանց վերնագրի։

դ. Դաշանց թղթից հատուած և Պետրոս Գետադարձի պատմութիւնը։

ե. Տեսիլ Յոհաննէս վարդապետի Կոզեռն կոչեցելոյ։

զ. Պատմութիւն վասն Թէոդոսի թէ որպէս թագաւորեաց։

է. Յայտնութիւն բանից ի Նուաստէ Վարդանայ ի Յոհան Ուձնեցին։

ը. Տաւն կատարման Սիւնեաց Ստեփաննոս եպիսկոպոսի։

թ. Մի քանի փոքրիկ պատմական հատուածներ։

ժ. Պատմութիւն Սոկրատայ։

թիւն ելն. օ և աւ անխտիր գործ է դնում, մինչդեռ Մեծ Սոկրատը օ չգիտէ, և այդ պատճառաւ Մեծում մենք անփոփոխ կերպով աւ պահեցինք, իսկ Փոքրում գերադասեցինք օ: Գրչի անունը Ստեփաննոս է, ստացողինը Առաքիլոն վարդապետ: Թէ ինչքան խնամքով է գրիչը իւր գործը կատարել, այդ երևում է նրանից որ եթէ գրելու ժամանակ երկու երեք տառի սխալ է արել՝ զգուշութեամբ քերել է այդ սխալը, իսկ եթէ ամբողջ բառ կամ հատուածիկ է աւելորդ տեղից կրկնել, կամ սխալ գրել, որ քերելով թուղթը կմնաւէր, նա աւելորդ մասի վրայ կետէր է դնում, որով թէ ընթերցողն է սխալը ուղղում և թէ ձեռագիրը չէ տգեղանում: Ձեռագիրը գրուած է Հայոց ՌԽԳ (1594) թուին Յամիթ քաղաքում «ի դուռն սուրբ Կիրակոսի» (կարապետի), ինչպէս ցոյց են տալիս բազմաթիւ յիշատակարաններ, որոնցից հետաքրքիրներն են:

ա. Թղ. 2բ. «Զգործս ձեռաց մերոց ուղիղ արա ի Տէր, զգործս ձեռաց մերոց օգնեայ և առաջնորդեայ մեզ: Գրեցաւ ի Յամիթ քաղաքի ի դուռն սուրբ Կիրակոսի թվ. ՌԽԳ»:

բ. Թղ. 180ա. «Տէր Աստուած բարեխօսութեամբ սրբուհւոյ Աստուածածնի.

Ողորմեա աւարտողի սորին<br>
Տէր Առաքիլոն վարդապետին<br>
Քաջ և արի է ի բանին:<br>
Եւ ծնողացն իւր մարմնաւորին<br>
Խոճայ Դանէլին և մահ-<br>
տեսի Աթլանին,<br>
Եւ եղբարց իւր ամենին<br>
Մխիթարի Յակոբին և Գաս-<br>
պարին<br>
Խոտավէրդի սարկաւագին.<br>
Եւ Բաղդասար սարկաւա-<br>
գին.<br>
Զձեզ կաղաչեմ տեսողք<br>
սորին<br>
Մի մեղադրէք սխալ գրչին»:

գ. Թղ. 261բ. «Թէ ուզես զի ցրտանաս, զթուղթն կոկէ որ տաքընաս»։

Եւ քըւերցըն Եղիսաբէթին ծոյլ և պղերգ է ի բարին.
և Մարիամին. Հմուտ չէր այս արուեստին.
Եւ Ստեփաննոս դպրի ծայր և կատակ զիս կատա-
սարին։ նէին։

դ. Թղ. 272ա. «Թվին ՌԽԹ վաղիլն յՈւռհայոյ եկաւ Յամիթ, Յունուար ԻԱ Մարտ ԻԴ խապար եկաւ Յամիթ եազիչուն ելաւ յՈւռհայոյ։ Մարտ ԻՋ ելաւ վաղիլն Յամթայ ի Կոստանդնուպօլսէ, մինչև Յամիթ գեաւղ և քաղաք չէն չեթող զամէն աւերեց, որ ընդ գրով արկանել չի գայր»։

ե. Թղ. 294բ. «Թվին ՌԽԹ Ապրիլի ԻԱ զիտր մի հաց եղև Յամիթ Ը շահի ու չէր դտուի. հայ ու տաճիկ գացին ի վերայ դատաւորին մահու կուսպաէն, չի կարացին»։

զ. Թղ. 300բ. «Վայ ժամանակիս նեղութենիս. Թվին ՌԽԹ Մայիս Դ չարեկ մի ցորեն Խ շահի. չարեկ մի կլկլ ԼԲ շահի. չարեկ մի կորեկ ԻԴ շահի»։

է. Թղ. 365բ. «Սոկրատ է, անմեղադիր լերուք գրչիս, զի անհմաստ էր և աւրինակն հնացեալ և եղծեալ էր, Թվին ՌԽԹ երէկ Ազարիա կաթողիկոսն ի Ճողայոյ ի Նոյեմբերի Դ ելան Յամթայ գնացին ի Հալապ»։

Ժամանակակից կեանքի տխուր երևույթները, երբեմն նոյն իսկ կատակները, աւելորդ չէ համարել գրիչը օրագրի պէս կցել Ձեռագրի լուսանցքներին, մեծաւ մասամբ նոտրգրով։ Ձեռագրի վերջում բաց թերթեր է թողել երկար յիշատակարանի համար, անյայտ պատճառով միայն սկիզբն է կարողացել գրել։

2. Բ Թիւ 1661 [1]. Ձեռագրի գիրքը հաւասար է նախընթացին (31×22,5 սանտ. Թուղթք 518) գրած մանրագիր նօտրգրով, բարակ և փայլուն թղթի վրայ. գրութիւնը երկսիւն է, (24×8 սանտ.) կարմիր գծերի մէջ ամփոփուած, ունի աւելի շատ թուով սղումներ և նշանագրեր: Իւրաքանչիւր նոր սկսող պատմութեան առաջ նկարած է կամ խորան կամ կիսախորան, ունի և լուսանցքազարդեր, իսկ վերնագրեր կարմիր գոյնով են ողողուած: Գրել են Գրիգոր քարտուղար և Թումա գրիչները Մինաս րաբունու համար, Հայոց ՌՃԻԷ (1678) թուին «ի գիւղն Ալիփուղար» ինչպէս յայտնում են բազմաթիւ մանր յիշատակարանները: Կազմը կաշուց է, գեղեցիկ պաճուճեալ, եզերքը կարմիր և ունի ախ. անխնամ պահելուց քայքայուել, թերթերից շատերը անգահան են: Թէև յիշատակարաններ կան, բայց համառօտ են և միմեանց կրկնութիւն, կարևորներն են.

ա. Թղ. 365ա. «Գրեցաւ թվին ՌՃԻԷ ի գիւղն Ալիփուղար ձեռամբ Գրիգորի քարտուղարի»:

բ. Թղ. 442ա. «Այլ և զստացող սորիս զՄինաս րաբունին ընդ երկայն աւուրբք ի խոր խաղաղութեան պահեսցէ, և զփանաքիմաստ Թումա գրիչս»:

1. Բովանդակութիւն. ա. Պատմութիւն Հայոց Մովսէս Խորենացւոյ. բ. Պատմ. Ստեփ. եպիսկոպոսի Տարօն. գ. Պատմ. Արիստակիսի Լաստիվերցւոյ. դ. Եւսեբիոսի Պատմ. եկեղեցական. ե. Պատմ. Ագաթանգեղոսի ունի և դաշանց թուղթ. զ. Պատմ. Ներսէսի Մեծորոյ երեց. է. Պատմ. Տարօնոյ. Զենոբայ. ը. Բուզանդական Պատմ. թ. Պատմ. Եղիշէի. ժ. Պատմ. Ստեփ. Օրբելեանի. ժա. Տես նախընթաց թիւ 1670 ա—ժ, բայց աւել ունի. ժբ. Պատմ. Կիրակոս Գանձակեցւոյ.

3. Գ թիւ 264[1], հաստափակ թղթից, նօտրգրով անվարժ և տգէտ գրչի ձեռքով մօտաւորապէս ԺԸ դարում գրած ձեռագիր է. փոքր դիրքով (20×15 սանտ. թուղթ 200). կազմը նորոգած է, բայց մինչև նորոգումը սկզբից թէ վերջից թերթեր են կորել իսկ միջ՚ից շատերը պատռուել. տգէտ կազմողը թերթերը երբեմն յետ ու առաջ է դասաւորել: Մեր ունեցած ամենավատ ձեռագիրն է շատ թերութիւններով: Յիշատակարան չունի:

4. Դ թիւ 76[2]. Նախընթացի պէս ունի մեծ թերութիւններ. գրած է անկանոն, փոքր դիրքով (19,3×14 սանտ. 426 թուղթք), երկսիւն գրութեամբ (14,3×4,6 թ.) որ ամփոփած է կարմիր գծերի մէջ. գիրը նօտրագիր է, կարմիր գրած սկզբնատառերով: Գրուած է մօտ ԺԸ դարում Արիստակէս գրչի ձեռքով ի վայելս Սիմէօն կրօնաւորի, Հայոց ՌՄԺԸ թուին. կրկին անգամ ստացել է ծարեցի Գրիգորի որդի տիրացու Պետրոսը: Պահուած է անխնամ, մի քանի

1. Բովանդակութիւն. ա. Սոկրատ. սկզբից 11 թերթ կորած է. բ Պատմ. Ժողովոց. գ. Ընդդէմ այնոցիկ որ ապականեն զսուրբ խորհուրդն ի ձեռն խմորոյ և ջրոյ. դ. Յով. Մանդակ. յաղ. պահոց քառասնորդաց. ե. Շապուհ Բագր. պատմ. փոքր հատուած. զ. Հարցմունք երկուց փիլիսոփայից վասն վեցօրեա արարչութեան և վասն պահոց. է. Տասնիցն թուղթք յաղագս այլ և այլ խնդրոց հաւատոյ. ը. Պատմ. ազգին Նեստողաց. թ. Պատմ. ս. Խաչին Հացունեաց. ժ. Եղիշէի երեցու յաղ. Թաբուրական լերինն. ժա. վասն Է նշանացն. ժբ. Պատմ. Լանկթամուրի Թոմ. Մեծոփ.

2. Բովանդ. ա. Ներսէսի եպիսկոպոսի Տարսոնի խորհրդածութիւն ի սուրբ Երրորդութեան. բ. Պատմութիւն Սոկրատայ:

թերթեր միացած է, կտրտած թերթեր էլ կան։

5· Ա¹ Թիւ 620, Ղուկաս վարդապետի ձեռքով 1746 թուին Կոստանդնուպոլսում գրած ձեռագիր է նոտր գրով, բայց կարելի է և շղագիր ասել։ Գիրքը փոքր է (18×12 սանտ. թուղթք 103·) նիւթը հաստատ թուղթ, մագաղաթեայ կազմով, հետաքրքիր է նրանով որ ամբողջը բաժանուած է ՃՀԲ գլուխների, իսկ գլուխների ցանկը գրած է գրքի վերջում։ Ղուկաս վարդապետը օգտուելով Կիրակոս Գանձակեցուց գրել է հետևեալ յիշատակարանը։

Իջ 187· «Շարագրեալ Սոկրատայ մեծի իմաստնոյ Ներսեհի (Կոստանդնուպոլսեցւոյ ??) ի խնդրոյ Տեառն Կամսարական Վատրկի· զոր սկսեալ ի սրբոյն Սեղբեստրոսէ, և ի մեծին Կոստանդիանոսէ, ճառէ զթագաւորաց ելն· · · · Յորմէ օրինակեցեալ և դաղափարեցեալ եղև սայ ի Կոստանդինուպօլիս· յամի Տեառն ՌՉԽԶ· և Հայոց ՌՃՂԵ, Մարտի ամսոյ Ի, նուաստ ումեմնէ չնչին և մեղապարտ ծառայէ, գլխատեալ, տնատեալ և ցանկն շարս գրեալ հանգոյն այլոց պատմագրաց առ ի դիւրութիւն ընթերցողաց և գրչողաց, որ զցանկ սորին ի վերջ գրոցս տեսցես»։ Այս յիշատակարանը ամբողջութեամբ կայ նաև Ա² ձեռագրում։

6· Հետևեալ Ա² Ձեռագիրն սրանից է արտագրուած մօտաւորապէս նոյն թուականին, պահուած է աւելի խնամքով և մաքուր քան առաջինը· մեծութեամբ (21,5×16·5 սանտմ· թուղթք 200·) գրութեան ձևով նման է Ա¹-ին։

Սոկրատայ պատմութիւնից յետոյ գրած է Յակոբ վարդապետ Ղրիմեցու Մեկնութիւն Տոմարի։

7. Նոր. [1] Ձեռագիր Կ. Եզեանի. այս Ձեռագիրը տեսայ անձամբ կայսեր Թագաւորութեան հանգիստն Պետերբուրգում հանդիպելով. իսկ նրանից օգտուել մ Նորայր Բիւզանդի արտագրած և ծանօթութիւններով հարստացրած օրինակից: Ձեռագրիս մանրամասն նկարագրութիւնը տուել է Ստ. Մալխասեանը Ասողկի հրատարակութեան յառաջաբանում [2], աւելի համառօտ նկարագրել էր Պ. Նորայրը: Նկարագրութիւնը ցոյց է տալիս որ նա շատ նման է մեր Բ Ձեռագրին:

Գրած է բամբակեայ ընտիր, հաստ և ողորկ թղթի վրայ, մեծադիր (27,5×20 սանտմ.) երկսիւն գրութեամբ (20,5×6,3 սանտմ.) մանր նօտրգրով, ունի շատ հասարակ գունաւոր կիսախորաններ և լուսանցքազարդեր նոր սկսող գլուխների սկզբներում, վերնագրերը կարմիր ներկով. գրութեան ժամանակը ՌՃԻԹ 1680 թուին է Տիգրանակերտում գրած Աբրահամ գրչի ձեռքով: Բովանդակում է 18 պատմագրաց գործեր:

Այս եօթ ձեռագրից օգտուել եմ, մանրամասն բաղդատել բնագիրը և ընթերցուածոց տարբերութիւնները ծանօթութեանց մէջ նշանակել:

8. Երուսաղէմի Ձեռ. թիւ 990, գրուած է անյարթ թղթի վրայ ի ձեռն Բարսեղի, թվին ՌԾԱ (1602 թ.) ի վայելումն Մաղաքիա վարդապետին: Թուղթք 141. էջք 20. մեծութիւն 15,5×20 սանտ. գրութիւն երկսիւն 15×9 սանտ. գիր, նօտր

1. Մեր տպագրութեան մէջ Եզեանի Ձեռագիրը նշանակել են Ն. տառով (Նորայր):

2. Տես. Տարօնեցւոյ Ասողկան Պատմութիւն Պետերբ. 1885 էջ ԼԵ—ԼԹ.

ոչ այնքան մաքուր և ուղղագիր. կազմ՝ հին տախտակեայ կաշեպատ»։

9. Երուս. Ձեռ. թիւ 1117 «Գրուած է տոկուն մաքուր և յղկեալ թուղթի վերայ ժամանակ ՌՃԽԲ (1693 թ.) Խոտրջուր գիւղում. թուղթք 190, էջ 380. մեծութիւն 19,5×13,5 սանտ. գրութիւն միասիւն 12,5×8 սանտ. գիր նոտր, մաքուր. կազմ՝ տախտակեայ կաշեպատ. Տէր՝ Ղազար վարդապետ որ իւր հոգևոր որդւոյն Մարգարէ վարդապետին կտայ[1]»։

«Այս երկու Ձեռագիրք ալ Սեղբեստրոսի պատմութեամբ կըսկսին և առանց գլխատութեան կշարունակեն, միայն լուսանցքներում հատուածաթիւք նշանակուած են, ըստ այսմ առաջինը՝ 172 և երկրորդը 132 հատուածներէ կբաղկանան։ Զուգեցի հատուածաթուոց տարբերութեան պատճառը փնտռելու»։ Հետաքրքիր է վերջին նկատողութիւնը. այդտեղից պարզ երևում է որ սկիզբը փորձ է եղել ամբողջ գիրքը առանձին հատուածների բաժանել և արդէն յետոյ են գլխակարգաթիւ մտցրել։ Մեր Ա[1] և Ա[2] Ձեռագրերը ունեին ուղիղ 172 գլուխ. ասել է այնքան ինչքան Եր. 199 թիւ Ձեռագիրը հատուածանշաններ ունի։ Ստորև կաշխատենք այդ երևոյթի հաւանական բացատրութիւնը տալ։

10—12. Վենետիկի վանքի գրատան կան չորս օրինակ Սոկրատ, ինչպես Հ. Բ. Սարգսեանն է յիշում. բայց մի ուրիշ տեղեկութիւնից իմանում ենք, որ հինգ պիտի լինին օրինակները[2]։ Այդ չորս ձեռագրի մասին

1. Նկարագրութիւնը արտագրել ենք Սահակ սրբազանի առ մեզ ուղղած նամակից.

2. Փարիզի մատենադարանում կայ Վենետիկի ձեռագրերի այբբենական կարգով կազմած մի ցուցակ 1888 թուից, այդ ցուցակում հինգ օրինակ Սոկրատ են յիշում։

իմ ունեցած տեղեկութիւնը Բ. Սարգսեանի մի համառօտ ծանօթութիւնն է Սեղբեստրոսի վարքի հրատարակութեան մէջ։ «Գրութեանս ներկայացուցիչ չորս գրչագիր ունինք մեր Ձեռագրատան մէջ, այն է Ա. թիւ 781, Բ. թիւ 738, Գ. թիւ 767, և Դ. թիւ 693։ Առաջին օրինակը գրուած է ի թուին ՌՀԳ (1623) ի Կոստանդնուպօլիս, ձեռամբ Մաղաքիայի։ Գ. օրինակը գրուած է դարձեալ ի Կոստանդնուպօլիս յամի Տեառն 1732, անանուն գրչէ։ Դ. և հնագոյն օրինակն է՝ անթուական. բայց ԺԳ. դարուն գրուած կերևի։ Սորա գրչութիւնն որչափ որ գեղեցիկ բոլորգիր է, սակայն ուղղագրութեան մասին յոյժ սխալագիր։ Բ. օրինակը բոլորովին նոր է, այսինքն է յամի Տեառն 1838, Դ. օրինակի վրայէն գաղափարուած է յԱխալցխա ի վանատան մերս»[1]։

Բոլոր տասներեք ձեռագրերը ըստ ժամանակի, տեղի և տեսակի այսպէս են բաժանւում.

Վեն. Դ. ամենահին օրինակն է. տեղ և գրիչ՝ անյայտ. ենթադրական ժամանակ՝ ԺԳ դար.

Է. տեղի՝ Ցամիթ քաղաքում, գրիչ՝ Ստեփաննոս, թիւ՝ ՌԽԳ—1594.

Եր. Ա. գրիչ՝ Բարսեղ, թիւ՝ ՌԾԱ—1602.

Վեն. Ա. տեղի՝ Կ. Պօլիս, գրիչ՝ Մաղաքիա, թիւ ՌՀԳ—1624.

Նոր. տեղի՝ Տիգրանակերտ, գրիչ՝ Աբրահամ, թիւ՝ ՌՃԺԵ—1666.

Բ. ի գիւղն Ալիփուղար, (՞) գրիչ՝ Գրիգոր քարտուղար և Թումա, թիւ՝ ՌՃԻԷ—1678.

1. Հ. Բ. Ս. յ. ա. էջ. Լ. 2. Ծն. 1.

Եր. Բ. Խոտորջուր գիւղ, գրիչ՝ անյայտ՝ Թիւ՝ ՌՃԽԲ—1693.

Վեն. Գ. տեղի՝ Կ. Պօլիս, գրիչ՝ անյայտ Թիւ 1732.

Ա[1] տեղի՝ անյայտ, գրիչ՝ Ղուկաս վարդապետ, Թիւ 1786.

Ա[2] գրիչ, տեղի և ժամանակ՝ անյայտ մօտ ԺԸ դար.

Դ. տեղի՝ Կ. Պօլիս, գրիչ՝ Արիստակէս ԺԸ դար.

Գ. տեղի անյայտ, գրիչ՝ անյայտ,, ժաման. ԺԸ դար

Վեն. Բ. Ախալցխա, գրիչ՝ անյայտ ժամ. 1838 Թիւ..

Ամենահին ձեռագիրը ԺԳ-րդ դարուցն է, հաւանական ենթադրութեամբ, իսկ Թուականով հաստատը մեր Ա. Ձեռ. է. ԺԶ. դարու, մնացածները, ԺԷ—ԺԹ. դարու են։

Ձեռագրերից եօթի մանրազննին համեմատութեանց արդիւնքը միջոց է տալիս նրանց երկու գլխաւոր խմբի բաժանել մի ստորաբաժանումով։ Առաջի խմբին պատկանում են Վենետիկի Դ. նրանից Ախալցխայում արտագրուած են Վեն. Բ. և մեր մատենադարանի Դ. Ձեռ. [1]. մեր օրինակը անկասկած արտագրուած է նրանից, ունի Թերի մասեր, արդեօք Վենետիկինն էլ ունի՝ չգիտենք։ Այդ խումբը միւս խմբից շատ աչքի ընկնող տարբերութիւններ ունի. ընթերցուածներով անպայման ընտրագոյն են. շատ ասած չենք լինել՝ եթէ հաստատենք, թէ դոքա սկզբնական կրճատումից ամենավաղ ժամանակներում ուղղակի սրբագրուել են։ Սկզբնական ձեռ.

1. Սեղբեստրոսի վարքը Հ. Բ. Ս. այդ օրինակից է կատարել. մեր Դ. օրինակը ուղղակի արտագրութիւն է նրանից. Վենետկի Ձեռագիրը եղել է Ախալցխայի վանքում, ուրից արտագրել են Վեն. Բ. և մեր Դ. Ձեռ. որ բերուած է Ախալցխայից Կարապետ եպիսկոպոսի ժողովածուի հետ։

ներկայացուցիչները միւս բոլոր ձեռագրերն են, որ կազմում են երկրորդ խումբը։ Այդ խմբի ձեռագրերից Ա. Բ. Նոր. Վեն. Բ. և Վեն. Գ. անմիջապէս նոյն աղբիւրից են, թէև ունին յատուկ տարբերութիւններ. դրանցից են ծագում միւս ձեռ. որոնք ունին գլուխների բաժանմունք. Եր. Ա և Բ ունին գլխակարգութեան նշաններ, իսկ մեր Ա$^1$ և Ա$^2$ ուղղակի գլուխների են բաժանուած, Եր. Ա օրինակը ունի 172 բաժանման նշան, որ համապատասխան է մեր Ա$^1$ և Ա$^2$ գլուխների թուին. զարմանալու է ինչու Եր. Ա. վերնագրեր չունի։ Գուցէ այդ ձեռագրի նախկին տէրը ձեռքին ունեցել է Ա$^2$ի պէս գլուխների բաժանած ձեռագրեր, և կարևոր է համարել նոյն բաժանումները մտցնել իւր օրինակի մէջ։ Գ. ձեռ. ընթերցուածներով շատ է նմանւում Ա$^2$ին, բայց ընդհանրապէս թերութիւններով լի է։ Երկրորդ խմբի ձեռագրերը ունին ուրիշ յայտնի որոշիչ նշան. Ա. Բ. Ն. Ա$^2$. և Ա$^1$. ձեռագրերի բուն բնագրի մէջ մտել է մի նկատողութիւն, որ ոչ մի կապ չունի բնագրի հետ. նկատողութիւնը գրուած էր բոլորին նախատիպ ծառայող Ձեռագրի եզերքին և նրանից արտագրող ագէտ գրիչը բնագրի մաս կարծելով միացրել է նրա հետ, իսկ նրանից յետոյ բոլորն էլ արտագրել են։ Յաւելուածն է.

«Ես Սմբատ սպարապետ Հայոց, որ տեսի ի Տէմէրղէնտ (Ա$^2$. Ն. ի Տմրղանտ) քաղաքն թաղումք ի Թունացն այնոցիկ ուղղափառք Նիկիական հաւատն»։

Սմբատի նկատողութիւնը կցած է Սոկրատի պատմութեան այն մասի լուսանցքին, որտեղ պատմուած է պարսից մէջ քրիստոնէութեան տարածումը Մարութայի ձեռքով (տես Է. էջ 583)։ Եթէ Սմբատ

պատմագիրն է Նկատողութեան գիրքը, ուրեմն 13-րդ դարում է յաւելուածը մասը ձեռագրերի մէջ, Հետեւապէս երկրորդ կարգի նախատիպը այդ փարուցն է։

Ձեռագրերից Ա. Նոր. դուցէ եւ Բ. (ի գիւղն Ալիփուղար) գրուած են Տիգրանակերտում.

Վեն. Ա. Վեն. Գ. Ա[1] եւ Ա[2] չորս օրինակ կոստանդնուպոլսում, Դ. Վեն., Բ. Անագիտա. Եր. Բ. Խոսրջուր, Եր. Ա. Վեն. Դ. եւ Գ. յայտնի չէ տեղը։ Այս համեմատութիւնից երեւում է, մինչդեռ Մեծ Սոկրատը միայն Արարատեան աշխարհումն է տարածուել, Փոքրը տարածուել է ամեն կողմ, գլխաւորապէս Պոլիս եւ Ամիթ։

Փոքր եւ Մեծ Սոկրատից ճառընտիրների մէջ մըտել են Թէոդոս Մեծի, Կոստանդիանոս Մեծի եւ Սեղբեստրոսի վարքերը[1]։

ա. «Ի յիշատակի ս. Թագաւորին Կոստանդիանոսի ի Սոկրատայ պատմութենէ ի չորրորդ գրոց» Մայր Աթոռիս ճառընտիրներից թիւ 130 (Գ.) թղ. 160։ Ճառընտիրը հաստ բամբակեայ յղկած եւ մաքուր թղթի վրայ է գրուած, մեր ունեցած ընդարձակ օրինակներից է, գրուած միջին մեսրոպեան գրերով ԺԱ—ԺԲ. դարում, Գրիգոր գրչի ձեռքով ի վայելս Յովհաննէս քահանայի։ Մեծ յիշատակարան չունի, մանրեր շատ են։ Ճառընտիրի հատուած Մեծ Սոկրատիցն է, մանրամասն քաղդատել ենք մեր Ձեռագրի հետ եւ տարբերութիւնները նշանակել (տես էջ 714—742)։

բ. «Ի Սոկրատայ պատմութենէ վասն Թագաւորութեան Թէոդոսի Մեծի։ Իսկ Թագաւորն Գրատիա-

1. Վերջինս Սեղբեստրոսի վարքից.

*նոս անսեալ ակարացեալ զՀռովմայեցւոց պետութիւնն էին.»: Այս հատուածը կայ երկու ճառընտրում Թիւ* 940. 7. ՃՁ. (*կամ Կարինեանի ցուցակ* 920. 7. *էջ* 106) *և* 945. 12. ԺԲ. (*Կար. ցուցակ* 925. 12. *էջ.* 134) (*տես տպագիր էջ* 402—416):

Թիւ 940 *մեծադիր ընտիր բամբակեայ Թղթի վրայ բոլորգրով: Ճառընտիրը Հայոց* ՋԵ. (1456) *Թուին է, Մատթէոս քահանայի ձեռքով գրած վերի Նորավանքում:*

Թիւ 945 *մեծադիր, բամբակեայ Թղթի վրայ ճառ.* ՊՂԱ. (1442) *Թուին է. գրած է ձեռամբ Յովհաննէս միայնակեաց կրօնաւորի:*

Գ. *Երուսաղէմի ճառընտիր Թիւ* 1. *ունի մի հատուած, որի մասին Գեր. Սահակ եպիսկոպոսը գրում է. «ճառընտրի ԽԹ. գլուխը որ է Պատմութիւն վարուց սրբոյն Սեղբեստրոսի, բաղդատեցի մեր ձեռագրաց* (999 *և* 1117) *հետ, նոյնն է միայն տեղ տեղ համառօտուած. օրինակի համար, յետ նահատակութեան Տիմոթէոսի Սեղբեստրոսի ձերբակալումը, բանտարկութիւնն, բռնաւորին չարաչար մահը էին. զանց կընէ ուղղակի Մեղետեայ վախճանէն յետոյ, Սեղբեստրոսը կաթոռակալէ, այսպէս և ուրիշ կտորներու մէջ, բայց ճառընտրի լեզուն աւելի մաքուր է, ինչպէս և ուղղագրութիւնը»:*

*Ինչպէս երևում է ճառընտիրների մէջ մտել է Սեղբեստրոսի վարքից՝ ընդարձակի և համառօտի նոյն մասը, անկասկած հետևողութեամբ մէկը միւսից:*

## Է.

Սոկրատի պատմութիւնը առանձին հետաքրքրութիւն ստացաւ մանաւանդ սկսած այն օրից, երբ Ֆըրանսիացի հայագէտ պ. Կարիերը մի շարք յօդուածներով «Հանդէս Ամսօրեայի» մէջ ֆրանսերէն և հայերէն լեզուներով տպած, աշխատեց ապացուցանել՝ որ Մովսէս Խորենացին Ե-րդ դարու հեղինակ չէ, նրա պատմութիւնը այդ դարումը չէ կարող գրուած լինել. որովհետև նրա գիրքը օգտուել է Սոկրատի եկեղեցական պատմութեան՝ այն էլ հայերէն թարգմանութիւնից. իսկ հայերէն թարգմանութեան ժամանակը որոշւում էր ընդհանրապէս Է-րդ դարու վերջը՝ կամ Ը-րդի սկիզբը։[1] Յարգելի քննիչի անսպասելի և չափազանց վստահ եզրակացութիւնները գալիս էին խախտելու, հիմնովին տապալելու մի դարեւոր համոզմունք, խորը արմատացած մի հաւատ դէպի այն պատկառելի պատմահայրը, որի ամենախիստ քննադատները մինչև այդ ժամանակ բաւական համոզեցուցիչ փաստերով կարողացել էին միայն մի բան հաստատել, որ նա միամտաբար երբեմն հետեւում է իւր աղբիւրներին՝ հեշտութեամբ հաւատ ընծայելով նրանց ամեն պատմութիւններին. բայց ոչ ոք չէր յայտնել այն աստիճան ծայրահեղ կարծիք, հաստատուած այդքան հիմնաւոր թուացող փաստերի վրայ, որ ապացուցանէր թէ նա

1. — Կարիեր. «Մովսէս Խորենացու մէկ նոր աղբիւրը» Հանդ. Ամս. 1892 թ. էջ 250 և 373. «Նորագոյն աղբերք Մովսիսի Խորենացւոյ» Հանդ. Ամս. 1893 էջ 116. 134. 178. Այս յօդուածները լոյս տեսան առանձին գրքոյկներով ֆրանսերէն և հայերէն լեզուներով։

կեղծել է, թէ երկար ժամանակ կարողացել էր խաբել ընթերցողներին՝ որ նա երկու երեք դար ուշ ապրելով և գրելով, կեղծելու արտակարգ ընդունակութեամբ՝ զգալ չէ տուել այդ կեղծիքը։[1] Եւ այդ բոլոր սովորական մտածողութեան դժուարըմբռնելի և հասկանալի եզրակացութիւնները պիտի հաստատուէին մի քանի տող պատահական նմանութեամբ այդ պատմագրի և Ը-րդ դարում թարգմանուած պատմութիւնների մէջ։ Ահա խնդրի այդ կարևորութիւնն էր պատճառ, որ թէ մասնագիտական թերթերում և թէ նոյն իսկ օրաթերթերում լոյս տեսան մի շարք յօդուածներ, բոլորն յօգուտ և ի պաշտպանութիւն Խորենացու. միայն Գ. Խալաթեանցն էր որ իւր մագիստրոսութեան աստիճան ձեռք բերելու համար ներկայացրած աշխատութեան մէջ՝ ամէն ջանք գործ է դնում Խորենացու գիրքը մինչև Թ-րդ դարն իջեցնել։

Մեծ և Փոքր Սոկրատների հրատարակութեամբ համոզուած ենք վերջնականապէս կը լուծուի մի խնդիր՝ եթէ Խորենացին սովորաբար ընդունուած ժամանակից ուշ է գրել, դրա ապացոյցը այլ ևս չպէտք է որոնել Սոկրատի և նրա պատմութեան մէջ եղող նմանութիւնով. իսկ դրա փոխանակ իւրաքանչիւրիս համար մի տեսակ յորդոր, մի տեսակ նախազգուշացում. չպէտք է զօրեղ հիմնաւոր փաստերը թողած, շլացուցիչ նորահնար երևայթներով մի ամբողջ հաստատուն շինութիւն տապալել։

1. Գրիգոր Խալաթեան՝ իւր մագիստրոսական աշխատութեան մէջ էջ 1—36 ի մի է հաւաքել այդ մասին յայտնուած կարծիքները.

Г. Халатянъ.— Армянскій Эпосъ въ Исторіи Арменіи *Моісея Хоренскаго.* Москва 1896.

Ամենազօրեղ հարուածն էր, որ պ. Կարիերը փորձեց հասցնել Խորենացուն. մինչեւ այսօր էլ ոչ ոք չկարողացաւ համոզեցուցիչ փաստերով ջրել նորա ասածները. բայց նորագոյն փաստերը կը խօսին իրենց համար. Խորենացին է եւ կը շարունակի մնալ Ե-րդ դարում ապրող, նոյն դարում գրող Սահակ ու Մեսրոպ մեծ ուսուցիչների աշակերտը։

Մենք ընդունելով իւրաքանչիւր լուրջ եւ բարեխիղճ քննադատութեան մեծ արժէքը, մնում ենք այն համոզման, որ շատ անգամ ամենասուր եւ հանճարեղ արտայայտած մտքերն անգամ չեն կարող մնայուն լինել՝ եթէ եզրակացութիւններ հանելիս դատողութիւնը գերակշռել է նիւթի բազմակողմանի ծանօթութեանը։ Սոկրատը շատ քիչ է ուսումնասիրուել եւ քչերն են նրան ծանօթ. ներկայումս յայտնի հայկաբաններից նրա մասին՝ շատ կարծիքներ են յայտնուել, որ չէին արտայայտուիլ, —որովհետեւ հիմունքից զուրկ են, —եթէ այդ անձինքը իրենց ձեռին ունենային բուն Սոկրատը։

Մեր գրականութիւնը դեռ շատ քիչ է ուսումնասիրուած. դեռ շատ նորանոր կարծիքներ կարող են յայտնուել եւ հները խախտուել, բայց հէնց դրա մէջ է վտանգը։ Մի ըստ երեւոյթին ամենահամոզեցուցիչ կարծիք բազմակողմանի ուսումնասիրութեան արդիւնք չլինելով, հիմնովին կը հերքուի իսկական նիւթի ծանօթութեամբ։

Փորձենք համառօտ ձեւով ի մի ամփոփել խնդրիս վերաբերեալ յայտնած կարծիքները եւ տալ մեր վերջնական եզրակացութիւնը, հիմնած մեր ուսումնասիրութեան վրայ։

## Ը.

Յայտնի է անգլիացի գիտնական Վիստոն եղբայրների հրատարակութիւնը Մ. Խորենացու պատմութեան հայերէն բնագրի և լատիներէնի թարգմանութեամբ՝ հմտալից ծանօթութիւններով և մեկնաբանութիւններով։ Նրանք էին որ առաջին անգամ ուշադրութիւն դարձնելով Մ. Խոր. Բ. գր. ՁԳ գլ. Կոստանդին Մեծի ծննդեան և թագաւորելու առասպելախառն պատմութեան վրայ, մատնանիշ էին արել Սեղբեստրոսի վարքի վրայ, երկուսը միևնոյն աղբիւրից ծագած համարելով։[1] Նրանք զարմանք են յայտնում և դժուարանում մեկնելու, թէ ինչպէս կարող էր Խորենացին օգտուել և հաւատալ Կոստանդին Մեծի մասին պատմած առասպելներին, քանի որ լաւ ծանօթ էր Եւսեբիոսի պատմութեանը։ Նոր Հայկազեան բառգիրք կազմող Վենետկի հայրերն ևս Վիստոններին հետևելով, ուղղակի Սեղբեստրոսի վարքն են Խոր. աղբիւր համարել։[2]

Հարևանցի յայտնած կարծիքը մնաց երկար ժամանակ առանց ուշադրութեան՝ մինչև պ. Կարիէրը Խորենացու և Սեղբեստրոսի վարքի նման հատուածները իրար հետ բաղդատելով, անսպասելի հետևանքների հասաւ։ Թիւրիմացութիւնների առաջն առնելու համար, կարևոր ենք համարում անցողաբար յիշել, որ

1. Մ. Խոր. հրատ. Վիստոն եղբ. Լոնդոն 1736 թ. էջ 210 գլ. Զ. Ծանօթ. համեմ. իմ յօդուածը Արարատ 1893 թ. էջ. 65—76։

2. Նոր. Հայկ. բառ. Նախադրութիւն էջ 19. «Պատ. Ս. Սեղբեստրոսի Հռովմայ Հայրապետի՝ որոյ հետք կան նաև ի բանս Խորենացւոյն»։

Սեղբեստրոսի վարքն ու Սոկրատի պատմութիւնը միանգամայն տարբեր գրութիւններ են, հայերէնի մէջ համառօտչի ձեռքով միացրած, իսկ թէ ինչպէս և երբ՝ այդ մասին յետոյ։

Պ. Կարիերը 1892 թ-ին՝ մի նամակ գրեց «Հանդէս Ամսօրեայի» խմբագրութեան, որը և տպուեց նոյն թերթի օգոստոսի համարում։[1] Նամակի էական միտքն էր. Խոր. Բ. գլ. ՁԳ. Սեղբեստրոսի վարքից է առնուած։ Սեղբեստրոսի վարքը գրուած է սկզբնաբար լատիններէն լեզուով, Ե-րդ դարու վերջում. նոյնը Յոյները թարգմանել են վեցերորդ դարու սկիզբը. Խորենացին ի հարկէ այդ թարգմանութիւնից է օգտուել, ոչ շուտ քան Զ-րդ դարու կէսը։ Սա էր առաջին հարուածը. փաստերը խօսում էին ակնյայտնի կերպով, բառեր և նոյն իսկ ամբողջ նախադասութիւններ բառացի փոխառութիւններ էին. այդ նորագիւտ համեմատութեամբ մեկնուում էին Խորենացու մինչև այդ ժամանակ չհասկացուած մի քանի բառերը։

Պ. Կարիերի դէմ և նրա յայտնած կարծիքի առթիւ յօդուածներ տպուեցին «Հանդէս Ամսօրեայի» «Մուրճի», «Արարատի» մէջ. պրօֆ. Ն. Մառը Պետերբուրգի արևելեան բաժնի մասնագիտական թերթում. «Արևելք» և «Հայրենիք» օրաթերթը, իսկ «Բազմավէպը» մի շարք յօդուածներով մի ամբողջ ուսումնասիրութիւն հրատարակեց։

Հանդիսի յօդուածագիրը՝ յայտնի Հ. Ս. Պարոնեան էր,[2] որի գլխաւոր նկատողութիւնն է. եթէ Խո-

1. Ե. տ. էջ 250։

2. Հանդէս Ամս. 1892 էջ 343. Խմբագր. կարծես հա-

ընծայուած անձն անգամ անհնարին Խ-րդ. գլուխը (էջ 344)՝ նրա գործի ժամանակը անփոփոխ կը մնայ. այդ հաստատում են նրա ոճը, լեզուն, հեղինակի արտաշալի տուած տեղեկութիւնները իւր անձի մասին: Իսկ Կարիերի ասածների դէմ առարկում է, թէ կարող էր Սեղբեստրոսի վարքի լատիներէն թարգմանից առաջ՝ յունարէն լեզուով համառօտ վարք գոյութիւն ունենալ. որից օգտուել է և լատիներէնի հեղինակը և Մովսէս Խորենացին: Սակայն այս յօդուածը իւր էութեամբ չէր կարող խախտել և հերքել Կարիերի ասածները. յօդուածի փաստական մասը շատ թոյլ էր:

Այդ կողմից աւելի զօրեղ և համոզիչ էր պ. Ս. Մալխասեանի յօդուածը «Մուրճի» [1] մէջ, ուր նա մի շարք շատ հաւանական թուացող փաստերով աշխատեց ցոյց տալ, որ Խորենացու յիշեալ գլուխը յետամուտ յաւելուած է (Enterpollation)՝ որի փոխարէն բնագրում եղել է Հռիփսիմեանց Հայաստան գալու և Գրիգոր Լուսաւորչի գործերի պատմութիւնը:

Բազմավէպի յօդուածների հեղինակը Բ. Վ. Սարգսեանն է. Նա այդ առթիւ տպեց Սեղբեստրոսի ամբողջ վարքը յունարէն բնագրի հետ միասին՝ պարզաբանուած երկար յառաջաբանով: Պարոնեանի հետ սա էլ համակարծիք է, միայն փաստերով է խօսում: Սորա առաջ բերած հիմունքներն են.

ա. Արդէն Դ-րդ գլխուց սկսած յայտնի է Կոս-

մակարծիք չէ յօդուածագրին. «Այս յօդուածը ուղղած է մեզ Ս. Վ. Պարոնեան՝ զոր կը հրատարակեմք անփոփոխ հեղինակին թողլով ամեն երաշխաւորութիւն: Խմբ.»

1. Մուրճ՝ 1892 դեկտեմբեր:

տանդին Մեծի Ծննդեան այն առասպելախառն պատ-մութիւնը ըստ որում նա Հեղինեայ պոռնկի զաւակ էր։ Զոսիմոս հեթանոս պատմագիրը գրելով 410—431 թ. առաջինն է յիշում պոռնիկ Հեղինէի անունը[1] (էջ ԺԲ.)։

բ. Սոզոմէնը գրում է 439 թ-ին իւր պատմու-թիւնը։ Նրա մէջ կան Սեղբեստրոսի վարքի հետքեր (էջ ԺԲ)։

գ. Գելասիոս պապը 494 թուին հրատարակում է ընդունելի և անընդունելի գրեանց ցանկ, ուր յիշ-ուած է Սեղբեստրոսի վարքը իբրև վաղածանօթ և՝ շատ եկեղեցիներում ընդունուած գիրք. հետևապէս լատիներէնը աւելի շուտ է գրուել կամ ուղիղը յու-նարէնից՝ որոշ փոփոխութեամբ թարգմանութիւնը ա-ւելի շուտ է քան 494 թիւը, այլապէս չէր կարող հան-րածանօթ լինել։

Հ. Բարսեղը ունի մի քանի երկրորդական փաս-տեր, որոնք միացնելով էականների հետ եզրակացնում է. «Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի ստեղծաբանու-թիւնք յարևելից անցած են յարևմուտս, անտի ապա շրջան ընելով, գրեաթէ մէկ դար վերջ, վերադարձան յարևելս բայց կերպարանափոխութեամբ» (էջ ԺԸ)

1. Հ. Բ. Սարգսեան. էջ ԺԲ. «Զոսիմոս եթէ չէ նախ-կին հեղինակ Կոստանդիանոսի և Սեղբեստրոսի պատմութեան, այլ անշուշտ ունեցած է ի դիմաց Դ-րդ դարու հեղինակու-թիւն մի, յորմէ համառօտ տեղեկութիւնքը քաղում է, որ իրեն համար պատմական արժէք ունէին և կամ նպաստաւոր էին իր հեթանոսական դիտումներուն և թէ այս հեղինակու-թիւնս՝ արևելքի մէջ, արևելեան լեզուով գրուած էր»։

ուրեմն Խորենացին օգտուել է շատ շատերին աղբիւր. ծառայող Սեղբեստրոսի սկզբնական վարքից։[1]

Կարիերը կարիք չզգաց և ոչ մէկին պատասխանելու. և ինչպէս ոչ ոք էլ չէր կարողացել հերքել նրա ասածների էական մասերը։

Կարծես բոլոր հայագէտները արդէն հաշտուել են այդ մտքի հետ, որ Խորենացու գրութեան ժամանակը այլ ևս չէ կարելի հաստատուն պահել։

Միայն պ. Մառն է շարունակում հակառակել, որը քննելով Կարիերի յօդուածները՝ ասում է. «Մենք կարող ենք համաձայնուել Փրանսիացի գիտնականի հաստատած փաստերի հետ, բայց ցանկալի է յիշել, որ կան նաև ուրիշ փաստեր, որ ուրիշ բնաւորութիւն ունին և որոնք նոյնպէս արժանի են ուշադրութեան», որոնց քննութեանը նուիրում է նա իւր գեղեցիկ ուսումնասիրութիւնը։[2]

## Թ.

Երբ Կարիերի առաջին յօդուածը այդքան յաջողութիւն գտաւ, բնական էր որ մի անգամ ընթացած շաւղով ընթանար, մանաւանդ երբ Նորայր Բիւզանդի մասնաւոր նամակից իմանում է, որ կան Սեկրատի պատմութեան և Սեղբեստրոսի վարքի հայերէն թարգ-

1. Հ. Բ. Սարգսեանի տեղեկութիւններով չափազանց բարդուած աշխատութիւնից մի քանի անգամ կարդալուց յետոյ միայն՝ կարողացայ վերայիշեալ էական մտքերը ի մի ամփոփել։

2. Н. Марръ. О начальной исторіи Анонима, къ вопросу объ ист. М. Хор. по поводу критическихъ статей А. Каріера.

մանութիւնը։[1] Խնդրի կարեւորութեան պատճառաւ յարգելի գիտնականը յանձն է առել գնալ Վենետիկ եւ առ տեղեաւն ծանօթանալ հայերէն ձեռագրի հետ։ Հայերէն բնագիրը եւ Խորենացու պատմութիւնը՝ իրար շատ նման էին, մանաւանդ պատմութեան սկսուածքի առաջի տողերը որ համարեա բառ առ բառ իրար ծածկում էին։ Եզրակացութիւնը պարզ էր եւ անխուսափելի, մանաւանդ՝ երբ բաղդատութեան նոր նիւթ տուացաւ Սեղբեստրոսի վարքի հետ միացած Սոկրատի պատմութեան մէջ.— Վրաց դարձը Նունէի ձեռքով։ Իբրեւ արդիւնք եւ ամփոփումն այդ ուսումնասիրութեան յայտնեց նա այս հետեւանքը։[2]

Ա.—Մովսէս Խորենացին Բ. գրքի ՁԳ գլխից սկսած բազմաթիւ փոխառութիւններ է անում Սոկրատի եկեղ. պատմութիւնից (էջ 185)։ Մինչեւ կոստանդին մեծի ժամանակը նա ձեռին ունէր Եւսեբիոսի ժամանակագրութիւնը եւ եկեղեցական պատմութիւնը, այնուհետեւ նրան առաջնորդ է ծառայում Սոկրատը։

Բ.—Խորենացին գործ է ածել Սոկրատի այն հայերէն թարգմանութիւնը՝ որ յայտնի է Փոքր Սոկրատ անունով, երբ սա արդէն միացած էր Սեղբեստրոսի վարքի հետ եւ ունէր յապաւումներ ու յաւելուածներ։

Գ.—Այս թարգմանութիւնը Է. դարու վերջի տա-

1. Մենք զարմանք ենք յայտնել մի առթիւ, թէ ինչու պ. Կարիերը չէ իմացել Վիստոն եղբարց կարծիքը. պ. Նորայրից ստացած տեղեկութիւնը կարող էր նա գտնել Հ. Զարբհանալեանի գրքում, Ասողկի Հրատարակութեան մէջ, Հայկազեան բառգրքում, Չամչեանի պատմութեան մէջ եւլն.։

2. Հանդէս Ամս. 1892. էջ 372. սկսած 1893-ից էջ 134. 178.

ըննութիւն է, հետևապէս Մովսէս Խորենացու Հայոց պատմութիւնը չէր կարող Ը-րդ դարու առաջի տարիներից աւելի շուտ գրուած լինել։

Եւ ով չփորձեց անգամ հիմնովին քննելու պ. Կարիերի ասածները. նոյն իսկ պ. Նորայր Բիւզանդը իւր գրած գեղեցիկ յօդուածում Հանդէսի մէջ,[1] բաւականանում է միայն Փ. Սոկրատի ժամանակը որոշելով. բայց նա կարող էր աւելին անել, որովհետև մանրամասն ուսումնասիրել էր, և Խորենացին ու Սոկրատը իրար հետ բաղդատել։

Գարագաշեանը միանգամայն համակարծիք է պ. Կարիերին. «Նայելով Խորենացւոյն պատմութեան լեզուին, որ չէ միակերպ և գլուխներէն ոմանք, որ են եկամուտ, այսինքն յայլմէ մուծեալ և յետին, որպիսի են հաւանականապէս առաջին եօթն գլուխք և մանաւանդ Գ. գպ. ԿԱ գլխոյն վերջին հատուածն և ԿԲ գլուխ ողջոյն՝ կրնանք զյօրինումն այն պատմութեան դնել ոչ ի Զ-րդ, այլ յեօթներորդ դարու իսկ. մանաւանդ որ Մ. Խորենացու անուն գրք[2] չենք գտներ յիշած ի մատենագիրս Է. դարուն»։[3]

Պ. Կարիերը իւր յօդուածների շարքը վերջացրել է յայտնելով. «Հաստատապէս համոզուած ենք, որ Սոկրատի հայերէն հրատարակութիւնը, որ յայտարար-

1. «Իմ կարծիք զկրկին հայ թարգմանութեանց եկեղեցական պատմութեան Սոկրատայ սքոլաստիկոսի և զնոցին թարգմանչաց». Հանդ. Ամս. 1893. էջ 273 և յն.։

2. Այդ հիմունքը թէև շեշտած, ամենաթոյլն է։

3. Ա. Մ. Գարագաշեանի, Քննական պատմ. Հայոց. Թիֆլիզ 1895. մասն Գ. էջ 347. 348.

ուել է Էջմիածնից՝ պիտի լրացնէ և զօրեղացնէ ստա-ցած նպաստաւոր ապացոյցները»։

Փորձենք ցոյց տալ թէ ինչ չափով և ինչ ձևով են արդարանում նրա ենթադրութիւնը։ Ինչ էլ լինի այդ արդիւնքը՝ կը մնայ հաստատ, որ պ. Կարիերի յարուցած և բաւական սուր ու դիւրըմբռնելի կերպով պարզաբանած խնդիրները նոր զարկ տուին ընդհանրապէս հայագիտութեան և ի մասնաւորի՝ Խորենացուն։ Մեր յիշատակած մի շարք յօդուածները, լուրջ աշխատութիւնները և նոյն իսկ Սոկրատի պատմութեան հրատարակութիւնը, բոլորն արդիւնք են յայտնի Ֆրանսիացու յարուցած շահագրգիռ խնդրին։ Միշտ այդ է և կը լինի անկողմնապահ և իսկական գիտնական արժէք ունեցող արտայայտած մտքերի արդիւնքը։

## Ժ.

*Խորենացին չէ ճանաչել Սոկրատի եկեղեցական պատմութիւնը, եւ ոչ էլ որեւէ կերպ օգտուել նրա յունարէն կամ հայերէն բնագրից, բայց օգտուել է Սեղբեստրոսի վարքից, թէեւ ոչ մեր ձեռքը հասած հայերէն թարգմանութիւնից:*

Սոկրատը՝ Սոզոմէնի պէս սկսում է գրել այնտեղից, ուր դադարեցրել էր *Եւսեբիոս Պամփիլեան* իւր եկեղեցական պատմութիւնը։ «Եւսեբիոս Պամփիլեայ յամենայն տասնեսին գիրսն եդեալ զեկեղեցական պատմութիւն, դադարեաց ի ժամանակս Կոստանդնի թագաւորի յորս և առ Դիոկղետիանոսիւ եղեալ հալածումն դադարեաց (էջ 1) . . . Իսկ մեր նախադրեալ շարադրել զառ ի նմանէ մինչև առ յեկեղեցեացն եղելոց պատճառայն» (էջ 2) այն է, Փրկչի 306 թ-ից

մինչև 439 թ.․ Թէոդոս Փոքրի թագաւորութեան ժամանակը։ Նա համառօտակի անցնելով Դիոկղետիանոսի պատմութիւնը, երկար կանգ է առնում նրա յաջորդների մասնաւորապէս եկեղեցական գործերի վրայ, յիշելով նաև քաղաքական դէպքերը։ Վերոյիշեալ ժամանակամիջոցում յաջորդաբար պատմուած է Կոստանդինի Մեծի, Լիկինիոսի, Կոստանդինի Փոքրի, Կոստանսի, Յուլիանոսի, Յոբիանոսի, Վաղէսի, Վաղէնտիանոսի, Գրատիանոսի, Թէոդոս Մեծի, Ոնորիոսի, Արկադիոսի և Թէոդոս Փոքրի ժամանակ պատահած եկեղեցական գործերը։ Այդ կայսրների մասին պատմում է նաև Խորենացին։ Կաշխատենք երկու պատմագիրների համեմատելով գտնել ընդհանուր կապը, և դրանով ապացուցանել, թէ կարող է՞ր արդեօք մէկը միւսին աղբիւր ծառայած լինել։ Կարող է՞ր Խորենացին Սոկրատի բազմակողմանի տեղեկութիւններով հարուստ պատմութիւնից միայն մի քանի առասպելներ ընտրել։

1.

ա. Մովս. Խոր. Բ. գլ. ՁԳ. էջ 165. — Սոկ. Փոք. Ա. 2. էջ 4. — Ընդարձակ Սոկ. Վ. էջ 714—716.

Սա (Կոստանդիանոս) յառաջ քան զթագաւորելն. մինչդեռ կեսար էր. պարտեալ ի մարտին և տրտմութեամբ մեծաւ ննջեալ. երևութացաւ նմա ի քուն խաչ աստեղաց յերկինից պարունակեալ գըրով, ասէ. Այսու յաղթեա. զոր արարեալ նշա-

- Ի միջօրէի մինչ արե-գակն ընթանայր ի մուտն. եսես յերկինս խաչաձև օրէն լուսոյ, յորում ըն-թեռնոյր գրեալ այսու յաղթեա .... արար զրօշ խաչաձև և մտեալ ի պա-տերազմ յաղթեաց զՄաք-սենտիոս։

Իսկ Բիւզանդացւոյն զնա պարտել։ Եւ Կոստանդիանոս կայսր էր պարտեալ յայժ.. Տեսանէ այա ի գիշերին յայնմ յորում ննջէր, տեսիլ ան-երևակի յերկինս. խաչ զծամանական ունելով վեր-նագիր յաստեղաց. այսու յաղթեաց .... Հրամայեաց

1. Դարձ եմ գրել Վենետ. Հրատ. 1865 թ.

նոյն և յառաջերեալ յաղթեաց պատերազմացն։

տանել զաւրինակ խաչին .. և տանել առաջի պատերազմաց և յաղթեաց։

Համառ. Վարք Սեղբեստրոսի էջ 715.

«Եւ յաղթահարեցին Բիւզանդացիքն զզաւրսն Կոստանդիանոսի, եւ . . . տրտմեալ նստէր, և տեսանէ ի տեսլեան գիշերին վերնագիր տառեղանշան խաչի . . . Եւ հրամայեաց գնշան խաչին կայսրն Կոստանդիանոս առաջի իւր և զօրացն մտանել ի մարտն. և պարտեաւ Մաքսիմիանոս»։

Համառօտողը կրկնութիւնից խոյս տալով, Փոքր Սոկրատի պատմութիւնից հանել է այդ մասը, քանի որ Սեղբեստրոսի վարքի մէջ կար նոյնը։ Խոր. և Ընդ. վարքը կարելի է առել բառացի արտագրում են նոյն աղբիւրից, Խորենացին համառօտում է։ Սոկրատը տարբեր է պատմում, նրա պատմութեան մէջ տեսիլքը ցերեկն է երևում։ Համ. վարքը չունի «Այսու յաղթեա» յայտնի բառերը։ Ընդ. վ. ունի՝ «Հրամայեաց տանել զաւրինակ խաչին». նոյնը Համ. վ. ըստ յուն. τὸ σημεῖον τοῦ σταύρου. Խոր. «արարեալ սիգնոյն» լատիներէնից է՝ signum. այդ բառը Խոր. աղբիւրինն է։ Ուրեմն Խոր. այդ դէպքում ունի մի աղբիւր անկախ Սեղբեստրոսի վարքի հայերէն թարգմանութիւնից. նա Համ. չէ օգտուել, որովհետև աւելի, և այն էլ ոչ ինքնատեղծ տեղեկութիւն ունի. Ընդ. նոյնպէս ոչ, նրա մէջ չկայ «սիգնոյն» բառը։ Խոր. տալիս է իւր աղբիւրը. «Որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»։ Այս տեսիլը պատմում են Եւսեբիոսը. Վարք Կոստ. Ա. 28. բոլորովին նման Սոկրատին. Ռուփինոսը և Սոզոմենը՝ որոնք սակայն ունին տարբերութիւններ։

## 2.

**Խոր. Բ. գլ. ՁԳ. էջ 165.**

Բայց յետոյ հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսիմինայ,[1] ի դստերէն Դիոկղետիանոսի, յարոյց հալածանս եկեղեցւոյ. և զբազումս վկայեալ, ինքն եղեփանդական[2] բորոտութեամբ ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ վասն յանդգնութեանն։ Զոր ոչ կարացին բժշկել Արիոդական կախարդքն և Մարսկեան բժիշկքն. յաղագս որոյ յղեաց առ Տրդատ՝ առաքել նմա գիւթս ի Պարսից և ի Հնդկաց. սակայն և այնք ոչ հասին նմա յօգուտ։

Զոր և քուրմք[4] ոմանք ի դիւաց խրատուէ հրամայեցին բազմութիւն տղայոց զենուլ յաւազանս և ջերմ արեամբ լուանալ և ողջանալ։

Որոյ լուեալ զլալիւն մանկանցն հանդերձ մարցն կականմամբք, գթացեալ մարդասիրեաց զնոցայն լաւ վար-

**Համ. Վարք Սեղբ. էջ 721.**

Բայց հրապուրեալ ի կնոջէն իւրմէ Մաքսինեանայ ի դստերէն Դիոկղետիանոսի, և արար հալածանս եկեղեցւոյ Կոստանդիանոս. և բազումք եղեն վկայք և (խոստովանողք)... Յայնժամ եղափանդական բորոտութիւն ըզբոլոր մարմին թագաւորին Կոստանդիանոսի ապականէր. վասն որոյ Արիոկեան՝ կախարդք և Արիստակեան բըժիշկ ոչ կարացին օգնել, ոչ անդր, և ոչ Պարսից և (Հնդկաց) և սա տարակուսեալ տրամէր.

Ըղձանային քուրմք ի դիւաց հրապուրանաց՝ յոլովից տղայոց զենուլ յաւազանս և լուանալ ջերմ արեամբ զանձըն. և այնպէս առողջանալ (ասէին)։

Մայրքն աշխարէին և լային զմահ մանկանցն։ Եւ լուեալ թագաւորին ... զըղ-

1. Երեք օրին. Մաքսինեայ. մի օրին. Մաքսինդայ։
2. Բ. Մի օր. եղեփընդակն.
3. Վեն. ԱԳ. առիոսական.
4 Մի օր. քրմանք.

կացեալ քան զիւրն փրկութիւն։

Յաղագս որոյ զփոխարէնն յԱստուծոյ ընդունի. յանըրջական անսասութիւն առաքելոցն առեալ հրաման սրբել լուացմամբ կենսատու աւազանին ի ձեռն Սեղբեստրոսի եպիսկոպոսի Հռոմայ, որ ի նմանէ հալածանացն թագուցեալ էր ի Սորակտին՝ լեառնն։ Յորմէ և աշակերտեալ հաւատոց, զբռնաւորըն ամենայն բառնալով Աստուծոյ յերեսաց նորա, որպէս համառօտ ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս։

ջացաւ և եղաց.. քաւ լիցի ինձ խողխողել զմանկունս ... Թէպէտ և ի մահ ձգէ զիս ախտ բորոտութեանս և անբժշկելի մնամ։

Եւ յայնմ գիշերի տեսանէր Թագաւորն Կոստանդիանոս ի տեսլեան զառաքելոյն Տեառն զՊետրոս և զՊաւղոս, որք ասէին ցնա. Առաքեալք յԱստուծոյ ողորմութիւն քարոզել և բժշկութիւն մարմնոյ ախտի ընդ նմին վասն ողորմութեան զոր ցուցեր առ տղայն անմեղս։ Եւ արդ՝ առաքեա կոչեա ըզՍեղբեստրոս, զՏեսուչն Հըռոմայ, զառ ի քէն հալածեալն, որ կայ ի լերինն Սերապիոն[1] ի յայրի անդ, որ եկեալ խօսեսցի ընդ քեզ բանս փրկութեան և լուասցէ ի հոգևոր աւազանին ....

Ինչպէս տեսնում ենք երկու պատմութիւնը միմեանց յար և նման են, սկիզբը աւելի բառացի, շարունակութիւնը միայն մտքով. բայց կան տարբերութիւններ։ Այս հատուածը բաղդատելով նաև Մեծ Սոկրատի համապատասխան հատուածի հետ (էջ 720) և Ռուփանէսի (էջ 103) կամ որ նոյնն է՝ Յայսմաւուրքի հետ, գտնում ենք ակնյայտնի նմանութիւն բոլորի մէջ։ Խորենացին և համառօտ օրինակը շատ

1. Չորս. օր. ի Սերապտիոն. մի օր. ի Սերապիոն։

տեղերում իրար ծածկում են. Նրանք իրար զիջանելու մէկը արտագրութիւն է միւսից. Հարցը նրանում է թէ որն է բուն բնագիրը։

| Խոր. | Համ. | Ընդարձ. | Յապմ. |
|---|---|---|---|
| Մաքսիմինայ և Մաքսիմիանեայ Մաքսենդեայ. | Մաքսիմիանոսայ. | Մաքսիմինայ. | Մաքսենդեայ. |
| Արիոդական Մարիոնեան. | Արիոնեան արիուսկեան Արիոսիկեան | Արիոզեան. Մարոնիկեան. | չիք. |
| Մարդն կականմամբք. | չիք. | կականագոչ ողբովք. | չիք. |
| Ի Պարսից և ի Հնդկաց. | Պարսից և Հայոց. | ի Պարսից. | ի Պարսից. |
| բայց հրապուրեալ ի կնոջէն իւրմէ. | նոյն. | չիք. | նոյն. |
| յարոյց հալածանս. | արար հալածանս. | չիք. | յարոյց հալածանս. |
| զբաղումս վկայեալ | տարբեր. | զբաղումս սատակէ | չիք. |
| Եղեփանդական բորոտութիւն. | նոյն | Եղափանդական բորոտութիւն | |
| ըստ բոլոր ընկալեալ մարմնոյն ապականեցաւ. | տարբեր. | ըստ բոլորն ընկալեալ մարմնոյն վիրաւորեցաւ. | |
| Եւ այնք ոչ հասին նմա յօգուտ. | տարբեր. | ոչ կարացին օգնել նմա. | ոչ կարացին բժշկել |
| չիք. | չիք. | և մորք մանկանցն. | և մորք աղայոցն. |
| Սեղբեստրոս եպիսկոպոս Թագուցեալ ի Սորակտեան լեառն. | Սեղ. տեսուչ կայ ի լերինն Սերապիոն. | Հերարձակ Սեղբեստրոս եպիս. ի լերինն Սերապտիոն Թագուցեալ. | Հերարձակ Սեղ. եպիսկոպոսապետ. չիք. |
| քուրմք ոմանք ի դիւաց խրատուէ տղայոց զենուլ | ոմանք առ ի քրմանց ուսեալ լինել արեամբ ման- | քուրմքն ի դիւաց հրապուրանաց ի տղայոց զենուլ յա- | Ճարտարք և Ադիւաց զանգուածք ժողովեալ մանկունս |

1. Խոր. մարիսկեան ընթերցուածը ըստ գրչի սխալ պէտք է համարել. Սոկ. համառօտողը ցանկացել է այդ անհասկանալի բառը հասկանալի դարձնել և շինել է արիոսիկեան։

յուսաղած և չէր կանց և չէր գո- ստղանծ և լուսա- ստանուայս և լու-
րծեամբ լուսանալ. լոյ. լուսանալ։ Նաև չէր արեամբ սացեն չէրմակէրմ
և տառղլանալ. արեամբն ողայրցն
և այնաց տառղ-
լացէս։

Համեմատական տախտակը մեզ տալիս է հետևեալ պատկերը։ Խորենացին Սեղբեստրոսի Համ. վարքի հետ համաձայնուելով հանդերձ, ունի այն յայտնի տարբերութիւնները։ Պուրս է գալիս այն, որ մանրամասնութեան մէջ ընդարձակին է նման, իսկ մի քանի դէպքում Խոր. և Համ. նման են Յայսմաւուրքին։ Խորեն. ընդարձակից չէ օգտուել, պատմութեան ամբողջութեամբ շատ տարբեր է նրանից։ Նա չէ առել և համառօտից. որովհետև ունի բառեր, նախադասութեան ձևեր, որ համառօտում չկան. այլ Խորենացին ունեցել է տարբեր աղբիւր, որ նման է ընդարձակին և Յայսմաւուրքի աղբիւրին։ Իսկ համառօտը՝ նա իւր առաջ ունի Խորենացուն. նրա համար վերջինս անպայման հեղինակութիւն է։ Համառօտը ոչ թէ բաւականացել է միայն Սեղբեստրոսի վարքի սկզբնական օրինակը կրճատելով ի մի ամփոփել, այլ նա նրան սրբագրել է համաձայն անպայման հեղինակաւոր Խորենացու պատմութեան։

«Մարցն կականմամբ»՝ Խորենացու բառը չէ, այդ բառը չկայ համառօտի մէջ. յունարէնն է αἱ Μητέρες κοκχυτοῦς ἀλαλάγμαι ἀφιεῖσαι որ ընդարձակում թարգմանուած է «մարցն կականագոչ ողբովք»։ Նոյն է «ի Հնդկաց» որ աղքատէր համառօտը «ի Հայոց» է դարձրել. ինչպէս շատ անգամ։ Խոր. ընդարձակի հետ ունի բնագրի ուղիղ ձևերը. Մարսիկեան և Արիոլական Μαρσικοὶ 'Αριολοι,

մինչդեռ համառօտողը երբեք անծանօթ անհասկանալի բառեր փոփոխել է։

Տեսնում ենք թէ ինչպէս նոյն հատուածի զգուշաւոր և մանրազննին համեմատութիւնը բոլորովին տարբեր եզրակացութեան հասցրեց մեզ քան պ. Կարիերին։ Սակայն այդքանով մենք չենք բաւականանալ. շարունակենք և կը տեսնենք, որ ամէն անգամ եթէ կայ փոխառութիւն Խորենացուց է եղել։

3.

Խոր. Բ. գլ ՁԸ. էջ 173.

«Ի բառնալն Աստուծոյ ըզբանաւորսն ամենայն յերեսաց Կոստանդիանոսի՝ մեծարեալ նա զԼիկիանոս մեծութիւն յոյժ. և ետ նմա կնութեան զքոյր իւր ոչ համամայր, ծիրանեօք և պսակաւ կայսերական զարդարեալ զնա. և յերկրորդականս հաստուցեալ պատիւս, արքայ ամենայն արևելից կացոյց»։

Մեծ. Սոկ. Ա. էջ 3. 5.

«Մաքսիմիանոս Գալերիոս վարեալ զտէրութիւնն ամենայն մեաւ՝ յառաջագոյն եգեալ թագաւոր զԼիկիննոս, և յետ սակաւիկ Լիկիննոս թագաւորակից նորա և փեսայ (Կոստանդիանոսի) որում ետ կնութեան զքոյր իւր ըզԿոստանդեա, կեայր յարևելս»։

ՓՈՔ. ՍՈԿՐԱՏ

«Ցորժամ էառ (Կոստանդիանոս) զյաղթութիւն միահամուռ թագաւորացն՝ զԼիկիանոս քեռայր իւր թագաւորեցուցանէր»։

Մեծ Սոկրատը շատ ընդարձակ է. մենք յիշատակեցինք կարևորագոյն մասը. նա համաձայն ստուգապատում պատմութիւն Լիկինոսին համարում է յաջորդ Մաքսիմիանոս Գալերիոսին, իշխանութեամբ

համահաւասար Թագաւորակից Կոստանդին Մեծի: Իսկ ըստ Խորենացու նա արևելքի կայսր է նշանակւում Կոստանդնի ձեռքով, որը նախապէս իւր ոչ համամայր քրոջը նրան կնութեան է տալիս և մեծամեծ պատիւներով առանձին կերպով պատւում: Ոչ համամայր դարձուածը անկասկած Խորենացու յաւելուածն է, որպէս զի Գլ. ՁԳ. ի մէջ պատմածի հետ համաձայնեցրած լինի: [1]

Խորենացին օգտուե՞լ է Փոքր Սոկրատից: Փոքրը միայն այսքան է ասում. «զԼիկիանոս քեռայր իւր Թագաւորեցուցանէր», որով բացարձակ հակառակում այն օրինակին, որից կրճատուել է: [2] Խորենացին ունի մանրամասնութիւններ. Նրան հարկաւոր էր աղբիւր, որ Փոքր Սոկրատը չէ. բայց ինքը իբրև հեղինակութիւն Սոկրատի համառօտօղին պատճառ է դարձել, որ նա հակառակ իսկական բնագրին, Կոստանդիանոսից է Թագաւորեցնել տալիս Լիկիանոսին:

Դժբախտաբար մեր ձեռին չունենք Սոզոմէնի, Լակատանիոսի պատմութիւնը և «Աղէքսանդրեան Քրոնիկոնը», որպէս զի հնար ունենայինք որոշել Թէ Խորենացու պատմածը դոցանից որին է համապատասխան:

1. Սոկր. Գ. 1 էջ. 218 «Կոստանդիոս երկուս ունէր միահօրս եղբարս. ոչ ի նմին նորա մաւրէն եղեալս»:

2. Եւսեբիոս եկեղ. պատմ. համաձայն է Խորենացուն. «Արժանի համարեալ է Լիկիանոս ընդունել զերկրորդ աստիճան յիւր Մեծի ինքնակալին Կոստանդեայ. և առնուլ ի կնութիւն զքոյր նորա, և այսպէս ի հօյակապ ընտանիս նորա ընկալեալ լինի»:

4.

**Մ. Խոր. Բ. գլ. ՁԸ. էջ 170**

«Քանզի նախ առ ի հաւատսն գատանի գրժող (Լիկիանոս) և երկրորդ առ բարեգործն իւր (Կոստանդիանոս) ապստամբ. Յարոյց հալածանըս եկեղեցւոյ (տես ԶԳ. էջ 165). և նենգութիւն գաղտնի ընդդէմ Կոստանդիանոսի. նաև չարիս բազմազանս ամենեցուն հասոյց, ցանկասէրն այս և գարշելի ալեոր . . . (ապա Գլափիռեայ պատմութիւնը)։

Եւ իբրև յայտնեցաւ դաւն և գիտաց թէ նմա լուռ ոչ լինի Կոստանդիանոս, ժողովեաց զօրս ընդդիմանալ պատերազմաւ . . . .

Իսկ իբրև եկն յաղթողն Կոստանդիանոս, մատնեաց Աստուած ի ձեռս նորա զԼիկիանոս, յոր խնայեալ որպէս ի ծերունի և ի քեռայր՝ ետ տանել ի Գաղղիուս հանդերձ երկաթի կապանօք, դընել ի մետաղս զի աղօթեսցի

**Սոկր. Մեծ. Ա. 3 էջ 6—7.**

Իսկ Լիկիննոս թագաւորակից նորա՝ հաստատուն հեթանոսութեանն առէր զքրիստոնեայս։ Եւ յայտնի հալածանս ի վերայ նոցա առ ահին Կոստանդիանոսի երկնչէր յարուցանել, այլ ծածուկ զբազումս նեղէր։ Ապա և յայտնի վնասել նոցա ձեռնարկէր. և եղև հալածանք առ ախոյեան՝ անդ ուր էր Լիկիննոս։ Իբրև զայս և զայսպիսս բռնաբար գործէր, ոչինչ ծածկէր ի Կոստանդիանոսէ»։

**Գլ. Դ. էջ 8.**

Ի վերայ՝ այսորիկ յայժ ցասոյց զթագաւորն Կոստանդիանոս և եղև թշնամութիւն ի բաց եդեալ զառ երեսս բարեկամութիւնն, և պատերազմիլ սկսան ընդ միմեանս։

Եւ եղև մարտ բազում.. և յաղթահարեալ անձնատուր եղև։ Ըմբռնեալ զնա կենդանւոյն մարդասիրէ և ոչ սպանանէ, այլ հրամայէ նմա կեալ ի Թեսաղոնիկէ հանդարտութեամբ։ Իսկ նորա առ ժամ մի հանդարտեալ, ապա

1. Տես վերև «զԼիկիանոս քեռայր իւր կարգէր»։

առ Աստուած որում մեղան Թերեւս երկայնամիտ լիցի առ նոսա։

ժողովեաց զհամախորհս իւր զբարբարոսն և խորհէր ի պատերազմ. Զայս գիտացեալ Թագաւորին Հռովմայեաց սպանանել զնա՝ և ըմբռնեալ սպանին.

Փոքր Սոկրատը այս գլխում շատ քիչ է տարբերւում Մեծից, նա նոր մասեր չունի, այլ ուղղակի կրճատուած է, ուստի աւելորդ ենք համարում այստեղ կրկնել. հետաքրքրւողները թող բաղդատեն բնագիրը։

Կարիերի համեմատած գլուխներից մէկն էլ այս է. սակայն ոչ մի դէպքում նա այնքան չափազանց վստահ և անհիմն ենթադրութիւններ չէ արել, ինչպէս այս գլխի վերաբերմամբ։ Հայերէն թարգմանութիւնը ձեռին չունէր, այլ օգտւում էր միայն յունարէն բնագրից։ Թողնենք նրա ենթադրութիւնները. բայց նախապէս նկատենք, որ Խորենացու և երկու Սոկրատների Լիկիանոսի մասին պատմածների մէջ այնքան կապ կայ, որ իւրաքանչիւր ոք ով կանխակալ կարծիք չունի, անկարող կը լինի որ և է փոխառութիւն մէկը միւսից գտնել. երկու պատմութեանց մէջ իրաւ է եղելութեանց նկարագրութեան մեծ նմանութիւն կայ. բայց դա այնպիսի նմանութիւն է, որ ամեն մի անձ ցանկալով պատմել Լիկինիոսի գործերը, ինչ աղբիւրից էլ առնելու լինէր, այնու ամենայնիւ անհրաժեշտաբար այդ չափով նմանութեան արդիւնքի կը հասնէր։

| Խոր. | Մեծ. Սոկրատ. | Փոքր Սոկրատ. |
| --- | --- | --- |
| Նենգութիւն գողանի ընդդէմ Կոստանդիանոսի. | Ծածուկ զբաղւում նեղէր. | Գողանի վնասել շանայր զքրիստոնեայսն. |
| Եւ չարիս բազմագանս | Եւ եղև հալածանս | |

Կ.

պմննեցուն հասոյց. որ այս առ աեղեաւն. չէր.
ընդ իւրով իշխանութեան
էին։

ծաղովեաց զօրս ընդդէ- մնդ եղև միայն ուր էրն Տարուցանէ պատերազմ
մանալ պատերազմաւ։ Լիկիանոս. և պ ա տ ե- ա ռ նա։
բ ա շ մ ե լ սկսան ընդ
միմեանս։

Ահա միակ նմանութիւնները և այն էլ Մեծ Սոկրատին աւելի մօտ։ Սակայն պ. Կարիերը բաւական սուր զուգադրութիւններով գալիս է այն հետևանքին թէ ամբողջը՝ Փոքր Սոկրատից է առնուած։ Նա այսպէս է դատում. Խոր. նոյն գլխում Գլափիւրոս կոյսի և Ամասիայի եպիսկոպոս Բասիլիոսի պատմութիւնը կարող է առնուած լինել ս. Բասիլիոսի վարքից. ցաւն այն է, որ Խոր. և վարքը շատ են իրարից տարբեր. ուստի ենթադրում է, Եւսեբիոսի եկեղեցական պատմութիւնն է Խորենացուն աղբիւր ծառայել։ Սակայն այդ կարծիքն էլ իբրև ոչ բաւական հիմնաւոր, ստիպուած է մի կողմ թողնել։ Այդ ենթադրութեանց վրայ երրորդն աւելացնելով եզրափակում է. Խոր. ՁԸ գլուխը գրելիս՝ օգտուել է սկզբում Եւսեբիոսից. Լիկինիոսի մասին տեղեկութիւններով, իսկ միջի մասը ս. Բասիլիոսի վարքից, ոչ անմիջապէս, այլ հայերէն փոքր Սոկրատի միջոցաւ։ Ապացոյցներին են.

ա. Խոր. Կոստանդնի պատմութեան սկիզբը (գլ. ՁԳ.) առել է Փոքր Սոկրատից, շարունակութիւնն էլ անկասկած նոյն տեղից կառնէր։ Մենք ցոյց ենք տուել արդէն որ հակառակն է ուղիղ։

բ. Խորենացու գործածած «Գաղղիուս» յատուկ անուան անսովոր ձևը անունները այլաձեւող Սոկրա-

տից է. մենք տեսանք որ Սոկրատը (Մեծ և Փոքր) այդ անուան տեղ «ի Թեոդոսիկէ» ունի։

գ. Խորենացու գործ ածած «գնել ի մետաղս»[1] դարձուածը կայ Սոկրատի մէջ և նա քանիցս գործ է ածում։ Մենք տեսանք որ Սոկրատը այս անգամ այդ բառը չունի։

Այս դէպքումն էլ Կարիերի ասածները իրանք իրանց ժխտում են։ Խորենացին դժբախտաբար չէ ունեցել իւր ձեռին Սոկրատի պէս պարզ և ճիշդ տեղեկութիւններ տուող մի պատմագիր, այլ միայն և միմիայն Ամասիոյ եպիսկոպոս Բասիլիոսի վկայաբանութեան նըման մի գրուածք, որից նա միաժամանակ քաղել է ամբողջ գլուխը. և ոչ թէ մի մասը Եւսեբիոսից, մի քանի նախադասութիւններ Բասիլիոսի վարքից՝ այն էլ Սոկրատի միջոցաւ։ Իսկ թէ վկայաբանութիւնից է օգտուել և ոչ թէ լուրջ պատմութիւնից, հաստատ ապացոյց են Խորենացու հետևեալ տողերը, որով նա փակում է Կոստանդնի վարքը. «Զի ի չորորդ ամէ հալածանացն սկսեալ թագաւորել (Կոստանդիանոս) մինչև յերեքտասաներորդ ամն խաղաղութեամբ, զոր և այսօր տօնէ աշխարհ»,[2] վերջացած է ուղիղ այնպէս՝ ինչպէս լրանում է իւրաքանչիւր վկայաբանութիւն։

Լիկիանոսի պատմութիւնից յետոյ Սոկրատը շարունակում է պատմել Արիոսի հերձուածի ծագելը և Նիկիայի ժողովի պատմութիւնը, ապա Կոստանդին

1. Գ. Կարիերը սխալ է հասկացել և սխալ թարգմանել «ի մետաղս». տես այդ մասին Ն. Բիւզ. յիշ. յօդուածում գրած նկատողութիւնը.

2. Համեմ. Սոկր. Ա. 17 էջ 49 «Եւ տանեն նաւակատիս ի ԺԳ. սեպտեմբերի»։

ԿԲ.

Մէֆէի աշխարհագրութիւնը մինչեւ Խորենացու մէջ առաջինը վերջինիս շարունակութիւնն է կազմում, իսկ Սիրիոսի պատմութիւնը հետեւեալ ՁԹ գլուխն է դրած։

5.

| Խոր. Բ. գլ. ՁԲ. էջ. 174—175. | Փ. Սոկ. էջ 42—44. |
| --- | --- |
| Եւ ոչ պարտ վարկուցեալ ի Հռովմ դառնալ, այլ ի Բիւզանդիոն անցեալ հաստատէր զաթոռն իւր, յանդգնեալ իմն նախատեսութեանց հրամայեալ. գերապայծառ իմն առնելով շինուածս, հընդապատիկ յաւելեալ մեծացուցանէ։ | Իսկ Թագաւորն դառնայր յետ այսորիկ յարեւմըտից ի Կոստանդնուպոլիս .... եւ զհռոմէական քաղաքն իւր .... յարդարէր (շինուածս) ըստ տեսլեան ցուցակութեան նմա .... |

Խոր. մէջ ուրիշ տեղեկութիւններից յետոյ որ չկայ Սոկրատի մէջ, շարունակւում է.

| | |
| --- | --- |
| «Այլ Կոստանդիանոս ամենապատիկ յարդարեաց եւ անուանեաց Նոր Հռոմ. իսկ աշխարհ կոչեաց զնա Կոստանդիանու քաղաք։ Ասեն զայս եթէ գաղտնի եհան ի Հռովմայ զմտացեալն պաղատիոն քերածոյ, եւ եդ զնա ի փորանիններքոյ սեանն զառ ի յիւրմէ կանգնեալ. բայց այս մեզ անհաւատալի է, այլոց որպէս կամք իցեն։ | առաւելեալ յամենայնի քան զԹագաւորեալ քաղաքն Հռովմայեցւոյ որ Կոստանդինոս քաղաք անուանեաց հրամանաւ, եւ երկրորդ Հռոմ արկացոյց ի վերայ աշխարհին ... եւ հիմնարկութիւն սուրբ Սոփեայ ըստ անրջոյս տեսութեան Քրիստոսի եւ զպատկերս կացոյց յորմս ըստ քարոցն յարմարեալ հրամայէր. եւ տեղ փորանեա զերկքառեայն յասպարիսի քաղաքին հըրապարակեալ դնէր։ Զայս |

այժմ աւելորդ է ասել ըղ-
ձանալ և զլուանալ. զի յայ-
նըմ ժամ օրինօք . . .

## Մեծ. Սոկր. Ա. 16. էջ 42—44.

Իսկ Թագաւորն յետ ժողովոյն ուղղափառութեամբ կեցոյր. Եւ ի կատարել քսան ամին . . . . յինքեան իսկ համանուան որ յառաջն Բիւզանդ կոչէր, անենցայց զպարիսպն մեծամեծս ածելով շուրջանակի հոլովիւք զարդարեալ շինուածովք, հաւասար Թագաւորեցելոյն Հռովմայեցւոց Կոստանդնի քաղաք անուանելով. հրամանաւ և աւրինաւք երկրորդ Հռոմ տիրացոյց . . . և զգլխաւորն զերեքտասանան յասպարիսիս ի Նորին քաղաքիս հրապարակեալ գնէր. Զայս ասել այժմ աւելորդ թուեցի. տեսանէք յառաջագոյն կամ լսէք.

Մեծ Սոկրատի և Խորենացու մէջ պատմութեան ընդհանուր կապ կայ. Սոկրատը իր տեղեկութիւնները առել է Եւսեբիոսից «Որոց ի Թագաւորին գովեստի մեծամեծայն պատմութեամբ Եւսեբիոսի Պամփիլեա յիշատակ առնէ»։ Նոյնը չէ՞ արդեօք և Խորենացու աղբիւրը։

Այլ է Փ. Սոկրատը, որի մի շարք յաւելուած պարձուածները, որով պարձեալ հեռանում է իր բուն բնագրից, հաստատում է, որ համառօտը Խորենացուն համարեա բերան գիտէ։ Դա պատմում է համաձայն Խորենացու, թէ Կոստանդինը «դառնայր յարեւմտից ի Կոստանդնուպոլիս» և «ըստ տեսլեան ցուցակութեան» կամ «ըստ անդրիոյն տեսութեան Քրիստոսի» ձեռնարկում է վերաշինել Բիւզանդիոնը, «որ Կոստանդինեա քաղաք անուանեցաւ»։ Մեծ Սոկրատի մէջ ոչինչ չէ յիշուած, ոչ այն մասին՝ թէ Կոստանդինը արեւմուտքից վերադարձաւ Բիւզանդիոն և ոչ էլ թէ նա

քաղաքը և եկեղեցիները շինում էր «ըստ անրջոցն տե-սութեան կամ յանրջական իմն նախատեսութեան»։ Եթէ Խորենացին է փոխ առել Փոքրից, ինչպէս Կարիերն է հաստատել ցանկացել, ապա որտե՞ղից է նա վերցրել «Նոր Հռոմ», «Պաղատիոն քերածոյ» (Փ. Ս. «զտեղ փորատ-նեա զերեքօրեայն») և «ի փողոնին» յունարէն բառը, որի տեղ Փոքրը յասպարիսի ունի։ Ինչ որ ասել ենք պէտք է նորից կրկնենք. փոխառութիւն կայ, փոխա-ռութիւնը եղել է Խորենացուց և ոչ հակառակը։ Կոս-տանդիինը վերադառնում է Բիւզանդիոն, տեսած երազ-ների ցուցմունքներով պայծառացնում և շինութիւն-ներով զարդարում նորոգում է «Ստրատիգոնը», «Ջեւք-սիպոն» բաղնիքը՝ մարզարաններ շինում, հին արձան-ներով փորում կոչուած հասարակաց հրապարակը զար-դարում։

Սոկրատը Ստրատիգոնը յիշում է այն առթիւ, որ նրա առաջ Կոստանդիինը Կոստանդիինա քաղաքի հիմ-նարկութեան արձանագրութիւն կանգնեցրեց և միւս գործերից, որ նա դեղփեան երեքոտեանները «յաս-պարիսի քաղաքին հրապարակեալ դնէր»։ Խորենացին չէր կարող փոքրիկ հատուածի սկիզբը և վերջը Սոկ-րատից վերցնել, միջի մասը ուրիշից, քանի որ Սոկ-րատի տուած տեղեկութիւնն էլ նրան լրիվին բաւա-կանութիւն կտային։ Սոկրատին աւելի նման է Միքա-յէլ Ասորին (էջ 129)։

6.

Խորենացու ՁԹ. գլուխը «Յաղագս Արիոսի չարա-փառի, և ժողովոյն որ եղև ի Նիկիա և սքանչելեացն»

որ երևեցաւ ի Նիկիայ», Սոկրատի պատմութիւնից տարբեր ձևով է պատմած. պ. Կարիերի ենթադրութիւնը այդ մասին նոյնպէս անհիմն է։

7.

| Խ. Բ. գլ. Ղ. էջ 176—177 | Սոկ. Փ. էջ 39—40. |
|---|---|
| Երթեալ Կոստանդեա ընդ մեծին Ղևոնդի, հասանէ ի քաղաքն Նիկիացւոց, ուր եղեն ժողովեալք հարք երեք հարիւր և ութ և տասն ի քակտումն Արիանոսաց, զորս նզովեալ մերժեցին ի հաղորդութենէ եկեղեցւոյ. սաղէս և ինքնակալն տրա- սահմանեաց ի մետաղս. Այլա գարձեալ Կոստանդեայ արժա- նահաւատ բանիւ և քսան կանոնեալ գլխովք .... | Եղև ժողով ի Նիկիայ<br><br>և յետ ժողովոյն և հաստատութեան հաւատոյն և սահմանի կա- նոնի ս. ժողովոյն արտաքսասահմանութեանն Ա- րիոսի ի մետաղս ի Թագաւո- րէն և ի նոյն խորհրդոց, ա- մենայն ս. ժողովս գնացին յիւրաքանչիւր աշխարհ. ու- ղիղ հաւատովն և կանոնեալ սահմանադրութեամբն. |

Մեծ Սոկրատի մէջ սոյն պատմութիւնը շատ ընդարձակ է. Փոքրը մի քանի նախադասութեան մէջ է ամփոփել, ինչպէս Լիկինոսի թագաւորութեան և ամուսնութեան պատմութիւնը. նա նոյն իսկ սաստիկ համառօտութեան մէջ շեղուել է բուն բնագրից, ստրկաբար հետևելով հեղինակաւոր Խորենացուն, նրանից վերցնելով.

«Արտաքս սահմանութեան Արիոսի ի մետաղս» և «ամենայն ժողովն գնացին յիւրաքանչիւր աշխարհ ուղիղ հաւատովս և կանոնեալ սահմանադրութեամբն»։

Մեծի մէջ ասուած է. «Եւ հրամանաւ թագաւո-

րին զԱրիոս և զորս ընդ նմայն և ընդ Թէոգնիսիւ յաքսորս առաքեցան։

8.

| Մով. Խոր. Բ. գլ. ՁԵ. 22 էջ 169—174. | Փ. Սոկ. էջ 61—67. |
| --- | --- |
| Բայց յաղագս հաւատոց Միհրանայ և աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջի. | Ընդ ժամանակս և Վրաց լինի կոչումն ընծայութեան հաւատոյ ընդ նախախնամութեան. |
| Կին ոմն անուն Նունէ, յընկերաց սրբոց Հռիփսիմեանցն ի ցրուելոցն, փախըստեամբ հասեալ յաշխարհն Վրաց ի Մծխիթայ՝ ի նոյն քաղաքն նախագահ | Կին ոմն լի պարկեշտութեամբ հալածեալ վասն Քրիստոսի գայ ի Վիրս, ի քաղաքն Նախագահ, ուր էր թագաւորն Վրաց. |
| յոյժ ճգնութեամբ ստացեալ շնորհն բժշկութեան, որով և զբազում ախտաժետս բըժշկեալ | Ճգնաւորեալ պահօք և աղօթիւք (պատմուած է Թգր. որդու բժշ. Նունէի ձեռքով, որ չկայ Խոր. մէջ). |
| և գլխովին զկին Միհրանայ առաջնորդին Վրաց. | հիւանդացաւ կին թագաւորին, կայր յաղօթս Նունէ և իսկոյն ողջացեալ. |

Խոր. պատմում է թէ ինչպէս հայոց քրիստոնէութիւն ընդունելու լուրը հասաւ Վրաստան։

| | |
| --- | --- |
| Եւ եղև ընդ աւուրսն ընդ այնոսիկ ելանել Միհրանայ յորս, մոլորեցաւ ի դժուարս լերանց խաւարեալ օդովն. այլ ոչ տեսանելեօք, ըստ այնմ թէ գոչէ զմէգ բարբառով.... | Յետ աւուրցն ինչ ելանէ յորս թագաւորն... ունէր միգային խաւար. ուր էր որսն, զլերինս և ըզգաշտս. զի անապատ էր և անանցանելի էր ճանապարհն. |

Եւ երկիւղիւ մեծաւ պաշարեալ, խնդրեաց աղօթիւք լուսաւորել զօգոյն և դառնալ խաղաղութեամբ, պաշտել զԱստուածն Նունէի խոստանայր որում հանդիպեալ, կատարեաց զասացեալսն.

Եւ յանհնարութեան եղեալ կարդայր զաստուածս իւր և ոչինչ օգտէր. Դարձեալ մտախորհ եղեալ, կոչել զԱստուած յօգնութիւն, զոր հալածական կինն պաշտէր. և անդէն վաղվաղակի լուծանէր խաւարն.

Խոր. պատմում է, որ Նունէն ս. Գրիգորին հաւատարիմ մարդիկ ուղարկեց խորհուրդ հարցնելու թէ ինչ անի, և Նրա խորհրդով կործանում է կռատներն և Քրիստոսի խաչը կանգնեցնում:

Նշան խաչի Քրիստոսի արարեալ կանգնեցին ի վերայ վայելուչ բլրոյն յարևելից կողմանէ քաղաքին....
ոչ ճարտարաց ինչ գործ, յաւովք քան զաակաւս արհամարհեցին .... իսկ բարերարին Աստուծոյ նայեցեալ ի գայթակղութիւն նոցա, առաքեաց յերկնից ուժն ամպոյ ...

Եւ հրամայէր կանգնել ըզնշան խաչին Քրիստոսի
և զի ոչ էր գործ ճարտարի, արհամարհեալ լինէր ի բազմաց. իսկ ս. կոյսն կայր յաղօթս զգիշերն ամենայն և ի վաղիւն լուսաւորեալ լինէր նշան խաչին ...

Խորենացին շարունակում է պատմել Նունէի քարոզութիւնը՝ առնելով Ագաթանգեղոսից «Որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս». իսկ Սոկրատը՝ պատմում է թէ ինչպէս նոր շինուելիք եկեղեցու սիւնը կանգնեցնում է ս. կոյսը իւր աղօթքով. «զոր գործաւորքն ոչ կարէին կանգնել»: Աւելի հետաքրքիր է Փոքր Սոկրատի նոյն դէպքի վերջում կցած մի հատուածը, որը ամբողջովին Խորենացուց է առնուած.

«Առաւել ևս լինի գաշնաւորութիւն Վրաց առ Կոստանդիանոս, որպէս զի առաքեաց նոցա եպիսկոպոս և քահանայս, որ զկարգ եկեղեցւոյ ի նա հաստատեսցեն ՚ ընդ առաքելուհւոյ կնոջն քարոզութեան, որում անուն էր Նունէ. յընկերաց սրբոյն Հռիփսիմեայ, որ ի Հայս կատարեցաւ։ Թողում ասել, որ յաղագս նորա է պատմութիւն և հաւատոյն Հայոց մեծամեծ պաշտելեօք ի ձեռն Գրիգորի Պարթևի Լուսաւորչի, որ ս տ ո յ գ ց ո ւ ց ա ն է ն ո ր ի ն գ ի ր ք.
Եւ այս ամենայն լինէր ի նոյն ամս»։

## Մեծ Սոկր. էջ 61—67.

«Բայց ի դէպ է արդէն ասել, թէ որպէս Վիրք ընդ նոյն ժամանակս քրիստոնէացան. Կին ոմն ի Վրաց գերեալ լինէր . . . իսկ գերեալն կին կալով բազում ճգնութեամբ . . . կայր յաղօթս. Իսկ զայս պաշտելիս տեսանելով բարբարոսացն ի զարմաղէն, պաշտօնայն (այս թագաւորի որդու բժշկութիւնը). Իսկ հռչակ ստուգոյ կանանց բարբարոսաց և կնոջ թագաւորին ընթանայր . . . Ցետ բազում ինչ իրի և կին թագաւորին անկեալ գնէր ի հիւանդութեան ինչ . . ապառացեալն բժշկէր (ի կնոջէն) . . . . Իսկ յետ ուսուցց բազմաց եկանել նորա յորս . . . ունէր միգային խաւար զԱստուած գերեցելոյն առնու և զնա կարդա օգնական և ի յաղօթելն ի միգէն խաւարն լուծանի . . . (խաչ կանգնեցնելու պատմութիւնը չկայ, Փղքրի յաւելուածն է, բայց կայ եկեղեցու սեան՝ հրաշքով կանգնելու պատմութիւնը)։ Զայս ասէ Ռուփին ի Բագրոյ լուեալ, որ յառաջ էր թագաւոր Վրաց, իսկ յետոյ եկեալ ի Հռոմ կարգապետ, որոց ի Պաղեստին զաւրացն եղեալ . . . .»

Նունէի պատմութիւնը ունի նաև վրաց պատմագիր Ջուանշերը։ Երկար և մանրամասնաբար պատմած է նրա մէջ մանկան և թագուհու առողջանալը հա-

1. Այդքանը Մեծ Սոկրատից է, իսկ շարունակութիւնը չկայ Մեծի մէջ։

մարեա Սոկրատի խօսքերով[1]. նոյնպէս որոտի դէպքը՝ փայլի և երկրեցի կանգնելու պատմութիւնը՝ բայց փոքր ինչ տարբեր։[2]

Երեք հեղինակ՝[3] Խորենացին, Սոկրատը առնելով Ռուփինոսից և Զուանշէրը պատմում են Նունէի պարծերը նոյն կարգով և հետևողութեամբ՝ միայն տարբեր ընդարձակութեամբ։

Բոլորի աղբիւրը ակն յայտնի նոյն է. մենք արդէն նկատեցինք անցողակի որ Զուանշէրը մանկան և թագուհու հրաշքով առողջանալու պատմութիւնը Նունէի ձեռքով համարեա այն խօսքերով է գրում ինչպէս Մեծ Սոկրատը, աչքի ընկնող նմանութիւններ կան Խորենացու և Մեծ Սոկրատի մէջ։

Խոր. «Բայց յաղագս հաւատոյ աշխարհին Վրաց ասել կայ մեզ առաջին»։ Մ. Ս. «Բայց ի դէպ է ասել թէ որպէս Վիրք քրիստոնէացան»։

Խոր. «Կին ոմն յոյժ ճգնութեամբ առաջեալ շնորհօ». Մ. Ս. «Կին ոմն բազում ճգնութեամբ կայր յաղօթս»։

Խոր. «Ու եղև ընդ աւուրս ընդ այնոսիկ երանելի Տրդատայ յորս, լերանց խաւարեալ .... գեղջ». Մ. Ս. «Նա յետ աւուրց բազմաց ելանել նորա (թագաւորին) յորս ունէր միգային խաւարի»։

Սրանք բառացի նմանութիւններ են. ինչպէս Սեղբեստրոսի վարքում, այստեղ էլ կրկնում է նոյն դէպ-

1. Տես Համառօտ պատմութեան Վրաց. Վեն. 1884 էջ 44, 54, 55, 60, 64.

2. Տես Սոկրատ էջ 62. ծն. 1. էջ 63. ծն. 1.

3. Խոր. Գ. «Նու իսկոյն եհաս ի նա լուր զքանցնելեացն որ եղև ի Հայս».

Հ.

քը։ Խոր. և Մ. Ս. ոչ միայն առանձին բառերով, այլ և ամբողջ նախադասութիւններով կարծես միմեանցից արտագրութիւն են։ Ձնայած այս հանգամանքին, անհնար է ընդունել որ հեղինակներից մէկը միւսին գիտէ. միակ ուղիղ ենթադրութիւնն է, երկուսը ունեցել են աղբիւր, Սոկրատինը Ռուփինոսն է, Խորենացունը Ագաթանգեղոսը։ Ռուփինոսը գրել է լսելով վրացի Բակուր իշխանից, իսկ թէ որտեղից է առել Ագաթանգեղոսը, դժուար է ասել, քանի որ Ագաթանգեղոսի Նունէի պատմութիւն գրած լինելը միայն Խորենացուց գիտենք։ Ասել ենք և կրկնում ենք. Խորենացին Սոկրատից չէր բաւականանալ լոկ նախադասութիւններ փոխ առնելով։

Բոլորովին այլ է Փ. Սոկրատի հարցը. այստեղ միանգամայն հաստատւում է աւելի խօսուն փաստերով, որ Սոկրատի համառօտողը Խորենացու ՁԶ գլխի մեծագոյն մասը յետ ու առաջ գնելով տեղաւորել է իւր համառօտութեան մէջ։

Խոր. «Կին ոմն անուն Նունէ, յընկերաց որոց Հռիփսիմեանց փախստեամբ հասեալ յաշխարհն Վրաց, ի Նոցա քաղաքն նախադահ եղև.»։ Փ. Ս. «Կին ոմն, որում անունն Նունէ, յընկերաց որոց Հռիփսիմեանց, (վերջից ենք վերցնում) հալածեալ գայ ի Վիրս ի քաղաքն նախադահ .... եղև.»։ Մ. Ս. ասում է, որ Նունէ գերուած էր. Փոքր, «հալածեալ» էր, Մեծը՝ ոչինչ չգիտէ հրաշագործ խաչի մասին, «զի ոչ էր գործ ճարտարի»։ Փոքրը առնում է Խորենացուց, ինչպէս նաև Հայոց քրիստոնէանալու յիշատակութիւնը Գրիգոր Պարթևի ձեռքով «որ ստոյգ ցուցանէ Նորին զինքն», որ ուղղակի Խորենացու բառերն են, «որպէս ուսուցանէ քեզ Ագաթանգեղոս»։

Հ. Բ. Յարգուեանը իւր յառաջաբանի վերջում (էջ ԼԸ և ԼԹ) ենթադրում է՝ հիմնուած Խորենացու երկնակի յիշատակութեան վրայ, որ կարող է Ագաթանգեղոսը իսկապէս գրած լինել Սեղբեստրոսի և Կոստանդնի ծննդեան և թագաւորութեան պատմութիւնը, բայց կասկածելով իւր ենթադրութեան ճշմարտութեան վրայ, յետ է վերցնում իւր ասածը։ Վրաց պատմութեան մէջ մենք միջոց ունեցանք Մեծ Սոկրատի բնագրի նմանութիւններով համոզուելու, որ Խորենացին ունի այնպիսի տեղեկութիւններ, բառեր և նախադասութիւններ, որ իւր հնարածը և ստեղծածը չեն, այլ անպատճառ յայտնի աղբիւրից վերցրած փոխառութիւններ են։ Խորենացին երկու անգամ շատ որոշ կերպով յիշում է այդ հեղինակին և մենք ոչ մի հիմունք չունենք կասկածելու նրա ասածի ճշմարտութեան մէջ։ Ագաթանգեղոսի մեր ձեռքը հասած պատմութիւնը չունի այն՝ ինչ որ կայ Խոր. ԲԳ և ԲԶ գլուխների մէջ. հետևապէս Ագաթանգեղոսը ունեցել է այդպիսի մի պատմութիւն յունարէն և գուցէ վրացերէն գրուածքներից առնուած, որից օգտուել է Խորենացին և որը այժմ կորած է։ Համառօտ Սոկրատը Վրաց դարձի պատմութեան գլխում, բացի առաջ բերած յաւելուածներից, ունի փոքրիկ յաւելուածներ, արդեօ՞ք նա ուղղակի Ագաթանգեղոսից չէ՞ առել։

9.

Խոր. Գ. գլ. ԻԲ պատմուած է պարսից Շապուհ թագաւորի յարձակումը Միջագետքի վրայ. Նրա դէմ դուրս է գալիս Կոստանդին մեծի որդի Կոստանդը։ «Եւ տուեալ ճակատ երկոքեան կողմանք պարտեցան»։ Շապ

անորոշ և համառօտ է անցնում Փ. Սոկրատը. «Ըստ ժամանակին այն զօրավար յառնէ ի վերայ արեւմտից Թագա-ւորին»: Մեծի պատմածը յարմարւում է Խորենացուն. (Բ. 25. էջ 156): «Պարսկական առ Հռոմայեցիսն շարժեցան պատերազմ. ըստ որում Կոստանդիոս ոչ գործէր բարեբախ-տաբար, քանզի գիշերամարտութիւն եղելոյ ի սահմանսն Հռո-մայեցւոց և Պարսից, հզօրագոյն յայնմ Պարսիցն առ սա-կաւ ինչ թուեցաւ լինել»: Երկու պատմագիրներն յիշա-տակում են դէպքը միանգամայն անկախ իրարից։

10.

Նոյն գլխի մէջ Խոր. յիշում է Կոստանդնի մահը. «Իսկ Կոստանդեայ արտաքսեալ կեսար զՅուլիանոս, յերկար հի-ւանդացեալ վախճանեցաւ ի Մոփսուեստի քաղաքին Կիլիկիոյ»: Մոփսուեստի անունը փոփոխուած է յունարէն Մոփ-սուկրենոյի անունից. պ. Կարիէրը ենթադրել էր, որ այդ անուան աղաւաղութիւնը Փ. Սոկրատից է. բայց անհիմն է նրա ենթադրութիւնը։ Նախ Փ. Սոկրատի մէջ քաղաքի անունը չկայ, իսկ Մեծում ուղիղ յունարէնի համապա-տասխան ձևն է «ի Մոփսու Ջրբուղխսն» որի Ջրբուղխք բառը յունարէն κρήνα բառի ճիշտ թարգմանութիւնն է. Երկ-րորդ մեծ տարբերութիւն կայ Սոկրատի և Խորենացու պատմութեան մէջ։ Ըստ Խորենացու Կոստանդինն ինքն է կամաւոր կերպով իւր մահից առաջ Յուլիանոսին կե-սար կարգում. իսկ Սոկրատը պատմական ճշմարտու-թեան համաձայն՝ յայտնում է, որ Յուլիանոսը բար-բարոսներին յաղթելուց յետոյ իրան կայսր է հրատա-րակում. և երբ այդ լուրը հասնում է Կոստանդինին, նա պատրաստւում է զօրքով գնալ և նրան պատժել, բայց սրտի կսծից ճանապարհին Մոփսու Ջրբուղխնե-

թում մնանում է. «Կատարեաց վարսն ի Հնգամարու-թիւնէն ի սրտմնդութեան անկեալ»։

11.

Խոր. Գ. գլ. ԺԵ. էջ 202.   Փ. Բուզ. Գ. 21. էջ 270, 271.

Պատմում են Յուլիանոսի պատերազմը պարսից դէմ և մահը։

«Վէր ընկալեալ ի փորո-տին սատակի»։

Յայնժամ գայ սուր սըր-եալ և Հարկանէ զսիրտն և անդէն սատակեցաւ։

Մեծ Սոկր.

«Եւ յանկարծակի նիզակ լինէր բերեալ ընդդէմ նորա և ընդ բազուկս Թափանցիկ եղեալ ի կողսն մտանէր և յայսմ միջաց զվարսն շրջէր.

Միքայ. Ասորի. էջ 145.

«Եւ յանկարծակի եկն նետ մի դիպեցաւ փորոտեացն Յուլիանոսի և վայթեցաւ արիւնն»։

Փ. Բուզանդի «սատակեցաւ» առնուած է Խորենա-ցուց, ինչպէս նաև Հետևեալը.

Խոր. (Գ. գլ. ԼԳ. էջ 220)։

«Վաղէսի Հրամկէզ եղեալ յԱդրիանապօլիս՝ սատակեցաւ»։

Փ. Բուզ. (Դ. 38. էջ 397).

«Եւ Հասեալ յԱդրիանապօլիս, Հրով այրեալ սատակեցաւ»։

Մեծ Սոկրատն ունի «մեռաւ»։

12.

Խոր. Գ. գլ. ԼԳ. էջ 220—221.   Սոկր. Փոքր էջ 414—415.

«Եւ ժողովեալ ս. Հարքն   Եւ առաքեաց Հրաւիրակս

ՀԴ.

ի Թագաւորեալ քաղաքն Բիւզանդիոն, Դամասիոս Հռոմայ, (Նեկտարիոս Կոստանդնուպօլսի), Տիմոթէոս Աղէքսանդրի, Մելիտոս Անտիոքու, Կիւրեղ Երուսաղէմի, [1]

Գրիգորիս Նիւսեայ (Գեղասիոս [2] Կեսարու), Գրիգորիոս Նազիանզու, Ամփիւլոքսիոս Իկոնիու, և այլ եպիսկոպոսք, միաբանամայն հարիւր և յիսուն հարք նզովեալ մերժեցին զՄակեդոն.

գալ ի ժողով ի Կոստանդնուպօլիս, (Դամասոս ի Հռոմայ), Տիմոթէոս Աղէքսանդրի, Կիւրեղ Երուսաղէմի, Մեղիտոս Անտիոքայ, (որ էր իսկ եկեալ յառաջագոյն առ Գրիգորիոս որ զանեղափոխութիւն ունէր) և Բասիլ Կեսարացի և Գրիգոր Նիւսացի եղբայր Բարսղի.

Խոր. Նոյն գլխում.

Սա դարձոյց զամենայն հարըս սուրբս, որ յաղագս ուղղափառութեան արտաքսահմանեալ էին ի մետաղս. ընդ որս և զՄեծն Ներսէս անկեալ առ իւր ի Բիւզանդիոն պահեցաւ մեծաւ պատուով մինչև ճըշմարտութեանն ստուգեսցի հաւատ.

և Ներսէս Պարթև Հայոց մեծաց [զ]որ ի Վաղէսէ էր արտաքսահմանեալ [3] և Թէոդոսէ ածեալ ունի մեծարանօք մինչև հաւատս ըստուգեսցի ի ժողովոյն. Եւ ժողովեցան հարիւր և յիսուն եպիսկոպոսունք ուղղափառութիւն խոստովանողք.

Մեծ Սոկրատը եպիսկոպոսներից միայն մի քանիսին է յիշում և այն էլ այնպիսիներին, որոնց անունը չկայ Փոքրում.

1. Ճառընտիրն յաւելու սուրբն Ներսէս ի Հայոց Մեծաց.
2. Մի օր. և Ճառըն. Բասիլիոս.
3. Ա. Աքսորեալ.

«Իսկ Թագաւորին ոչինչ տուեալ ժողով եպիսկոպոսաց ուղղափառ հաւատոյն առ ի հաստատել զոր ի Նիկիայն և ձեռնադրեալ Կոստանդնուպօլսի եպիսկոպոս։

Յուսացեալ կարող լինել և զօրս ի Մակեդոնէն միաւորել յիւրան և զօրս Նոցայ Հերձուածոյն առաջնորդս կոչեաց։ Եւ ժողովեցան որ ուղղափառ հաւատոյն յԱղէքսանդրիոյ Տիմոթէոս, իսկ յԵրուսաղէմացւոց Կիւրիղոս, Մելետիոս Անտիոքայ, ի Թեսաղոնիկէ Ասքողիոս և այլք բազումք թուով ՃԾ. Իսկ ի Մակեդոնեանցն կողմանէն համարեալ լինէր Եղեւսիոս Կիւզիկոնի և Մարկիանոս Լամփսակայ, ամենեքեան ԼԶ.

Մեծ և Փ. Սոկրատը այնքան տարբեր են իրարից, որ պէտք է եզրափակենք. համառօտողը Սոկրատի պատմութիւնը համապատասխան չգտնելով բուն ազգային պատմութեան, որի բացարձակ հեղինակութիւնը Խորենացին էր, ժողովի պատմութիւնը ուղղակի այդ աղբիւրից է առնում։ Շատ հետաքրքիր է տեսնել թէ նա ինչպէս մտածելով և գիտակցաբար է կատարում իր գործը։ Նա արտագրում է Խորենացուց անունները, չէ վերցնում «Նեկտարիոս Կոստանդնուպօլսի» անունը, որովհետև Մեծ Սոկ. որոշ ասում է, որ ժողովի նպատակն էր և Կոստանդնուպօլսի եպիսկոպոս ընտրել և ընտրում են սինկղիտոսի անդամ Նեկտարիոսին [1]։

Բաց է թողնում նաև Գեղասիոս Կեսարու, Գրիգորիոս Նազիանզու և Անփիլոքիոս Իկոնիոյ անունները, որոնք բացի Գրիգոր Նազիանզուց, անյայտ անձինք էին, իսկ Գրիգորի յիշատակութիւնը կասկածելի է, որովհետև Խոր. մի օրինակի և ճառընտրի մէջ չկայ այդ անունը։ Ճառընտիրը դրա փոխարէն ունի «ս. Ներսէս

1. Տես էջ 418. Փոքրը այդ դէպքում էլ է Նեկտարիոսի անունը բաց թողնում։

ի Հայոց մեծաց», իսկ այդ ընթերցուածը համառօտում է Փ. Սոկրատը և միջոց է տալիս եզրափակելու. Սոկրատը օգտուել է Խորենացու այնպիսի ձեռագրից, որի մէջ կար Ներսէս Մեծի անունը. համառօտը ոչ միայն անունն է վերցրել, այլ նաև նրա աքսորման և ազատման մասին տեղեկութիւնը Խորենացու նոյն Լ Գ. գլխից։

Եթէ կասկած կարող էր լինել մինչև հիմայ բաղդատած օրինակների իսկական աղբիւրի մասին, վերջի օրինակը գալիս է հիմնովին հաստատելու մեր յայտնած կարծիքը և փարատելու իւրաքանչիւր կասկած Խորենացու սկզբնականութեան մասին։

Ահա այսքան փաստական հիմունքների վրայ կարող ենք մեր բաղդատութեան սկզբում նախադասութեան հակառակ նախադասութիւնով եզրափակել մեր ասածները։

Մովսէս Խորենացին շատ յայտնի եւ համարեա կանոնական նշանակութիւն ստացած հեղինակն էր այն ժամանակ, երբ կրճատում էր Մեծ Սոկրատը, եւ համառօտողը խոնարհելով նրա մեծ հեղինակութեան առաջ, նոյն իսկ իւր բնագիրը՝ ըստ այնմ է փոխում, շարունակ օգտուելով Խորենացուց:

ԺԱ.

Փոքր Սոկրատին շատ անգամ համառօտ ասելով, ցանկացել ենք պարզ և որոշ կերպով յայտնած լինել որ Սոկրատը հայերէն միայն մի անգամ է թարգմանուել. իսկ միւսը՝ Փոքր կոչուածը, որը մինչև այսօր կամ երկրորդ կամ աղաւաղուած թարգմանութիւն է ճանաչուել, ոչ այլ ինչ է, եթէ ոչ առաջինից համառօ-

տուն, տեղ տեղ նորամուտ յաւելուածներով, տեղ տեղ կրճատումներով։ Թէ յապաւումն և թէ յաւելուածը աներկբայ են կացուցանում որոշ յայտնի վերաբերում, գիտակցական գիտաւորութիւն համառօտողի կողմից։ Օտար գրականութիւնը մի կողմ թողնենք, հայոց գրականութեան մէջ իսկ ունենք բազմաթիւ օրինակներ թարգմանուած գրքերի համառօտելուն, երբեմն նոյն իսկ թարգմանողի կողմից. յիշենք մի երկու դէպք։ Մեր մատենադարանում կան Յովհան Ոսկեբերանի Գործոց Առաքելոց-ի մեկնութեան կրկնաձև օրինակները. մէկը բուն թարգմանութիւնն է, հրամանաւ Գրիգորիս կաթուղիկոսի և ձեռամբ Կիրակոսի և միւսը նոյն կաթուղիկոսի ցանկութեամբ կատարուած համառօտութիւնը։ Ունենք համառօտութիւն և մինչև անգամ ոտանաւորի դարձրած հռչակաւոր Բարաղամ և Յովասափու պատմութիւնը, որի ընդարձակը մենք միայն վերջերս գտանք մեր մատենադարանի ձեռագրերում, ունինք բազմաթիւ հարանց վարքեր, ընդարձակ և կրճատուած. սովորական լինելով այդ երևոյթը, զարմանալի չէ որ միանգամ մեծ նեղութեամբ թարգմանած գիրքը կրճատուել է։

Համառօտողը՝ անունով անյայտ մին, Խորենացուն լաւ ճանաչող, սրբոց վարքեր երկար ժամանակ քըրքրած, աղանդների և հերձուածների դէմ զինուած, քաղկեդոնականութիւնը և Լևոնի տոմարը ատող նեղ միտ կրօնական է։ Սոկրատի պատմութիւնը նրան հետաքրքրել է. նա նրա մէջ գտել է եկեղեցական ամենամեծ ներկայացուցիչների, ամենամեծ դէպքերի յիշատակութիւնը, բայց Սոկրատն ունի պարզ ոճ, հեռու է հարանց վարքերում շատ գործածական ձևերից.

եկեղեցու հայրերին յիշելիս՝ անպատճառ՝ երանելի, սուրբ, աստուածասէր էին. ածականները չէ գործածել, բուն պատմութիւնը թողած, գերբնական հրաշքներ չէ պատմել. Համառօտողը լրացրել է կամ ձգտել է լրացնել այդ բոլոր կարծեցեալ պակասութիւնները։ Նա շատ անգամ ամենակարեւոր դէպքերը մի գծի շարժումով անցնում է, դրա փոխարէն երկարացնում, աւելացնում և փոփոխում է որոշ անձանց կեանքն ու գործերը համաձայն վկայաբանական կանոնների։ Այդպէս վարուելիս նա երբեմն իւր սիրելի ազգային աղբիւրներից է օգտւում, աւելի շատ անգամ ինքն է ուղղակի բառեր նախադասութիւններ աւելացնում, որոնք սակայն պատմութեան էութեան վրայ նոր բան չաւելացնելով, մնում են առանց որ և է նշանակութեան։ Սոկրատը նրա համար բաւական կրօնական գիրք չէր, թէև եկեղեցւոյ պատմութիւնն է նրա նիւթը. նա ցանկացել է ստեղծել այդ կրօնական գիրքը. այս և միմիայն այս պատճառով է ձեռնարկել իւր աշխատութիւնը։

Կայ և միւս պատճառը. սկզբնական թարգմանութեան լեզուն ծանր, դժուարահասկանալի է, ոչ յունագէտները հեշտութեամբ չեն հասկանալ այդ լեզուն, համառօտինը անհամեմատ հեշտ թեթև լեզուով է գրած։ Սակայն համառօտողը բացի իւր հայերէնից, այն էլ ոչ հիմնովին, ուրիշ բան չէ իմացել։ Անընդհատ նկատելի է, թէ բնագիրը լաւ չհասկանալով, սկզբնական մտքին հակառակ միտք է արտայայտել իւր համառօտութեան մէջ. յատուկ անունները ուղղակի անտանելի են՝ նա աղաւաղում է յունական անունները, գուցէ ցանկանալով հայացնել։

Մի բան շատ աչքի է ընկնում. գրքի ամբողջ շարունակութեան մէջ նա ձգտել է այնքան փոխել իւր կազմած օրինակը, որ վեր ի վերոյ նայողին նոյն իսկ կասկածելի կարող է թուալ. արդեօք համառօտը առաջին թարգմանութիւնից է ծագել, թէ ինքնուրոյն թարգմանութիւն է։

Տէր Շմաւոն քահանան առաջինն է, որ որոշել է թէ համառօտը աւելի ուշ և առաջինից՝ մեծից է ծագած. «Յունաց լեզուէ թարգմանեցաւ, որ յետոյ համառօտեցաւ»։ Մենք արդէն ցոյց տուինք որ նորագոյն պատմիչները Հ. Չամչեանն ևն. միայն մի թարգմանութեան գոյութիւնն իմանալով, աղաւաղեալ էին հրատարակել այդ թարգմանութիւնը, իսկ ոմանք մինչև անգամ պնդել են որ համառօտն է սկզբում թարգմանուել և ապա ընդարձակը։

Այդպէս պ. Ն. Բիւզանդը ծանօթանալով Տ. Շմաւոնի յայտնած կարծիքի հետ, առարկում է. «Հակառակն ինձ թուի առաւել հաւանութեան, անհաւատարմութիւն, խառնակութիւն և բազմապատիկ սխալանք համառօտին յորդորեցին զայլ ոմն վերստին յեղուլ ի հայ բարբառ զպատմութիւն Սոկրատայ հաւատարմութեամբ և ուղղագոյն»։ [1] Անծանօթ Տ. Շմաւոնի յայտնած ուղիղ կարծիքին, բայց նրա պէս միջոց ունենալով երկու խմբագրութիւնները միմեանց հետ բաղդատելու, յայտնել էինք մենք ևս նոյն կարծիքը, որ Հ. Բ. Սարգսեանին անհիմն է թուացել, ուստի և կարիք է զգացել հակաճառելու և ըստ իւր թիւր կարծիքը յայտնողին՝ վիրաւորելու։ Ինչքան զգոյշ և

1. Հանդ. Ամս. 1893։

մեղմ է պ. Նորայրը իւր ենթադրութիւնը արտայայ-տելիս, այնքան աւելի ինքնավստահ և համարձակ է գտնուել Հ. Բարսեղը [1]:

Թէև ինքն ըստ ինքեան առանձին օրինակների և բացատրութեան կարիք չկայ ցոյց տալու Փ. Սոկ-րատի համառօտութիւնը Մեծից, բայց որովհետև, ինչպէս ասացինք, համառօտողը ձգտել է անճանաչելի կացուցանել իւր գործը, աւելորդ չենք համարում մի քանի աչքի ընկնող օրինակներով պարզ կացուցանել այդ իրողութիւնը:

Մեծ Սոկրատի Թարգմանը Թուղթ չունենալով իւր տրամադրութեան տակ, բնագրից շատ թղթեր չէ թարգմանել. այդ չկայ և համառօտում. յատուկ անուանց սխալ ձևը Մեծի մէջ՝ կրկնւում է և Փոք-րում. և վերջապէս մի քանի հատուածների համե-մատութիւնը (Տես Ա. 22. էջ 60, 70. Սկիւթացի ոճ Ա. 24. էջ 79. ծն. Ջ. Ա. 26. էջ 85. ծն. Ա. 86. ծն. ա. Ա. 27. էջ 90. ծն. Դ. Ա. 37. էջ 105. ծն. Գ. Ա. 38. էջ 109. ծն. Ա. 110. ծն. Ա. Դ. 23 էջ 335 ևլն.) աներկբայ են կացուցանում մեր ասածը:

1. Հ. Բ. Ս. էջ 2. ծն. 1. ... Առաջին կամ ընդարձակ Թարգ. զոր Փ. Տ. Մովսիսեան «Արարատ» 1893 Թ. Ա. Փի-լոն Տիրակացւոյ կը համարի, ոչ միայն անկէ դարերով վերջ պէտք է եղած ըլլայ, այլ և ոչ Խորենացին անկախ (˜˜˜) գիտութեան յայտնի նշաններ են անոր բանից և բառից կազ-մութիւնքը, զորս քիչ թէ շատ հայերէն գիտցող կարէ իմանալ»:

Եթէ Հ. Բ. նեղութիւն կրեր հասկանալ յունարէն բը-նագիրը՝ գոնէ իւր լաւ իմացած հայերէնի միջոցաւ, պատմա-գիր ենք ընդունելու, որ կարող կը լինէր աւելի կարծիք յայտնել.

## ՂԱ.

Սեղբեստրոսի վարքը Մեծի մէջ վերջն է դրած. ամենայն հաւանականութեամբ 18 տարի Սոկրատի պատմութիւնից առաջ թարգ. Վարքը նոյն ինքը Փիլոն Տիրակացին է աւելացրել իւր Ձեռագրի վրայ, երբ ասել է «քարտ ու մագաղաթը» ոչ միայն բաւականացաւ, այլ և աւելացան: Երուսաղէմի Ձեռ. փոքր յիշատակարանը հաստատում է մեր ենթադրութիւնը.

«Այժմ պատշաճ համարեցաք առ նմին գրոց գրել ձեռամբ Թովմայ դպրի պատրաստ լինելով մագաղաթիգ».

Համառօտողը Սեղբեստրոսի վարքի հետ միացած օրինակից է կրճատել. միայն թէ ձեռագրի մէջ յետադաս վարքը ժամանակով Սոկրատի պատմութիւնից նախադաս լինելով, Փոքրի մէջ առաջ է դրուել:

Ընդհանուր գծերով որոշելով համառօտողի անձնաւորութիւնը, բնականաբար հարց պիտի տանք թէ երբ է կատարուել համառօտութիւնը. բայց որովհետև այս հարցը դրական անհերքելի փաստ չունի, այլ լոկ ենթադրութեանց վրայ հիմնուած կարող պիտի լինինք որոշ եզրակացութեան գալ. ուստի անհրաժեշտ է նախապէս որոշել Մեծի թարգմանելու ժամանակը: Ժամանակի որոշման խնդիրը սերտ կապ ունի Խորենացու հետ:

## ՂԲ.

Փիլոն Տիրակացի է Սոկրատի պատմութեան թարգմանի անունը: Հին պատմագիրներից նրան յիշում է միայն Ասողիկը, իսկ այնուհետև ոչ ոք բացի երկու Ձեռագրերի յիշատակարաններից: Փիլոնի միայն անունն է յայտնի, իսկ նրա անձի մասին ոչինչ չըգի-

անձը. Նա Տիրանի գաւառակից էր, ուստի և կոչւում է Տիրանեցի։ Այդ մակդիրը ունին Ասողիկը և Եր. Ձեռ. մեծ յիշատակարանը։ Ոմանք այդ անունը խառնում են Շիրակի հետ, Տիրանեցի կամ Շիրակացի կոչելով նրան[1], բայց անհիմն կերպով. այդ անունով գաւառակ կայ յիշուած և ուրիշ տեղ, իբրև մաս Շիրակայ։[2]

Երուսաղէմի Ձեռագրի մեծ յիշատակարանը տեղեկութիւն է տալիս գրքի ժամանակի և թարգմանչի մասին։ Թարգմանութիւնը եղել է «ծայրաքաղ» և ոչ ամբողջութեամբ և «առաջին ձեռնարկութեամբ»։ գիրքը թարգմանուել է օտարութեան մէջ, որտեղ «քարտ և մագաղաթ» պակասել է, ուստի թարգմանը ստիպուած գրքի մի մասը առանց թարգմանելու է թողել։ Սոկրատի մէջ մեծ տեղ են բռնում պատմական թղթեր և վկայաբանութիւններ, մանաւանդ սկզբի գրքերում. ահա այդ թղթերը և «ինքնախոստովանութիւնք» են առանց թարգմանելու ձգուել. պատմական մասից ոչինչ չէ կրճատուել։ Թղթերի վերաբերմամբ թարգմանը այսպէս է վարուել. նա կամ փորձել է կրճատել և մի քանի նախադասութեանց մէջ ամփոփել թղթի բովանդակութիւնը (Ա. էջ 99. Բ. էջ 119, 177, 181, 202

1. Հ. Ալիշան Շիրակ. էջ 5. «Անանիա և Փիլոն Շիրակացիք» Գ. Զարբ. Հայկ. Հին Դպ. Պատմ. էջ 456—457.

2. Ձեռ. Մայր Աթոռի. թիւ 942. Ճառընտիր 9. գրած ՉԻԷ (1277) թ.-ին. «Պատմութիւն գեղարդեան Ս. Նշանին գերահռչակ ուխտին Խուարանձորո «Թագաւորն յանուն Վասիլ տաւջի դնէ Յովհաննէս Հայոց Թագաւորի ...... տալ ի ձեռս իշխանութեան նոցա զքաղաքն Անի հանդերձ նահանգաւք Շիրակայ և Տիրակայ և Գաղակայ։ Այս տեղեկութիւնը ստացել եմ Միաբանից.

ւլու)՝ բայց իւր աչքում կարևոր համարուած հա-տուածն է: Թարգմանել ամբողջ Թղթից (Ա. եջ 20. Բ. 128 եւն.)՝ և բայց ուղղակի բաց է թողել ամբող-ջութիւնը (Բ. 128, 142, 143, 182)։ Այս այդ գոր-ծողութիւնից շատ պարզ երևում է որ նա սահմա-նափակ մէջն էր. կրճատումները անյաջող և անհասկա-նալի են. Թարգմանութեան համար ընտրած հատուած-ները չեն կազմում Թղթի էական մասը. և որ գլխա-ւորն է, անփոփոխ թողել է բնագրի այն նախադասու-թիւնները որոնցից յետոյ ընթերցողը սպասում է կարդալ անմիջապէս Թղթերը, որ սակայն չկան Թարգ-մանութեան մէջ: Վերջի գրքերում Թարգմանուած են բնագրի Թղթերը, ապացոյց, որ Թարգմանի «քարտն և մագաղաթը» հաշուից աւելի են դուրս եկել:

Երբ է Թարգմանուել Փիլոնը: Յիշատակարանը տալիս է հինգ համաժամանակ Թուեր, որոնց միջոցաւ որոշւում է ամենաճիշդ կերպով Թարգմանութեան տարին:

1. «Յամի վեց հազարերորդի չորրորդի կենցաղում անցաւորի որպէս ունի ս. Սոփի աւագ եկեղեցի տիե-զերական մայրաքաղաքին Կոստանդնուպոլսի» 6204—5508=696 Փրկ. Թիւ:

2. «Եւ յեւթն հարիւրերորդի չորրորդի Քրիս-տոսի գալստեանն» (704). Այս միակ Թիւն է, որ չէ համապատասխանում միւսներին. բայց ի նկատի առ-նելով որ համարեա բոլոր Թուերը 4-ով են վերջա-նում, կարելի է ընդունել, որ այս դէպքում 700-ի վրայ 4-ը յետոյ է աւելացրած. իսկ Փրկչի և աշխարհի ստեղծման Թուերի մէջ միշտ երեք չորս տարի զանա-զանութիւն կայ, այնպէս որ կարելի է դարձեալ ուղիղ 696 Թ. ստանալ:

ՋԴ.

3. «Յու ի հարիւր քառասուն և չորս թուականին» (այսինքն Հայոց), որ է 551+144=695—696 Փրկ.։

4. «Ի յիններորդումն ընտիքտիոնի», եթէ ընտիքտիոնը հայկական թւից՝ 144-ից հաշուենք, կըստանանք ուղիղ 10-րորդ ընտիքտիոնի 9-րդ տարին=695—696 թ. իսկ եթէ յունաց ընտիքտիոնով հաշուենք, այն է Կոստանդին մեծի Քրիստոսի խաչը տեսնելու 313 թ-ից 15ական տարի աւելացնելով, կըստանանք 26-դ. ընտիքտիոնի 9-դ տարին, որ է 25×15=390. 390—7+313=696 Փրկ. թ.։

5. «Յառաջնում ամի թագաւորութեան եր[կր]որդ[1] Ղևոնդի ինքնակալի Աւգոստոսի». 695—696։[2] Ուրեմն Սոկրատի թարգմանութեան ուղիղ տարին 695—696 թիւն է։

Յիշատակարան գրողը շատ հաւանական է որ ինքը թարգմանը լինի, որը տալիս է շատ համառօտ, բայց այնպիսի տեղեկութիւններ, որ միայն թարգմանին կարող էին յայտնի լինել. նա խօսում է «քարտի և մագաղաթի» պակասութեան մասին, յայտնում է թէ ինչ ձևով է թարգմանել և որտեղ, այն է օտարութեան մէջ։ Առանձին ուշադրութեան արժանի է. «Թարգմանեաց առաջին ձեռնարկութեամբ», որով ակընյայտնի զգալ է տալիս, որ գիտէր նաև երկրորդ ձեռնարկութեամբ թարգմանութիւնը, կամ ուրիշ խօսքով համառօտութիւնը։[3]

1. Ձեռ. ունի երորդ, գրչի սխալն է անկասկած փոխանակ երկրորդի.

2. Սա թագաւորեց 695—698 թիւը.

3. Արդեւք հէնց ինքը Փիլոն Տիրակացին չէ եղել համառօտողը, բայց այս դէպքում դժուար է բացատրւում յատուկ անունների այլանդակութիւնը.

Հինգ համաժամանակ Թուերը աւելի են հաստատում այդ ենթադրութիւնը։ Փիլոնը Անանիա Շիրակացու ժամանակակից էր, երբ տոմարագիտութիւնը ըսկսեց ծաղկել, և կարծես Հինգ Թուերը իրար՝ մօտ շարելով, ցանկանում է իւր տոմարագիտական գիտութիւնը ցոյց տալ[1]։ Յայտնի է որ յիշատակարան գրողները սովորաբար գրքի վերջում են դնում. բայց Փիլոնը մի տեսակ յառաջաբանի պէս Սոկրատի և Սեղբեստրոսի վարքի սկզբում է տալիս,—իւր մասին երրորդ դէմքով գրելով—խիստ համառօտ բայց և խիստ կարևոր տեղեկութիւններ։

Աստղիկը Սոկրատի Թարգմանութեան ժամանակը Անաստաս կաթուղիկոսին է որոշում որը գահի վրայ էր 671—677 Թիւը, յայտնի չէ Աստղիկը ինչ տեղից է առել այդ Թիւը։

Սոկրատի Թարգմանութեան ժամանակը որոշելուց յետոյ, միջոց ունինք ամենաճիշդ կերպով որոշելու նաև Սեղբեստրոսի վարքի Թարգմանութեան ժամանակը։ Սեղբեստրոսի վարքի համար ասուած է. «Յառաջ քան զութուտասն ամ ի Թարգմանելոյ Փիլոնի զգիրսդ զայդ Սոկ. եկեղ. պատմ. Թարգմանեալ էր զգիրս պատմ. վար. Ս. Սեղբ.» Սոկրատի Թարգմանութեան տարուց 695—96 հանած 18=677—678 Թիւ։ Թարգմանողն է Արաս կամ Արբա[2] Գրիգոր Ջորոփորեցին Վրաց իշխանի փեսայ Ներսէհ Կամսարականի առաջարկութեամբ, որը արժանի էր «ընդ փառաւորս յիշելոյ»։

1. Շատ նման է մի յիշատակարան՝ տպած Յակ. Տաշեանի Մանր Ուսմունք. Վիեննա. 1895. էջ 7.։

2. Արաս ձևը կայ Հարանց վարք Տ. Ն. Հայկ. բառ. նոյն բառը և Սոկրատի մէջ էջ 335. «Արաս Արսէնիոս»։

Այս Ներսէհին, որի մասին տրուած տեղեկու-
թիւնները առօրեւ մենք ի մի կը հաւաքենք, յիշում է
Ասողիկը թէ երբ Յունաց Յուստինեան կայսրը իւր
թագաւորութեան չորրորդ տարին մեծ զօրքով արշա-
ւեց Հայաստան՝ զօրավարներ ուղարկելով Վիրաց և Ա-
ղուանից եպիսկոպոսներ, կանչեց նրանց իշխաններին և
պատուեց. կայսերական պատիւներով արժանացաւ նաև
Ներսէհ Կամսարականը. «Եւ զոմանս յիշխանացն ար-
քայատուր պատարագօք պատուեալ, կացոյց իշխան աշ-
խարհացն զՆերսէհ Շիրակայ տէր և Կապուտակրից Հա-
յոց իշխան (կացոյց) ... Եւ Ներսէհ Կամսարական
եղեւ իշխան Հայոց ամս չորս. (Փրկ. 691—694) ի
սորա աւուրս պայծառանայր Գրիգորիս Արշարունեաց
քորեպիսկոպոս փիլիսոփայական արուեստիւ, որ Ըն-
թերցուածոց մեկնութիւն շարադրեաց ի խնդրոյ Ներ-
սէհի Կամսարականի»: Այդ գիրքը պահուած է, և
ձեռագրերում ունի այս վերնագիրը. «Մեկնութիւն ըն-
թերցուածոց, զոր արարեալ է Տ. Գրիգորի Արշարու-
նեաց քորեպիսկոպոսի»:[1] Կասկած չկայ որ երկուսը նոյն
գործն է, բայց Ասողիկը դարձեալ տարբերւում է Ձեռ.
մէջ եղող յիշատակարանից, որի մէջ գիրք գրել տուողը
Վահան Կամսարականն է և ոչ Ներսէհը. մինչդեռ գը-
րողի և գրքի անունը նոյնն է, հետևապէս Ասողիկը
ունեցել է հաստատ աղբիւր: Չամչեանը և Էմինը ա-
ռաջարկում են Ասողիկի Ներսէհը՝ փոխել Վահանի,
բայց չեն ասում թէ ինչ հիման վրայ. մենք կարծում

1. Տես Ձեռ. Մայր Աթոռ. թիւ 171 (Գ), Չամչ. պատմ. Գ. էջ 373, 375 և 562—642. Ջարբ. Պ. Հ. Մ. էջ 455. Մալխասեան Պատ. Ասողկան էջ 100—102 և ծն.

ենք հակառակը. աւելի ուղիղ կը լինէր և այդ ենթադրութեան համար կայ հիմունք։ Սեղբ. յիշատակարանում յիշած Արաս Գրիգոր Ջորափորեցին և Ասողկի յիշած Գրիգոր Արշարունեաց քորեպիսկոպոսը նոյն անձնաւորութիւնն է. նա նոյն Ներսէհ Կամսարականի հրամանաւ թարգմանում է Սեղբ. վարքը և դրում ընթերցուածոց մեկնութիւնը։ Ներսէհը ինչպէս կը տեսնենք շատ յայտնի անձ է, յայտնի դրական և հովանաւորող գրականութեամբ պարապողներին։ Նա մինչև 694 թիւը Հայաստանի կառավարութեան մեծահոգ գործերը վարելով, ծերունի հասակում առանձնանում է «ի վանս ս. Աստուածածնի որ ի Վաղարշակերտ յերկրին Բագրևանդայ»[1] և յորդորում դպիրներ թարգմանելու կամ շարադրելու։ Գրիգոր եպիսկոպոսի մասին ունինք բաւական ճիշդ տեղեկութիւններ. նա ապրում էր Է-րդ դարում և ութներորդի սկիզբը. մեռաւ 713 թ. (թիւ Հայոց ՃԿԲ). եպիսկոպոս էր ձեռնադրուել 684 թ-ին, երեք տարի առաջ՝ քան Ներսէհի ընդհանուր Հայաստանի իշխան նշանակուելը։ Մինչև 684 թիւը նա կոչւում էր արաս արաս պատուաւոր տիտղոսով, շնորհիւ իւր հռչակին, որ էր «փիլիսոփայեան արուեստիւ պայծառացեալ»։ Ներսէհ դիմում է նրան և առաջարկում թարգմանել Սեղբեստրոսի վարքը և այդ իւր հովանաւորութեան տակ առնելով նրան է յանձնում Արշարունեաց կամսարականների երկրի առաջնորդութիւնը։ Մեր այս ենթադրութիւնը հաստատւում է գեղեցիկ կերպով Սեղբեստրոսի վարքի թարգմանութեան թուականով։ Այս թարգման-

1. Չամչ. և Գ. Զարբ.

ունել է 678 Թ-ին երբ Գրիգորիսը սոսկ վարդապետ էր, յետոյ եպիսկոպոս ձեռնադրուելով շարունակում է պարապել գրականութեամբ և հեղինակում է ընթերցուածոց մեկնութիւնը։ Անյայտ մնաց թէ որտեղից Հ. Զամչեանը և Մ. Էմինը Վահանին Ներսէհ կամսարականի հայր են համարում՝ «Գաւառան եպիսկոպոսաց կամսարական տանն»[1] յիշում է Վահան պատրիկի որդի Գադիկին և Շուշան աղջկանը, որ Փրկ. 706 Թուին խոստովանուեց Միջագետքում․ բայց չկայ թէ Ներսէհը Վահանի որդին էր․ Հ. Ալիշանը լռութեամբ է անցնում այդ խնդիրը։

## ԺԳ.

Համառօտ Սոկրատը վերջանում է մի ուղերձով ուղղած առ «Տէր Ներսէհ» «Ապհիւպատ պատրիկ» «շինող եկեղեցեաց» որ խրախուսել է համառօտողին ի գլուխ հանել սկսած գործը։ Վեցերորդ դարի սկզբներից մինչև իններորդ դարը, երբ Կամսարականների փայլուն տոհմը կորցնում է իւր նշանակութիւնը, յայտնի են մի քանի Ներսէհ Կամսարականներ․

ա. Փարպեցուց գիտենք Վահան Մամիկոնեանի ամենաքաջ և յարատև գործակից երկու եղբայր «Ներսէհ տէր Շիրակայ և Հրահատ Նորին եղբայր» որդիք Արշաւիր Կամսարականի։[2] Երրորդ եղբօր անունը՝ Յահակ կամ Վահան էր։[3] Սոցա երեքին յիշում է

1. Ալիշան Շիրակ. եջ 5 և Զամ. յ. ա.
2. Ղ. Փարպ. հրատ. Վենետ. 1891. եջ 420 ևլն.
3. Համ. Ալիշան Շիրակ եջ 4.

Պաւղոսկիոս յոյն պատմիչը 530 և 547 Թ. Իտալիայի պատերազմներում։[1]

բ. Վեցերորդ դարու վերջում եօթներորդի սկզբում յիշւում է Ներսէհ Պարայի և Միջագետքի կուսակալ։[2]

գ. Հ. Ալիշանի մօտ էջ 125 տպած է Ալաման այժմ Ալէմ Թուրքարնակ գիւղի հին աւերակ եկեղեցու մի արձանագրութիւն «քսան և ութն ամի Հերակլի Թագաւորի Ներսէհի Շիրակայ և Արշարունեաց Տեառն և Թէոփիղոսի [Ա]րշարունեաց եպիսկոպոսի»։ Այս Ներսէհի իշխանութեան ժամանակը Հ. Ալիշանի հաշւով ընկնում է 636—637 տարին։

դ. Ասողկից յիշուած Ներսէհ իշխան Հայոց 688—91 Թ.

ե. Փ. Սոկրատի՝ Ներսէհը։

զ. Արագածոտն գաւառի Թալին գիւղի աւերակ տաճարի արձանագրութեան մէջ յիշւում է դարձեալ Ներսէհ ապիհիւպատը։

է. Սեղբ. վարքը Թարգմանել տուող Ներսէհ՝ Փրկէի 696 Թ.

ը. Անանիա Շիրակացու հարցմանց մէջ Ի և ԻԱ խնդիրները կազմուած են Ներսէհի մասին, մէկը (հարց ԻԱ) Արշաւրի որդին է, միւսը «անուանակից և նախորդ այսմ Ներսէհի»։ (Հարց Ի) «Ներսէհի կամսարականի Շիրակայ և Արշարունեաց Տեառն բուն կանգնէր առ ստորոտով լերինն որում Արտին կոչեն։ Եւ ի գիշերի միոջ մտին երամակք ցռուց բազումք, եւ ոչ լեալ տեղի որսորդացն՝ ընթացեալ պատմեցին նմա ի

1. Ալիշան յ. տ. էջ 5.

2. Lebeau Hist. Du Bas. Embire X 166, 259, 322, 147.

գեաւղն Թալին։ Եւ նորա խուրսվի եկեալ հանգեաւ եղև բայրաւքն և ազատաւքն և մեռեալ հռչակէին զգէտանսն ։

Թ. Օթման արար զօրավարը 785 թ-ին Հայոց և Աղուանից նախարարներով գնում է պատերազմ Հոնաց և Խազրաց դէմ, նրա զօրքի մէջն էր Ներսէհ Կամսարականը, որ մեռնում է «ի տապախառն օդոյն»[2]

Ժ. Խոր. աշխարհագրութեան մէջ Ափրիկէի գաւառներին թուելիս յիշուած է (Հրատ. Սուք. Վենե 1881 էջ 18). «Պոնտիկա, որոց իշխանացու իմաստունն Ներսէհ Կամսարական, պատրիկն Շիրակայ և Արշարունեաց տէրն» որի իշխանութեան ժամանակը յայտնի չէ։ Այսպիսով տեսնում ենք, որ յիշւում են մի շարք Ներսէհ Կամսարականներ, որոնցից ա. բ. գ. Թ. և Ժ. ժամանակով այնքան հեռու են միմեանցից, որ հարկ չկայ ապացուցանելու թէ նրանք նոյն սերընդի զանազան շառաւիղներն են. բայց գ-ը զանազան յիշատակութիւններ են նոյն Ներսէհի մասին և այդ տարբեր տեղեկութիւնները այլ և այլ աղբիւրներից ի մի հաւաքած միջոց են տալիս բաւական ամփոփ կերպով ներկայացնել նոյն այդ Ներսէհի գործունէութիւնը։

Նա ժամանակակից էր եօթներորդ դարու վերջի կիսում ապրող և գրող մի շարք հեղինակների և թարգմանիչների, որոնց ամենայն կերպ խրախուսել և հովանաւորել է։ Նրա հրամանով արդաս կամ արա Գրիգոր Ջորոփորեցին թարգմանում է յունարէնից Սեղբեստրոսի վարքը, և եթէ հետևենք Ասողկին, գրում

1. Հրատ. Գ. Տ. Մկրտչեանի «Արարատ» ի 1896 թ. արտատպած էջ 25. Անանիա Շիրակացւոյ յաղագս հարցման և լուծման, և Հ. Ղ. Ալիշան Այրարատ էջ 198.

2. Ղևոնդ. պատմ. Հրատ. Ս. Պետերբ. 1887 էջ 164.

է ընթերցուածոց մեկնութիւնք. նրա հրամանով թարգ-մանում է Փիլոն Տիրակացին Սոկրատի պատմութիւնը, որը շատ չանցած համառօտւում է. նրա ամբողջութիւն էր ընդունում Անանիա Շիրակացին,[1] և ցուցէ նրա հրա-մանով է կազմել այն խնդիրների ժողովածուն, որ-րոնց նիւթը մեծաւ մասամբ Կամսարական իշխան-ների գործերից է առնուած։[2] Ուրեմն եօթներորդ դա-րու վերջում Խորենացու Հայոց պատմ. հայ գրա-գէտների շրջանում հանրածանօթ եւ հեղինակաւոր գիրք էր։

Այն հանգամանքը որ նա թարգմանել է տալիս յունարէն գրքեր, կարող է ապացոյց ծառայել, որ նա գիտէր յունարէն լեզուն և ծանօթ էր նրա գրականու-թեանը. իսկ այդ ընդունակութեան շնորհիւ արժա-նացաւ յունաց Յուստինեան երկրորդ կայսրից կոմս և կիւրապաղատ տիտղոսները և Հայաստանի իշխանու-թեան ղեկը չորս տարի ժամանակով ստանալու։

Բայց նա յայտնի է և իւր շինութիւններով, որի համար համառօտ Սոկրատի վերջաբանում կոչւում է «Շինող եկեղեցեաց»։ Արագածոտն գաւառի Վերին—Թալին կամ Հայի—Թալին[3] կոչուած գիւղում մինչև այժմ կիսականգուն վիճակի մէջ մնացել են երկու փա-ռահեղ եկեղեցիների աւերակներ, միմեանցից մօտ եր-կու հարիւր քայլ հեռու։ Մէկը հաւասարակող խաչաձև փոքրիկ մատուռ է, առանց սեան, կարմրագոյն հրա-

1. Հարցումն է. «Ես ի Մարմետ էի, յոստանի համ-արականաց»։

2. Տես Անանիա Շիրակ. յ. ա. էջ 16 ԻԱ.

3. Այժմ Երևանեան նահանգ Էջմիածնի գաւառի Թա-լինի գիւղ.

ԴԲ.

բուխային քարից շինած. նրա միայն գմբէթն է իջել, իսկ ամբողջը պահուած է անվնաս. գեռ մօտ քսան և հինգ տարի առաջ ծառայում էր գիւղական եկեղեցու տեղ: Միւսը եօթից ութերորդ դարու հոյակապ և ամենանշանաւոր ճարտարապետական գործերից է: Այդ եկեղեցին, որին տեղացիք ս. Յովհաննէս անունն են տալիս, խաչաձև է 25,82 մետր երկար, 24,45 մետր լայն՝ ներսից չափած. շինուած է լայնանիստ Արագածի արևմտահարաւային փեշերի վրայ Թալնի սարադաշտի սկսուածքում: Հիւսիսարևելեան մասը կազմում են լեռնալանջերը, իսկ արևմտահարաւայինում փոքրիկ տարահարթն է, որ Ներքին—Թալինի մօտ իջնելով միանում է Սարդարապատի դաշտի հետ: Դիրքը հրաշալի է, ճարտարապետութիւնը ճաշակով, կարելի է ասել կատարեալ: Տաճարի ճարտարապետական ոճը միանգամայն նման է նոյն գաւառի Թալիշ գիւղում (հին Արուճ) Գրիգոր Մամիկոնեանի շինել տուած եկեղեցու ոճին. երկուսի վրայ աշխատող վարպետները միևնոյն պատրաստութիւն ունեցող անձինք են:

Դժբաղդաբար շինութեան ժամանակ ցոյց տուող յիշատակարանը կորել է, իսկ մնացած յիշատակարաններից, թուով 4, հնագոյնը ունի ՄԼԲ թիւը, միւսները անհամեմատ ուշ ժամանակից են:[1]

1. Հայր Ալիշ. Այրարատ էջ 137 սխալներով է տպել. «ՄԼԲ թուականութեան Հայոց ես Ուխտայտուր վանականս եւ Յուսի եղբայր իմ բերանք աղբիւրանիս ի քարկայի ուխտատէն ի Թալին, թէ յիշխանաց ոք խլէ իմ մեղացս պարտական եղիցի»:

Գիւղի հիւսիսում ընկած է մի ձոր եկեղեցուց մօտ 100 քայլ հեռու. այդ ձորի բերանում մինչև այժմ էլ

Չէ պահուած նաև փոքր եկեղեցու յիշատակարանի թուականը, բայց կայ շինել տուողի անունը.

«Ես Ներսէհ ազնուազարմ պարոնիկ .... [Շիր]ակա և «Արշարունեաց տէր շինեցի զեկեղեցիս յանուն սրբոյ .... «Աստուածածնի ի բարեխաւսութիւն. ինձ և Շուշանայ ... ամուսնոյ իմոյ և Հրահատայ որդւոյ մերոյ».[1]

Թէև գեղեցիկ, բայց իւր փոքրութեամբ աննշան մատուռը շինելով, Ներսէհը հազիւ թէ արժանանար «Շինող եկեղեցեաց» մեծաձայն տիտղոսին. Նրա ժամանակուայ գործ է անկասկած Թալնի մեծ տաճարը: Թալինը նրա սիրելի բնակավայրն էր, նա այնտեղ էր որս անում Արտեն լերան վրայ.[2] այնտեղ նա սկիզբը շինել տուեց փոքրիկ մատուռ. բայց երբ Հայաստանի իշխանութիւնը իւր ձեռքն առաւ, հետևելով իւր նախորդ Գրիգոր Մամիկոնեանի օրինակին, շինել տուեց այն հոյակապ տաճարը, որի աւերակները զարմանք են ազդում տեսնողին, և միայն դրա շնորհիւ ստացաւ եկեղեցիների շինող արժանի տիտղոսին:

մնում են պարսպի հետքեր, ակնյայտնի է որ յիշեալ Աւխտատուր վանականի հանած աղբիւրի ջուրը ամբարւում էր այդ ձորում, որից ոռոգւում էր ամբողջ դաշտը. Աղբիւրը այժմ ցամաքել է, բայց շատ որոշ է նրա հոսման տեղը.

1. Համեմ. Ալիշ. Այրարատ էջ 238. և Н. Марръ. Новые матеріалы по Армянской Эпиграфикѣ С. Петербургъ 1893 г. ст. 100.

2. Արտեն լեռը անկասկած այն լեռն է, որ այժմ կոչւում է տեղացիներից «Բողութաու սար» մինչև այժմ յայտնի եղջերուների և այծեամների որսով. Բնակիչների պատմելով կոնաձև լերան գագաթին շինուած է քարուկրից մի աւազան, որի մէջ ամբարւում մնում է մշտապէս ձեան և անձրևի պարզ վճիտ ջուր.

ԴԿ.

Սերոբէնը մատուռի յիշատակարանում թւում է իւր տիտղոսները. անթիհիւպատ պատրիկ, տէր Շիրակայ և Արշարունեաց. իսկ կողմերից, ստացած կոմս և կիւ-րապաղատ տիտղոսները չկան. ապացոյց որ փոքր ե-կեղեցին աւելի շուտ էր շինել տուել, երբ դեռ չէր ստացել այդ պատուանունները։

Մեզ հեռուն կը տանէր, եթէ հետամուտ լինէինք որոնելու թէ յիշածներից բացի եօթներորդ դարու վերջի կէսում Սերոբէն Կամսարականի հովանաւորու-թեան տակ ուրիշ ինչ գրական յիշատակարաններ են ծագել. թողնելով միայն Սոկրատի պատմութեան հետ կապ ունեցող երկերը, կարծում ենք արդէն բաւական գաղափար տուինք Շիրակում՝ ծաղկել սկսող գրականու-թեան մասին՝ երկրի իշխող տէրերի օրինակով և խրա-խուսանքով կենդանացած։

ԺԹ.

Փիլոն Տիրակացու թարգմանութիւնը ունի մեծ թերութիւններ. Թարգմանը հայերէն լեզուից ունի բառերի հարուստ պաշար, քիչ բացառութեամբ ուղիղ կերպով հասկանում է յունարէն բառերը, բայց շատ թոյլ է քերականութեան մէջ և անտեղեակ երկու լե-զուների ոճական նրբութիւններին։ Նրա թարգմանու-թիւնը կարդալիս, այն տպաւորութիւնն է ստացւում որ կարծես չարունակ օգտուել է այնպիսի մի բառա-գրքով, որի մէջ իւրաքանչիւր յունարէն բառի հան-դէպ նշանակուած էր հայերէն բառի մի կամ երկու նշանակութիւնը առանց ոճերի. բնական է, որ այդ տե-սակ թարգմանութիւնը բառացի ստրկական է դուրս եկել։ Նա առանց հասկանալու է թարգմանել յունա-

քին յօրանալ և շատ գործածական ոճեր. օրինակ. «Ըստ ախորժելին առաջնորդեալ» κατὰ χώραν ἐρρούμεν. կամ «յոտից հատանել» — ἐκ ποδῶν κοπτ. կամ դարձուածներ որ ուղղակի չի հասկացել. Κομιδῇ νήπιον — յատուկ անուան տեղ է դնում. «Ռոմիդի Նիկոմիդացւոյ»։ Փ. Ս. «Ռոփին Նիկոմիդացի» (էջ 15), κομιδῇ νηπίῳ = կոմիդինեաւ (էջ 58) οὗτος κομιδῇ νέος ὤν — Մակս միհնադացի զոլով, Փ. Ս. Նիկոմիդացի գոլով (էջ 355)։ Թարգմանիչը երբեմն յատուկ անունները հասարակ կարծելով թարգմանել է օրինակ. Ἡλιούπολις Արեգ քաղաք, նոյն Փ. Ս. (էջ 52). Τερέβινθος սխալմամբ Ἐρέβινθος է կարդում և թարգմանում Սիսեռն (էջ 70). նոյնը Փ. Ս. Φιλούμενος Սիրեցեալ (էջ 89) Πέλαργος — Արագիլ ևլն. կամ նոյնիսկ յատուկ անունը սխալ է հասկանում. Σκυθιάνος — Սկիւթացի, փոխ. Սկիւթիանոս (էջ 68). նոյնը Փ. Ս. Συριάνος Ասորիա Փ. Ս. Ասորիայ (էջ 129), Δαλμάτιος — Դաղմատացի (էջ 92) Νικόκλης Նիկողի-ստական ևլն.

Չհասկացած բառերից են. τῶν κατ' Ἀρείων հասկացել է. τῶν κατ' ἀρίθμων — ըստ Թւոյ (էջ 1), ու. Թագաւորութեան առաքինւոյ (էջ 30), Χρηστός — Քրիստոս, նոյնը Փ. Ս. (էջ 68). մինչդեռ ուրիշ անգամ նոյն բառը թարգմանել է ուղիղ կերպով. — «քաղցու» ընծայաբերիւր (էջ 109, 114 ևլն.). մեծ փոխ. մերձ ի (էջ 310), պաղլինոս (էջ 480), ոչ ինչ այլ (էջ 434)։ Շատ բառեր յունարէնից չէ թարգմանել, օրինակ, էքսոդիոն, էքսորել, անդրի, դեմոս, պրաստի, կապեղի ևլն.։

Մի թեթև ակնարկ ձգելով յատուկ անուանց ցանկի վրայ, կարելի է տեսնել թէ ինչքան անհասկացած և քմահաճոյական ձևեր են ստացել յունարէն

անունները Հայերէնի մէջ. ձայնաւորների փոփոխութիւն, սղումներ, ամենատարբեր վերջաւորութիւններ. նոյնը և բաղաձայների վերաբերութեամբ. ԼՂ, ՌՐ, ՏԴ, ԿԳ. նոյն անուանց մէջ շարունակ փոփոխւում են, և այդ բոլորը ցոյց են տալիս պարզ կերպով թէ ինչքան թոյլ է եղել թարգմանը քերականական ձևերի հասկանալու մէջ. նոյնպէս բազմատեսակ են նոյն բառերի հոլովումները և խոնարհումները, մանաւանդ սեռական հոլովի վերջաւորութիւնները յատուկ անուանց մէջ. Անտիոքա, Անտիոքայ, Անտիքիայոյ, Անտիքայոյ, առաջ են գալիս միևնոյն երեսի վրայ:

Եթէ այս ուղղութեամբ սկսենք քննել և օրինակներով ցոյց տալ թարգմանութեան լեզուի բոլոր անկանոնութիւնները, ստիպուած կը լինէինք ամբողջ ուսումնասիրութիւն կատարել, որը դուրս է մեր նպատակից. առաջ բերած օրինակները բաւական են գաղափար տալու, թէ ինչ չափով լեզուական թերութիւններ կան գրքի մէջ: Իւրաքանչիւրին պարզ կացուցանելու համար թարգմանութեան ստրկական ձևը, մենք այստեղ կարտագրենք գրքի սկզբից մի քանի տող բնագիր, տակը դնելով հայերէնը: Նոյն իսկ յունարէն չիմացողն էլ կարող է մօտաւորական գաղափար կազմել և համոզուել մեր ասածների մէջ:

Εὐσέβιος ὁ Παμφίλου ἐν ὅλοις δέκα βιβλίοις
Եւսեբիոսի Պամփիլեայ յամենայն տասնեսին գիրսն
τὴν ἐκκλησιαστικὴν ἱστορίαν ἐκθέμενος κατέπαυσεν
զեկեղեցական պատմութիւն եդեալ, դադարեաց
εἰς τοὺς χρόνους τοῦ βασιλέως Κωνσταντίνου, ἐν οἷς
ի ժամանակս թագաւորի Կոստանդնի յորս

Դէ.

καὶ ὁ κατὰ τοῦ Διοκλητιανοῦ κατὰ χριστιανῶν
և առ Դիոկղետիանոսիւ ի վերայ քրիստոնէից
γενόμενος διωγμὸς ἀπεπαύσατο.
եղեալ հալածումն դադարեաց։

Ահա այս ձևով շարունակւում է ամբողջ թարգմանութիւնը, բառը, հոլովը, թիւը, դասաւորութիւնը ամենաչնչին փոփոխութեամբ բնագրինը պահելով։ Մեր առաջ դրած է ոչ թէ թարգմանութիւն, այլ յունարէն բնագրի ստորգծեայ բառերի բացատրութիւն հայերէն լեզուով։ Այսքան ստրկական թարգմանութիւնը եթէ չէ կարող հայերէն համարուել, ունի անկասկած մեծ նշանակութիւն յունարէն բնագրի համար. այսուհետև յունարէն բնագիր հրատարակողները պէտք է անպատճառ առաջնորդուեն հայերէնով ևս. հայերէնի բնագիր ծառայող ձեռագիրը անուազն վեցերորդ կամ եօթներորդ դարու օրինակ է ներկայացնում։ Մենք հայերէնը ամբողջութեամբ բաղդատեցինք յունարէնի հետ, մեր նպատակից դուրս էր լեզուական տարբերութեանց նրբութիւնները առանձին կերպով շեշտել. բաւականացել ենք միայն խոշոր աչքի ընկնող շեղումները նշանակելով։

Հայ թարգմանը ինչպէս տեսանք դիտաւորեալ կերպով կրճատում, հանում է բնագրից որոշ մասեր, բայց ընդհանրապէս երևում է, որ անհամեմատ աւելի լաւ օրինակից է թարգմանել, քան ներկայ յունարէն հրատարակութեանց հիմք ծառայող ձեռագիրը. հայը երբեմն փոքրիկ հատուածներ, տեղ տեղ նախադասութիւններ և բառեր բնագրից աւել ունի, թէև զերծ չէ մնացել աղաւաղումներից։

## ԺԵ.

Զանազան հարցերի մասին երկար կանգ առնելով, կը ցանկայինք ծանօթացնել ընթերցողին Սոկրատի անձնաւորութեան հետ և, կցելով համառօտ տեղեկութիւն նրա պատմութեան նշանակութեան մասին։ Սոկրատը ինքն է իւր մասին մի քանի տեղեկութիւններ տալիս գրքի մէջ, որով նա միակ և գլխաւոր աղբիւր է ներկայանում։ Նա ծնուել է և սնուել Կոստանդնուպօլսում (24.) մօտաւորական հաշուով Փրկչի 381 թ.։ Ժամանակի սովորութեան համաձայն տասը տարեկան հասակից սկսում է սովորել քերական արուեստ Աղէքսանդրիայից քրիստոնեաների հալածանքներից Կոստանդնուպօլիս ապաստանած երկու հեթանոս ուսուցչապետների՝ Էլլադիոսի և Ամմոնիոսի մօտ. «Յորոց և երկուքն քերթողք Էլլադիոս և Ամմոնիոս, առ որս ես մանուկ գոլով ի Կոստանդնուպօլիս հպեցայ» (Ե. 16 էջ 442)։

Ապա յաճախում է Տրոյլոս իմաստակին և երիտասարդական հասակն առած, պարապում է դատավարութեամբ, այդ պատճառով նրան կոչում են սքոլաստիկոս։

Նրա կեանքից ուրիշ մանրամասնութիւններ չը գիտենք. միայն մի հանգամանք առիթ է տուել գիտնականներին կասկածել նրա ուղղափառութեան մասին և ենթադրել որ նա հետևող էր Նաւատիանոսների աղանդին։ Նա մանրամասն և առանձին համակրանքով է խօսում Նաւատիանոսների մի քանի եպիսկոպոսների մասին, օրինակ Աքեղիոսի և Սիսինիոսի մասին, գըրուատում է այդ աղանդի հետևողների ջերմեռանդ եկեղեցասէր յատկութիւնը, բայց այժմ ոչ ոք չի ընդու-

նում թէ նա հետեւող էր այդ աղանդին։ Յայտնի չէ նրա մահուան տարին։

Սոկրատը գրել է 133 տարուայ պատմութիւն, սկսած Փրկչի 306 թուից մինչեւ 439 թիւը. այն է Կոստանդիանոս Մեծի իշխանութիւնից մինչեւ Թէոդոս Փոքրի թագաւորութիւնը։ Նա աւարտում է գրել երբ քրիստոնեայ եկեղեցին հեթանոսութեան, արիանոսութեան, Մակեդոնի աղանդի, Նեստորականութեան եւ բազմաթիւ մանր աղանդների դէմ յաղթ եւ երկարատեւ մաքառման մէջ մտնելով, հաստատւում, ամրանում է։ Հռովմէական լայնածաւալ տէրութեան սահմաններում հովանաւորուած եւ պաշտպանուած Թէոդոս երկրորդ բարեպաշտ կայսեր իշխանութեան օրով. հալածուած հոգեւորականները վերադառնում են իրենց տեղերը եւ ընդհանուր խաղաղութիւն է տիրում եկեղեցւոյ մէջ։

Պատմութեան մէջ ամենընդարձակ տեղը բռնում են Կոստանդնուպոլսի եպիսկոպոսների գործերը. ուրիշ քաղաքների եպիսկոպոսներից մանրամասն պատմուած է միայն Աթանաս Աղեքսանդրացու գործերը։ Բայց Կոստանդնուպոլսի հայրապետների շարքը կազմում են Յովհան Ոսկեբերան, Նեստոր, Մակեդոն, Ատտիկոս, Պրոկղ եւն., որոնց արարքները ամենամեծ նշանակութիւն ունեցան ընդհանուր եկեղեցւոյ համար, որով մասամբ մեղմանում է պատմաբանի միակողմանիութեան տպաւորութիւնը։

Սոկրատը գրել է Թէոդորոս անունով մի քահանայի յորդորանքով, որին նա յառաջաբանում քանիցս յիշում է. «Զհրաման քո կատարեցի, ով քահանայդ Աստուծոյ, այրդ Թէոդորէ»։ Գրելու ժամանակ օգտուել է Եւսեբիոս Կեսարացու Վարք Կոստանդնի գործից, Ռուփինոսի եկեղեցական պատմութիւնից, Ա-

թանասի գրուածներից, ժամանակակից անձանց պատմածներից և արխիւներից. նա շատ թղթեր ամբողջութեամբ արտագրել պահել է։

Նա իւրան նպատակ էր դրել գրելու միայն եկեղեցւոյ պատմութիւնը, բայց որովհետև «ընթերցաւղացն ոչ յագուրդ լինել յորմէ միայնով պարապել վիճաբանութիւն եպիսկոպոսաց և որովք հակառակ միմեանց գործեցին», ուստի կարևոր է համարել պատմութեան մէջ մտցնել նաև քաղաքական դէպքերի յիշատակութիւն ինչ չափով նրանք կապ ունէին եկեղեցական գործերի հետ։ Նա ասում է. երբ թագաւորները «քրիստոնէական եղան» և եկեղեցական գործերը քաղաքական կեանքի հետ սերտ կերպով կապուեցին, «և մեծքն ժողովք նոցա կամաւք եղեն և լինին», այլ ևս դժուար էր բուն եկեղեցական երևոյթները անջատել միմեանցից։

Դեռ գրքի սկզբում Սոկրատը համառօտ կերպով բնորոշելով Եւսեբիոսի գրելու եղանակը, դժգոհութիւն է յայտնում, որ նա ուշադրութիւն է դարձրել լեզուի «բարձրաստացութեան» և «թագաւորի գովութեան» վերայ, չհետևելով իրերի ստուգաբար ըմբռնմանը, իսկ իւր մասին ասում է. «Բայց ես ոչ թագաւորին ծանաւթ գոլ փութամ, և ոչ պաճուճեալ բանիցս զցուցմունս կամիմ առնել, այլ պարզ բանիւ ճշմարտութեամբ զեղեալսն թագաւորին յիշատակել յօժարիմ» (էջ 618)։ Նա ձգտել է գրել պարզ հասկանալի ոճով. չըլռել գովութեան արժանի դէպքերը, և ո՛չ վախենալով մեծացնել իշխանաւորների ոչ գովելի գործերը, նրա նպատակն է ճիշդ և ուղիղ պատմութիւն գրել. «Նախ ասեմք զի որոց առ մերով հասակովս եղելոց հուպս արկեալ արդէն մի՛ ոչ հաճոյս բազմացս թուես-

ցուք գրել կամ ըստ առակին. եթէ ճշմարիտն եղիցի գտան կամ զի ոչ ըստ գովութեանն զանուանս որոց աթոռնն ի գիր արկանեմք և ոչ զգործսն նոցա մեծա- ցուցանեմք ...... զորս եան տեսայ շարագրելով, զորս և տեսողացն կարացի ուսանել ընտրելով զճշմարիտն։

Սոկրատը եկեղեցական չէր, սիրում էր եկեղեցին, սի- րում ուղղափառութիւնը անվնաս, անվտանգ տեսնել. Հե- տևելով Թէոդորոս քահանայի յորդորներին, սիրայօժա- րութեամբ յանձնառու է եղել ապագայից համար ան- մոռանալի յուշարձան թողնել չորրորդ դարու ընդհա- նուր քրիստոնեայ եկեղեցու համար ամենափայլուն ներկայացուցիչների, Աթանաս Աղեքսանդրացու, Յով- հան Ոսկեբերանի, Եպիփան Կիպրացու, Կիւրեղ Երու- սաղէմացու, Ատտիկոս հայրապետի և նոցա հակառակորդ- ների Արիոսի, Մակեդոնի, Նեստորի անունները։ Այդ անձանց հակառակութիւնից ոյժ ստացաւ և ընդ միշտ ամրացաւ հռովմէական տէրութեան կազմի հետ սերտ միանալով, հալածուած քրիստոնեայ եկեղեցին. ահեղ ոյժի առաջ ընկճուեցին, խոնարհուեցին, «ամենայն սի- րողք խռովութեան», որով գոհ սրտով պատմաբանը վերջացնում է իւր ծանր գործը աղօթելով եկեղեցւոյ խաղաղութեան համար. «Բայց մեր աստանաւր ուրէք զպատմութիւնս դադարեցուցեալ ի խաղաղութիւն կեալ զորս ամենայն ուրէք եկեղեցիս, քաղաքս և ազգս ա- ղաւթեսցուք»։

ՄԵՍՐՈՊ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ

1896 թ. 25-ն Օգոստոսի
ի Ս. Էջմիածին.






# ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

## Գլ. Ա.

Եւսեբիոսի Պամփիլեայ յամենայն տասնեսին գիրսն եղեալ զեկեղեցական պատմութիւն, դադարեաց ի ժամանակս Կոստանդնի Թագաւորի՝ յորս և առ Դիոկղետիանոսիւ եղեալ հալածումն ի վերայ քրիստոնէից, դադարեաց։ Գրելով նորա և ի վարսն Կոստանդնի ըստ Թուոյ‴ յիշատակ առնէ Թագաւորին և [illegible] բարձր աստացութեան բանին մանաւանդ որպէս զի գովութեան հոգ տարեալ՝ քան թէ ստուգաբար ըմբռնել զեղեալսն։

ա. Թեոդ. ունի Τῶν κατ' Ἄρειον ուստի ըստ Թուոյ-ի տեղ պիտի լինէր „որոց ըստ Արիոսին„-

բ. "Գովութեանց Թագաւորին եւ Նորոգական բարձրաստութեան բանից առաւել հոգ տարեալ„ . . . . համաձայն բնագ. ընթերցանութեան:

## Գլ. ԺԳ.

Կոստանդիանոսի գինի միահամուռ տիրելոյ Թագաւորաց՝ զԼիկիանոս քեռայրն իւր Թագաւորեցուցանէ, զոր յետոյ հալածանս առնելով քրիստոնէից ընդդիմանալ Կոստանդիանոսի ըմբռնի եւ սպանանի:

Եւսեբի Պամփիլեայ ի տասներորդ գիրսն եղեալ ա զեկեղեցւոյ պատմութիւնն, լռեաց ի ժամանակս Կոստանդիանոսի Մեծի և որ առ Դիոկղետիանոսիւ եղեալ բ հալածանք քրիստոնէից. Գրեաց նա և զվարս Կոստանդիանոսի ի Տէր ժողովական բարձր աստացութեամբք գ զոր փոքր ինչ աստանօր յիշեսցուք

ա. Ա՝ եղեալ եկեղեցւոյ: բ. Դ. եւ որ ի Դիոկղետիանոսէ եղեւ:

գ. Ա՝ Դ. բարձրաստացութեամբ:

Իսկ մեր նախադրեալ շարագրել զառ ի նմանէ մինչև առ յեկեղեցեացն եղելոյ պատճառոյն։

Սկիզբն յորոց նոյն առնասցուք ոչինչ պատմութեան դժարանելոյ հոգ տարեալք· այլ թէ զիարդ գտեալ գրով ի պատմողացն, և կամ թէ որպէս լուաք պատմեսցուք· և վասն զի զառաջիկայն հասանէ մեզ յիշել, եթէ որով պատճառաւ ի քրիստոնէութիւն եկն թագաւորն փոքր ինչ վասն այնորիկ որպէս է վայելմանել յիշեսցուք աստուստ ուստեք զսկիզբն արարեալ։

## Գլ. Բ.

Զի[1] յայնժամ Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս որ կոչի Եռկուղիոս ի միաբանութենէ ի բաց ընկեցեալք զթագաւորութիւն զիւրեանցն փոխէին զկայս· Մաքսիմիանոս որ կոչի Գաղերիոս նոցունց թագաւորակից եղեալ յԻտալիա կացոյց երկուս կայսերս· զՄաքսիմիանոս ի կողմանս արևելից, իսկ զՍևերոս յԻտալիայ։

Իսկ Բրիտիա Կոստանդին[2] կոչեցաւ թագաւոր ի տեղւոջ Կոստանդեայ հաւր իւրոյ վախճանելոյ յառաջին ամին երկերիւրորդի և թանասներորդի ա Ողիմպիադայն

ա, Բնագրին ունի πρώτης առաջինորդի։

1) Տես Սոզոմենոս. Պատմութիւն եկեղեցական Ա. 2. 3. 4. Կասիոդորոս. Պատմ. Եռամասնեայ (Tripartita historia) Ա. 4.

2) Ըստ Սոկրատին հետևելով ընդունենք· որ Կոստանդինը Դիոկղետիանոսից և Մաքսիմիանոս Հերկուլիոսից անմիջապէս յետոյ է թագաւորել· կասանեանք որ նա 52 տարի է իշխել· մինչդեռ յայտնի է· որ նա կառավարեց երեսուն տարի և տասն ամիս. թագաւորութեան ժամանակը արձանագրւում է փրկ 305 և 306 թ.

Զի յորժամ Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս ի բաց կացեալ ի թագաւորութենէն ակամայ յաղթահարեալք ի Կոստանդիանոսէ· վասն ամբարշտութեանն ա նոցա.

ա, Բ. ամբարշտութեան.

ի տասն և հնգին Յուլի ամսոյ. բայց ի Հռովմ ի զաւրականացն Պրետորիանոսաց, Մաքսենտիոս որդի Մաքսիմիանոսի որդի Եռկուղիոս եղև բռնակալ մանաւանդ քան թագաւոր:

Ի յայսցանէ Եռկուղիոս դարձեալ ի ցանկութիւն թագաւորութեան ամբարձեալ, ձեռնարկեաց մերկացուցանել [ա] զորդին իւր զՄաքսենտիոս. բայց զայս տանել արգելու ի զաւրականացն. յետոյ ի Տարսոն Կիլիկիոյ [բ] փախուցանէր. [1]:

Իսկ ի կայսերէն Սեւերեայ Գալերիոս Մաքսիմիանոս առաքեալ ի Հռոմ ունել զՄաքսենտիոս՝ զերեցաւ մատնեալ ի զինուորաց իւրոց [2]. ապա Մաքսիմիանոս Գալերիոս վարեալ զանէրութիւնն ամենայն [3] մեռաւ յառաջագոյն եղեալ թագաւոր զԼիկինիոս որ էր ի վաղուց անտի զինուորակցեալ նմա և սիրելի, Դակեացի ազգաւ: Իսկ Մաքսենտիոս յետ նեղէր զՀռովմայեցիս՝ կորեալ և վարեալ զիշխանութիւնն առաւել բռնաբար քան արքայաբար: Էլհէր լրբաբար զկանայս ազատաց, և զբազումս սպանանէր և գործէր զնմանիս: Զայս գիտացեալ Թագաւորին Կոստանդիանոսի զՀռովմայեցիս

ա. կորուսանել ἀπολέσαι· ըստ բն.

բ. Այստեղից սկսած պակասում է մեր հին թարգմանութիւնը:

1. Սոկրատը սխալւում է. Մաքսիմիանոս Հերկուլեսը Կոստանդինի հրամանով սպանուեց 310 թ. Գաղղիայում. իսկ Մաքսիմինոս Դազայն էր, որ երկու տարի յետոյ Լիկինիոսից յաղթուելով մեռաւ Տարսոնի մօտ. ինչպէս վկայում են Աւրելիոս Վիկտորը, Եւսեբիոսը իւր Քրոնիկոնի մէջ եւ ուրիշները. Ակներեւ է որ Սոկրատը շփոթել է անունները՝ ինչ որ յաճախ է պատահում յոյն հեղինակների կողմից հռոմայեցւոց անուններում.

2. Փետր. 307 թ.

3. Զառանցանքութիւն է այդ ասելը. քանի որ Հռոմում իշխում էր Մաքսենտիոսը, իսկ Կոստանդինը Գաղղիայում.

թափել ի լծոյ ծառայութենէ նորա ջանայր. նոյն ժամայն զմտաւ ածէր, թէ զիարդ բարձցէ զբռնաւորն. և միշտ ի միտս իւր խոկայր, թէ զո՞ աստուածոցն յաջողութիւն պատերազմին կոչիցէ. քանզի տակաւին ի մտի ունէր, զի ոչինչ աւգտեցան, որք առ Դիոկղետիանոսիւ պաշտէին զաստուածս հեթանոսաց, և գիտէր իսկ զի հայրն իւր Կոստանդիոս դարձուցեալ զերեսս իւր ի սուտ հաւատոյն հեթանոսաց՝ կեանս երջանկագոյնս եկաց։ Եւ ի նմին երկմտութեան եղեալ և հանդերձ զաւրաւքն յուղի անկեալ, զարմանալի իմն և անճառելի նշան երևեցաւ նմա. քանզի ի միջաւրէի մինչ արեգակն ընթանայր ի մուտս,[1] ետես յերկինս խաչաձև սիւն լուսոյ, յորում ընթեռնոյր գրեալ. «Այսու յաղթեա։»[2] Ակներև նշանս այս սքանչացոյց զթագաւորն և ինքն աչացն իւրոց ոչ հաւատացեալ՝ հարցանէր որք մերձն էին. արդեօ՞ք և նոքա տեսին ընդ-նշանս, և նոցա ձայնակցեալ, թագաւորն հաստատեցաւ ի կարծիս իւր վասն աստուածային և սքանչելի տեսլեանն։

Եւ ի նմին գիշերի ի քուն մտեալ ետես զՔրիստոս, որ ասէր ցնա. «արա զնմանութիւն տեսեալ նշանիդ և ընդդէմ թշնամեացն կալ իբրև զդրոշ անպարտելի։» Հաւատացեալ պատգամին՝ արար դրոշ խաչաձև, որ ցայժմ պահի ի թագաւորական պալատան. և մեծաւ համարձակութեամբ երթայ ընդդէմ թշնամւոյն և մը-

1. Այս տեսիլը բոլորովին նման է պատմում Եւսեբիոսը Վ. Կ. Ա. 28. իսկ Ռուփինոսը Թ. Թ. եւ նրան հետեւելով Սոզոմենը. Ա. 3. փոքր ինչ տարբերւում են։

2. Խոր. Գ. Բ. Գլ. ՁԳ. . . . նմջեալ երեւեցաւ նմա ի քուն խաչ աստեղաց յերկնից. պարունակեալ գրով. ասէ. Այսու յաղթեա. զոր արարեալ սիւգնոյն եւ յառաջաբերեալ յաղթեաց . . . .

ռեալ ի պատերազմ եւ առ դրունս Հռոմայ մերձ ի կամուրջն, որ կոչի Մուլվիա, յաղթեաց եւ զՄաքսենտիոս հեղձոյց ի գետն. եւ էր եւթներորդ[1] ամ թագաւորութեան նորա յորժամ յաղթեաց Մաքսենտեայ:

Յետ այսորիկ Լիկիանոս թագաւորակից նորա եւ փեսայ, որում ետ կնութեան զքոյր իւր զԿոստանդեայ [illegible] յարեւելից[2] իսկ ինքն կալեալ զանչափ բարութիւնս յԱստուծոյ՝ գոհութիւն մատուցանէր բարերարին: Եւ դադարեցուցանէր զհալածանս քրիստոնէից եւ որք ի կապանս էին եւ յաքսորս արձակէր, եւ զինչս զըրկեալս յարքունիս տերանցն դարձուցանէր, կանգնէր զեկեղեցիս եւ ամենայն ինչ առնէր մեծաւ զգուշութեամբ: Եւ յայնժամ Դիոկղետիանոս, որ հրաժարեալ էր ի թագաւորութենէն, վախճանէր[3] ի Սալոնի՝ աշխարհին Դաղմատիոյ:

## ԳԼ. Գ

Իսկ[4] թագաւորն Կոստանդիանոս զքրիստոնէութիւ-

1. Կոստանդիանոս Մաքսենտիոսին յաղթեց Փրկչի 312 թ.

2. Տես Խոր. Գ. Բ. գլ. ՁԲ. . . . մեծարեաց զԼիկիանոս . . . եւ ետ նմա կնութեան զքոյր իւր . . . եւ արքայ ամենայն արեւելից կացոյց.

3. Սոկրատին համաձայն են Աղէքսանդրեան Քրոնիկոնի, Հերոնիմոս եւ Զօսիմոսը, որոց վկայութեամբ Դիոկղետիանոս մեռաւ Փրկչական 316 թուին. իսկ Լակտանտիոսը եւ Եւսեբ. իւր Եկեղեց. պատմ. Թ. 11. ասում են որ նա մեռել է 312 թ.

4. Տես Սոզոմէն Ա. 2 եւ 7. Եւսեբ. Վ. Կ. Ա. 51. Սուլպիկեոս Սեվ. Ս. պատմ. Բ. 33.

Նաեւ զամենայն թագաւորսն զամբարիշտս[ա] սատակէր եւ յաղթող[բ] երեւեալ նշանաւ խաչին Քրիստոսի ընդ ամենայն երկիր[գ] յեւթներորդ ամի թագաւորութեան Կոստանդիանոսի. յորժամ էառ զյաղթութիւն միահամուռ թագաւորացն զԼիկիանոս քեռայր իւր թագաւորեցուցանէր.

ա, Գ. զամբարիշտսն. բ. Բ. եղեալ։

գ Գ. յաղթող երեւեալ ամենայն ընդդիմակացն. Ա.[a] նշանաւ խաչին ամենայն ընդդիմակացն:

որն յամենայնի փութայր քրիստոնէութեան. Նորոգէր զեկե-ղեցիս և զարդարէր բազմահարուստ ընծայիւք. այլ և խափանէր զտաճարս հեթանոսաց և կործանէր զպատ-կերս որ ի նոսա և կանգնէր ի հրապարակս։ [1] Իսկ Լիկինիոս թագաւորակից նորա հաստատուն հեթանո-սութեանն՝ ատէր զքրիստոնեայս։ Եւ յայնժամ հալա-ծանս ի վերայ նոցա առ. ահին Կոստանդիանոսի երկն-չէր յայտնեցանել, այլ ծածուկ զզաւրականսն նեղէր։

1. Լիկինիոսի հալածանքի հրովարտակը յառաջ է բերում Հիերոնիմ. Փիլոն. եւ ուրիշները. բայց բոլոր տաճարները Կոստանդիանոսի օրով չքան-դուեցին. այդ արաւ յետոյ Թէոդոս Մեծը. Կոստանդիանոսը իր նոր մայրա-քաղաքը զարդարեց տաճարներից առած արձաններով։

Իսկ նա վայելեալ ցայգքան բարեկամին ոչ խորհէր զաս-տուածայինսն, այլ զդիւացն ի ծածուկ՝ վասն ահին Կոստան-դիանոսի։ Բայց կինն նորա՝ քոյր Կոստանդիանոսի հրամայեաց հանգուցանել զքրիստոնեայս ի հալածանացն. զի էր բարե-պաշտօն և երկիւղած յԱստուծոյ. և որք ի կապանսն էին և յաքսորս արձակէր. և զինչս առնելոցն դարձուցանէր. և զե-կեղեցիս կանգնէր մեծաւ պայծառութեամբ և զգուշութեամբ պաշտօնէիւք ի Քրիստոս Յիսուս։ Յայսմսիկ Դիոկղետիանոս ի Դաղմատիա վախճանէր. և առնու զինչս և զթագաւորութիւն նորա Կոստանդիանոս և յամենայնի զհաճոյս [ա] Քրիստոսի կա-տարէր. և զկռոցն պաշտամունս [բ] խափանէր և նորոգէր զե-կեղեցիս պաշտօնէիւք. և երևելի սպասուք. և յառաջադիմէր ի բարեպաշտութեան սուրբ վարս երևելեօք և աներևոյթիւք [գ] և խոկայր միշտ յերկիւղն Աստուծոյ մերոյ։ Իսկ Լիկինիոս [դ] ատէր զքրիստոնեայսն. բայց յայտնի ոչ իշխէր յինքնակալէն Կոստանդիանոսէ հալածել։ Եւ զի ոչ ունէր ժոյժ՝ գաղտնի վնասել ջանայր զքրիստոնեայսն. և այս ոչ ծածկէր յինքնա-

ա. Բ. զհաճոյն   բ. Ո՞ պաշտամունս:

գ. Աներևութեամբ.   դ. Ա՞ Լիկինէ:

Այս և յայտնի վնասել նոցա ձեռնարկէր. և եղև հալածանս այս առ տեղեաւն. անդ եղև միայն ուր էրն Լիկինիոս։ [1] Իբրև զայս և զայսպիսի իւս բռնաբար գործէր, ոչինչ ծածկէր ի Կոստանդիանոսէ, և գիտէր զի ի վերայ այսոցիկ ի ցասման լինել նորա ջատագովէր զանձն իւր և կեղծաւորելով նմա առ երեսս սիրով զխաղաղութիւն առնէր, երդնոյր երդումն յոյժ մի երբէք զբռնութիւն խորհիլ, այլ միանգամայն երդնոյր և ընդ նմին երդմնազանց գտանէր. քանզի ոչ դադարէր բռնաբար խորհել և ի վերայ քրիստոնէից հալածանս յարուցանել։ Աւրէնս դնէր եպիսկոպոսաց մի հպել առ հեթանոսս զի մի աճեսցի քրիստոնէութիւնն. և էր հալածանքն պտղեալ և միանգամայն ակն յայտնի, զի բանիւք ծածկէր, այլ գործով յայտնի կացուցանէր. քանզի անպատմելիս կրէին հալածեալքն յանձինս իւրեանց և յստացուածս։

1. Լիկինեոսի հրովարտակի բովանդակութիւնը մանրամասնօրէն առաջ է բերում Եւսեբ. Վ. Կ. Ա 51–66. Բ 1. 2. տես Խոր. Գ. գլ. ՁԸ Ռուփինոսը եւ ուրիշները։

կալէն, Դրէր և յղէր պատգամ մի՝ խորհիլ զքրիստոնէից ա գչար, այլ զբարի, իսկ նա կեղծաւորելով պատճառէր զպատճառս սիրոյ և խաղաղութեան, և երդնոյր երդումն. սակայն երդմնազանց լեալ ոչ դադարէր ի խորամանկութենէն դիւաց. և հրամայէ մի հպել քրիստոնէիցն առ հեթանոսս զի մի ուսցին կ աճէ քրիստոնէութիւն, բ զի խաւարեալ էր միտք և օտարացեալ յԱստուծոյ, և ի ցանկութիւնս ընչից և ախտից հիմն արկեալ էր.

ա. Ա' քրիստոնէից:
բ. Ա' աճեսցի:

## Գլ· Դ·[1]

Ի վերայ այսոցիկ յոյժ ցասոյց զԹագաւորն Կոստանդիանոս և եղև Թշնամի, ի բաց եդեալ զառ երեսս բարեկամութիւնն. և պատերազմել սկսան ընդ միմեանս։[2] Եւ եղև մարտ բազում ի ցամաքի և ի ծովու, և ի վերջոյ առ քաղաքաւն Քրիւսոպոլսոյ երկրին Բիւթինիոյ յաղթահարեալ անձնատուր եղև։ Ըմբռնեալ զնա կենդանի մարդասիրէ. և ոչ սպանանէր, այլ հրամայէ նմա կեալ ի Թեսաղոնիկէ հանդարտութեամբ։

Իսկ նորա առ ժամ մի հանդարտեալ, ապա ժողովեալ զհամախոհս իւր բարբարոսս, խորհէր ի պատերազմ։ Զայս գիտացեալ Թագաւորին հրամայեաց սպանանել զնա և ըմբռնեալ սպանին։[3] Եւ Կոստանդիանոս

1· Տես Սոզոմ· Ա· 7· Կասիոդ· Ա· 8· Նիկեփ· Է· 44·

2· Պատերազմը սկսեց Փրկ· 323 եւ 324 վերջացաւ· տես նոյ· ibid.

3· Սպանման այս պատճառը ուրիշ պատմագիրներ չեն յիշում· երեւի Սոկրատն է աւելացրել·

Եւ ստուգեալ զայս ինքնակալին Կոստանդիանոսի, ի ցասման լինել ջատագով Աստուծոյ, յարուցանէ պատերազմ առ նա։ Եւ ըմբռնեալ եղև Լիկեանէ յինքնակալէն ի պատերազմին. և մարդասիրեալ առ նա. ոչ սպանանէ, այլ հրամայէ նմա կեալ ի Թեսաղոնիկէ հանդարտութեամբ։

Իսկ նորա առ ժամ մի ա հանդարտեալ, յետոյ ժողովեաց զհամախորհս բ իւր բարբարոսս, խորհէր ի պատերազմ և ի մահ Թագաւորին Կոստանդիանոսի գաղտնի. Զայս գ իմացեալ Կոստանդիանոսի. առաքեաց զօրս ի վերայ նորա, և ըմբռնեալ զնա սպանին, և այնպէս բարձաւ չարն ի միջոյ. Եւ Կոստան-

ա· Ա առժամանակ։

բ· Բ· Ա՝ զհամախոհս։

գ Բ· դոր·

միահամուռն թագաւորեալ ինքնակալ թագաւոր կոչեցաւ և զքրիստոնէից զփրկութիւնն խնկայր միշտ և զայս առնէր բազմադիմի եղանակաւ. և էր քրիստոնէութիւնն ընդ իշխանութեամբ նորա ի խորին խաղաղութեան։ Խաղաղութիւնս այս յարոյց ընտանի պատերազմ քրիստոնէից. թէ զինչ էր, և վասն էր յարեաւ, պատմեցից։

## Գլ. Ե.[1]

Զկնի Պետրոսի՝ եպիսկոպոսի Աղէքսանդրիայ, որ նահատակեցաւ ընդ Դիոկղետիանոսիւ՝ յաջորդէր զեպիսկոպոսութիւնն Աքիլլէս, իսկ զկնի Աքիլլայ՝ Աղէքսանդրոս,[2] յետ խաղաղութեանն զոր ասացաք, որ վարէր զեկեղեցին յանդորրու։ Եւ եղև երբեմն՝ որ ընդ իշխանութեամբ նորա երիցունք և կղերիկոսք վիճէին մեծաւ փութով ի վերայ. սուրբ Երրորդութեանն, մի միութիւն է յԵրրորդութեանն։

Իսկ Արիոս ոմն երիցանց, ընդ ձեռամբ նորա եղելոց, այր հմուտ յարուեստ ճարտասանական, խորհելով զեպիսկոպոսն ի կարծիս Սաբելեայ Լիբիացւոյ ածել, և

1. Տես Սոզոմ. Ա. 15. Ռուփ. պատմ. Ժ 1. Թէոդ. պատմ. եկեղ. Ա. 3 կասիոդ.- Ա. 12. Նիկեփ Ը. 5.

2. Պետրոսը գահի վրայ էր 310. 311 Թ. Աքիլլէսը 312 Թ. մնաց միայն 5 ամիս. Աղէքսանդրը 313 Թ.

գիանոս միահամուռն թագաւորեալ ինքնակալ կոչեցաւ և զքրիստոնէիցն միշտ զփրկութիւն խնկայր. և հաստատէր զթագաւորանիստն ի Բիւզանդիոն հրաշալի յօրինուածովք. և կոչեաց զնա Կոստանդիանու քաղաք յանուն իւր և եղև խաղաղութիւն ընդ ամենայն երկիր քրիստոնէից.

թանասի գլուածներից, ժամանակակից անձանց պատ-մածներից և արխիւներից. նա շատ թղթեր ամբող-ջութեամբ արտագրել պահել է։

Նա իւրան նպատակ էր դրել գրելու միայն եկե-ղեցւոյ պատմութիւնը, բայց որովհետև «ընթերցաւ-ղացն ոչ յագուրդ լինել յորմէ միայնով պարապել վի-ճաբանութիւն եպիսկոպոսաց և որովք հակառակ միմ-եանց գործեցին», ուստի կարևոր է համարել պատմու-թեան մէջ մտցնել նաև քաղաքական դէպքերի յիշա-տակութիւն ինչ չափով նրանք կապ ունէին եկեղեցա-կան գործերի հետ։ Նա ասում է. երբ թագաւորները «քրիստոնէանալ սկսան» և եկեղեցական գործերը քաղա-քական կեանքի հետ սերտ կերպով կապուեցին, «և մեծքն ժողովք նոցա կամաւք եղեն և լինին», այլ ևս դժուար էր բուն եկեղեցական երևոյթները անջատել միմեանցից։

Իւր գրքի սկզբում Սոկրատը համառօտ կերպով բնորոշելով Եւսեբիոսի գրելու եղանակը, դժգոհութիւն է յայտնում, որ նա ուշադրութիւն է դարձրել լեզուի «բարձրասացութեան» և «թագաւորի գովութեան» վը-րայ, չհետևելով իրերի ստուգարար ըմբռնմանը, իսկ իւր մասին ասում է. «Բայց ես ոչ թագաւորին ծա-նաւթ գոլ փութամ, և ոչ պաճուճեալ բանիցս զցուց-մունք կամիմ առնել, այլ պարզ բանիւ ճշմարտու-թեամբ զեղեալսն թագաւորին յիշատակել յօժարիմ» (էջ 618)։ Նա ձգտել է գրել պարզ հասկանալի ոճով. չըլռել գովութեան արժանի դէպքերը, և ո՛չ վախենա-լով մեծացնել իշխանաւորների ոչ գովելի գործերը, նրա նպատակն է ճիշդ և ուղիղ պատմութիւն գրել. «Նախ ասեմք զի որոց առ մերով հասակովս եղելոց հուպ արկեալք արդէն մի՛ ո՛չ հաճոյս բազմացս թուես-

ցուք դնել կամ ըստ առակին. եթէ ճշմարիտն եղիցի գտան կամ զի ոչ ըստ զօրութեանն զանուանս որոց տիրենն ի գիր արկանելովք եւ ոչ զգործան նոցա մեծացուցանելովք …… զորս եւս տեսայ շարագրելով՝ զորս եւ տեսողացն կարացի ուսանել ընտրելով զճշմարիտն»:

Սոկրատը եկեղեցական չէր, սիրում էր եկեղեցին, սիրում ուղղափառութիւնը անշեղ, անվտանգ տեսնել. հետեւելով Թէոդորոս քահանայի յորդորներին, սիրայօժարութեամբ յանձնառու է եղել ապագայից համար անմոռանալի յուշարձան թողնել չորրորդ դարու ընդհանուր. քրիստոնեայ եկեղեցու համար ամենափայլուն ներկայացուցիչների, Աթանաս Աղեքսանդրացու, Յովհան Ոսկեբերանի, Եպիփան Կիպրացու, Կիւրեղ Երուսաղէմացու, Ատտիկոս հայրապետի եւ նոցա հակառակորդների Արիոսի, Մակեդոնի, Նեստորի անունները: Այդ անձանց հակառակութիւնից ույժ ստացաւ եւ ընդ միշտ ամրացաւ համաշխարհական տէրութեան կազմի հետ սերտ միանալով, հալածուած քրիստոնեայ եկեղեցին. ահեղ ույժի առաջ ընկճուեցին, խոնարհուեցին, «ամենայն սիրողք խռովութեան», որով գոհ սրտով պատմաբանը վերջացնում է իւր ծանր գործը աղօթելով եկեղեցւոյ խաղաղութեան համար. «Բայց մեր աստանաւր ուրեք զպատմութիւնս դադարեցուցեալ ի խաղաղութիւն կեալ զորս ամենայն ուրէք եկեղեցիս, քաղաքս եւ ազգս աղաւթեսցուք»:

ՄԵՍՐՈՊ ՎՐԴ. ՏԷՐ ՄՈՎՍԷՍԵԱՆ

1896 Թ. 25-ն Օգոստոսի
ի Ս. Էջմիածին.






# ԳԻՐՔ ԱՌԱՋԻՆ

## Գլ․ Ա․

Եւսեբիոսի Պամփիլեայ յամենայն տասնեսին գիրսն եղեալ զեկեղեցական պատմութիւն, դադարեաց ի ժամանակս Կոստանդնի Թագաւորի՝ յորս և առ Դիոկղետիանոսիւ եղեալ հալածումն ի վերայ քրիստոնէից, դադարեաց։ Գրելով նորա և ի վարսն Կոստանդնի ըստ Թուղյ [ա] յիշատակ առնէ Թագաւորին և ժողովրդեան բարձր ասացութեան բանին մանաւանդ որպէս զի գովութեան հոգ տարեալ [բ] քան թէ ստուգաբար ըմբռնել զեղեալսն։

ա․ Բնագ․ ունի Τῶν κατ᾽ Ἄρειον ուստի ըստ Թուղյ-ի տեղ պիտի լինէր „որոց ըստ Արիոսին„։

բ․ „Գովութեանց Թագաւորին եւ Ներբողական բարձրասութեան բանից առաւել հոգ տարեալ„ . . . . համաձայն բնագ․ ընթերցանութեան։

## Գլ․ ԺԴ․

Կոստանդիանոսի զկնի միահամուռ տիրելոյ Թագաւորաց՝ զԼիկիանոս քեռայրն իւր Թագաւորեցուցանէ, զոր յետոյ հալածանս առնելով քրիստոնէից ընդդիմանալ Կոստանդիանոսի ըմբռնի եւ սպանանի։

Եւսեբի Պամփիլեայ ի տասներորդ գիրսն եղեալ [ա] զեկեղեցւոյ պատմութիւնն, լռեաց ի ժամանակս Կոստանդիանոսի Մեծի և որ առ Դիոկղետիանոսիւ եղեալ [բ] հալածանք քրիստոնէից. Գրեաց նա և զվարս Կոստանդիանոսի ի Տէր ժողովական բարձր ասացութեամբք [գ] զոր փոքր ինչ առանօր յիշեսցուք

ա․ Ա՛ եղեալ եկեղեցւոյ։ բ․ Դ․ եւ որ ի Դիոկղետիանոսէ եղեւ։

գ․ Ա՛ Դ․ բարձրասացութեամբ։

Իսկ մեր նախադրեալ շարագրել զառ ի նմանէ մինչև առ յեկեղեցեացն եղելոյ պատճառոյն։

Սկիզբն յորոց նոյն արասցուք ոչինչ պատմութեան դժարանելոյ հոգ տարեալք. այլ թէ զիարդ գտեալ գրով ի պատմողացն, և կամ թէ որպէս լուաք պատմեսցուք. և վասն զի զառաջիկայն հասանէ մեզ յիշել, եթէ որով պատճառաւ ի քրիստոնէութիւն եկն թագաւորն փոքր ինչ վասն այնորիկ որպէս է վարկանել յիշեսցուք սատուստ ուստեք զսկիզբն արարեալ։

## Գլ. Բ.

Զի[1] յայնժամ Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս որ կոչի Եռկուղիոս ի միաբանութենէ ի բաց ընկեցեալք զթագաւորութիւն զիւրեանցն փոխէին զվարս. Մաքսիմիանոս որ կոչի Գաղերիոս նոցունց թագաւորակից եղեալ յԻտալիա կացոյց երկուս կայսերս. զՄաքսիմիանոս ի կողմանս արևելից, իսկ զՍեւերոս յԻտալիայ։

Իսկ Բրիտիա Կոստանդին[2] կոչեցաւ թագաւոր ի տեղւոջ Կոստանդեայ հաւր իւրոյ վախճանելոյ յառաջին ամին երկերիւրորդի եւթանասներորդի ա Ողիմպիադայն

ա, Բնագիրն ունի πρώτης առաջնորդի։

1) Տես Սոզոմենոս. Պատմութիւն եկեղեցական Ա. 2. 3. 4. Կասիոդորոս. Պատմ. Եռամասնեայ (Tripartita historia) Ա. 4.

2) Եթէ Սոկրատին հետեւելով ընդունենք, որ Կոստանդինը Դիոկղետիանոսի եւ Մաքսիմիանոս Հերկուլիոսից անմիջապէս յետոյ է թագաւորել, կստանանք որ նա 52 տարի է իշխել, մինչդեռ յայտնի է, որ նա կառավարեց երեսուն տարի եւ տասն ամիս. Թագաւորութեան ժամանակը որոշւում է Փրկ 305 եւ 306 թ.

Զի յորժամ Դիոկղետիանոս և Մաքսիմիանոս ի բաց կացեալ ի թագաւորութենէն ակամայ յաղթահարեալք ի Կոստանդիանոսէ, վասն ամբարշտութեանն ա նոցա.

ա. Բ. ամբարշտութեան.

ի տասն և հնգին Յուլի ամսոյ. բայց ի ժամու ի զաւրականացն Պրետորիանոսաց, Մաքսենտիոս որդի Մաքսիմիանու որդի Երկուղիա եղև բռնակալ մանաւանդ քան թագաւոր:

Ի յայսմանէ Երկուղիոս դարձեալ ի ցանկութիւն թագաւորութեան առհարձեալ, ձեռնարկեաց մերկացուցանել [ա] զորդին իւր զՄաքսենտիոս. բայց զայս առնել արգելու ի զաւրականացն. յետոյ ի Տարսոն Կիլիկիոյ [բ] փախուցանէր [1]:

Իսկ ի կայսերէն Սեւերեայ Գաղերիոս Մաքսիմինոս առաքեալ ի Հռոմ ունել զՄաքսենտիոս՝ գերեցաւ մատնեալ ի զինուորաց իւրոց [2]. ապա Մաքսիմիանոս Գաղերիոս վարեալ զաւերութիւնն ամենայն [3] մեռաւ յառաջագոյն եդեալ թագաւոր զԼիկինիոս որ էր ի վաղուց անտի զինուորակցեալ նմա և սիրելի, Դակեացի ազգաւ: Իսկ Մաքսենտիոս յոյժ նեղէր զՀռոմայեցիս՝ կորեալ և վարեալ զիշխանութիւնն առաւել բռնաբար քան արքայաբար: Լլկէր անարգաբար զկանայս ազատաց, և զբազումս սպանանէր և գործէր զնմանիս: Զայս զխոսացեալ թագաւորին Կոստանդիանոսի զՀռոմայեցիս

ա. կորուսանել ἀπολέσαι ըստ բն.

բ. Այստեղից սկսած պակասում է մեզ հին թարգմանութիւնը:

1. Սոկրատը սխալւում է. Մաքսիմիանոս Հերկուլեսը Կոստանդինի հրամանով սպանուեց 310 թ. Գաղղիայում, իսկ Մաքսիմոս կեսարն էր որ երկու տարի յետոյ Լիկինիոսից յաղթուելով մեռաւ Տարսոնի մօտ. ինչպէս վկայում են Աւրելիոս Վիկտորը, Եւսեբիոսը իւր Քրոնիկոնի մէջ եւ ուրիշները. Ակներեւ է որ Սոկրատը շփոթել է անունները՝ ինչ որ յաճախ է պատահում յոյն հեղինակների կողմից հռոմայեցւոց անուններում:

2. Փետր. 307 թ.

3. Զարմանալիութիւն է այդ ասելը. քանի որ Հռոմում իշխում էր Մաքսենտիոսը. իսկ Կոստանդինը Գաղղիայում:

## Գլ. ԻԱ.[1]

Իսկ թէ ո՞վ էր առ այն ժամանակաւքն միայնն Անտոն՝ յանապատին Եգիպտոսի կելով և որպէս զի յայտնապէս դիւացն ընդդիմամարտ լինելով, գտանելով զարուեստ և զնենգութիւնս նոցա. և որպէս արար նշանս բազումս աւելորդ է մեզ ասել. քանզի էհան Աթանաս Աղէքսանդրացեաց եպիսկոպոսն ի միազիր մի բոլորովին զնորա վարսն եղեալ. այսպիսի բարեաց բերէ. բերութիւնք ի ժամանակսն Կոստանդնի լինէր։

## Գլ. ԻԲ.

Այլ ի մէջ ցորենոյն Քրիստոսի[ա] սովորութիւն և որոմն բուսանին. քանզի նախանձ ի բարիսն դարանագործեալ սիրէ. քանզի առընթեր բուսանեն յառաջ

ա. Քրիստոսի բնաբ. χρηστος օրինակս. թարգմանեն չփոխեն ի.

Տես Սոզոմ. Ա. 13. Ռուփին. Ժ. 8. Կասիոդ. Ա. 11. 54. Նիկեփ. Ը. 46.

## Գլ. ԻԳ.

Յաղագս Անտոնի անապատականի պատմութիւն եւ վարք:

Էր և Անտոն անապատական յանապատս[ա] Եգիպտացւոց մենամարտեալ[բ] ընդդէմ դիւացն ի պատերազմ.[գ] և յաղթեալ և յաղթող լեալ[դ] առ նոցա նանրութեան հնարքն. և յոլովեցոյց նշանս և սքանչելիս այրն Աստուծոյ սուրբն[ե] Անտոն անապական.[զ] որպէս նորայն իսկ ցուցանէ[է] գիրք զոր գրեաց[ը] երանելին Աթանաս յոլովից իրաց[թ] տեսող և լսող, որ աւելորդ է զնորայն պատմել։

Բայց զժամանակն[ժ] բարւոյ յուշ արարի. այլ ի մէջ ցորենւոյ սերոյն հացի Քրիստոսի և որոմն բուսուցանէ թշնամին առ-

ա. Գ. յանապատն. բ. Ա՝ մենամարտեալ. գ. Ա. Գ. պատերազմ. դ. Գ. զանալ. ե. Ա՝ տարք. զ. Բ. անապատականն. է. Ա՝ ցուցանէր. ը. Գ. գրեալ ե. թ. Գ. յոլովից իսկ տեղեաց եւ լսող եկեալ որ յաւելորդ . ժ. Գ. ժամանակեօ

ի ժամանակին ի ճշմարիտ քրիստոնէութեանն քրիստո-
նեայ նման հեթանոսութիւն. որպէս և ի մարգարէսն
սուտ մարգարէք. և յառաքեալսն սուտ առաքեալք
առ ընթեր բուսանէին: Քանզի այսքան էր, որ յԸն-
պեդոկղեայ առ հեթանոսն իմաստասիրի աւրէն ի ձեռն
Մանեայ զքրիստոնէութիւնն կեղծաւորէր. յաղագս որոյ
Եւսեբիոս Պամփիլեա յեւթներրորդ պատմութեան եկե-
ղեցականին յիշեաց. այլ ոչ ստուգաբար պատմեաց:
Վասն որոյ զմնացեալսն ի նմանէ վերստին լնուլ կարևոր
համարիմ. քանզի ծանուցի թէ ով յորոց Մանի-
քէսս՝ և թէ ուստի զայսպիսիս յանդգնել ձեռնար-
կեաց: Սկիւթացի[ա] ումն տաճիկ կին ունէր գերեալ
ի վերին Թեբայոյ. և զի էր յԵգիպտոս բնակեալ, և զԵ-
գիպտացեացն ուսեալ խրատ, զԷմպէդոկղիսին և զՊիւ-

ա. Σκυθιανός չի նշանակիլ Սկիւթացի. այլ այդ անձի յատուկ ա-
նունն է «Սկիւթիանոս»:

թագորեան. որպէս առակն[ա] Տեառն ցուցանէ. որ յետ այ-
սորիկ[բ] բան. որպէս ի մարգարէսն Աստուծոյ՝ սուտ մարգա-
րէս[գ] առ ձեռն պատրաստէր. նոյնպէս առաքեալսն[դ] Քրիս-
տոսի սուտ առաքեալս այսպէս և առ ստոյգ վարդապետսն. հեր-
ձուածս կորստեան առնէ. յետ ամենայնի ինքն նեռն գայ հա-
կառակ Քրիստոսի: Եւ յաղագս այսորիկ զգուշացուցանեն աս-
տուածային գիրք. մանաւանդ նոյն ինքն Քրիստոս. որպէս և
յուխտարանն[ե] քարոզի: Ասացից և վասն Մանիքեցւոյն. որ
զքրիստոնէութեան անուն սուտութեամբ ունին:

ԳԼ. ԻԱ:

Յաղագս Մանիայ եւ առասպելական բանիցն եւ սատակման նորին:

Սկիւթացի ումն տաճիկ կին ունէր. և բնակէր յԵգիպտոս.
ուսանէր[գ] զնոցա արուեստ[է] և զՊիւթագորայն[ը] կարծիս[թ]

ա. Ա՝ Գ. Դ. առակ. բ. Դ. այսոցիկ ցուցանէ բան. գ. Ա՝ մարգարէն այլ ձևն, Դ. Աստուծոյ ձեռն. դ. Ա՝ Դ. առ առաքելոյն. Բ. յառաքելոյն. ե. Դ. յուխտարանն. զ. Բ. ուսուցանէր, է. Դ. զարուեստն. Ա՝ զնոցա արուեստ. ը. Ա՝ Բ. զԹագաւորայն. Դ. Զիւպիտերայն. թ. Դ. կարծիսն.

ի հաղուոյ այսպէս կորընչի։ Իսկ կին ոմն որ մերձն կայր թաղեաց զնա և գնոյա զզանձն առեալ մանուկ մի գնեաց եաւթն տարեկան. նմին հաստակաւ անուն Կորբիկոս։ Զսոյ ազատեալ և դպրութիւն ուսուցեալ, յետ ժամանակի ինչ.[1] վախճանեցաւ, իսկ զամենայն զզանձան նորա Աեծոն ըմբռնեալ. և զգրեանն զոր նա շարադրեաց՝ ի Սկիւթացւոյն խրատեալ։ Զայս առնելով ազատեալն Կորբիկոս. և ի կողմանս Պարսկացն գնացեալ, փոխէ զանունն Մանի. և այս ինչ են Բուդդասա-Սկիա ե ռ ե ա ն գրեանն. որպէս ընտանի ինչ, որոց ի նմանէ մոլորելոցն աւանդեաց։ Իսկ գրենոյս այսորիկ որոց այժմ պատճառքս քրիստոնէանան բանիւքն. իսկ հեթանոսանան աւրինաւքն. քանզի և աստուածոբազումս[2] պաշտել Մանիքէօս յորդորէ. ինքն անաստուած գոլով և արեգական երկիրպագանել[3] ուսուցանէ. և մարմնական

1. Հմմտ. տարուց յետոյ։

2. Բազմաստուածութիւն ասելով, կարծում են պիտի հասկանալ Մանիքեցոց դաւանած սկզբունքները՝ բարի եւ չար. թէեւ դարձուածի անորոշութիւնը ենթադրել է տալիս նաեւ տարբեր կարծիք.

3. Թէ Մանիքեցիք արեգակ էին պաշտում. վկայում են եւ ուրիշները.

հարեալ ի հոգւոյն, պիղծն [ա] այն սատակեցաւ. Իսկ որ էր մերձ կին ոմն թաղեաց [բ] զնա. և առեալ զինչս նորա գնեաց մանուկ մի եօթն ամեայ Կուբրիկոս անուն. [գ] ուսոյց նմա դըպրութիւն և ազատեաց. [դ] Եւ վախճանեալ կինն առնու զինչս և զգրեանն Կուբրիկոս. և ի կողմանս [ե] Պարսկաց եկեալ Մանի անուանէ զինքն և միոյ գրոյն զկորստեանն ունին զխորհուրդ [զ] և կեղծաւորեալ խաբէութեամբ զքրիստոնէից որ բազումաստուածս [է] պաշտել ուսուցանէ, և արեգական երկիրպագել ասէ և լուսնի զի զՔրիստոսի [ը] մարմինն արեգական ասէ եղեալ և զարիւնն ի լուսնի. [թ] և զՔրիստոսի ծնունդն առ աչօք

ա. գ. գ. Ա՝ պղծոյ սատակեցաւ. բ. գ. թաղեաց. գ. Ա՝ Բ գ. Կուբրիկոս. դ. գ. ազատեաց զնա. ե. Բ. կողմանց զ. գ. ունէր զխորհուրդն է Ա՝. գ. զաստուածս. ը. Ա՝ Քրիստոսի թ. գ. ի լուսնէ։

ինչ աւրինադրէ յայտնապէս։ Ընպէդոկղոսէ. և ի Պիւթագորա. և Եգիպտացւոցն կարծեաց հետևեալ. և զՔրիստոս մարմնով ծնանիլ ոչ խորհի.[ա] առ աչաւք ինչ զնա ասէր լինի. և զաւրէնս և զմարգարէս արհամարհէ. և զինքն մխիթարիչ անուանէ, զոր ամենայն աւտար ուղղափառ եկեղեցւոյն կարգեաց։ Իսկ ի Թուղթսն և առաքեալ զինքն անուանեալ յանդգնեցաւ, այլ այսքան ստութեանս զարդար դատաստանն Աստուծոյ ընդունէր։ Վասն այս պատճառոյս զարդար դատաստան Աստուծոյ այսպէս էառ թշուառականն։ Պարսկաց թագաւորին որդի յախտ ինչ դժընդակ անգեալ դնէր. իսկ հայրն նորա, զ ա ս ա ց ե ա լ ինչ,[բ] զամենայն քար շարժէր. զորդին իւր կամեցեալ ապրեցուցանել։ Իսկ լուեալ մասն Մանիքէոսի և զնշանսն նորա կարծելով ճշմարիտ լինել. որպէս զառաքել կոչէ, հաւատացեալ նովաւ ապրել որդւոյն իւրոյ։ Իսկ եկեալ ստեղծական ձևով ձեռնարկէ յորդի թագաւորին, որպէս զի մանուկն ի ձեռս նորա մեռանէր. և արկեալ զնա յարգելանս թագաւորն. պատրաստ լինել ի պատիժ, իսկ զերծեալ ի Միջագետս կոյս ապրեալ լինել։ [1] Իսկ լուեալ

ա. Ըստ բնագ. «մերժէ»

բ «Որպէս սովորութիւն է ասել»

1. Տես փոտիոս Ընդդէմ Մանիքեց. գիրք Ա. փոտը պատմում է. որ ասէ, և ոչ ճշմարիտ. և զօրէնս[ա] և զմարգարէս արհամարհէ. և մխիթարիչ զինքն անուանէ. և ի Թուղթս[բ] առաքելոցն զինքն կոչէ, վասն որոյ զարժան դատաստանն ընդունի. Որդի[գ] թագաւորին Պարսկաց հիւանդանայր, և նորա լուեալ զՄանիա,[դ] թէ նշանս առնէ, որպէս[ե] Քրիստոսի առաքեալքն. կոչէ զնա. որպէս զի[զ] բժշկեսցէ զորդի նորա. Եւ յանդգնեալ դնէ հիւանդին ձեռն[է] ի վերայ և իսկոյն վախճանէր որդին. Եւ նա[ը] բարկացեալ դնէ զՄանի[թ] ի բանտի. որպէս զի պատժեսցի, և նորա զերծեալ գայ ի Միջագետս և յոյզ քննութեան լիալ

ա դ. զօրէնսն եւ զմարգարէսն. բ. գ. թուղթս. գ Բ զի որդի. դ. գ. զՄանիանեաց ե. գ. իբրև զՔրիստոսի. զ. գ. որպէս. է. Բ. զձեռն ի վերայ հիւանդին. ը. Բ. նորա. թ. Բ զնա։

զնմանէ Պարսկաց թագաւորին անդ լինելով, կորզեալ զնա անտի կենդանւոյն զնա քերթէր[1] և յարդ և ըզմորթն նորա լցեալ, դնէր առաջի քաղաքին։ Զայս ոչ մեր ստեղծեալ ճառեմք. այլ բանիւք Արքեղայոսի՝ եպիսկոպոսի[2] Կասկարացւոց, միոյ ի քաղաքացն Միջագետաց, ընդ նմա խաւսեալ ժողովեցաք. քանզի ինքն Արքեղաոս յանդիման նորա ասեալ ասէ. և զնախագրեալն ի վերան նորա դնէ։ Յորս այսուհետև յաճեցեալ բարիսն որպէս ասացաք. դարձեալ գործեալ նախանձն սիրէ։ Իսկ թէ զինչ է պատճառն յաղագս որոց բարերարն Աստուած այնմ լինել թոյլ տայ. երբեմն վարժել ի բարի աւրէնսն կամեցեալ. և կամ յեկեղեցւոյն հաւատ զեղեալ ամպարհաւանութիւնն հատանել, կամ թէ որպէս ունի դժարս և երկայնս աւանդութիւնս. ոչ է ի դէպ այժմ քննել. և ոչ նախ կայ իսկ մեզ աւրէն կրթել. ոչ զորս վասն նախախնամութեանն և դատաստանին Աստուծոյ դժարագիւտս շարժել բանս,

Մանէսը փրկչի 272 թւին փախչելով Պարսկաստանից եկաւ Միջագետք Արքեղաոսի մօտ, որի դէմ իւր վարդապետութիւնը պաշտպանելու անզօր գտնուեցաւ. ուստի փախաւ Կարդարացւոց Դիոդորիսի եւ ապա Տրիւփոնի մօտ, բայց Արքեղաոսը այդտեղ էլ է նրան հասնում եւ ստիպում հեռանալ։

1. Տ. Եզնիկ Կողբ. (Բ. էջ 117 Հրատ. Վենետ.) «Մանի կամեցաւ վերադարձն կեղծեօք վարս ցուցանել ... մորթազերծ մահուամբ պակասեցաւ ի կենաց»։

2. Արքեղաոսը իւր գիրքը գրել է ասորերէն որ յետոյ քանիցս թարգմանուել է յունարէն։ Գրքից մնացել են հատուածներ եւ պարունակում են Մանիքեցւոց պատմութիւնը։

դարձեալ ըմբռնի, և մորթեալ կենդանւոյն և զանց զմարմինն անէր[ա] կերակուր, և զմորթն լցեալ յարդիւ զպարսպէ կախի առ դրան քաղաքին պիղծն Մանի։ Զայսոսիկ[բ] Արքեղայոս եպիսկոպոսն[գ] Միջագետաց պատմէ և զնա յանդիմանեալ կըշտամբէ. վասն զի[դ] մոլորութեան աշակերտ և վարդապետ էր. և բազում խօսս ուղղութեան[ե] ասէ ի մխիթարութիւն եկե-

ա. Դ. խառնէ. բ. Դ. զայս խօսս գ. Դ. Գ. եպիսկոպոս. դ. Գ. վասն. ե. Գ. խաղաղութեան. Դ. խօսողութեան։

այլ պատմութիւն եղելոցն առ եկեղեցիան իւրաց. որ-պէս է վարկանիլ պատմել: Որպէս զի փոքր ինչ յառաջ ի ժամանակսն Կոստանդնի որ Մանուքեցւոցն բռնա-տաղանդ այսքան պատմեցաւ:

## Գլ. ԻԳ[1]:

Բայց ի վեր ելցուք ի ժամանակս Նախակայիս պատ-մութեան ոլքան առ Եւսեբիոս և Թէոդնիս ի յաքսո-րեացն ելեալք զոմանս ըմբռնէին եկեղեցիս, ի բաց հա-նեալս որպէս է ասել, զձեռնադրեալսն ի նոցա տեղիս[2] համարձակութիւն ոչ զսակաւ ստանային ի Թագաւո-րէն. որ ամենեւիմբ պատուով էած զնոսա. որպէս ի չա-րափառութենէ ի ճշմարտութիւն դարձուցեալս: Նոկ առեցելոյ համարձակութեանն հպեալք. մեծագոյն եւս քան զառաջինն խռովութիւն տիեզերաց շարժեցին, յերկպառակութենէ դիմեալք, ի նախկին ունելոյ զնոսա

1 Տես. Սոզոմ Բ. 16. 18. Թէոդ. Ա 21. Կասիոդ. Գ. 23. Նի-կեփ. Ը. 41 մինչեւ վերջը.

2 Այդ ձեռնադրուածներն էին Ամփիոն Նիկոմիդացին եւ Քռեստոս Նիկիացին.

զեցուոյ, որ զՄանեա եղծանէ զամբարշտութիւն" որ ք կամին ուսանել:

## Գ. Լ. ԻԶ.

### Վասն Արիոսի դառնալոյն ի մեսաղէ

Արդ ի վեր ելցուք ի Նախակայիս[ա] պատմութիւն, որ յաղագս Արիոսի և որք ընդ նմա ի մեռաղս դարձան ի ձեռն Սեբրի[բ] Կեսարեա և Թէոգնի, և այլ եպիսկոպոսաց բարեխօսութեան[գ] առ Թագաւորն եղեալ, որպէս դարձեալք ի ճշմարտութիւն[դ] համարձակութիւն առին[ե] ի Թագաւորէն ունել[զ] զի իւրաքանչիւր աթոռ, և որք ի նոցա տեղիս ունել զայլ միճակ. Ցասուիկ[է]

ա Դ. զմոլորութիւն. բ. Բ. որք. գ Դ. ի նախակարգ. դ. Դ. ետեսի. ե. Բ. բարեխօսութեամբ. զ. Դ. ի ճշմարտութեան. է Դ. առնուլ. ը. Ա՝ ունիցի. թ. Գ. յայտարիկ.

դիման զԱրիոս. և ճանապարհ նմա յԱղեքսանդրիայ շնորհել։ Զայս այսուհետև թէ որպէս զաւրեաց գործել, ըստ աշխարհին տացից ստուգութեամբ։ Իսկ նախ քան զայսոսիկ ոչ ի վերոյ եկեղեցեացն լինի խռովութիւն. քանզի և անդրէն զխաղաղութիւնն ընտանիք եկեղեցւոյն խռովեցուցանէին։ Բայց Եւսեբիոս[ա] ասէ.[1] յետ ժողովոյն ամբոխիլ Եգիպտոսի. զպատճառն ոչ յաւելեալ, յորոց և զերկլեզուի կարծիս ստացաւ. զի զպատճառսն ասել խոնարհեցուցանելով, ոչ համակարծէր որովք ի Նիկիայն խոստովանէին, էր որպէս և մեք իսկ ի յոլովից թղթոց գտանէաք. զորս յետ ժողովոյն եպիսկոպոսունքն առ միմեանս գրէին. որ զհամագոյութեանն ինչ բանս խառնակէր. առ որ յամեալք և ստուգաբանեալք զընդէմ միմեանց պատերազմ յարուցանէին, զի ի գիշերամարտութենէ ոչինչ մերժեալ զեզ-

ա. Փամփիլեայ Ραμφίλου ասէ, ոսկի բնագիրը. որով որոշւում միտս Եւսեբիոսից։

1. Վ. Կ. Գ. 23.

ընդունել զԱրիոս յԱղեքսանդր, որպէս զի կարասցին նոքա հաստատել զչարափառութիւն։ Գրէ Սեբէոս աղաչանօք ընդունել զԱրիոս և որք ընդ նմայն և սպասեն[ա] ի բանից, թէ ոչ հաւանեսցի.[բ] Բայց Աթանաս ոչ ողոքանացն[գ] լուէ և ոչ ի սպառնալեացն զարհուրի։ Այնուհետև զթագաւորն հաւանեցուցանէ տեսանել զԱրիոս և լսել ի նմանէ. զի յետ դարձին չէր տեսեալ, զոր փոքր ինչ յետոյ տացից զայն։ Բայց եկեղեցին ամբոխեալ լինէին[դ] և առ Արիոս որ էր զերկ լեզու զչարիս[ե] իւր, զի[զ] կարծիս տային առ հաւատն Նիկիայ. և առ որք հակառակ նոցին խորհրդողաց[է] գտաք և մեք ի նորա թուղթս,[ը] որ յետ ժողովոյն որ յեպիսկոպոսապետսն[թ] գրէր, որ զհամագոյ Երրորդութեան[ժ] զխոստովանութիւն,[ժա] խառնակէր իմն և ստուգաբանեալ[ժբ] զպատերազմ յառնէր[ժգ] որպէս ի գիշերամար-

ա. Ա՛ Գ. զպատճառս. բ. Ա. հաւատասցի. գ. Գ. աղաչանացն, դ. Գ. լինէր. ե. Ա՛ ի չարիս. Գ. վ չարիսն. զ. Գ. զոր է, Գ. Գ. Ա՛ խորհրդոցս. ը. Բ. թուղթսն. թ. Գ. Ա՛ եպիսկոպոսապետսն, ժ. Գ. Երրորդութիւն. ժա. Բ. զխոստովանութեան. ժբ. Գ. ստուգաբանեալ, ժգ. Գ. առնէր.

եալսն. վասն զի ոչ երեւէին իսկ միմեանց ասացեալքն. յորոց զմիմեանս հայհոյեալն ակն ունէին. քանզի ոմանք զհամագոյութեանն բանս խոնարհեցուցեալ. զՍաբելի և զՄոնտանեայ[1] զչարափառութեանն մուծանել. որոց նմանոյն ակն ունել կարծէին. և յաղագս այսորիկ հայհոյի՛չս կոչէին. որպէս զխոստովանողս զգոյութիւն Որդւոյն Աստուծոյ, իսկ ոմանց համագոյութեանն առ ընթերեալքն, բազմաստուածութիւն մուծանել այլոցն կարծէին։ Բայց Եւստաթէոս Անտիոքու եպիսկոպոսն քարշէ զՊամփիլիա Եւսեբիոս. որպէս զի Նիկիոյ հաւատն պակասագրելով, այլ Եւսեբիոս Պամփիլեա զՆիկիոյ հաւատն ո՛չ ասէ զանց առնել. բայց մատնէ զԵւստաթէոս, որպէս զՍաբելի կարծիսն մուծանող։ Վասն այսորիկ իւրաքանչիւր ոք ընդդիմամարտեալ գրանսն գրէին. երկոքինն ասելով. էական և գոյական լինել զՈրդին Աստուծոյ, և մի աստուածութիւն յերեսինն զօլ խոստովանելով, բայց միմեանց, ո՛չ գիտեմ թէ ո՛րպէս, համաձայնել ոչ կարէին, և վասն այսորիկ լռեալ ոչինչ պատճառով ունէին։

1. Սոկրատը անհիմն կերպով է Սաբելլին եւ Մոնտանին միացրել. որովհետեւ ըստ վկայութեան հին հեղինակների Մոնտ. Եռրոդութեան դաւանանքի մէջ ոչնչով չէր զանազանւում ուղղափառ եկեղեցուց.

տութեան լինել, ոչ երեւէին ա միմեանց իմացեալքն։ Զի ոմանց զՍաբելլին կարծեալք. և ոմանց Մոնտանոսի չարափառութիւնն և ոմանց զհամագոյութիւն ի բազմաստուածութիւն բ մուծանէին, այնպէս գ խառնարնդորեալք ի չարէն երկպառակութիւն լինէր։ Եւստաթէոս Անտիոքայ եպիսկոպոս զՍեբի Պամփիլեայ դ ասէ. ե ոչ լինել ունել զհաւատն Նիկիայ. իսկ նա ոչ այսպէս ասէ, այլ զնմանէ ասէ զՍաբելլին ունել զհաւատս եւ անմիաբան զ լինել լինի ժողով յԱնտիոք. Նզովեցին զՍտաթէոս է ոչ միայն յաղագս ը Սաբելի, այլ և յաղագս այլ պատճառանաց. բայց ոմանք թ ի ժողովոյն անիրաւ ասէին զնզովսն.

ա. Բ. Գ. երեւէին, բ. Դ. բազմաստուածութեան, գ. Գ. աշխարհի, դ. Դ. եպիսկոպոս Ե, ե. Ա² Պամփիլեայ. Գ. Պամփիլայ, զ. Դ. առնլով լինել ու՛եղով զհաւատս, է. Դ. ամենայնքն, Գ. զամենայնսն լինել, ը. Ա¹ զԸ.ստուծոյ, թ. Գ. վասն Ժ. Գ. Դ. ամենայն.

## Գլ. ԻԴ [1]

Այս ժողով արարեալ յԱնտիոք [2] նզովեն զՆաւատա-թիոս. իբր զՍաբելլին խորհող, զոր և ի Նիկիոյ ժողովն աւրինադրեցաւ. որպէս զի ոմանց ասել, և վասն այլ ոչ բարեաց պատճառաց. զորս ոչ յայտնապէս ճառեցին: Զայս ամենեքեան սովորութեամբ առնել. նզովեցելոցն եպիսկոպոսունքն. ամբաստանելով ամբարշտեալ ասէին, բայց զպատճառս ամբարշտութեանն ոչ յաւելլով: Զի ոմանք իբրև զՍաբելլացեալ նզովեն զՆաւատաթիոս. և Կիւրոսի [3] Տիւբերիայ ա եպիսկոպոսի ամբաստան եղելոյ զնմանէ. Գրիգորիոս Լաւոդիկեցի. որ յՍարդիս եպիսկոպոս Եղէացեաց հառողացն բ ըզհամագոյութիւնն. ի գովեստին զոր յԵւսեբիոս Եմեսենացի գրեալ ճառեաց: Բայց վասն Եմեսինացի Եւսեբիոսի որ ըստ աշխարհին գ ասացուք: Իսկ Գրիգորիոս ապիթանա դ վասն Նաւատաթիա գրէ առնլով.

ա. բնագ. Βεροία.

բ. բնագ. εἷς ὢν τῶν μισούντων [illegible]

գ. Այլում [illegible]

դ. [illegible] ἀπίθανος [illegible]

[1] Տես Սոզոմ. Բ. 19. Նւեսք. Վ. Կ. Գ. 59. Թէոդոր Ա. 21. Փիլոստ. Բ. 7. Կասիոդ. Բ. 24. Նիկեփ. Ը. 45.

[2] Այս ժողովի ժամանակը հաստատ յայտնի չէ. ոմանք կարծում են 328 թ. ուրիշները 330 թ. Փիլոստորգը պատմում է. որ ժողովին մասնակցեցին 250 եպիսկոպոս.

[3] Բերրոյա անունով Ասորիքում մի քաղաք կար. հաւանական է այնտեղի եպիսկոպոսն է յիշւում այստեղ: Ըստ Հիերոնիմի (Պատմ. եկեղ. 85) Եւստաթիոսը նախ քան Աղեքսանդրիա գնալը. այդ աթոռն ունէր.

Յայնժամ աղմկեալ լինէր Անտիոք քաղաքն, ա ոմանք բ զԵւսեբիոս Պամփիլեայ վերակոչել ասէին, իսկ ոմանք զԵւստաթէոս գ հաստատեալ ասէին. և լինէր մարտ սաստիկ, որք դ ի սուսերս

ա. Գ. Քաղաք. բ. Բ. զի ոմանք. գ. Ա՛ Եւսեբիոս. դ. Գ. որ.

զՅուստոսի Կիւրոսէ ամբաստանեալ որպէս զաղբեղացեալ·
Եւ և զնոյն Կիւրոսի ի նոյնան վաղեալ" նզովիլ առէ,
և ո՞րպէս է վարկանիլ" զԱարեղին խորհելով Աթանա-
սա՞ ամբաստանելի· որպէս զաղբէլացեալ· նմանեցաւ այ-
սուհետև Յուստոսի և վասն այլոց նզովիլ պատճառաց։
Զի յայնժամ և Անտիոքիա վասն այնր ամբոխումն ի
նորա նզովելն լինի· և յետ այսորիկ բազում անգամ
վասն ընտրութեան եպիսկոպոսին այսքան բորբոքեցաւ
հուր· որպէս զի առ փոքր մի զամենայն քաղաքն ի խո-
րոց կործանել, յերկուս հատածս պատառեցելոց ե-
կեղեցւոյն ժողովրդի· ոմանք զՅուսեբիոս Պամփիլեա
անկեալ յԱնտիոքայ վիճեցելոցն· ոմանց փութացելոց
վերստին ածել զՅուստոս։ Այս խառնակեալ լինէին
երկոքին կողմունքն հանդերձ քաղաքաւն և հեծելա-
կան ձեռամբ, որպէս պատերազմաց ձևով շարժեալ լի-
նէր, որպէս զի և սրոյ" հանդերձիլ մերկանալ· թէ ոչ
յԱստուծոյ և երկիւղիւ թագաւորին զդիմմունան"
էր արգելեալ։ Քանզի թագաւորն ի ձեռն թղթոց զե-
ղեալ. աղմուկն դադարեցոյց· իսկ Յուսեբիոս հրաժարեալ
յԱնտիոքայ եպիսկոպոսութենէն գնաց ի Կե-
սարեայ յիւր աթոռն" որով ընծայելի արարեալ
զնոյ թագաւորին, գրէ առ նա և զյաւժարութիւնն
գովեալ զնա երանելի կոչէ· զի ոչ միոյ քաղաքի, այլ

ա. ἁλόντα ըմբռնեալ

բ. Բնագ. ասէ թէ [illegible] որ են կարևոր է.

գ. Բնագ. [illegible] գրած է. [illegible] որովհետև [illegible] գէմ էր.

դ. Զեռ. օրինակ է գրած.

ե. [illegible]

զ. Բնագ. [illegible] այս բառերը.

մաքրերէին· բայց թուղթք" թագաւորին դադարեցուցանէին
զաղմուկն։ Իսկ Սեբիոս հրամայեալ" յԱնտիոքայ եպիսկոպո-
սութենէն գնալ" ի Կեսարիայ յիւր աթոռն և գովի ի թագա-
ւորէն։

ա. Ա' աղօթք. Դ. բառը. բ. Ա' Գ. Դ. Երամայեալ. գ. Դ. գնալ.

ամենայն պարզապէս տիեզերաց եպիսկոպոս լինել արժանաւոր իրաւացաւ։ Յետ որոյ զկնի յութերրորդ ամին տարի զոր յԱղէքսանդրիայ[ա] եկեղեցւոյն աթոռ պարապեցուցանել։[1] Երբեմն յերեկ որ ինս[բ] էր փոյթ որոյ խափանել զհաւատն Նիկիոյ փութացելոց ձեռնադրի Եւփռնինոս։[գ] Այլքան վասն ժողովոյն Անտիոքայ· յաղագս Եւստաթիա պատմեցաւ։ Յետ այսորիկ նոյն ժամայն և որ զԲիւրիտոնն էթող Եւսեբիոս· և յայնժամ զՆիկոմիդիոյն ունէր զեկեղեցի· փոյթ յանձին դնէր իւրաւքն զԱրիոս իջուցանել յԱղէքսանդրիա· և էթէ որպէս զայս կարացին գործել, պատմեցից, և էթէ որպէս թագաւորն հաւանեցաւ յանդիման ունել զԱրիոս և զարտ ընդ նմայն զԵւզոյիան արդէն ճառեցից։

## Գլ· ԻԵ·[2]

Էր քոյր թագաւորին Կոստանդնի, Կոստի ա[դ] անուն կին եղելոյ նախկին Ղիկինոսի թագաւորակցին Կոս-

ա. Աղէքսանդր. սխալ է. պէտք է լինի համաձայն բնագրի եւ միւսի [illegible]

բ. Այդ բառը աղճատուած է երեւում եւ բնագրում համապատասխանը չկա-նի, գրա տեղ է· ὀψὲ δέποτε σπουδῇ [illegible]

գ. բնագ. Εὐφρόνιος.

դ. Κωνσταντία

1. Սոկրատի այս կարծեացը դէմ, թէ Անտիոքա եկեղեցին ութ տարի թափուր է մնացել. ծանրակշիռ փաստեր կան. որ մի առ մի թուել մեզ հեռուն կտանէր.

2. Տես Սոզոմ. Բ. 27. Ռուփ. Ժ. 11. Նիկեփ. Բ. 47.

## Գլ. ԻԷ.

Թէ որպէս զԱրիոս չանան արդարացուցանել եւ յառաքի յԱղէքսանդրիայ,

Ճառեցից և յաղագս Արիոսի զպատճառս զմուտս առ թագաւորն։ Կոստի քոյր Կոստանդիանոսի, կին Լիկիանիա[ա] Թ

ա. Գ. Լիկինէի թագաւորին.

տանգնի. և վասն այսորիկ բռնակալ եղեալ, վասն նորինն մեռանէր։ Սմա քահանայ ոմն զԱրիոսին ունելով զաղանդ, ծանաւթ էր, և յընտանիականագոյնս կարգեալ լինէր։ Ըմբռնեալ ապա զԵւսեբիոսին,[ա] և զորոց ընդ նմայն, զբանս վասն Արիոսի առ կինն սերմանէր։ Անիրաւիլ զնա ասել ի ժողովոյն, և մի խորհել որպէս յաղագս նորայն ունի բանն։ Զայս լսելով Կոստանդիայ, հաւատայր քահանային. բայց Թագաւորին ասել ոչ երբէք քաջալերէր։ Ապա պատահէր յախտ գժընդակ անգանել Կոստանդեայ, և Թագաւորին յաճախապէս հիւանդութեանն նորա այց առնէր։ Իսկ կինն ի յախտէն գժընդակագոյն մեռանել ակն ունէր, և յանձնէր Թագաւորին զքահանայն, վկայելով զնորա փոյթ և զերկիւղածութիւն և որպէս զի բարեմիտ է յոյժ առ Թագաւորութիւն նորա։ Իսկ յետ բազում ինչ իրի, Կոստանդեա մեռանէր, և քահանայն յընտանիս Թագա-

ա Բն՝ ὑποβαλόντος «դրդեալ յեւսեբիոսէ:»

գաւորին[ա] որ բռնազբօսեալ մեռաւ,[1] Քահանայ ոմն արիոսեան հրապուրեալ զԿոստի քոյր Թագաւորին. անիրաւ զրպարտեալ ժողովոյն զԱրիոս. և հաւանեցուցանէր զնա, զի յանդիման լիցի Արիոս Թագաւորին։ Իսկ Կոստա ոչ համարձակէր ասել։ Եղև հիւանդանալ նմա և մեռանիլ.[բ] կոչէ զԹագաւորն. և յանձն առնէ զտուն և զընտանիս[գ] իւր և զքահանայէն վկայեալ զերկիւղածութեան[դ] և զբարեմտութեան առ տուն Թագաւորութեանն։ Եւ յետ նորա վախճանին[ե] յընտանիս Թագա-

1 Տես պատմ. Սոկրէտսի էջ. 35. «Կոստի քոյր Թագաւորին Կոստանդէ՝ կին Լիկիանէ Թագաւորին որ ի բռնազբաւելն մեռաւ. Բիւզ:

ա. Ն. Թագաւորի. բ. Բ մեռանել. գ. Դ զընտանիսն. դ. Դ. զերկիւղածութենէ. գ. Դ. զերկիւղածութիւն. ե. Դ. վախճանի:

ւորին կարգեալ լինէր. և ըստ սակաւ ինչ զհամարձա-
կութիւնն աճեցուցեալ, զնոյն բանս վասն Արիոսի ծա-
նուցանէ Թագաւորին, որովք առ քոյրն հպէր յառա-
ջագոյն, ասելով. Մի այլատարազ իմանալ զԱրիոս, որ
ինչ ժողովոյն թուեցաւ. եկեալ յանդիման նմա, խոս-
տովանել այսուքիւք.[1] և մի անիրաւապէս զրպարտել.[2]
Աւտար ինչ այսուհետև երևէր Թագաւորին ի քահա-
նայէն ասացեալն. և ասէր. եթէ Արիոս խոստովանի
զսուրբ ժողովոյն և զճշմարտապէս զնորայն խորհի, ըն-
դունիմ և հանդերձ պատուով արձակեմ յԱղէքսանդ-
րիայ. Զայս ասելով Թագաւորին, գրէ առ Արիոս. ա

ա. Բնագրում դրած է Կոստանդնի համառօտ թուղթը:

1. Այսինքն եթէ կայսրը թոյլ տայ կգայ ճշմարտութիւնը կխոստովանի եւ զուր տեղից չի զրպարտուիլ։

2. [illegible] այս պատմութիւնը առհիմն եւ հնարովի է համարում առարկելով. անհնար էր, որ Աթանասը իւր հակառակորդների դէմ գրելով չյիշէր կայսեր եւ նրա քրոջ մօտ այնքան հեղինակութիւն ունեցող անձի անունը կամ գոնէ գործերը. Իսկ Սոկրատը օգտուել է Ռուփինից, որի հեղինակութիւնը այնքան էլ մեծ չէ։

ւորին կարգեալ լինէր, և առեալ համարձակութիւն զնոյն բանս
ասէր. ոչ անիրաւ զԱրիոսէ ասել ա զրպարտեալն բ ի ժողո-
վոյն. և յուշ գ առնէր զՍեբի բանս դ որ առ Թագաւորն, զի
յանդիմանեալ ե ծանիցես զխոստովանութիւն. յայտօսիկ ոչ
անիրաւ զասելն ասէ. զ Եւ պատասխանի առնէ թէ է Արիոս
ոչ այլատարազ խորհի, ը քան զարժանն սուրբ ժողովոյն որ
ի Նիկիայ, ընդունիմ զնա պատուով, և առաքեմ Թղթովք թ
յԱղէքսանդր, ընդունել զնա. Եւ զգացուցանէր ժ զայս քահա-

ա. Ա՛ ասէր. բ. Գ. զրպարտեալ. գ. Ա՛ յոյշ. դ. Դ. զՍեբէ բանսն. ե. Դ. յանդիման լեալ. զ. Դ. ասէր. է. Դ. եթէ. ը. Դ. օտար ասաց թ. Դ. զթղթով. ժ. Ա Գ. Ն. սգացուցանէր.

յորդորելով զնա գալ ի միաբանութիւն, և հաստանել իւրայոցն հայրենեաց։ Եւ տուաւ թուղթս այս առ Արիոս, առաքեալ յառաջ քան զհինգ կաղանդացն, Դեկտեմբերի ամսոյ։ Բայց սքանչանալի է ի վերայ փութոյ և նախանձուն, զոր ունէր թագաւորն առ աստուածպաշտութիւնն։ Քանզի երեւի ի թղթոյ նորա բազում անգամ ի զղջումն յորդորելով զնա, որով մեղադրէ նա թղթովքն յիւրսն ածիլ հայրենիս. զի բազում անգամ գրեալ նորա փաղփաղակի ոչ Արիոս ելանէր ի ճըշմարտութիւնն։ Ապա ընգալեալ Արիոսի զթագաւորին թուղթ յետ բազում ինչ իրի գայր ի Կոստանդնուպաւլիս.[1] ընդ նմա Եւզոյիոս, զոր նզովեացն Աղէքսանդրոս սարկաւագ գոլով սորա, յորժամ զառ Արիոսն նզովեաց։ Ընդունի զնոսա թագաւորն յանդիման իւր, և հարցանէր եթէ խոստովանիցին զհաւատն, իսկ խոստովանելոց պատրաստաբար նոցա, թագաւորն հրամայեաց նոցա գրով զհաւատան տալ։

1 Կ. Պոլիս այդ ժամանակ իբրեւ մայրաքաղաք դեռ չէր օծուած. Կայսրը մնում էր Նիկոմիդիայում, ուստի կասկածելի է այս յիշատակութիւնը. իսկ Փիլոստորգիոսը (Բ. 7) վկայում է, որ Արիոսականք իւրեանց միջնորդութիւնները գործ են դրել Նիկոմիդիայում.

Նոյն Արիոսի թղթով. Եւ կոչեցեալ լինէր [ա] Արիոս ի թագաւորէն ի Կոստանդնուպօլիս ընդ նմա Եւզովիոս՝ սարկաւագ զնզովեալն [բ] յԱղէքսանդրէ։ Եւ յանդիմանն [գ] լինել խնդրէ [դ] զխոստովանութեան բան սուրբ ժողովոյն. և նոքա գրով զնոյն հաստատեն խորամանկեալ [ե] առ թագաւորին կամս։

ա. Դ. լինի. բ. Գ. զնոզովեալ. գ. Աՙ յանդիմանեալ. դ. Դ. խընդրէր. ե. Դ. ի խորամանկէն առ թագաւորին կամսն. Գ. Աՙ յամս. Բ. Ն. չիք՝ Ա. ամս։

### Գ.Լ. ԻԶ.[1]

Իսկ Նոյա գիրս շարագրեալս մատուցանեն Թագա-
ւորին, զայս ունելով սկիզբն։ «Ընթէ[ա] որպէս հրամայեաց
«մեզ քո աստուածասէր բարեպաշտութիւնդ, տէր Թա-
«գաւոր, գնեմք զմեր զհաւատ, և գրով խոստովանիմք առ
«Աստուած հաւատալ այսպէս. և մեք և ամենայն որք
«ընդ մեզ, որպէս և ստորակարգիս իսկ։[բ] Իսկ թէ ոչ
«զայս այսպէս հաւատամք, և ի բաց ընդգենումք զճշմար-
«տապէս, զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին, որպէս և
«ամենայն կաթողիկէ եկեղեցի և Սուրբ Գիրք ուսուցա-
«նեն, յոր ըստ ամենայնի հաւատացաք, դատաւոր մեր է
«Աստուած և այժմ և ի հանդերձելումն աւուրն։ Վասն
«որոյ աղաչեմք զբարեպաշտութիւնդ քո, աստուածա-
«պաշտ Թագաւոր, եկեղեցականս մեզ գոլով, և զհաւատ
«և զխորհուրդ եկեղեցւոյ և Սրբոց Գրոց ունելով, միաւո-

ա. Այս թուղթը կրճատ է թարգմանած, բաց է թողած սկիզբը և այն կտորը, ուր Արիոսը ըստ Նիկիականի կրկնում է դաւանանքը:

բ. ὡς ὑποτέτακται: «որպէս ստորակարգի:»

1. Սոզոմ. Բ. 27. Կասիոդ. Գ. Ե. Նիկեփ. Ը. 47.

Որպէս հրամայեցի ասեն, քո բարեպաշտութիւնդ զմերն
զխոստովանել[ա] Աստուծով, զնոյնս խոստովանիմք[բ] մեք և ա-
մենայն որք ընդ մեզ են. զՀայր և զՈրդի և զՍուրբ Հոգին.
որպէս ամենայն կաթուղիկէ եկեղեցի. որպէս սրբոց գիրք[գ]
ցուցանեն. և եթէ ոչ այսպէս դաւանեցէ զմեզ Աստուած ասա
և յաւուրն այցելութեան.[դ] Յայսոսիկ աղաչեմք[ե] զքո մար-
դասէր և զբարեպաշտ[զ] կամսդ, զի տացես մեզ գիր խաղաղու-
թեան և միաւորութեան առ[է] ամենայն եկեղեցիս, զի ի մի[ը]

ա Գ. Ա՛ խոստովանեալ. Դ. զմեր խոստովանել. բ. Ա՛ և. գ. Ն. Բ. սրբոց գրոց. դ. Դ. յայցելութեանն յայսմիկ. ե. Ա Ա՛ Գ. Ն. աղաչեմ. զ. Դ. բարերար. է. Գ. ‹չիք. ը. Գ. ի մի չիք:

«րիլ մեզ ի ձեռն քոյումխաղաղարարութեանդ, և աս-
«տուածապաշտ բարերարութեանդ մաւր մերում եկե-
«ղեցւոյ յայտնագոյնս, վասն ճառեալ խնդրոցն և որոց
«ի խնդրոցն աւելորդաբանութեանցս։ Որ և մեք և եկե-
«ղեցին ընդ միմեանս խաղաղացեալք՝ զսովորական ա-
«ղաւթսն յաղագս խաղաղականի քո և բարեպաշտ թա-
«գաւորութեանդ և ամենայն քո ազգի միաբան ամենե-
«քեան արասցուք։ »

ԳԼ. ԻԷ.[1]

Այսպէս ապա Արիոսի հաւանեցուցեալ զԹագաւորն, գնայր յԱղեքսանդրիա։ Ո՛չ վեհագունի և յարգարական փառաւքն լուեցելոյ ճշմարտութեանն լինէր։[ա] Քանզի իբրև հասանէր նա յԱ-

ա οὐ μέντοι γε κρείσσονων ἡ κατασκευὴ τῆς σιωπωμένης ἀληθείας ἐγίνετο

Թարգմանութիւնը բառացի լինելով անհասկանալի է. միտքն է «Սակայն հնարագիտութիւնն (նենգամիտ) ծածկել զճշմարտութիւն ոչ զօրէր։»

1. Տես Սոզոմ. Բ. 21. 22 Աթան. ընդդէմ Արիան. 59. Թէոդո-րիտ. Գոււ. Եկեղ. Ա. 28. Ռուփին Ժ. 15. Նիկեփ. Ը. 48. Փիլոստ. Բ. 11.

թերան փառաւոր լիցի[ա] Աստուած. և խաղաղեալք ի միաբանութեան[բ] ղհանապազորդ[գ] աղօթսն հատուցուք[դ] անմահ թագաւորութեանն Աստուծոյ ամենակալի:

Եւ հաճոյ թուեցաւ ասացեալքն. զի խաբէութիւն[ե] բարւոք[զ] երևեալ, և կատարեալ չար էր։[է] Այս առաքէ[ը] զԱրիոս յԱղեքսանդր, ոչ վեհագոյն երևելի փառօք, այլ ընդու-

ա. Դ. Փառաւորեսցի. Գ. ի փառաւոր. բ. Գ. ի միաբանութիւն. գ. Բ. զհանապազ. դ. Դ. աղօթս մատուցուք. ե. Դ. խաբէութեանն. զ. Գ. բարոք. Դ. բարիոք. է. Դ. չարէ. ը. Բ. առաքեալ.

ղէքսանդրիա, Աթանաս ոչ ընդունէր. քանզի զարշելի համարէր զնա։ Անդուստ վերստին շարժեալ ձեռնարկեաց զհերձուածն, իսկ յայսցանէ դարձեալ Եգիպտոս[ա] խառնակէր։ Յայնժամ և որք Եւսեբիոսին էին գրէին, և զԹագաւորն յորդորեցին գրել. որպէս զի ընդունելեալ լիցին որք առ Արիոսն։ Իսկ Աթանասիոս յամենեցունց ընդունելով զնոսա ընկենոյր, [բ] և առ Թագաւորն գրելով ուսուցանէր. անհնար գոլ զմի անգամ արհամարհողսն հաւատոյն և զնզովեալս անդուստ ի դարձմանէն ընդունել։ Իսկ Թագաւորին ծանրապէս բերեալ գրէ առ Աթանաս սպառնալիս։ «Եթէ ընդունելով այժմ «զխորհրդոյս ծանաւթութիւն, ամենայն կամողա- «ցըն.[գ] յեկեղեցի զանարգելն տացես զմուտ. ապա թէ «ծանեայց որպէս զի արգելէր զոմանս ի նոցանէ յեկե-

ա. Բնագրում Եգիպտոսի տեղ Աղեքսանդրիա է:
բ. Ըստ բն. «միանգամայն մերժէր ընդունել զնոսա:»
գ. Բն. «Ամենեցունց անարգել տացես:»

նելութեան[ա] թղթովք[բ] առ Աթանաս, ընդունել զդարձեալսն.[գ] Իսկ Աթանաս ոչ ընդունի. զի գիտէր զնորա[դ] խորամանկութիւնն,[ե] որ և անդուստ իսկ ցուցանէ[զ] զսերմ չարութեանն, և Սաբելեան[է] զԱթանաս[ը] ասէ. Ցայսոսիկ խառնաքնտորեալ լինէր Եգիպտոս. յայնժամ որք Սեբիոսին[թ] էին, հաւանեցուցանէին,[ժ] գրել դարձեալ Թագաւորին, ընդունել զԱրիոս ի միաբանութիւն։ Իսկ Աթանաս զամենեցունց ընկալեալն,[ժա] ոչ ընդունէր ի հաղորդութիւն[ժբ] զարհամարհեալսն[ժգ] ի ժողովոյն, և զնզովեալս.[ժդ] աղդ եղեալ յԱստուծոյ. Գրէ առ Թագաւորն մի

ա. Գ. ընդունելութեամբ. բ. Դ. Թղթով. գ. Դ. զդարձեալսն. դ. Դ. զնորայն. ե. Գ. զխորամանգութիւն. զ. Դ. ցուցանէր. է. Ա' Սաբելէն. ը. Գ. զԱթանասէ. թ. Ն. Սեբինոսին. ժ. Գ. հաւանեցուցանէ. ժա. Գ. ընկալեալքն. ժբ. Դ. ի խաղաղութիւն. Գ. ի հաղորդութենէ. ժգ. Դ. զարհուրեալսն. ժդ. Դ. զնզովեալսն.

«զեցուցն փոխեալս՝ և կամ ոչ ակիզբն արարեալ մտիցն·
«առաքեմ նոյն ժամայն իմով հրամանաւ զնզովողն
«զքեզ և զհանող ի տեղւոյդ յայգմանէ»։ Զայս գրեաց Թագաւորն վասն իսպառ լուծելոյն, և ոչ կամեցեալ զեկեղեցին կործեալ, զի զամենեսին ի միաբանութիւն ածեալ փութայր։ Իսկ յայնժամ որոց Եւսեբիոսին ժամանակ ի դէպ ունելով թշնամաբար առ Աթանաս, ըզԹագաւորին խռովութիւն[ա] ի սպասաւորութիւն առնելին իւրոյն գիտմանն·[բ] և վասն այսորիկ անգուստ զնորա եպիսկոպոսութիւնն շարժել փութային· որպէս զի այսպէս միայն զարիոսական չարափառութիւնն ընդունել։ Ապա Աթանաս հատեալ յոտից[գ] գործակցին[դ] նմա հակառակ նորա Եւսեբիոս Նիկոմիդացի, և Թէոգնիս Նիկիացի, Մառիս ի Քաղկեդոնէ,

ա. «Բարկութիւն, վիշտ»։
բ. «Ցանկութեանց իւրեանց» τοῦ ἰδίου σκοποῦ

գ. «Աթանասայ քարծեալ ի մէջը։» ἐκ ποδῶν γίγνεσθαι Այս յունարէն յայտնի դարձուածը շարունակ սխալ է թարգմանած, որովհետեւ նրա բառացի թարգմանութիւնը որեւ է միտք չէ տալիս։
դ. «Գործակցէին»։

Հաւատալ նորա խորամանկութեանն, այլ[ա] սուրբ ժողովոյն· որ նզովեալ որոշեցին։ Իսկ Թագաւորն ջանայր ի միաւորութիւն եկեղեցւոյ· զի էր նորա փոյթ։ Եւ գրէ առ Աթանաս աղերսանօք ընդունել[բ] զնա, և դարձեալ սպառնալիս՝ թէ ոչ հաւանի։

## ԳԼ· ԻԴ·

Ցաղագս գրպարտութեան Աթանասայ եւ յաքսորելն։

Իսկ որ[գ] Մելիտին[դ] էին, ոչ դադարէին յաղաչելոյ[ե] զԹագաւորն, վասն Աթանասի չարութեան, զի կարասցեն զԱթանաս

ա. Ա՝ Ն. զայլ Բ. զոր. բ. Բ. ընդունիլ. գ. Բ. որք. դ. Դ. Մելէին. Ա՝ Նաւեքին. ե. Ա՝ աղաչելոյ։

Ուրսակիոս ի Սինգիդունայ ի վերի Միւսոյ, Վաղէս ի Մուրսայ ի Պանիւնիոյ:[ա] Սոքա ի վայրձու ունէին և զայլս ժամանս ի հերձուածոյն Մեղիտիանոսացն․[1] և յոլովս ամբաստանութիւնս ընդդէմ Աթանասա շարժեցին: Նախ ի ձեռն Իսիոնի, և Եւդեմոնի, և Կաղինիկոսի[2] Մեղիտիանոսաց գործեն ապա մատնութիւնս․ որպէս թէ Աթանասս կտաւի հանդերձս հարկիւ Նգիպտացւոցն Աղէքսանդրիացւոցն եկեղեցւոյն հրամայեաց: Այլ և զայս զմատնութիւն Ապիսա[բ] [3] և Մակարիոս՝ քահանայք Աղէքսանդրիացւոց քաղաքին, յայնժամ[4] բարեբախտապէս դիմեալք ի Նիկոմիդիա[5] շիջուցին․ սուտ լինել

ա․ ըն․ τῆς Πανονίας.

բ․ ըն․ Ἀλύπιος

1 Մեղիտիոսը արդէն մեռել էր․ իսկ տեղը կարգելով Յովհաննէսին․ Սրա օրով Մեղետիանոսք սկսեցին նորից շարժուել․

2 Իսիոն Աթրիբիսումէր եպիսկոպոս․ Կաղինիկոսը՝ Պելուսիայում․ Եւդեմոնը Տանիսում․

3 Հետաքրքիր է, որ Աթանասն էլ Ալուպիոսի տեղ Ապիս է գրում․

4 Ժամանակի մասին․ թէ երբ են տեղի ունեցել այս դէպքերը․ տարբեր կարծիքներ կան․ տատանուելով 327—320 թուականների մէջ․ բայց ճիշտը յայտնի չէ․

5 Թէոդորոսը Կոստանդնուպօլիսն է յիշատակում․

մերժել և զԱրիոսի մոլորութիւն[ա] մուծանել ի ներքս․ որք յոլով ամբաստանութիւն[բ] զԱթանասա հոչակեցուցանէին[գ] սուտ, ըստ խորհրդածուի[դ] Արիոսի և Սերի․ Լինի մատնութիւն առ թագաւորն․ թէ[ե] Աթանաս կտաւի զգեստ[զ] հրամայէ զգենուլ եկեղեցականաց,[է] և զայս Մակարիոս քահանայ Աղեքսանդրացի ի տեղւոջն հանդիպեալ, ստացուցանէ[ը] և թագաւորն ըմբերանէ զասօղն․ Եւ գործեալ բազում ոսկի առել

ա․ Բ․ զԱրիոսի զմոլութիւն․ Դ․ զԱրիոս ի մոլորութիւն․ բ․ Դ․ որ յոլովս զամբաստանութիւն․ գ․ Դ․ հռչակէին․ դ․ Ա՝ Բ․ ըստ խորհրդածութիւն․ Դ․ ըստ խորհրդածի․ ե․ Դ․ եթէ․ զ․ Ա՝ Բ․ Ն․ զգեստ․ է․ Դ․ եկեղեցականացն․ ը․ Դ․ ստացուցանէն:

Աթանասոս ճառեալսն զԹագաւորն ուսուցեալք։ Վասն որոյ և զամբաստանողսն Թագաւորն Թղթով ըմբերանէր. իսկ զԱթանաս առ ինքն գալ հրամայէր։ Բայց յառաջ քան զայսոսիկ խաղաղիլ, որք Եւսեբիոսին հասեալք, այլ ևս ի վերայ առաջնոյն յարեան մատնութիւնս առաւել վատթարագոյն քան զառաջինն. որպէս զի Աթանասա դաւաճանելով զԹագաւորին իրս ումեմն Սիրեցելոյ ա առաքեաց գլրոց մի լի ոսկով։ Այլ վասն այսորիկ Թագաւորն ի Փսամաթիա ի պրաստին. բ որ է յայսմ Նիկոմիդիա, գ քննել և անարատ գտեալ զԱթանաս պատուով անդրէն առաքեաց, գրելով Աղեքսանդրացւոց եկեղեցւոյն. եթէ ձերդ եպիսկոպոս Աթանաս սուտ մատնեցաւ։ Այսպիսի ինչ ապա որք Եւսեբիոսին հակառակ Աթանասա շարագրեցին, բայց բարիոք և վայելուչ էր լռութեան տալ, զի մի եկեղեցին Աստուծոյ յոչ խորհողացն զՔրիստոսին ըստգտեալ լինէր։ դ Վասն որոյ գիր տուեալ յայտնի

ա. Բն. Φιλούμενος յատուկ անուն է, թարգմանը իբրեւ հասարակ թարգմանել է:

բ. προάστειον յարուարձանի:

գ. Ըստ բն. . Փսամաթիա, որ էր արուարձան Նիկոմիդիայ.:

դ. καπαγινώσκηται·

տալ ա ումեմն յեկեղեցւոյն բ Աստուծոյ. Եւ առաքեաց կոչեաց զԱթանաս առ ինքն և քննեալ անդէն գ եգիտ զնա ազատ. Անդէն առաքէ զնա գրով և պատուով յԱղեքսանդր. սուտ վասն նորա զմատնութիւն առնելով նոցա. զի ստոյգ և ճշմարիտ այր Աստուծոյ է Աթանաս. Դարձեալ այլ խորամանգեն. Է աշխարհ մերձ դ յԱղեքսանդր ե Մարիոտիս. զ որ յԱղեքսանդրէ ունին զձեռնադրութիւն. Էր ոմն ի նմա, որ անէր

ա. Բ. ումի տայ. բ. Ա' Գ եկեղեցւոյն. գ. Դ. աղրէն. դ. Դ. մեծ. ե. Դ. Աղէքսանդր. զ. Ա' Դ. Ն. Մեռիոտաս. Ա Մեռեոտիս:

ամենեցունց լինէր· յաղագս որոյ կարեւոր համարեցայ որպէս է վարկանիլ ասել զիւրացելոյ իրողութեանն պարտ, ուստի և զզրպարտութեանն պատճառս որք զբամբասանսն շարժեալ ընդունէին ճառեցից։ Մարեօտիս [ա] աշխարհ է Աղեքսանդրու և աւանք են ի նմա յոյժ բազումք, և յոլով մարդկութիւն, [բ] և ի նոսա եկեղեցիք պայծառք, և կարգին եկեղեցիքն յԱղեքսանդրու եպիսկոպոսէն, և նորայոյն քաղաքի են պանդխտականք։ [գ] Իսկ ի յայսմ ի Մարեօտէս էր Իսքիւռաս [1] ոմն կոչեցեալ, որ գործ ըմբռնէրն բազում մահուանց արժանի։ Զի ոչ երբէք ուրեք քահանայութեան հանդիպեալ, զքահանայի անուն եդեալ, իւր զքահանայի յանդգնեցաւ գործել։ Յայսոսիկ Աթանաս ի Մարեօտիս հասանելով զպանդխտարանն որ անդ էին յանձանձէր. և լուեալ վասն Իսքիւռասա վաղվաղակի առաքէր զՄակարիոս տեսանել թէ ճշմարտապէս իցէ քահանայանմանեալ՝ զքահանայի գործեալ յանդգնեցաւ։ [դ] Յանդիմանեալ ապա ասացելովքն Իսքիւռասա զերծեալ անտի, և հասեալ

ա· Μαρεώτης

բ· πολυάνθρωποι.

գ· παροικίαι

դ· Այդ տողերը չկան յունարէն բնագրի մէջ։

1 Այս Իսքիւռասի մասին աւելի մանրամասն է խօսում Աթանասը իւր Հակաճառութիւն ընդդէմ Արիանոսաց-ի մէջ·

քահանայութիւն, ոչ յումեքէ ձեռնադրեալ։ Զայս լուեալ Աթանաս [ա] առաքէ զՄակարիոս [բ] գիտել զմահու արժանաւորն [գ] և ստուգել [դ] զնորա յանդգնութիւն։ Հալածեալ գայ ի Նիկո-

ա· Գ· Ա՝ Աթանասայ· Դ· Աթանասի· բ· Գ· զՄարկարիոս· գ· Դ· արժանաւորէն· դ· Ա՝ Բ· ստուգեալ։

Պեկոմիդասպալինի առ Եւսեբիոսին, որք ատելութեամբն որ առ Աթանաս, ընդունէին զնա որպէս քահանայ, խոստանալով և եպիսկոպոսութեան արժանեաւք պա-տուեալ, եթէ բամբասանս ինչ ընդդէմ Աթանասա յարուցանել յանձն առցէ, պատճառս ընդունելով որ քան Իսքիւռասա ստեղծանէր, հուշակելով որպէս զի թէ զամենայն առնէր ըժնդակ ի բնութենէ ախտաւորաբար. և որպէս զի Մակարիոս ի ներքս վազեալ ի սեղանն՝ կործանեաց զսեղանն և զբաժակն խորհրդեանն ընկէց, և զի զաստուածային գրեանն այրեաց։

Վարձս նոր ամբաստանութեանն, որպէս է ասել, զեպիսկոպոսութիւնն խոստացան. ծանուցեալք որպէս զի հակառակ Մակարիոսի ամբաստանութիւն հանդերձ բամբասեցելոյն և զառաքողն Աթանաս նզովէ։ Իսկ զայս ամբաստանութիւնս յետոյ յարուցին, յառաջ քան զայս քան զամենայն եղեալ պիղծ. վասն որոյ արդ ճառէ։ Չեռն մարդոյ, ուստի առաքեալք.[ա] եթէ էր երբեմն սպանեալ զոմն և կտրել զձեռնն. և կամ արդեաւք զմեռելոյ ուրուք կտրեցին, Աստուած գիտէ, և տանուտէրք գործոյն. ապա ձեռնարկէին աւրինաբար զնա,

ա. Բն. •Առեալ.•

միդէ[ա] և տայ զինքն ատելեաց[բ] Աստուծոյ, որք Սէբին էին[գ] ատելութեամբ առ Աթանաս, որք ընդունէին քահանայ.[դ] և խոստանան նմա եպիսկոպոսութիւն, եթէ ի վերայ Աթանասի յարուցէ չար բամբասանս.[ե] Եւ նա ասէ զչար գժնդակութիւնս ախտաւորս զՄակարայ,[զ] և զԱթանաս կախարդ գոլ ասէր,[է] և ձեռն մեռելոյ մարդոյ առեալ ունէր, ոչ գիտեմ ուստի՞ է։[ը] Բայց նոքա որ[թ] չարութեան էին խորհրդածուք, ա-

ա. ի Կոմիդէ. բ. Բ. ատելեացն. գ. Ա՝ Սեբէին. Ա՝ Գ. Սեբիոս. դ. Բ. քահանայ զնա. Ա՝ Գ. Ն. քահանայ. ե. Դ. բանս. զ. Դ. Մակարայ. է. Դ. ասէ. ը. Դ. էր. թ. Բ. որք։

որպէս զի Արսէնի [1] ուրուք եպիսկոպոսի աղանդոյն Մ-
ելիտիանոսաց հանդիպեալ է ձեռնն. և զայս բերելով ի մէջ զԱրսէնիոս Թաքուցեալք, ա և ասէին զձեռնս զայս Աթանասա ունել առ կախարդութիւնս ինչ։ Արդ մեծըս իր զոր ինչ ընդդէմ Աթանասա զրպարտողքն յարմարեցին՝ է այսպէս. զի այսպիսի ինչ և սիրէ լինել յայսպիսիսս. այլք ապա այլու բամբասէին զնա. քանզի ի վերա դնէին յանժամ յաւետ ուք առ այն էին Թըշնամաբար։ Իսկ զայս ծանուցեալ Թագաւորին դլէ առ կինսոռ Դաղմատացի բ եղբաւրորդի [2] իւր, որ յԱնտիոք Ասորէոց կեայր, ժողով առնել ամբաստանեցելոյն, և ծանուցեալ, դատաստանի յանդիմանեալսն գործել։ Առաքէր և զԵւսեբիոս հանդերձ Թէոգնիսիւ զի առաջի նոցա դատեսցի Աթանաս. իսկ նա իբրև լուաւ զկոչն ի կինսոռէ, առաքեաց յԵգիպտոս խնդրել զԱրսէնիոս.

ա. «Թաքուցին:»

բ. Բն. κήνσωρ Δαλμάτιος Դաղմատիոս Կենսորի անունն է եւ ոչ երկրի անունը:

1 Այս Արսէնիոսը միղիտինոսական եպիսկոպոս էր Թեբայիդի Հիպսիլոս քաղաքում:

2 Սոկրատը սխալմամբ այս Դաղմատիոսին, որ Կոստանդնի եղբայրն էր, նրա եղբօրորդի է կոչում: Նրա եղբօրորդին՝ այս Դաղմատիոս կենսորի որդին, յետոյ կեսար նշանակուեց:

սէին Արսենի որուժն, ա որ յաղանդոյ Մելիտոսի էր. զայս Աթանաս ասեն ունել վասն կախարդութեան, և այլք բ վասն այլ իրաց, ըստ չարութեանն։ Եւ այս ծանուցեալ լինէր Թագաւորին. և առաքէր գ զՍեբիոս և զԹէոգնիս դ որ զգործակալութիւն աշխարհին ունէին, զի առաջի նոցա քննութիւն վասն այնորիկ ե լիցի։ Իբրև լուաւ զայս Աթանաս՝ առաքեաց

ա. Դ. ուրեմն Բ. ուրոսմն. բ. Ա' այլ. գ. Դ. առաքեաց. դ. Դ. զԹէոգնի. ե. Դ. այսոցիկ:

բայց լսէր Թաքչիլ նմա և ըմբռնել զնա, ոչ կարէր· այլ յորժամ այլ ուր ուրեք փոխիցի։ Ապա դադարեցուցանէ Թագաւորն զառ ի կինսոռէ դատարանն վասն այս պատճառոյս։

ԳԼ. ԽԲ. [1]

Ժողով եպիսկոպոսաց Հռոմայեցւոց լինել ի մատուցումն [ա] աղաւթարանին տան զոր յԵրուսաղէմն կանգնեաց։ Այսուհետև առ ճանապարհին պատեղումն [բ] նախ ի Տիւրոս ժողովեաց զեպիսկոպոսունսն, ընդդէմ Աթանասի կլիթել [գ] Հռոմայեցւոց, որպէս զի անդ յոտից հատեալ ամենայն հակառակարանութեանն խաղաղականագոյն զնաւակատիս եկեղեցւոյն կատարեսցեն, մատուցանելով զնա Աստուծոյ։

ա. «Ցօծումն». Ուշադրութեան արժանի է յուն. καθιέρωσις բառի թարգ։

բ. Բն. δδοῦ πάρεργο, ըստ յարմարութեան, պատեհութեան ճանապարհին։

գ. γυμνάσαι միտքն է հարց ու փորձով «մաշել, նեղել»։

1 Տես Եւսեբ. Վ. Կ. Դ. 41. Աթանաս. Ընդդէմ Ար. 71. 6. Եւ Ռուփին. Ժ. 16. Սոզոմ. Բ. 25. Թէոդոր. Ա. 28. Սոկր. Գ. 7. Նի-կեփ. Ը. 49.

յուզեաց զԱրսենիոս, և գտեալ առ իւր պահէ ի ծածուկ մինչև ի ժամ որում [ա] պարտ է ասել։ Եւ ժողովեցան ի Տիւրոս եպիսկոպոսք վաթսուն վասն [բ] խնդրոյն այնորիկ Աթանասայ [գ] զրպարտութեանն։ Եւ կոչեն զԱթանաս ի ժողովն, և նա ոչ կամէր, ոչ վասն զրպարտութեան, այլ թէ մի զնիկեայ ժողովոյն լուծցեն [դ] յարիոսութիւն [ե] համակամք նորա՝ Սեբի և Թէոգնի,

ա. Ա՝ որպէս. Գ. որ. բ. Ա՝ ըստ. գ. Գ. Աթանաս. դ. Ա՝ մուծցին. ե. Գ. յարիոսութեան. Ա՝ արիոսութիւն.

Երեսուն ամ էր [1] այս թագաւորութեանն Կոստանդնի, և եկին ի Տիւրոս՝ յոլովից տեղեաց եպիսկոպոսունք, որոց թիւն էր կ̄, Դ ի մ ռ ի ւ ռ ի ա պ ո ի ւ պ ա տ ի կ ո ւ [ա] ժողովեալ զնոսա։ Ածեալ լինէր ապա և Մակարիոս քահանայ Աղէքսանդրւոյ կապանաւք երկաթեաւք ձեռամբ հեծելականի։ Իսկ Աթանաս ոչ կամէր պատահել, սա ոչ յամբաստանութենէն երկուցեալ. քանզի և ոչ գիտակ իսկ էր անբաստանեցելոցն. այլ կասկածեալ զի մի ինչ ունայն հատցի քանզի որ [բ] յայնժամ ի Նիկեայ ժողովոյն հաճոյ եղեն, սակայն ի հարկէ պատահիւր։ [գ] Զի երկնչէր իսպառնական թղթոյ թագաւորին գրելով առ նա. որպէս զի թէ ոչ կամաւ եկեացէ, ի հարկէ եղիցի ածեալ։ Ապա գայր ի հարկէ և Աթանաս։

Գլ. ԻԹ. [2]

Իսկ աստուածային իմն նախախնամութիւն ի Տիւրոս կոյս վարէր զԱրսէնիոս, քանզի անփոյթ արարեալ

ա. Բն. Δονυσίου τοῦ ἀπὸ ὑπατικῶ «Դիոնիսեայ փոխ-հիւպատոսի». «exconsularis»

բ. «Ջան զոր։»

գ. Այս նախադասութիւնը չկայ ձեռագրում, բայց ըստ մտքի շատ անհրաժեշտ է։

1 Տիւրոսի ժողովը կայացաւ 335 թուին.

2 Տես Ռ.Ֆ.ան 65. 71. 72. Թէոդ. Ա 30. Սոզոմ. Բ. 25. Ռուփին Ժ. 17. Փիլոստ. Բ. 11. Նամականիք ժող. Սարգիս. ի հատուածս Հիլարիոսի Բ. գլ. 631. Նիկեփ. Ը. 49.

որ զթագաւորն դարձուցին յընդունել [ա] զԱրիոս. այլ հրաման թագաւորին և գործավարն ոչ թողացուցանէր զնա։ Եւ Մակարիոս երկաթի կապանօք ածեալ լինի ի զինուորացն ընդ Աթանասայ։

Եւ յետ թաղում իրի ժողովոյն, զրպարտողքն [բ] յառաջ

ա. Ա՝ ընդունել։ բ. Գ. սպարտողքն. Ն. զրպարտողք.

պատուհիրանացն զորս զըպարտողքն եսուն նմա զանձ. առ յայտնութիւն եղելոյն թաքուցեալ մերձ լինէր։ Ապա դիպումն լինէր ոմանց ծառայիցն Արքեղաւոսի [ա] ի կապեղունջ [բ] լսել զասել ոմանց, որպէս զի Արսէնիոս որ ասեն մեռեալ, է ի տան միում թաքուցեալ։ Զայս լուեալ և նշանեալ զճառողսն, յայտնաբար զլսեալն իւրեանցն տեառն ծանուցանեն։ Իսկ նա, որպէս կայր, փոյթ կալեալ յանձին, և խնդրեալ զնա և գտեալ [1] զգուշանայր նմա, և ազդ առնէր Աթանասա. մի ինչ խռովիլ, վասն զի մերձ է Արսէնիոս կենդանի։ Իսկ Արսէնիոս ըմբռնեալ ուրանայր լինել ով էրն. այլ զնա Պաւղոս Տիւրոսի եպիսկոպոսն յառաջ գիտելով յանդիմանեաց։ Զայս նախախնամութիւնն Աստուծոյ յառաջ պատրաստեաց։ Յետ բազում ինչ իրի ապա կոչիւր Աթանաս [գ] և եկեալ զըպարտողացն զձեռնն ի մէջ բերէին և զամբաստանութիւն յարուցանէին։ Այլ իմաստապէս փոխեալ լինէր իրն. քանզի էհարց զորս մերձն և զամբաստանողսն. թէ իցե՞ն ոյք ճանաչիցեն զԱրսէ-

ա. Բն. ունի ὑπατικός «հիւպատոս» տիտղոսը աւելի։

բ. καπηλεῖον պանդոկ,

գ, Բն. ունի. ὑπὸ τῆς συνόδου—«ի ժողովյն։»

1 Ռուփինոսը պատմում է, որ Արսենիոսը յօժար կամքով է ներկայացել Աթանասին.

թերէին զձեռն մեռելոյն զոր Արսէնի [ա] ասէին։ Իսկ Աթանաս ասէ. Եթէ իցէ՞ ոք ի ժողովոյս [բ] որ ճանաչէ զԱրսենիոս։ Ժո-ղովից պատասխանի տուեալ, [գ] Այո ասեն. Յայնժամ հրամայէ [դ] ի մէջ ածել զԱրսենիոս, և ցուցեալ զնորա երկուսին ձեռսն, [ե]

ա. Դ. Արսէն. բ. Դ. ի ժողովս. գ Դ. պատասխանեալ. դ. Դ. հրամայեաց ե Դ. զերկուսին զձեռս. Ն. երկոսին.

նիոս. և բազմաց ասել զճանաչելն զնա։ Ապա ետ մատուցանել զԱրսէնիոս ի ներքոյ հանդերձին զձեռնն ունելով և նոյն ժամայն էհարց թէ սայ արդեօք իցէ որ կորոյս զձեռննն։ Իսկ նոքա ի վերա սքանչելեացն զարմանային, բայց ի գիտողացն՝ թէ ուստի էր ձեռնն կըտրեալ. իսկ այլք ճշմարիտ գոլ համարէին զպակասութիւն ձեռինն, և ակն ունէին յայլ ձեռնարկմանէ պատասխանի առնել Աթանասայ։ Իսկ հւպատիկոսի վերացեալ զհանդերձն Արսէնի ըստ միւս այլ կողմանն, ցուցանէ զձեռն մարդոյն։ Իսկ դարձեալ կարծեալ ոմանց ի միւսոյ ձեռանէն զրկիլ մարդոյն. սակաւ ինչ ձըկտեալս հակառակորդս զնոսա յարդարեաց։ Ապա փոյթ արարեալ և զմիւս կողմանն վերացուցեալ զհանդերձ, զմիւս ևս զձեռնն Արսէնի եցոյց։ Եւ այսպէս ասէր առ որ մերձն. զԱրսէնիոս որպէս տեսանէք երկուս ունելով ձեռն գտանի. բայց զերրորդին յառաջ բերեցելոյ ձեռինն զտեղին ուստի առաւն ցուցցեն ամբաստանողքն։

Գլ. Լ.

Այսոցիկ այսպիսի յԱրսէնայ գործեցելոց, յանհնարութեան գրոզք նենգութեանն կարգեցան։

ասէ. Ես զերրորդն[ա] ոչ ունիմ ցուցանել տեղի ձեռին։ Զայս տեսեալ ամենայն բազմութեան հիացան։ Այսպէս ճշմարտեալ երևեցաւ Աթանաս և զպարտողքն յամօթ[բ] եղեն։

Ապա և զՄակարիոս ազատեն[գ] ի կապանաց, եթէ զիարդ՝ ընդունելի է վկայութիւն որ յաղագս յանցմանն[դ] պարտաւորեալ սուտ քահանայութեան, որպէս մեղապարտ ի նմանէ ըստ

ա. Ն. զերրորդ. բ Ա՝ ամօթի յարանս գ Դ. ազատ. դ. Գ. յանցման. Դ անցմանն:

Իսկ [1] Արփաք, ա որ և Յովաննէս, ամբաստանող, պատաւ-րանին մեռեալ յամբոխին փախեան։ բ Եւ այսպէս Աթա-նաս զամբաստանութիւնս զայս մերկացեալ լինէր. և ոչ մի ինչ հպեալ արտաքոյ գրոց քան զի վստահ էր, որպէս զի արմացուցէ զզրպարտողսն միայնով մերձա-կա կենդանութեամբն Արսէնի։

## ԳԼ. ԼԱ.

Այս և հակառակաւն Մակարիոսի ամբաստանու-թեամբն աւրինակաւքն հպէր արտաքոյ գրոց առնել։ Եւ նախ զորս Եւսեբիոսին արտաքս վարէր որպէս ըզ-թշնամիս. ասելով ոչ երբէք ի յաւսոխաց դատիլ։ Այս և ցուցանել, եթէ ամբաստանողն Իսքիւռաս ճշմար-տապէս քահանայութեան գ արժանաւորութիւն. քան-զի այսպէս և գրիւր յամբաստանութեանն։ Իսկ դ յայս-ցանէ և ոչ մի բան դատաւորին կալան, էմուտ ապա և որ ընդդէմ Մակարիոսի դատաստանն. յոգնելով այ-սուհետև կշտամբութեանցն սպուժումն առնուլին լսե-լեք. յորմէ երթալ ոմանց ի Մառէոտիս խնդրել զհա-կառակութիւնն։ Եւ որպէս զի Աթանաս առաքեալս էտես զորս արտաքս էհան գրով. վասն զի առաքէին

ա. յն 'Αχαάβ·
բ. • յամբոխման փախեաւ • :
գ. Բն. • ունի: •
դ. Բն. • յորժամ

1 Աքաաբ անուան տեղ Աղէքսանդր Թեսաղոնիկեցու Նամակի մէջ որ ուղղած է Աթանասին՝ Արքափ—Archaph է գրուած անած, որ աւելի է համապատասխան մեր ձեռագրի ձեւին.

իմոյ բանի ա և կանոնին, և այսպէս ուղիղք երևեցան.

ա. Ա° բանին. Գ. ըստ իմում բանի եւ կանոնի:

Թէոգնիս Մառիսա[ա], Թէոդորոս Մակեդոնիոս, Վաղէս Ուռսակիոս[1], գոչէր ապա չարախորհութիւնն և նենգութիւնն զոլ զեղեալն. քանզի ոչ իրաւ լինել Մակարիոսի քահանայի ի կապանսն զոլ, իսկ ամբաստանողին հանդերձ Թշնամեաւքն երթալ, որով միակողմանի գործ յիշմանցն առնեն: Զայս գոչելով Աթանասայ. և վկայութիւն դնելով յայնժամ միաբանութիւն ժողովոց և ապա Իւպատիկոս Դիոնիսիոս.[2] որպէս զի ոչ ոք ըստ բանին առնէր, Թողեալ գնաց: Իսկ առաքեալքն ի Մառէոտիս[բ] միակողմանի գործէին զյիշմունսն. որպէս զի ճշմարտապէս լինիլ, զոր ամբաստանողն Իսքիւռաս[գ] ասէր:

Գ.Լ. ԼԲ.

Բայց Աթանաս գնացեալ առ Թագաւորն փութայր, իսկ ժողովն նախ աքսորիլ նմա մշտնջենաւորեաց: Որպէս Թէև ի Մառէոտիս գործեցելոյն ժամանեաց և ապա բազում նզովականաւք զնա հայհոյեցին, իսկ զսպանման ամբաստանութեանն պարտումն լռեցուցեալ: Ընդալան ապա և զԱրսէնիոս, զկոչեցեալն մեռեալ. և յառաջ Մեղետիանոսացն եպիսկոպոս, իսկ յայնմ ժամ ընդդէմ Աթանասա ի նզովս որպէս զի Իւփսողոյ[դ] քա-

ա. Բնագ. ունի Μαρίς. որ առանձին մարդու անուն է, նոյնպէս եւ Μακεδόνιος մինչդեռ Հեռ. ունի Մառիսեցի. Մակեդոնացի:

բ. Հեռ. ի Մառեոտիս, որ կրկնում է մի քանի անգամ:

գ. Բնագրում այդ անունը չկայ եւ զօրութեամբ է հասկացւում:

դ. Բն. Ὑψηλοπολιτῶν πόλεως ունի, իսկ Աթանասը անուանում է աւելի ուղիղ կերպով Ὑψηλιτῶν πόλεως որ համաձայն է մեր ձեռագրի ընթերցուածին:

1 Վեց հոգիքը արիանոսաց գլխաւորները. Եգիպտոս գնալով իրանց հետ տարան նաեւ Իսքիւռասին. Մակարիոսի հակառակորդին.

2 Տես գլ. 28. եւ 94. ուր ակնաւ էր.

*զայքի եպիսկոպոսս ստորագրիւր։ Եւ որ սքանչելին, որ կոչիւր մեռեալ յԱթանասայ, կենդանի գոլով նզովէ զԱթանաս։*

ԳԼ. ԼԳ.[1]

*Հասանէր ապա և այլ թուղթ թագաւորին ազդելով նոցա ի նոր Երուսաղէմ ժողովոյն փութալ։ Որք նոյն ժամայն իսկ ի Տիւրոսէ յԵրուսաղէմ երթային, համաւրէն առնելով ղտաւն ի մատուցումն տեղւոյն,[2] իսկ զԱրիոս և զնորայսն ընգալան թագաւորական թըղթովք ասել հաւանիլ, ի ձեռն որոց յղէր հաւանիլ հաւատոյն ազագաւ, Արիոսի և Եւզոյիոսի։ Գրէին ապա Աղէքսանդրացեաց եկեղեցւոյն,[3] որպէս զի ամենայն նախանձու արտաքս ելեալ խաղաղութեամբ զեկեղեցւոյն կարգեաց գործ. և եթէ Արիոսի զղջմանէն ծանեաւ զճշմարտութիւնն. որպէս զի ապա առ ի յեկեղեցւոյն գոլով, արդար և ի նոցանէ եղիցի ընգալեալ. յաղագս նախանձու աքսորեալն զԱթանաս նիհարեալք. ոչ այսու միայն, այլ և թագաւորին վասն այսոցիկ առնել գիտութիւն։ Իսկ զայս դնելով եպիսկոպոսացն, հասանէ և միւս ևս թուղթ թագաւորին, ցուցանելով զԱթանաս առ ինքն ընթացեալ, և նոցա կարևոր լինել գալ յաղագս նորա ի Կոստանդինուպաւլիս։*

ԳԼ. ԼԴ.

*«Եւ թէ[a] ելանելով իմ ապայ ի համանուանէս*

[a] Բնագրի ամբողջ մի գլուխ բովանդակող ընդարձակ նամակից թարգմանուած է միայն այս փոքրիկ կտորը առանց կապելու նախընթացի եւ շարունակութեան հետ։

1 Տես Եւս. Վ. Կ. Դ. 43. Աթանաս. Վասն ժողովոց 21. Թէոդորիտ. Պատմ. Եկեղ. Ա. 31. Սոզոմ. Բ. 26. 27. Ռուփին. Ժ. 11. Կասիոդ. Գ. 5. Նիկեփ. Ը. 50.

2 Եկեղեցւոյ օծումը տեղի է ունեցել փրկչի 335 թ. Սեպտեմբերի 17.

3 Նամակը իւր ամբողջութեամբ կայ Աթան. Վ. Ժ. 21. գլխում.

«իմմէ յերջանիկ և ի հայրենական քաղաքէ․ դէպ լի-
«նել ինձ հեծանել ի ձի և երթալ․ և յանկարծակի
«Աթանաս եպիսկոպոս ի միջի քաղաքին ընդերաւք
«ոմանք,[ա] զոր ունէր, առանց ակն ունելոյ այսպէս ա-
«ռաջի իմ եկաց, որպէս զի և տալ ի յարմանալեաց
«պատճառս։»

Գլ․ ԼԵ․ [1]

Իսկ զայս զթուղթս ի հանդէս որոց ի ժողովուն կարգեաց․ ապա ի նոցանէ ոմանք բազումք ի յիւրեանցն[բ] գնացին։[գ] Իսկ որք Եւսիբիոսին, և Թէոգնիսին, և Մառիսին, և Պատռոփիլոսին, և Ուռսակային, և Վաղէնտինին ի Կոստանդնին եկեալ քաղաք․ ոչ ևս վասն բաժակին ընդէցման, և կամ սեղանոյն կործանման, և կամ Արսէնի մեռանելոյն խնդիր ինչ լինել ետուն թոյլ․ այլ այլ մատնութիւնս կարգեալ առ թագաւորն․ որպէս զի Ա-

ա ․Ոմանք։․
բ ․Ի տեղիս իւրեանց։․
գ․ ․քաղաքս։․

1 Տես Աթան․ Հկ․ Աբ 87․ Սոզոմ․ Բ 28․ Թէոդ․ Ա․ 31․ Կասիոդ․ Ը․ Գ․ Ց․ Նիկեփ․ Ը․ 50․

Բայց Սեբիոս՝ որ հաւատարիմ էր թագաւորին, և որք նորին համախոհք,[ա] որ[բ] առ Աթանաս զատելութիւն ունէին, և ոչ իւիք[գ] վնասեալ տեսին[դ] զայրն Աստուծոյ, յորս կարծէին և կամէին։[ե] Դարձեալ այլ յարէին մատնութիւն[զ] յայրըն[է] Աստուծոյ յԱթանաս,[ը] որ ի ժամու կարգի առացին․[թ]

ա․ Ն․ համախոհք․ բ․ Բ․ որք․ գ․ Բ․ իմիք դ․ Դ տեսանէին ե․ Բ Գ․ կամին․ զ․ Դ մատնութիւնս Գ․ մատնութեան․ է․ Ա՝ Ն․ այրն․ ը․ Դ․ Գ․ Աթանաս․ թ․ Գ․ ասացի․

թանաս սպառնալով արգել առաքել զցորենն զոր ըստ սովորութեանն բերէին ի քաղաքն Կոստանդնի. Եւ զայս զճառեալս լսել յԱթանասա, Ադամանդայ Անուբիոնի, Արբէթիոնի [ա] Պետրոսի եպիսկոպոսացն: [1] Եւ վասն զի մեծամեծս զաւրէ մատնութիւն, յորժամ մատնողն հաւատարիմ իցէ. զի այսու [բ] յափշտակելով

ա· բն 'Αδαμάντιος 'Ανουβίων, 'Αρβαθίων. Ձեռ· ապա ամանտայ առիւբիոնի:

բ Ձեռ· «այրես» բն τούτῳ

1 Սոկրատը խառնում է այս եպիսկոպոսներին իբրեւ Աթանասին մերժողների ներկայացնում, մինչդեռ յայտնի է որ սոքա Աթանասի կուսակիցներ էին.

Եւ այն էր նոցա փոյթ, զի կարասցեն զԱթանաս որոշել և զԱրիոս հաստատել յԱղէքսանդր. Եւ ոչ սոյզ [ա] զճշմարտութիւն գրեն վասն Աթանասայ [բ] զըրպարտութեանն. այլ և զայս թէ Աթանաս արգել զցորեանն սպառնալեօք, որ կարգեալ էր գալ ի Կոստանդնուպօլիս. Եւ այսպէս խորամանկութեամբ զմիտս թագաւորին պղտորէին [գ] ի վերայ Աթանասայ [դ] և առ Արիոս [ե] զթշնամութիւն՝ նախանձու ասէին, և ոչ վասն հաւատոյն. [զ] Եւ զի հաւատարիմ զնոսա կարծէր, ընդունէր ի նոցանէ զասացեալսն թագաւորն Կոստանդիանոս, անգիտացեալ զնոցա խորամանկութիւնն.

Եւ առաքէ հրովարտակ ի ժողովն ի Տիւրոս երթալ յԵրուսաղէմ և զԱրիոս զղջացեալն և զխոստովանեալն զհաւատս սուրբ ժողովոյն. ընդունել [է] ի հաղորդութիւն միաբանութեան, և դարձեալ երթալ յԱղէքսանդր, և Աթանասայ գալ ի Կոստանդնուպօլիս. Այսոցիկ այսպէս եղելոյ, գայ ժողովն [ը] յԵրուսաղէմ և զԱրիոս ընդունի ժողովն, և առաքէ յԱղէքսանդր

ա· Դ· զարոյգն· Գ ստուգ: բ· Դ· գրեն զԱթանասին· գ· Ն· պղտորէին, եւ ի վերայ դ· Գ· Աթանաս· Դ· Ա· Աթանասի· ե· Գ· եւ Արիոս. զ· Դ· հաւատոյ· է· Ա' ընդունի հաճորդութիւն· Բ· ընդունիլ· ը· Ա' Գ· ի ժողովս· Ն ժողով·

Իսկ այսքանեաւքս սոցա յԻտալիա երթալ կողմեցելոց այս ինչ պատահեաց լինել։ Յուլիոս Հռոմա եպիսկոպոսն վախճանեալ, հնգետասան ամ ի նմին եկեղեցւոջն եղեալ առաջնորդ. և Լիբերիոս փոխանորդէր զեպիսկոպոսութիւնն։

## ԳԼ. ԼԵ.[1]

Իսկ յԱնտիոքիայ Ասորոց այլ բուսանէր հերձուածապետ, Աէտիոս[2] անաստուածն կոչեցեալ։ Սա զնոյնն խորհէր զԱրիոսին և զնոյնն ընդունէր զկարծիս. բայց առ Արիանոսն խզձեալ լինէր վասն զԱրիոսի հաղորդութիւնն ընդունելոյ, որպէս և նախկինն ասացաք, յորժամ զՆիկիոյն հաւատ ստորագրեաց, զթագաւորն ւնլորեցուցանելով։ Իսկ նախկին էր Աէտիոս[3] այր հակառակող և Արիոսի աղանդոյն ջատագով լինել փութայր ջերմ սրտիւ. քանզի սակաւ ինչ խրատեալ սորա յԱղեքսանդրիա գնայր, և հասեալ յԱնտիոք Ասորոց վասն զի անդուստ էր, յեպիսկոպոսէն Ղևոնդիոսէ[4]

1 Տես Սոզոմ. Դ. 12. Թէոդ. Պ. Եկեղ. Բ. 27. Փիլոստ. Գ. 27. Կաս. Ե Նիկեփ. Թ. 36.

2 Սրա աղանդի էութիւնը նրանում էր, որ Որդի Աստուծոյ ստեղծեալ χτιστος էր կոչում եւ միանգամայն աննման Հօր Աստուծուն. Նա հռչակ ստացաւ 359 թ. սկսած եւ մինչեւ անգամ եպիսկոպոս ձեռնադրուեց. մեռաւ 368 թուին.

3 Տես գիրք Ա. գլ. Ի2.

4 348 թ. սկսած Անտիոքի եպիսկոպոս էր.

երթայ ի Հռոմ։ Ցայնժամ վախճանի Հռոմայ եպիսկոպոսն ի տասն հինգ ամի և փոխանորդ նորա կոչի Լիբերիոս. իսկ Անտիոքայ Աէտիոս[ա] որ զԱրիոսին ունէր զկարծիսն.[բ] բայց ի նոցանէ որոշէր իմն, զի էր այր հակառակող. և ասէր զինքն

ա. Բոլ. Չնու. յատիկոս. բ. Դ. զկարծիս.

ձեռնագրիւր սարկաւագ և նոյնժամայն ապա աւտաբաձայնէր զընթերցողսն։[ա] Իսկ զայս առնէր ստորոգութեանցն Արիստոտելի հաւատալով, ի նոցունց խաւսելով և ինքեան։՞ք զիմաստմունսն առնել ոչ զգայր. զի և ոչ ուսաւ իսկ ի հանճարողացն զԱրիստոտելի զգիտումնն։ Քանզի նա վասն իմաստակիցն զիմաստասիրութիւնն յայնժամ այպանեալ կրթութիւն զայն մանգանցն շարադրեաց զբանականսն իմաստասիրացն ի ձեռն իմաստմանցն ընդդիմադրեաց. իսկ վերահայեցողացն իմաստնասիրացն զՊղատոնին և զՊղոտինոսին եղեալ յանդիմանեն զարուեստաքար ասացեալսն յԱրիստոտելէ։

Այլ Այետ ի վերայ հայեցաւղի ոչ հանդիպելով վարդապետի, ի ստորոգութեանցն իմաստմունսն մնաց. վասն որոյ և ոչ իմանալ կարէ թէ զիարդ է անծնանելին ծնունդ, եթէ որպէս ծնեալն մշտնջենաւորակից է ծնաւղին։ Այսքան էր պակաս ուսմամբ, և տգէտ աստուածայինցն գրոց։[բ] Եւ այսպէսք որք յայնժամ Այետիանոսք յորջորջեալք.[գ] քանզի յետ ժամանակին Եւնոմիոս երագագրաւղ գոլով նմա, և ի նմանէ խրատեալ զհակառակական[դ] բանականութիւն, զբնաբանու-

ա. Միտքն է. Նա իր քարոզների նորութեամբ զարմացնում էր ամենքին:

բ. Բնագիրը կրճատած է թարգմանուած:

գ. «Իսկ այժմ Եւնոմիանոսի» Բառերը բաց է թողել թարգմանը:

դ. τὴν αἱρετικὴν λέξιν·

փիլիսոփայ. այլ և ոչ էր. զի ոչ ի ստոյգ[ա] իմաստասիրէ էր ուսեալ և թիւրէր զժողովուրդն։ Եւ որոց յայնժամ Արիանոսքն,[բ] այժմ Եւնոմիանոսք կոչին, քանզի յետ ժամանակի զնորայսն վարժելով զհակառակաբանութիւնս[գ] շարադրեաց.

ա. Ա՝ ստոյգ. բ. Ա՝ Արիանոսք: գ. Դ. զհակառակաբանութիւնսն.

Թիւնոս զայս նախակարգեաց։ [ա] Բայց սակս Եւնոմիոսի ըստ աշխարհին ասասցուք։

## ԳԼ. ԼԶ [1]

Իսկ յայնժամ ժողովեցան յԻտալիա եպիսկոպոսունք, բայց յարեւելականացն ոչ յոյժ բազումք. զի զյոլովս ի նոցանէ որ ախտ և որ ծերութիւն և որ ճանապարհին երկարութիւն արգելոյր. իսկ յարեւմտականացն աւելի քան զերեք հարիւր պատահեցան։ [2] Բայց հրաման Թագաւորին ի Միդիողանոն քաղաքի ասէր առնել զժողովն. ըստ որում և ժողովեալ արեւելականքն նախ քան զամենայն միաբանական ընտրութիւնն ընդդէմ Աթանասայ բերեալ արժանաւորէին. որպէս զի ի սորա եղելոյ՝ կատարելապէս ի նոցանէ անկոխ լինի Աղէքսանդրիայ։ Իսկ իբրև զգային Պաւղինոս ի Գաղիա Տռիբեռիոյ եպիսկոպոսն, և Եւսէբիոս Բերգաղացոց [բ] որ է քաղաք յԻտալիայ Ղիւգիւացւոց, [գ] և Դիոնէսիոս Աղբատւոյ [դ] յԻտալացւոց մայրաքաղաքին եպիսկոպոս, յանկուծին հաւատոյն արեւելականացն փութային հա-

ա. Միտքն է. յաջորդ կարգուեց նրա աղանդին։

բ. Βςεxὲλλων.

գ. Λιγύων

դ. Ἄλβας·

1 Տես Սոզոմ. Դ. Թ. Թէոդ. Բ. 15. Ռուփ. Ժ. 19. 20 Սուլպ. Սեվ. Բ. 39. Կաս. Ե. 15. Նիկեփ. Թ. 33.

2. Ժողովը տեղի է ունեցել 355 Թ. անհաւանական եւ չափազանցրած է համարւում երեք հարիւր եպիսկոպոսների թիւը։

Իսկ Թագաւորին հրամայեալ [ա] զժողովն արեւմտից ի Մեդիոլանոն [բ] քաղաքի առնել, և արեւելիցն առ նոսա [գ] գալ, որք էին իննսուն, [դ] Եւ նախ քան զամենայն զդարձն Աթանասի ասէին և

ա. Դ. Թագաւոր հրամայեաց բ. Բոլ. Ձեռ. ի մելիդոն. գ. Ա' առ նոցա. Բ. առ նա. դ. Ուշադրութեան արժանի է թուերի տարբերութիւնը։

տանել զՀակառակ Աթանասայ ընտրութիւնն, յարուցեալք գոչէին յերկարս ննջութիւնս կրել և պատրանս եղեալքն քրիստոնէութեանն։ Քանզի ոչ ասէին ճըշմարիտ գոլ զՀակառակ Աթանասա մեղադրութիւնն. այլ ի քակումն հաւատոյն զայս նոցա խորհել։ Այսպիսիս աղաղակելոց, լուծանի եպիսկոպոսացն ժողովն։

## ԳԼ. ԼԷ. [1]

Ծանուցեալ ապա Թագաւորին զումանս հատանէր յոտից[ա] ի ձեռն եքսուրեաց։ Եւ կամէր ընդունել ժողով տիեզերական, որպէս զի զարևելականն ամենայն յարևմուտս կոյս քարշել, համափառս արդեւք կարասցէ առնել զամենեսին։ Իսկ իբր նորա զայս խորհեալ դժընդակութիւն ճանապարհին երևէր, զի ընդ երկուս առժամայն ժողովն հրամայեաց առնել.[2] յԱրիմինոն Իտալիոյ, յայնժամ ուրոց մերձն ժողովել հը-

ա. Տես Բ. 27. էջ 161 ծն. ա.

1. Տես Սոզոմ. Դ. 15. 16. 17. 18. 19 եւ Գ. 19. Թէոդ. Բ. 18. 19. 20. 21. Ռուփ. Բ. 21. Սուլպ. Սեվ. Բ. 41. Փիլոստ. Դ. 10. Կասիոդ. Ե. 20. Նիկեփ. 38. 39. 40. 41.

2 Այս ժողովներից անկախ 356 Թ. կայսրը Աղէքսանդրի ուղարկեց Սիրիանոսին Աթանասին արտաքսելու. եւ Գէորգ Կապադովկացուն նրա տեղը կարգելու Տ.․․րր. նոյն Թուականին էր նաեւ Արմինոնի ժողովը. իսկ Նիկոմիդիայինը 358 Թ. էր.

անիրաւ զրպարտութիւնն. իսկ որ[ա] զայս ասէին, զնոսա արտաքսել հրամայէր ի մետաղս. զի այս էր[բ] նորա փոյթ, զի զամենեսեան յարիանոսութեան աղանդն միաւորեսցէ։ Բայց ոչ յայտնապէս զինքն ցուցանէր արիոսեան, այլ

ա. Բ. Դ. որք: բ. Չի ասէր.

րամայեաց, իսկ արեւելականացն ի ձեռն Թղթոց Նիկոմիդիա Բիւթինիոյ պատահիլ հրամայեաց: Իսկ զայս Թագաւորն դիտմամբ համաձայնութեան առնէր. այլ և ոչ դիտումն զքաղցր ունէր կատարումն. քանզի և ոչ այլ ժողովոցն համաձայնեաց այն ժողով՝ այլ յերկաքանչիւրսն պատառեցաւ: Վասն զի և ոչ յԱռիմինիոն ժողովելոյն կարացին միաբանիլ: Իսկ արեւելականքն ժողովեալք Սեղեւկի Ասաւուրոյ,[ա] այլ հերձուած գործեցին: Որպէս զի այսուհետև զիւրաքանչիւրսն այսոցիկ յառաջիկայսն ասասցուք. նախ սուղ ինչ յաղագս Եւդոքսիոսի արարեալք յիշատակ: Քանզի առժամանակաւն Ղեոնդիոսի վախճանեալ զհակառակողն Այետի սպասաւորութիւն կարգէր, իսկ Եւդոքսիոս Գերմանիկոյ եպիսկոպոս գոլով, որ յԱսորիսն է քաղաք. ի Հռոմ լինելով յայնժամ ճեպել խորհէր և ընդ Թագաւորին նենգութեամբ խաւսէր. որպէս զի պիտաւորեցելոյ Գերմանիկեայ քաղաքին մխիթարութեան և պահպանութեան թողուլ զնայ ի փոյթն ճանապարհին վերելումն. բայց Թագաւորին ոչ գիտացեալ նախկին եթող զնա: Իսկ նա զկալաւղս աւթանոցին ունելով գործակից, զԱնտիոքայն առեալ զեպիսկոպոսութիւն, եթող զիւրն քաղաք և Այետի ունելութիւնս առնէր. և փութայր նստուցանել ատեան եպիսկոպոսանց առ ի տալ նմա զըսպասաւորութեան պատիւն:

ա. Ἰσαυρία.

խորամանկեալ,[ա] որ յայնր[բ] աղանդոյ էր մեծարէր. իսկ որ ըստ ուղղափառութեան՝ անարգէր, և զբազումս[գ] արտաքսասահմանէր[դ] հրամանաւ Թագաւորին, և այնպէս խառնափնդորեալք.

ա. Ա՝ խորամանգել որ այն աղանդոյ. բ. Ն. այնր. գ. Ա՝ բազումս. դ. Դ. արտաքսասահման առնէր.

Այլ այս ոչ երբէք լինէր, քանզի զաւրագոյն էր ընդդէմ Այետի ատելութիւն, քան զփոյթն Եւդոքսիոսի։ Բայց ոմանք յարևելականացն յԱռմինոն ժողովեցան ըստ Աթանասայ. լռեալևացն առաքեալք յաղագս հաւատոյն միաբանիլ ասէին. յորոց փոյթ զուգեալ լինէին Ուռսակիոս և Վաղէս որք նախ զարիոսութեանն ունէին զաղանդ. ապա զհամագոյութեանն խոստովանեցան ի ձեռն տուեցելոյ գրոյն եպիսկոպոսին Հռովմայ, [1] զի միշտ սոքա առ զաւրագոյնսն խոնարհէին։ Զուգէին ընդ նոսա ապա և այլք որպէս զի ապա ի ժողովուն որոց մերձն. այլք այլ ինչ առաջի արկանելով զումարէին։ Այսքան որք Ուռսակայն և Վաղենտին զոր ընդդէմ ասէին նախկին յաղագս հաւատոյն կարգաւորութեանն, զոր փոքր ինչ ի Սիռիմ ժողովեալքն արտաքսեցին։ Զայս ասէին և զքարտ գրոյն ունելով տային ընթեռնուլ. քանզի ի Սիռմի որպէս և Նախկինն ասացի շտեմարանեցին, բայց անդ Առմինոն յայտնեցին։ Իսկ այսորիկ ընթերցելոյ յարուցեալքն, որոց ոչն այս եղև հաճոյ. մեք ասեն ոչ հաւատոյ կարաւտեալք ժողովեցաք աստանաւր, վասն զի ողջ պահեմք զոր ի սկզբա-

1 Բնագիրը գործածել կրճատ է թարգմանուած եւ բաց է թողնուած նոցա գրութիւնը Հռովմա եպիսկոպոսին։

Ոչ կարէր անել որպէս կարծէր, այլ յամենայն ուրեք մարտ և հակառակութիւն և ոչ կարաց զժողովսն [ա] ի կամս իւր ածնել այլ [բ] և ոչ գագարէր յայնցանէ, որոց յուսայր. [գ] և զի երկայնագոյն է ըստ ժամանակին պատմել զվիճմունս եպիսկոպոսացն և ժողովրդոցն զասելս և զլսելս վասն հաւատոյ, [դ] ըստ Արիոսի

ա. Որպէս կարծէր զժողովն․ բ. Ա. Բ. Ն. չունի այս նախադասութիւնը․ գ. Դ. յուսայրն․ Բ. Ա. յուսար․ Ն. ուսար․ դ. Ա. Բ. Ն. չունի․ Ժ. Ա՛ հաւատոց։

նէն առաք, այլ զի թէ առ այն ինչ լիցի հատուածն նոր՝ արգելցուք։ Իսկ արդ եթէ ընթերցեալդ ոչ ինչ հատանէ նորագոյն յայտնապէս այժմ զարիանոսականն նզովեցիք հերձուած, ըստ որում աւրինակի և զայլ հերձուածսն հինն կանոնն որպէս զհայհոյիչս էհան. քանզի հայհոյականն աղանդ Արիոսի շարժեաց զխառնակունս եկեղեցւոյն, և զոր մինչև ցայժմ եղեալ խռովութիւնս, և զայս յայտնի կացոյց տիեզերաց։ Իսկ այս պատճառոյս յորոց. Ուռսակայն և Վաղենտին, Գեռմինիոսին և Աւքսէնտին և Դիմոփիլլին և Գայ[ր]ոսին ոչ եղեալ ընդունելի կատարելապէս կոչեաց զեկեղեցին. քանզի սոքա յայնժամ յԱռիմինոնի ընթերցեալսն յաւելուին, բայց ոչք զՆիկիոյն հաւատ հաստատեցին առժամայնն։ ծաղր արարին և զնախադիրսն ընթերցմանցս, մանաւանդ Աթանաս որով և առ իւրսն ծանաւթս գրեալ ասէ բազում ինչ։[ա] Բայց այս գիտելի է զի Ժող(ով)ն ընգեաց զորս Վաղէնտին և Ուռսակայն և այլոցն. քանզի զարիոսական չարափառութիւնն նզովել յանձն ոչ առին։ Վասն որոյ զայլագնեալք ի նզովիցն առժամայն ցԹագաւորն ընթացան տանելով զընթերցեալ ի Ժողովոյն զգիր հաւատոյն. բայց Ժողովն զծանմունսն յիւրմէ յայտնեալս կարգեաց Թագաւորին և առաքեաց ի ձեռըն եպիսկոպոսաց։ Իսկ ապա որք Ուռսակայն և Վաղէնտին հասեալք նախ մատնին զԺողովն ցուցեալք զոր տանէինն զհաւատոյն կարգադրութիւնն,[բ] իսկ Թագաւորին ի նախկին ըմբռնմանէն յԱրիանոսի կարծիսն իջնալով, զայլագնէր ընդդէմ Ժողովոյն և զորս Վաղէն-

ա. Բնագրում կայ Աթանասի գրութիւնը.
բ. Բնագրում կայ Արիանոսաց կայսեր ուղղած թուղթը։

տին և Ռուսական պատուով ընդունէր բազում· վասն որոյ առաքեալքն ի ժողովոյն յամէին, ոչ հանդիպեալք պատասխանւոյ։ Իսկ անազան ուրեմն երբեմն փոխանակագրեալ Թագաւորին առաքեաց ի ձեռն որոց մերին, զոր ընգալեալ ժողովուն ստէպ այլ գրէին։[ա] Եւ փոքր ինչ յամէին ժամանակ։

Եւ իբրև ոչ արժանաւորեալ գնոսա Թագաւորին պատասխանւոյ գնային յիւրաքանչիւրքն իւր ըստ քաղաքս իւրեանց։ Իսկ Թագաւորն և յայնժամ նախագիտէր զարիանոսական կարծիսն սերմանել ցեկեղեցին· և զայս ունել փութացեալ պատճառս Թշնամանաց զնոցայն գնալ առնէր, արհամարհեալ ասելով, զի արտաքոյ կամաց նորա լուծան։ Սակս որոյ ոմանց որոց Ռուսական ոլքան ինչ նոցայն Թուէր հանդերձ համարձակութեամբ հակառակ եկեղեցեացն գործեալ հրամայեաց, իսկ զկարգաղրութիւնն հաւատոյն ընԹերցելոյ յԻտաղւոյ յեկեղեցին կոյս հրամայեաց առաքել, հրամայեալ ոչ կամաւղացն ստորագրեալ արտաքսել յեկեղեցեացն, և ի տեղիս նոցա հաստատել այլոց։ Բայց նախ Կղիբերիոս[բ] Հռովմա եպիսկոպոսն հրաժարեալ ի միաբանութենէ այն հաւատոյն արտաքսի, իսկ ոլք Ռուսական և Վաղէնտին ի տեղին հաստատէին զՓիլիքս, որ էր սարկաւագ եկեղեցւոյն Հռովմա և եղև յաւելեալ ի կարծիսն Արիոսի· բայց են ոլք ասեն, Թէ ոչ յաւելաւ ի կարծիսն, այլ բռնութեամբ և վշտաւք ձեռնադրիւր։ Զամենայն ապա յարևմուտս նորահաստեալն խռովութիւն ընդունէր, ոմանց արտաքսիլ և առաքիլ յեքսո-

ա· Բնագ· կան կայսեր գրութիւնը ժողովին եւ նոցա պատասխանը։

բ· Λιβέριος.

ըհա․ իսկ այլոց ի տեղիս նոցա հաստատիլ։ Եւ այսք լինէին ի բռնութենէ թագաւորական հրամանացն որ ապա և յարևելային կողմունսն առաքէին։ Բայց Ղիբերիոս ապա փոքր ինչ յետոյ յեքսորեայն կոչեցեալ զընտանին էառ զաթոռ․ ի Հռոմ ժողովրդի աղմկեցելոյ և արտաքսեցելոյ յեկեղեցւոյն զՓիլիքս․ բայց թագաւորին ակամա այսոցիկ լինէր համակարգիչ․ իսկ որք Ուռսակայն գնացեալք յԻտալիա եւ յարևելականսն անցեալ կողմունս հասանէին ի քաղաքն Թիրակա Նիկի․ և սակաւք ինչ յամեալք ի նմա ժամանակ, այլ նստուցանեն ատեան և զընթերցեալսն յԱռիմինոն զհաւատոյն գիր յԵլադացի թարգմանեալք լեզու․ զոր աւրինակ վերագոյնն ճառեցաւ և աշխարհալուր արարեալ, հաստատեցին վերահռչակեալք ի հաւատոյն որ ի Նիկիայ առակաւ անուանն յափշտակել զպարզամիտսն կամեցեալք և զՆիկիոյ հաւատոյն բազմաց կարծելով ասել։ Այլ ոչ նոցա եղև շահ իմացուածն․ քանզի յետ բազում ինչ իրի յանդիմանեցաւ, վասն որոյ և կատարէին իսկ այ-

մոլորութեանն և ըստ [ա] Մակեդոնի հոգեմարտութեանն․ (Զի Արիոսեանք [բ] արարած ասեն [գ] զՈրդի․ այլ ոչ ի բնութենէ Հօր․ այլ հետ ժամանակի գոյացեալ, և Հայր մեծ քան զՈրդի․ և Հոգի նուազ․ ոմն քան զոմն խոնարհագոյն ի Հօրէ և յաստուածութենէն․ [դ] զի թէպէտ և սուրբ ժողովն Նիկիայ [ե] նզովեալ [զ] արտաքսեցին զԱրիոս․ և դարձեալ զպատիժ [է] պատուհասի ընկալաւ․ սակայն սերմն չարին ի ձեռն թագաւորին որ պարտեցաւ ի յարիոսեանն [ը] քահանայէն․ ոչ դադարէր ի թիւ-

ա․ Ն․ վասն բ Գ․ արիանոսեանք․ գ․ Դ․ ասէին․ դ․ Ա աստուածութենէն․ ե Բ․ չիք․ զ․ Ա․ Գ նզովել․ է․ Դ զպատիժս. ը․ Բ․ Ա՝ ի ձեռն ի յարիոսութեան քահանայէն․ Գ․ ի ձեռն ի յարիոսեան քահանայէն․ Դ․ ի ձեռն չարին արիոսեան քահանային։

պանեալք։ Յաղագս յարևմտահան կողմունս եղելոց այսքան ճառեցաւ։

Բայց փոխադրելի է առ ժամայնս ի պատմութիւնս ըստ նմին ժամանակաց յարևեալս եղելոցն, աստուստ իսկ սկսանել։

ԳԼ. ԼԸ.[1]

Որք Արիոսի կողմանն եպիսկոպոսունք մեծ քաջալերութիւն ի Թագաւորականն հրամանէ առնուին, և յարդարէին ընդունել զժողովս. սակս որոյ փոքր ինչ յետոյ ասացից, բայց յառ ի նոցանէ յեղեալսն յառաջինն ժողովու, նախկին ընթասցուք։ Քանզի Ակակիոս[2] և Պատրոփիլոս զՄաքսիմոս զԵրուսաղեմացեացն եպիսկոպոսն արտաքսեալք զԿիւրիղոս փոխանակ նորա կարգեցին։

1 Տե՛ս Սոզ. Դ. 20. Թէոդ. Բ 27 Կաս. Ի. 31 Նիկ. Թ. 42։

2 Սա յաջորդեց Կեսարիայի եպիսկոպոսութիւնը Եւսեբիոս Կեսարացւոց յետոյ:

րեթ քոյ զուգիզ հաւատոյ) և որք Արիոսեանքն էին համարձակութեամբ առին առ ուղղափառս. որ և զՄաքսիմոս Երուսաղէմի եպիսկոպոսն արտաքսեցին և զԿիւրեղ ի նորա տեղին[ա] կարգեցին եպիսկոպոս. բայց ունիմ ասել զպատճառն զբազումս և զայլս զոմանս[բ] արտաքսէին,[գ] և զոմանս ի տեղիս նոցա կարգէին եպիսկոպոս[դ] Թագաւորան.

ԳԼ. ԽԳ.

Յաղագս Մակեդոնի եպիսկոպոսի զաւրութիւն որ ունէր ընդ սուրբս Աստուծոյ եւ սատակումն իւր:

Իսկ Մակեդոն հոգեմարտ և աստուածամարտ՝ կոչեցեալ[ե] ի տարկուսագութենէ յեպիսկոպոսութիւն Կոստանդինուպոլսի.

ա. Բ. Դ. ի տեղն. բ. Ա՝ զայլ ոմանս. գ. Դ. արտաքսեցին դ. Դ. կարգեցին եպիսկոպոսս. ե. Դ. կոչեալ.

Իսկ Մակեդոնիոս զմերձագոյնսն ի Կոստանդնուպաւլսի աշխարհս և քաղաքս խախտէր, սպասաւորս զընտանի դիտմունսն հակառակ եկեղեցեացն նախակարգեալ։ Իսկ Կիզիկոյնի զԵղեւսիոս[ա] ցուցեալ եպիսկոպոս, և Նիկոմիդեայ զՄառաթոնիոս, որ նախկին իսկ սարկաւագ էր կարգեալ ի Մակեդոնէ, որ էր փոյթ առ շինել արանց և կանանց վանորայս։ Բայց թէ որպէս Մակեդոն զշուրջ Կոստանդնուպաւլսի աշխարհս և զքաղաքս քանդէր, այժմ ճառի. քանզի սա, որպէս ասացի, ըմբռնեալ յեպիսկոպոսութիւնն բիւրս առնէր չարիս, զխորհաւղացն նորայն. և ոչ միայն զեկեղեցւոյն իւրոյ զխղճաւորս վարէր,[բ] այլև զՆաւատիանոսս, անսեալ զնոսա զհամագոյութիւնն խորհելով, ընդ նոսին ապա վարէին և նոքա և ընդ նոսին կրէին զանուգայսն։ Փախչի ապա և եպիսկոպոսն նոցա Ագելիոս[գ] անուն։ Իսկ բազումք ապա և ի նշանաւոր և յերկիւղած արանց ըմբռնեալ տանջէին, զի ոչ կամէին վայելել ի հաղորդութենէ նոցա։ Իսկ յետ չարչարանացն ըմբռնութեամբ հաղորդել ի խորհրդոյն հարկաւորէին, քանզի փայտիւ բացեալ զբերանս արանցն արկանէին զխորհուրդն։ Իսկ զայս կրաւղքն մեծագոյն ևս քան զայլ զպատժոցն տանջանս զայս համարէին. կանայս և մանգունս ըմբռնեալ պղծել

ա· Ἐλεύσιον·
բ· Զուղղափառս հալածէր։
գ· Ἀγέλιος·

հակառակ Պօղոսի, որ ընտրեցաւ յԱղէքսանդրէ երանելւոյ. սա բազում չարիս եցոյց ի Կոստանդինուպօլիս և ի մերձաւոր յաշխարհսն և ի քաղաքսն, բազումք[ա] ի նշանաւոր[բ] արանց ըմբռնեալ տանջէին, որ[գ] ոչ կամէին ընդ նմա հաղորդել, և յետ

ա· Դ· բազմութիւն· բ· Գ· նշանաւորս գ· Բ· որք·

հարկաւորէին, իսկ թէ ոք հրաժարէր կամ այլազգ ինչ ընդդիմաբանէր. նոյնժամայնն հետևէին վէրք և յետ վիրացն կապանք և կապարանք և այլքն դժնդակք, յորոց մին կամ երկուս յիշել յայտնագոյն զչարագործութիւն և զխայլանսն Մակեդոնի, և զորոց յայնժամ ածեցելոցն յանկաւղացն կարգեցից: Վասն զի կանանցն ոչ առեալ յանձն հաղորդիլ ի նոցաոցն, զստինս նոցա եդեալ ի տապանակի սղոցէին, և այլ կանանց զնոյն անմտութիւն առնելով, զոմանց երկաթովք և զոմանցն ձուանք ծայրագունիւք ջեռուցանելաւք ի հուր մատուցեալք այրէին. և աւտարագոյն քան զհեթանոսացն պատիժս այս ի քրիստոնէիցն կոչեցելոց լինէր: Իսկ զայս ես ի բազմամէէն Աւքսանոնէ լուայ, զոր յառաջնումն յիշեցուցի գիրս, որ էր քահանայ Նաւատեանոսացն աղանդոյ: Եւ կրել ասէր և սա յարիանոսացն ոչ սակաւ չարչարանս, և ևս այսքան քահանայութեան հասեալ պատուի. և հանդերձ Աղէքսանդրաւ Պեփղագոնեաւ ճգնակցաւ իւրով ի բանտ մտանել, և վէրս առնուլ բազումս և կրեալ ապա տանջանսն նա ասէր. իսկ զԱղէքսանդր ի բանտի ի վիրաց վախճանել

չարչարանացն բռնութեամբ փայտիւ բացեալ զբերանն զհաղորդութիւն նոցա տային. ա որք չար քան զտանջանսն զայն բ վարկանէին և զկանայս գ ի պղծութիւն զինուորաց հրամայէր. և որք ընդդիմանային հարուածք նոցա լինէր, և կիսոց զստինսն դ հատանէին, և կիսոց այլ ինչ դառն տանջանս առնէին. Եւ այս էր նորա փոյթ, զի զամենեսեան աստուածամարտութեան արասցէ հաղորդս, և ևս չարագոյն քան զհեթանոսացն տաձէր տանջանս, և զգործիս տանջանացն կազմէր հրով և սրով և փայտիւ, և ոչ դադարէր ի չար բռնութենէն և յաստուա-

ա. Ա տարին Գ. տացին. բ զտանջանս զնոսա կարկանէին  գ. Գ. զկանայսն: դ. Դ. լինէին. եւ կիսոց զստինս:

ասէր, որ և Թաղին իսկ յաջու կողման Նաւագնացուն Բիւզանդիոյ գոգին որ կոչեն եղջիւր, հուպ ի դէտարայն,[ա] ուրանաւր և եկեղեցի է Նաւատիանոսաց Աղէքսանդրի համանունն։ Բայց բռնային ապա և արիանոսքն հրամանաւն Մակեդոնին և այլս բազում ըստ քաղաքացն եկեղեցիս և զի զՆաւատիանոսացն որ հուպ ի կոչեցեալն էր Ադիլկա,[բ] ի Կոստանդնուպաւլիս։ Բայց այսորիկ աղագաւ զայս ինքնաբար յիշեցի և կամ ճառելով որքան ինչ ի ծերոյն Աւքսանիա լուա։

Թագաւորին հրամանն և Մակեդոնի բռնութիւնն քանդել զհամագոյութեանն խորհողաց եկեղեցիս հրամայէին, և հասանէին ապա հրամանն և բռնութիւնն հակառակ եկեղեցւոյն. և ճեպէին հրամայեալքն զայն առնել, բառնալ զնախակոչեցեալն եկեղեցի։ Բայց սքանչանալի է ինձ այսուհետև և յինքեան ի վերա ժողովրդեանն Նաւատիանոսաց, եթէ զորպիսին ունէին զնախանձ և զփոյթ առ իւրեանցն եկեղեցիս. և զբարեմտութիւնն զոր ունէին առ ինքեանս, և զի որք յայնժամ յեկեղեցւոյն յարիանոսացն արտաքսեալք, այժմ խաղաղութեամբ ընդունին զեկեղեցին։ Քանզի իբրև ճեպէին քանդել զեկեղեցին որոց հրամայեալն էր, ժողովէր բազմութիւն մարդկան Նաւատիանոսաց՝ և ոմանք ի համագոյութեանն խորհողաց ընդ նոսա, և աւերեալք զեկեղեցին յայլ փոխեցին տեղի, իսկ տեղիս այս յայնկոյս է քաղաքիս որ Սիւկաս[գ] անուանի և է երեքտասաններորդ գաւառ[դ] Կոստանդինուպաւլսի։ Բայց փոյթ

ա գետորայն ποταμῶν·

բ. Πελαργός.

գ. Συκαί·

դ κλίμα.

լինէր եկեղեցւոյն փոփոխումն ժողովրդի մեծաւ յաւժարութեամբ փոխաբերել զնա․ քանզի մինն բերէր խեցի, իսկ միւսն քար, իսկ միւսն փայտ և այլ ոք այլ ինչ և առեալք տանէին ի Սիւկաս։ (Ն)պաստաւորք լինէին և կանայք և փոքունքն տիովք աղաւթս համարեալք, և կատարէին և մեծ առնուլ շահ, զի որոշեցելոցն յԱստուած պահապանք ողջք արժանաւորք լինել։ Եւ այսպէս ապա յայնժամ Նաւատիանոսացն եկեղեցի ի Սիւկաս փոխաբերեալ լինէր։ Բայց ժամանակաւ ինչ յետոյ յետ վախճանին Կոստանդիոսի, Յուլիանոս թագաւոր զայնժամու տեղին ի բաց հրամայեաց տալ, և նոյնժամայն վերստին շինել հրամայէր և ժողովուրդն անդրէն ըստ նմին աւրինակի տանելով զնիւթսն, զեկեղեցին յառաջնումն շինեցին տեղւոջ և վերհազունացուցեալ Անաստասիայ [1] համանուան կոչեցին։ Բայց եկեղեցին ապա որպէս ասացի առ Յուլիանոսի կանգնեցաւ, իսկ յայնժամ երկաքանչիւրոք եկեղեցւոյն և որք Նաւատիանոսացն առհասարակ վարեալք լինէին, վասն որոյ և որք եկեղեցւոյն պիղծ համարէին յաղաւթարանսն աղաւթել տեղիս յորս արիանոսքն ժողովէին, իսկ յայլ երկսն քանզի այսքան ի ներքս ի քաղաքին ունէին եկեղեցիս Նաւատիանոսքն, յայնոսիկ եկեալք առ միմեանս աղաւթէին, և փոքր ինչ միջոցաւ միաւորիլ նոցա, եթէ ոչ Նաւատիանոսացն պարհեալ զնախկինն պատուէր հրաժարեցին, սակայն զայլ բարեմտութիւն պահէին առ միմեանս յաւժարութեամբ յառաւել քան զմեռանելն ընդ միմեանց նկըրտեալք։ Վարեալք լինէին ապա ի նոյն Կոստանդնուպաւլսի և ըստ այլ աշխարհաց և քաղաքաց և նոյնժա-

1 Այսպիսի անունով մի երկրորդ եկեղեցի շինեց Կոստանդնուպոլսում Գրիգոր Նազիանզացին։

մայն ի Կիզիկոնի Եղեւսիոս [1] եպիսկոպոս զնմանս Մակեդոնի չարեացն առնէր զքրիստոնէիցն, ամենայն ուրեք վարելով եւ շրջելով զնոսա, եւ զՆաւատիանոսացն եկեղեցի որ ի Կիզիկոն աւարեաց յատակ։ Իսկ Մակեդոնիոս զկռփիչս չարեացն որովք ըմբռնէրն առաւել յաւելոյր. քանզի լուեալ ի Պեփղագոնացեացն աշխարհին բազում լինել Նաւատիանոսականն աղանդոյ եւ առաւել ի Մանտինոնի, պատեհ վարկանէր որպէս զի ոչ զայսքան բազմութիւն արանց է վարկանիլ վարել։ Եւ չորս գունդ զաւրականաց կամաւք Թագաւորին ի Պեփղագոնեայ առաքէր, որպէս զի յահէ վառելոցն զարինոսականն ընդունեցին զկարծիս։ Իսկ բնակեալքն ի Մանտինոն Նախանձու աղանդոյն զայրագնեալք հպեցան հակառակ զաւրականացն։ Եւ ելեալք միանգամայն բազմութիւն յոյժ, եւ առեալ մանգաղս եւ գերանդիս, եւ կացինս եւ ամենայնիւն դիպեցելով զինու հանդիպեալ պատահէին զաւրականացն։ Եւ եղեալք միանգամայն եւ լինել խառնակութեանն բազումք ի Պեփղագոնացն մեռան, բայց ի զաւրականացն առ սակաւ ինչ ամենեքեան։

Զայս ես ի վայրաքնակ Պեփղագոնացւոյ լուա որ ասէր լինել ի մարտին. եւ ասեն զայս եւ այլք բազումք ի Պփղագոնացեացն։ Այսպիսիք այսուհետեւ Մակեդոնի յաղագս քրիստոնէիցն ուղղութիւնք եւ մարտք եւ ցեղական պատերազմունք։ Բայց այս իր ոչ միայն յանիրաւեցելոցն, այլ եւ յորոց ընտանեբար եղելոցն զիրաւն ատելութիւն հակառակ նորա գործեաց, առ հարաւ եւ ընքեան Թագաւորին. եւ վասն այսորիկ եւ վասն միւսոյն պատճառոյ այսպիսի ինչ յառաջագայի։

1 Սա առաջ զինուորական էր եւ յայտնի իւր բարի բնաւորութեամբ. բայց յետոյ եպիսկոպոս ձեռնադրուելով սկսեց խստութիւններ գործ դնել։

Տունն [1] ուրանաւր տապանակն յորում մարմին Թագաւորին Կոստանդնի կայր, էր մերձ յանկանելի, և էին ապա յաղագս այնորիկ դարան[ա]եալքն ի նմա և որք ապաւինէինն յերկիւղի մեծի: Մակեդոնիոս ապա կամեցաւ փոխել զոսկերս Թագաւորին որպէս զի մի ըմբռնեսցի յանկմանէն տապանակն: Զայս ծանուցեալ ժողովրդին արգելուլ ձեռնարկէին, ասելով ոչ ումեք փոխաբերել զմարմին Թագաւորին, որպէս զի մի ըմբռնեսցի, քանզի հաւասար նզովիցէ լինել: Եւ պատառեալ լինէր յայնժամ վաղվաղակի յերկուս հատուածս. և ոմանք ոչ ինչ վնասիլ ի փոխաբերելն զմեռեալն ասէին, իսկ այլք անսուրբ եղեալն ասէին. ժողովէին յայնժամ և որք համագոյութեանն խորհրդոյ եղելումն ընդդիմացեալք:

Իսկ Մակեդոնի փոքր ինչ ընդդէմ ասաւղացն իւր հոգ տարեալք, բերէ յեկեղեցին զմարմին սուրբ [ա] Թագաւորին, ուր մարմին վկային Ակակա [2] կայր: Այ-

ա. Բնագիրը չունի:

1 Այդ տաճարը առաքելոց անունով շինել էր տուել ինքը Մեծն Կոստանդինը իր մահուանից փոքր ինչ առաջ եւ որոշել էր՝ որ իրան այնտեղ թաղեն (Տես Եւս. վարք Կոստ. Դ. 6):

2 Վկաների մէջ շատ Ակակներ են յիշւում թէ որն էր սա յայտնի չէ:

ճշմարտութենէն Մակեդոն. բայց սակայն ոչ եթող զնա Աստուած առանց վրէժխնդրութեան: Էր հանգստարան Թագաւորին Կոստանդիանոսի, յորում էր տապանն, և էր կարծիք անկման տանն ի վերայ տապանին: Իսկ Մակեդոն կամեցաւ փոխել զտապանն յայլ [ա] տեղի. իսկ որք համագոյութեանն էին [բ] խոստովանողք, ոչ արժան վարկանէին զայն առնել: Իսկ Նորա որ համարձեալ զնոսա իւրովքն. [գ] արար զոր կամեցաւ: Լինի ամբոխ մեծ յամբոխին, [դ] և բազումք մեռան, որպէս զի գաւիթ

ա. Գ. այլ. բ. Ա՝ համակցութիւն: գ. Դ. Նա արհամարհեաց զնոսա իւրովին համերոծ. դ. Բ. ամբոխի.

սորին եղելոյ ընթացումն երկումարիցն ա փութանակի յեկեղեցին լինէր, և ընդդիմանային միմեանց կողմունքն, և անփութաբար ըմբռնեալք ապականէին և լինի ապանումն մարդկան յոյժ, որպէս զի և գաւթի եկեղեցւոյն այնորիկ լնու արեամբ, և ջրհորոյն որ անդ վերաբերիլ յարենէն և հոսիլ նմա և մինչև ի սրահն որ կայր, և մինչև ցփողոցն նորուն: Զայս զանգս լուեալ թագաւորին բարկանայր ընդդէմ Մակեդոնի և վասն կորուսելոցն, և զի զմարմին հաւրն նորա շարժել արտաքոյ կամաց նորա յանդգնեցաւ: Թողեալ ապա զարևմտայինսն կողմանցն հոգալ Յուլիանոսի, ինքն յարևելս կոյս գընայր, որպէս զի ապա Մակեդոն յետոյ անկաւ, դոյզն ինչ փոխանակ այսքան չարեաց զայս տալով դատաստան զոր յետոյ ապա ասացից:

## ԳԼ. ԼԹ. 1

Բայց յաղագս երկրորդ ժողովոյն որում ընդդէմ Արիմինոնի ժողովոյն ըստ արևելից լինել հրամայեաց թագաւորն, այժմ պատմեցից: Ընդունելի լինէր նախկի Նիկոմիդիայ Բիւթինւոյ զեպիսկոպոսունսն ժողովել, իսկ անդ զնոցայն մուտ էհատ շարժն մեծ եղեալ ի վերա յորմէ և պատահեաց Նիկոմիդացեացն քաղաքին անկանել:

ա διχονοούντων կրկնակի խորհողացն:

1 Տես Սոզոմ. Դ. 16 22. Թէոդոր. Բ. 27. Լուկա Ս Վ Բ 42. Նիկիփ. Ը Թ. 43. Փիլոստ. Դ. 10. 11.

եկեղեցւոյն լնոյր արեամբ սպանելոցն. ա Զայս լուեալ թագաւորին բարկացաւ ի վերայ նորա, բ որպէս ի վերայ մահապարտի, և զի առանց նորա փոխեաց զապաւնն, և առաքեաց ընկենուլ զՄակեդոն յաթոռոյն, և մերժել զնա որպէս դատապարտեալ

ա. Ա՝ սպանանելոցն Դ. սպանողաց. բ. Ա՝ ի վերայ Մակեդոնին:

Այս եղև առ հիւպատոսաւքն Գրատիանոսի և Կե-
ռաղիոսի քսան և ութն սեպտեմբերի ամսոյ. խորհէին
այնուհետև փոխել զժողովն ի հուպն ի նա ի Նիկիայ.
բայց այս առժամայն ոչ թուեցաւ, այլ ի Տարսոն Կիւղի-
կեցւոց թուեցաւ ժողովիլ: Այլ և ոչ այսուրիկ եղելոյ
հաճոյ ի Սելևկիայ Սաւռուոյ ^ա ի կոչեցեալն Տռաքիայ ^բ ժո-
ղովեցան. իսկ զայս ի նմին ամի արարին առ հիւպա-
տոսաւքն [1] Եւսեբիոսի և Իւպատեայ. և էին ժողովեալքն
թուով հարիւր և վաթսուն:[2] Էր ընդ նոսա մին յա-
քեղականաց առ Թագաւորն ^գ Ղէոնաս անուն, որոյ առա-
ջի դնէր զյաղագս հաւատոյն խնդիր Թագաւորին ասէր.
հրաման հրամայեալ լինէր գալ և Ղաւռիկիոս որ ըստ
Իսորոց ^դ զաւրականացնառաջնորդ, սպասաւորելով պի-
տոյից եպիսկոպոսաց: Առ այսուիկ ժողովեալք ի ԻԷ
Սեպտեմբերի ամսոյ հրապարակաւ խաւսէին. քանզի առ-
ընթեր էին. և երագագրաւղք զառ ի յիւրաքանչիւրոցն
ասացեալս նշանակել, յորոց ըստ իւրաքանչիւր ուրուք
ի ժողովուն զՍաբելլինն ^ե խնդրեսցեն ուս(ու)մնասիրու-
թիւն ի ձեռն երկայնագունից եղեալ. բայց մեք ի գլու-
ալըն միայն եղեալ ընթացեալք դիցուք: Յառաջնում
աւուր ժողովեցելոյն Ղէոնաս զիւրաքանչիւր ուրուք
զթուեալսն առաջի դնել հրամայէր, բայց որք մերձն
ոչ ասացին շարժել խնդիր ինչ յառաջ քան զժողո-

ա. Ἰσαυρία.
բ. Τραχεῖα.
գ. Յն. Այր մի ծանօթ ի պ'' լատան արքայական:
դ. Առաջնորդ զօրացն Իսաւրիոյ:
ե. Σαβίνου

1 Փրկ. 359 Թ.
2 Թէոդորիտը ժողովականների թիւը 150 է տալիս.

վել պակասեցելոցն․ քանզի էին պակաս եպիսկոպոսունքն[ա]։ Մակեդոնիոս յախտ անգեալ պակասիւր, իսկ Պատրոփիլոս աչացաւութիւն առէր, և վասն այսորիկ ի պրռաստին Սիլևկիոյ հարկ լինէր բանակիլ․ իսկ յայլոցն յիւրաքանչիւր ոք պատճառ ինչ վերջացելոյն նախակարգէին։ Եւ վասն զի սոցա ոչ եկելոց, Ղէոնաս առաջի դնել պատրաստէր զխնդրոյն իւրս, որք առընթերն առժամայն ճեպէին, իբր զի ոչինչ շարժեսցեն խնդիրս, եթէ ոչ նախ վարք ամբաստանելոյն[բ] զննեսցին։ Քանզի ամբաստանեալք լինէին յայնժամ նախկին Կիւրիղոս Երուսաղէմի, Եւստաթէոս Սեբաստիոյ Հայոց և այլս ոմանս։ Ցայսմանէ վիճաբանութիւն յորս առընթերն անկաւ․ քանզի ոմանք զվարս ամբաստանելոցն յառաջ քննել առէին, իսկ այլք զյաղագս հաւատոյն առաջի դնել խնդիրս։ Բայց շարժէր զվէճն յոլովն Թագաւորին կամք, քանզի թուղթ նորա բերիւր յառաջագոյն․ այժմ վայս նախկին խնդրել հրամայելով, և այլ ժամ՝ զմիւսն։ Եւ յաղագս այսորիկ վիճոյն ձգտեցելոյ հերձուած յոր առընթերն մտանէր։ Եւ այս եղև սկիզբն պատճառոյ, և զՍելևկիոյ ժողովն յերկուս պատառեալ մասունս․ և

ա․ Թարգմանությունը թերի է, բաց է թողած Մակեդոնի և Բազսեղ Անկյուրիայի եպիսկոպոսների անունները, որ կայ էջ 196 ում։

բ․ ըստ բն․ ամբաստանելոցն։

և արժանի մահու։ Եւ նա ի նիհարութենէն սրտնեղեալ[ա] յախտ մահու անկեալ, սատակեցաւ չարաչար․ և առաց ամենայն ոք՝ եթէ է Աստուած որ դատեաց" զնա յերկրի․ սակայն զսերմն չարին հոգեմարտութեան եթող ի խորհրդականս իւրոյ անաստուածութեան։

ա Գ․ եւ նային արհամարհութենէն Ա՛ եւ նա արհամարհութիւն ի նեղութիւն․ Դ․ եւ նա յարհամարհութենէն նեղեալ, Բ․ Ն․ որ դատի։

համարեալ լինէին մին կողմանն Ակակիոս Կեսարւոյ որ ի Պաղեստինն, Գէորգիոս Աղէքսանդրւոյ, Ուրանիոս[աւ] Տիւրոսի, Եւդոքսիոս Անտիոքայ, որոց ԼԲ միայն յայլոցն ընդերէին։ Իսկ միւսոյ Գէորգա Լաւոդիկեցւոյ որ յԱսորիսն, Սոփրոնիոս Պոմպիուպոլսի Պեփղագոնացւոյ, Եղեւսիոս Կիւզիկոնի որոց հետևէին բազումք։

Եւ մինչդեռ ունէր խնդրիլ նախկին յաղագս հաւատոյն, որք կողմանն Ակակայ. զՆիկիոյն հաւատ յայտնապէս արհամարհեցին, այլ իմն հաւատ ի մէջ բերեալ աւրինակէին։ Իսկ միւսոյ կողմանն որք Թուովն աւելագոյնք, զամենայն զՆիկիոյ հաւատոյն ընդունէին բայց միայն զհամագոհութիւնն պարսաւէին։ Բազում ինչ ասացա մինչև ցանագանալ երեկորին առ միմեանս յաղագս այսորիկ մարտուցելոց, յետոյ Սիղբանոս Տարսոնի եկեղեցւոյն առաջնորդ մեծամեծս գոչէր. ոչ պարտ լինել ասելով կարգել նոր գիր հաւատոյ, այլ զոր յայնժամ նախկին յԱնտիոքիայ ի նաւակատիսն կարգեալ, զայն պարտ է ընդունել։ Սորա ասացեալ զայս ոյք Ակակայն ելին։ Իսկ միւսոյ կողմանն բերեալ զհաւատն Անտիոքայ և ընթերցեալ լուծին յայնմ աւուր զժողովն։ Եւ զնոյնհետայն ի Սելեւկիոյ եկեղեցին մտեալք և փակեալ զդրունսն զընթերցեալն հաւատ ենթադրելով հաստատէին։ Ստորագրէին և սակս պակասիցն ոմանց առընթէրքն ընթերցաւղք և սարկաւագունք, ի ձեռն որոց պակասքն հաստատեալ զաւհման հաւատոյն խոստովանեցան։

Գ.Լ. Խ.[1]

Բայց Ակակիոս և ոյք նորա կողմանն զեղեալսն

1 Տես յիշեալ տեղերը։

պարսաւէին եթէ զեկեղեցին փակեալք ենթադրէին. քանզի ասէ որ ի բռնադատանաց եղեալն անփորձ է և կասկածանաւք լի։

Զայս ասէր կամելով այլ կարգադրութիւն հաւատոյ փոխանակ մուծանել, զորս ունելով պատրաստ ընթեռնոյր իշխանացն Լաւոդիկիոսի և Դէոնասայ, զի միայն զայն ընդունել փութայր։ Բայց այսոցիկ աւելի ոչինչ յաւուրն երկրորդի եղև. իսկ յաւուրն երրորդի Դէոնաս զկողմունսն ժողովեալ փութայր, ըստ որում ոչ պակասեաց Մակեդոնիոս Կոստանդնուպաւլսի այլ և ոչ Բասիլ Անկիւրիոյ։ Եւ զի ապա որք միւսոյ կողմանն յայս ժողովեցան, անդէն որք Ակակայն պատահեալ ոչ կամէին ասելով պարտ լինել ի ժողովոյն զյառաջագոյն ընգեցեալսն և զառժամայն ամբաստանեալսն. իսկ վիճեցելոց, այս մանաւանդ եղև ընգալեալ, և լինի պատճառուն հանդիպեալքն, և փոխանակ մտին որք Ակակայն։ Յայնժամ ապա Դէոնաս գիրս ասաց տալ նմա յորոց Ակակայն թագուցեալ իբր թէ հաւատոյն հրաման իցէ այսորիկ եկելոյ։ Իսկ այսորիկ և յայտնապէս մարտուցելոյ յառաջացելոցն, որպէս զի որք առընթեր լռեցին, այլ զի առաւել հաւատոյ ինչ իւս ունել զգիրսն կարծեսցուք. այսքան և Ակակայ հաւատոյն շարակարգութիւն հանդերձ յառաջաբանաւքն եղև ընթերցեալք, զայս ունելով աւրինակ հաւատ ոյոց Ակակայն։

«Մեք ժողովեալք ի Սելևկիայ Սաւռիոյ թագաւորա-
«կան հրամանաւ յերեկեան աւուրն, որ էր յառաջ քան
«զհինգ կաղանդացն Ոկտոբռի, և զամենայն զփոյթ մու-
«ծաք ամենայն բարեկարգութեամբ զխաղաղութիւն
«եկեղեցւոյ պահել և յաղագս հաւատոյն բարէկացա-
«բար ընդունել, որպէս և հրամայեաց աստուածասէրս

«մեր Թագաւոր Կոստանդիոս ըստ մարգարէական ձայ-
«նից, և ոչինչ արտաքոյ աստուածային գրոց մուծա-
«նել յեկեղեցական հաւատ։ Բայց վասն զի ոմանք ի ժո-
«ղովոյն զոմանս ի մէնջ Թշնամանեցին, իսկ զայլս ար-
«գելին ակամայս, իսկ զընդդիմացեալսն ի յոլովից նահան-
«գաց ունէին ընդ ինքեանս, և զարտաքոյ կանոնին կար-
«գողն ածէին առ իւրեանց, որպէս զի ամենայն ուս-
«տեք ի խռովութիւն գոլ առէին, ա որպէս և պայծա-
«ռացեալսս Կոմսք Գէոնաս և Լաւռիկիաս առաջնորդ
«աշխարհիս յանդիման անսլեամբ ընդալան, այսորիկ
«սակս խաւսք իմ զայս։ Որպէս զի ոչ Թէ փախչիմք
«յեղեալ տանուտէրականն հաւատոյ, զոր ի Նաւակա-
«տիսն Անտիոքայ եդեալ, որ Թէ մանաւանդ և հարքն
«մեր յայնմ ժամանակի առ ենԹակացեալքն խնդրոյն
«ընԹանային։ Վասն զի զբազումս ամբոխեաց համագո-
«յուԹիւնն և նմանագոյուԹիւն յանցեալսն ժամանակս
«և մինչև ցայժմ, այլ և արդ որպէս ասի նորա հա-
«տիլ յոմանց աննմանուԹիւնն Որդւոյ առ Հայր. յա-
«ղագս այսորիկ զհամագոյուԹեանն և զնմանագոյուԹիւնն
«ի բաց հանեմք որպէս զաւտար գրոց։ Իսկ զաննմանն
«նզովեմք և ամենեքեան որք այսպիսիս հանդիպին աւ-
«տարըս համարիմք եկեղեցւոյն. իսկ զնմանուԹիւն Հաւր
«առ Որդի յայտնաբար խոստովանիմք ըստ առաքելոյն
«ասելոյ, որ պատկեր Աստուծոյ աներևոյԹի և հաւա-
«տամք և խոստովանիմք»։ [1]

Իսկ ընԹերցելոյ Սոփռոնիոս Պամպիուպոլսի Պեփ-
Ղագոնիոյ եպիսկոպոսի, այսպիսի բանիւք վերագոչեաց.

ա. Զեռ. ռնի . ատէին . բ. Κόμης.

[1] Շարունակութեան մէջ դրած է նոյն ժողովի հայրերի հաւատոյ հա-
[illegible]անքը. որ Թարգմ. բաց է Թողել

«եթէ զհանապազաւր առանձին ընել խորհրդաւք հաւատոյն լինիցի գիր, պակասէ ի մէնջ ճշմարտութեանն ստուգութիւն»։ Զայս Սոփրոնիոս ասաց, բայց ես ասեմ, որպէս զի թէ իսկզբանէ այսպիսս որք յաղագս Նիկիոյ հաւատոյն ոյք յառաջ քան զնոսա, և որք յետոյ նոցա իմացեալ էին, դադարեալ էր արդեւք ամենայն վիճական խնդիրն, և ոչ արդեւք զեկեղեցին անիրաւի էր կալեալ խռովութեան։ Այլ որպէս ունի զայս դատեսցեն կարողքն իմանալ զայս։ Իսկ յայնժամ բազում ինչ առ միմեանս յաղագս այսորիկ և սակս ամբաստանելոցն ասացեալք և լսեալք արձակէին։ Իսկ ի չորրորդում անդէն աւուրն ժողովէին ամենեքին ի նոյնն, և անդէն վերստին շարժէին հակառակաբանութեամբ զբանսն, որովք Ակակիոս այսպիսս ըստ բանի էմոյծ խաւսս։ Եթէ միայնգամայն հաւատն Նիկիոյ փոխեալ եղև և յոլով անգամ, յետ այսորիկ ոչինչ արգելու և այժմ այլ կարգել հաւատ։ Առ այսորիկ Եւսեբիոս Կիւզիկոնի եպիսկոպոս այսպիսի ասաց. Ժողովս ընգալեալ եղև այժմ, ոչ զի ուսցի զոր ոչն ուսաւ, և ոչ զի հաւատ ընգալցի, զոր ոչն ստացաւ. այլ հարանցն հաւատով բաւականացեալ մինչև ցկեանս և ցմահ ոչ արտաքակաի։[ա] Այսոքիւք և Եւսեբիոս առ Ակակեայն պատահեցաւ բանս զհաւատ հարցն յԱնտիոքա եդեալ կոչելով ի հակառակութենէ, իսկ թէ հակառակքն, և առ այս զի՞արդ զորս յԱնտիոքա եկեալսն հարս կոչես Եւսեբէ, որոց և նոցա զհարս ուրացեալ։

Քանզի ի Նիկիայ ժողովեալքն և զհամագոյութիւնն հաւատով համաձայնեալք տիրագոյն արդեւք հարք էին ասացեալքն, և ի վերանալ ժամանակացն, և զի արդ

ա. ἐξίσταται յետս կացցի։

եղեալքն յԱնտիոքիայ ի նոցանէ ի քահանայութիւնն կարգէին։ Իսկ թէ ուր յԱնտիոքիայ զիւրեանց զհայրն արհամարհեցին. լուծին զինքեանս ուր յետ այսորիկ հայրալուծիւքն խաւսեցեալքն։ Իսկ զիա՞րդ զորոց հաւատ նոքա որպէս անփոյձ արհամարհեցին, զնոցունց ձեռնադրութիւնն որպէս զփոյձ յանձն առին. իսկ թէ նոքա զհոգին ո՛չ ընդունէին, և ոչ սոքա զքահանայութիւնն առնէին. քանզի զիա՞րդ առնուին յոչ ունողացն զառուեալն Հոգի Սուրբ։ Այսպիսիս ինչ թերևս ընդդիմադրիցէ առ Ճառեալսն Ելևսիոսի։ Իսկ յայնժամ անդէն ի միւս այլն եղեն տարբեալ խնդիր. քանզի ուր Ակակայն և յընթերցելումն հաւատուն նման զՈրդի Հաւր ասացին և հարցանէին զմիմեանս զըստ որում նմանին Որդի Հաւր։ Եւ ուր Ակակայն ասէին ըստ խորհրդոյ միայն, և ոչ և ըստ էութեան ասացին Հաւր նման լինել Որդւոյ. իսկ այլքն ամենայն և ըստ էութեան ասացին։ Եւ վասն այսորիկ վիճէին զերկուս աւուրս.[ա] և զորս Ակակայն յանդիմանէին. որպէս զի թէ ի բանսն իւր զորս շարագրեացն և էետ նման ըստ ամենայնի ասացեալ զՈրդի Աստուծոյ։ Եւ զիա՞րդ, ասեն, ուրանաս այժմ զըստ էութեան Որդւոյն առ Հայր նմանութիւն, ոչ ի շարագրեցելոց ասաց, և ոչ նա։ Բազում ինչ առ միմեանս յաղագս խնդրոյս այսորիկ ատուգաբանեցելոց և ոչ ուրեք համաձայնեցելոց, Ղէոնաս յարուցեալ արձակեաց զժողովն։ Եւ զայս ունէր կատար ի Սելևկիայ եղեալն ժողովն, քանզի ի վաղիւն աղաչել ոչ ևս յայս ժողովել նոցա կամեցաւ. ասաց առաքիլ ի թագաւորէն առընթեր լինել ժողովոյն համաձայնութեամբ, բայց

ա. Բն. ἐνδιημὲρευον· անցուցանէին զօրն ողջոյն:

վասն զի ոմանք պատառեցան այսորիկ աղագաւ ոչ կամիմ գալ, երթայք այսուհետև և յեկեղեցւոջն լեզուագրեցարուք ա։

Այսորիկ եղելոյ, ուրոց Ակակայն գիւտ զայս համարեալ, և ոչ նոքա պատահեալ կամեցան։ Իսկ միւսոյն կողման խղճացեալ, և ժողովեալ կոչէին յեկեղեցին զորս Ակակայն առ ի դատել զորս Կիւրղին ըստ Երուսաղէմացեացն եպիսկոպոսին. քանզի գիտելի է զի Կիւրղոս նախկին ամբաստանիւր, իսկ թէ ընդէր, ոչ ունիմ ասել. բայց նզովեցաւ զի բազում անգամ կոչեցեալ առ ի դատիլ զնոյն հետայն երկուս ամս ի փախստի եղեւ յամբաստանութեննէն երկուցեալ։ Բայց նզովեալ սակայն թուղթ առ նզովիչսն առաքէր զմեծագոյնն կոչեաց ատեան, որոյ խոստոյման և թագաւորին եղև ընտրակից։

Արդ զայս նախ միայն անսովորականաւ եկեղեցական կանոնաւն Կիւրիղոս արար. կոչէր յուրս որպէս ի դատարանի հպեալ, իսկ յայնժամ ի Սելևկիայ էր դատեցեալ։ Եւ սակս այսորիկ եպիսկոպոսունքն զորս Ակակայն կոչէին, որպէս փոքր ինչ յառաջն յիշեցի, որպէս զի արդեւք յամբաստանեցելոցն ծանուցեալք զհասարակականն արտաքսաքերեսցեն ընտրութիւն. քանզի կոչէին և զայլս ոմանս յամբաստանեցելոցն, որք առ Ակակայն ապաւինեցան։ Եւ զի ապա բազում անգամ կոչեցեալք ոչ պատահեցան, ընկենուին և զինքեանն Ակակիոս և զԳէորգ Աղէքսանդրացւոյ, զՈւռանիոս Տիւրոսի, զԹէոդուլ ի Քեռէտապոնի Փռիւգիոյ, զԹէոդոսիոս Փիլադելփիոյ ի Լիւ[ի]դայ, զԵւագրիոս Միւտիլինեայ կղզոյն, զՂէոնտիոս Տրիպոլսի Լիւդիոյ, բ և զԵւդոք-

ա· φλυαρεῖτε.
բ· Μιτυλήνη·

սիոս որ նախ Գերմանիկեայն և ապա զԱնտիոքա Ասորեաց զեպիսկոպոսութիւնն ընգալաւ. Նզովէին և զՊատրոփիլոս, զի և նայ ի Դոռոթիոսէ քահանայէ ամբաստանել կոչեցեալ ոչ եղև լսաւղ։ Զորս ապա նզովէին. բայց անհաղորդս առնէին զԱստերիոս, զԵւսեբիոս, զԱւգառոս.[ա] զԲասիլիկոս, զՓիբոս, զՓիդիղեոս,[բ] զՄագնոս, և զԵւստաթիոս, սահմանեալք այսպէս կալ մնալ մինչև պատասխանեալք զամբաստանութիւնն արձակեացին աստանաւր։ Զայս գործեցեալք և ի ձեռն թղթոց զորս յաղագս նզովեցելոցն նոցաոցն պանդխտականաց ծանուցեալք, կարգեն ի տեղւոջն Եւդոքսիոսի Անտիոքացեացն եպիսկոպոսին զԱնանոս անուն, զոր ըմբռնել ոլոց Ակակայն էտուն Ղէոնասն և Լաւռիկկիոս, իսկ նոքա զնա արտաքսեցին։ Այսուիկ եղելոյ, ոլոց Անիանոսին կարգող եպիսկոպոսունք վկայութեամբ հրպէին հակառակ ոլոց Ակակայն առ Ղէոնաս և Ղաւռիկկիոս. Ի ձեռն ոլոց անեբաւիլ ի ժողովոյն իւրաւունս ազգեցին։ Բայց իբրև ոչինչ առաւել լինէր, ի Կոստանդնուպաւլիս դիմեցին առ ծանուցանել թագաւորին զպատեցեալսն ի նոցանէ։

### Գ Լ. ԽԱ.[1]

Քանզի եկեալ էր յարևմտից կողմանց թագաւորքն դարձեալ, և յայնժամ նախ եպիսկոպոս կարգեաց Կոստանդինուպաւլսի զՄոռատոս անուն, զընդդիմահիւպատոսութեանն զաղարեցուցեալ զիշխանութիւնն.

ա. 'Αβγαρος Ձեռ. ունի Զեւսեբիոս, զԱւգառոս:
բ. բաց է թողած բնագրի «Ծւտիքիոս» անունը:

1 Տես Սոզ Դ. 23. Թէոդ. Բ 27. 28. Փիլոստ. Դ. 11. 12. Սոկր. Սեվ Բ. 45. Նիկեփ. Թ. 44.

*իսկ հասեալք ուր Ակակայն մատնեն զնոսա թագաւորին ուսուցեալք, մի ընդունել զառ ի նոցանէն եղեալ հաւատ։ Յաղագս որոյ ցասուցեալ թագաւորն խորհեցաւ ցրուել զնոսա, աւրինաւք հրամայեալ զորս ընդ իշխանութեամբն ի նոցանէ հարկացն պատշաճամբ խուլուձն տալ հանդիպմամբ. քանզի ոմանք ի նոցանէ պաշտամամբ ենթակացեալք. ոմանք խորհրդականացն, իսկ այլք նահանգացն կարգաց։ Այսորիկ այսպէս խառնակելոց ուր Ակակայն ի Կոստանդինուպոլսի այլ նստուցին ատեան, զԲիւթինուոյն կոչեցեալք եպիսկոպոսունք։[1] Եւ եղեալք ապա ամենայնքն թուով ծ[2], ընդ որս համարեալ լինէր և Մարիս Քաղկեդոնի, հաստատէին զընթերցեալն յԱրիմինոն հաւատ, զոր աւելորդ արդեւք էր աստանաւր դնել եթէ ոչինչ էին յաւելեալ։ Բայց վասն զի բանս ինչ աւելագրեցին կարևոր է ուրդէն զայն աստանաւր յարադրել։[a] Իսկ զայս յայնժամ ի Կոստանդինուպաւլիս ընթերցան, բայց մեք զթիւն նոցա ժողովեցուք։*

*Քանզի յետ Նիկիոյ ժողովոյն յԱնտիոքիայ էր*

ա. Բնագրում եղած հաւատոյ հանգանակը բաց է թողած. Թարգմանի տգիտութեան փայլուն ապացոյցներից մէկն էլ այս կրճատման եղանակի մէջ է։

1 Կոստանդնուպոլսում տեղի ունեցած երրորդ ժողովն էր, որ սկսուեց 359 թ. եւ շարունակուեց նաեւ հետեւեալ տարին։ Այս անգամ երկու կուսակցութիւն էին իրար դէմ. կիսա—Արիոսներ եւ Աէտիոսի հետեւորդներ. վերջինները յաղթեցին։

2 Ուրիշները 70 են յիշում։

Գլ. ԽԴ.

*Ցուցանի մասնաւոր ժողովոցն թիւ, թէ քանիք են։*

*Բայց պարտ է զթիւ ժողովոցն[a] ասել. Յետ Նիկիոյ սուրբ ա. Ա՛ ժողովոյն.*

ի Նաւակատիսն երկուս գիրս Հաւատոյ կարգեցին. իսկ երրորդ է տուեալն յորոց ի Նարկիսոսէն ի Գաղիա Կոստանդիոսի.[ա] իսկ չորրորդ Նեղոքսին, որոյ Իտաղիայն առաքեալ. իսկ ի Սիռմի[բ] երիս կարգեցին յորոց մինն յԱռմինն ընթերցաւ. իսկ ութերորդ է զոր ի Սելևկիա որք Ակակայն ընթերցան. իսկ յետոյ[1] ի Կոստանդինուպաւլսի յաւելուածովն ընթերցան. քանզի կայ ի Նմա ոչ էութիւն և ոչ գոյութիւն ի վերա Աստուծոյ ասել: Զայս և Ուղփիղաս Գոթաց եպիսկոպոսն յայնժամ Նախկին յանձն էառ: Քանզի զառաջին ժամանակն զՆիկիոյ Հաւատն ողջունէր ասացեալ Թէոփիլոսի, որ Գոթացն եպիսկոպոս գոլով ենթադրեաց. այսքան վասն այսորիկ ասացաւ:

ա. Ի ժամանակս Կոստանդիոսի Թագաւորի:
բ. Ձեռ. ռմի Տիւռմի:

1 Աթանասը յիշում է իր «Վասն ժողովոց»-ի մէջ այս տաս ժողովը, բայց աւելացնում է նաև 11-երորդ որ կայացաւ 361 Թ. Անտիոքում:

ժողովոյն, որ ոչ ամենայնիւ ըստ Նոցա սահմանադրեցին զՀաւատ և զկանոն. երկուս յԱնտիոքայ[ա] Նաւակատիս, երկուս գիրս Հաւատոյ եդին. իսկ երրորդն ի Գաղիայ՝ ի Կոստա ժողով, որ զԱթանաս և զՊօղոս դարձուցին, յորոց ի Նարկիսոսին[բ] է խորհուրդ. իսկ չորրորդ Նեգոքսին որ յԻտալայն առաքեալ եղեն[գ] ի Թագաւորէն ժողով. իսկ ի Սերմի[դ] երիս կանգնեցին ժողով, յորոց մինն Առիմինոյն[ե] ընթերցեալ. իսկ ութերորդ որ ի Սելևկիայ որք Ակակայն են ընկեցեալ Հաւատ. իսկ իններորդ զոր ի Կոստանդնուպօլիս, զոր յաւելուածով ընթերցեալ. որ կայր ի Նմա, ոչ էութիւն և ոչ գոյութիւն ի վերայ Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ ճշմարտապէս խոստովանէին.

բ. Ա՝ Անտիոքայ. Թ. եւ զկանոն: ԵԱնտիոք Նաւակատիս գիրս Տաւատո եղին. բ. Բոլ. Ձեռ. ի Նարկիոսէնէ. գ. Ա՝ եղեւ. դ. Ն. Սեռմի. ե. Բոլ. Ձեռ. առ միոյն:

## ԳԼ․ ԽԲ․ [1]

Բայց [ա] գիտելի է զի ոչինչ այլքն յաղագս կրաւնից, այլ ի ձեռն այլ պատճառոյ ընդոմն առնէին։ Քանզի խղճացեալք յաղագս հաւատոյն ի Նզովելն զմիմեանս և զհաւատն, զմիմեանս ոչ անգոսնէին․ զուգահպեալք ույք Ակակայն Թագաւորին բարկութեամբ, որ հակառակ այլոց և մանաւանդ ընդդէմ Մակեդոնի պահելով կատարեալ փութայր, Նզովեն նախ զՄակեդոն, որպէս զպատճառս բազում սպանութեանց եղեալ, և որպէս զի զսարկաւագ ոմն ի պոռնկութեան ըմբռնեալ ի հաղորդութիւնն ընդունել․ Իսկ զԵլևսիոս Կիւզիկոնի, քանզի զՀեռակլէոս քահանայ Հեռակլեայ որ ի Տիւրոս․ [բ] ի կախարդութեան ի քահանայութիւն ըմբռ(ն)եալ, մկըրտեալ ի սպասաւորութիւն կարգէր․ իսկ զԲասիլիոս որ և Բասիղոս, քանզի և այսպէս անուանէր, Անկիւրայոյն ի տեղւոջն Մարկեղոսի կարգեալ, որպէս զի անիրաւաբար զոմանս տանջեալ, և կապանաւք երկաթեաւք ի բանտ արկեալ, և իբր զի զրպարտութիւն ինչ յարմարեաց, նաև զի ի ձեռն Թղթոց զԱփրիկեայ զեկեղեցիսն խռովեցոյց, իսկ զԴռակոնտիոս [գ] զի ի Գաղատեայ փոխեցաւ

ա․ Բնագրից երեք տող բաց է թողել թարգմանը։

բ․ τοῦ ἐν Τύρῳ Ἡρακλέους. Ձեռ․ ունի․ «քանզի զհարկողսն քահանայի ռակղոյ ի կախարդութեան․ բաւական աղջատուած ընթերցուածը։

գ․ Ձեռ․ զԴռակոնտիոս։

1 Տես Սոզոմ․ Դ․ 24 25 Փիլոստ․ Ե․ 1․ Սուլպ․ Սեվ․ Բ․ 45․ Կաս․ Ե․ 98․ Նիկեփ․ Թ․ 45․

Բայց զՄակեդոն Նզովէին, որպէս զբազում մահուց [ա] պարտաւոր [բ] և զի զսարկաւագ ոմն ի պոռնկութեան գտեալ, ոչ որոշէր․ զորոյ [գ] յառաջագոյն զմահու ասացաք․

ա․ Ա՝ մահու․ բ․ Դ․ զբազում պարտաւոր․ գ Դ․ զորս․ Դ․ զորս։

ի Պետգամոն։ Ընգէնուին և զՆէոն Սելևկոյ, յորում ժողովն եղև, ևս և զՍոփրոնիոս Պոմպիւպոլսի Պեփղագոնւոյ, և զԵղպիդիոս Սատաղացեացն ¹ որ ի Կապպադովկիայ ա և զԵրուսաղէմացեացն Կիւրիղոս․ զայս վասն այլ պատճառոյ հանէին։

Գ․Լ․ ԽԳ․ ²

Քանզի Եւստաթիոս Սեբաստացւոյ Հայոց և ոչ ի պատասխանատուութիւն եղև ընդալեալ, վասն զի յԵւղաղիոսէ ի հայրէն իւրմէ և եպիսկոպոսէն Կեսարու Կապպադովկիոյ յառաջագոյն նզովիւր, վասն զի անպատշաճ քահանայութեանն հանդերձ ագանէր։ Բայց այս գիտելի է․ զի ի տեղւոջն Եւստաթայ Մեղիտոս կարգեցաւ եպիսկոպոս, վասն որոյ սակաւ ինչ յետոյ ասասցուք։ Իսկ Եւստաթիոս և յետ այսորիկ յորում սակս նորայ եղելումն ժողովն ի Գանգրա Պեփղագոնիոյ դատապարտեցաւ, վասն զի յետ նզովելոյն զնա ի Կեսարւոյ

ա․ τῆς Μακεδονίας.

1 Վալեզիոսը իւր ծանօթութեան մէջ նկատում է․ Սատալան Հայաստանի քաղաք էր եւ շատ անգամ յիշւում է հին հեղինակների կողմից․ մինչդեռ այդ անունով քաղաք Մակեդոնիայում յայտնի չէ․ ուստի առաջարկում է Մակեդոնիայի տեղ Հայաստան դնել։ Մեր ձեռագրի ընթերցւածութիւնը «որ ի Կապպադովկիայ» բոլորովին․ որ ի Մակեդոնիայ» անկասկածելի է կացուցանում համեմատելով մեր նախորդութիւնը․

2 Տես Սոզոմ Դ 2․․ 25․ 26․ Կասիոդ․ Ե․ 39 Նիկ․ Թ․ 45․ 46․

Լինի ժողով ի Գանգրիայ վասն Ստաթէոսի, ա որ զամուսնութիւն արգելոյր, և զմիս ուտել բ պիղծ ասէր, և զբազումս

ա․ Դ․ Եւստաթէոսի․ Բ․ Ստաթէի․ բ․ Ա՛ միս ուտելն․

ժողովուն բազումս ինչ առ եկեղեցականսն տպաւորմունս գործէր։ Քանզի զամուսնանալ արգելոյր և ի կերակրոց ի բաց կալ աւրինադրէր. և այսօքիւք զբազում ամուսնացեալս ի զուգաբնակութենէն որոշէր, և զեկեղեցիսն թողեալ ի տունս տայր առնել հաղորդութիւն, և զծառայս ձևով աստուածպաշտութեան ՚ի տերանց մեկնէր։ Ինքն զիմաստասիրի ունելով զձև և հեծեաւղացն իւր աւտար պատմուճանի տայր հպել, և զկանայս կտրել յադարէր, և զումանս որոշեալս ի պահս խախտէր, իսկ ի տէրունականսն պահել ուսուցանէր, և ի տունս ամուսնացելոցն աղաւթս առնել արգելոյր. և քահանայ որ կին ունէր յոր աւրինաւք ժողովրդականութեանն եղեալ լինէր յաւրհ(ն)ութենէն և ի հաղորդութենէն որպէս ի պղծոց խոտորեալ հրամայէր։ Եւ այլս բազումս հուպս առնելով և ուսուցանելով նորա, ժողով որպէս ասացի ի Գանգրա Պեփղագոնիոյ [1] եղեալ, զնա ընդեաց, և զաղանդն նորա նզովեաց. այս յետոյ եղև։

1 Այս ժողովի ժամանակը ճիշտ յայտնի չէ. նրա մէջ ի միջի այլոց, որոշուած է մի թուղթ գրել Հայոց եպիսկոպոսներին. Եւսեբիոսի. Հերակլատիոսի. Եւլալիոսի. Գրիգորիոսի. Էլիանոսի եւլն. եպիսկոպոսների կողմից. որի պատճէնը կայ. Ենթադրութեամբ ժամանակը որոշւում է մօտաւորապէս 361 կամ 362 թ.

որոշէր ի մսակերաց և յօրինաւոր ամուսնացելոյ. [ա] զեկեղեցիս թողեալ ի տունս կատարէր [բ] զխորհուրդն, և զծառայս [գ] մեկնէր ի տերանց՝ պատճառով աստուածպաշտութեան, և կանանց զհերս կտրել, [դ] և ի տունս [ե] տէրունականս պահել, և ի տունս ամուսնացելոց ոչ [զ] աղօթել. և քահանայ որ կին ունի խորշիլ ի նմանէ

ա. Դ. ամուսնաւորաց. բ. Դ. կատարեալ. գ. Ա՝ ծառայս. դ. Գ. կտրեալ. ե. Նոր. սրբագրում է «ի տօնս». զ. Գ. օթել։ եւ աղօթել. Դ. ոչ պահել եւ կամ օթել.

Իսկ յայնժամ Մակեդոնի արտաքսեցելոյ Եւդոքսիոսի կրկնակի զԱնտիոքայն եղեալ աթոռ, Կոստանդնուպաւլսի ցուցանիւր եպիսկոպոս, որոց Ակակայն ձեռնադրեցելոյ զնա։ Որք մոռանային զինքեանս ընդդէմ աւրինադրելով որոց ի նոցանէ դատեցելոց։ Քանզի զԴռակոնտիոս^ա ընկեցեալք վասն զի ի Գաղատւոյ փոխեցաւ ի Պերգամոս, ոչ համարէին, զի զԵւտիքիոս երկրորդ յայնժամ արարեալ սփոփումն ձեռնադրեալք, զհակառակսն ընտանին աւրինաց գործէին զայս արարեալք. իսկ ընթերցեալն յԱռմինոն եղելոցն յաւելուածով, որպէս զի ուղղեալք առաքեցին պատուիրելով զոչսն ստորագրաւղս ի նմա էքսորել ըստ հրամանի թագաւորին։ Բայց ծանաւթս կարգեն զառ ի նոցանէ գործեցեալն այլց ըստ արեւելից համափառացն և Պատռոփիլոսի ի Սկիւթիոպաւլսի, քանզի սա ի Սելեւկիոյ յընտանին դիմեաց քաղաք։ Իսկ Եւդոքսի յայտնեցելոյ եպիսկոպոս մեծիս քաղաքի, այսքան և մեծս եկեղեցիս որ Սոփիս անուանեալ նորոգեցաւ^բ ի հիւպատւոջն Կոստանդիոսի տասներորդին, և Յուլիանոսի երրորդին տասն և հնգին Փետրուարի ամսոյ։[1] Բայց Եւդոքսի նըստեալ յաթոռն նախ զայս զբաղմամբոխս էթող զձայն ասելով. Հայր ամպարիշտ, Որդի բարեպաշտ։ Իսկ խռովութեան և աղմկի առ այս եղելոյ, մի ինչ ասէ Եւդոքսիոս խռովիք առ ի ճառեալսս յինէ(ն), քանզի Հայր

ա. Δρακόντιος. Ձեռ. ունի Դռակոնտիոս։

բ. ἐνεκαινίσθη.

1 Փրկ. 360 Թ.

որպէս ի պղծոյ, զժողովն օրինադրէր. որք ժողովեալ նզովեցին զԵւստաթէոս և զՄելիտիոս Անտիոքայ եկեղեցւոյն ձեռնադրեն, ա

ա. Գ. ձեռնադրեալ են. Դ. ձեռնադրեցին։

ամպարիշտ զի ոչ զոք պաշտէ, իսկ Որդին բարեպաշտ զի պաշտէ զՀայր։ Այսպիսիս ասելով Եւդոքսի խռովութիւնն դադարեաց, և ծաղր բազում փոխանակ խռովութեանն զեկեղեցին ընդունէր. և կայր ծաղրն մինչև ցքան։ ա Զի այսպիսիս իմաստնացեալ հերձուածովքն, և յայսպիսիս պարապել բան զեկեղեցին կորզէին։ Յայնժամ այսպիսի կատար ի Կոստանդինուպաւլսի եկեալն ժողով ունէր։

### ԳԼ. ԽԴ [1]

Բայց ապա արդէն և զօրս յաղագս Մեղիտոսին ծառեցից. քանզի սայ որպէս յառաջն ասացի, որուն ի Հարոն Սեբաստուոյ եպիսկոպոս կարգեցաւ Եւստաթի նզովեցելոյ. իսկ ի Սեբաստիոյ ի Բեռիայ [2] Ասորեաց փոխեցաւ։ Եւ եղեալ ի ժողովուն Սելևկիոյ և ի հաւատուն յորոց Ակակայն ստորագրեալս որպէս կայլն Փ Բեռիան գնաց։ Իսկ եղեալ ի Կոստանդինուպաւլսի ժողովուն որոց յԱնտիոքայն իմացեալ զԵւդոքսիոսի արհամարհեալն զնոցայն եկեղեցի, վասն զի ի մեծութիւնն Կոստանդինուպաւլսի խոնարհեցաւ, կոչեցեալք զՄեղիտոս ի Բեռւոյ բ, յԱնտիոքա եկեղեցւոյն ձեռնադրեն։

ա. ցայժմ:

բ. Նոյն անուան եւ անմիջապէս իրար մօտ, երեք տարբեր ձեւով թարգմանելը բնորոշէ մեր թարգմանի համար. յունարէնում՝ Բեռոյա-է։

[1] Տես Սոզ. Դ. 28. Թէոդ. Բ. 31. Եպիփան. Աղանդ. ՀԳ. 28. Կաս. Ե. 47. Նիկ. Թ. 28. Փիլոստ. Զ. 1։

[2] Եւստաթի տեղափոխութիւնը Հայաստանի Սեբաստիայից Ասորոց Բեռիա քաղաքը անհաւանական է համարում։

որ զսովորական վարդապետութիւն ըստ բարեպաշտութեան վարուց ա ուսուցանէր. իսկ զհաւատոցն բ բան ոչ յայլ ինչ խոտորեալ ի ժողովոյն հաւատ. այլ զՆիկիոյն խոստովանեալ հաւատս։

ա. Դ. վարուցն. բ. Բ. զհաւատոյն. Ա՝ հաւատոյն Ն. զհաւատ։

*Իսկ նայ նախ յաղագս հաւատոյն խոտորէր խաւսել, և միայն զսովորական վարդապետութիւնն լսաւղացն մատուցանէր, իսկ նախակարգեալ զՆիկիոյնս խոս(ո)տովանէր հաւատ և ուսուցանէր զհամագոյութիւնն։ Զայս ծանուցեալ Թագաւորին զՄեղիտոս աքսորել հրամայեաց, իսկ զԵւզոյիոս զնախկին Անտիոքա եպիսկոպոսն ի տեղւոջն նորա ձեռնադրել։ Բայց որք զՄեղիտիանոսի տարահերքութիւնն կրէին, Թողեալք զարիանոսականն հաւաքումն առանձին զժողովսն առնէին, որոց զհամագոյութիւնն խոկրցքանէ խորհողացն ոչ կամեցելոց ընդ նոսա հաղորդիլ. քանզի յարիանոսական աղանդոյն զձեռնադրութիւնն Մեղիտիոսի էր առեալ. և զի նորուն հետևողքն ի նոցանէն մկրտեալք հանդիպէին։ Այսու աւրինակաւ և որ յԱնտիոքիա եկեղեցին յայլ համափառական անջատեցաւ կողմն։*

*Իսկ Թագաւորին լուեալ շարժիլ անդրէն ի Թշնամութիւն Հռովմայեցւոցն Պարսիցն ազգի, փութանակի յԱնտիոքիայ դիմեաց։*

## Գլ. ԽԵ.[1]

*Իսկ Մակեդոնի ի Կոստանդնուպաւլսէ արտաքսե[illegible]լոյ, և ոչ բերելով զդատապարտութիւնն, ոչ երբէք*

1 Տես Սոզոմ Դ. 27 կաս. Ե. 41. Նիկեփ. Թ. 47.

[illegible]կ Թագաւորին[ա] զայս ծանուցեալ առաքէ արտաքսել[բ] զնա [illegible] աքսորս. այլ որք ճշմարտութեան էին նորա աշակերտեալք, [illegible] յիմեքէ[գ] խոտորէին նորա[դ] լուսաւոր վարդապետելոյն.[ե]

ա. Ն. Թագաւորն. Ա' բ. Ա' ծանուցեալ աքտաքսէ. Դ. առաքել զնոսա [illegible]աքսորս. գ. Գ. որոշէին դ, Գ. ի նորա. ե. Դ. վարդապետութենէն, Ա' [illegible]Նիկիայն հաւատ։

լուել յանձն առնուլ, այլ խոնարհլ առ ուս միւսոյն կողման որք ի Սելեւկիայն ընդեցին զուս Ակակայն։ Բարեխառնեալ լինէր և առ Սոփռոնիոս և Եղեւսիոս փոխանակ ընդունել զնախկին յԱնտիոքիա եդեալ հաւատն և զյետ այսորիկ ի Սելեւկիա հաստատեալն, և նշանակաւոր անուամբ զհամագոյութեանն հաւատ վերահռչակեալ յորդորեաց։ Ժողովէին բազումք ի ծանօթից նորա առ նայ, որք Մակեդոնեանոսքն կոչէին ի նմանէ։ Որքան ի Սելեւկիոյ ժողովոյն զԱկակայսն դատապարտեցին, և յայտնապէս զհամագոյութիւնն աւրինադրեցին, նախկինն ոչ պարզաբար ասացեալք գնայ։ Բայց հռչակ իմն ունի ի բազմաց. որպէս զի ոչ Մակեդոնի է այս գիւտ, այլ մանաւանդ Մառաթոնիոսի [1], զոր փոքր ինչ յառաջն ի Նիկոմիդեայն առնէր եպիսկոպոս, վասն որոյ Մառաթոնիանոսս կոչեն զսոսա։ Առ այսոսիկ ապաւինի Եւստաթիոս ի Սեւաստւոյ[ա] արտաքսեալ,[բ] վասն որոյ պատճառաց՝ փոքր ինչ յառաջ ասացի։ Որպէս զի Մակեդոնիոս զՀոգին Սուրբ զուգավերաւիլ[գ] յաստուածաբանութիւն Երրորդութեանն խոտորեցոյց. իսկ յայնժամ և Եւստաթիոս Եւս ասէ, ո՛չ Աստուած անուանել համիմ զՀոգին Սուրբ, և ոչ ստացուած կոչել յանդգնիմ։ Յաղագս այսորիկ պատճառոյս հոգեմարտս զնոսա կոչեն համագոյութեանն խորհողք. որպէս զի ապա որք ի Մակեդոնէն յԵլեսպոնտոս բազմանան, ըստ աշխարհին զայն

ա· Σεβαστία·
բ· Ձեռագրում գրած է Նքտաքսեալ։
գ· συναναλαβεῖν.

1 Մառաթոնիոսի ձեռքով մեծ ջանքով հալածուեցին Կ. Պոլսի Մակեդոնի եւ Արիոսի հետեւողները·

տասցից։ Բայց որք Ակակայն փոյթ դնէին առժամայն յԱնտիոքիա ժողովեալ զղջացեալք զի բնաւ զՈրդի նման Հաւր ասացին։ Եւ զնոյնհետայն ի հիւպատւոջն որ էր Տաւռոսի և Փղոռենտիոսի և եղեալք յԱնտիոքիա Աստրոց Եւզոյիոսի ունելով զեկեղեցին որ անդ. և Թագաւորին անդ լինելով. սակաւք ոմանք վերաշարժէին զկարգեալսն ի նոցանէն ասելով պարտ լինել բառնալ զհամագոյութեանն բանս ի գրեցելոցն հաւատոյ յԱռիմինոն և ի Կոստանդինուպաւլսի. ոչ ևս թագուցեալ, այլ յայտնաբար ասացեալք. զի ըստ ամենայնի աննման զՈրդի Հաւրս, ոչ միայն ըստ գոյութեան, այլև ըստ կամաց, յոչէից գնայ որ զԱրիոս ասէր. և նոքա լինել ասացին։ Զուգառեալք լինէին յայս կարծիս որք յԱնտիոքիա յայնժամ զԱյետին խորհողք. վասն որոյ ունելով զարիանոսականն համանուանութիւն, տակաւին անմանք և յոչէից եղև կոչեցեալք յորոց յԱնտիոքայ որհողացն զհամագոյութիւնն. իսկ անջատեալք եղեն յայնժամ յաղագս եղելոյն պատճառոյ ի վերա Մեղիտիոսի, որպէս և յառաջն ասացի։ Բայց սակայն հարցեալք ի նոցանէ թէ ընդէր կարգադրութեանն ձերոյ հաւատոյն Աստուած յԱստուծոյ զՈրդի ասացեալք. աննման և յոչէից յանդգնին անուանեալ։ Իսկ նոքա այսպիսի իմաստմամբ ձեռնարկէին զընդդիմադրութիւնն մերկացուցանել։ Զի այսպէս, ասեն, ասի յԱստուծոյն, որպէս յառաքելոյն ճառի. բայց ամենայն ինչ յԱստուծոյ, մին այսուհետև յամենեցունց և Որդի է Աստուծոյ և վասն այսորիկ նախակաի ի կարգադրութիւնսն ըստ գրոցն։ Այս իմաստմանց առաջնորդ էր Գէորգիոս Լաւոդիկիոյ եպիսկոպոսն, որ առաջնորդս գոլով այսպիսեացս բանից, անգիտացաւ թէ որպէս զայսպիսիս

առանձնականս առաքելոյն ի վերագոյն ժամանակսն Որիգենի անդորրագոյնն[ա] քննեալ թարգմանեաց։ Այլ սակայն թէ և այսպիսիս ձեռնարկէին իմանալ զնախատինսն և զըստգտութիւնն ոչ բերելով ընթերցան զիւրեանցն հաւատ զոր և ի Կոստանդինուպաւլսի, և այսպէս ըստ քաղաքաց իւրեանց գնացին։ Բայց Գիորգիոս յԱղեքսանդրիա կոյս դիմեալ զորս յայնժամ եկեղեցին ընդունէր, Աթանասայ տակաւին անյայտ եղելոյ և զորս յԱղէքսանդրիա զխորհողսն զնորայն վարէր։ Իսկ յԵրուսաղէմ փոխանակ Կիւրղի ձեռնադրեցաւ Եռինիոս։[բ] Բայց գիտելի է, զի յետ նորա Հերակղ[1] կարգեցաւ և ապա Իղառիոս. իսկ յետոյ Կիւրիղլոս էեղ[գ] յԵրուսաղեմէ և կալաւ զեկեղեցին որ անդր։ Այս որպէս ասացիս յետոյ եղև. բայց յայնժամ և միւս այլ առընթեր բուսաւ հերձուած յայսպիսի պատճառոյ։

Գլ. ԽԶ.[2]

Ի Լաւոդիկիա Ասորոց երկուք արք էին համանունք. վասն զի երկաքանչիւրաբար էր անուն Ապողինառիս հայր և որդի. հայրն զքահանայի ունէր կարգ յեկեղեցւոջն իսկ որդին զընթերցողի։ Եւ երկոքինն էին հեթանոսականացն բանից վարդապետք, քերականացն հայրն, և ճարտասականացն որդին։ Իսկ հայրն Աղէքսանդրացի

ա. Ձեռ. ունի .անդորրագոյնն. πλανώτερον.

բ. Ἀρρήνιος

գ. Փոխանակ .ել.—ἐπέβη.

1 Երուսաղէմի եպիսկոպոս Մաքսիմոսը իւրեան յաջորդ էր նշանակեր Հերակլէն. բայց Արիանոսները յաջողեցին այդ տեղը տալու Կիւրղին.

2 Տես Սոզոմ. Զ. 25. Կասիոդ. Ե. 44. Նիկ. Թ. 7։

զոլով ազգաւ, նախ ի Բերիւթայ[ա] ուսուցեալ[1], ապա փոխեալ ի Լաւոդիկիայ, և կին առեալ անդ, ընդունէր զորդին Ապողինարիոս։ Եւ երկոքեանն յայնժամ լինէին աճեցեալք Եպիփանա իմաստնասիրի մտերիմ եղեալք, սիրելիք ընդունեցին զնա։ Իսկ երկուցեալ Թէոդոտոսի Լաւոդիկիոյ եպիսկոպոսին. զի մի՛ յաճախ խաւսք առնն՝ առ հեթանոսութիւնն խոնարհեցուսցեն, արգելոյր զհըպեալն առ նա. իսկ նոցա փոքր ինչ հող տարեալք եպիսկոպոսին, Եպիփանա սիրոյն ողջոյն տային։ Իսկ յետ այսորիկ Գիորգիոս Թէոդոտոսի փոխանորդն փութացեալ մերժել զնոսա և ոչինչ պատճառով հաւանեցուցեալ կարացեալ, զերկոսինն անհաղորդութեամբ վնասեաց։ Թըշնամանս համարեալ ապա մանգանն զեղեալսն, և վստահանալով ի զաւրութիւն իմաստականին բանից, նորաձևեաց և նա հերձուած որոյ այժմ վերայածի զանուննն ի գտաւղէն ունելով։

Բայց ասեն ոմանք ածել զնոսա առ Գիորգիոս. ո՛չ այսքան յաղագս նախաճառեալն պատճառոյ, այլ տեսանէին զնա այլ ինչ ընդ վայր աւրինադրելով։ Իսկ այժմ նման խոստովանելով զՈրդի Հաւր որպէս ի Սելևկիայն խոստովանեցաւ, իսկ այժմ յարիոնոսականն խոնարհելով կարծես։ Վասն որոյ ի դէպ առեալք պատճառ առնեն զգնալն։ Բայց ապա իբրև ոչ ոք զնոսա համարէր, մուծանեն ձև ազանդոյ։ Եւ նախ ասէին ոչ առնուլ հոգի յաստուծոյն բանէ տնաւրէնութիւն մարդեղութեանն։ Ապա որպէս ի զղջմանէ ուղղեալք յաւելին հոգի ընդունել, բայց միտս ոչ ունել նմա. այլ լինել աստուծոյն բանի, փոխանակ մտաց ի յաւելումն մարդում։

ա. ἐν τῇ Βηρυτῷ·

1 Բերիւթում այն ժամանակ հռչակաւոր ուսումնարան կար։

Ցաղագս այսորիկ միայնւոյ ասեն տարբերիլ, ուր այժմ ի Նոցանէ զհամանուանութիւն ունին. քանզի զԵրրորդութիւնն համազոյ ասացին լինել։ Բայց վասն Ապողինոսաց և անդէն ըստ աշխարհին ասասցուք։

ԳԼ․ ԽԷ․[1]

Իսկ Թագաւորին Կոստանդիոսի յԱնտիոքիա կելով, կայսրն Յուլիանոս ընդ բազում բարբարոսաց[ա] խառնակեալ, և յաղթեալ ամենայն զաւրականաւքն իւրովք, և ի ձեռն այսորիկ ի Նոցանէ յորջորջի Թագաւոր։ Այսորիկ պատմելոյ Թագաւորին ի ջան մտանէր. և մկրտեալ յԵւզոյիոսէ[2] առ ի նորայն գնաց պատերազմ։ Եւ եղեալ ի մէջ Կապպադոկիոյ և Կիւլիկւոյ ի Մոփսու Ջրբուղխան կատարեաց զվարսն ի հոգատարութենէն ի սրտնեղութիւն ըմբռնեալ, ի հիւպատուոջն Տաւռոսի և Փղոռէնտիոսի երիցն Նոյեմբերի ամսոյ։

ա․ ἐν ταῖς Γαλλίαις՝ ի Գաղղիա։

1 Տե՛ Սոզ․ Ե․ 1․ Կաս․ Ե․ 50․ Նիկ․ Թ․ 50․

2 Հիլարիոսը վկայում է, որ Կոստանդինը առաջ մկրտուած չէր։ Այդ կայսեր մասին հին պատմագիրներից ոմանք գովասանքով են խօսում, ուրիշները նրան Ներոնի հետ են համեմատում։

Իսկ Թագաւորն Կոստանդիանոս եկեալ յԱնտիոքայ ի տեղի փոխանորդէ այլ, որ[ա] ունէր զաղանդ Արիոսի. Նա իսկոյն[բ] հասանէ նմա լուր վասն Յուլիանոսի կեսարու, որ ընդ բազում բարբարոս պատերազմեալ յաղթեաց. և ի ձեռն այսր յաղթութեան՝ յորջորջեցաւ նա յամենեցունց[գ] և ի ջան[դ] մտեալ մեծաւ ուժով[ե] ի նորայն գնայր պատերազմ, և եղեալ ի մէջ Կապադովկիայ[զ] և Կիլիկիայ, հասանէ նմա վախճան մահու. կա-

ա․ Դ․ յԱնտիոք ի տեղի փոխանորդեալ եպիսկոպոս, որ ունէր․ Ն․ յայլ որ ունի զաղանդն․ բ․ Գ․ Ա՝ իսկ։ գ․ Ն․ ամենեցունց․ դ․ Գ․ իջման․ ե․ Ա՝ յուժով․ զ․ Դ․ Կապուտկիոյ․

Իսկ այս էր ամ առաջին երկերիւր ութսուն և հինգ Ողիմպիադումն. և եկաց Կոստանդիոս ամս քառասուն և հինգ, թագաւորեաց ամս երեսուն և ութ, ընդ հայրն թագաւորեաց ամս քսան և երեք, իսկ յետ վախճանի նորա ամս ԻԵ. որքանեաց աղագաւ և գիրքս ունին ժամանակ։ [1]

1 Տես Մէք. Աւգերի (Երուս. դպ. 1871. էջ 139) « Իսկ Յուլիանոս գնացեալ ի Գաղիա ընդդէմ բարբարոսացն, յաղթեաց, եւ հպարտացեալ թագաւոր քարոզիչ եւ ի զօրացն: Եւ լուեալ զայս թագաւորին Կոստանդ, զարհուրեցաւ եւ մկրտեցաւ ի Յովիոսէ եպիսկոպոսէ Անտիոքու, որ էր Արիանոս եւ եղ ընդդէմ Յուլիանոսի եւ ընդ մէջ Կիլիկիոյ եւ Կապադովկիոյ մեռաւ կեցեալ ամս քառասուն եւ ութ եւ թագաւորեալ ամս քսան եւ հինգ.» Այս հատուածը շատ կարեւոր է, որովհետեւ պարզ ցոյց է տալիս, որ հեղինակը աչքի առաջ է ունեցել Սոկրատի ընդարձակ թարգմանութիւնը կամ քաղուածքը, իսկ մի ուրիշ տեղ. Մէք. Աւգերին (էջ 26) մատնացոյց է անում մեզ համառօտ օրինակը.

ոտարեալ զկեանս իւր ոչ ուղղափառութեամբ, որ ունէր ամս ԽԵ. [ա] թագաւորեալ ամս ԼԸ. [բ] ՄՁԵ ողիմպիադային, (ոչ բարեպաշտութեամբ. [գ] որպէս և Նորին հայրն Կոստանդիանոս ինքնակալ թագաւոր. [դ]) Այսպէս կատարեցաւ ի Նոյեմբերի ամսեան [ե] յերիսն.

ա. Բոլ. Ձեռ ԽԵ. բ. Բոլոր Ձեռ ԼԵ. գ. Գ. Ա՛ բարեպաշտաբար. դ. Գ. թագաւորին. ե. Ն. ամսոյ.



# ԳԻՐՔ ԵՐՐՈՐԴ

## Գլ. Ա. [1]

Կոստանդիոս Թագաւոր ի սահմանս Կիւլիկոյ երիցն Նոյեմբերի ամսոյ առ Հիւպատոսաւքն Տաւռոսիւ և Փղոռէնտիոսիւ կատարէր զվարսն։ Իսկ Յուլիանոս առ նոյն Հիւպատոսաւքն ի մետասանին զկնի նորուն ամսոյն Դեկտեմբերի յարևմտայինցըն կողմանց գնացեալ ի Կոստանդինուպաւլիս եմուտ, և ի նմա ինքնակալ [2] ցուցանիւր։ Բայց վասն զի Յուլիանոսի Թագաւորի բանաւորին [ա] առն՝ սակաւս ինչ պատմել կայ առաջի։

Մի՛ ոք ի նորայոցն ծանաւթից խնդրեսցէ զճոռոմութիւն պատմութեան, որպէս զի պարտ գոլ յաղագս

ա Բն. ἐλλόγιμος հռչակաւոր, անուանի։

1 Տես Սոզոմ. Ե. Զ. Թէոդ. Գ. 1.

2 Յուլիանոսը արդէն առաջ էր Գաղղիայում կայսր հրատարակուած.

## Գլ. ԽԵ.

*Թէ որպէս Յուլիանոս Թագաւորէ եւ արարքն իւր։*

Իսկ Յուլիանոս իբրև լուաւ զմահն իսկոյն գնաց ի Կոստանդնուպօլիս. և մտեալ ի ներքս Թագաւորեաց. և ինքնակալ զինքն եցոյց [ա] աշխարհի. վասն որոյ պատմել հարկաւոր է զնորա ազգատոհմ. [բ]

ա. Դ. կոչեաց զինքն. բ Դ. Ն. ազգագատոհմն։

*այսորիկ բանն ոչ պակասեցուցանել, զոր յաղագս որոյ բանս։ Վասն զի քրիստոնէական գոլով պատմութեանն, վասն յայտնութեան խոնարհագոյն յուղարկել զբանն, և այս ի սկզբանէ պատմեցաւ։ Բայց սակայն ճառելի է յաղագս նորա և ազգին և խրատուն, և եթէ որպէս ի թագաւորութիւն եկն. և զայս սրասցուք մեք փոքր ինչ ի վերուստ սկսեալ յաղագս ամենեցունց։*

*Կոստանդիոս որ զԲիւզանդիոն իւրովն յորջորջեաց անուամբ, երկուս ունէր միահայրս եղբարս, ոչ ի նմին նորա մարէն եղեալս. մեկին Դաղմատիոս անուն, իսկ միւսոյն Կոստանդիոս։[ա] Եւ Դաղմատիոս որդի ունէր համանուն ընքեան։ Իսկ Կոստանդիոսի երկուք եղեն որդիք, Գաղաս[բ] և Յուլիանոս։ Որպէս զի այս յետ վախճանին շինողին զԿոստանդինուպաւլիս զաւրականքն սպանին զԴաղմատիոս.[1] յայնժամ նոքա որ մնացեալք յընտանին հաւրէն առ փոքր ինչ ընդ Դաղմատիոսի վշտանային. եթէ ոչ զԳաղոս ախտ ինչ ակնկալութիւն*

ա. Ուղիղը՝ Կոստանդին։
բ. Γάλλος.

1 Յուլիանոսը ծնուել է 331 թուին. Դաղմատիոսը սպանուեց 387 կամ 338 թ.

**Մեծն Կոստանդիանոս որ զԲիւանդիոնն շինեալ[ա] յիւր[բ] անուն կոչեաց Կոստանդնուպօլիս. երկուք էին[գ] եղբարք միահարք,[դ] այլ ոչ ի մօրէ իւրմէ. որ[ե] անուն էր Դաղմատիոս.[զ] որ յետ շինելոյն զԿոստանդնուպօլիս ի զօրականացն ի պատճա-**

ա. Բ. շինեաց. Դ. շինեաց կոչեցեալ Կոստանդիանուպօլիս. բ. Ա՝ իւր. գ. Դ. երկուքին. դ. Դ. միահայրք. ե. Ա՝ որում. զ. Դ. որայր։ «Ի Թեոփ. Թարգմանութենէս առեալ է եւ ի գիրս Սեբէոսի, 33. «Յուլիանոս եւ Գաղիանոս որդիք Դաղմատիոսի ումեմն»։ Նոյն սխալ է եւ ի Վարդան Արեւելցի. պատմ. 44. եւ ի Մխիթ. Այրիվ. 137 եւ 140.»

ունելով մահու ապրեցոյց, իսկ Յուլիանոս ութ ամաց տիոց էր տակաւին կեցեալ լինէր։ Եւ վասն զի որ հակառակ նոցա դիմումն թագաւորին թուլանայր. Գաղոս յորս յԻոնիա ըստ Եփեսացի վարդապետսն հպէր, ուրանաւր ստացուածս ի նախնեացն բազումք։ Իսկ Յուլիանոս աճեալ ի Կոստանդնուպաւլիս ի խրատարանացն [ա] լսէր ի Բասիլիկոնն, [բ] ուրանաւր յայնմ ժամ խրատարանքն էին, սատակ ձեռով յառաջն գոլով, [գ] և ի Մառդոնիոսէ ներքինւոյ դաստիարակեալ։ Բայց քերականացն բանից Նիկոկլէս Լակոնացի [դ] էր նորա խրատիչ, իսկ զճարտասանականն յԵկկիբողոսէ [ե] իմաստակէ քրիստոնէէ յայնժամ հանդիպեցելոյ։ Բայց զայս յայնժամ Կոստանդիոս թագաւոր նախկին իմացաւ. որպէս զի մի՛ զհեթանոս վարդապետի աղանդ լուեալ առ պաշտաւն խոնարհեսցի։ Քանզի նախ քրիստոնէէ էր Յուլիա-

ա. παιδευτήρια.

բ. βασιλική·

գ. զգեստիւք ընթանալով:

դ. ձեռագրի մէջ գրուած է. Ն ի՝ կոկղիսողական, . որ առաջ է եկել [illegible]ույն ընագրի սխալ ընթերցումից եւ բառացի ընդօրինակութիւնից առանց [illegible]իտքը հասկանալու. Νικόκλης ὁ Λάκων. . Նիկոկլէս (ո) Լակոն :

ե. Ἐκηβόλιος.

ռէ իմեքէ մեռանի, և մնա նորա երկու որդիս. Գաղոս և Յուլիանոս որքք. զոր առեալ թագաւորն սնուցանէր զմանկունսն։ Էր ութ ամ Յուլիանոսի զոր տայր յուսումն՝ ի վարդապետս արուեստից քրիստոնէից, և ի ներքինեացն դաստիարակսն։ Եւ յետ այլ ուսմանց՝ ուսանէր զքերականութիւն Յուլիանոս, և զգուշանայր նմա ի հեթանոսական [ա] աղանդիցն [բ] քրիստոնէաբար կեալ. [գ] Իսկ նա զթագաւորին ոչ ունելով, ունէր

ա. Բ. ի քրիստոնէական. բ Գ. աղանդոյն. գ. Ա՝ քրիստոնեա վարկեալ.

նոս։ Իսկ աճեցեալ նորա ի բանսն, հռչակ ինչ յամբոխին ընթացաւ, որպէս զի բաւական է առ ի կարգել զՀռոմոցն գործս։ Այսորիկ յայտնաբար ապա խառնակեալ խռովութիւն լինէր թագաւորին. վասն որոյ և փոխեաց զնա ի մեծս քաղաքէ ի Նիկոմիդիա, հրամայեալ մի ուսանել ի Լիբանոսէ [1] յԱսորի իմաստակէն. քանզի յայնժամ Լիբիանոսի ի դաստիարակացն Կոստանդնուպաւլսի արտաքսեալ ի Նիկոմիդեայ զդպրոցն առնէր։ Իսկ սա զբարկութիւնն հակառակ դաստիարակացն ի յընդդէմ գրեալ նոցա բանն [2] զնա խոնարհեցոյց. իսկ Յուլիանոս արգելեալ լինէր հպիլ առ նա, վասն զի Լիբանիոս զհեթանոսականն ունէր աղանդ։ Բայց սակայն Յուլիանոս փափագաւղ գոլով բանից նորա, ժողովելով զնոսա ներքսակայիւր։ Իսկ յառաջադիմացեալ նորա ի ճարտասանականն, ի վերակա[ա] ի Նիկոմիդիայ Մաքսիմոս իմաստասէր. ոչ Բիւզանդն[բ] և Կղաւդոսի հայրըն, այլ Եփեսացին, զոր յետոյ իբր հնարս[գ] ինչ ա-

ա. գայր, ժամանէր: ἐφίστατα:.
բ. Յնագ. ὁ Βυζάντιος Բիւզանդացի:
գ. μαγγανεία կախարդութիւն, հմայութիւն:

1 Լիբանիոս Անտիոքացին ծաղկում էր 360 թ. եւ Թէոդոս մեծի ժամանակ մինչեւ անգամ զօրքի հրամանատար կարգուեց. նա երկար ժամանակ ճարտասանութեան ուսուցիչ էր.

2 Լիբանոսի դաստիարակների դէմ գրած ճառը չկայ.

զքրիստոնէութիւնն. բայց գաղտնի վարժէր[ա] և ուսանէր[բ] զճարտասանութիւն և զփիլիսոփայութիւն ի Լիբանիոսէ,[գ] որ ունէր զհեթանոսական աղանդս.[դ] Եւ հռչակեալ[ե] Յուլիանոս ի փիլիսոփայութեան արուեստս ի բանս և ի թուղթս, և ոչ ի կամաց, այլ յերկիւղէ թագաւորին ունէր զքրիստոնէութիւնն.

ա. Դ. վարէր. բ. Ն. ուսուցանէր գ. Դ. Լիբիանոսի. դ. Դ. աղանդն. Բ. աղանդսն. ե. Գ. հռչակեալ:

րարեալ Թագաւորն Վաղէնտիանոս սպանանել հրամայեաց. այս յետոյ եղև։

Բայց յայնժամ ոչ վասն ինչ իրի եկեալ էր ի Նիկոմիդիայ, այլ որ յաղագս Յուլիանոսին հռչակ էած զնա. իսկ ի սմանէ զիմաստասիրականսն բանս ճաշակեալ առժամայն յիշէր և զաղանդ խրատիչին. որոց և ի ցանկութիւն Թագաւորութեան արկեալ զնա։ Եւ վասն զի այս լուր յունողէն ոչ Թաքչէր, ի մէջ յուսոյ և երկիւղի լինէր ըմբռնեալ. իսկ զաւրացելոյ ևս երկիւղին, զմտածութիւնս փախուցանել կամելով, որ նախ մտերիմ քրիստոնէեայն էր, յայնժամ յածել լինէր և ի ժամանակին յայնմիկ կարեալ, զմիայնացելոցն. կեղծաւորէր զվարս։ Եւ գաղտաբար ճգնէր յիմաստասիրականսն, իսկ յայտնապէս զաստուածային գիրս քրիստոնէից ընթեռնոյր. և ի Նիկոմիդիւոյ եկեղեցւոջն ընթերցաւղ կարգէր, ի ձեռն այսպիսի ձևոյ զԹագաւորին արգելլով զպիմուծմն։ Եւ զայս գործէր վասն երկիւղին. իսկ ի յուսոյն ոչ մեկնեալ վքազմաց ծանաւթից երջանկացանեալ ասէր զժամանակս, յորժամ ինքն զամենեցունց ընգալցի։ Յայսոսիկ հաստատեցելոց Նորայոցն Գաղոս եղբայր

Զայս ծանուցեալ Թագաւորին արտաքս վարէ զխորհըրդակիցս չարին. և ի վերայ Նորա սպառնալիք լինէին. Իսկ Յուլիանոս[ա] ի հրամանէ Թագաւորին խորամանկեալ, զերկիւղածութեան ձև առնոյր[բ] և լինէր գրակարդաց եկեղեցւոյն, միշտ ընթեռնլով, և զվարս քրիստոնէից ողջապէս ցուցանէր կատարել միշտ։ Զայս տեսեալ[գ] Թագաւորին, արգելոյր զսպառնալիս[դ] ի նմանէ. բայց նա գաղտնի ոչ դադարէր ի չար և յանհանճար[ե] աղանդից և ի վարժից սնոտի իմաստութեան

ա. Բ. Յուլիանոսի. բ. Դ. առեալ. գ. Գ. Ա՛ լուեալ. դ. Բ. Գ. զըսպառնալիսն. ե. Դ. ի չարէ եւ անյանճար աղանդիցն. Ա՛ ի չար եւ յանճար.

նորայ կեսար յայտնել էած զնա տեսանելով ի Նիկոմի-
դիայ, յորժամ յարեւելսն կոյս երթայր։ Վասն զի Գա-
ղոս սակաւ ինչ յետոյ մեռաւ, առժամայն և Յուլիա-
նոս կարծաւոր թագաւորին կարգեցաւ [ա] վասն որոյ և
պահեալ զնա հրամայեաց։ Իսկ Նորա զաւրեալ փախչել
ի պահապանացն, տեղոյ ի տեղի փոխելով ապրեալ լինէր։
Իսկ անագան երբեմն թագաւորին կնոջ, որոյ Եւսիբիա
անուն, թաքուցեալ զնա գտանելով. հաւանեցուցանէ
զթագաւորն ոչինչ առնել նմա չար, այլ թոյլ տալ նմա
երթալ յԱթենս իմաստասիրել։ Աստուստ զնա կո-
չեցեալ թագաւորին կարգեաց կայսր. և տուեալ նմա
կին զքոյր իւր Կոստանդիայ [բ] ի Գաղիայ ընդդէմ բար-

ա. Ի կասկածանս անկաւ.

բ. Բն. τὴν Ἑλένην բայց Սոկրատի ձեռագրերից մէկը՝ Μ. Κωνσταντια Կոստանդիա ունի:

բայց Գաղոս [ա] եղբայր նորա կայսր լինել յորդւոյ [բ] նորա. յետ
վաղճանի Մեծին Կոստանդիանոսի, որպէս նախ ասացաք ըզ-
պատճառս [գ] սպանին. և զՅուլիանոս պահել հրամայեաց. իսկ
նա զերծեալ ի պահապանացն, տեղւոջէ [դ] ի տեղի [ե] փոխելով
ապրեալ լինէր.

Եւ գայ առ կին թագաւորին [զ] որում անուն էր Սեբի.
բարեխօս զնա առնէր. և թաքուցեալ զնա աղաչէր զթագաւորն
մի [է] առնել նմա չար վասն եղբօրն, այլ ընդունել զնա սիրով.
և առնել ի տեղի սպանելոյն. Եւ յետ բազում աղաչանաց
հաւանեցաւ ըստ կամաց կնոջն առնել. և ապա ածեալ զնա
առաջի, ընկալաւ զնա սիրով և ետ զքոյր [ը] իւր նմա կնութեան.
և արար զնա կայսր. Եւ առաքեաց ընդդէմ բարբարոսացն
ի կողմն արեւմտից, անգիտացեալ զնորա խորամանգութիւն.

ա. Բ. Գալլոս. բ. Գ. որդւոյ. գ. Դ. զպատճառն սպանանի Նաեւ
զՅուլիանոս. դ. Դ. ի տեղւոջէ. ե. Ա՛ ի տեղ։ զ. Գ. առ թագաւորն.
է. Դ. մի ինչ. ը. Ա՛ Գ. Ն. զքոյրն. Դ. քոյր.

բարբարոսացն առաքեաց [1] քանզի բարբարոսքն զոյս փոքր ինչ Կոստանդիոս ընդդէմ Մագնէնտի ի մարտակցութիւն ի վարձու կալեալ. ոչինչ պիտանիք ընդդէմ բռնակալին եղեալք, զհռովմայեցւոցն ապականէին զքաղաքս: Եւ վասն զի մանուկ տիովք էր Յուլիանոս հրամայեաց նմա ոչինչ գործել առանց կամաց զաւրականացն առաջնորդաց, իսկ նոցա զիշխանութիւնս զայս առեալ. հեղգագոյն գործէնոյն հոգ տանէին, և վասն այսորիկ բարբարոսքն զաւրագոյնք էին: Յուլիանոս ապա թողոյր զզաւրավարսն ի կերակուրս և յըմպելիս պարապել, իսկ զզաւրականսն յորդորագոյնս առնէր վարձս սահմանեալս խոստացեալ սպանանողին բարբարոս: Եւ ընդունէր զընդդէմ բարբարոսացն զյաղթութիւն, այս էատ զսկիզբնն, որով և բարբարոսաց նուազիլ. և նմա տրփելի ի զաւրականացն լինել: Բայց էել և բան. եթէ ի Գաղիա ի քաղաքնիացւոց [ա] մտեալ նորա պսակ իմն,

ա Πολιχνίων քաղաք փոքրիկ, գիւղաքաղաք:

1 Վարդան պատմագիրը Սոկրատից առնելով գրում է. (Ձեռ. օրին.) Ու կարգէ զԳաղոս կեսար յԱնտաք (յԱնտիոք) եւ զՅուլիանոս յուսումն առաքէ յԱթէնս. Եւ զկնի այնորիկ. ապստամբի Գաղոս եւ մեռանի. Եւ Յուլիանոս առնի աւլաչափոք թագաւորհւոյն. զոր կեսար կարգէ արեւմտեայց կողմանն տալով նմա քոյր իւր զՄլինէ ի կնութիւն եւ ինքն չոգաւ յԱնտիոք. Իսկ Յուլիանոս յաղթեաց բարբարոսացն եւլն. Տես նաեւ Միք. Ասորի Երուս. 1871. էջ. 138 հետ.) (Միք. Ասոր. էլ ունի զՄլինէ որ համառօտաբան է յուն. բնագրին) Վարդանը Կոստանդեւն Մեծից մինչեւ Վաղէնտիանոսը կայսրներու կարգը գրելիս ակն յայտնի կերպով օգտուել է Սոկրատէսից.

Եւ զի մանուկ էր Յուլիանոս, ոչինչ հրամայէ նմա առնել [ա] առանց նորա կամաց, և որ նմա կարգեաց խրատիչս. այլ նա առնէր զկամս իւր, բայց հրապուրանօք ունէր զթագաւորն և պաղմննեան մինչև թագաւորեաց:

ա Դ. հրամայեաց առնել:

յորոց ի քաղաքսն զարդարէին, ի մէջ սեանց ի գեղեցիկ պաճուճանաց, իջեալ նստէր ի վերայ գլխոյ նորա և ի վերայ այսորիկ ամենեցունց· որք առընթերն վերագոչէին· որպէս զի նախագուշակել նմա ի ձեռն եղելոյ [ա] նշանին զթագաւորութիւնն։ Բայց ասեն ոմանք որպէս զի Կոստանդիոս սակս այսորիկ առաքե(ա)ց զնա ի բարբարոսս· զի անդ ապականեսցի խառնակեալ ընդ նոսայ։ Այլ, ոչ գիտեմ թէ ասացողքն զայս ճշմարտեն· քանզի մինչ զքոյրն իւր Յուլիանիանոսի համաբնակեցոյց, եթէ հանդերձեալ էր, [բ] զնա խորամանկել, ոչ ինչ այլ զընդդէմ նորայ դաւաճանութիւնս շըրջէր։ Այլ զայս իւրաքանչիւրոցն դատեսցեն կարծիքն։ Իսկ Յուլիանոսի անգոսնել առ թագաւորին զհեղգութիւնն զաւրավարացն, այլ առաքեցաւ զաւրավար պատշաճ յաւժարութեանն Յուլիանոսի, զոր ունելով սպասաւոր վստահանալով, խառնակեցաւ ընդ բարբարոսն։ Իսկ նոքա, աղաչէին յղեալք առ նայ, որպէս զի թագաւորին թուղթք հրամայեցին նոցա, յաշխարհն Հռովմայեցւոց հպիլ, և զթուղթսն ցուցանէին։ Իսկ նա զբերաւղ աղուչանացն [գ] կապեաց, և խառնակեալ ըզբազմութեամբն քաջարար յաղթեաց, և զթագաւորն բարբարոսաց գերեվար արարեալ առ Կոստանդիանոս առաքեաց։ Յայսոսիկ բարեբախտացեալ գերակոչի թագաւոր ի զաւրականացն. և վասն զի պսակ թագաւորական ոչ կայր, մի ոմն յընծայաբերացն որ ունէր մանեկ, առեալ եդ ի վերայ գլխոյն Յուլիանոսի։ Եւ այս պատճառաւ թագաւորեաց Յուլիանոս. իսկ զայս աստուստ

ա. Ձեռ. ունի «եղոյ.
բ. Ձեռ. հանդերձել եր։
գ. Ձեռ. ազազանացն։

*յորոց ի քաղաքսն զարդարեն, ի մէջ սեանց ի գեղեցիկ պաճուճանաց, իջեալ նստէր ի վերայ գլխոյ նորա և ի վերայ այսորիկ ամենեցունց որք առընթերն վերագոչէին. որպէս զի նախագուշակել նմա ի ձեռն եղելոյ [ա] նշանին զթագաւորութիւն: Բայց ասեն ոմանք որպէս զի Կոստանդիոս սակս այսորիկ առաքե(ա)ց զնա ի բարբարոսս. զի անդ ապականեսցի խառնակեալ ընդ նոսայ: Այլ՝ ոչ գիտեմ թէ ասաւղքն զայս ճշմարտեն. քանզի մինչ զքոյրն իւր Յուլիանիանոսի համաբնակեցոյց, եթէ հանդերձեալ էր, [բ] զնա խորամանկել, ոչ ինչ այլ զընդդէմ նորայ դաւաճանութիւնս շըրջէր: Այլ զայս իւրաքանչիւրոյն դատեսցեն կարծիքն: Իսկ Յուլիանոսի անգոսնել առ թագաւորին զհեղգութիւնն զաւրավարացն, այլ առաքեցաւ զաւրավար պատշաճ յաւժարութեամն Յուլիանոսի, զոր ունելով սպասաւոր փառահանալով, խառնակեցաւ ընդ բարբարոսն: Իսկ նոքա, աղաչէին յղեալք առ նայ, որպէս զի թագաւորին թուղթք հրամայեսցին նոցա յաշխարհն հռովմայեցւոց հպիլ, և զթուղթսն ցուցանէին: Իսկ նա զբերաւղ աղաչանացն [գ] կապեաց, և խառնակեալ ընբազմութեամբն քաջարար յաղթեաց, և զթագաւորն բարբարոսաց գերեվար արարեալ առ Կոստանդիանոս առաքեաց: Յայսոսիկ բարեբախտացեալ գերակոյն թ*
*գաւոր ի զաւրականացն. և վասն զի պսակ թագա*
*կան ոչ կայր, մի ոմն յընծայաբերացն որ ունէ*
*առեալ եդ ի վերայ գլխոյն Յուլիանոսի: Ն*
*ճառաւ թագաւորեաց Յուլիանոս. իսկ*

ա. Ձեռ. ունի «եղոյ».
բ. Ձեռ. հանդերձեալ եր:
գ. Ձեռ. աղաղանացն:

Թէ են իմաստասիրեն, փորձեսցեն լպաւղքն Նմա, մանաւանդ գովաւղքն զնայ: Բայց զայս ասեմ, զի ոչ աղաչել զԿոստանդիանոս, և ոչ ուրախ արարեալ որպէս բարեգործ զամենայն գործեր որ ինչ Թուէր Նմայ. և զորս ըստ Նահանգացն իշխանս փոփոխէր և քարշէր զԿոստանդիոս ի քաղաքն ընԹեռնլով հրապարակաւ զաւ ի բարբարոսսն Նորա Թուղթս: Վասն որոյ և ի Նա յաւելլին, և ի Կոստանդիոսէ մեկնէին ամենեքեան: Յայնժամ ապա և զկեղծաւորուԹիւն քրիստոնէուԹեանն յայտնաբար մերկացաւ. քանզի հրամանելով ի քաղաքն զմեհեանսն բացեալ զոհս մատուցանէր, և զինքն քահանայապետ անուանէր: Եւ զայս առնելով պատերազմ ցեղական յարուցանէր, հակառակ Կոստանդիոսի առնելով զզիմմունսն: Եւ որքան որ ի վերա Նորա հաստատուԹեանն Թերևս լինէր որչափ ինչ պատերազմ ունէր չարիս. քանզի ոչ որդեաց առանց բաղում արեանց լինէր զատապարտեալ. փոյԹ իմաստակիցն: Բայց


Աստուած որ ընտանեացն խորհրդոց դատաւոր՝ զքին
յընդդիմամարտանաւղացն առանց այլ միջնոր
ի դիմմանէն: Քանզի լինելով Յուլիանոսի Թորգ
ացն ազգս պատմեցաւ Նմա մահն Կոստանդ
և այսպէս զցեղականն ա
յեցւոցն իշխանուԹիւն
անդրինուպաւլիս
խուրացուցանել զրաւ
ն Տնօրէն

նիս վասն թողլոյն զկինն իւր զԿոստանդիայ, յետ որոյ
այլ ոչ առնոյր կին, իսկ զխոհակերսն՝ վասն սոսկ զկե-
րակուրն ուտելոյ, իսկ զզառայս միոյն առ բազումս լի-
նել բաւականս: Ջսոսա վասն այսորիկ էհան արտաքս.
իսկ ի դպրացն զշոլովս առաջնումն էետ հանգիպմանս,
իսկ այլոցն ի նոցանէ վարձս դրաւոր հրամայեաց տալ:
Նկարիծ և զհարկս պիտոյից Նըւէնդացն, ա զորս խա-
շանց ջորոց և իշուց. միայն երավարացն պիտոյից թու-
լացոյց սպասաւորել հարկացն, իսկ զայսոսիկ զնորա
գովեն սակաւք և պարսաւեն բազումք: Ելթէ դատա-
րեալ որ ի թագաւորական մեծութենէն, բազմացն եղ-
եալք սքանչելիք, արհամարհեալ առնէր զթագաւորու-
թիւնն, և ոչ այս միայն. այլ և աւթագանալով՝ ծառս
շարագրէր. [1] և զայսոսիկ իջուցանելով ի սինկղիտոսացն
խորհուրդ ցուցանէր: Քանզի միայն ի թագաւորաց ի
Յուլիոսէ Նախկին Կեսարէ էմուտ ի սինկղիտոսացն խոր-
հուրդս: Պատուէր և զորս առ խրատն փութացաւ զա,

ա. τὸν δημόσιον τῶν χρειῶν δρέμον ծիարշաւ:

1 Այդ ճառերը նա անուանում է πατέρα πολλῶν λόγων· հայր բազ-
մաց ճառից:

Եւ թողու զիւր կինն և այլ ոչ առնու կին. և Նեկըրի-
նիսն [ա] ի բաց հանէր ի տանէն. [բ] և զշոլովս ի թագաւորական
տանէն պաշտօնէութեանց. և երարձ զհարկս յոլովս. զի վասն ըն-
տանեաց թագաւորին, և ձիոց, և ջորեաց, [գ] և իշոց, և ուղտա-
ւորաց, և աշխատաց. բայց զարքունի զերիվարացն [դ] միայն ունէր
զհոգս: Եւ զայսոսիկ զնորա գովեն սակաւք, և պարսաւեն բա-
զումք, որպէս արհամարհել թուէր զաւելորդ իւր ունելով
Յուլիանոս զառաւելեալն յինքեան զանապատութեան,

ա. Ն. Դ. զնեկըրինիսն. բ. Դ. բաժանեաց ի տանէ եւ յարքու.
գ. Դ. ջորոց. դ. Դ. Ա՛ երիվարացն.

մանաւանդ զխոստացեալն ուսումնասիրել։ Վասն որոյ և ամենայն ուստեք զայսպիսս ածէր առ նա հռչակն։ Յորդեալք լինէին առ թագաւորութիւնն ունաւղքն զփիլիսոփայականսն հանդերձս. և բազումք ի ձևոյն առաւել քան թէ ի խրատուէն լինէին ցուցեալք. և ամենեքեանն էին ծանր քրիստոնէից, արք պատրաւղք, և կալաւղին աղանդւոյ ընտանեցեալք։

Իսկ ունելով Յուլիանոսի զառաւելեալն յինքեան զնափառութիւնս զամենայնս, զնախ քան զինքն զթագաւորսն գովեաց ի ճառին, յորում կայսերս զնոսա վերագրեաց, յայսպիսի սովորութենէ շարժեալ և ընդդէմ քրիստոնէից ճառս շարագրէր։ Քանզի զխոհակերս և զզառայսն հանել ոչ իմաստասիրէր, այլ և ոչ իմաստութիւն թագաւորի,[ա] քանզի երկաքանչիւրքն զամենայն ամբաստանութիւն և զյաչաղանս առաւել հաստատէին։ Վասն զի թագաւորի պարտ

ա. φιλοσόφου ἔργον. οὐ μὴν βασιλέως· *իմաստասիրի վայել գործէր, այլ ոչ թագաւորի։*

ճառս շարագրեաց ի գովեստ առաջին թագաւորացն, որ նախ քան զինքն, և Կեսարս[ա] զնոսա վերագրեաց. և յայնպիսի[բ] սովորութենէ շարժեալ, և ընդդէմ քրիստոնէից ճառս հայհոյութեան շարագրեաց. և զասացեալսն ուղղապէս, ջանայր այլափոխել ի չաղր և յայլն կատականաց. Այնպէս էր նորա կռոցն օրինակ[գ] առ քրիստոնեայս,[դ] ոչ իշխանապէս և թագաւորաբար առնէր զհալածանս քրիստոնէից, այլ հրապուրանօք զգովիչն[ե] յափշտակէր յինքն ի[զ] պարզամտացն և ի դիւրահաւանիցն, և այսպէս խորամանգեալ որսայր ի կորուստ և այնպէս խորհէր զքրիստոնէութիւն բառնալ արուեստիւք.

ա. Գ. զկեսարս. բ. Դ. այնպիսի. գ. Գ. աւրակ. դ. Դ, առ քրիստոնեայսն. ե. Դ. զգովլ չս. զ. Դ. իսկ պարզամտացն.

է նմանել Փիլիսիփոս, որքան ինչ առողջախոհութիւն և արդարութիւն տեսանէ, իսկ Փիլիսոփոս թէ զամենայն զթագաւորին նմանեցուցանէ, անզանի ի դիդմանէն: Յաղագս Յուլիանոսի թագաւորի և ազգի նորա և խրատուն և թէ ուպէս ի թագաւորութիւն էանց, այսքան ուպէս ընթացմանէ ճառեցաւ:

Գլ. Բ [1]

Իսկ առ ժամայնս, որոց առ եկեղեցին առ նորա ժամանակաւքն եղելոց արասցուք յիշատակ:

ՅԱղէքսանդրիա ի մեծումն քաղաքի պատահեաց լինել խռովութիւն յայսպիսի պատճառոյ:[2]

Տեղի մի էր ի հին ժամանակաց ի քաղաքին խափանեցեալ լի աղբով բազմաւ, յորում հեթանոսքն նախկին Միթրոսի[ա] նուէրս մատուցանելով մարդիկ զոհէին:[3]

ա. τῷ Μίθρᾳ·

1. Տես Սոզոմ. Ե 7. Ամիանոս Մարցելիանոս ԻԲ. 11. Եպիփան. Հերձ. ՀԶ. Փիլոստ. Է. 2. Կասիոդ. Զ. 8. Նիկեփ. Ժ. 6.

2 Աղէքսանդրիայի այս խռովութիւնը շատ յայտնի էր եւ նրան յիշում են բոլոր ժամանակակից պատմագիրները.

3 Միթրան Պարսից արեգակի աստուածն էր.

Գ.Հ. ԽԶ.

*Յաղագս խռովութեան Աղէքսանդրիոյ, եւ Գէորգիոս արիոսութեան որ ունէր զտեղի Աթանասի, ի պատճառէ էմքէ ըմբռնի եւ կենդանի այրի:*

Յայտնապէս լինէր խռովութիւն յԱղէքսանդր[ա] այսպիսի պատճառաւ. էր աւերեալ մեհեան մի ի տեղւոջ ուրեմն, զոր կամէր Գէորգ արիոսեան, որ ունէր զտեղի Աթանասի, սրբել[բ]

ա. յԱղէքսանդրիայ: բ. Դ. սրբոյ. Գ. սրբո.

Զայս Կոստանդիոս, որ յառաջագոյն որպէս զպա-
րապական ինչ, Աղէքսանդրացեացն տան եկեղեցւոյ.
իսկ Գէորգիոսի կամելով տուն աղաւթից զնա կազմել,
մաքրել հրամայէր զտեղին. և ի բրելն զայրն գտա-
նէին ի խորսս բազումս յորում խորհուրդքն հեթա-
նոսաց կային թագուցեալք: Այսուքիկ էին գագաթունք
մարդկան բազումք՝ մեծամեծաց և մանկանց, յորս կայր
բան նախկին ասիլ. յորժամ ի ձեռն որովայնից դիւ-
թութիւնս առնէին հեթանոսքն, և մոգականս կատա-
րէին զոհս, հնարելով զանձինս: Զայսոսիկ գտեալ քը-
րիստոնէիցն զՄիթռոսի փոյթ դնէին ամենեցունց
յայտնաբար ծիծաղելիս ցուցանել զհեթանոսացն խոր-
հուրդս. և ծաղէին նոյնժամայն մերկս հրապարակաւ
զգագաթունսն ցուցանելով: Զայս տեսեալ որոց յԱղէք-
սանդրիայ հեթանոսացն և ոչ բերելով զիւրին զնախա-
տանս, բարկութեամբ բորբոքէին, և զամենայն զհանդի-
պեալ ինչ զէն սպառեալ դիմէին ի վերայ քրիստոնէիցն.
և ամենայն տեսակաւ սպանմամբ մահուան սպանին
զբազումս ի նոցանէ. քանզի զոմանս սրով, իսկ զայլս
բրաւք, և որ քարիւ սպանանէին, իսկ զայլս տոռամբք
սպանանէին խեղդելով. զոմանս ի նոցանէ և խաչեցին,
թշնամանս խաչին զայս ի վերայ ածելով զմահ, իսկ
զյոլովս վիրաւորեցին, և որ առ այսպիսս սիրեն լինել:

եկեղեցի շինել. Եւ րրէինզտեղին. և գտին խորս՝ [ա] և ի ներքս
գանգունս արանց և մանկանց [բ] ըստ հեթանոսաց աղանդից:
Զայսոսիկ ցուցեալ հեթանոսաց ծաղր և այպն [գ] զնոսա առ-
նէին. և նոցա ոչ բերելով զնախատինսն, յարեան բարկու-
թեամբ ի վերայ քրիստոնէից սրովք և բրովք և քարամբք,
զբազումս արիանոսացն սպանին, որք ընդ Գորգիոսին էին.

ա. Դ. խորս եւ ի ներքոյ գանգուրս. բ. Դ. կանանց. գ. Դ. յայպն:

## Գլ. Ե.[1]

Իսկ յայնմ ժամանակի Ղակիփեռ և Եւսեբիոս յաքսորեացն կոչեցեալք լինէին Թագաւորական հրամանաւ։ Ղուկիփեռ էր Կաղացեաց[ա] եպիսկոպոս, որ է քաղաք Սարդինոյ. իսկ Եւսեբիոս Բեռկաղայեաց, [բ] սա քաղաք է յԻտալիայ Ղիգիւացեաց, երկոքեանն ի վերին Թեբայոյ[գ] յաքսորեացն ելեալք խորհուրդ առնէին որպէս զի իւիք յեղանակաւ զեկեղեցւոյն ապականեալ զկանոն ո՛չ արասցեն անտես։

ա. Καράλων Ձեռ. Ղուկիփեռ եր կաղացեաց:
բ. Βρεκέλλων.
գ. Θηβαί.

1 Տես Սոզ. Ե. 12. Թէոդ. Գ. 5. Ռուփին Ժ. 27. 28. Կաս. Զ. 19. Նիկեփ. Ժ. 14.

(Բայց Աթանաս[ա] խաղաղասէր վարդապետութեամբն խըրատէր և ուսուցանէր զվարս պարկեշտութեան, և հաստատէր ի հաւատս որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, [բ] և յանհանճար աղանդիցն Արիոսի և Հոգէմարտից[գ] մաքրէր զիւր հաւատն ի փառս և ի գովութիւն ամենասուրբ Երրորդութեան։

Եւ ամենեքեան արտաքսասահմանեալք[դ] զիւրաքանչիւր եկեղեցիս[ե] հաստատէին ի հաւատսն,[զ] և զհակառակորդսն[է] ըմբերանէին ի Սուրբ Գրոց՝ ի հնոց և ի նորոց, զԱրիոս և զՀոգէմարտս, և զՍաբելացիս, և զՊօղոսացիս, և զՓոտինոսացիս[ը] և զՄանիքեցիս, և զԱպօղինարսս,[թ] և որ հերետիկոսացն մոլորութիւնք են. այլ յայլմէ երեմանց ի պէսպէս աղանդս ձեռնարկեալ հակառակսն ճշմարտութեան, որ յԱստուծոյ[ժ] որ ի

ա. Ա՛ Աթանասայ. բ. Գ. ղաւանութիւն Աթանասա ի սուրբ Երրորդութիւն եւ յանհանճար աղանդիցն. գ. Ն. Հոգէմարտին. դ. Դ աքսորսահմանեալքն. Բ. արտասահմանեալք. ե. Դ. յիւրաքանչիւր եկեղիս. զ. Դ. ի հաւատս. է. Ն. զհակառակորդսն. ը. Գ. Ն. զՓոտինացիս. թ. Դ. եւ զապօղինարիս. ժ. Դ. Աստուծոյ.

ԳԼ. Ջ.[1]

Հաճոյ թուեցաւ ապա զՂուկիփեռ յԱնտիոքիա Ասորւոց առաքել. իսկ զԵւսեբիոս յԱղեքսանդրիայ, որպէս զի ժողով ընդ Աթանասեայ արասցեն, զեկեղեցւոյն հաստատեսցեն զհաւատս։ Բայց Ղուկիփեռ սարկաւագ զոմն առաքեաց յիւրն տեղի ի ձեռն որոյ խոստովանեալ զառ ի ժողովոյն տպաւորեալս, իսկ ինքն յԱղեքսանդրիա գնացեալ գտանէ խռովեալ զեկեղեցին. քանզի երկպառակեալ տեսանէ զեկեղեցին յընքեանս, զի ոչ միայն արիանոսական հերձուածն յԵւզոյիոսէն հանդիպեալ որոշէր զեկեղեցին, այլ քանզի որպէս և նախկինն ասացի. Մեղիտիոսի հանդիպեալքն փութով առաջնորդին առ համափառսն խղճացեալք լինէին. կարգեալ ապա եպիսկոպոս զՊողինոս ի նոյն[2] գնայր Ղուկիփեռ յԱնտիոքայ։

1 Տես Սոզ. Ե. 12. Թէոդ. Գ. 5. Ռուփին Ժ. 27։

2 Պաւլինոսը Անտիոքիայի քահանայ էր եւ Եւստաթի հետեւողների առաջնորդ։

վերայ ամենեցուն էր հարկաւոր և երանաւոր.[ա] Երանելին Աթանաս. որ[բ] զնոյն ասէր առ մերձաւորս զհաւատոյն բան ըստ տուրր ժողովոյն Նիկիայ և ըստ սահմանի կանոնագրութեան. և զնոյնս[գ] դարձեալ գրեր ոչ յումեքէ դրդուեալ և խոտորեալ յընդդիմակացն, և հաստատուն և անշարժ և անդրդուելի մնայր ի վերայ հիման աւանդութեան առաքելոց և մարգարէից.)[դ]

ա. Դ. հռչակաւոր եւ ականաւոր. Գ. Ա՛ հարկաւոր եւ ականաւոր էր. բ. Ա՝ չիք. գ. Դ. ըստ սահմանադրութեան եւ զնոյնն. դ. Դ. մարգարէից, Բ. առաքելոցն եւ մարգարէիցն.

## ԳԼ. Է.[1]

Իսկ Եւսեբիոս հասանելով յԱղեքսանդրիա փութապէս հանդերձ Աթանասիւ ընդունէր զժողովն։[2] Եւ ժողովէին ի յոլովից կողմանց եպիսկոպոսունք։ Եւ յաղագս առաւելագունիցն և կարևորագունից կրթէին ընդ միմեանս. ուրանաւր և զՍուրբ Հոգին աստուածաբանեալք համագոյ Երրորդութեանն զուգաւորեցին. և զառեալն յԱստուծոյ բանէն մարդ ոչ միայն մարմնով, այլև յոգւով ասացին. որև հին եկեղեցականացն արանց թուի։ Քանզի ոչ նորագոյն ինչ աղանդ իմացեալք յեկեղեցին մուծանէին, այլ զոր ի սկզբանէ և եկեղեցականն աւանդութիւն ասէր, և յընդունականաց քրիստոնէէ իմաստակաց լինէր իմաստասիրել։ Քանզի այսպէս ամե-

1 Տես Սոզոմ. Ի. 12. Ռուֆին. Ժ. 28. 29. Կաս Զ 29. Նիկեփոր Ժ. 15.

2 Այս ժողովի նպատակն էր միջոցներ ձեռք առնել արիանոսներին վերադարձնելու.

## ԳԼ. ԽԸ.

*Դաւանութիւն սրբոյն Աթանասայ։*

Ասէր զխոստովանութիւն այսպէս առաջի ամենեցուն գրով ըստ վերահայնութեան ժողովոյն, զոր տիեզերական եկեղեցիք ուղղափառաց[ա] քարոզեն միշտ.

(Անսկիզբն Հայր ամենակալ և մշտընջենագով,[բ] արարիչ երկնի և երկրի, և որ ի նոսա արարածք. և Որդի ի Հօրէ ծնեալ և ոչ արարեալ, արարչակից Հօր և մշտընջենակից, անժամանակ, և անմարմնապէս ի նոյն բնութենէ և ոչ այլուստ ի ներքս մտեալ. և ամենայն ինչ նովաւ եղեւ)[գ]

ա. Նորայր. Տես եւ ի Ստեփ. Ուռպել. էջ 340–342. այլ դաւանութիւն ս. Աթանասի. բ. Նոր. Տես եւ ՀԿՁ քռ. ի մշտնջենագով. գ. Դ. եղեալ։

և առ ոյս Նախկին ըմբռնմանէն ցասուցեալս առ այրն պատահեալք։ Ցամենայն զլեանն պատասխանի սակս նորայ արարեալք. ոչ Նախկին զՍրբգեն առ այս գալ իրողութիւն ասեն, այլ զեկեղեցւոյն խորհրդականն թարգմանեալ աւանդ։ Իսկ զնա որք յԱղէքսանդրւոյ ժողովոյն եղեալք ոչ անպատժելի թողին. բայց ասեմ զոր յաղագս գոյութեան ի էութեան. քանզի Ոսիոս որ Կուտուբայոյ եպիսկոպոս, որ և յառաջն արարալք յիշատակ, ի Թագաւորէն Կոստանդնէ ի շիջուցանել զյայնժամ յԱրիոսէ եղեալն խռովութիւն առաքեալ, զՍաբելլի Լիբէացւոյ զաղանդն հանեալ յաւժարեալ, զյաղագս գոյութեան և էութեան խնդիրն առնէ, որ և այն այլ խռովանութեան եղև պատճառ։ Այլ յայնմ ժամ ի Նիկիայ եղեալն ժողովն զյաղագս այսորիկ խնդիրն և ոչ բանիւ արժանաւորեաց։ Եւ վասն զի յետ այսորիկ ոմանք հակառաբանեալ կամէին, յաղագս այսորիկ յայսմ ժողովու սակս գոյութեան և էութեան զայս ասացին։ Ոչ ի վերա Աստուծոյ լինել պարտ ասացին, և զայսոսիկն արկին բանիւ հպեալք ասելով. քանզի գոյութիւն և ոչ անուանեալ յաստուածային գրոց, իսկ էութեան բան

(Եւ յաղագս մարդանալոյ Որդւոյն[ա] Աստուծոյ, խնդրի բան, որ ի Հօրէ երեւի[բ] անճառելի և անմարմնապէս, նոյն ինքն անսերմնաբար ի կուսէ, և զանխառնելիսն[գ] խառնէ յարմնջնին անճառաբար և առանց իմանալոյ Աստուած զնա գործէ միաւորութեամբ, անօրէնութեամբ. և մի Որդի խոստովանի, և պատուով երկրպագեալ և փառաւորեալ, որ ընդ ամենայն կիրս մարդկայինս էանց[դ] անարատապէս, կամաւ և ոչ ի հարկէ. զի զմեզ[ե] ճանապարհ գործեսցէ ի լինել զամենայն

ա. Ա՛ յՈրդւոյն. բ. Դ. ծնաւ. գ. Դ. մարմնացաւ ի կուսէն եւ զանճառելին. դ. Ն. անց. ե. Դ. մեզ.

ի հպելցուցանել զատաքեալն կրաւնիցն հարկաւ։ Ըստ այլ բանի առ յառաջելն իսկ զբանսն աւրինադրեցին, յորժամ զՍարելին զկարծիս հանիցեն, զի մի անձ կացուսցէ զբանիցն, որպէս զի զմին իր եռանուն կա(ր)ծեացուք ասել, այլ իւրաքանչիւր ոք յանուանեցելոցն յաղագս Երրորդութեանն յիւրում էութեան աստուածաբանեսցի։ Ջայսոսիկ յայնմ ժողովն։

Իսկ զայս մեք յաղագս գոյութեան և էութեան գտցուք. և ոչ ինչ արգելու ի ձեռն սղից ասել. որք զբանականի զառ ի հեթանոսացն իմաստասիրութիւն եղին, զգոյութիւնն բազում անգամ սահմանեցին, իսկ էութիւն ոչ ինչ էր զոր ապա յիշեցին։ Բայց Իռենէոս[1] ք ե ր դ ո ղ,[ա] ի տառականին արուեստի,[բ] և խուժ-

ա. ὁ γραμματικός

բ. Բաց է թողած «Αττικίστη բառը ·ի բառարանին որ Աթենաբանութիւն կոչի:

1 Իռենէոսը հռչակաւոր Հերիոդոր Աղեքսանդրացու աշակերտն էր։

արգարութիւնս. և ոչ բաժանեմք զՈրդի ըստ անօրէնութեան. զի Յիսուս Քրիստոս երէկ և այսօր նոյն և յաւիտեան, ընդ Հօր և ընդ Հոգւոյն[ա] Սրբոյ օրհնի յերկնաւորաց և յերկրաւորաց[բ] սրբասացութեամբ. ի մի հաւաքելով տէրութիւն և աստուածութիւն ամենասուրբ Երրորդութեանն. Արդ՝ որ այսպէս խոստովանիցեն ընդ նոսա և մեք, իսկ որ այլ ազգ իցէ՝ ինքն տացէ դատ յաւուրն[գ] դատաստանի.)

ԳԼ. ԽԹ.

**Յաղագս Յուլիանոսի արարեալ նեղութեանցն, որով նեղէր զքրիստոնեայս եւ վասն սպանանել կամելն զսուրբ Աթանաս:**

(Այսքան սակաւուց ասացան ըստ երանելոյն Աթանասի. Եւ որք ըստ նորայն համագոյութեանն էին խորհողք և օրհներգուք[դ] միշտ.)

ա. Գ. հոգս բ. Դ. յերկնաւորաց եւ երկրաւորաց. գ. Գ. դատաստան. դ. Գ. աւրհներգեսցուք:

ղուժ զբանսն կոչէ, քանզի և ոչ ի յոմանց հնոցն ճառ-
ռիլ. բայց թէ որ գտանի ոչ զայսոսիկ նշանել յոլոց
այժմ յարառեալ լինի։ Քանզի ըստ Սոփոկղեա որ ըստ
Փիւնիկեցւոցն,[ա] ղարան նշանեալ ասէ զէութիւնն. իսկ
ըստ Մենանդրոսի[բ] որպէս թէ ոք ասիցէ, զի կարա-
սաւն մրուր զէութիւնն։ Բայց այս գիտելի է զի հինքն
իմաստասէրքն զբանն պակասեցուցին, այլ սակայն նոյա-
գոյնքն զիմաստասիրաց յաճախապէս փոխանակ գոյու-
թեան բանիւ էութեանն հպեցան։ Իսկ զգոյութեանն
որպէս ասացաք զսահման յոլովարար բացատրեցին։

Իսկ թէ սահմանացն գոյ գոյութիւն պարառեալ
լինի. զինչ ի վերայ Աստուծոյ յոչ կարաւղին գոլ
պարառիլ տիրապէս հպեցաք բանիւք։ Իսկ Եւագրիոս
միայնական իւրում գիրս յանդգնաբար և անխորհրդ-
գապէս աստուածաբանել ոչ կամի. բայց որոշել որպէս
զպարզ ինչ աստուածային ամենայն ուրեք արտաքսա-
կարգէ։ Քանզի զզուգադրութեանցն լինել զսահման
ասէ. և ինքն զայս ըստ բանի ուսուցանէ, թէ ամենայն
նախադասութիւն, ասէ, կամ սեռ ունի ստորոգեալ,
կամ տեսակ, կամ տարբերութիւն, կամ յատուկ, կամ
պատահումն, կամ զյայսցանէն բաղկացեալ բան յոլոց
ոչինչ ի վերա սրբոյ Երրորդութեանն ի ճառեցելոցս է
առնուլ, այլ լռութեամբ երկրպագել անճառելոյն։ Զայ-
սոսիկ Եւագրիոս յաղագս որոյ և յետոյ ճառեսցուք։[1]
Բայց մեզ թէև յելսն զայս թուեցաւ ճառել. այլ որ-
պէս պիտանեաց պատճառաւ պատմութեան յիշեցաք։

ա. եւ Φοίνιξ՝ Փոյնիքս Սոփոկլէսի յայտնի ողբերգութիւններից է։
բ. Դիֆիլոսի բառը բաց է թողած, որով միայն չկայ, որ է կարասամա-
ղաց բանձրաբերդն։

1 Տես. գ/րք Դ. գլ. 23.

ԳԼ. Ը. [1]

Իսկ Աթանասիոս և յաղագս փախստեանն պատասխանատրական բան [ա] նախկին խորհրդովք առ որով առընթերին պատմեաց. յորոց զպիտանիսն և զաւգտակարսն ստանաւր գրեցից։ [բ]

ԳԼ. Թ. [2]

Իսկ Եւսեբիոս Բերկաղացեացն եպիսկոպոս առժամայն յետ ժողովոյն յԱղեքսանդրիայ յԱնտիոքա դիմեաց. և գտեալ զՊողինոսի Ղուկիփեռա ձեռնադրեալ, իսկ զբազմութիւնն պատառեալ. քանզի Մեղիտիոսի հետեւաւղքն առանձին լինէին ժողովեալք խռովեալք, զի յեղելում ձեռնադրութեան ոչ էին միաբան. և ըստգտեալ լինէր յինքեան եղելոյն գործով, իսկ առ Ղուկիփեռ ամաւթով լռեալ, և ընդ միւսոյ կողմանն ոչ հաղորդեալ, գնաց պատմել յատենի եպիսկոպոսացն զեղեալսն ուղղել։ Եւ յետ այսորիկ մեծ փոյթ եղեալ զանջատեալսն միաւորել ոչ կարէր։

Քանզի էհաս Մեղիտիոս յերքսորեացն ելանելով, և գտեալ առանձին ժողովեալս զորս ընդ նմայն ելեալս նորցունցն եղև առաջնորդ. բայց զեկեղեցին [գ] ունէր Եւզոյիոս՝ արիանոսական աղանդոյն առաջնորդ։ Իսկ Պաւ-

ա. ἀπολογητικὸς λόγος.

բ. Բնագրում եղած մեծ հատուածը Աթանասի գրքից՝ բաց է թողած.

գ. Բն զեկեղեցին.

1. Տես Աթանաս. էջ 320. Կասիոդ. Զ. 22. Նիկեփ. Ժ. 16.

2 Տես Սոզոմ. Զ. 13. Թէոդ. Գ. 4. Ռուփին Ժ. 30. Սուլպ. Սեվ. Բ. 41. Կաս. Զ. 23. Նիկեփ Ժ. 17.

Չ

նոս զմին ի փոքր եկեղեցեացն յորոց ի ներքս ի քա-
աքին ընդունէր, յորմէ զնա Եւզոյիոս առ ամսաւթ ոչ
հանէր։ Իսկ Մեղիտիոս արտաքոյ դրան քաղաքին զժո-
ղովս առնէր։[1] Ցայնժամ այսպէս Անտիոքա Եւսեբիոս
գնաց։

Իսկ Ղուկիփեա լուեալ ոչ ընդունել յԵւսէ-
բիոսէ ձեռնադրութեան նորա, թշնամանս վարկանէր և
դժնդակաբար զայրագնէր. և խղճայր հաղորդել ընդ Եւ-
սեբիոսի, և զժողովըն զհաճոյացեալսն փորձել ի վիճ-
մանէ խորհէր։ Այս ի ժամանակի տրտմութեան սաս-
ցեալս զբազումս մերժեաց յեկեղեցւոյն, և լինի այլ
Ղուկիփեռեանոսաց հերձուած։ Այլ Ղուկիփեռ զբար-
կութիւնն լնուլ ոչ կարաց, քանզի կապեալ լինէր իւրովք
խոստովանութեամբն, ի ձեռն որոց առաքեալ զիւր
զարկաւագ զոմն հաստատել զոյս ի ժողովոյն տպաւո-
րեալս խոստովանեցաւ։ Վասն զի նա զեկեղեցւոյն խոր-
հելով ի Սառդիկէ ի յընտանին գնաց աթոռ, իսկ որք
նախկին տրտմակիցն եղեալ, տակաւին այժմ յեկեղեց-
ւոյն որոշին։ Բայց Եւսեբիոս զաւրէն բարի բժշկի ըստ
արևելից ճանապարհն արարեալ, զտկարացեալսն ի հա-
ւատս կանգնէր,ա բաւականալով վեկեղեցականսն աւան
դութեան քարոզութիւնս։ Իսկ անդէ փոխեալ յԻւղ
ռեա հասանէր, և ելեալ ի յԻտալիա զնոյնն գործ
հաստատելով զբազումս ի ճշմարիտն հաւատ։

ա. Ձեռ. ունի ·կանգնէր·։

1 Անտիոք քաղաքը երկու մասից էր բաղկացա՛․ Հին քաղ
տարածւում էր Օրոնտ գետի ափին ու գտնւում էր առա
րից հիմնած եկեղեցին. եւ նոր քաղաքը՝ որ գտնւում էր Նո
շեմանաձեւ կղզու վրայ եւ հինգ կամուրջով միացած էր հնի հե
այդտեղ էր Մեղիտիոսը ժողով գումարում.

Գլ. Ժ. [1]

Հաստանէր և Իղառիոս Պիկտարացւոցն [ա] եպիսկոպոս՝ սա քաղաք է երկրորդ Ակիւտանւոյ, նախկին հաստատելով զհամափառութեան հաւատոյ կարգս և զօրս յԻտալիա և ի Գաղիա [բ] տեղիսն նախկին ելանելով յաքսորեացն ընդունէր։ [2] Եւ երկոքին ապա քաջաբար յաղագս հաւատոյն հանդիսացան։ Իսկ Իղառիոս և բանաւոր գոլով զլովք, զՀռովմայեցի լեզուով զհամագոյութեանն աւանդեաց զկարգս. ի ձեռն որոյ բանական ոյժոցիկ կարգեցաւ ճշմարիտս հաւատոց, բայց կարողաբար և արիանոսացն աղանդոյ, և անպարկեշտ նոցա հերձուածոյն ի վերայ յարեաւ։ Այս գոյզն ինչ՝ յետոյ յետ կոչման աքսորեցելոցն եղեւ։ Բայց այս գիտելի է. զի ըստ ժամանակին որք առ Մակեդոնիոս, և Եւսիոս Եւստաթէոս, և Սոփրոնիոս ամենեքին ի միջէն Մակեդոնիանոսք կոչեցեալք, ժողովս յաճախաբար ի յոլովս առնէին տեղիս։ Կոչելով և զօրս ի Սելեւկիայն զնոցա կամաւք հետևողսն, և զօրս միւսոյ կողմանն նզովէին. առէ [գ] և զօրս Ակակայն, և զօրս յԱռմինոն հաւատն հանելովք, [զ]ի Սելեւկիա ընթերցեալն հաստատէին, իսկ այս էր որ յԱնտիոքիա յառաջագոյն եղեալն, որպէս և յորում ի նախ քան զայս գիրսն արարաք յիշատակ. Եղեալքն հաստատութեամբ զամենայն եղեալսն իմայ [դ] ։

ա. ὁ Πυκτάβων ἐπίσκοπος.

բ. Բն. ասել ունի յեպիսկոպոսութիւնսն.

գ. Բն. ասեմ:

դ. Այս ամբողջ տողը չկայ բն. մէջ:

1 Տես Սոզ. Ե. 13. 14 Սուլպ Սեվ. Ս. Պատ. Բ 45. Ռուփին Ժ. 31. Կաս. Ջ. 24. Նիկ. Ժ. 17. 18.

2 Նա աքսորից վերադարձաւ 360 Թ.

Այսքան և վասն այսորիկ ճառեցաւ։

ԳԼ. ԺԱ.[1]

Իսկ Թագաւորն Յուլիանոս ըստ սկզբմանն քաղցր ամենեցուն երեւալ, յառաջ գոլով ոչ ամենեցուն նման ցուցանիւր։ Այլ ուրանաւր մատնութիւն ինչ ընդդէմ կոստանդիոսի լինէր, յաւժարագունիցն քրիստոնէից զխնդիրսն տայր. իսկ ուր ոչ այս էր, ընտանին ատելութիւն, զոր միաբան առ ամենայն քրիստոնեայս ունէրն, յայտնապէս ամենեցուն ցուցանէր։ Եւ առժամայն ապա զնաւատիանոսացն եկեղեցի որ ի Կիւզիկոն յԵլեւսիոսէ յատակ քանդեալն, վաղվաղակի շինել առանց պիտոյիցն հրամայէր. դատապարտումն ծանր ի վերա Ելեւսիոսի եպիսկոպոսն եդեալ, զոր թէ ոչ ընտանիւ զենակաւ [ա] զշինուածն արասցէ։ Իսկ զհեթանոսականութիւնն ընդունէր, և զտաճարն հեթանոսաց որպէս աստացի շինէր վաղվաղակի վերստին. և զոհս մատուցանէր Բախտին [բ] Կոստանդինուպաւլսի հրապարակաւ ի Բա-

ա. ծախիւք ἀναλώμασι.
բ. ἡ τύχη քաղաքի պահապան Ոգին։

1 Տես Սոզոմ. Ե. 15 եւ 5. Նիկեփ. Ժ. 21.

Բայց Թագաւորն [ա] որ ի սկզբան [բ] իւրոյ թագաւորութեան քաղցր զինքն ցուցեալ [գ] քրիստոնէից. սակաւ սակաւ յարուցանել մարտ առ քրիստոնեայս, [դ] բռնադատել ի զոհս կռոցն. սղոքանօք և պերճ բանիւք աղաչելով զմերովքս.

ա. Աʼ Յուլիանոս  բ. Ն. ի սկզբանէ. գ. Դ. եցոյց զինք  դ. Ն. սկսաւ. ե. Դ. եւ մարտս քրիստոնէից:

այլ դժնէաբար յայս փոփոխիլ· քանզի տեսանելով զորս ի Դիոկղետիանոսէ վկայեալսն ի քրիստոնէիցն պատուեալս յաւժարապէս փութալ առ վկայել զբազում հանճարեղս։ Նա իբրև զայսու նոքա քրիստոնէից փոխարինելով, առ այլ լինէր յեղեալ շարժումն· և զգերազանցեալն հըմութիւն քան զորոց Դիոկղետիանոսին ապուժէր։ Իսկ հալածանս ասեմ, զոր որպէս խառնակեալ զլռեալսն· զի ի Քրիստոս Յիսուս յուսացեալսն աստուստ ապա զտանէր զսկիզբնն։ա Որպէս զի ամենադժընդակն աւրինաւք հրամայէր քրիստոնէից և հեթանոսականէն մի՛ հաղորդել խրատուէ· զի մի, ասէ, սրեալք զլեզուսն պատրաստապէս առ բանականսն արուեստիւ պատահեսցին։

Գլ· Ժ·Գ·[1]

Ապա հրամայէր և ո՛չ զինուորեցուցանել ի Թագաւորութեան զոչ կամողսն թողուլ զքրիստոնէութիւնն և գալ առ ի զոհել կռոցն։ Նա ոչ քրիստոնեայս իշխանս աշխարհացն առնել· ասելով որպէս զի ընտանին քրիստոնէից հրամայէ աւրէն· ոչ հպել սրովք ընդդէմ

ա· ·Զի ի Քրիստոս · · · · զսկիզբն· չիք ի բն·

1· Տես Սոզոմ· Ե· 17· Զ· 6· Թէոդ· Գ· 8· 16· Գրիգ· Նազ· Ճառ· Դ· 63· 83· 96· Կասիոդ· Զ· 38· 39· Նիկ· Ժ· 23· 24·

մերժէ։ա Աստուստբ ապա սկիզբն դժնդակութեանց քրիստոնէից առնէ։ Եւ արգելու զփիլիսոփայութեանգ արուեստս ուսանել քրիստոնէից, զի մի զարուեստաւորսն ըմբերանեսցեն· և ոչ զինաւորեալդ քրիստոնէից հրամայէր, որ ոչ զոհէե կռոց, և ոչ ի քրիստոնէից իշխանս առնէր և կամ գործակալս· և խո-

ա· Ն· մերժէր բ· Ա՛ սռնէ· գ· Ա Ա՛ Բ զքրիստոնէութիւն· դ· Ա՛ եւ զինուորեալ· Ն· զինուորիւ: ե· Դ· ոչ զոհէր·

արժանի մահուան մեղուցելոցն. իսկ զբազումս ողոքանաւք և պարգևաւք ի զոհել յորդորէր։ [1] Եւ առժամայն որպէս ի բովս եղեալքն քրիստոնէք և կարծեցեալքն յայտնագոյնք ամենեցունց լինէին. քանզի ուղիղ կամաւք քրիստոնեայքն բարեմտագոյնք զգաւտին ի բաց դնէին. ամենայնի յաւէտ համբերել, քան ուրանալ զՔրիստոսն։ Յաւժարացեալք ընդ այնոսիկ էին. Հոբիանոս և Վաղէնտիանոս և Վաղէս, որ թէև ճշմարտաբար ոչ հաւատայր, որպէս և յետոյն ճառեսցուք, սակս Վաղեսի [ա] որք և յետոյ թագաւորացեալք. իսկ այլք որքան ոչ ուղիղ կամաւք քրիստոնէանային, կամ որքան զինչսն, և զոր աստանաւր պատիւ ճշմարիտ երջանկութեանն նախկին դատէին, ոչ արարեալք փոյթ ի զոհելն խոնարհէին։

Յորոց մին էր Կոստանդինուպաւլսի իմաստակն Եկիբողիոս, սովորութեամբ թագաւորացն ասացեալ, [բ] բայց առ Կոստանդիոսիւ ջերմ սրտիւ քրիստոնէանալ կեղ-

ա. ·Որ թէեւ . . . . սակս Վաղէսի· չիք ի բն·
բ. Բն· Տեսանեաւ:

1 Գրիգոր Նազ· եւ 1Ր· Խորեն· վկայութեամբ թագաւորը իւր պատկերի մօտ նկարել էր տալիս նաեւ աստուածների պատկերներ, որպէս զի ժողովուրդը կայսերական պատկերները յարգելիս· յարգէր նաեւ աստուածներին·

բամանգեալ ասէր, ոչ հրամայեն օրէնք քրիստոնէից զայս առնել, և ոչ սրով կալ ընդդէմ թշնամեաց. Բայց ողոքէր թողուլ զքրիստոնէութիւն. և այսպէս մեծարանօք զինուորեալս. Իսկ նոքա կամօք [ա] թողին զզինուորութիւն, քան թէ ուրանալ զՔրիստոս. և վասն անուան Քրիստոսի չարչարանս յօժարեալս ընդունէին.

ա. Դ. կամաւ:

ծառայէր. և սա արիոսական գոլով, իսկ առ Յուլիանոսիւ փոյթ դարձեալ հեթանոս եղևէրն և առժամայն յետ Յուլիանոսի քրիստոնեայ լինել կամէր։ Քանզի ընկեցեալ զինքն առաջի նախկին դրանն տանն աղաւթից, կոխեցէք զիս, գոչէր, զաղս անզգայի. այսպէս էր դատարկ և դիւրահաւան Եկիբողոս և յառաջն և յետոյ։

Իսկ յայնժամ թագաւորին հատուցանել Պարսիցն խորհեալ,[1] փոխանակ զի առ Կոստանդիոսիւ ի Հռովմայեցւոցն ընթացան աշխարհս, և փութաբար ընդ Ասիա յարևելից անցանէր կողմանս։ Եւ տեսեալ զորքանութիւն չարեաց պատերազմին, և որպէս զի բազմաց պէտք են ընչից, և զի առանց այսոցիկ ոչ ուղղի, խորամանկաբար մտածեաց ի քրիստոնէից ժողովել զինչսն։ Քանզի ընչական դատապարտութիւն յոչ կամողացն զոհել եդ ի վերայ. և պահանջումն ընդդէմ ճշմարիտ քրիստոնէիցն լինէր յոյժ[2] և իւրաքանչիւր ոք ըստ զօրին առանց ընդ բանս ինչ ածելոյ մատուցանէր։ Եւ

1 Թագաւորը պատերազմից առաջ իր աստուածներին զոհեց եւ մեծ տօներ կատարեց. նա մինչեւ անգամ մտադրուել էր յաղթութիւնից յետոյ քրիստոնեաներ եւս զոհել։

2 Գրիգ. Նազ. վկայութեամբ, նոյն իսկ եկեղեցիների ոսկեայ եւ արծաթեայ անօթներն էլ էր կողոպտում։

Նա խորհէր Յուլիանոս ի Պարս երթալ, և հարկս առնոյր բազում ոչ ի հեթանոսաց, այլ ի քրիստոնէից ըստ[ա] ատելութեան իւրոյ. զի ջանայր այնպէս եղծանել զքրիստոնէութիւն, և զհեթանոսութիւն զօրացուցանել ամենայնիւ, և յամենայն տեղիս զօրացուցանել զհեթանոսական[բ] աղանդս, և զքրիստոնէայս[գ] ընդ ձեռամբ առնել.[դ]

ա. Դ. վասն. բ. Դ. զհեթանոսութեան. գ. Ա՝ զքրիստոնեայսն դ. Դ. առնէր.

Թագաւորն ի ժողովմանէ անիրաւ զանձուցն վաղվաղակի մեծատուն լինէր. քանզի հպէր ուրինաւք ուր ոչն հասանէր, և ուրանաւր զանցն առնէր: Եւ յայնմ կատարիւր ճշմարիտ առակքն Սողոմոնի. եթէ Թագաւոր կարաւտ ընչից մեծ զրպարտող:[ա] Այսպէս և հեթանոսքն առ քրիստոնեայսն ընթանային, և ժողով խմաստասիրել ասողացն լինէր: Եւ նուէրս ինչ համակարգէին, որպէս զի և զթաւհատեալք զմանգունսն զոհէին. կոյսս արուս և էգս. և ի մարմնոյ կոյս մանգանցն ճաշակէին. և զայս առնէին և ըստ այլ քաղաքաց, բայց առաւել յԱթենաս և յԱղէքսանդրիա:

Ուրանաւր և հակառակ Աթանասի եպիսկոպոսի չարախորհութիւն արարեալ ծանուցանեն Թագաւորին, որպէս զի ժանտացանէր զքաղաքսն և զամենայն Եգիպտոս. և պարտ գոլ վճարելՐ զնա ի քաղաքէն. և շարժէր ի թշնամութիւն նմա Թագաւորական հրամանաւ Աղէքսանդրւոյ եպարքոսն:

Գլ. ԺԴ.[1]

Իսկ նա փախչի դարձեալ, ասելով ցծանաւթսն. Սոփեսցուք ով սիրելիք փոքր ինչ, քանզի ամպ է, և ան-

ա. Ձ ւ յայնմ . . . . զրպարտող. չիք ի բնագրին:
բ. բն. արտաքսել:

1 Տես Սողոմ. Ե. 15. Թւոց. Գ. 9. Սոփոն. Ժ. 34. Կոր. Զ. 26. Եփես. Ժ. 19.

Եղև[ա] ամբաստանութիւն զերանելոյն Աթանասէ ի հեթանոսաց, թէ խափանէ զոհս կռոցն, և ոչ թողու յուսուցանելոյ զքրիստոնեայս. ոչ անսալ Թագաւորի.[բ] զի անցանելոց է վաղվաղակի: Եւ բարկացեալ Թագաւորն՝ հրամայէ եպարքոսին Աղէքսանդրի ունել զնա ի պատուհասս ի բանտի: Զ.այս լուեալ[գ]

ա եւ Դ. եղեւ. բ. Ա՝ Թագաւորին. գ. Դ. Աթանասի.

ցանէ։ Եւ զայս ասացեալ առժամայն սակաւաւք ծանաւթիւք մտեալ ի նաւ ընդ Նիւղոս յԵգիպտոս անցանէր, և հետավայր լինէին որք ըմբռնեալն զնայ փութային։ Եւ վասն զի լսէին ոչ հեռի զոլ վարողացն․ քանզի զվարողսն դարձուցեալ կամէր․ և այսուիկ փոյթ լինէր, քանզի մերձ ի վարողսն դոյզն ինչ յառաջ խոյս տուեալ էին։ Իսկ խնդրողացն ոչինչ իմացեալ, հարցանէին զորս Աթանասայն․ եթէ ուրեք զԱթանաս տեսեալ իցեն։ Իսկ նոքա մաւտ ուրեմն ազդէին զնա լինել, և հաւատացուցանելով զնոսա՝ ոչ հեռի ուրեք նմա հասանել ասէին․ այսպէս ապա խաբեալք, փութաբար ի նանիր վարէին։ Իսկ նորա խոյս տուեալ յԱղեքսանդրիայ էհաս լռելեայն, և անդ գաղտաբար կեայր մինչև հալածումն դադարեաց․ այսպիսիս ապա և յետ բազում քրիստոնէական հալածանացն և ընդ հեթանոսականացն չարչարանս էանց Աղեքսանդրւոյ եպիսկոպոսին։ Իսկ որոց աշխարհացն իշխանաց ժամանակ ընտանի շահու զթագաւորին աղանդ կարծելով, կատարմամբ թագաւորական հրամանացն, զքրիստոնեայսն չարաչար գա-

սէ ցժառանգաւորս [ա] եկեղեցւոյն․ Որդեակ, [բ] փութով անցանելոց է մոլորութիւնս․ Եւ մտեալ ի նաւ սակաւ ընկերօք, անց ընդ Նեղոս [գ] յԵգիպտոս․ և հետի [դ] մտեալ զինուորացն ունիլ զԱթանաս, իսկ նոքա ոչ դադարէին [ե] ի խուզելոյ զայրն Աստուծոյ․ իսկ նորա խոյս տուեալ և այլակերպեալ զինքն, գայ յԱղեքսանդր և թաքուցանէ զինքն անդ մինչև դադարեաց հալածանքն։

Իսկ որ զրպարտեալ քրիստոնեայքն էին, և ի հարկաց բռնաւորեալք, և զամենայն ինչս առնուին բռնաւորքն, զոր կամէր

ա․ Ա՝ ցժառանգաւոր․ բ․ Դ․ Բ որդեակք․ գ․ Ա՝ Նեղոսիւ․ դ․ Դ․ զհետ ե․ Դ․ եւ ոչ դադարէին։

նէին, և գանձս առաւել քան զպայտն գործեալք. իսկ էր յորժամ և մարմնական պատիժս ի վերայ ածէին։ Զայս լսելով Թագաւորին անտես առնէր. և մինչ զքրիստոնեայսն մատուցանէին յաղագս այսոցիկ նոցա. Ձեզ է, ասէր, չարաչար կրից համբերել, քանզի այս ձեր աստուծոյն պատուիրան է։

Գլ. ԺԴ.[1]

Իսկ Միւռոսի[ա] ի Փռիւգիոյ քաղաքին, որ աշխարհին իշխան Ամաքիոս յայնժամ բանալ զմեհեանսն հրամայեաց, և մաքրել զոր ի ժամանակին ժողովեալ աղբն, և զորս ի նմա կուռս հպատականաց արժանաւորէր։ Այսորիկ եղեալ, յոյժ զքրիստոնէութիւնսն տրտմեցուցանէր։ Իսկ Մակեդոնիոս ոմն, և Թէոդուղոս, և Տատիանոս նահատակքն Քրիստոսի, նախանձու քրիստո-

ա. Ձեռ. ունի «Փիւռոսի», բն. Μηρός.

1 Տես Սոզոմ. Ե. 11. Կասիոդ. Զ. 13. Նիկ. Ժ. 10.

Թագաւորն, զի ժողովեսցի[ա] արծաթ բազում ինքեան. գային[բ] զեկուցանէին Թագաւորին զտառապանս և զնեղութիւնս. Իսկ Յուլիանոս ասէր. Ձեր Քրիստոս արար ձեզ դատաստան, տալ զկայսերն կայսեր. և որ առնու զբաճկոնն թողուլ ի նա զամենայն զոր ինչ ունի. Այսպէս ոչ գոյր իրաւունք քրիստոնէից.

Գլ. ԺԵ.

Յաղագս մեհենից կռոցն խորտակեցելոյ ի քրիստոնէից եւ նոցին նահատակութիւն:

Եր մեհեան[գ] ուրեմն արգելեալ[դ] ի պաշտամանցն աղբով լցեալ, զոր իշխան աշխարհին մաքրէր ի պաշտօն կռոցն. Եւ[ե]

ա. Դ. ժողովեսցին. բ. Գ. ինքեանք գային՝ զեկուցանէին. գ. Դ. մի. դ. Գ. արգելուլ. ե, Դ. իսկ.

նէութեանն զօրութիւնն ոչ կրեցին, այլ ջերմ խոր-
հրդով զառաքինութիւնն ստացեալք, ի գիշերի ի մե-
հեանն վազեալք խորտակեն զկուռսն։ Իսկ դատաւորին
ի վերա եղելոցն դժնդակեցելոյ, և զբազումս զորս ի քա-
ղաքին առանց պատճառոյ ֆնասել փութացելոյ, մա-
տուցանեն զինքեանքս տանուտեալք գործոյն. և յաւէտ
նոքա սակս ճշմարտութեանն մեռանիլ նկրտէին, քան
տեսանել զայլս փոխանակ նոցա մեռեալս։ Զսոսա ըմ-
բռնեալ դատաւորին որպէս անիրաւ իրի ի նոցանէն
եղելոյ ի ձեռն զոհիցն պատասխանել հրամայէր։ Իսկ
նոքա զայս ոչ արարեալ, պատժել սպառնայրին։ Իսկ նոքա
վստահագոյնք խորհրդովն եղեալք, և փոքր ինչ սպառ-
նալեացն հոգ տարեալք, զամենայն պատրաստաբար ըն-
դունէին. և մանաւանդ մեռանել կամէին քան ի զոհսն
շաղախիլ։ Իսկ յայնժամ ընդ ամենայն տանջանաւք
նեղեալք արկեալ զարսն. իսկ յետոյ եդեալ ի կասկարայս [ա]

ա. ἐσχάρα.

արք երեք ջերմ ի հաւատս Քրիստոսի, եկեալ ի գիշերի [ա] խոր-
տակեցին զկուռսն, որոց էին անուանքն Մակեդոն և
Թէոդողոս [բ] և Տատիանոս։ [գ] Իսկ իշխանն ի պատիժս խոր-
հէր արկանել զքրիստոնեայսն. և նոքա ի մէջ անցեալ
զինքեանս մատնէին. ոչ զանգիտացեալք [դ] ի մահուանէ քան
թէ այլոց պատուհասիլ։ Ասէ իշխանն. Ոչ [ե] այլ ինչ փրկէ
զձեզ ի մահուանէ, բայց եթէ զոհէք [զ] աստուածոցն։ Իսկ նոքա
ասեն. մեք Աստուծոյ մատուցեալք զոհս և ոչ դիւաց, որ ինչ
կամիս արա. Իսկ նա զերանելիսն ընդ բազում չարչարանօք
արկեալ, և ոչինչ վնասեալ, յետոյ հրով այրեաց։ (Եւ այսպէս

ա. Ա՝ գիշերի խորտակեցին. բ. Ա՝ Թէոդորոս. գ. Ա՝ Տատիանոս։
դ. Դ. Ե՝ զանգիտեալք. ե. Ա՝ չիք. զ. Բ. զոհք.

և հուր ի ներքոյ՝ լուցանել հրամայեաց։ Այսպէս զ-
կատարէր. իսկ նոքա զկատարումն արութեանն այ-
քան ցուցին առ դատաւորն զայս ասելով. եթէ ցան-
կացար ի մարմնոյ խորովելոց ճաշակել, շրջեա զմեզ և
ի միւս այլ կողմն, զի մի՛ քեզ կիսախորովան անորժելի
ճաշակմամբ երևեսցուք։ Եւ այսու պատճառով սոքա
զվարս իւրեանց կատարեցին։

## Գլ. ԺԶ.[1]

Բայց Թագաւորին հրաման, որ զքրիստոնեայսն ի հեթանոսական խրատուէն առնուլ արգելոյր, զԱպողինարսն, որպէս և յառաջն ասացաք յիշատակ, հանճարեղք բանից։ Վասն զի հայրն քերականացն, իսկ իմաստականացն որդին պիտանելիս զինքեանս առ ներկայումն ժամանակաւ քրիստոնէիցն ամենեցունց ցուցանէին. քանզի առժամայն քերթողն զարուեստն քե-

1 Տես Սոզ. Ե. 18. Կասիոդ. Զ. 37. Նիկեփ. Ժ. 25.

կատարեցին զնահատակութիւն[ա] իւրեանց ի փառս և ի գովութիւն Աստուծոյ։) Եւ Թագաւորն Յուլիանոս միշտ ի քրիստոնէութեան եղծումն ջանայր. և արգել զարուեստ[բ] ի քրիստոնէից ուսանել.

## Գլ. ԺԱ.

*Յաղագս Ապողինարի եւ արհեստին իւրոյ եւ հերձուածոյն զոր եմոյծ յեկեղեցին:*

Ապողինարոս որ զճարտարութիւն[գ] ունէր, և հայրն նորէ զքերականութիւնն. երկոքին[դ] էին հանճարեղք յիմաստ և ըստ ժամանակին երևելիք էին։ Զանգէն[ե] քերթողն[զ] քերկան արուեստիւ[է]. քրիստոնէական օրինակաւ շարակարգ

ա. Ա՝ զնահատակութիւնս. բ. Դ. եւ արգելոյր. գ. Գ. զճշմարթիւնն. դ. Գ. երկոքինն էին: ե. Դ. Գ. զի անդէն. զ. Գ. քերթո է. Ա՝ արուեստիւն.

րական քրիստոնէական աւրինակաւ շարակարգէր, և զՄովսէսի գրեանն քաջականն կոչեցելով չափով[ա] փոխեաց. և զորքան ըստ հին կտակարանացն՝ պատմութեանն աւրինակաւ շարագրեաց։ Զայս մաստնականն [բ] չափով զուգակարգեաց. իսկ զայս և Նախազերգութեանն ձայնիւ գրաբար արտաքսապործեաց, [գ] և ամենայն իսկ չափով թուականութեանն հպէր, որպէս զի մի ինչ յեղանակ հեթանոսական լեզուին զքրիստոնէականսն։ Իսկ մանուկն Ապողինառիոս բարի առ ասելն յարդարեալ, զաւետարանսն և զառաքելականսն, և զամենայն իսկ ըզքրիստոնէականսն աւրինակաւ ի ձեռն բանից արտագրեաց. որպէս և Պղատոն զհեթանոսացն, նոյնպէս և սոքա զքրիստոնէութեանն պիտաւորեալք երևեալ, յայնժամ զթագաւորին իմաստմանս ի ձեռն ընտանի վաստակոցն յաղթահարեցին։ Այլ Աստուծոյ նախախնամութիւնն լաւագոյն եղեաւ քան զսոցա փոյթս, և քան

ա. ἡρωϊκοῦ μέτρου·

բ. δακτυλικῷ.

գ. τῷ τῆς τραγῳδίας τύπῳ δραματικῶς ἐξειργάζετο·

Զգիրս[ա] Մովսիսի քաջապէս չափով, փոխեաց և զամենայն հին Կտակարանսն պատմութեան օրինակաւ շարագրեաց. իմաստիւ չափով զուգակարգեաց. և զայս Նախակարգութեամբ ձայնիւ գրաբար արտաքսագործեաց. և զամենայն իսկ չափով թուականութեան հպէր. Իսկ Ապօղինարոս բարի [բ] առ ասելն յարգարեաց զաւետարանսն [գ] և զառաքելականսն և զամենայն գիրս քրիստոնէից օրինակաւ ի ձեռն բանից արտագրեաց. որպէս Պղատոն զհեթանոսացն, նոյնպէս յայնժամ սոքա զքրիստոնէից արտագրեցին, և զթագաւորին իմաստս ի ձեռն ընտանի վաստակոցն յաղթահարեցին. այլ Աստուծոյ Նախախնամութիւն

ա. Դ. արուեստիւ շարագրէր զգիրսն. բ. Դ. զքարին, գ. զաւետարականսն:

զթագաւորին դիմումն· քանզի ոչ ընդ երկար ինչ ելանէր հրաման թագաւորին, որպէս և յառաջեալք յայտնեցուք· որովք վաստակքն ի հաւատարումն ոչ գրին համարին։ Այլ ասիցէ ոք առ մեզ երագապէս յամենեցունց· զիա՞րդ նախախնամութիւն Աստուծոյ զայսոսիկ լինել, քանզի փոյթ կատարումն թագաւորին աւգուտ քրիստոնէութեանն լինի յայտնեալ։ Բայց առընթեր ընկենուլ զԱպողինարացն զքրիստոնէական արարածսն և դարձեալ քրիստոնէիցն զհեթանոսացն ուսանել զխըրատ, ոչ ևս այս աւգուտ լինել քրիստոնէութեանն· քանզի մանաւանդ առ վնաս լինել հեթանոսականն խըրատու զբազմաստուածութիւն ուսուցողին։ Առ այսոսիկ այսուհետև ենթակեալսն որպէս է վարկանիլ ասասցուք։

Հեթանոսականն խրատ ոչ ի Քրիստոսէ և ոչ ի նորուն աշակերտացն, ոչ որպէս զԱստուածաշունչ ընկալեալ եղև, և ոչ որպէս զվնասակար արտաքս արկեցաւ. և զայս որպէս համարիմ ոչ աննախախնամար արարին։ Քանզի բազումք յորոց հեթանոսացն իմաստասիրելոց

եղև առաւել քան զնոցա փոյթ.

Զի թագաւորին յայսոսիկ փոյթ՝ օգուտ մեզ առնէ՝ որ ի հեթանոսաբար [ա] արուեստից որոշեալք և ի խրատուց բազմաստուածութեան մոլորութեան զերծեալք յորոգայթից. և զայսոսիկ ոչ վարկպարազի համարեցան զարանցն փոյթ։ [բ] Զի ի ձեռն այսոցիկ իրաց պարտաւորեալ զնոսա ի վայրապարանս [գ] յանդիմանեցան, և այս ոչ վարկպարազի, այլ ըստ [դ] Քրիստոսի և առաքելոցն խորհրդածութեան. զի իմաստութեամբն Աստուծոյ՝ ոչ ծանեաւ աշխարհ իմաստութեամբն զԱստուած. Հաճեցաւ Աստուած քարոզութեամբ յիմարացն ապրեցուցանել

ա. Դ. հեթանոսաց. բ. Դ զփոյթն. գ. Ն. վայրապարսն. դ. Ն. զըստ

ոչ հեռագոյն ի ճանաչելոյ զԱստուած եղեն։ Վասն զի առ որս աննախախնամութիւն մուծողս Եպիկուրեանս, այլ որպէս զհակառակս բանականն իմաստութեամբ քաջաբար պատահեցան զանաստուածութիւնն[ա] նոցա խափանելով։ Եւ ի ձեռն այսոցիկ բանից պիտաւորեալք սիրողացն, զբարեպաշտութիւնն կարգեցան, և ոչ ևս զբանէ զլխոյն կալան առ ի չգիտել զծած(կե)ալն յազգացն և յաւիտեանցն ըստ Քրիստոսեանն խորհրդոյ։ Եւ զայս այսպէս ունել ի Հռովմայեցւոցն թղթի[1] առաքեալն ցուցանէ,[2] որովք ասէ։ Քանզի յայտնելոց է բարկութիւնն Աստուծոյ յերկ(ն)ից ի վերայ ամբարշտութեան և անաւրէնութեան մարդկան, որք զճշմարտութիւնն անիրաւութեամբ ունին. վասն զի գիտութիւնն Աստուծոյ յայտնի է ի նոսա։ Քանզի Աստուած իսկ յայտնեաց նոցա. քանզի աներևոյթք նորա ի սկզբանէ աշխարհի արարածովքս իմացեալ տեսանի, զի մշտնջենաւոր նորա զաւրութիւն և աստուածութիւնն առ ի լինել նոցա անպատասխանիս. վասն զի ծանուցեալք զԱստուած ոչ որպէս զԱստուած փառաւորեցին։ Այսքիկ երևին գիտութիւն ճշմարտութեան ունելով զոր Աստուած նոցա յայտնեաց, իսկ պար-

ա. Բն. ἀμαθία· անուսումնութիւն։

1 Տես Թղ. Ա. 18։

2 Ձեռագրի այս էջի կէս լուսանցքը չէ գրուած, բայց ոչինչ պակաս չէ։

զհաւատացեալս և արդարև Աստուածաշունչ գիրք առաքելոցն առաւել քան զառաւելս արդար, և ունին զաստուածայնոցն սքանչելիս և զկարգս յերկիւղածութեան, և յուղիղ վարս և ի հաւատս աստուածասիրաց[ա] ունողացն և լսողացն սահմանեցին, և ոչ ըստ արուեստի բանակռուացն. որք ընդ ճշմարտութեան

ա. Դ. աստուածսիրացն։

տաւորք լինին, զի ծանուցեալք զԱստուած ոչ որպէս զԱստուած փառաւորեցին: Այսպէս ոչ արգելով զհեթանոսացն ուսանել կամաւ խորհեցելոցն զուսանելն թոյլ ետուն. բայց մին այս բան ճառեցաւ մեզ առ նախակայսրն, իսկ միւսն ևս այսպիսի: Աստուածաշունչ գիրք կարգս աքանչելիս և արդար և աստուածայինս ուսուցանեն, և ի բազում արդար և երկիւղածութիւն և վարս ուղիղս լսողացն եդին, և հաւատս աստուածասէրս փութանակի ունողացն, և ոչ ևս արուեստ ուսուցանեն բանական առ ի կարող լինել պատահել կամողացն ընդ ճըշմարտութեանն պատերազմել: Զի յոյժ պատերազմին պատերազմունքն, յորժամ նոցաովքն զինուք հպիմք ընդդէմ նոցա, իսկ այս ոչ յաւգուտ քրիստոնէիցն որովք Ապողինարքն գրէին: Զայս և թագաւորին Յուլիանոսի դիտեալ աւրինաւք խափանէր զքրիստոնեայսն զհեթանոսացն խրատել, քանզի քաջ գիտէր, որպէս զի այպանեալք նորա առասպելաքն բարէմատնելի զնորայն առնելոց են զկարծիս: Յորոց ըստգտեալ և Սոկրատիոս, որ ըստ նոցայն գլխաւոր իմաստասէրն, որպէս զի պակասագրելով զորս ի նոսա դևսն [ա] դատապարտեցաւ:

Արդ իբրև զգուշացուցանեն զմեզ յորժամ Քրիստոս և նորուն առաքեալն. Թէ լինել սեղանաւորս փորձըս, որպէս զի զամենայն փորձել և զբարին ընդունել. [1] և զգուշանալ. Մի ոք [2] իցէ որ զձեզ խաբեսցէ ճարտարմտու-

ա. Յն. τὰ δαιμόνια·

1 Տես Թղ. Ա. Թեսաղ. Ե. 21.

2 Տես Թղ. Կողոս. Բ. 8.

պատերազմին: Որպէս Յուլիանոսն որ ոչ միայն իշխանականաւն
վարէր ի մարտ քրիստոնէութեան. [բ] պերճաբան [գ] բանիւք ա

ա. Ա իշխանականովն. բ. Դ. այլ. գ. Դ. պերճ:

թեամբ և սնոտի պատրանաւք։ Իսկ այսոցիկ հաւանեալք ապա զզէնս պատերազմացն ստասցուք [ա] և ստանալն ոչ պատերազմացն տալցուք հոգ. այլ զչարն արտայեղեսցուք, իսկ զճշմարիտն և զբարին ընդունելով զամենայն ընդալցուք, փորձելով զբարին ուրանուր ընտանի ճշմարտութեանն իցէ։ Իսկ թէ ոք զայս մեզ բռնաբար ասել վարկանի, զմտաւ ածցէ զի առաքեալն ոչ միայն ոչ արգելու ուսանել զհեթանոսական խրատ, այլ երևի և ոչ իւր անփոյթ արարեալ զխրատոյն, վասն գիտելոյն զբազում ճառեալսն հեթանոսաց։ Զի ուստի՞ ասէր. Կրիտացիք [1] հանապազասուտք, չարաճճիք, և դատարկապորտք. եթէ ոչ զԵպիմենիդոսի առն Կրէտացւոյ ընթեռնոյր։ Կամ ուստի՞ գիտէր. Զորոյ և ազգն իսկ եմք, [2] եթէ ոչ Ջերևելին [բ] աստեղաբաշխողին Առայտայ [գ]

ա. Բն. այս նախադասութիւնը բացասականով է գործ ածել. – Իսկ այսոցիկ ոչ հաւանեսցուք, եթէ ոչ զզէնս պատերազմացն ստասցուք։

բ. τα Φαινόμενα գրքի տիտղոսն է։

գ. Ἀράτου·

1. Տես Տիտ. Ա 12։

2 Գործք Առաք. ԺԷ. 8։

Նարգէր զքրիստոնէութիւն, և զհեթանոսական մոլորութիւնն ի պարզամիտս ահաւոր և իրաւացի ցուցանէր. զի այնպէս է խորամանգութեան մարդք. Բայց զնոցայն գիտել և նոքօք ըզնոցայն յանդիմանել, ողջախոհաց [ա] և իմաստասիրաց անձանց է. որպէս [բ] առաքեալն Պօղոս նոցա զԵպեմենիդոսէ առ Կրետացւոյն [գ] ասէ զբանն. Կրետացիք հանապազասուտք, չարաճճիք, դատարկապորտք. և սոյդ ասէ զվկայութիւնս. Եւ բազումս է ասել զառաքելոց. [դ] Զի պարտ է ասել բարի և յարտաքնոցն

ա. Ն. ողջախոհացն. բ. Ա՛ եւ առաքեալն. գ. Դ. առ Կրէտացին. դ. Ա՛ զառաքելոցն.

գիտէր։ Այլ և զապականեն [1] զբարս քաղցունս բանք չարք, ցուցանէ ոչ անլուր Եւռիպիդեայ Արարածին Հանդիպեալ։ Եւ զի՞նչ պարտն է սակս այսորիկ ասե երկայնել. որև երբեմն կանխեալ եղև. ուպէս զի յու ժեմնէ անարգել սովորութենէ որք ըստ եկեղեցեաց վարդապետքն ցուցանին մինչև ցծերութիւն զՀեթանո սացն ծգնեալք. և զայս բարէլեզութեան աղագաւ կրթութեան մնաց, իսկ զայս և նոցա իւրեանց ա տաքսախորհողացն ըստգտումն յաղագս որոյ և զգուշացան Այսոքիկ սակս Ապողինարացն ուպէս էր վարկանիլ ծա ռեցաւ։

ԳԼ. ԺԷ. [2]

Իսկ Թագաւորն Յուլիանոս բազում զանձս ի քր րիստոնէիցն ժողովեալք. և ի Պարսս կոյս զփոյթն արար

ա. δραμάτων·

1 Ա. Կորնթ. ԺԵ. 33.
2 Տես Սոզ. Ե. 19. Նիկ. Ժ. 27.

ընդունել. այսքան տասցաւ վասն Ապօղինարայ։ [ա] (Սա յիմ տակաց [բ] որ և յետոյ Հերձուած եմոյծ յեկեղեցի Ապո նար. որ մարդկային [գ] հոգի ոչ ունել ասէր Քրիստոսի. և այսոցիկ ի բազմաց յաղթահարեալ՝ հաւանեցաւ հոգի Քրիստոսի, բայց միտս մարդկայինս ոչ. փոխանակ մտաց տուծոցն բանն ասէ. որ զամենայն յամենայնէ ներգո որ ի բազմաց ուղղափառաց յաղթի)։

ԳԼ. ԺԲ.

Յաղագս հալածանացն որ ի Յուլիանոսէ եւ տանջելն զսուրբսն 1

Իսկ Յուլիանոսի ժողովեալ բազում արծաթ ի նէից և յառաջ ելեալ երթայ ի Պարս ի մարտ։ Եւ

ա Դ. յԱպօղինարայ. բ. Ն. իմաստակաց. գ. Ն. զւ

եալ յԱսորեացն հասանէր Անտիոքիա։ Յոր հասեալ և զորպիսին իւր զբազմապատուականութիւն և Անտիոքացեացն կամելով ցուցանել, զգլխս վաճառուցն իւրաց առաւել քան զպարտն ի նուազն իջոյց, ոչ կամելով զժամանակին անձկութիւն, և ոչ համարելով որպէս զի եկն բազմամբոխ զաւրուն աշխարհականացն ի հարկէ ճնաս լինի, և զաննախանձութիւն քաղաքացն հատանէ։ Վասն որոյ վաճառականացն և վաճառուցն կապեղաւից^ա ոչ տանելով զառ ի Թագաւորին հրամանէ ճնան, ի վաճառականութենէն յայնմժամ ի բաց կացին։ Եւ յայսմանէ վաճառքն պակասեցան. նաև զյաւելումն ևս ոչ տարեալ Անտիոքացեացն. քանզի դիւրափոփոխ մարդկանն ոչ արարեալ փոյթ ի Թշնամանս ընդդէմ Թագաւորին եղեն տարեալք. զոչէին հակառակ նորա և ծաղր առնէին զմաւրուսն, քանզի խորամուրու էր, կրտրել զայն ասէին, և չուանս ի նմանէ հիւսել. դահեկանի նորա ցուլ ունել, և զաշխարհ ի նմինն կործանեալ։ Քանզի Թագաւորն պաշտաւն ասէր դիցն գոլով, և ցուլս յաճախապէս ի բագինս կռոցն մատուցանելով զոհէր. բագին և ցուլ գրելով յիւրումն դահեկանին։ Յայսմ ափսոսանաց ի բարկութիւն անկեալ Թագաւորին, սպառնայր զամենայն չար առնել Անտիոքացեացն քաղաքի, ի Տարսոն Կիւղիկեցւոցն դառնալ, և անդ ըզպատշաճն հրամայել պատրաստել առնուլ փութայր։ Ուստի պատճառ ընդունէր իմաստակն Ղիբանոս գրել

ա. Κάπηλοι մանրավաճառաց:

յԱնտիոք, ոչ սակաւ առմունս ընչից առնէր մեծատանց և վաճառականաց քրիստոնէից, նաև յեկեղեցեաց ևս։ Եւ զմե·

զաղաչականն[ա] վասն Անտիոքացեացն. և առ Անտիոքացիսն սակս Թագաւորին սպառնալեաց։ Այլ զայս բանս գրել ասեն իմաստակին ոչ և ս բ ա զ ո ւ մ ս ճ ե լ ։[բ] Իսկ Թագաւորին գործովք Թշնամանողացն հատուցանել կամեցեալ, Թողեալ հատուցանել, ընդդիմական ափոսանաւք զբարկութիւնն էլոյծ. քանզի առ խորհրդիւ նորայ անտիոքականն մաւրուատեցութիւնն բան արարեալ, նշանագիրս բանականս յԱնտիոքացեացն էԹող քաղաքի։ Սակս այսոցիկ այսքան ճառեցաւ։

Բայց ասելի է և որպիսի ինչ յԱնտիոքիա քրիստոնէիցն Յուլիանոս յայնժամ արար։

Գ Լ. Ժ Ը.[1]

Քանզի զորս ըստ Անտիոքիա մեհեանն բանալ հրամայել. աւճուհն առնուլ որ ի Դափնին Ապողոնէ[2] փուԹայր։ Իսկ դեւն որ բնակեալ էր ի տաճարին երկնչելով ի դրացւոյն Բաբիղասա ասեմ ի վկայէն, ոչ առնէր պատասխանի, քանզի մերձ էր տապանն յորում մարմին սրբոյն կայր Թաքուցեալ։ Իսկ Յուլիանոս իմացեալ ըզ-

ա. τὸ πρεσβευτικόν.

բ. առ բազումս արտասանել εἰς πολλοὺς εἰρηκέναι.

1 Սոզ. Ե. 13. Թէոդ. Գ. 10. Ռուփին Ժ. 35 Կասիոդ. Զ. 31. Նիկեփ. Ժ. 28.

2 Անտիոքի մօտ մի անտառ կար Դափնէին նուիրուած, ուր էր նաեւ նրա տաճարը։

հեանն Անտիոքայ բանայ ի պաշտել զկուռս զոհիւք,[ա] իսկ դեւն որ բնակեալ էր ի տաճարին, ի յահի[բ] լեալ վասն սրբոյն Բաբեղայ. որ մերձ է[գ] տապանն յորում էր սուրբ նշխարքն.[դ]

Իսկ Յուլիանոսի զայս իմացեալ, Թէ վասն սրբոյն է այս.

ա. Դ. զոհօք. բ. Ա՝ ի ահի. գ. Դ: մերձ էր. դ. Դ. նշխարսն.

պատճառս, հրամայէ փութանակի փոխել զտապանն։ Զայս ծանուցեալ որոց յԱնտիոքիա քրիստոնէիցն հանդերձ կանամբք և մանկամբք ուրախութեամբ և սաղմոսերգութեամբ ի Դափնոյ ի քաղաքն փոխէին զտապանն։ Իսկ սաղմոսերգութիւնքն հալէին ընդդէմ հեթանոսացն աստուածոց, և հաւատացելոց ի նոսա և կռոց նոցունց։[1]

## ԳԼ. ԺԹ.[2]

Յորժամ և բարք թագաւորին թագուցեալք յանդիմանէին. քանզի ոչ ընդունէր զնախկին իմաստասիրելն խոստացեալ։ Այլ ի նախատական աւրհնութեանց դիւրատես էր առ բարկութիւնն, և պատրաստ էր զայս առնել քրիստոնէից, զոր առ Դիոկղետիանոսիւն արարին չարիս։ Եւ վասն զի որ ընդդէմ Պարսից փոյթ ոչ տայր զկամացն ժամանակ. հրամայէր Սաղուստիոսի եպարքոսի ձեռնարկել առ ի տանջել զամենայն փոյթս սաղմոսերգաց։ Իսկ եպարքոսն հեթանոսական

1 Տես Մեք. Ա. էջ 141. 142. Եւ Յուլիանոս կամեցաւ կանգնել պաշտամունքն Ապողոնի (յԱնտիոք) ի տեղւոջն ուր էր գերեզման Բաբելայ ... Եւ հրամայեաց հանել եւ տանել ի քաղաքն. եւ քրիստոնէիցն առեալ խնդութեամբ տարան սաղմոսիւք եւ լապտերօք.. Տես նաեւ Յովհ. Ոսկեբ. ճառքն Բաբելաս. գլ. Ժ։.

2 Սոզ. Ե. 20 Ռուփ. Ժ. 36. Թէոդ. Գ. 11. Նիկ. Ժ. 26.

հրամայէ փոխել զտապանն ի Դափնոյ քաղաք. Իսկ քրիստոնեայքն զայս հրաման լուեալ, սաղմոսիւք և օրհնութեամբ. ահիւ և երկիւղիւ փոխէին զտապանն. որ զանօղուն[ա] զարմացուցանէր զհեթանոսս։ Յայսոսիկ թագուցեալ[բ] բարք թագաւորին յայտնէր, մախացեալ ընդ իրսն և սրտմտեալ յարուցանէ հալածանս քրիստոնէից[գ] նմանեալ Դիոկղետիանոսի։ Եւ

ա. Ն զանօղս. բ. Դ. ցասուցեալ գ. Դ. Ձեռագրի ինչպէս սկզբից այստեղից էլ բաւական թերթեր են պակաս. կտրուածքին նայելով չորս թերթ։

աղանդոմն գոլով, ո՛չ զհրամանն կամաւ ընդալաւ. իսկ ընդդիմաբանել ոչ կարելով, ըմբռնէր զբազումս ի քը-րիստոնէից, և զոմանս ի կապանս էարկ։ Իսկ մին զմա-նուկ ոմն Թէոդորոս անուն, զոր հեթանոսացն մատու-ցեալ ընդ բազում չարչարանաւք և զանազան տանջա-նաւք էարկ. գգել ամենայն մարմնոյ հրամայեալ։ Եւ յայնժամ ապա թողոյր զնա ի տանջանացն, զի ոչ ևս կեալ նմա ակն ունէր, այլ Աստուած էր, որ ապրե-ցուցանէր զմարդն. քանզի կենցաղավարել լինէր ժա-մանակս բազումս յետ այնր խոստովանութեանն։ Ընդ այսմ Թէոդորոսի Ռուփինոս որ Հռովմայեցի լեզուոմն զեկեղեցականն պատմութիւն շարագրեաց. ասէ յետ այսորիկ ժամանակաւ ինչ յետոյ խաւսել և հարցանել, եթէ զանեալ և վիրաւորեալ մեծի ումեմն ցաւոյ զգայր։ Իսկ զճառեալն ասէ սուղ ինչ նմայ յոյժ լինել զառ ի թագաւորացն ցաւս, զի առընթեր կալով ումեմն երի-տասարդի և մաքրել զառ ի հանդիսէն զեկեալ նորա քիրտնն, և զովացանել զնորայն հոգի, և վայելչութիւն նմա մանաւանդ քան զհանդէս զժամանակ տանջա-նացն առնել։ Այսկս սքանչելւոյն Թէոդորոսի այսքան ճառեցաւ։

Յայնժամ հասեալ աղաչաւորք ի Պարսիցն խնդ-րէին յոլովս ժամանակս լուծանել զպատերազմն։ Իսկ նա զնոսա ի բաց առաքեաց ասելով. զիս տեսջիք ոչ յետ բազում ինչ իրի, և ոչինչ են աղաչանք բարեխաւ-

հրամայէ եպարքոսին՝ զաղմոսերգողն ի տանջանս առնել։ Եւ ըմբռնեալ զմանուկ մին որում անուն էր Թէոդորոս, որ էր ի պաշտամանն, բազում և զանազան տանջանօք չարչարէր. և ապա թողոյր անյոյս ի կենացն, այլ կամք Աստուծոյ կեցուցա-նէր զխոստովանողն բազում ժամանակս ի կեանս։

ութեանդ ձերոյ։ Այսպէս յայնժամ զաղաչաւղսն ար-ձակեաց։

ԳԼ. Ի[1]

Եւ ըստ այլ յեղանակի Թագաւորն զքրիստոնէսն նասել փութալով զընտանի յանդիմանէր պաշտաւնս։ Քանզի զո[ր]հասէր զոլով, ոչ միայն ինքն արեամբն խըն-դալը,[2] այլ զի թէ ոչ այլքն զայս արասցեն մեռս վար-կանէր։ Եւ վասն զի ամենայն ուրեք սակաւս զայսպիսիս գտանէր, Հրեայս գոչէր[3] և ի նոցանէ տեղեկանայր յա-ղագս Մովսէսական աւրինացն զոհելն հրամայելոց։ Իսկ նոքա ի զոհելոցն ի բաց կացին, ոչ ուրեք այլուր կարե-լի զոլ զայս առնել ասացելոց։[ա]

ա Բն. աւել ունի. «եթէ ոչ միայն յԵրուսաղէմ», որ անհրաժեշտ է միտքը լրացնելու եւ կայ համառօտ օրինակի մէջ։

1 Տես Սոզոմ. Ե. 22, Թէոդոր. Գ. 20. Գրիգ. Նազ. Ճառ. Ե. 3. 4. Ամիան. Մարցել. ԻԳ. 1. Ռուփ. Ժ. 37, Փիլ. Է. 14, Կաս. 6. Զ. 43. Նիկ. Ժ. 32. 33.

2 Յուլիանոսի զոհասիրութիւնը վկայում են նաեւ ուրիշ պատմա-գիրներ.

3 Նրա հրէաներին գրած նամակը պահուած է.

(Իսկ վասն Թէոդորոսի քահանայի Անտիոքայ, որ վկայ-եաց առաջի բազում վկայից ի քեռոյն Յուլիանոսի ընդ բա-զում չարչարանօք արկեալ. բարի խոստովանութեամբ կատար-եալ, թողում ասել իւրում պատմութեան. նա և բազումս ե-ցոյց չարչարանս որքոցն որ ոչ էր գրեալ). Յայնժամ գայ ի Պարսից հրովարտակ խնդրել զխաղաղութիւն,[ա] իսկ նա ոչ ըն-դունէր, զի արժանն քարշէր ի մահ։ Եւ յամենայն տեղիս մե-հենիցն զոհս մատուցանէր և զուարճանայր արեամբն և ճեն-

(1) Չեն ի բն. Թարգմանիչն ակնարկէ անշուշտ ի վկ. Թէոդորի-տեաց. Տես վրք. եւ վկ. Սրբոց. Հ. Ա. 532–534. Նոր.

ա. Նոր. Քանզի արժանն տանէր զնա ի տեղի հատուցմանն. Խոր. Գ ԺԷ. 430:

Հրամայեալ ապա ընդ հուպ զտաճարն Սողոմոնի շինել, ինքն ի Պարս կոյս երթայր։ Իսկ Հրեայքն ժամանակաւ ըմբռնեալ նախկին ցանկացեալք, որով նոցա տաճարն առ ի զոհել վերստին շինեսցի։ Յայնժամ ամենք փութապէս առ գործն լինէին. իսկ այլք ահաւորս զընքեան քրիստոնէիցն ցուցանէին, և ամբարհաւաճէին ընդդէմ նոցա սպառնալով ի վերայ նոցա.[1] Այնքան արարեալ որքան ի Հռովմայեցւոցն նախկին կրեցին։

Իսկ Թագաւորին ի հարկացն գանձուց զռոճիկսն տալ հրամայէր. պատրաստ լինէր ամենայն քար և փայտ, և աղիւս թրծեալ, և շաղախ կրոյ, և այլ ինչ որքան առ

[1] Տես Մխք. Այրի. էջ. 143.

ճերովք զոհիցն։

ԳԼ. ԺԳ.

Որ է որպէս հրամայէ Յուլիանոս Հրէից գնալ յԵրուսաղէմ եւ շինել զտաճարն, եւ թէ որպէս իսկոյն փլանի ի շարժէ. երեւի նշան խաչին ի հանդերձս հրէից: Եւ սպանանելն Յուլիանոսի զեպիսկոպոսն յԵրուսաղէմի զսուրբն Կիւրեղ եւ զմայր նորա եւ Կիւրղիցն յատկութիւնք:

Կոչէ և զՀրէայսն և գովէ ըստ Մովսիսի օրինացն մատուցանել զոհս. և հրամայէ նոցա զոհել ըստ օրինացն զի տեսանիցէ, իսկ[ա] արժան է մեզ առնել զայս, բայց յԵրուսաղէմ. Յայնժամ Հրէիցն զտաճարն Սողոմոնի շինել հուպ ընդ հուպ. իսկ Հրէայքն հրաման առեալ յարքունուստ առնել զվզենակս[բ] շինութեան տաճարին ի քրիստոնէից հարկաց. և ահաւորս[գ] Հրէայքն զինքեանս[դ] քրիստոնէիցն երևեցուցանէին. ճեպէին փութով առ գործն, զքար և զաղիւս թրծեալ[ե] և զկիր և զաւազ և զփայտ. և որ ինչ ի պէտս էր[զ] շինուածոյն պատրաստէին.

ա. Բ. Ա. Ա՝ իսկ Հրէայքն ասեն. բ. Հկ. Քռ. վզենակի. Լ՝ վզենեակ գ. Ն. ահաւոր դ. Ն. զինքեանս հրէայքն ե. Բ. Թրծել Լ՝ չիք. զ. ի պէսպէս.

ի շինուածն պատրաստ լինէր։ Իսկ յայնժամ Կիւրիղոս Երուսաղէմացեացն եպիսկոպոս զմարգարէին Դանիէլի ի միտ առեալ, զոր և Քրիստոս յաւետարանին վերակրկնեաց, և բազմաց յառաջ ասելով. որպէս զի եկեսցէ ժամանակ յորժամ քար ի քարի վերայ ոչ մնասցէ ի տաճարին, այլ բան Փրկչին կատարեսցի։ Եւ զայս ասացեալ եպիսկոպոսին. եղեւ շարժումն մեծ ի գիշերին ի վեր ընկեաց զքարինսն զնախկին հիմանց տաճարին, և զամենայնսն ցրուեաց հանդերձ մերձակայիւքն շինուածովք։ Ահ յայսմանէ եղեալ զՀրէայսն ըմբռնեաց և հռչակն ի տեղին ածէր և զհեռիսն բնակեալս։ Եկեալ ապա յոյժ բազմաց, այլ նշան ի վերայ լինի. քանզի հուր անկեալ ի յերկնից զամենայն զգործիս շինողացն ապականեաց. զմուրճս, զլարս, զողոցս, զտակուս [ա], զուրագս և զամենայն զոր միանգամ պատշաճ առ գործսն ունէին շինաւղքն. և ճարակէր զայսօրիկ հուրն զաւրն ողջոյն։ Իսկ Հրէիցն ի մեծ երկիւղի եղեալ, ակամայ զՔրիստոս

ա. զկացինս։

Ցայնժամ Կիւրեղ Երուսաղէմի եպիսկոպոսն յուշ առնէ [ա] որպէս մարգարէութեամբ զաւետարանական բանն քրիստոնէից. Եկեսցէ ժամ, որ ոչ մնասցէ այդր քար ի քարի վերայ, որ ոչ բարձցի ի միջոյ այսի. Եւ ասացեալքն ի նմանէ՝ իսկոյն ի գիշերի եղեալ շարժումն, և զամենայն հիմունսն [բ] քանդեաց և աւերեաց զգործ շինուածոյն, և ոչ մնաց քար ի քարի վերայ, որ ոչ քանդեցաւ. Այլ և կահ գործողացն այրեցաւ [գ] հրով ի տեղւոջն ի վերուստ անկեալ, մուրճք և ողոքք, և գակուք և ուրագք, և ամենայն կահ շինողութեան ճարակեցաւ հրով.

Եւ Հրէիցն երկիւղիւ ըմբռնեալք ակամայ զՔրիստոս Աս-

ա. Գ. առնէր. բ Ն. հիմունս. գ. Ն. այրեցաւ։

*խոստովանէին Աստուած և Տէր ասելով, իսկ զկամս նորա ոչ առնէին, այլ միայն ի հրէական նախկին կարգացն ըմբռնեալք։ Քանզի և ոչ երրորդ սքանչելիքն ի վերայ եղեալ յետոյ ի ճշմարիտ հաւատ ած զնոսա։ Քանզի ի նմին գիշերի կնունք խաչից ճառագայթատեսակք ի հանդերձս հրէիցն ուրինակեալք երևեցան, զոր աւուրս ինչ ի վերայ եղել տեսանելով, լուանալ և մաքրել կամէին և ոչ ինչ կարէին։ Կուրանային ապա և ըստ առաքելոյն, և զբարին ի ձեռս ունելով մեծին զքանչման ոչ դառնային։ Այսպէս յայնժամ տաճարին փոխանակ շինելոյ ամենևին իմն խլել լինէր։*

## ԳԼ. ԻԱ.[1]

*Իսկ Թագաւորն ի Պարսից եմուտ աշխարհ[2] փոքր ինչ յառաջ քան զմուտ ցուրտ աւդոյն լեալ, տկարագոյնս և անկարս լինել ի ձմերուանս ազգին Պարսից. քանզի ոչ ուժելով սառնամանեացն, առանց պատերազ-*

1 Տես Սաղմ. Հ. 12. Ամբան Մարգել. ԻԳ. 2. Զաքիմոս Գ. 12. Թէոդոր. Գ. 21. 25. Գրիգ. Նազ. ճառ. Ե. Ռ. Փիլոստ. Է. 15. Կ.ո. Զ. 44 Նիկեփ. Ժ. 84.

2 *Ամենամանրամասն պատմումէ այս պատերազմը Ամիանոս Մարցելինոսը.*

*տուած խոստովանէին, այլ զկամս նորա ոչ առնէին ըստ նախկին ապարասանութեանն.* [ա] *Եւ ի միւս գիշերին մրագ խաչին ճառագայթեալ ի ձև խաչի* [բ] *օրինակեալ ի հանդերձս Հրէիցն, աւուրըս ինչ ոչ կարէին եղծանել զնշանն. Եւ առ այս հիացմամբ ըմբռնեալ և կուրացեալ, ընդ յանդիմանութիւնն ոչ սգային* [գ] *և դառնային առ Քրիստոս Փրկիչ. Յայնժամ խափանի տաճարին շինութիւնն ի նշանացն որ երևեցան* [դ] *յԱստուծոյ,* [ե] *բայց նոցա ոչինչ օգուտ գործեաց որ երևեցան ի նոսա* [զ] *սքանչելիք.*

*ա. Գ. ապարասանութեան բ. Ն. խաչին գ. Բ. զգային դ. Նոր. իսկ կամակոր ազգին .. ոչինչ աւգուտ գործեաց. Ագաթ. 358, Բ դա. ե. Գ. Աստուծոյ զ. Բ. երևեցաւ*

մելոյ Մնայրին զձմեռնականն ժամանակ. զի և ոչ ոք զձեռն ի նոցանէ թերևս է ասել կարէր ի ծոցոյ հանել։ Իսկ զՀռովմայեցիսն տեսեալ և ի ձմեռայինսն ժամանակս կարօղս ի ջանալ, եթող զզաւրն ի վերայ աշխարհին, և զբազում աւանս և զբերդս առին, նաև զքաղաքսն ևս առնուին։ Իսկ պատեալ զՏիգրանն զմեծն քաղաքն, այնքան պաշարէ զթագաւորն Պարսից, որպէս զի և նմա աղաչանաւք հպել յաճախագունիւք, և աղաչել ոչ մնալ կողմանն իւրոյ աշխարհին, եթէ լուցեալ զպատե-

(Որպէս և ոչ մարգարէիցն և Քրիստոսի առաքելագոյն սքանչելեացն որ երևեցան. Զի կորացան [ա] սիրտք իւրեանց յիմանալոյ, և ասեն՝ առնել զօրէնսն, և ոչ առնեն. զի ոչ այսպէս արարեր ամենայն ազգաց տէր, և զդատաստանս իւր յայտնեաց որպէս և նոցայն. Եւ եկեալ Յուլիանոս յԵրուսաղէմ, որ վասն տաճարին շինութիւն էր կամք նորա, պատմեցաւ նմա որ ինչ անցք [բ] անցին. Եւ մտախորհ եղեալ լռէր. բայց զքրիստոնեայսն խոշտանգէր, և ըմբռնեալ զեպիսկոպոսն, ընդ որոյ ձեռն եղև գիւտ խաչին, սպան զնա դառն տանջանօք. և զմայր [գ] նորա, որ [դ] վկայեցին [ե] բարի դաւանութեամբ ի փառս Աստուծոյ որպէս և նոցին իսկ ասի վկայաբանութիւն, որ աւելորդ է ասել. [զ] Բայց ասի երկուս ոմանս [է] Կիւրեղոս[ը] ասել, միւսոյն վըկայեալ ի Յուլիանոսէ. որով գիւտ Խաչին եղև, նախկին Յուդայ, և մկրտեալ Կիւրեղ որ և զկարգս եկեղեցւոյ ասեն ունել յեկեղեցիս ուղղափառաց և զմարտիրոսականն առ զպսակն. և յետ նորա ասի միւս Կիւրեղ որ զԱրիոսի կարծիսն ասէին ունել. Եւ այս Կիւրեղս եհաս մինչև ի ժողովն սուրբ, որ յաղագս Հոգեմարտին, որպէս նոցին ցուցանին երկոքին.)

ա. Նորայրը ուղղում է կուրացան. Դ. կուրացան բ. Գ. անց գ. Ն. զմայր դ. Գ. վկայիցն ե. Բ. որք զ. Ն. Ա. ասէ, է. Գ. ոմն, ը. Ա. Կաղեղոս, Ն. Կիւրեղ Բ. մինն Ա՝ մինԿիւրեղն.

բազմ գնացէ։ Իսկ նա ոչ էառ յանձն և ոչ աղաչողացն ողորմեցաւ. այլ և ոչ զբանին մտադրութիւն էառ, որպէս զի ուրեմն յաղթելն բարւոք, իսկ առաւել քան զյաղթութիւն նախանձ։ Վասն զի հաւատացեալ հմայից ոմանց. զաւուրս[ա] առընթէր նորա լինելով փիլիսոփոսն Մաքսիմոս ենթադրէր, և երազս հանելով զԱղեքսանդրոսի զՄակեդոնացւոյ զկարծիսն առնուլ, կամ յաւէտ ևս գերազանցեալ, զաղաչանս Պարսիցն արհամարհեաց։ Քանզի կարծէր ըստ Պիւթագորի և Պղատոնի կարծեացն մարմնանալ, իբր զԱղեքսանդրոսին ունելով զանձն. մանաւանդ իւր իսկ լինել Աղեքսանդրոս յայլում մարմնում։ Այս հմայք զնա պատրեցին. և յաւդարեցին զնա զաղաչողսն Պարսից ոչ ընդունել։ Վասն որոյ նորա ծանուցեալ եթէ ոչ եղեն ընդունելիք աղաչանքն իւր, ի կարիս անկանէր։

ա. ռն. .զորոց :

ԴՂ. ԺԴ.

Յաղաղս սատակման պղծոյն Յուլիանոսի:

Եւ յետ բազում չարեաց որ գործէր Յուլիանոս ի հմայից և ի դիւթից[ա] լուեալ, թէ բանակք զօրաց զքեւ շուրջ պատեալ ունիս միշտ զյաղթութիւն. Եւ Մաքսիմիս փիլիսոփայ երազս ամէր, [բ] որ ցուցանէր թագաւորեալ Յուլիանոսի տիեզերաց որպէս [գ] Աղեքսանդր Մակեդոնացի. յորոց պատրեալ ի հմայից, չունէր զբան խաղաղութեան Պարսից զոր խնդրէին: Յայնժամ * ժողովէր զամենայն զօրս [դ] իւր և դիմեալ երթայր ընդդէմ Պարսից ի մարտն, և նա ոչ գտեալ զբան [ե] խաղաղութեան, եւ Պարսից արքայն ամենայն ուժով [զ] ընդդէմ Յուլի-

ա Գ. ի ղիւաց բ. Գ. եւ զմաքսիմիս փիլիսոփայ էր ազատասէր. Ա' փիլիսոփա էր զայս առէր։ գ. Ն Ա. որ դ. Գ. Ա' զօր. ե. Գ. զբանն զ. Գ. յուժով,

Եւ ի նմին աւուր յետ աղաչանաց ամենայն զաւրաւթեանքն զոր ունէր, ճակատէր ընդդէմ զաւրուն Հռովմայեցւոց. բայց Հռովմայեցիքն անգոսնէին զԹագաւորին, առ ի չլինել ի շահ պատերազմին։ Սակայն եկելոցն ընդդէմ նոցա պատերազմէին և առժամայն զպատերազմունսն յեղուին ի փախուստ։ Իսկ Թագաւորն կայր առընթեր ի վերայ ձիոյ և քաջալերեցուցանէր զզաւրսն անգէն, բարեբախտութեանն յուսով միայնով վստահացեալ։ Եւ յանկարծակի նիզակ լինէր բերեալ ընդդէմ նորա, և ընդ բազուկն Թափանցիկ եղեալ, ի կողսն մտանէր.[1] և յայսմ վիրաց զվարսն շրջէր անյայտ եղելոյ սպանողին զնա։ Քանզի ոմանք ի Պարսկէ ռւմենինէ անձնատուր եղելոյ հարկանիլ ասեն. իսկ այլք յընտանի զաւրականէն որպէս յոլովն բան ունի։

Բայց Կաղիստինս որ յընտանիս Թագաւորին էր զինուորեալ, պատմեալ զոր ըստ նորայն յայնժամ պատերազմն քաջին չափով.[a] ի դիւէ զնա հարեալ մեռանիլ ասէ։ Ը ինչ զոր որպէս արարող[b] ստեղծ, և

ա. ἡρωικῷ μέτρῳ.
բ. Բն. ὁ ποιητής «բանաստեղծն»:

1 Տես Մեք. Ասոր. էջ. 145 «Եւ յանկարծակի եկն նետ մի դիպեցաւ փորոտեացն Յուլիանոսի. եւ վ[illegible]թեցաւ արիւնն»

[illegible]նոսի և զօրաց նորա ի պատերազմ[a]. Եւ եղև պատերազմ [illegible]տարիկ և պարտեցաւ զօրն Յուլիանոսի և ի փախուստ դարձաւ։ Իսկ Յուլիանոս առընթեր կալով՝ արդելոյր զզօրսն և քաջալերէր յաղթել հմայից[b] յուսով. յայնժամ գա սուր սրեալ և հարկանէ զսիրտն և անդէն սատակեցաւ. Եւ զայս հաւաստի ոչ ունիմ ասել թէ ի մարդոյ և թէ[c] ի պահանջող հրեշտակէ Աստուծոյ. Բայց Կաղեստինոս ոմն ի զինուորաց նորա ի դիւէ

ա. Գ. ի պատերազմ բ. Գ. հմայիցն գ. Գ. եթէ.

է ինչ զոր ունի և այնպէս, քանզի ընդ բազումս քըննելով անցի։ Որպէս զի արդեւք ունէր և ճշմարիտ զօրս ըստ նմայն, այլև ոչ այն լինէր ծածկեալ, իբրև զի էր այրն վասն յաւժարութեանն ոչ զգոյշ, սակս բարեփառութեանն սնափառ, յաղագս ստեղծական հանդարտութեանն արհամարող։ Բայց Յուլիանոս ի չորրորդում իւրում հիւպատութեան, զոր հանդերձ Սաղուստիոսիւն էառ ի քսան և վեցին Յունի(ս) ամսոյ, յաշխարհին Պարսից զվախճան, որպէս ասացի, կատարեաց։ [1]

Այս էր ամ երկրորդ թագաւորութեան նորա, և ութն ամ յորմէ հետէ կայսր ի Կոստանդիոսէ եղև կարգեալ, և երեսուն և մի ամ էր կենաց նորա։

[1] Փրկ. 363 Թ.

Հարեալ զնորա մահն ասէր. զի էր իսկ դիւապաշտ յորոց և զարժանն փոխարէնս ի դիւացն ընկալաւ ըստ Քրիստոսի վրէժխնդրութեան։ Եւ այսպէս չարն չարիւ բարձաւ, որ սպառնայր յետ դարձին չար անցս [ա] անցուցանել ընդ Քրիստոնեայս, [բ] բայց ոչ որպէս նայն կամէր, այլ որպէս Աստուծոյ էր կամք եղև։ Մեռաւ երեսնամեա, եօթ ամ կայսր լեալ, և մի ամ թագաւորեալ մեռաւ։ *

Իսկ զօրն Հոռոմայեցւոց ի տարակուսանս [դ] մնեալ այլ ոչ յամենևին, [ե] այլ ի նոյն։

Գլ. ԺԸ.

Յաղագս թէ որպէս գիրս գրեաց, եւ թէ որպէս թագաւորեաց Յոբիանոս եւ թէ որպէս, դաշինս արար ընդ Պարս:

Յետ մահու թագաւորին զՅոբիանոս ասեն թագաւորել [զ]

* Բիւզանդ «Հատուածդ» նոյնն է եւ ի վկայաբանութեան Մարկոսի Արեթուսայ եպիսկոպոսի. վարք եւ վկ. սրբոց. Հ. Բ. 16:

ա. Գ. Հրանցս. բ. Գ. քրիստոնեայսն. գ. Ն. սատակեցաւ. դ. Ա՝ ի տարակուսանսն. ե. Բիւզ. սրբագրում յամենային. Ա՝ յամէին. զ. Գ. Թագաւոր.

## ԳԼ. ԻԲ.[1]

Իսկ զաւրականացն ի մեծի եղեալ աղմկի, ոչինչ ապուժեալ, ի նոյն հետայն աւուրն յայտնեն Թագաւոր զՅոբիանոս, զայր քաջ և զբարեպաշտ. որ էր հազարապետ յորժամ Յուլիանոս զհերձուածն դնէր առաջի զաւրականացն. կամ զոհել և կամ ի բաց կալ ի զաւրականութենէն։

Իսկ Յոբիանոս մանաւանդ զպատիւն ի բաց դնել յաւժարէր, քան կատարել զամբարիշտ հրաման Թագաւորին։ Այլ Յուլիանոս յաղագս կարեաց պատերազմին որ կայր ի վերայ՝ ընդ զաւրավարացն ունէր զայրն։ Իսկ յայնժամ ճառեալ զնա առ ի Թագաւորել հրաժարէր, և բռնութիւն ի զաւրականացն ձգտեալ գոչէր. Ոչ խորշել ասելով Թագաւորել ի մարդկանէ հեթանոսանալ յաւժարեցելոց, իսկ նա զոլով քրիստոնեայ։ Իբրև յամենեցունց առհասարակ ձայն լինէր խոստովանելով և զնոսա քրիստոնեայս լինել [2], ընդունէր զԹա-

1 Սոզոմ. Զ. 3. Թէոդ. Դ. 1 Ռուփ. ԺԱ. 1. Փիլոստ. Ը. 1. Կա-
սիոդ. Է. 1. Նիկ. Ժ. 38.

2 Տես Մէկ. Ռս. ԵՁ. 147.

զայր քաջ և զբարեպաշտ, որ էր հազարապետ յորժամ Յուլիանոս զհեթանոսական աղանդ յայտնէր, որ կշտամբել [ա] զնա և զոհել կռոց և կամ ի բաց կալ ի զինուորութենէ. Իսկ Յոբիանոս զպատիւն յօժարեալ ընկենոյր [բ] քան թէ զհաւատն ուրանալ և կատարել զհրաման ամբարիշտ Թագաւորին. [գ] և Յուլիանոս վասն կարեաց պիտանութեան պատերազմին ի վերայ զօրացն ունէր զայրն երևելի. Իսկ յայնժամ ժողովեալ զօրավարացն և զօրացն թագաւորացուցանել զՅոբիանոս. Իսկ նա հրաժարէր ի բռնութենէ զօրավարացն և զօրացն. աղաղակէր [դ] և ասէր. ոչ է պարտ առն քրիստոնէի թագաւորել հե-

ա. Ն. կշտամբեալ. բ. Ն. ընկենուլ. գ. զհրամանս ամբարշտին.
դ. Ա՛ իսկ յայնժամ ժողովեալ զօրավարացն եւ զօրացն աղաղակէր.

զաւրութիւնն։ Եւ ի նեղութիւն յանկարծակի անկեալ յաշխարհին Պարսից, զաւրականացն ի սովոյ ապականելոց, դաշինս դնելով ելոյծ զպատերազմն։ Իսկ դաշինք առ փառս Հռովմայեցւոցն էին անվայելուչք, իսկ առ ժամանակն կարևորք։ Քանզի հատեալ ի սահմանացն որ ի սկզբանէն, և տուեալ Պարսիցն զմեծն Միջագետաց քաղ(աք) զՄծբինն[ա] գնայր անդուստ։ Այսոցիկ աւետարանեցելոց, քրիստոնեայքն զաւրանային, իսկ հեթանոսքն ազգային զվաղճանն Յուլիանոսի։ Բայց զաւրական համանգամայն զանպահ նորա ջերմութիւնն պարսաւէին. և զպատճառ վնասու սահմանացն ի նա վերաբերէին։ Եւ յանձնատուր եղեալ Պարսկէ պատրեալ, զխորքարսն զորս նաւովք[բ] ընդ գետ տանէին այրեաց,[1] վասն որոյ ի սով անկան զաւրականքն։

Յայնժամ իմաստակն Լիբանիոս ողբս[2] ի վերայ

ա Νίσιβιν.

բ Բ. քանզի զնաւսն, որովք ուտելիս։

1 Յուլիանոսը հրամայել էր այրել բոլոր նաւերը։

2 Այդ ողբը գրուել է աւելի ուշ՝ 365 Թ.

Թանոսաց, որք ներկեալ են ի չար աղանդս։ Իսկ նոքա առ հասարակ ձայն բարձեալ, աղաղակեցին՝ Թողուլ զհեթանոսական պաշտամունս,[ա] և ուսանել զքրիստոնէութիւն, որպէս կամք քո հրամայեսցեն մեզ։ Ի վերայ այսոցիկ ասացելոյս՝ ընդունէր զթագաւորութիւն. և զինէին[բ] զօրն ի տեղւոջ[գ] տարակուսանացն, և ոչ ուստեք էր գիւտ կերակրոց, դաշինս դնելով ընդ Պարսից, լուծին զպատերազմն[դ] զի տային զՄիջագետս և զՄծբին քաղաք ի Պարսս։ Եւ այնպէս դառնայր զօրն Հռովմայեցւոց։ Եւ քրիստոնեայնքն զօրանային անդէն, և հեթանոսութիւն նուազէր, բայց համայն պարսաւէին զդաշինսն։

ա. Բ. պաշտամունսն. բ. Գ. զի էին. գ. Դ. ի տեղւոջ: դ. Ա՝ զպատերազմ:

Յուլիանոսի շարագրեաց. զոր Յուլիանոսի դիապատա-
կան ª վերագրէր։ Յորում բանի գրեթէ զամենայնսն զորս
ըստ նմա գովականաբար պատմեաց. յիշեալ և զգրեանն,
զորս Յուլիանոս ընդդէմ քրիստոնէիցն շարագրեաց, և
իբր թէ ծիծաղելիս ինոսա և ընդ վայրս ցուցեալ ըզ-
քրիստոնէից գիրս։ Ձի թէ զայլսն զԹագաւորին իմաս-
տակն գովէր, հանդարտապէս արդեւք ի նոյն պատմու-
թեան երթայր։ Բայց վասն զի որպէս զդժնեա ճարտա-
սան, յիշմամբ Յուլիանոսի զրենոյն ի վերայ քրիստոնէ-
ութեանն յառնէ, վասն այսորիկ և մեք սակաւս ինչ
սակս այսոցիկ ասել յաւժարեսցուք, նախկին առաջի
եդեալ զնորա ճառեալսն։

Գլ. ԻԴ. [1]

«Զմերայնւոյն, ասէ, զգիշերսն հզեցելոց[ի] ի վերայ
եդեալ Թագաւորին պատեք, պատճառ ի Պաղեստին-
եա մարդ աստուած և Աստուծոյ որդի առնեն.
մարտ հեռի. և կշտամբելով զաւրէ, ծիծաղելիս ասա-
ցեալ և ընդ վայրս զպատուեալսն իմաստնագոյնս յայ-
տնիկ ցուցանի, քան զՏիւրացի ծերն։ Բայց քաւ լիցի.

ա. Բն. ἐπιτάφιον.

1 Տես Լիբանիոս Ողբ. էլ. 581. Հրատ Ռեյսկ.

ԳԼ ԺԶ.

Թէ որպէս իմաստակն Ցուլիանոսի ողբս ասաց վասն Ցուլիանոսի եւ անքարեձեւ անծինն:

Ցայնժամ իմաստակն Ցուլիանոսի՝ Լիբիանոս ողբս ի վե-
րայ նորա շարագրեաց ըստ ամենայնի կենաց նորա, և որ ինչ
ըստ գերեզմանի արժանի բանք և ձայնք աւաղականք ª մահու,
զոր աւելորդ համարիցի պատմութեանս ᵇ զողբսն դնել բանիւ.

ա: Ա. աւաղանք. բ. Ա՝ համարեցայ.

«զի Տիւրացիս այս, Թէպէտ և ընդունէր քաղցրաբար
«զճառեալն. արդեաւք Թէ որպէս զորդի պարտեալ:»
Եւ քանզի այս ճառեալքս իմաստակին Լիբանիոսի են.
և ես իմաստակ համօյ զնա լինել ասեմ. և գիտեմ որ-
պէս զի Թէ ոչ էր Թագաւորին աղանդելոյ համակարծիր,
զամենայն արդեաւք զնորայն ասել որքան քրիստոնէայ-
քըն ասէին, և Թերևս, որպէս [զ]իմաստասէր, մեծացու-
ցանեն զասացեալսն: Զի և առ Կոստանդիոս ի կենդանու-
Թեանն զովս գրէր. իսկ իբրև վախճանեցաւ Թշնամա-
նըս լի մնասուք զեղոյր: Որպէս զի Թէ Պորփիւռիոս էր
լեալ Թագաւոր, նախկին արդեւք դատէր զնոսա զբեանն
քան զՅուղիանոսին և եԹէ Յուղիանոս էր լեալ իմաս-
տակ, ասէր արդեւք զնա չար իմաստակ, որպէս և զԵ-
կեբոզիոս ի մահուանն Յուլիանոսի գրեաց ճառին: Եւ
արդ՝ զի նա որպէս զհամակա(ր)ծիր, և որպէս զիմաստակ,
և որպէս զսիրելի Թագաւորի որքան նմա Թուեցաւ, պատ-
մեաց, և մեք առ ի նմանէ գրեցելոցն ըստ կարի պա-
տահեսցուք: Քանզի նախ ասէ ի վերա դնել դրովք ձմե-
րանն զգիշերսն ձգեցելոյ: Իսկ ի վերայ դնելն նշանէ, զի
գործ դնէր պարսաւ գրել, որպէս զի ըստ սովորական
իմաստակացն առնել ի նորագունիցն ներածուԹիւն. քան-
զի նախկին զգրեանն մերժէր, իսկ յայնժամ ի վերայ դնէր:
Եւ մարտ հեռի պարապեցուցեալ ոչ, որպէս ասեն Լիբա-
նիոս, յանդիմանել կարելով, այլ տկարուԹ(ի)ւն ճըշ-
մարտուԹեանն զի զբարւոք ի նոսա զգուշացեալսն
որպէս զպարսաւասէր քարշէր: Քանզի ամենայն որ
մարտնչի ընդ ումեք երբեմն խախտելով, և երբեմն
Թագուցանելով զճշմարտուԹիւնն, և ստեաց որքան պա-
տերազմն կայ համծկարգեալ: Եւ որ ցասմամբ լինի առ
ոք զամենայնն որպէս զպատերազմող ոչ միայն գոր-

ծել, այլ և ասել փութայ զայնորիկ. առ որ անգոսնականքն և առ որ Թշնամութիւնն խախտել սիրէ։ Եւ Յուլիանոս և Պորփիւրիոս, զոր ծերն կոչէ Տիւրացի, երկոքինն պարսաւասէրք էին, ի յընտանից բանից կշտամբին։ Քանզի Պորփիւրիոս զգլխաւորին իմաստասիրաց զՍոկրատայն վարս արտաքս քարշեաց ի գրեցելումն նորա իմաստական պատմութեանն։ Այսպիսիս սակս նորա գրեալ եթող, որպէս և Մեղէտիոս. և [Պ]անաւտիոս, գրեալ զՍոկրատայ, ասել ձեռնարկեցին։ ա Սոկրատայ, ասեմ զառ ի հեթանոսացն սքանչացելոյն արդարութեամբ և ողջախոհութեամբ և այլովքն առաքինութեամբ։ Զոր Պղատոն սքանչելին ի նոսա իմաստասէր, և Քսենոփոն, և միւսն ևս այլն յիմաստասիրացն Թիակոս, բ ոչ միայն որպէս զաստուածասէր պատուեալ, այլ և ի վեր քան զմարդն իմանալ զնա կարծեցին։ Իսկ Յուլիանոսի ընդ հարըն իւրում նախանձելով զինքեանն ախտ գ ի կայսերսն յանդիմանեաց. բամբասեալ զամենայնսն զորս յառաջ քան զնա Թագաւորսն, և ոչ յիմաստասէրսն Մարկոս խնայեալ։ Զի ափսոսասէրք գոլով երկաքանչիւրքն, առ ի յընքեանց իսկ զյանդիմանութիւն ընդունէին։ Եւ ոչ են ինձ պէտք բազմոց դժնդակ բանից, բայց ուրանաւր պարտն է զայսոսիկ ունել ի հրաժարումն նոցայն բարուց։ Այլ այսուհետև զայսոսիկ յերկաքանչիւրեցն բանից յաղագս նոցա բարոյից նշանելով գրեմ զայսոսիկ։

ա. Թն. է. οἷα ἂν μήτε Μέλιτος, μήτε Ἄνυτος οἱ γραψάμενοι Σωκράτην, εἰπεῖν ἐπεχείρησαν որպիսիս ոչ Մեղիտոս եւ ոչ Անիտոս· որք գրեցին զպատմութիւն Սոկրատայ, ասել յանդգնեցան:

բ. Թն. θίασος խումբ:

գ. Թն. τὸ πάθος·

Որպիսի սակս Յուլիանոսի Գրիգորն Անձիանձու ճառեաց նորայոցն լուր բանից։ Քանզի ասէ յերկրորդ ճառին որ առ Հեթանոսս ըստ բանի զայս ինչ։

«Բայց զայս այլոցն փորձն յայտնեաց, և զաւրութիւնն «որ՝ունէր զիշխանութիւնն։ Իսկ ինձ ի սկզբան յայտնի «եղև տեսանել իւիք յերանակաւ, յորմէ յարեալ եղէ «յայլն յԱթէնս։ Քանզի եկն անդր յորոց ըստ եղբաւրն «նորա քաջացելոց, ի թագաւորէն հրաժարեալ։ Իսկ «կրկին նորա բանն տարաշխարհութեանն ճառ. վայել-«չագոյն ըստ պատմութեանն Եղադացւոց և որոց ան-«տի խրատարանացն, բայց տարակուսագոյն և բազմաց «ծանաւթ, որպէս զի ընդ որոց անդ զոհողացն և պատ-«րողաց յաղագս որոց ըստ ինքեանն զոյգ լինել։ Զև «ևս համարձակութիւն ընկալեալ ամբարշտութեանն։»

«Յայնժամ ես ոչ պարսաւող առնն կարծաւղ եղեւ «գիտեմ, և ոչ զբարւոքն բնաւորեցելոցն առ այսոսիկ իմ-«ացեալ իմ։ Այլ առնէր գիտական բարուցն անհար-«թութիւն և աւելորդն նանրութիւն, եթէ գէտ հա-«հաճոյ ոք կար(ծիլ)[ա] բարւոք։ Քանզի ոչինչ թուէր ինձ «(նշան)[բ] լինել քրիստոնէի, քանզի էր նորա պարա-«նոցն անկանգուն, ուսքն մրցականք շարժակածեալք,

ա. Այստեղ ձեռագիրը փչացած է, ուստի ենթադրելի է «կարծի» բառի ընթերցումը. որի ծիլ վանկը ես եմ աւելացնում. բնագրում εἰκάζει, որ նշանակէ նաեւ «կարծել»։

բ. Այս բառն էլ եմ աւելացնում համապատասխան բնագրի σημεῖον.

Քանզի յերևմանէն իսկ ծանուցեալ լինէր, ոչ ունել ըզ-նշան քրիստոնէի. քանզի էր նորա գլուխն ոչ բարիատես[ա] և խորամուրու, և երկայն հիւսեալ որպէս չուան պարանոցն անկանգուն, ուսքն մրցականք և շարժակածեալք.[բ] աչքն վայրա-

ա. Ա՛ Ն. բարետես. բ. Գ. շղջաքեկեալքն. Ա. Ն. շխջաքերեալք.

«աչին վայրացական և շրջաբերել և մոլեկան հայեցուած,
«ոտքն անկանծք, ռնկունքն թշնամանս շնչելով և ար-
«համարհանսն, երեսացն ձևք ծիծաղելիք, զնոյնս բերե-
«լով ծաղր անյոյժ և եռանդնոտ, ակնարկութիւն և վեր-
« ակնարկութիւն առանց ոչինչ բանի, բան կապարեալ և
« հատեալ ոգւով, հարցմունք ստահակք և անհանճարք,
« պատասխանիք ոչինչ այսոցիկ վեհագոյնք, միմեամբք
« խառնակեալք, և ոչ բարեկաց, և ոչ կարգաւ յառաջ եկ-
«եալ խրատուն։

«Զսա նախ քան զգործսն տեսի, և առ գործովքն
«ծանեայ. և եթէ էին մերձ առ իս ոմանք յորոց այսքան
«անդր զոլով լսողացն, ոչ արդեւք դժնդակագոյնս ինչ
« վկայէին, որոց վասն զի զայս տեսի ի նոյնն բարբառեցայ,
« որպիսի՞ չար հռովմայեցւոցն անուցանէ։ Յառաջագոյն
« յորջորջեալ և լինել սուտգէտ յ(ը)նքեան աղաւթեցի.
« քանզի լաւագոյն էր ինձ ստել քան այսքանեաւք լնուլ
« տիեզերաց չարեաւք, և այսպիսում երևելի նշանի,
որպիսի ձև ևս յառաջագոյն բազմաց, յուղխից խառ-

ականք և շրջաբերեալք և մոլեկան [ա] հայեցուածք. ռնգունք
թշնամանք շնչելով, ոտք անկածք [բ] և արհամարհելիք, ձեւք[գ]
և տեսակք երեսացն ծաղրան ժոյժ և եռանդնոտ. [դ] Եւ ամենայ-
նիւ էր առելի տեսութիւն, ևս աւելի բարքն առելի Աստու-
ծոյ. [ե] և դժնդակ քրիստոնէից և սրբոց Աստուծոյ. Վասն որ-
ոյ Գրիգոր ուղղափառ և հանճարեղ առաւել քան զառաւելս,
որ և աստուածաբան կոչեցաւ, որ և [զ] զՅուլիանոսի իրս երկայն
բանիւք զնորա չարութիւնն ներձայնեցուցանէ և ստուգապէս

ա. Գ. Մոլէական. բ. Ա՛ շարժաւ ոծեալք. Գ. անկանծք Նոր. ուղ-ղում է .անկայք. գ Ա. ծեվք. դ Ա. Բ. եռանդոտ. ե. Գ. տեսութեան Աստուծոյ. զ. Գ. եւ յոր.

«նակեցելոյ» իսկ բազմաց յայլեցմանց և յեռանդմանց»
«և ի վհոց ևս և յարանցան մարդիք, և գաղանատեսակք»
«զաննմանեաց և համայրաց բնութիւնսն նորա ձևել:
«Այս և յետոյ արժանի բերանք ամահանաց:»

Այսպիսիս Գրիգորիոս ասկս Յուղիանոսի պատմեաց: Զի և ընդդէմ քրիստոնէից բանս բազումս ծախեաց ըզ-ճշմարտութիւնն սկսաւ բռնադատել, զի զոմանս յաստուածային գրոց եղծեալ, և զայս փոխեալ, զամենայնն առ ընտանին առնէր դիտումն, բայց բազմաց պատահելով նոցա ցուցին քակտելով և յանդիմանելով զնոցայն իմաստմունս: Նախ քան զամենեսին Որոգինէս, որ և առաւել ժամանակացն Յուղիանոսի վերադոյն գոլով, զլծուեալսն խառնակեալ ընթերցողացն յաստուածային գրոց, ընդդիմաբերելով ընքեամբ և թարգմանեալ, զչարաբարուեցելոցն իմաստական բանադիտութիւնսն փակեաց: Որոց թէ ոչ փաթարաբար էր ընթերցեալ Յուղիանոսի և Պորփիւռիոսի, այլ բարեմտաբար ընկալեալ ամենայն իրաւք արդեւք, ի յայլ ինչ զբանսն էին դարձուցեալ, և ոչ թերևս ի յիմաստմունս հայհոյականս գրեալ էին եղեալք: Վասն զի թագաւորն պարսաւել պատշաճեցոյց առ ադէտսն[ա] և պարզամիտս գբանսն արարեալ, և զի ոչ առ որս յաստուածայնոց գրոց կերպարան ճշմարտութեան ունելով անդուստ յայտէ. քանզի առնլով զճառեալսն, որքան պիտոյից աղագաւ տնաւրինաբար ի վերայ Աստուծոյ մարդկականագոյն կարգին, և բազումս ինչ այսպի-

ա Բն. πρὸς τοὺς ἰδιώτας·

ճառէ, որք կամիցին ուսանել զնորա իրսն. Նա և բազում ուրեք ճառի[ա] Նորա չարութեանն[բ] գործ և բան և մեզ աւելորդ է երկայնել[գ] զբանս.

ա. Ն ճառի. բ. Գ. չարութիւն գ. Գ. երկայնեալ:

ախս ի վերայ համբարձեալ, յետոյ բերէ ի վերայ զայս ինչ.

«Այսոցիկ այժմ իւրաքանչիւրն, եթէ ոչ բան է «տարակուսական ունելով իմն տեսութիւն, զոր ես կարծեցից, բազ՚ումք են լի բանքն յաղագս Աստուծոյ Հայհոյութեան։»

Եւ զայսոսիկ ի յերկրորդումն նորա ընդդէմ քրիստոնէից գլխոյն բանիւք ճառեաց։ Իսկ ի ճառին նորա զոր յաղագս վերագրեաց,[ա] ուսուցանելով որպէս զի պարտէ զաստուածայինսն ստեղծաբանել առասպելս, և պարտէ թագուցանել յաղագս այսպիսեացն ճշմարտութիւն, ասելով այսոքիւք բանիւք զայսոսիկ։

«Քանզի սիրէ բնութիւնս թաքչել. և թագուցեալն աստուածոցն գոյութենէ ոչ առնու յանձն մերկ բանիւք յանսուրբսն անկանել լսելիս։»

Երևի այսոքիւք Թագաւորն կարծիս ունել յաղագս աստուածայնոց գրոց, իբր թէ է ինչ բանք խորհրդականք տարակուսական իմն տեսութիւն ունելով, [illegible]էր զայլագնի ի վերայ և ոչ ամենեցուն ունողացն, և ընթանալ ընդդէմ որոց ի քրիստոնէսն պարզագոյն ընդունողացն զբանսն։ Բայց ոչ էր պարտ այնքան ընթանալ ընդդէմ պարզամտութեանն բազմացն, և ոչ ամբաստանել վասն նոցա հակառակ աստուածայնոց գրոց, և ոչ ատել և ի բաց շրջել զբարուոքն նոցա միացեալսն, զի ոչ ամենեքին զայնս իմանային որպէս նոյն խորհէր։ Բայց այժմ որպէս նմանեցաւ, զնոյնսն Պորփիւրոսի կրեաց. քանզի նորա վէրս ի Կեսարիայ Պաղեստինուոյ յոմանց ի քրիստոնէից առեալ,[բ] ի ս և ա մ ա ղ ձ ա-

ա. Περὶ κυνισμοῦ.

բ Բն. ասել ունի . Եւ ոչ տարեալ զբարկութիւնն.:

կանէն[ա] զքրիստոնէութիւն եթող. և ատելութեամբն հարողացն զնա ի հայհոյութիւն հակառակ քրիստոնէիցն գրեալ եղև անկեալ, որպէս զի զնա Եւսեբիոս Պամփիլեա յանդիմանեաց, խախտելով զբանսն նորա։ Իսկ Թագաւորին բարձրատեսաբար[բ] առ պարզամտան[գ] քրիստոնէից ունելով ի նորուն ախտէն ի Պորփիւրի հայհոյութիւնն խոնարհեցաւ. և երկոքինն կամաւորապէս ամբարշտեալք, գիտութեամբ մեղացն զյանդիմանութիւնըն ընդունին։ Եւ վասն զի իմաստակն Լիբիոս[դ] այպանելով, զոր ի Պաղեստինոյն, ասէ, մարդ ատեալ և Աստուծոյ մանուկ առնեն, մոռանալ ինձ թուի, որպէս զի նա կատարէ զնորին բանին որ զՅուլիանոս աստուածացոյցն։ Քանզի նախկին ասէ զհրեշտակն զպատմող վախճանին, իսկ յետ փոքր ինչ իրի ի բաց լուծին, որպէս ըղհակառակ Աստուծոյ ստող։ Այպա սակաւ ինչ անցեալ. ով դիւաց[ե] ասէ, սնուցիչ, դիւաց և աշակերտ, դիւաց և սպասիչ։

Բայց զայսսիկ թէև նա այլապէս իմանայր, այլ սակայն չհամանուանութիւն վաթարին խոնարհեցուցել զայսոսիկ համարեցաւ ասել, զոր և քրիստոնէք նախատելով ասեն։ Զի թէ զովութեան հող տանէր, պարտ էր փախչել ի համանուանութենէն. որպէս փախեաւն և սակս միւս այլն բանի, յաղագս որոյ բամբասեալ յնքեանց բանից եհատ։ Բայց թէ ո՞րպէս այսուհետև. զի՞նչ որ

ա. μελαγχολία·

բ ὑπεροπτικῶς.

գ. Բնագրի ὁ ἰδιώτη; բառը նախընթաց էջ 280 ծն ա. թարգմանուած է «տգէտ»։

դ Λιβάνιος·

ե. ἐδαιμένων·

ըստ Քրիստոսի բանին աստուածաբանի և զի՞արդ որ յայտ-
նին մարդ էր, իսկ անյայտն Աստուած, և զիա՞րդ եր-
կոքինն ճշմարիտ են, քրիստոնէիցն աստուածաբանք գի-
տակք են։ Այլ հեթանոսքն նախ քան զհաւատալն ո՛չ կարեն
առնուլ ի միտ, քանզի ասէ բանն. Ոչ հաւատասջիք, և
ոչ ի միտ առջիք։ Վասն որոյ ոչ ամաչեն բազում մարդիկ
աստուածացուցեալս. և եթէ քաղցունս[ա] պատճառով
կամ արդարս. զարբեցութեան ծառայեալս զՀռակլեսն
ասեմ և զԴիոնիսոսն և զԱսկղեպիոսն։ Ըստ որոյ յաճա-
խի յիւրսն բանս երդնլով Դիոնիսոս ոչ պատկառէ.
որոց զարուականս և զիգականսն տռփմունս թէ արկանէի
ի թիւ, հեռի մեզ լինէր յանգ ելանելոյն բանի։ Բայց բա-
ւական լիցի զայս կամողացն գիտել զԱրիստոտելին Պեպ-
ղոս, և զԴիւնիւսին Ստեփանոս, և զԻրգինոսին Պոլիմ-
նիմոն,[1] և զարարողացն[բ] բազմութիւնն, որոց յաղագս այ-
սոցիկ գրեալ ասեմ զօրս և արդար և ընդ վայրս քան
զամենայն հեթանոսացն աստուածաբանութիւնս ցուցա-
նեն։ Զի ընքեան հեթանոսացն է յոլովապէս մարդիկ
աստուածացուցեալ, բաւականէ սակաւուցն յիշել։ Քան-
զի Ռոդացեացն[գ] յանցս ինչ անկելոց տուեալ պատաս-
խատրութիւն, որպէս զի արդեաք զՓրուիկացի Ատտին,
զքաղհանայն մոլեկան նուիրացն որ ի Փռուիգեա մեծա-
րեացն։ Եւ է պատասխանին այսպիսի։

«ԶԱտին կարդալ աստուած մեծ. և սուրբ զԱդոնիս
բարի վարուք։

ա. Բն. χρηστοὺς τὸν τρόπον. · եթէ արի, քաջք են ։
բ. Տես էջ 271 ծն. 1.
գ. Ροδίοις. Ձեռ. ունի · ռոզացեացն ։

1 Այստեղ յիշած Պեպղոս, Ստեփաննոս եւ Պոլեմոնիուն այդ հոդի-նակների գրած հռչակաւոր գրեանց անունն է։

«Եւ առատապարգև, և բարեգէս զԴիոնիւսիոս»։ ա

Իսկ պատասխանատրութիւնն և զօր ի մոլեկան հարցականէն հատեալ զնոյն Ադոնին և Դիոնիւսիոս լինել ասէ։ Իսկ Մակեդովնայեաց թագաւորին Աղեքսանդրիոսի յԱսիա կոյս անցեալ, Անփիկտոնքն գիւթէին, զի արդեւք արարեալ Աղեքսանդրի շնորհեսցեն։

Եւ եցոյց Պիւթիայն բ զայս «ՋՋևս աստուածոց հեպատոս, գ և զԱթինա զէ ծնունդ դն։ » դ

«Պատուեցէք, ի մահկանացուաց մարմնի թագաւոր»

«Զոր Ջևս անճառելի սերմամբք սերմանեաց, գործակից»

«Աւգուտ մահկանացուաց զԱղեքսանդր թագաւոր»։ ե

Զայսոսիկ որ ի Պիւթիա ի դէն պատասխանեաց. որ և նա զզաւրաւորսն ակիսելով աստուածս առնէր. և զայս թերևս ակիրս առնէր։ Զի՞նչ արդեւք ոք ասիցէ, զի և Կղզէոմիդ զմիցողն աստուածացոյց։

Պատասխանեալ և յաղագս նորա։

«Զայս յետո ի քաջաց Կղէոմիտ քաղաքամիցող.

«Զոր զոհիւք պատուեցէք. ասէ ոպէս զոչ ևս մահկանացու գոլով։» զ

Եւ Յիւնոմաոս ի Յաստասէ, ընտրին զՊիւթէայն Ապողովնի։

Իսկ Կնիդիոնացիքն երեքտասաներորդ աստուած զԱդրիանոս յորջորջել, իսկ Ադրիանոսի ընդ Անտինուն

ա. Այս տողերը բնագրի մէջ հեքսամետր է:

բ. B. Ուտհա Ձեռ. սխալմամբ «դիւթիայն» ունի:

գ. B. ό ὕπατος Աձական անուն է. - գլխաւոր, բարձրագոյն:.

դ. Τριτογένεια.

ե. Այս չորս տողերն էլ բնագրի մէջ հեքսամետրով են:

զ. Բն. երկու հեքսամետր:

*տուփեալ սատուածացոյց։ Եւ զայսօրիկ այպանելիս և լնդ-վայրս ոչ անուանէ Գիբանիոս, և գքրիստոնեայս և ըղ-միայնագիրսն զոր Անդրէաս Աղէքսանդրու վարսն գրեաց, գիտացեալ ոչ Թաքչի և զնա զՊորփիւրիոս աստուածա-ցուցանելովն. քանզի քաւ լիցի, ասէ, Տիւրիոս եԹէ Նախ-կին ընտրելոց քան զնա զԹագաւորին գրեանն։*

*Այսորիկ վասն իմաստակին բամբասանաց ի կատար-մանս բաւականաբար ճառեցաւ. զառանձին իրողուԹեան պիտելիս Թողուլ ինձ համարիմ, բայց այս զկնի պատ-մուԹեանն ի վերայ եղաւ մեզ։*

ԳԼ. ԻԴ. [1]

*Թագաւորին Յոբիան յաշխարհէ Պարսից գնացեալ, առ ժամայն նորոգէր որ ինչ եկեղեցեացն. իսկ առաջ-նորդք եկեղեցեացն ընԹանալ փուԹային, ակն ունելով իւրաքանչիւր ումեք յիւրեանց հաւատ յաւելուլ զԹա-գաւորն։ Իսկ նա նախկին համագոյուԹեանն հաւատով*

1. Տես. Մոզոմ. Զ. Ս. Թէոդ. Դ. 2. 3. Ռուփ. ԺԱ. 1. Կաս. ... 3. Նիկիփ. Ժ. 39.

*Յաղագս դառնալոյն Ցոբիանոսի ի պատերազմէն եւ նորոգեալ զքրիստո-նէութիւն, եւ թէ որպէս Աթանաս վերադառնայ ի յաթոռն իւր հրամանաւ Ցոբիանոսի եւ դիւրութիւն մնի քրիստոնէից:*

ԳԼ. ԺԸ.

*Եւ Ցոբիանոս դարձեալ զօրօքն յաշխարհն իւրեանց՝ առ ժամայն նորոգէր քրիստոնէութիւնն, և եղծանէր հեթանոսու-թիւնն։ Եւ առաջնորդք եկեղեցւոյն փութային [ա] ի տես Թա-գաւորին, և նովաւ զիւրն հաստատել հաւատս [բ]. իսկ նա ամե-նեցուն հաւատն զհամապդոյութեան որ ի սուրբ ժողովոյն Նի-կիայ աւէր [գ] ընդունել ամենեցուն ի խաղաղութիւն, և ոչինչ*

ա. Գ. փութանային. բ. Գ. զհաստատս. գ. Բ. հիք.

*զոլով, յայնժամ ամենեցունց խաղաղաբար մատուցանէր զիւրն։*

*Եւ քաջալերեցուցանէր Թղթովք զԱթանաս Աղեքսանդրացեաց եպիսկոպոս. որ անդէն իսկ յետ մահուանն Յուղիանոսի զեկեղեցիսն Աղեքսանդրիոյ ընկալաւ, յայնժամ ապա համարձակագոյն ի թղթոց թագաւորին եղեալ, յամենայն կողմանց երկիւղէն վճարեալ լինէր։ Կոչէր թագաւորն և զորս ի Կոստանդիոսէ աքսորեալ եպիսկոպո(ս)ունս, զոչ հասեալսն ի Յուղիանոսէ կոչիլ։ Նայքան և զտաճարսն հեթանոսաց խնոյր, իսկ նոքա այլ այլուր ծածկեալք լինէին։ Եւ որ զփիլիսոփայականսն ունէին հանդերձս, յայնժամ ի բաց եդեալ զհասարակացն ձեւ առնուին, դադարէր ի նոցանէն և որ արեամբ հրապարակաւ եղեալ շաղախումն, որով անյագաբար Յուլիանոսիւ ածանէին։ Յ ա յ ս պ ի ս ի  կ ա ր գ ա ւ ո ր ո ւ թ ե ա ն  լ ի ն է ր  ո ր  ի ն չ  հ ե թ ա ն ո ս ա ց ն։*[ա]

*ա. Այս նախադասությունը չկայ բնագրի մէջ։*

*աւելի այլ ինչ քան զայս։ Եւ գրէ Թուղթս առ Աթանաս. դարձեալ ունել զիւր աթոռն. և զեկեղեցիս Աղեքսանդրի և Եգիպտոսի, որ ի նմա յառաջ հաւատացեալ։ Յայնժամ համարձակութիւն առեալ ի թղթոց թագաւորին, երևեցուցանէր զինքըն ի թաքստենէն. և ընդունէր զաթոռ իւր և հովուէր զժողովուրդ իւր.*[ա] *զհաւատացեալս յԱստուծոյ*[բ] *կոչէր և զամենայն եպիսկոպոսս զաքսորեալս ի Կոստանդիանոսէ, և զոչ հաստատեալ ի Յուլիանոսէ, կոչեցեալ զնոսա՝ հաստատէր։ Եւ զպաշտամունս հեթանոսաց խափանէր, և զմեհեանս նոցա քակէր անպաշտելիս։ Իսկ որ զփիլիսոփայութեան ունէին երևելի հանդերձս ըստ Յուլիանոսի օրինադրութեանն, հրամայէր ի բաց դնել՝ և զհասարակաց հանդերձս*[գ] *զգենուլ.*[դ] *և դա-*

*ա. Ա՝ չիք. բ. Բ. Աստուծոյ. գ. Բ. զհանդերձս. դ. Ա զգենուլ.*

Գլ. ԽՆ. [1]

Բայց քրիստոնէիցն ոչ լուէր, քանզի առաջնորդք աղանդոցն առ Թագաւորն գային, զառ ի նմանէ համարձակութիւնն հակառակ կարծեցելոյն նոցա ընդդիմամարտից գոլ յուսալով։ Եւ նախ Մակեդոնիանոսացն արարեալ գիրս մատուցին, արժանաւորելով արտաքս մըղել յեկեղեցւոյն զորս զաննմանն կարգեն, և զինքեանս փոխանակ մուծանել։ Եւ էին տուողքն զգիրս աղաչանաց այսոքիկ. Բասիղ Անկիւրայ, Սիղբանոս Տարսոնի, Սոփռոնիոս Պոմփիուպողսի, Պասինիկոս Զիղացեաց, [ա] Թէոփիլոս Կաստաբաղացեաց։ Զայսոցիկ զգիրս ընկալեալ Թագաւորին անպատասխանիս զնոսա առաքեաց. միայն այսպէս ասացեալ. Ես ասէ զմիաբանութիւնն ատեամ և զընթացողսն առ միաբանութիւն սիրեմ և պատուեմ։ Զայսոսիկ և յայլոցն տուեալ լսելիս, զպնդագոյնն միձել կամողացն Թուղացոյց. և այս ըստ դիտման Թա-

ա. Ζήνων.

1 Տես Սոզոմ Չ. 4. Փիլոստ. Ը. 2–7. Կասիոդոր Է. 4. Նիկեփ. Ժ. 10.

—ղարեցուցանէր որ արեամբ [ա] և հրապարակաւ եղեալ շաղաղմունք, որ առ Յուլիանոսիւ եղև ըստ հեթանոսացն կրօնիցն։ Բայց հեթանոսացն մարտ լուեալ առ քրիստոնեայսն, այլ քրիստոնէից մարտ առ միմեանս ոչ լուէր։ Քանզի Մակեդոնիոսք արարեալ գիր զիւրեանցն մուծանել ի տեղի որոշելոցն և հաստատել զհաւատ հոգեմարտին Մակեդոնիա։ [բ] Զայս գիր ընթերցեալ անպատասխանիս զնոսա առնէ։

Ասէ. ես զմիաբանութիւն ատեմ և զմիաբանութիւն սիրեմ ըստ սուրբ ժողովոյն հաւատոյ։ Այս ամենեցունց լսե-

ա Բ. չ'ք բ. Բ. Մակեդոնի։

գաւորին լինէր։ Քանզի այսքան և որոյ Ակակայն վիճա-
բանութիւն յանդիմանել լինէր, և որպէս էին միշտ առ
ունողն խոնարհեալք, յարտաքար եցոյց։ Զի ժողովեալք
յԱնտիոքայ Ասորեաց ի քանոն գան Մեղիտիոսի, որ
փոքր ինչ յառաջ մեկնեալ ի նոցանէ, ի համագոյու-
թիւնն յաւելաւ։ Բայց զայս արարին, զի պատուեալ
ի Թագաւորէն տեսանէին զնա անդ յայնժամ կելով։
Եւ միաբան կամաւք գիրս շարագրեալ խոստովանէին ըզ-
համագոյութիւնն, և զՆիկիոյն հաւատ հաստատեալ մա-
տուցանեն Թագաւորին, Մեղիտիոս և Անտիոքայ եպիս-
կոպոսն և այլ բազումք ընդ նոսա։[ա] Իսկ զայս զգիրս
ի ժողովս ժողովրդականացն Սաբինոսի գրելոցն գտաք
յորժամ շարադրեցաքն։ Իսկ Թագաւորն յաւժարու-
թիւն ունելով աղերսիւ հաւանեցուցանել զորոշելոցն
միաբանութիւն հատանել, ասացեալ, մի ինչ խռովա-

ա. Բնագրում եղող Թագաւորին ներկայացրած Թղթի պատճէնը բաց է Թողուած:

լիս եհաս ըստ դիմաց Թագաւորին. յայտնի և Ակակա վիճա-
բանութիւն յանդիմանեալ[ա] լինէր. և որպէս էին միշտ առ
ունողն խոնարհեալ յայտնաբար եցոյց. Քանզի ժողովեալ
յԱնտիոք Ասորեաց հաւանեն Մեղիտոնի, որ հաւանէր զհա-
մագոյութիւնն. և զայս արարին, զի պատուեալ զնա Թագա-
ւորին տեսին։ Ցայնժամ գիր հաւատոյ ըստ սուրբ ժողովոյն
Նիկիոյ շարագրեցին և մատուցին Թագաւորին. և Մեղիտոսի
Անտիոքայ եպիսկոպոսի, և այլ բազմաց[բ] ուղղափառաց ընդ
նոսա։ Եւ Թագաւորն յօժարութիւն ունէր աղերսիւ հաւանե-
ցուցանել, զոր ոչ եղոյծ վիճաբանութիւնք. զի ծանր էր նմա
խռովութիւն հաւատոյ. Եւ այնուհետև պատուել և տալ սի-
րել առէր զմիաբանեալսն ի սկզբան հաւատոյն սուրբ ժողովոյն.

ա Բ. յանդիմանութիւն. բ. Բ. եպիսկոպոսաց.

կոն հաւատացելոցն լինել այսուհետեւ, այլ սիրել և առաւել պատուել զոր ի սկզբանէ միաւորութեամբ յեկեղեցւոյ եկեալսն։ Զայս այսպէս նմա գործել Թեմիստրոս[ա] ասէ իմաստասէրն. քանզի հիւպատիկոն բան հանելով,[բ] զարմացուցանէ զԹագաւորն. որպէս զի տալ աղանդաւորել զոր կամին ամենեքին, յաղթահարեալ զաղերսանացն ժամանակս։ Զորս և տարաքարշելով այպանաբար ասէր յանդիմանել զնոսա, ծիրանիս զԱստուած ուրախացուցիչս, ոչ լաւագոյն լինել նոցա քան զԵւռիպոս, և այժմ առ այսոքիկ այժմ ի հակառակ զհոսանսն փոխելով[գ] այսպէս ասէ թէ և սոքա ըստ կամաց եւռոպիականք են։

## Գլ. ԻԶ.[1]

Այսպէս ապա Թագաւորին յայնժամ զդիմումն հա-

ա. Θεμίστιος.

բ. Բն. ὑπατικὸν γὰρ λόγον εἰς αὐτὸν διαλθὼν քանզի գրելով ճառ ի վերայ հիւպատոսութեան նորա (արքայի):

գ. Այս էջի վերջում գրիչը քնից յոգնած գրել է ստորին լուսանցքում. «եղ.ւկ քունս ներեաց եւ վիշտս յաւելաւ կամի»:

1 Տես Սոզոմ. Զ. 6 Թէոդ.որ. Դ. 6. Փիլոստ. Ը. 8. Կասիոդ. Է. 6. Նիկեփ. Ժ. 43.

Եւ այսպէս Թագաւորն զհակառակութեան հերձուածոցն՝[ա] ցածուցանէր ի միաբանութիւն սուրբ ժողովոյն ի փառս ամենասուրբ Երրորդութեանն.

## Գլ. ԺԸ.

Յաղագս Յովիանոսի գնալն առ ի թաղել զՅուլիանոս. եւ թէ որպէս զովարանի, եւ ի գալն ի Կոստանդնուպօլիս եկեալ գիւղ մի մեռանի՝ թագաւորեալ ամիս Է:

Եւ գնացեալ յԱնտիոքու Թագաւորն ի Տարսոն Կիլիկեց-

ա. Բ. Հերձուածն.

*կառակութեանն՝ զյառաջադոյն հերձուածեցելոցն ու-նէր։ Եւ փաղփաղակն հասեալ յԱնտիոքայ ի Տարսոն Կիւլիկեցւոց՝ անդ զՅուլիանոսի մարմինն թաղեաց, և զամենայն զեքսոդիոնին[ա] ուրինաւորութիւն լցեալ, հիւպատոս յայնժամ անուանի, և անդէն ի Կոստանդնուպաւղիս անցանել փութայով։*

*Գոյ ի գեաւղ մի որ անուանի Դատաստանաս, որ է ի մէջ սահմանացն Գաղատացւոյ և Բիւթենացւոյ. ուրանաւր և Թեմեստիոսի իմաստասիրի այղովք Նախարարաւքն ընդ յառաջ ելեալ, զհիւպատոսական բան ասէր ի վերայ նորա. զոր և յետոյ ի Կոստանդնուպաւղիս ամբոխին եցոյց։ Այլ բարեբաղդաբար զՀռովմայեցւոցն զօրծեաց կարծելով, զաշխարհականսն և զեկեղեցեացն։ Այսպէս բարեբար Թագաւորի բարեբախտեալ, եթէ ոչ էր եկեալ յանկարծակի ի վերայ նորա մահն.[1] և զայս-*

*ա. զԹաղման։*

1 Տես. Միք. Ասոր. էջ 146. ուր Վարդան պատմագիր «Զենի նորա Կոստանդնի) Յուլիանոս ամս Բ. եւ ամիսս Ը. եւ յետ նորա Յոփիանոս ամ մի զոր գովէ Սոկրատ.» Ասողիկ. Պատմ. Տիեզ. (Ս. Պետերբ. 1885.) էջ 138) նման է Վարդանին. «Եւ ապա Յովիանոս եղբօրորդի Կոստանդիանոսի Բ ամ։ Սա մեռաւ ի Գալոս եւ Թաղեցաւ ի Տարսոն որպէս Սոկրատ ասէ» Նորայրը այս համառօտ ակնարկութիւնից եզրակացնում է, որ Ասողիկը տեսել է Մեծ Սոկրատը. ասելով «Յայս ակնարկէ Ասողիկ. Բ. գլ. Ե. էջ 138 առեալ ի Մեծ Սոկրատայ, որպէս Քաւի.»

*ւոց. անդ զմարմինն Յուլիանոսի Թաղէր. Եւ կարգաւորէ ըզգործակալս աշխարհին և անդէն փութով դառնա ի Կոստանդնուպօլիս անցանելով, և գայ ի գիւղ մի, որում անուն էր Դատարան,[ա] մերձ ի սահմանս Գաղատացւոց. Ուրանօր էր Թեմիստիոս[բ] իմաստասէր, այլովք Նախարարօք. ընդ առաջ[գ] ելին Թագաւորին և գովասանութեան բանս առ Թագաւորն ասացին, զոր և գրով յետոյ ի Կոստանդնուպօլիս ցուցեալ, հաճոյ*

*ա. Բ. Դատաստան. բ. Ա՛ Թէմաստիոս գ. Բ. յառաջ.*

նորա ոչ եղելոյ խոստովանի, ոչ ապա, ասէ Բասիլիոս, յաղագս մանկանդ եղիցին կամքն Աստուծոյ: Զայս ասացեալ հրամայեաց թողուլ զԲասիլ: Իսկ մանուկն յետ ոչ սակաւ իրի վաղ ջանեցաւ: [1]

1 Յայտնի է, որ նոյն այս դէպքը Փաւստ․ Բիւզ․ մէջ պատմուած է Մեծն Ներսէսի մասին (Դպրութիւն Դ․ գլ․ Ե․) որի վերայ ուշադրութիւն է դարձրել Հայր Գաթրճեանը․

աւատս համագոյ Երրորդութեան, և միոյ Աստուածութեան, կեցցէ մանուկդ․ ապա թէ ոչ, ոչ ունիմ այսմ լինել․ Իսկ Վաղէս ոչ առնոյր յանձն զհամագոյ Երրորդութեան զհաւատս․ բայց պատիւ առեալ[ա] յերանելւոյն, որպէս յահաւորագոյնէ[բ] յաւժեմնէ,[գ] արձակէր զնա գնալ անդէն ի տեղի իւր․ իսկ մանուկ յետ աւուրց այնոցիկ վախճանեցաւ ի կենացս․

## ԳԼ․ ԶԾ․

Յաղագս Գրիգորի Անձիանձու աստուածաբան կոչեցելոյ վարք:

Իսկ Գրիգորն Անձիանձու՝ առաւել ևս էր շնորհիւ բանականաւ և իմաստութեամբ յարդարեալ[դ] ի Քրիստոս, և զաստուածաբանութեանն զմիտս, (և զխոստովանութեան որ ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին․ գեղեցկագոյնս արտագրէր՝ գրով և անգիր, ի քաղաքս և ի գաւառս,[ե] որ զերեսին բաժանէ զառանձնաւորութիւնս Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ: Եւ դարձեալ միաւորէ որոշմամբն միոյ Աստուածութեամբն, և հրաշափառագոյնս հիւսէ զարմազանական մտաւորութեամբ, և յարմարական տեսութեամբք իմանալեաց, համառօտ բանիւք զվատթարսն ի բաց ընկենու,[զ] և զլաւագոյնս հաստատէ, Զոր և ոչ մի ոք ի հերետիկոսացն կարասցէ ընդդէմ կալ նորա բանականացն, և կամ վտահացի առնուլ զամուրս խորագիտու-

ա․ Ա, Գ․ Դ․ պատկառեալ․ բ․ յահաւորագունեղէ․ գ․ Ն․ իմնմնէ․ դ․ Դ․ զարդարեալ․ ե Դ․ գեաւղ․ զ․ Գ․ ընկելու․

Այսքան յաղագս այսոցիկ իբր կարճառօտիւք ճառեցաւ։ Եւ գրեանն որպէս իւրաքանչիւր ոք ի նոցանէ բազումս և սքանչելիս շարադրեցին և արտադրեցին, յորոց զմին ի Հռովմայական լեզու փոխեր, Ռուփինոս

Թեան իմաստից. վի յամենայնի ողջախոհ էր և մեծախորհուրդ և խոհեմագոյն և հանճարեղ բանիւք, ա որ զբարս տպարատանիցն խրատէր, և յանհանճար բ աղանդից մաքրէր, գ և յուղղափառացն փարախն ժողովէր, այլ յայլմէ երևմանցն դ Արիանոսացն և Հոգեմարտից, և միահամուռ ամենայն հերձուածողաց, որք չարաչար բաժանեն և օտարեն ի ճշմարիտ հաւատոյն. (Եւ այսպէս Աստուածութեանն ե երևելի ցուցեալ, Աստուածաբան յորջորջի. և ի կոչումն քահանայութեան չհաւանեալ, փախնու յահաւորացս զ սպասաւորելոց. այլ ըմբռնեալ ի հօրէն իւրմէ, որ էր եպիսկոպոս, առաքինութեամբ է յորդորեալ կամաւ Բարսղի և այլոց բազմաց հարկաւորի, և հաւանեալ օծանի յեկեղեցւոյն, ը որ ի հօրէն շինի. (Եւ առ այսոսիկ բան ընծայէ հօր և ժողովրդեանն, յաղթեալ ըզպարտութիւն խոստովանեալ, և վասն շնորհի թ քահանայութեանն զբերան իմ, ասէ բացի՝ և առի զհոգի, ժ և ժա այսպէս յառաջանայր օծմամբ և հոգւովն լուսաւոր, և պայծառ աստուածաբանութեամբն, ժբ և շնորհալից բանականօքն.) ժգ Վասն որոյ փոքրինչ յետոյ և յեպիսկոպոսութիւն վերակոչի եկեղեցւոյն ժդ Աստուծոյ, որ հօրն էր վիճակեալ, (զոր դարձեալ ասէ օծումն և հոգի, և զինքն արամեալ և տխրեալ վասն մեծութեան

ա. Դ. եւ կամ վստահացի ... բանիւք չիք. բ. Ա. Դ. անհանճար. գ. Դ. քակէող. դ. Գ. երեւանցն. ե. Ա. յաստուածութեան. զ. Ա. Ն ահաւորացն. է. Դ. արդարութեամբ. ը. Ն. Դ. եկեղեցւոյն. թ. Ա. շնորհիւ. ժ. Գ. զհոգի իր եւ այսպէս. Ա. զհոգիայսպէս. Դ. եւ առ այսոսիկ ... զհոգի չիք. ժա. Գ. Ա. բանականօք. ժբ. Ն. Դ. պայծառ աստուածաբանութիւնն. ժգ. Ն յեկեղեցւոյն. ժդ. Բ. եւ.

տուէ։ Իսկ Բարսղի եղբարք եղեն Պետրոս և Գրիգորիոս։ Բայց Պետրոս զմիայնական վարս Բարսղի նախանձեցաւ. Իսկ Գրիգոր զվարդապետական բանսն։ Որ և զվաստակեալ Վեցաւրեայն Բարսղի անկատար մնացեալ, վե-

տախձանին, և միջնորդութեամբն Աստուծոյ և մարդկան, և որ յայնոսիկ է ահք [ա] և տարակուսանք որք միտս ունին.)[բ] Նաև ընտրութեան շնորհին յետ փոքր ինչ և բազում եպիսկոպոսաց վերակացու կացուցանէին, [գ] թէպէտ և ոչ կամէր ի Կոստանդնուպօլսի, այլ վասն ուղղելոյ զթերահաւատս ի նմա, փոքր ինչ անսա՝ (զտեղափոխութիւնն ունելով մինչև ի ժողովն ր ի Թէոդոսէ յաղագս Հոգեմարտիցն. Եւ ընդ ժամանակսն չ դադարէր յուսուցանելոյ, [դ] որ իմաստասիրութեան էր խարխութիւն և որ ըստ այլ ուսմանց Արիանոսաց և Նոմիանոսաց, և Հոգեմարտից, և որ այլ աղանդք, հակառակ ճշմարտին Աստուծոյ. Եւ զառնս քաջութիւն, և զկորովութիւն [ե] ուսիր ի արին գրոցն, և ծանիցես, որքան պայծառ և բարձրագոյն և րևելի, և այնպէս հաստատեսցիս ի հաւատս [զ] համագոյութեանն և ի մի Աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ.)

Եւ յաղագս տնօրէնութեան Քրիստոսի և մկրտութեան, և մելոյ [է] լուսաւորութիւնս, և յարութեան որ ի մեռելոց, և դատաստանին յաւիտենից, և որ այնքան ճառք շարադասեալք ի նմանէ. Մի անգիտասցիս զչափ շնորհին տուեալ նմա ի վերուստ, զի անհամեմատ էր ըստ ամենայնի, ոչ միայն ըստ աստուածաբանութեամբն էր գովեալ, այլ և ըստ սրբոց պատմութեանց՝ [ը] որպէս նոյն իսկ ցուցանեն ճառք, զԱթանասին, սեմ, և զԲարսղի և զԳրիգորի, և զՀօր և զեղբօր, և զքոյր [թ]

ա. Ա, ահ. բ. Դ. զոր դարձեալ . . . . միտս ունին չիք. գ. Դ ի վերա կացուցանէին. դ. Ա, Գ. ուսուցանելոյ. ե. Դ զկորովութիւն. ընդդէմ պատերազմողաց զքաջապէս արութիւն ուսիր ի նորին. զ. Ա, չիք. է. Դ. ւ.ւ մեր. ը Գ. սրբութեանց. թ. Ա՝ Գ. զքոյր.

ըլստին կատարեաց յետ մահուան եղբաւրն։ Եւ գերեզմանականի [ա] Մեղիտոս Անտիոքիայ եպիսկոպոսն արար ի Կոստանդինուպաւլսի, բերին [բ] նորա և յայլ բանք յոլովք։

## Գլ· ԻԷ· [1]

Բայց զի ոմանք ի համանունութենէն մոլորին, պարտ է տեսանել թէ այլ է Պոնտացին Գրիգոր, [2] ու ի Նէոյ-

ա· ἐπιτάφιον ճառ դամբանական։
բ· φέρονται մնացեալ են։

1 Կաս· Ը· 8· Նիկեփ· ԺԱ· 19·
2 Սա մեռաւ 365 Թ· տես Եւս· Պատ· Եկ· Ձ· 30·

և զԿիպրիանոսի, և զՄակարայեցւոցն, և որ առ Յուլիանոսի չար կամս երկայնագոյնս ճառեաց, և առ Մելիտոս զգերեզմանական բանն Անտիոքայ եպիսկոպոսին, թողում ասէ զյոլովս որպէս ամենեցուն է քաջայայտ՛ որ ի նմանէ շարգրեցան։ [ա] Այսորիկ դուզնաքեայք յաղագս սրբոցն ասացան. Բարսղի, և Գրիգորի Աստուածաբանի։

## Գլ· ԻԸ·

Յաղագս Պետրոսի եւ Գրիգորի եղբարցն Բարսղի։

Էին եղբարք Բարսղի համանմանք նորին [բ] շնորհի. Պետրոս և Գրիգորիոս։ Եւ Պետրոս զանապատականն ընտրեաց [գ] զվարս՝ որոշեալ յաշխարհէ, Աստուծոյ մերձ կայ ճգնաւորականհանդիսիւք, [դ] և ամենայն արդար կրօնիւք, և ոչ յիմեքէ [ե] դրդուեալ այլ [զ] կայր միշտ ի սէրն Աստուծոյ կապեալ. Իսկ Գրիգորի՝ վարդապետութիւն [է] նախաձեռնեալ, ոչ սակաւ քան զեղբայրն երևե-

ա· Դ· զԱթանասին ասեմ ի նմանէ շարագրեցան չիք· բ· Ա՛ Գ· Դ· նոցին· գ· Ա՛ ընտրեալ· դ· Դ· հանդիսին· ե· Բ· յումեքէ· զ· Գ· որպէս· է· Դ· իսկ Գրիգորիոս ի վարդապետութիւն· Բ· վարդապետութիւնս·

կեսարւոյ Պոնտոսի դիմեալ յառաջագոյն քան զնոսա էր. քանզի աշակերտ Ոսոգինի եղև։

Յաղագս այսր Գրիգորի բազում բանք են յԱթէնս և յԻւղիւռիաս,[ա] և ի Բիւռիտոն,[բ] և յամենայն Պոնտո-

ա. Այս անունը չկայ բնագրում։
բ. ἐν Βηρυτῷ

Յաւ ի վարդապետութեան գրոց մեկնութեամբ[ա] յոլովից, (որ ըստ ինն երանութեանցն է Քրիստոսի, և աղօթից մտացն, և ըստ Սողոմոնի ունայնութեան[բ] սնոտեացն, և առ Երգս երգոց. Եւ որ ըստ Գրիգորի սքանչելագործի է[գ] պատմութիւն. և վասն կազմութեան մարդոյն, որ ի Բարսղէ անկատար մնաց, յետ Վեցօրէին վախճանի և նա կատարեաց. Եւ այլ ևս յոլովս ունի ասացեալ ճառս ի գիրս հաւաքեալս, աւելի ևս քան զնոսա զորոց[դ] ասացաքն զԲարսղի և զԳրիգորի Աստուածաբանի.[ե] զի յամենայնի[զ] ոչ զյետոյն ունէր ըստ նոցա[է] շնորհէն առաքինութեան աւեմ և գիտութեան. Որ ապա եպիսկոպոսութեան[ը] շնորհ վերակոչի. ոչ ինքեան[թ] ընթացեալ ունի զաթոռն Նիւսիայ,[ժ] և կամ բռնազբօսեալ ըստ մարդկան՝ այլ ըստ Աստուծոյ ազդեցութեանն, և[ժա] արժանաւոր իմաստնոց[ժբ] ընտրութեան որ ըստ Աստուծոյն է. Այսպէս ընկալաւ զեպիսկոպոսութիւն և համանգամայն երևելի[ժգ] և յաղթող եղեալ[ժդ] ընդդէմ հերոտիկոսացն աղանդիցն,[ժե] որ զնոյն տեէր զուղղափառացն, և գրէր զհաւատոյն բանս, և զկարգաց և զկրօնից[ժզ] եկեղեցւոյ Աստուծոյ ըստ ուղղափառացն խորհրդածութեան.) Այսպէս ունիմ յաղագս սորա

ա. Ա, Գ. մեկնութեան բ. Ա չիք. գ. Դ. ունայնութեանցն. դ. Ա. Գ. սքանչելագործէ. ե. Ա, զորոց. Դ. զոր. զ. Դ. աստուածաբանէ է. Ա, ամենայնի. ը. Գ. ըստ նոցին. թ. Ա՛ Դ յեպիսկոպոսութիւն. ժ. Ա՛ չիք՝ ժա. Դ. Նեւսյ կեսարիոյ. ժբ. Ա՛ չիք ժգ. Դ. իմաստնոցն. ժդ. Ա՛ երևելի էր. ժե. Դ. երևելի եղեալ. ժզ. Ա աղանդիցն. Ա՛ զկրօնիցն.

. սակաւ կարգաւորութիւն. մինչ զի ասել թէև յամե-նայն ախեղերս։ Քանզի սորա իբր ի խրատ արանցն Աթե-նացւոց գնացեալ, ի Բիւրիտոն աւրէնսն ուսանէր, և լսեալ ի Կեսարիա զաստուածային գիրս թարգմանել ա Որիգենի, փութանակի ի Կեսարիայ հասանէր։ Եւ լուեալ զմեծամեծ տեսութիւնն աստուածային գրոցն, բազում ողջոյն ասացեալ Հռովմայական աւրինացն, անմեկնելի էր այնուհետև. և ի նմանէ խրատեալ զճշմարիտ իմաստասիրութիւնն։ Յետ այնորիկ ի հայրենիս ծնողացն կոչեալ լինէր։ Եւ անդ նախ ժողովրդական բ գոլով բազում

ա. Մեկնել-ի մտքով։
բ. Λαϊκός

գուգնաքիա ասել որպէս Բարսղի և Աստուածաբանի.

ԳԼ. ՁԼ.

*Ցաղագս Գրիգորի Պոնտացւոյ սքանչելագործ անուանեցելոյ, եւ վասն Գրեգորեանց. այսինքն Աստուածաբանի, Նիւսացւոյ, Սքանչելագործի։*

Էր և այլ Գրիգոր Պոնտացի, որ էր նախկին Որոգինի աշակերտեալ, ոչ այլ ընդ ա այլոյ, այլ ուղղապէս բ յաղագս սորա գ բազում ոքանչելիք դ պատմեն ի Պոնտոս և յամենայն երկրի. Զի ուր էր ի յուսմունսն ե (ի մախանաց զրպարտեալ յաղագս կնոջ զ սքանչելի իմն այսու դիւին զնոսա յանդիմա-նեալ ըստ կնոջն դիւահարեալ. և նմա աւաղջ լեալ,) անդ գայ Որոգինէս է և զաստուածային գիրս թարգմանեալ ի նմա-նէ և խրատեալ ի նմանէ ը զճշմարիտ իմաստութեան. զցոյց և հասու եղեալ ամենայն նորա իմաստութեան զկարևորսն հա-ւաքեալ ի միտսն, ՝ գնայր կոչեցեալ ի ծնողացն. և սքանչելի երևեալ ըստ ամենայնի ըմբռնեալ եղև ի Փեդիմոսէ թ և ձեռ-

1 . Ի միտս նորա հաւաքեցաւ . Խոր. Գ. ԾԳ. 520։

ա. Գ. Բոլ. Ձեռ. ըստ. բ. Գ. ուղղափառապէս. գ. Գ. Նորա. դ. Գ. սքանչ լեալք. ե. Ա, ի ուսմունսն. Դ. ի յուսումն. զ. Բ. կնոջն. է. Ա. Բ. Գ. Ն. Ուրեգինէս. ը. Ա. զնմանէ. թ. Բոլ. Ձեռ. Փիգիմու՝ է.

Նշանս արար, զախտս բժշկելով, զդևս ի ձեռն Թղթոց փախստական առնելով, նաև զհեթանոսս բանիւք. և առաւել ի նմանէ եղելովքն ընծայելով։ Յիշէ զնա և Պանփիղոս վկայ Եւսեբիոս[ա] ի նմանէ մականուն ի վաստակել դիրան իւրեանց յաղագս Որոգինի, յորս և համակարգական ճառ Գրիգորի[բ] յՈրիգեն յարակայի։

Արդ եղեն, որպէս է գլխովին ասել, Գրիգորք երիցագոյնս այս, և աշակերտ Որոգենի, և Նանձիանձացին, և եղբայրն Բարսղի։ Եղև և այլ Գրիգոր յԱղէքսանդրիայ, զոր Արիանոսքն ըստ ժամանակի փախստեանն

ա. Բն. մէջ չկայ «Եւսեբիոս»։
բ. Բն. συστατικὸς λόγος.

Ձեռնադրութիւն յԱստուծոյ ազդեցութենէն առնէ, և սմա[ա] հաստատայ զվերակացութեան եպիսկոպոսութիւն։ Եւ նորա աղաչել զԱստուած յայտնել նմա զհաւատոյն բան սուրբ Երրորդութեանն և ըստ յայտնութեան խորհրդոյն. ցուցեալ եղև ի տեսլեան գրով. ի Յովհաննէ աւետարանչէ աստուածաբանութեան խորհրդածութեան. որ ի Հայր և յՈրդի և ի Սուրբ Հոգին է խոստովանութիւն, ոչինչ նուազ քան որ յԱւետարանին քարոզեաց. այլ առաւել ևս, որ զմի աստուածութիւնն[բ] որոշէ յանանձնաւորականս[գ] և միաւորէ ըստ բնութեան[դ] հլաշափագոյն աստուածաբանութեամբ, որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ, որև նորին գրով հաստատեալ կայ յիկեղեցւոջն Նէոկեսարու, որ վիճակեցաւ նմա։ Եւ յայսմանէ ասեմ առաջնորդեալ Բարսղի և Գրիգորեանց, և որք նոյն հաւատոյն են անդակիցք, թէպէտ և առաւելան[ե] ըստ ազդեցութեան շնորհին, և այսպէս սքանչելի երևեալ, զդևս հալածէր՝ զոմանս աղօթիւք, և զոմանս ի ձեռն Թղթոյ հրամանի և բանի, և զբա-

1 Նոր. «Հրաշալի աստուածաբանութիւն» Խոր. Գ. ԿԸ. 560։

ա. Դ. Նմա. բ. Ա, աստուածութեան. գ. Ա, Դ. ..ռանձնաւորականս. դ. Ն. զբնութիւն. ե. Դ. առաւել են.

Նաւատինոս քահանայ եկեղեցւոյն Հռովմա խըղճացեալ լինէր, վասն զի Կոռնիղոս եպիսկոպոս զհաւատացեալսն որ զոհեցին ի հալածմանն, զոր Թագաւորն Դեկիոսա ընդդէմ եկեղեցւոյն շարժեաց, ի հաղորդութիւն ընկալաւ։ Արդ վասն այս պատճառոյս խղճացեալ, և յեպիսկոպոսութիւն նախձեռնեալ ի համախորհացն Նորա եպիսկոպոսաց, յորոց ամենայն ուրեք եկեղեցեաց գրեաց, մի՛ ընդունել ի խորհուրդ զորս զոհեցինն. այլ յորդորել [illegible]նոսա յապաշխարութիւն, իսկ զթողութիւնն ընկենուլ յԱստուած, որ կարողն է թողուլ զմեղս, և իշխանութիւն ունի ջնջել զյանցանսն։ Այսպիսի թուղթս որոց [illegible] աշխարհացն բ ընդունելով, առ ընտանի ախտսն առ-[illegible]էին զյայտնեցելոցն ընտրութիւն։ Քանզի որպէս նայն յայտնէր ոչ գոլ պարտ արժանաւորել խորհրդոցն գ

ա. Δέκιος
բ. Κατ ἐπαρχίας
գ τῶν μυστηρίων

ԳԼ. ԻԸ.

*Նաւատիանոսաց պատճառ, թէ որով որոշեն ի միմեանց եւ առնելն զտօն Զատկի Բաղարջակերաց ընդ Հրէից:*

Ասացից և վասն Նաւատիանոսացն զպատճառսն. ա թէ որով օրինակաւ որոշին. Նաւատիանոս էրն բ քահանայ եկեղեցւոյն Հռովմայ, և Կոռնելիոս եպիսկոպոս, և որք ի հալածանսն Դեկոսի զոհեցին վասն երկիւղի, Կոռնելիոս ընդունի զդարձեալսն ապաշխարհութեամբ ի հաղորդութիւն, իսկ Նաւատիանոսն ոչ ընդունի. գ Եւ յաղագս այսպիսի պատճառի յեպիսկոպոսութիւն նախաձեռնացաւ Փռիւգացւոցն. և գրէ յեպիս-

ա. Բ. զպատճառն. բ. Գ. Նաւատիանոս էր. գ. Ա՝ ընդունի. Ա. Բ. Ա՝ Գ. Ն. Նաւատիանոսքն ոչ ընդունին.

այնոցիկ որ յետ մկրտութեան զոր առ ր...
արարին. և ոմանց թուէր դառն և խիստ լինել այնպիսի
կանոնոյ արտաքսութիւն, իսկ ոմանց իբրև զիրաւ կանոն
ուղղիչ քաղաքավարութեան ընդունէին։ Եւ այսքան
շարժեալ խնդրոյն, գայր հասանէր ի վերայ Թուղթ Ե-
պիսկոպոսին Կոռնիղոսի, և մեղուցելոցն յետ մկրտու-
թեանն աւետաւորել զփրկութիւն և զթողութիւնն։

Այսպէս երկաքանչիւրոցն գրելով զհակառակսն
և յաստուածային բանից ամրացուցանելով զոր ասէրն,
երկաքանչիւր ոք ըստ ազգացն յայն ձգէին, յոր և նախ-
կինն առաւել խոնարհէին։ Քանզի որքան մեղաւորքն
ըմբռնեալք զոր յայնժամ տուեալ թողութիւնն, և առ
յապայ ժամանակն ի վերայ ամենայն մեղացն այնոցիկ
վարեցան ի միասին։

Բայց երևի ազգն Փռիւգացւոց ողջախոհագոյն
լինել քան զայլ ազգս. քանզի և Սպանիացիք և Փռիւ-
գացիք երդնուլ։ Վասն զի ունել փոքր միականն Իս-

կապոսն" մի ընդունել, որք ի հալածման գլորեցան ի հաղոր-
դութիւն, այլ յորդորել յապաշխարութիւն, և զթողութիւն
յԱստուծոյ ընկենուլ, որ միայն իշխան է թողուլ զմեղս. և
ոչ արժանաւորել խորհրդոյն իսպառ, որք յետ մկրտութեան
մեղանչեն զառ ի մահու չափ մեղս։ Ոմանց թուեցաւ դառն [illegible]
կանոնն. իսկ ոմանց իրաւացի ասացեալքն, և յայսոսիկ էր [illegible] էր
հակառակութիւն։ Ի վերայ այսոցիկ հասանէ թուղթ աւետա[illegible]
ւորութեան ի Կոռնելիոսէ, մեղուցելոցն յետ մկրտութեան [illegible]
ապաշխարութեամբ թողութիւն և հաղորդութիւն փրկակ[illegible]
խորհրդոյն։ Կացին մնացին յայնոսիկ ոմանք ըստ Նաւատ[illegible]
վարդապետութեան, և Նաւատիանոսք կոչին։ Եւ երևի ազգ[illegible]
Փռիւգացւոց ողջախոյ քան զայլով ազգս, քանզի զ[illegible]

ա. Ա, եպիսկոպոսն. բ. Դ եւ զԹուղթն յԱստուծոյ. գ. Ն.
դ. Բ. եւ. ե. Դ. ի յետ մկրտութենէն։

կիւլթացւոց. և ի Տիւրականացւոց՝ իսկ ցանկականաւն ըմբռնողութիւնն ունելով առաւել ծառայեն։ Իսկ Պեփիղոգնացեացն ազգ ոչինչ յայսպիսեացս ցանկութեանց ունէին։ Քանզի ոչ ասպարէզք և ոչ տեսարանք [ա] փութացեալ լինէին ի նոսա այժմ։ Վասն որոյ ինձ թուի հնազանդ նոցա հայել և որք այնպէս խորհին առ ի զբօսանս յայնժամ ի Նաւատիանոսէ. քանզի եթէ զայս -ին ահագին կարծիք լինել ի նոցանէ պոռնկութիւնն, վասն զի զօրս և իցէ հերձուածոյ կենցաղական աղջախոհական վարս ի Փռիւգացիս և ի Պեփղագոնացիս է տեսանել։ Իսկ զայս զպատճառ և զբնակաղն յարեմըտակին կողմունս և Նաւատիանոսաց հաւանողս լինել վարկանիմ։ Բայց Նաւատիանոս թէև յաղագս առոյգ քաղաքավարութեանն խղճացեալ եղև, այլ սակայն զատաւն Զատկին ոչ փոխեաց։ Քանզի միշտ ըստ արևելից կողմանցն առնէր և ինքն կատարէր, և առնեն միշտ որք անդի յետ հասարակաւորութեանն, յորմէ հետէ և քրիստոնէանան։

Այլ սա յետոյ առ Վաղեռիանոսիւ թագաւոր ընդդէմ քրիստոնէից պատերազմ յարոյց՝ վկայեաց։[1]

ա. οὔτε ἱπποδρομία οὔτε θέατρα,

1 Նաւատիանոսները հաստատում են, որ իրենց աղանդի հեղինակը մարտիրոսացաւ, և նրա համար գրել են վարք. լի առասպելներով։

Է զազիր է ի նոսա [ա] պոռնկութիւն. վասն որոյ և իցէ հերձուած աղջախոյագոյն կեանս, քան զայլս զՓռիւգացիս է տեսանել. և զտօն Զատկին ըստ այլ քրիստոնէից տօնէին ի Նաւատիանոսի և ցաստ և ս. Նս առ Վաղէնտիանոսիւ եղեալ [բ]

ա Դ. նոցա. բ. Ա. եղեալ.

Իսկ որք ի Նմանէ ի Փռիւգիա համանունք ըստ հաղորդութեանն, զնոսա յորոց որոշեցան արտայեղեալք, որք ըստ ժամանակին և զատւն Զատկին փոխեցին։ Քանզի ժողով արարեալ ի Պազոն աւանի, ուրանաւր Սագարիս գետոյ ակունքն են, սակաւուց ոմանց և ոչ ի բարենշանաց որոց ի Փռիւգիա Նաւատինոսաց եպիսկոպոսանց, արտաքսերէին սահման որպէս զի պատճել Հրէից, որք առնեն զբաղարջակերսն, և ի նոսա կատարել զտաւն Զատկին։

Զայս պատմեաց ծեր ոմն հին[ա] որ առն ուրումն ծերոյ առէր զինքն գոլ որդի. և ընդ հաւրն լինելով յայնմ ժամու եղեալն ժողովու, ըստ որում Ակեզիոս էր Կոստանդինուպոլսի Նաւատիանոսացն եպիսկոպոս, և ոչ Մաքսիմոս Նիկիւոյ, և ոչ Նիկոմիդիւոյն, և ոչ Կոտւոյ,[բ] քանզի ի նոցանէ մնաւանդ կանոնիւր Նաւատիանոսացն աղանդ։

Այս այսպէս լինէր յայնժամ. բայց սակաւ ինչ յետոյ պատառեցաւ Նաւատիանոսացն եկեղեցի վասն ժողովոյն այնորիկ զոր ըստ աշխարհին ասացաք։ Բայց փոխելի է աստուստ յորս ըստ նմին ժամանակին յարեմտային կողմունս եղեալս։

ա. ἀνήρ παλαιός ․այր ծեր․ կլինէր բառացի թարգ․

բ. Κοτυαείον.

ժողով Նաւատիանոսաց, ուրանոր Սագրիս[ա] գետոյ ակունք են, ոչ նշանաւորք որոց ի Փռիւգիայն[բ] եպիսկոպոսք, և փոխեալ զտօն Զատկին ընդ Հրէից տօնիլ զբաղարջակերացն. Եւ յաղագս այսր պատճառի պատառեցաւ Նաւատիանոսաց եկեղեցին.[գ] Քանզի Թագաւորն Վաղէնտիանոս լռութեամբ կեայր[դ] առ եկեղեցիսն, և ոչ զմի ոք հերձուած խախտէր յինքենէ.[ե]

ա. Ա, Սափրիս. բ. Ա, փռիւգիայ յեպիսկոպոսք. գ. Դ. եկեղեցին. դ. Ա, Գ. կայր. ե. Ա՛ Գ. յինէն։

## Գլ. ԻԹ. [1]

Քանզի Թագաւորին Վաղենտիանոսի լռութեամբ կելով, և ոչ զմին խախտելով հերձուած, և Դամասոս [2] յետ Ղիբերիոսի զեպիսկոպոսութեանն քահանայութիւն ի Հռովմ փոխանորդեաց, առ որով պատահեաց Հռովմայ եկեղեցւոյն խռովիլ [3] յայսպիսի պատճառոյ: Ուրսին ոմն նորին եկեղեցւոյն սարկաւագ ընդ ընտրութեամբ լինէր, յորժամ լինէր ընտրութիւն վասն եպիսկոպոսի: Այլ զի նախընտրեալ եղև Դամասոս, ոչ բերեալ Ուրսինոյ զյուսոյն վրիպանս, ժողովել փութացաւ յեկեղեցին, և հաւանեցոյց զոմանս աննշան եպիսկոպոսունս ձեռնադրել զնա գաղտ: Եւ ձեռնադրիւր ոչ յեկեղեցւոջ, այլ ի գաղտնի տեղ ի Թագաւորականումն ա որ կոչի Սիկինիս: Այսորիկ եղեալ երկպառակութիւն կալաւ զժողովուրդն, և աղմկէին այնուհետև առ նոսա ոչ վասն հաւատոց ինչ կամ հերձուածոյ, այլ միայն եթէ ո՞ւր պարտ է լինել եպիսկոպոս: Աստուստ վիճաւորք լինէին յամբոխէն, մինչ զի ի խառնակմանէն բազմաց մեռանիլ:

Եւ վասն այսորիկ բազում ժողովրդականաց և աւխտաւորաց պատժիլ յեպիսկոպոսէն Մաքսիմիանոսէ.

ա βασιλική բառն է. որ գլ. 1. ծն. բ. չէ թարգմանել:

1 Տես Ռուփին ԺԱ. 10. Սոզոմ. Զ. 23. Ամյան. Մարցելլոս ԻԷ. 3. Կաս. Ը. 10. Նիկեփ. ԺԱ. 30.

2 Սա ազգաւ սպանիացի էր. մեծացաւ Հռովմում եւ զանազան աստիճաններ անցնելով 366 թ. եպիսկոպոս ձեռնադրուեց.

3 Այդ խռովութեան ժամանակ ըստ Ամ. Մարց. վկայութեան մի օրում սպանւում են 137 քաղաքացի.

Իսկ որք ի նմանէ ի Փռիւգիա համանունք ըստ հաղոր-դութեանն, զնոսա յորոց որոշեցան արտայեղեալք, որք ըստ ժամանակին և զատուն Զատկին փոխեցին։ Քանզի ժողով արարեալ ի Պազոն աւանի, ուրանաւր Սագարիս գետոյ ակունքն են, սակաւուց ոմանց և ոչ ի բարե-նշանաց որոց ի Փռիւգիա Նաւատինոսաց եպիսկոպոսաց, արտաբերէին սահման որպէս զի պահել Հրէից, որք առնեն զբաղարջակերսն, և ի նոսա կատարել զատուն Զատկին։

Զայս պատմեաց ծեր ոմն հին ա որ առն ուրուք ծերոյ ասէր զինքն գոլ որդի. և ընդ հաւրն լինելով յայնմ ժամու եղեալն ժողովու, ըստ որում Ագեղիոս էր Կոստանդինուպօլսի Նաւատիանոսացն եպիսկոպոս, և ոչ Մաքսիմոս Նիկիոյ, և ոչ Նիկոմիդիոյն, և ոչ Կոտ-ւոյ, բ քանզի ի նոցանէ մանաւանդ կանոնիւր Նաւա-տիանոսացն աղանդ։

Այս այսպէս լինէր յայնժամ. բայց սակաւ ինչ յետոյ պատառեցաւ Նաւատիանոսացն եկեղեցի վասն ժո-ղովոյն այնորիկ զոր ըստ աշխարհին ասացաք։ Բայց փո-խելի է աստուստ յորս ըստ նմին ժամանակին յարե-մտային կողմունս եղեալս։

ա. ἀνὴρ παλαιός «այր ծեր» կլինէր բառացի թարգ.

բ. Κοτυαείον.

ժողով Նաւատիանոսաց, ուրանօր Սագրիս ա գետոյ ակունք են, ոչ նշանաւորք որոց ի Փռիւգիայն բ եպիսկոպոսք, և փոխեալ զատն Զատկին ընդ Հրէից առնել զբաղարջակերացն. Եւ յա-ղագս այսր պատճառի պատառեցաւ Նաւատիանոսաց եկեղե-ցին. գ Քանզի Թագաւորն Վաղենտիանոս լաւութեամբ կեայր դ առ եկեղեցիսն, և ոչ զմի ոք հերձուած խախտէր յինքենէ. ե

ա. Ա, Սոփրիս. բ. Ա, փռիւգիայ յեպիսկոպոսք. գ. Դ. եկեղեցին. դ Ա, Գ. կայր. ե. Ա՛ Գ. յինէն։

Գլ. ԻԹ. 1

Քանզի թագաւորին Վաղենտիանոսի լռութեամբ կեալով, և ոչ զմին խախտելով հերձուած, և Դամասոս[2] յետ Ղիբերիոսի զեպիսկոպոսութեանն քահանայութիւն ի Հռոմ փոխանորդեաց, առ որով պատահեաց Հռովմայ եկեղեցւոյն խռովիլ[3] յայսպիսի պատճառոյ: Ուրսին ոմն նորին եկեղեցւոյն սարկաւագ ընդ ընտրութեամբ լինէր, յորժամ լինէր ընտրութիւն վասն եպիսկոպոսի: Ապա զի նախընտրեալ եղև Դամասոս, ոչ բերեալ Ուրսինոյ զյուսոյն վրիպանս, ժողովել փութացաւ յեկեղեցին, և հաւանեցոյց զոմանս աննշան եպիսկոպոսունս ձեռնադրել զնա գաղտնի: Եւ ձեռնադրիւր ոչ յեկեղեցւոջ, այլ ի գաղտնի տեղ ի Թագաւորականումն ա որ կոչի Սիկինիս: Այսորիկ եղեալ երկպառակութիւն կալաւ զժողովուրդն, և աղմկէին այնուհետև առ նոսա ոչ վասն հաւատոց ինչ կամ հերձուածոյ, այլ միայն եթէ ո՞ւր պարտ է լինել եպիսկոպոս: Աստուստ միջաւորք լինէին յամբոխէն, մինչ զի ի խառնակմանէն բազմաց մեռանիլ:

Եւ վասն այսորիկ բազում ժողովրդականաց և ուխտաւորաց պատժիլ յեպիսկոպոսէն Մաքսիմիանոսէ.

ա βασιλική բառն է. որ զլ. 1. ծն. Բ. չէ թարգմանել:

1 Տես Ռուփին ԺԱ. 10. Սոզոմ. Զ. 23. Ամիան. Մարցելլոս ԻԷ. 3. կամ. Ը. 10. Նիկեփ. ԺԱ. 30.

2 Սա ազգաւ սպանիացի էր. մեծացաւ Հռոմում եւ զանազան պաշտօններ անցնելով 366 թ. եպիսկոպոս ձեռնադրուեցաւ.

3 Այդ խռովութեան ժամանակ ըստ Ամ. Մարց. վկայութեան մի օրում սպանւում են 137 քաղաքացի.

որ յայնժամ և այնպէս զՈւաղէսն[1] դադարեցուցանել ի ձեռնարկմանէն, և արգելուլ ոչ խորհեցան հետևել նմա։

ԳԼ. Լ.[2]

Իսկ ընդ նոյն ժամանակաւն արժանի յիշատակի պատահեաց լինել ի Մեդիոլանոն։ Քանզի վախճանեալ եպիսկոպոսին որ անուն Աւքսենտիոս, որ յԱրիանոսացն ձեռնադրիւր, դարձեալ ոյք ի Մեդիոլանոն վասն ընտրութեան եպիսկոպոսի խռովէին, և բազում էր վէճն որ ի նոսա, այլոց զայլ ընտրել փութացելոց։ Իսկ իբր վասն այնորիկ աղմուկն լինէր, երկուցեալ իշխանի աշխարհին, որ ունէր զպատիւ հիւպատոսական, Ամբրոս անուն, զի մի արդեօք ի խռովութենէն անտեղի ինչ իրք լինիցին ի քաղաքին, ընթանայր յեկեղեցին որպէս զի դադարեցուցանել զաղմուկն։ Իսկ իբրև անդր հասանէր լռէր ժողովուրդն, և բազում աղաղակաւք

1 Ուաղէսն ծանուցեալ եպիսկոպոսս ձեռնադրութեամբ. յոյս ունէր իշխանութիւն ձեռք գցել. բայց սխալուած եղաւ հետևանք Հարմէս. եւ վերջ տարոյ 366 Թ.

2 Տես. Սոզ. Զ. 23. 24. Թէոդ. Դ. 6. Նիկեփ. ԺԱ. 32. Ռուփ. ԺԱ. 11.

ԳԼ. ԼԱ.

Վասն եպիսկոպոսութեան Ամբրոսիոսի։

Ընդ այն ժամանակս վախճանի եպիսկոպոսն[ա] և վասն ընտրութեան եպիսկոպոսի աղմկեալ էր բազմութիւնն։ Երկուցեալ իշխանի աշխարհին, որ զհիւպատոսական պատիւն ունէր Ամբրոսիոս[բ] անուն, զի մի լիցի վնաս ժողովրդեանն, երթ

ա. Գ. եպիսկոպոս. բ. Բոլ. Զ ո. Մքոս.

յորդորմեւ արգել զանկարգ դիմումն ամբոխին։ Յանկարծակի մի համաձայնութիւն լինէր ամենեցուն, և զոչէին Ամբռոսիոս ի գոլ արժանի եպիսկոպոսութեան, զնա ձեռնադրել ամենեքեան արժանաւորէին. քանզի այնպէս միայն միաւորել զժողովուրդն, և հաստատել ըզմիաբանութիւն ժողովոյն հաւատոյ։ Նոյն զի յատուածայնուոյ իմն համաձայնութիւն ժողովրդեանն էր և էր լինել եպիսկոպոսացն որ մերձն, ոչ ինչ սպուժեալ ըմբռնէին զԱմբռոսիոն և մկրտեալ զնա, վասն զի երախայ էր, առժամայն ի սպասաւորութիւն եպիսկոպոսութեան ձեռնադրել հանդերձէին։[1]

Իսկ վասն զի Ամբռոսիոս զմկրտութիւն կամաւ ընկալաւ, իսկ յեպիսկոպոսութենէն յոյժ հրաժարէր ծանուցանեն Թագաւորին Վաղենտինիանոսի գեղեցկան։ Իսկ

1 Աւքսէնտիոս Հռովմի ժողովից դատապարտուեց 372 Թ. իսկ Ամբրոսիոսը ձեռնադրուեց 375 կամ 374 Թ. Սա ծագմամբ Գալիական էր. Հռոմէական ընտանիքից. ծնուել էր 333 Թ. Նրա մասին բաւական բաներ էին պատմում, որոնք գուշակում էին նրա ապագայ եպիսկոպոսութիւնը։

յեկեղեցին, և արգելույր ի լռութիւն զանկարգ խռովութիւնն. Յանկարծակի համաձայնեալ ամենայն բազմութեան, զԱմբռոսիոս[ա] արժանի գոլ եպիսկոպոսութեան ասեն, և որպէս աստուածային իմն նախախնամութենէն երևեցաւ միաբանութիւն ժողովրդեանն. Էին և եպիսկոպոսք բազումք ժողովեալք ըստ յաջողելոյն Աստուծոյ, և զի էր երեխայ, թէպէտ և պարկեշտ էր վարուք,[բ] և անդէն մկրտէին. Իսկ նա զմկրտութիւնն յօժարութեամբ ընդունէր, բայց ի ձեռնադրութիւն եպիսկոպոսութեան ոչ յօժարէր.

Ամբռոսիոս[գ] ծանուցանէ Վաղենտիանոսի, և սքանչացաւ ընդ միաբանութիւն. և Աստուծոյ հրաման ասէ զիրն, և յղէ

ա. Ա, Ամբռեսիոս բ. Դ. վարուքն. գ. Բոլ. Ձեռ. Ապռէսիոս.

Թագաւորն պքանչացեալ ընդ ժողովրդին միաբանութիւն, և Աստուծոյ գործ ծանուցեալ զեղեալն, յղէր առ ե- պիսկոպոսունսն սպասաւորել. և հրամանաւ Աստուծոյ ձեռնադրել, քանզի Աստուծոյ մանաւանդ քան թէ մարդկան գոլ ընտրութեանն, որ ի վերայ նորա։ Այսու աւրինակաւ կարգեալ Ամբրոսիոս, որք ի Մեդիոլանոն յառաջ վասն նորա զատեալք միաւորեցան։

## Գլ. ԼԱ.[1]

Իսկ յետ այսորիկ Թագաւորին Սաւռոմատացւոց[ա] ելեալ ի Հռովմայեցւոց իշխանութիւն, ի վերայ նոցա գնայր բազում պատրաստութեամբ։

Զայն զկազմութիւն լուեալ բարբարոսացն՝ ոչ կրեցին, այլ աղաչեալ զնա խաղաղութեան հայցէին հանդիպել դաշնաւորութեամբ։ Իսկ բարեխաւսացն Սաւռո-

ա. Σαυροματῶν.

1. Տես Սոզոմ. Զ. 36. ԺԱ. 12. կամ. Ը 11. Նիկեփ. ԺԱ. 33. Փիլոստ. Թ. 16.

առ նա ընդունել զեպիսկոպոսութիւն, զի ոչ ի մարդկանէ է այդ ընտրութիւն, այլ յԱստուծոյ։ Եւ այսպիսի ընտանութեամբ ձեռնադրեալ, և զամենեսեան ի խաղաղութիւն փոխաբերեաց.

## Գլ. Հ.

*Թէ որպէս Վաղէնտիանոս ի մարտ Սամրտացւոց դիմէ, եւ թէ որպէս մեռանի. եւ Թագաւորէ որդին համանուն Վաղէնտիանոս:*

Իսկ Վաղէնտիանոս կազմեալ զէնս և զօրս, երթայր ի մարտ Շամրատացւոցն[ա] բազում պատրաստութեամբ։ Զայն լուեալ բարբարոսացն, առաքեն աղաչանս և հայցենք[բ] զխա-

ա. Ս Սմրտացւոցն. բ. Դ. խնդրեն.

մատոյց եկեալ առ նա, լուեալ ընդ որոտմութեամբ Վաղենտինիանոսի։ Եւ մեծամեծս գոչելով ասէր, չարաչար գործել ընդ Հռովմայեցւոցն իշխանութիւն անցանել առ նա ուրանաւր, ասէր, այսպիսի ազգ բարբարոսաց անարգ ոչ երբէք կալ առանձին պահպանեալ, այլ զէնս համբառնայ, և զսահմանս Հռովմայեցւոց կոխէ, և ի պատերազմ յանդգնի։ Եւ այնքան յաղաղակելն խզեալ պատահեաց ընքեանն, մինչ զի ամենայն երակացն բանալ զբերանն, և ամենայն արտերեացն պատառել։[1] Եւ այսպէս արեանն արտաղրութիւն եղեալ, վախճանէր ի բերդին որ կոչէր Բրեգետիոն յետ հիւպատուաջն Գրատիանոսի [ա] և Եկիւտիոսի, ԺԸ Նոյեմբերի ամսոյ. կեցեալ ամս ԾԴ,[2] Թագաւորեալ ամս ԺԳ։

ա. Բն. աւել ունի τὸ τρίτον երրորդ.

1 Տես Մեք. Աստղ. եՀ. 148. «Եւ ի խստագայն գոչմանէն պատառեցան երակք կողիցն եւ մեռաւ ամբառն եւ չորս ամաց. Թագաւորեալ ամս մետասան». Հրատարակիչը «ամս մետասան»ի տակ ծանօթութիւն է գրել «Սոկրատ ԺԱ». Այս թիւը չկայ ոչ ընդարձակ եւ ոչ համառօտ օրինակի մէջ. արդեօք Եղիազարեանի օրինակը սխալ ընթերցուած չունի.

2 Վաղենտինիանոսը կայսր հրատարակուեց 364 Թ. փետրվ. 25 եւ մեռաւ 375 Թ. Նոյեմբերի 17.

ղաղութիւն. իսկ նա լցեալ սրտմտութեամբ գոչէր, չա՞ր անցս անցուցանել [ա] փոխանակ ձեր չարեաց. Եւ յաղաղակելն սրտմտութեամբ և բարկութեամբ, պատառեցան արեան երակք ընտերաց նորա, և այնպէս հոսեալ արիւնն ցամաքեցաւ, և իսկոյն [բ] վախճանեցաւ ի Բերգիտիոն [գ] բերդի. Թագաւորեալ ամս երեքտասան, թողլով զորդին թագաւոր զԳրատիանոս, զոր նախ կացոյց կողմնակալ. Իսկ յետ վեց աւուր մահուանն Վաղենտինիանոսի, զհամանուն որդի նորա Վաղենտինիանոս անուանեցին թագաւոր ի տեղի հօր իւրոյ զօրավարք և զօրք թագաւորին,

ա. Ա՝ ընդ նոսա ասէ. բ. Գ. եւ իսկ. գ. Բոլ. Ձեռ. ի Գետիոն.

Վախճանելով սորա Վաղէնտիանոսի, զաւրավարքն որ յԻտալիոյ ի վերջերորդում աւուրն յետ մահ-հուանն, զհամանուն հաւրն Վաղէնտինիանոս Կրտ-սեր մանկական հասակաւ[1] ածեալ թագաւորեցին ի Թագաւոր յԱկինկոյ[2] քաղաքի Իտալիոյ։[3] Այսորիկ պատճառաւ, զայրացեալ էին Թագաւորքն· ոչ զի երկու ուրեմն եղբարքն, եղբաւրորդին Թագաւորն, այլ զի առանց նոցա կամաց Թագաւորեցուցին զոր նոքայն հանդերձէին ձեռնադրել։ Սակայն երկոքեանն ընտրակիցք լինէին Թագաւորու-թեան նորա։ Եւ այսու աւրինակաւ Կրտսեր Վաղէն-տինիանոս հաստատեցաւ ի տեղւոջ Վաղէնտինիանոսի հաւր իւրոյ։

Բայց այս գիտելի է· զի Վաղէնտինիանոսի եղև սա ի Յուստինայ,[ա] զոր էառ կին,[4] կենդանի գոլով նախ-կին կնոջն նորա, գտեալ վասն այսպիսի պատճառոյ։ Յուստոս Յուստինա հայր ի Պիկինոն[բ] աշխարհի յառա-

ա. Ἰουστίνη·

բ. Πικίνος,

1 Նա ըստ ոմանց 4 ըստ այլոց 5 տարեկան էր·

2 Ակինքոս քաղաքը գտնւում էր Պաննոնիայում եւ ոչ թէ Իտալիա-յում·

3· Տես· Մեք· Ա· 149·

4 Տես· Մեք· Ա· 148·

որ էր մանկագոյն արուք· յԻտալիայ·

Զայս լուեալ Թագաւորքն զայրացան՝ Վաղէս և Գրատիա-նոս, ոչ զի որումն եղբայր, և որումն եղբորորդի Թագաւո-րեաց, այլ զի առանց նոցա Թագաւորեաց և առ[ա] զԹագաւո-րութիւնն, սակայն երկոքին հաւանէին նմա։ Եւ էր սորա[բ] մայր Ցուստիանայ,[գ] զոր առ կին ի վերայ կենդանի կնոջն իւրոյ, վասն համբաւոյ գեղեցկութեան, դուստր Ցուստի[դ] իշխանի, որք ի հօրէ մնացեալ, ոչ Թողեալ զառաջին կինն զՍևերի,

ա. Ա, էառ· բ Գ· որ· գ· Դ· Ցուստիանէ· դ· Դ· յուստոսի·

Ջագոյն իշխան կարգեալ առ Կոստանդիանոսիւ, եւ ես երազ, երբ զի յառաջքայրձէն Թագաւորական ծիրանիս ծնանէր։ Իսկ զերազն ասացեալ ի բազումս, նաեւ ի լսելիս Թագաւորին, իսկ նորա ի միտ առեալ զերազն, որպէս զի Թագաւորի ծնանիլ ի նմանէ, առաքեալ սպան զՅուստոս, իսկ դուստր նորա Յուստինա որք եղեալ ի հարբէն, մնաց կոյս։ Այս ժամանակաւ ինչ յետոյ կնոջ Թագաւորին Վաղէնտինիանոսի ծանաւթ լինէր, եւ ստէպ առնէր առ Թագուհին զհանդիպմունսն. վասն զի եւ լուանայր ընդ նմա։ Այս իբրեւ ետես Սեւիրա[ա] լուացայլով զՅուստինա, հաճեցաւ ընդ գեղեցկութիւն կուսին. եւ Թագաւորին պատմեաց վասն նորա, որպէս զի Թէ նա իցէ որ ունի զաքանչելի գեղեցկութեան կոյսն՝ դուստրն Յուստոսի։ Իսկ Թագաւորին շտեմարանեալ զբանս ամուսնոյն իւրոյ, առնուլ խորհէր զՅուստինն՝ ոչ հաւանելով[բ] Սեւիրայ, յորմէ ծնանիւր նմա Գրատիանոս, զոր փոքր ինչ յառաջ յորջորջեաց Թագաւոր։ Այս աւրէնս[1] կարգեալ հրապարակաւ դնէր առաջի ի քաղաքսն. որպէս զի պարտ է որ կամի երկուս կանայս առնել աւրինաւորս։ Իսկ աւրինացն կալով առաջի. նա եւ առ կին զՅուստինա, յորմէ ծնանիւր նմա (զ)Վաղէնտինիանոս Նոր եւ դստերք երեք. Յուստա, եւ Գրատա,

ա. ἡ Σευήρα.

բ. Յն. μὴ ἐκβαλών «ոչ հրաժարեալ, ոչ արտաքսեալ։»

1 Կասկածելի է երեւում թէ Յուստոսի ամբողջ պատմութիւնը եւ է այդ օրէնքի հրատարակութիւնը։

Մայր Գրատիանոսի, զոր նախ կոչէ Թագաւոր, երկուս կանայս առնելով օրէնս հաստատէ զանօրէնութիւն։ Եւ Յուստինա ծնանի զՎաղէնտիանոս զհամանուն հօրն, որ Թագաւորեաց յետ մահու հօրն. եւ երիս դստերս, Յուստա, եւ Գրատա,[ա] որ կու-

ա. Յոյ. Ձեռ. Գրատաք.

և Գաղղա։ [1] Ցորոց երկուքն կուսութեամբ կատարեցին։ Իսկ զԳաղղա յետոյ Թագաւորին Թէոդոսիոս Մեծ առնոյր կին, յորմէ ծնանիւր նմա դուստրն Պղակիդիա։ Քանզի զԱրկադիոս, և զՈնորիոս [գ] ի Պղակիդիա ի նախկին կնոջէն առնոյր։ Բայց վասն Թէոդոսի և որդւոց նորա ըստ իւրաքանչիւր տեղւոյ ասասցուք։

## ԳԼ. ԼԲ. [2]

Իսկ Վաղէս յԱնտիոքիա կեցով յարտաքին քաղաքացն, տակաւին լռէր. քանզի ամենայն ուստեք բարբարոսքն կային ի տեղիս իւրեանց։ Բայց դժնդակաբար պատերազմէր ընդ խորհողացն զհամագոյութիւնն, և ըստ ամենայնի մեծ պատիժս հնարէր վասն նոցա։ Մինչև ոչ զնորա զբազում անհաւանութիւնն իմաս-

ա Մեր. Չ»ռ. ունի «զոռոնէոս».

1 Տես Միք. Ա.» 149. ի նմանէ (Ցուստինեայ) ծնանի եւ որդի մի զոր յիւր անուն կոչեաց Վաղէնտիանոս եւ երեք դուստր. զԳաղղէ որ եղեւ կին Մեծին Թէոդոսի։

2 Տես Սոզոմ. Զ. 36. կաս. Ը. 12. Նիկեփ. ԺԱ. 45.

սութեամբ կատարեցին զկեանս իւրեանց. և զԳաղղա առնու կին յետոյ ուրեմն Թէոդոս.

## ԳԼ. ՂԱ.

Վաղէս մարտս յարուցանէ ուղղափառացն։

Իսկ Վաղէս դայ յԱնտիոք, կեցով [ա] ի նմա միշտ վասն թորբարոս ազգաց. բայց սաստկագոյն մարտէր նա [բ] ընդ ուղղափառացն, որ զհամագոյ սուրբ զԵրրորդութիւն զփառս մատուցանէին, և խորհէր ի պատիժս.

ա. Գ. Հիք Դ. կեցով. բ. Ա, Գ. Դ. նմա.

տասէրն Թէմեստիոս նուաստազոյն գործեաց աւաչականն ձայնիւ.ա որով ոչ գոլ պարտ սքանչանալ ի վերայ անմիաբանութեան քրիստոնէական հաւատոյն խրատէր զԹագաւորն. քանզի փոքր գոլ որոյ անմիաբանութեանն, որպէս զի առ բազմութիւնն և շփոթմանն լինել աղանդոյ նոր ի հեթանոսս. քանզի առաւել քան զերեք հարիւր աղանդ լինել: Եւ առ բազմութիւնն փառացն ի հարկէ և անմիաբանութեանն լինել բազմի. կամիլ Աստուծոյ այսպէս զանազանաբար փառաւորիլ, զի ամենեքին առաւել երկնչելով ի մեծութենէն նորա, առ ոչ առձեռնել զգիտութիւն նորա: Զայս և այսպիսիս ասացեալ իմաստակ իմաստասիրին, հեզազոյն լինէր Թագաւորն, Թէպէտ ոչ կատարելապէս Թողեալ լինէր ի բարկութենէ, այլ փոխանակ մահու զարտասահմանութեանն վնաս դնէր ի վերայ քահանայական արանց,

ա. τῷ προσφωνητικός λόγῳ կոչւում էր այդ ճառը, մնացել է միայն նրա լատիներէն Թարգմանութիւնը

Զայս ծանուցեալ Թեմեստոս իմաստասէր, նուաստազոյնս ա յորդորեաց բ բանիւ աւաչական ձայնիւ զնորա զանցս գ ընդ ուղղափառս. դ և որպէս սքանչելիս եցոյց ի վերայ նորա ահիցն անհաւանութեան, և խրատէր զԹագաւորն Վաղէս, համարել փոքր ինչ: Զի ոչ է միաբանութիւն օգտակար առ քո հնազանդութիւն. զի որպէս յոլով են ե աղանդք ի հեթանոսս առաւել քան զերեք հարիւր, և առ բազմութիւն աղանդից և անմիաբանութեամբ ի հարկէ փառաւորեն զԱստուած զանազանապէս. զի ամենեքեան երկնչելով ի մեծութենէ նորա, ոչ առ ձեռն պատրաստ ունել զգիտութիւն: Զայս՝ և աւելի զ քան զոյն ասացեալ, ցածուցանէր զբարկութիւն, Թէպէտ և ոչ կատարելապէս զչարութիւն, այլ փոխանակ մահու զարտա-

ա. Ա՛ Դ. նուաստագոյն. բ. Ա, Բ. յորդորեաց. գ. Բ. զանցսն. դ. Ա, ընդ ուղղափառ. ե. Դ .յոլովք են. զ. Դ. առաւել.

մինչև զադարեցոյց զնորա զայն զխռովն եղեալն ի վերայ այսպիսի ինչ գործ։

## ԳԼ. ԼԴ.[1]

Բարբարոսքն որ յայնկոյս Իստրոս գետոյ Գուզքն[2] կոչեցեալք, ցեղական պատերազմ շարժեալ առ ինքեանս՝ յերկուս մասունս հատանի, որոց մին կողմանն համարիւր Փռիտիգեռնիս, իսկ միւսոյն Աթանարիքոս։ Ջաւրացոյն երևել Աթանարիքոսի, Փռիտիգեռնիս փախչէր առ Հռովմայեցիսն, և գնոցա աւգնութիւնն խնդրէր հակառակ ընդդիմարտին։ Ծանուցեալ լինէր այն Թագաւորին Վաղէսի, և հրամայէր զաւրականացն որ ի Թրիակ՝ աւգնել բարբարոսացն։ Գնային և առնէին յաղթութիւն հակառակ Աթանարքայ յայնկոյս Իստրոսի, զպատերազմողսն ի փախուստ յեղեալ։ Այս պատճառ

1 Տես Սոզոմ. Զ. 37. Թէոդ. Դ. 37. Կառ. Ը. 13. Նիկ. ԺԱ. 48.
2 Գոթերի մասին աւելի մանրամասն գրել են Պրոկոպիոս, Յորնանդէս եւ Իսիդորը.

սահմանութիւն ի վերայ քահանայականացն հաւանեցուցանէր.*

## ԳԼ. ՂԲ.

*Գոթացւոց ազգն բարբարոսք, զ.Նի պատերազմացն ընդ Հռոմայեցիսն ընկալան զհաւատ Քրիստոսի. եւ թէ եպիսկոպոսն Գոթաց գիր սահմանէ նոցա։*

Ցայսոսիկ ցեղականք պատերազմն բարբարոսացն շարժէր առ միմեանս յայնկոյս գետոյն. Մի կողմն պարտեալ՝ զՀռովմայեցիս օգնականս ունէր, զոր հրաման լինէր ի Թագաւորէն Թիրակա զօրավարին և զօրացն օգնել, որ ի նոսա դիմեալք. և զօրացն երթեալք զյաղթութիւն հակառակ զօրացն առնէին. Այս եղև պատճառս բարբարոսացն գալ ի քրիստոնէու-

ա. Ա, Գ. Դ. Համուցանէր. բ. Ա, եղական Ն. գ. Ա՝ Թրակիայ.

եղև քրիստոնէս լինել բազմաց բարբարոսաց. քանզի Փռիտիգեռնիս շնորհս հատուցանելով Թագաւորին, ողջունէր զաղանդն նորա, և զօրս ընդ իւրեաւն յորդորէր զնոյն առնել: Վասն որոյ մինչև ցայժմ առաւել Արիանոսական աղանդոյն հանդիպին Գութք, յաղագս Թագաւորին ի յայն յաւելեալք:

Յայնժամ և Ուղփիղաս Գոթաց եպիսկոպոս գիր հնարեցաւ Գոթական, և զաստուածային գիրսն ի Գոթացն լեզու փոխելով, բարբարոսացն ուսանել զաստուածային բանս յորդորեաց:[1] Իսկ վասն զի Ուղփիղոս, ոչ միայն զօրս ըստ Փռիտիգեռնիւն, այլ և զօրս Աթանառիքոսիւն կարգեալ բարբարոսն ուսուցանէր քրիստոնէանալ, Աթանառիքոս, իբր հատեալ ինչ հայրենի

1 Նրա թարգմանած սուրբ Գրքից մնացել են չորս Աւետարանը: Ուլփիլասը իւր այբուբէնը մասամբ Յունարէնից, մասամբ Լատիներէնից վերցրեց: Այս թարգմանութիւնը մասնաւոր հետաքրքրութիւն ստացաւ հայերիս համար Շվետացի գիտնական Սոֆիուս Բուգէի մի փոքրիկ ուսումնասիրութեամբ, ուր նա աշխատել էր ցոյց տալ, որ Գոթական Աւետարանի մէջ մինչեւ այժմ չպարզուած բառերը կարելի է հայերէնով բացատրել: Նրա կարծիքով Ուլփիլասը ծագումով փոքր Ասիայից լինելով, գիտէր հայերէն լեզուն, եւ տեղ տեղ թարգմանութեան մէջ գործ է ածել այդ լեզուի բառերը: Յօդուածի թարգմանութիւնը տես. Հանդէս Ամսօրեայ 1895. № 8. 9.

թիւն շնորհուկս առնելով Հռոմայեցոցն:

Ցայնժամ և Ուլփիղաս [ա] Գթաց եպիսկոպոս, գիր հնարեցաւ զԳթացն ուսանել բարբարոսացն, և զԱստուածային գիրս [բ] ի Գթայն լեզու փոխել [գ] յարդարեաց. և ոչ միայն զգաշնաւորսն Հռոմայեցւոցն հաստատէր ի հաւատս, այլ և ի միւսոյն ածէր ի հաւատս: Եւ այսպէս ընկալեալ զհաւատս ի բարբարո-

ա. Ա, Ուլքիլոս. բու. Ուղփիլոս. բ. Դ. գիրսն. գ. Բ. փոխեալ.

աղանդոյն, զբազումս ի քրիստոնէացելոց էարկ ընդ տանջանաւք, մինչ լինել վկայս այնքան բարբարոսաց արիանոսացելոց։ Այլ Արիոսի նախկին ոչ կարացեալ պատահել. կարծեացն Սարիզի Պիթիւացւոյ յուղիղ հաւատոյն անկաւ, առժամայն Աստուած զՈրդին Աստուծոյ ասացեալ։ Իսկ բարբարոսացն պարզ հաւատով զքրիստոնէութիւնն ընկալեալ, յաղագս հաւատոյն որ ի Քրիստոս զաստիս կեանսն արհամարհեցին։ Այս յաղագս քրիստոնէացելոցն։

## Գլ. ԼԴ.[1]

Բայց ոչ ընդ յերկարս ինչ բարբարոսացն հաշտեալ ընդ միմեանս, անդէն յայլ բարբարոսաց որք մերձն ի նոսա, ի կոչեցելոցն Ունաց[ա] պատերազմաւ հարեալք, և յիւրեանց աշխարհէն ելեալք, ի Հռովմայեցւոցն երկիր փախչէին, Թագաւորին ծառայել խոստացեալք,[2] և զայն գործեալ եթէ Հռովմայեցւոցն հրամայեսցէ Թագաւոր։ Այն ի գիտութիւն հասանէր Վաղէսի, և ոչ ինչ տեսեալ յառաջ,[բ] հրամայէր աղաչաւորացն սգոյ

ա. Οὔννων.
բ. Նախատեսեալ.

1 Տես նախկին գլ. յիշած տեղերը։
2 Հօրների բարք ու վարքի. նոցա ծագման մասին տես Ս. Մակ. Գիրք ԼՌ.

սացն[ա] յոլովից, յետ ոչ սակաւ ինչ լինէր խաղաղութիւն և միաւորութիւն առ միմեանս սիրով։ Իսկ այլ բարբարոսաց ընդ նոսա մարտուցեալք, փախստեա[բ] առ Հռոմայեցիսն գալ և ծառայել Թագաւորի։ Զայս ծանուցեալ Վաղէսի, եւ նոցա զկողմն Թիրակա,[գ] բարեբախտիլ ի մեծամեծս կարծեալ իւր

ա. Ա, բարբարոսացն. բ. Ա, Դ, մարտուցեալ փախստեայ էառ. գ: Ա՝ Թրակիոյ.

հանդիպել, ապա զԹացեալ ոլոշէր նոցա զկողմունսն Թիրակայ, բարեբախտիլ ի մեծամեծս կարծեցեալ առ նոքաւք. քանզի համարէր իբր Թէ իցէ ստացեալ զաւր պատրաստական։ Եւ յուսայր աՀաւոր պաՀապանս լինել բարբարոսացն Հռովմայեցւոց, և վասն այնորիկ անփոյԹ առնէր զՀռովմայեցւոցն զաւրականս աճեցուցանել։ Եւ զորս յառաջ եղեալ զաւրականսն, և ըստ պատերազմացն Հանդիսացեալ՝ անտես առնէր, իսկ ի Հարկացն աշխարՀացն ըստ աւանի աւանի տայր ոսկի զաւրականացն, ուԹսուն ոսկեղէն յաղագս ամենայն զաւրականի պաՀանջել զՀարկատուսն, որոյ նախկին ըզՀարկսն ԹեԹևացուցեալ նոցա։ Այն եղև սկիզբն առ ի վատթախտանալ սակաւ լինչ Հռովմայեցւոց աշխարՀին։

ԴԼ. ԼԵ.[1]

Քանզի բարբարոսացն զԹիրակ Թողեալ, և յապաՀովուԹեան պտղաբերեալք յաշխարՀին Հռովմայեցւոց, զբարեբախտուԹիւնն ոչ տարան, այլ Հակառակ բարեգործացն գնային, և զամենայն զօրս ի Թիրակն խափ-

1 Տես Սոզոմ. Զ. 37. Ռուփ. ԺԱ. 18. Կաս. Ը. 13. Նիկ. ԺԱ. 48.

տռաւել զօրու աՀաւոր պաՀապանս լինել իւրոյ ԹագաւորուԹեան։ Եւ վասն այսորիկ անփոյԹ առնէր զզօրս Հռոմայեցւոց ա յաճեցուցանել, և զյառաջ եղեալ զզօրականսն և զքաջարար Հանդիսացեալս ի պատերազմունս անտես զնա[illegible] այլ և Հարկս ի նոցանէ պաՀանջէր և ընծայէր բարբարոսացն։ Եւ նոքա զօրացեալք ըստ ամենայնի. Հակառակ բարեգործացն լինէին. և զԹիրակի գ ինքեան դ վարկանելով. և այլ ևս ի Հռոմայեցւոց խախտէին, և աւար Հարեալ տանէին.ե Այս Հասեալ

ա. Գ. Հռոմայեցւոցն. բ. Գ. զնա. գ. Ա, զԹւակիայ. դ. Ն. ընդ ինքեան. ե. Ա, աւար Հարկանէին.

տէլին։ [1]

Այս այսպէս եղեալ՝ ի գիտութիւն հասանէր Վաղէսի, և թողոյր և զարտասահմանեալ զխորհորդս համագոյութեանն։ Քանզի ի խռովութեան եղեալ՝ առժամայն յԱնտիոքիա ի Կոստանդինուպօլիս գնայր․ վասն որոյ և որ ըստ նմայն քրիստոնէական պատերազմն թեթևացաւ։

Յայնժամ Եւզոյիոս, որ յԱնտիոքիա առաջնորդ Արիանոսի աղանդոյն, վաղճանի կենաց հպեցաւ, ի հիւպատուօջն Վաղէսի Ե և Նոր Վաղէնտինիանոսի Ա և կարգէր ի տեղւոջ նորա Դոռոթէոս։ [2]

Գլ. ԼԶ. [3]

Իսկ Թագաւորին գնացեալ յԱնտիոքիայ, Տաճ-

1 Բառբառոսները պատերազմը սկսեցին Հռովմայեցւոց առաջնորդների չարութիւնից, նենգութիւնից գրգռուած։

2 Փրկ. 376 թ.

3 Տես Սոզ. Զ. 38. Ռուփ. ԺԱ. 6. Թէոդ. Դ. 23. Նիկ. ԺԱ. 46.

ի լսելիս Վաղէսի, տարակուսէր․ և թողեալ զպատերազմ[ա] եկեղեցւոյ ուղղափառաց,[բ] գայ յԱնտիոքայ ի Կոստանդնուպօլիս։ Յայնժամ Նեղոսիոս[գ] Անտիոքու առաջնորդ արիոսեան վախճանեցաւ, և կարգէր ի տեղւոջն Դոռոթէոս[դ] նորին աղանդոյ ի Վաղէսէ, և ինքն գայր ի Կոստանդնուպօլիս։

Գլ. ՂԳ.

*Մաւի զօրագլուխ ազգաւ Տաճիկ յառնէ մարտ ընդ Հռովմայեցիս, եւ Մովսէս անուն ոմն Տաճիկ հաշտեցուցանէր զնոսա։*

Ի նմին ժամու[ե] և ի Տաճկաց յառնէ մարտ, որ նախ դաշնաւորք էին, վասն Մաւեա[զ] կնոջն, զոր ունէր ի Հռոմա-

ա. Ա, զպատերազմն. բ. Գ. ուղղափառացն. գ. Դ. Ոսիոս Անտիոքայ. դ. Բոլ. Ձեռ. Դոռոթիոս. ե. Դ ժամուն. զ. Բոլոր Ձեռ. Մայեա.

կունքն [ա] որ նախկին դաշնաւորք Հռովմայեցւոցն առժամայն ի բաց կացին, զաւրավարեալք ի Մաւրիայէ կնոջէ, առ նորա վաղճանեալ։ Եւ ամենայն այնուհետեւ ըստ արեւելից ի նմին ժամանակին խախտէր ի Տաճկանց. այլ աստուածային իմն նախախնամութիւն դադարեցոյց զՏաճկունս վասն այսպիսի պատճառոյ։

Մովսէս ոմն՝ [1] այր ազգով Տաճիկ, յանապատի ի միայնականն փոխեալ վարս, երկիւղածութեամբ եւ հաւատով եւ արուեստիւք հռչակեալ։ Զնա Տաճկացն թագուհի Մաւիա եպիսկոպոս խնդրէր առնուլ ազգին իւրոյ, եւ դաշամբք լուծանել զպատերազմն։

Զայն լուեալ Հռովմայեցւոց զաւրավարացն, սիրելի համարեցան այնպիսի դաշամբք լուծանել զխռովութիւնն. եւ որպէս ունէրն հրամայէին այնմ լինել։ Եւ ըմբռնեալ

ա՝ Σαρακηνος; Սոցա մասին մանրամասն գրել է Սոզոմենոսը յիշեալ տեղում:

1 Տես Մկր. Աւ. էջ. 149.

յեցւոց. Վախճանեալ կնոջն այնորիկ. որք արշաւանս եդեալ ւերէին զմերձակայսն. [ա] իսկ Աստուածային իմն [բ] Նախախնամութիւն [գ] ի ձեռն առն միոյ. ազգաւ տաճիկ, միայնական վարս ստացեալ յանապատի, Մովսէս անուն, երկիւղած յԱստուծոյ, ուղղափառ հաւատով, եւ արուեստիւ հռչակեալ, եւ առաքինութեամբ սքանչելի երեւեալ, երթեալ համոզէ զՄաւի եւ զզօրս իւր ի խաղաղութիւն, եւ առնել դաշինս սիրոյ եւ խաղաղութեան։ Որոց լսելի եղեալ առաքեն զնոյն ինքն զՄովսէս, որ եկեալ պատմեալ, ուրախութիւն ոչ սակաւ լինէր. եւ լինէր նովաւ խաղաղութիւն եւ անհոգութիւն ի Տաճկաց. Զայսպիսի այր տեսեալ՝ բռնադատեն զնա ի քահանայութեան [դ] շնորհ, [ե]

ա. Գ. զմերձակայսն.ղ. բ. Ա, չիք. գ. Ա, Գ. Նախախնամութեամբն. դ. Դ ի քահանայական. ե. Բ. շնորհս.

Մովսէս յանապատին յԱղէքսանդրիայ ածիւր որպէս զի անդ ընդունել զքահանայութիւն։ Բայց վասն զի առ Ղուկիոս ածաւ, որ զեկեղեցին ունէր յայնժամ, ի ձեռնադրութենէն փախեաւ։ Այսպիսիս ասացեալ առ Ղուկիոս, և զիս քահանայութեան անարժան վարկանիմ լինել, իսկ եթէ աւգուտ է այս աշխարհական իրացդ, մի՛ դիցէ ի վերայ իմ ձեռն Ղուկիոս. քանզի աջ դորա լի է արեամբ։ Իսկ Ղուկիոսի ասելով. ոչ է պարտ թշնամանել, այլ նախ տեղեկանալ ի նմանէ զաղանդոյ կարգս։ Իսկ Մովսէս ասէ. այլ ոչ կարգաց և հաւատոյ բան խնդրի այժմ, այլ գործքն քո որ ընդդէմ եղբարցն եղեալք յանդիմանեն, որպէս զի ոչ քրիստոնէական կարգս ունիս։

Քանզի քրիստոնէ ոչ հայհոյէ, և ոչ բամբասէ, և ոչ մարտնչի. քանզի ծառայի Տեառն ոչ է պարտ կռուել։[1] Իսկ քո գործքդ գոչեն ի ձեռն արտասահմանելոցն, և գազանակուր եղելոցն, և մեծամեծս ունին

1 Տես Պօղոս Բ. Թղ. առ Տիմ. Բ. 24.

և ածեալ զնա յԱղէքսանդր առ Ղուկիոս ի ձեռնադրութիւն պատուաւոր քաղաքին. Եւ նա ասէ, Ես ոչ[ա] եմ արժանի այդմ շնորհի, ապա եթէ կոչէ շնորհն Քրիստոսի ի պէտս ժողովրդեան իւրոյ, ի Ղուկիոսէ Արիոսէ և Հոգէմարտէ ես ոչ ձեռնադրիմ. զի աջ դորա աջ է մեղաց և լի արեամբ է։[բ] Ղուկիոս ասէ. Ոչ արժան է թշնամանել. այլ նախ գիտել զհաւատս։ Ասէ Մովսէս. Հաւատոց քոց գործք քո վկայեն, որ զհաւատացեալս ի սուրբ Երրորդութիւն զոմանս չարաչար տանջեցեր, և զոմանս աքսորեցեր ի մեռանել, զոմանս սպաներ,[գ] զոմանս սրով, և զոմանս գազանաց կերակուր և զբազումս հալածե-

ա. Դ. չիք. բ. Բ. լի արեամբ. գ. զոմանս սպաններ. զոմանս հրով. Ա՝ զոմանս սրով.

զյայտնութիւնն այսուիկ աչաւք տեսեալքն քան զոյս լսելեաւք ըմբռնեալս։

Զայսուիկ և զայսպիսս ասացեալ Մովսէսի, տանէին զնա որք պատշաճքն ի լեառնն, որպէս զի զձեռնադրութիւնն ընկալցի յարտասահմանեցելոցն։ Այսպէս ապա ձեռնադրեալ յայնժամ Մովսէսի, շրջանէր տաճկականն պատերազմ. և ունէր այնուհետև Մաւիայ առ Հռովմայեցիս զխաղաղութիւն, մինչ զի և զդուստրն նորա տալ կին զաւրավարին Բիկտոռի։ Այս վասն Տաճկանցն։

## Գլ. ԼԷ [1].

Իսկ ըստ նմին ժամանակի թագաւորին Վաղէսի զննացեալ յԱնտիոքայ, հանգիստ առնուին վարեալքն ամենայն ուստեք, և մանաւանդ որք յԱղէքսանդրիայն։ Պետրոսի եկեալ ի Հռովմայ թղթովք Դամասայ եպիսկոպոսին Հռովմայ հաստատելոց զհաւատ համագոյութեանն, և վստահացեալ ժողովրդեանն ի կարգութիւնն Պետրոսի, զՂուկիոս վարէին արտաքս, և փոխանակ մուծանէին զՊետրոս։ Այլ Ղուկիոս իբր կայ ի Կոստանդինուպաւղիս նաւէր։

1 Տես Սոզ. Զ. 39. Կաս. Ը. 14.

ցեր, մինթէ զայդ հրամայէ հաւատն[ա] քո։ Զայս լուեալ Ղուկիոսի[բ] ոչ կամէր տալ պատասխանի. Եւ Մովսէս[գ] արհամարհեալ զՂուկիոս[դ] գնաց, և հանդիպեալ ուղղափառաց հալածելոց, և հարկաւորեալ ի նոցանէ, ընդունի[ե] զձեռնադրութիւն. Եւ գնաց Մովսէս առ Մաւի և միաւորեաց զՀռովմէացիսն և զՏաճիկս ի դաշինս և ի խաղաղութիւն.

ա. Դ. հաւատ են. բ. Ա՝ Ղուկիոս. գ. Ա, Մովսէս էր. դ. Դ. ասէ այլ ոչ տեսի զքեզ եւ ել գնաց. ե. Դ. ընդունէր.

*Իսկ Պետրոսի սակաւ ժամանակս կեցեալ վախճանէր, փոխանակ իւր թողլով զՏիմոթէոս զեղբայր իւր։*

ԳԼ. ԼԸ.[1]

*Բայց Վաղէս յառաջնումն Մայիս ամսոյ, ի վեցերորդ հիւպատոսութեան իւրում, և յերկրորդումն Նորին Վաղէնտինիանոսի,[2] եկեալ ի Կոստանդինուպոլիս գտանէ զամբոխն ի մեծ ի տրտմութեան։ Քանզի բարբարոսացն ընթացեալ զԹրակ և զդաստակերտսն Կոստանդինուպոլսի առնուին յաւար, և ոչ մի ինչ եղեալ արժանի մարտնչելոյ այնքան զաւրուք։*

*Իսկ վասն զի և առ պարսպաւքն յաճախէին բարբարոսքն, դժնդակութեամբ կրէր քաղաքն զեղեալսն. և շշնջէին հակառակս թագաւորին, որպէս զի ի վերայ կած զպատերազմականսն, և ոչ ելթէ ընդդիմացոյց առժամայն, այլ քարշեաց զոր առ բարբարոսն պատերազմն։ Եւ ի լինել ասպարիսին, ամենեքին միաբան աղաղակէին առ թագաւորն իբր զի անտես առնելով զգործսն գոչէին. Տուր փութանակի զէնս և մեք պատերազմեսցուք։ Զայս[3] աղաղակեալ նոցա, վառէր բարկութեամբ*

1 Տես Սոզ. Զ. 39. 40. Ռուփին ԺԱ. 13. Թէոդոր. Դ. 36. Կառ. Ը. 15. Նիկ. ԺԱ. 50.

2. Փրկ. 378 Թ.

3 Տես Մկր. Աս. 151. «Եւ ամբոխն նախատէին զնա ասելով. «Տուր մեզ զէն եւ երթիցուք կռուեսցուք.»

ԳԼ. ՂԴ.

*Վաղէս այպանի ի Կոստանդնուպօլսեցւոց. գնաց ընդդէմ Անդրիանուպօլսի, հրով այրի։*

*Իսկ Վաղէս այպանեալ լինէր ի Կոստանդնապօլսեցւոց*

Վաղէս։ Եւ ելանէր ի քաղաքէն մետասանին Յունիս ամսոյ, սպառնացեալ առնուլ վրէժս ի Կոստանդնուպօղսեցւոցն յորժամ դարձցի. վասն որոյ թշնամանել զնա համարէր, և յաղագս որոց անդէն նախկին ի բռնակալութիւնն Պռոկոպա յաւելուին. յանապատ դարձուցանել զքաղաքն, և արաւրադիր [ա] զնա առնել. ասացեալ զնայր ի բարբարոսն կոյս։ Եւ վարէր զնոսա հեռագոյն ի քաղաքէն մինչև յԱդրիանուպօլիս որ ի Թիրակ, որ է ի սահմանս Մակեդոնիի։ Եւ անդ պատերազմեալ ընդ բարբարոսացն, մեռաւ յինանն [բ] Աւգոստոս ամսոյ, ի նմին հիւպատուոջն. այն էր ամ չորրորդ ՄՉԹ Ողոմպիադացն։ Եւ ոմանք ասեն հրով կորնչիլ նմա յաւան իմն փախչելով նմա, յոր ընթացեալ բարբարոսքն այրեցին։ [1] Իսկ այլք՝ փոխել զթագաւորական զձևն ի միջին. և յռազմն հետևակացն ընթանալ մտանել, իսկ երիւարացն յառաջ ձգեալ, և ոչ կրկնեալ ի մարտէն, ի խըռնոյն ամենեցունց որոց ի շրջապատելն՝ անկանիլ։ Ուր պարտէ ասել զնա տգիտանալ, [գ] ոչ անկանելով թագա-

ա. Խիստ բառացի է՝ բնագրի ἄροτρον βαλεῖν արօր արկանել. Տերկել:

բ. Ուղիղ յունական ձևն է. ἐννάτῃ·

գ. Յունաբան է, դժուարհասկանալի. միտքն է. Այնտեղ ընկաւ եւ ինքը Թագաւորը, չճանաչուած. որովհետեւ նախապէս հանել էր արքայական հագուստը։

1 Մկք. Ա. էջ. 151.

վասն բարբարոսացն և վասն ամենայն չարեացն, [ա] զոր գործեաց նա ընդ ուղղափառսն. և սրտմտեալ գնայր [բ] ընդդէմ բարբարոսացն. Եւ հասեալ յԱդրիանուպօլիս, հրով այրեալ սատակե-

ա Ա՝ չարեաց. բ. Դ. գնաց.

ւորական ձևոյ՝ որ նշանակէր։ Եւ վաղճանէր այնպէս կեցեալ ամս Ծ․ թագաւորեալ ընդ եղբաւրն ամս ԺԳ․ իսկ յետ եղբաւրն թագաւորեալ ամս Գ։ Ունին գիրքս ժամանակաց ԺՋ։

ցաւ, անհաս ի մարդկանէ գիտութեան, զիա՞րդ և կամ զի՞նչ օրինակաւ հրով այրեցաւ․ [1] կեցեալ ամս [ա] յիսուն թագաւորեալ ամս երեքտասան, ընդ եղբօրն երիս, և յետ եղբօրն տասն։ [բ] Այսպէս բարձաւ ի միջոյ պատերազմողն եկեղեցւոյ։

ա․ Ա՝ յամս․ բ․ Ա․ Բ․ չունին․

1 Մով․ Խոր․ Գ․ ԼԳ․ 464․ «Հրակէզ եղեալ յԱղբիանուպօլիս սատակեցաւ»



# ԳԻՐՔ ՀԻՆԳԵՐՈՐԴ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Նախ քան զսկսանել մեզ զպատմութիւնս հինգերորդի գրոցս, ասասցուք առ հանդերձեալսն ընթեռնուլ զմեր ստորագրութիւնս, մի մեղադրել մեզ եթէ նախկին եղեալ զեկեղեցական պատմութիւն նշանագրել, խառնեցաք ի նա և ըստ ժամանակին եղեալ պատերազմացն, զորքանեաց զպատմութիւնն ճշմարտութեամբ կարողացաք իմանալ։ Քանզի զայս բազմաց աղագաւ առնելով․ ոչ միայն ի գիտութիւն ածել զեղեալսն, այլ վասն զի և ընթերցաւղացն այսմ ոչ առ յագուրդ լինելոց, յորմէ միայնով պարապել վիճաբանութիւն եպիսկոպոսանց, և որովք հակառակ միմեանց գործեցին։ Իսկ նախ քան զայսօրիկ՝ զի ծանիցի․ եթէ զիա՞րդ աշխարհական իրացն խառնակեցելոց, իբր յիմեմնէ վշտակցութենէ և եկեղեցեաւ խառնակէր․ քանզի թէ ոք սպասաւորեսցէ՝ ի համաճառեցունսն գտցէ և զաշխարհականաց չարիս, և զեկեղեցեացն միշտ։ Քանզի կամ զորս ըստ նմայն շարժեալսն գտցէ, և կամ զհետևեալսն միմեանց․ և երբեմն զեկեղեցեացն համարեալսն, ապա անդէն հետևեալ զաշխարհականսն, իսկ երբեմն զմիւս այլն։

Որպէս զի ինձ զփոփոխելին այսոցիկ, ոչ ուրուք խաւսից լինել կարծեալ, այլ ի մերոցն յանցանաց առնուլ զսկզբմունսն, պատժոց աղագաւ վերաբերեալ զչարիսն, թերեւս ըստ առաքելոյն. թէ ոմանց մարդկան մեղք յայտնիք են, իսկ ոմանց և հետևին։ Վասն այսորիկ պատճառոյ՝ յեկեղեցական պատմութիւնն և զոմանս յաշխարհական իրաց շարամանեմք։ Բայց վասն զի առ Կոստանդիոսիւ զեղեալն առ պատերազմունսն յաղագըս ժամանակին երկայնութեան դտանել ոչ կարացաք, որոց յետ այսոցիկն որչափ ի տակաւին կենդանեացն ուսաք, յընթացման արասցուք յիշատակ։ Բայց ստիպաբար և զթագաւորսն առցուք ի պատմութիւն, քանզի յորմէ հետէ քրիստոնէանալ սկսան, եկեղեցւոյն իրք ի նոցանէ լինէին յանկեալ, և մեծքն ժողովք նոցա կամաւք եղեն և լինին։ Եւ ոչ այս միայն՝ այլ և ոչ քրիստոնէին ա արասցուք յիշատակ. վասն զի զեկեղեցիսն խռովեցոյց։ Այսոքիկ յառաջաբանիսս բաւականապէս ճառեցան. բայց արդէն ի պատմութիւն մերձեսցուք, յաղագս որոց լուաքն և տեսաքն ասելով։ բ

ա. Բն. ունի. ὁ 'Αρειανισμος. «արիանոսութեան».
բ. «Յաղագս որոց . . . ասելով» չկայ բնագրի մէջ։

ԳԼ. ՂԵ.

Պետրոս եպիսկոպոս դառնայ յԱղէքսանդրիայ, եւ Լուկիոս հալածի ի քաղաքէն։

Իսկ Պետրոս դառնայր յԱղէքսանդր և քաղաքացիքն և ամենայն Եգիպտոս յօժարութեամբ ընկալան զՊետրոս, և զԼուկիոս ա հալածեցին ի քաղաքէն. Եւ կալաւ զեկեղեցին Պետրոս, և հաստատէր ի հաւատս ուղիղս, և ի կարգս ըստ բ

ա. Ա, Լուկիոս. բ. Ա՛ ընդ.

## Գլ. Ա.[1]

Թագաւորին Վաղէսի անյայտ կալելոյ զվաղճանն, բարբարոսքն դարձեալ մինչև ցԿոստանդինուպոլիս եկեալք զօրս շուրջ զնովաւ առնուին դաստակերտս։ Յորոց վերայ զայրագնեալով ամբոխին ի ձեռն ընքեանց՝ բարբարոսացն ընդդիմացանն, իւրաքանչիւր ոք զհանդիդիպեալ ինչ փոխանակ զինու առնելով։ Տայր ելաւղացն ի պատերազմն կին Թագաւորին Դոմնիկա վարձս ի Թագաւորական շտեմարանացն, զաւրս և զաւրականս կարգէր։ Աւգնէին նոցա սակաւ և Տաճիկք դաշնաւորք, յայնմ ժամ ի Մաւրիայէ առաքեալք, զոր վերագոյնն յիշեցաք։ Այսու աւրինակաւ այնչափ պատերազմեալ ամբոխին, հեռագոյն ի քաղաքէն փախուցեալք գնային բարբարոսքն։

## Գլ. Բ.[2]

Իսկ Գռատիանոս[3] հանդերձ Նորոմն Վաղէնտի-

1 Տես Սոզոմ. Է. 1. կաս. Թ. 1. Նիկ. ԺԲ. 1.

2 Տես Սոզ. Է. 1. 2. Ռուփ. ԺԱ. 13. 14. կաս. Բ. 2. 4. Նիկ. ԺԲ. - [illegible].

3 Սա Վաղենտիանոս առաջինի որդին էր, յայտնի իբրեւ ջերմ ուղղափառ քրիստոնեայ.

երանելոյն Աթանասի, և ըստ առաջնոց ուղղափառաց հայրապետաց. ա Բայց ոչ սակաւ ժամանակաւ ի տեղի ձեռնադրէ իւր զեղբայր իւր զՏիմոթէոս, և ինքն փոխի յաշխարհէս. բ Բարի գործովք և հաւատովք, և Տիմոթէոս նովին հաւատովք և կրօնիւք ունէր զհաւատն. գ

ա. Ա՛ հայրապետացն. Դ. ըստ առաջնոյ ուղղափառ հայրապետացն.
բ. Դ. ի հանդերձեալն. գ. Բ. զհաւատոն։

## ԳԼ. Գ.[1]

Իսկ ըստ այնմ ժամանակին՝ Հռովմայ եկեղեցւոյն Դամասոս էր առաջնորդ, փոխանորդեալ զԼիբերիոս. իսկ զԵրուսաղէմացեացն տակաւին Կիւրղոս ունէր, իսկ յԱնտիոքիա որպէս և բազում անգամ ասացաք, ընդ երիս

1 Տես Սոզ. Է. 3. Կաս. Թ. 3. Նիկ. ԺԲ. 2.

տիանոս[ա] մանուկ համահայր զիւր զհայրենիսն. Այսմ հաւանեալ թագաւորաց և իշխանաց և զօրաց, և թագաւորեցուցանեն զԹէոդոս ի տեղի Վաղէսի. որ էր[բ] յաշխարհէն Սպանացւոց, ոչ աննշան քաղաքի քաղաքացի,[գ] որ նախ քան զթագաւորութիւն Գրատիանոսի, ունէր զհամակամս զզօրս[դ] Հռովմայեցւոց, յաղագս ողջախոհ և բարեբարոյ բարուց.[ե] Եւ թագաւորեալ կազմէ զօրս, և երթայ ի պատերազմ բարբարոսացն, և վանեալ պարտեաց զնոսա, և զմնացեալսն[զ] փախստականս[է] արար. Եւ զօրացեալ ի վերայ բարբարոսացն յաղթողն Թէոդոս, և զաշխարհն ազատեաց ի բռնակալութենէ այլազգեացն, ըստ[ը] յաջողելոյն Աստուծոյ Թէոդոսի.

## ԳԼ. ԴԸ.

*Թէ ով ոք էին այնոքիկ, որ ի ժամանակին դիտապետք էին աթոռոց մեծաց:*

Ընդ ժամանակս ընդ այն Դամասոս էր Հռոմայ[թ] եպիսկոպոսապետ, իսկ Երուսաղէմի Կիւրղիոս երկրորդ, որ յետ[ժ] Յուլիոսի ունէր զաթոռն. իսկ Անտիոքայ՝ Մեղիտոս,[ժա] որ դար-

ա. Ն. եւ զՎաղենտիանոս. բ. Ա' Գ. որ է աշխարհէն. գ. Գ. քաղաքաց. դ. Ն. զօրս. ե. Գ. բարէբարուց. զ. Գ. մնացեալն. է. Ա' փախստական ը. Ա' ընդ. թ. Ա' Դամասկոս էր. Ն. Ա. Բ. Դասոս. Գ. Դասկոս էր Հռովմա. ժ. Գ. որ եւտ. ժա. Դ. Մելիտոս.

լինէր որոշեալ: Քանզի ոմանց եկեղեցեացն Դոռոթէոս Արիանոս յետ Եւզոյիոսի ունող լինէր. իսկ այլոցն որ ընդ Պօղինոսիւն, իսկ որք ընդ Մեղիտոսին զեկեղեցին ընդունելով արտաքոյ քաղաքին կալցեալք լինէին: Իսկ որոց ըստ Աղէքսանդրիւոյն՝ Արիանոսացն Ղուկիոս էր ի փախստեան կելով, իսկ համագոյութեանն հաւատոյ Տիմոթէոս յետ Պետրոսի նախակարգիւր: Իսկ ի Կոստանդինուպօղսի եկեղեցեացն Դիմոփիղոս էր ունաւղ, որ յետ Եւդոքսի Արիոսական աղանդոյն էր առաջնորդ: Իսկ [illegible]որք զսոսայն խախտէին, առանձինն զժողովս առնէին:

ԳԼ. Դ.[1]

Իսկ Մակեդոնիանոսքն յետ բարեխաւսութեանն[ա] [illegible] առ Ղիբերիոս, անընտրաբար մինչև ցժամանակ ինչ զ[illegible]աղորդութիւն առնէին ըստ եկեղեցեացն, որոց ըստ [illegible]րաքանչիւր ուրուք քաղաքի ընդ միմեանս խառնակեալք [illegible]ա և ողք ի սկզբանէն զսահման Նիկիոյ հաւատոյն հ[illegible]տատեալք: Վասն զի Գռատիանոսի թագաւորի աւ[illegible]ն յապահովութիւն աղանդոցն տային, խզեալ դար[illegible]լ յորդորելով: Եւ ժողովեալք յԱնտիոքիա Կառ-

ա. Բն. μετὰ πρεσβεία յետ դեսպանութեանն:

1 Տես Սոզոմ. Է. 1. կառ. Թ. 5. Նիկ. ԺԲ. 2.

[illegible] Գրատիանոս յաքսորիցն. իսկ Արիանոսացն[ա] Դորոթէոս[բ] էր [illegible]. Իսկ յԱղէքսանդր՝ Տիմոթէոս էր եղբայր[գ] Պետրոսի, որ ն[illegible]կին էր, և Արիանոսացն Ղուկիոս հալածեալ. իսկ Կոս[illegible]ղնուպօլսի Դիմոփեղիոս Արիոսեան ունէր զեկեղեցին[դ] և Մ[illegible]ակեդոնիանոսք ընդ Արիանոսս խառնակեալ ունէին զեկեղե-

ա. Ն. Արիանոսացն. բ. Ա. Բ. Ն. Թոռոթէոս. գ. Գոէտէոս. գ. Ա [illegible]թէոս եղբայրն. դ. Ա՝ Մակեդոնիանոսաց քանզի Մակեդոնիք եւ Ա[illegible].

*ւոյ,[1] առ ժամայն աւրինայլրեցին ի բաց շրջել զհամագոյութեանն ձայն և ընդ ողջոյն տուողացն Նիկիոյ հաւատոյն մի՛ երբէք խառնակել։ Այլ ոչ հեռանային ի ձեռնարկմանէն. քանզի ըստգտեալք զբազումս ի նոցանէ իբր թէ այլոց այլ ինչ աղանդաւորեցելոց, ի բաց կացին յայնցանէ և ընդ համագոյութեանն խորհողացն հաստատնագոյն միաւորեցան։*

Գլ. Ե [2]

*Յայնժամ և ըստ Անտիոքոյ Ասորեաց վասն Մեղետիոսի վիճաբանութիւն[3] կալեալ լինէր. իսկ թէ որպիսի հասեալք ասասցուք։ Վասն զի Պօղլինոս Անտիոքայ եպիսկոպոսն յաղագս գերազանցեալ երկիւղածութեանն յաքսորիս ոչ առաքիւր, իսկ Մեղետիոս յետ կոչմանն որ ի Յուղիանոսէ՝ դարձեալ ի Վաղէսէ աքսորեալ, յետոյ ի Գրատիանոսէ կոչեցաւ. և եկեալ յԱնտիոքիայ, եհաս ցՊօղլինոս ա անդէն ծեր գոլով։ Առժա-*

ա. Բն. Παυλῖνον κατέλα .հալածէր ներէր զՊաւղինոս։.

1 Բն. ունի ի Սիւրիա· τῆς ςυρίας բայց կարող աւելի ուղիղ է համարում, որովհետև Մակեդոնիանոսները այդ կողմերում աւելի շատ էին և պատմած դէպքերը աւելի հաւանական են կացուցանում. որ այնտեղ եղած լինի. նոյնը հաստատում է և Սոզոմենի վկայութիւնը. Համեմատիր նաև Գլ. Ե. սկսուածքը.

2 Տես Սոզոմ. Ե. 3. Թէոդ. Ե. 3. Կաս. Թ. 3. Նիկ. ԺԲ. 3.

3 Այս խառնակութեան մասին մանրամասն պատմում է Ս. Բարսեղը իւր Թղթերի մէջ.

*ցիսն։ Եւ որ համագոյութեան էին խոստովանողք ունէին զեկեղեցին, ա զորս կարէին հովուել ի հաւատս. բ վասն զի Գրատիանոս եդ օրէնս. զոր կամի ոք հաւատ, գ պաշտեսցէ։*

ա. Ա՝ զեկեղեցիս զոր. բ. Ա՝ ի հաւատ. գ. Դ. հաւատս.

միայն ապա ամենեքեան որք ի նոյն յարեալք փոյթ ջնէին աթոռակից առնել Պողինոսի զՄեղետիոս։ Իսկ Պողինոսի ասացեալ արտաքոյ կանոնին զոլ համաթոռ առնուլ զառ ի յԱրիանոսացն ձեռնադրեալ, բռնադատէր ժողովուրդն.[ա] և միում առաջի քաղաքին յեկեղեցեացն յարդարէին նստուցանել զնա յաթոռն։ Այսորիկ եղելոյ, բազում վիճաբանութիւնն շարժէր, իսկ յետ այսորիկ ի միաբանութիւն եկին ժողովուրդքն այսպիսի ուխտիւք։[բ] Ժողովեալք զորս յընտրութենէն եպիսկոպոսութիւնն, գտանէին զամենայն արսն թուով վեց, ընդ որս էր և Փղաբիանոս. և երդմամբ զնոսա հաստատեցին, մի ումեք անցանել յեպիսկոպոսութիւնն յառաջ քան զմի ուրուք յեպիսկոպոսացն վաղճանեալ, այլ թոյլ տալ ըմբռնեցելոյն ունել զնախ երթեցելոյն զաթոռ։ Այսպէս տուեցելոց երդմանցն, ժողովուրդն ընդունէր զհամամտութիւնն, և ոչ ևս առ միմեանս խըղճային։

Իսկ որք Ղուկիփերոսին և վասն այնորիկ խղճային, ևթէ Մեղետիոս յԱրիանոսացն ձեռնադրեալ՝ յեպիսկոպոսութիւն եղև ընկալեալ։ Յայսպիսի կարգաւորութեան լինելով յորոց յԱնտիոքիա կարգեցելոցն, պատահեաց Մեղետիոսի գալ ի Կոստանդինուպոլիս,[գ] յորժամ հասարակացն կարգաւք բազում եպիսկոպոսանց Գրիգորիոսի Անձիանձու եպիսկոպոսութիւնն ի Կոստանդինուպոլիս փոխեալ լինէր։[դ]

ա. Բռնադատէր ի ժողովրդենէ:

բ. Ձեռ. ունի «ախտիւք»:

գ. Բնագիրը այստեղից սկսած վեցերորդ գլուխն է սկսում, բայց մեր ձեռագրի աստղաձեւ նշանը աւելի ճիշտ եւ մտքին համապատասխան ստորեւ է դրուած. ուստի եւ միայն այս անգամ բացառաբար ձեռագրին հետեւեցինք:

դ. Բն. աւել ունի. «Եւ այս այսպէս եղեւ»:

ի Թեսաղոնիկէ։ [ա] Եւ անդ ի հիւանդութիւն անկեալ, արժանաւորիլ քրիստոնէական մկրտութեանն ցանկացաւ, [բ] ի վերուստ ի նախնեաց քրիստոնէ[գ] գոլով, և ի համագոյութեան հաւատ յանգեալ։ Իսկ յայնժամ մկրտիլ [դ] վասն հիւանդութեանն փութացեալ և խնդրեալ [ե] զԹեսաղոնիկեցւոցն եպիսկոպոս եհարց նախկին [զ] թէ ո՞ր հաւատոյ տացէ [է] ողջոյն։ Իսկ նորա ասացեալ. որպէս զի ոչ անցին Արիանոսականն կարծիք յԻլլիւրացւոց [ը] ազգս, և ոչ կալեալ յափշտակել [թ] ի նոցանէն ծնեալն ունայնահաւատութիւն [ժ] զեկե-

ա. ի Թեսաղոնիկէ. բ. ցանկայր վասն ի վերուստ. գ. քրիստոնեայ. դ. իսկ նոյն ժամայն մկրտեալ. ե. փութացաւ խնդրել, զ. նախ եթէ. է. տայցէ. ը. Արիանոսաց կարծիքն յուղիռացւոց. թ. Զիք. ժ. Ցունաց նահատակութիւն.

նուն և զարքայութիւն ժառանգեաց ի փառս և յաստուածաբանութիւն Աստուծոյ։)

Իսկ Մեղիտոս Անտիոքայ եպիսկոպոս մնայր առ նմա ժողովն. [ա]

ԳԼ. ԿԹ

*Թագաւորն Թէոդոս յետ յաղթութեան բարբարոսաց դառնայ եւ գայ ի Թեսաղոնիկէ. մկրտի ի յԱքիւղայ, եւ գայ ի Կոստանդնուպօլիս. եւ ժողով եպիսկոպոսաց ընդդէմ Մակեդոնի, եւ դաւանութեան ուղղափառ հաւատոյ։*

Իսկ Թէոդոս թագաւորեալ [բ] յետ յաղթութեան բարբարոսացն և կարգաւորելոյ զաշխարհն, [գ] դառնայ ի Կոստանդնուպօլիս. և հասեալ ի Թեսաղոնիկէ հիւանդացաւ ի նմա։ Եւ զի ոչ էր ընկալեալ մկրտութիւն, փութայ [դ] ի մկրտութիւն, թէ.

ա. Դ. ժողովոյն. բ. Գ Ա՛ թագաւորեալն. գ. Դ. զաշխարհ. դ. փութայր.

ղեցիսս, այլ կան պահելով ա անշարժ, զի ի վերուստ
և զիսկզբանէ յառաքելոցն աւանդեալ բ հաւատ, և
ի Նիկիոյն գ հաւատ հաստատեցան։

Իսկ Թագաւորն կամաւորութեամբ դ յԱքիղիոսէ
եպիսկոպոսէ մկրտէր։ ե Եւ ողջացեալ ապա առժամայն
յախտէն, յետ ոչ զ բազում աւուրց ի Կոստանդինու-
պօղիս գայր, է քան և չորիցն ը Նոյեմբերի ամսոյ, ի հւ-
պատուոջն Գրատիանոսի հինգերորդում թ և յիւրում
Թէոդոսի առաջնում։ [1]

ա. պահեն. բ զի վերուստ. առաք՛լոցն աւանդեալ. գ, ի Նի-
կիայն հաստատեցաւ. դ. յօժարութեամբ. ե. մկրտէր. զ. ինչ է. գնայր.
[illegible]. եւ չորին Նոյեմբեր. թ ի հւպատուոշն Գրատիանոսի յերկրորդում.

I Փրկ. 380 Թ.

[illegible]էտ և էր հաւատացեալ ուղղապէս և ուղղափառ հաւատացե-
[illegible]ոց ա որդի, զի այսպէս սովորութիւն կալեալ ունէր. բ ի կատա-
[illegible]եալ հասակի գային ի մկրտութիւն. Եւ վասն այսորիկ Գրիգոր
Աստուածաբան գ վարդապետեաց և արագ ի լուսաւորութիւն
մկրտութեան դ վերակոչի. ե որպէս յայտ ցուցանէ, որ յաղագս
մկրտութեան է վարդապետութիւն և որ այնորիկ են իմաստք.
Եւ հանդիպեալ Աքիւղաս եպիսկոպոս ըստ Նիկիայ հաւա-
տոյն, որ ըստ առաքելոցն քարոզութեան ունի զհաստատու-
թիւն միշտ հաւատոյ ընդհանրական եկեղեցիս. Ցայնժամ
մկրտի ի յԱքիւղայ զ (Թագաւորն Թէոդոս ի Հայր և յՈրդի և
ի Ս. Հոգին ճշմարիտ խոստովանութեամբ.) և իսկոյն զառող-
ջութիւն ստանայր յախտէն, է և գոհանալով փառաւորէր զԱս-
տուած. Եւ անդէն գայ ի Կոստանդնուպօլիս յառաջին ամին ը
ծիրոյ Թագաւորութեան, (և մեծաւ պատուով ընդունի զԳրիգո-

ա. Դ. հաւատացելոյ. բ. Դ. ունէին. գ. Ա՛ աստուածաբանն. դ. Գ.
մկրտութիւն. ե. Ն. Դ. վերակոչէ. զ. Ա. Բ. ի յԱկիւղիա է. Գ. յախտէ.
ը. Դ. ամի.

Իսկ յայնժամ Գրիգորիոս որ ի Նանսարա[illegible]յ ի ներքս ի քաղաքին փոխեալ, ի փոքր աղաւթանոցի զժողովեան առնէր.[a] որում յետոյ Թագաւորացն[b] մեծ տուն աղաւթարան առնիթեր շինեալ[c] Անաստասիայ անուանեցին։

Բայց Գրիգորիոս ապա այլն բանաւոր՝ լաւագու-նութեամբն[b] քան զոր ըստ նմայն գերազանցելով ծա-

ա. Իսկ յետ այնորիկ Գրիգոր Անձիանձու փոխեալ լինէր ՝ի ներքս ի քաղաքն աղօթանոց զժողովն ունէր. բ. որոյ թագաւորքն. գ. լեալ.

ա. Այս անգամ անուան ձեւը չէ հայացրած։
բ. Յն. εὐλαβεία.

1 Տես Սոզոմ. Զ. 5. Փիլոստ Թ. 19. Թէոդ. Ե. 8. Կաս. Թ. Գ. Նիկեփ. ԺԲ. 7։

րիոս. և հարցեալ և ուսեալ ի նմանէ զհաւատոցն[a] բան, և զա-մենայն բարեձևութիւն[b] կարգաց և կրօնից եկեղեցւոյ ընդու-նէր ի նմանէ[c] յօժարութեամբ և հաւատով, որպէս ի գիտնա-կանէ և ի սրբոյ առնէ)։[d] Եւ զի էր փոքր տուն աղօթից, ուր Գրիգորիոս զհաւատացեալ ժողովուրդն[e] հովուէր, որ ապա թագաւորն յետոյ մեծացուցանէր[f] զտուն աղօթիցն հրաշալի յօրինուածովք. և Անաստասի անուանեցին։

Եւ տեսեալ Թէոդոսի որոշեալ զբազումս յուղիղ հաւա-տոյն, հարցանէր ցԳրիգորիոս, թէ զի՞նչ օրինակաւ կարասցուք

ա. Դ. զհաւատոյն. բ. Բ զբարէգործութիւն բարեձեւութեան. գ. Ա ընդունէ. դ. Ա, Բ. յառնէ. ե. Ն. ժողովուրդս զ. Ա, Գ. Դ. թագաւորքն յետոյ մեծացուցանէին զտօն աղօթիցն.

() Նոր. «Եւ զայս հարցեալ եւ ուսեալ» զոր ունի Թղնն. առն. թարգմանիչն ի Խորենացւոյ (Բ. ԺԳ. 191) Այս ասացուած գտանի [illegible] զում ուրեք ի թարգմանութիւնս Խորենացւոյ :

Զայսոսիկ լուեալ Պրիմոփիղոսի՝ և զմտաւ ածեալ ա
թէ որպէս դժնդակ է առ վեհագոյնսն ընդդիմանալ, բ
կոչեալ յեկեղեցին զբազմութիւնն, գ և ի միջի նոցա յա-
րուցեալ, այսպիսս անձամբ առ լսողսն բարբառեցաւ։ դ
Եղբարք, գրեալ է,[1] ասէ, ե յԱւետարանին. եթէ զձեզ
հալածեսցեն զ ի քաղաքէս յայսմանէ, փախիջիք ի միւսն.
և զի այժմ Թագաւորս եկեղեցւոյդ պէտս ունի, զի-
տակ լիջիք զնոյն հետ այնմ ժողովեալս է զձեզ արտա-
քոյ քաղաքիս։ Զայս ասացեալ՝ էել. ոչ որպէս Աւետա-
րանին բան ունի ը զտեսութիւնն գիտելով, յաշխարհիս
յայսմ կենաց փախուցեալ զվերինն խնդրել Երուսաղէմ,
այլ արտաքոյ դորանց քաղաքին զժողովսն առնէր։ Ըն-
տի յառաջ եղանէր ընդ նմա և Ղուկիոս թ որ յԱղէք-
սանդրոյն, որպէս յառաջն ասացի,[2] արտաքսակացեալ և
փախստեան հպեալ ժ ի Կոստանդինուպոլսի լինէր։ Այս-
պէս Արիանոսացն զքառասուն[3] ամ զաղաւթանոցացն
տեղիս կալեալ, և ի միաբանութենէն Թագաւորին Թէո-

ա. Թէոփիլոսի, ածեալ. բ. ընթանալ. գ. «ուխտին». ասել է, ոյ չկայ նաեւ բնագ. դ. բարբառեալ ե. չիք. զ. հալածիցեն զձեզ . . . փաղչիք յայլ. է. չիք. ը. [զայս ասելով ոչ եթէ աւետարանաւն ունէ զտեսութիւն փախուցեալ, այլ յաւետարանական կենացն փախչէր արտաքոյ. թ. Զեկիոս. ժ. արտաքս կացեալ եւ փախստեայ.

1 Տես Մատթ. Ժ. 29.

2 Տես Դ. գլ. 37.

3 Ակամբ 340 թ. երբ Եւսեբիոսը Նիկոմիդիայից Կ. Պոլիս փո-դրուեց. Տես Բ. 7.

խնդրութիւնք, և ես հաւատացից ասէ Տէր Ամենակալ։[1]

Եւ այսոքիկ ընդունելի եղեն Թագաւորին։ Եւ առաջ
հրաւիրակս գալ ի ժողով ի Կոստանդնուպօլիս (Դամասոս ի
Հռոմ)։ Տիմոթէոս Աղէքսանդրի, Կիւրեղ Երուսաղէմի, Մե-

1 Սղմ. ԾԸ. 16.

2 Առնու ի Խոր. Գ. ԼԸ. 165. «Դամասոս Հռոմայ».

դոսի փախուցեալ արտաքս ելին [ա] ի քաղաքէն. ի հուպատուոյն Գրատիանոսի հինգերորդին, և Թէոդոսի առաջներորդի, վեցին Նոյեմբերի ամսոյ, իսկ փոխանակ մտանէին և ընդունէին զեկեղեցիսն [բ] որք համագոյութեանն հաւատոյ։

ԳԼ. Ը.[1]

Իսկ Թագաւորին ոչինչ ապուժեալ՝ ժողով եպիսկոպոսաց ուղղափառ հաւատոյն[2] համակոչէր առ ի հաստատել զոր ի Նիկիոյն հաւատ, և ձեռնադրեալ Կոստանդինուպօլսի եպիսկոպոս։ Յուսացեալ կարող լինել և զորս ի Մակեդոնեանին միաւորել յիւրանս, և զորս նոցայ հերձուածոյն առաջնորդս կոչեաց։ Եւ ժողովեցան ապա

ա. ելանէին. բ. եւ հովուէին զեկեղեցին որ համագոյ Թէոդո-դո[illegible]եան խոստովանողք էին եւ սահմանեալ հաստատեցին զոր առ ի Նի-կի[illegible] հաւատս.

1 Տես Սոզոմ. Է. 7. 8. 9. Թէոդ. Ե. 7. 8. Կաս. Թ. 13. Նիկ [illegible] 10.

2. Նախ քան ժողով հրաւիրելը. Թէոդոսը օրէնք հրատարակեց [illegible] 381 թուին, հաստատելով Նիկիայի դաւանանքը։ Այս Նիկիայից յետոյ [illegible] մեծ տիեզերական ժողովն էր համարւում, իսկ Կոստանդնուպօլսի ժողովների մէջ չորրորդն էր։

Անտիոքայ, որ էր իսկ եկեալ յառաջագոյն առ Գրիգորիոս, որ զտեղափոխութիւն ունէր, (և Բասիլ[ա] Կեսարացի, և Գրիգոր Նիւսացի՝ եղբայր Բարսղի, և Ներսէս Պարթև Հայոց Մեծաց.[1]

ա. Ռ. Բասիլիոս.

1 Նորայր «Զանուանց Ներսիսի եւ Բարսղի տես Խոր. Գ. ԼԴ. 221. ծան. 2. 5.

2 Նոր. Չիք ի բն. զանուն Ներսիսի Պարթեւի թարգմանիչն առեալ է ի Մ. Խոր. Գ. ԼԳ. այլ Խոր. չասէ թէ Ներսէս գտաւ ի ժողովին։

Թագաւորին ապա՝ և որք նորա հաւատոյն եպիսկոպոսունք, ամենայնիւ ջանային համիմացս առնել նոցա զոյս Եղևսիոսին. յիշեցուցանէին զպաշտանսն զոյս առ Պիբեռիոս[1] յառաջագոյն Հռովմայ եպիսկոպոսն ի ձեռն որոց Եւստաթիոսին արարին. և եթէ ոչ յառաջ քան զբազում ժամանակս զհաղորդութիւնն կամաւորաբար անխիղճ արարին, ոչ առնել սուրբս զգիտողսն զհամակամականն հաւատ, առժամայն ձեռնարկել խախտել զբարուոք ի նոսա ծանուցեալսն։

Իսկ նոցա փոքր ինչ և յորդորմանցն և յանդիմա-

1 Տես Դ. գլ. 12.

զօրութիւն և էութիւն Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբոյ, յերիս[ա] առանձնաւորութիւնս արտագրեցին ամենայնիւ[բ] հաւատարք և համապատիւք ի փառս բնութեան աստուածութեանն,[գ] որոշեալք ըստ առանձնաւորութեանն, և միաւորեալք ըստ աստուածութեանն, հրաշափառագոյն միաւորութեամբ և բաժանմամբ. իսկ առաւելն քան զայս և ոչ հրեշտակաց է առել, այլ ըստ երից սրբասացութեան ի մի բերելով զփառս ամենազօր տէրութեանն և աստուածութեանն Հօր և Որդւոյ և Հոգւոյն սրբոյ. զի արգելեալ[դ] փակեալ է յայս[ե] խոստովանութիւն հրեշտակաց և մարդկան. Իսկ որք ոչ այսպէս ունիցին, եղիցին նզովեալք[զ] յերկնաւորացն և յերկրաւորացս. և որք յամենասուրբ Երրորդութեանն ոչ են փառաբանիչք և երկրպագուք, Իսկ որ յաղագս անտեսութեան են շարժմունք, բանիւ[է] հաւատոյ, զծնեալն ի Հօրէ Բանն Աստուած յառաջ քան զյաւիտեանս,[ը] և յետ այսորիկ[թ] ի կուսէ[ժ] մարմնացեալ իմն

ա. Դ. երիս առանձնաւորութիւնս. բ. Ն. յամենայնի. Դ. ամենայն. գ. Դ. աստուածութեան. դ. Դ. յարգելեալ. ե. Ա, յայն. զ. Դ. նզովեալ յերկնաւորաց եւ յերկրաւորաց. է. Ա, Գ. Դ. բանք եւ շարժմունք, բանիւ հաւատոյ. ը. Ա, յառաջ քան զդաւանութիւնն ճշմարիտ յաւիտեանս. թ. Ա, այնորիկ. ժ. Ն. ի կուսէն.

նութեանցն հոգ տարեալք, մանաւանդ ասացին ընտրել զԱրիանոսականն խոստովանել կարծիս քան զհամագոյութիւնն խոստովանել։ Զայս պատասխանեալք՝ ի բաց փոխեցան ի Կոստանդինուպաւլսէ. և գրէին որոց ըստ քաղաքացն, մի երբէք համիմանալ ըստ հաւատոյն Նիկիոյ ժողովոյն։ Իսկ որոց միւսոյ կողմանն յամեալ առձեռնադրութեան եպիսկոպոսի խորհուրդ առաջի դնէին, քանզի Գրիգորիոս, որպէս և սակաւ ինչ յառաջն ասացի, հրաժարեալ ի Նանձիանձոյն կոյս համբառնալ առաքիւր։

Իսկ այր ոմն էր Նեկտարիոս անունն, ի սինկղիտոսական արենէ, հանդարտ աւրինակաւ, վասն որոյ սքան-

ածեմք և ոչ բաժանեմք սքանչելի և հրաշափառ խառնուած մարդոյ և Աստուծոյ միաւորելոյ, և լինել [ա] Աստուած ամենայն յամենայնի. որ կրեաց զկիրս մարդկայինս և կայ մնայ Աստուած առանց փոփոխելոյ և ընդ Երրորդութեան օրհնի [բ] միութեամբ և ոչ բաժանի. Արդ՝ որք այսպէս խոստովանին, և հաւատայցեն. ընկալցին զօրութիւնս յերկնաւորացն և յերկրաւորացս. իսկ որք ոչ այսպէս ունին, հեռի եղիցի ի նոցանէ. [գ] Զայսոսիկ միտս [դ] վերաբերեալ ի հաւատոյն ցոյց, զՆիկիայ հաւատն վերաձայնութեամբ արտադրեցին [ե] ասելով յեկեղեցւոջ [զ] յետ Աւետարանին. զոչ հաւանեալսն մերժեցին ի հաղորդութենէ։ Իսկ Գրիգորիոս հրաժարէր [է] վասն առաւելութեան փառաց և պատուոյ յիւր [ը] բնիկ եկեղեցին և ի վիճակն, [թ] զի մի իւրքն զրկեսցին ի նորա լուսաւոր վարդապետութենէն։

Իսկ այր ոմն երևելի ի սինկղիտոսացն, որք խորհրդականք կոչին, հանդարտ օրինակաւ և սքանչելի երևեալ, որ

ա. Բ լինել. բ. Դ. Աստուած եւ ոչ բաժանի. գ. Դ. ի նմանէ. դ. Դ. ի միտս ե. Դ. արտադրելով. զ. Ա, եկեղեցւոջ. է. Գ. հրաժարեալ էր ը. Ա Ն. իւր թ. Ն. եւ վիճակն

չէլի եղեալ. և զպոռէտորականն ընձեռնելով զիշխանութիւն յափշտակեալ ի ժողովրդենէն յեպիսկոպոսութիւն նախակարգեցաւ, որոց յայնժամ ճծ եպիսկոպոսացն ձեռնադրելոց զնա։ Իսկ յայնժամ սահմանս արտաբերէին, որպէս զի Կոստանդնուպոլսի եպիսկոպոսին ունել զաւագութիւն պատուոյն յետ Հռովմայ եպիսկոպոսին, վասն լինելոյ նորա Նոր Հռովմ։[1] Եւ հաստատեցին առժամայն զհաւատն Նիկիոյ և հայրապետութիւն կարգեցին զաշխարհն բաժանեալք, որպէս զի որոց առ կարգաւորութիւնն եպիսկոպոսանցն, յորս արտաքոյ սահմանին եկեղեցի մի ելանել. քանզի այս նախկին անընտրաբար լինէր։

1 Այս երրորդ կանոնն էր. բայց դրանով չէր որոշւում, թէ երկու քաղաքներից իւրաքանչիւրին ինչ վիճակներ են ստորադրւում։

զպռետորական[ա] իշխանութիւն ունէր ըստ ընտրութեան ժողովրդեանն Աստուծոյ, զնա վերակոչէ Թագաւորն ի վերակացութիւն եկեղեցւոյն Կոստանդնուպօլսի, և որք ընդ նմաւ եկեղեցիք ընտրանաւ[բ] ամենեցուն. և անդէն ձեռնադրի ի սուրբ ժողովոյն.

## ԳԼ. Ճ.

Աւանդութիւն ս. ժողովոյն Կ. Պօլսոյ, թէ որք զկնի միոյ հայրապետութեան երիցութիւն ունիլ պարտին:

Եւ աւանդեն սուրբ ժողովն՝ յետ Հռոմայ ունել զերիցութիւն, և հայրապետութիւնս կարգելով բաժանեցին զվիճակս և իւրաքանչիւր ումեք մի ելանել ընդ սահմանս իւր.

ա. Բոլ. Ձեռ. զհռետորական. բ. Ա, ընտրութեամբ.

Եւ վիճակէր այնուհետեւ Նե(կ)տաւրիոս զմեծ քաղա(քն)[ա] և զԹրակ, իսկ զՊոնտոսական կարգաւորութիւնն[բ] Եղադիոս որ յետ Բասղի Կեսարոյ Կապպադովկացւոյ եպիսկոպոս, և Գրիգոր Նիւսւոյ Բասղի եղբայր Կապպադովկեցւոյ և այս քաղաք, և Ոտռիւոս[գ] որ ի Հայս Մեղէտինւոյ զհայրապետութիւն ժառանգեցին։ Իսկ Ասիականին հասանէին Անփիղոքիոս, որ ի Կինիոնին.[դ] և Ոպտիմոս որ Անտիոքայ Պիսիդեան։ Իսկ որ յԵգիպտոսն Տիմոթէոսի որ Աղէքսանդրոյն եղև ճարակ։

Իսկ զորոց ըստ արևելից եկեղեցեացն[ե] նոյն եպիսկոպոսացն հրամայեցին. Պեղագիոսի Ղաւոդիկեցւոյ, և Դիոդոռոսի Տարսոնացւոյ, պահելով զիրիցութիւնն Անտիոքայ եկեղեցւոյն, զոր յայնժամ առընթեր գոլով

ա. Յն. ἡ Μεγαλόπολις·

բ. Յն. ἡ διοίκησις վիճակ.

գ. Յն. καὶ Ὀτρήϊος ὁ τῆς ἐν Ἀρμενίᾳ Μελιτηνῆς τὴν πατριαρχίαν զարմանալի է, որ այս անունը անսովոր է մեզ համար եւ Հայոց հայրապետների անուան ցանկի մէջ չկայ, եւ ինչքան մեզ յայտնի է առանձին կերպով էլ ուշադրութեան չէ առնուած:

դ. Ἰκόνιον· Զեռ. ունի. «որ ի Կինիոնն»․

ե. Յն. աւել ունի. τὴν διοίκησιν վիճակ:

Առաջին Հռոմայ հայրապետութիւն, և որ ընդ նովաւ են եկեղեցիք և սահմանք և վիճակք.[ա] Երկրորդ Կոստանդնուպօլսի հայրապետութիւնն,[բ] որ էր Եփեսոսի, անդր փոփոխի[գ] աւագութիւնն։ Երրորդ՝ Աղէքսանդր և Եգիպտոս և եկեղեցիք և սահմանք առ ի նմանէ ընկալեալ ձեռնադրութիւն[դ] և կարգս և կրօնս։ Չորրորդն՝ Անտիոք, որ Մելետիոս դարձեալ հաստատեալ եղև ի ժողովոյն,[ե] և նորին սահմանք և վիճակք և[զ]

ա. Գ. Ա, վիճակք են. հայրապետաց վիճակքն. բ. Դ. հայրապետութիւնք. գ. Բ. փոխի. դ. Դ. զձեռնադրութիւն. ե. Դ. ի ժողովս. զ. Ա՝ չիք.

Մեղետիոսի ետուն։ Եւ սահմանեցին, զի և Թէ պէտք ինչ եղիցին, ըստ իւրաքանչիւր աշխարհի, աշխարհին իսկ ժողովն կարգեսցեն։ Այսոցիկ և Թագաւորն եղև ընտրակից. ժողովն այսպէս ունէր վախճան։

ԳԼ. Թ.[1]

Իսկ Թագաւորն յայնմժամ զմարմինն Պաւղոսի եպիսկոպոսի յԱնկիւրայոյ փոխաբերէր. զոր Փիղիպոսի եպարքոսի Թագաւորացն վասն Մակեդոնի ի Կու-

1 Մոզամ է. 11. Թէոդ. Ե. 8. Կաս. Թ. 17. Նիկեփ. ԺԲ. 14.

եկեղեցիք. և այլք ի նմին. Եւ Երուսաղէմ և [illegible] եկեղեցիք և սահմանք և վիճակք բաժանեցան [illegible] ուան ի ժողովոյն. և Կեսարացւոց՝[ա] Պոնտացիք և Կապադովկացիք[բ] և ամենայն Հայք և որք ընդ նովաւ են եկեղեցիք և սահմանք կարգաւ տուեալ.[գ] և Եփեսոսի Ասիա և որք ընդ նովաւ են սահմանք և եկեղեցիք և վիճակք. Եւ զայլ ևս կարգս եկեղեցւոյ հաստատեցին ընդ աշխարհս. Եւ այսպիսի ուղղափառ հաւատով և կանոնեալ սահմանաւ[դ] մեծարեալք[ե] ի Թագաւորէն, գնացին յիւրաքանչիւր տեղիս օրհնեալք գերարեպաշտագոյն Թագաւորն.

ԳԼ. ԺԱ.

*Թէ որպէս Թագաւորն Թէոդոս զՊօղոս եպիսկոպոսին Կ. Պոլսոյ յաքսորս խեղդեցելոյն մարմինն վերաբերէ ի Կոկիսոնէ Հայոց ի Կ. Պոլիս:*

Իսկ ողջախոհն Թէոդոս զՊօղոսի զմարմինն. որ Կոստանդնուպօլսի էր[զ] եպիսկոպոս, և աքսորեալ եղև (ի փոքր Կոստանդնէ), և խեղդեալ եղև ի Մակեդոնացւոց դժրանաց,[է] որ զտեղի

ա. Գ. Կեսարացւոց. բ. Դ. Կապպադովկացիք. գ. Ա՛ կարգաւորեալ. դ. Ա, Գ. սահմանեալ. ե. Գ. մեծարեալք. զ. Գ. Ա՛ Կոստանդնուպօլիս էր. է. Ա՛ դժուարանաց.

կիսոն քաղաք Հայոց խեղդեալ տայր, որպէս և սա․․․

իսկ սսացի՝[1] Հանդերձ պատուով և պաշտամամբ բազմաւ ընկալեալ յեկեղեցին, որ և այժմ ի նմանէն կոչի, եդեալ լինէր, զոր յառաջ Մակեդոնի խորհողքն ունէին յԱրիանոսականացն մեկնեալ․ իսկ յայնժամ արտաքսեալք ի Թագաւորէն ըստ ի նորա հաւատոյն փախչէին։

Իսկ յայնմժամ և Մեղետիոս Անտիոքայ եպիսկոպոսն ի հիւանդութիւն անկեալ վաղճանէր․ յորժամ և զգերեզմանականն բան[2] ի վերայ նորա եղբայրն Բարսղի Գրիգորիոս (ի վերայ նորա) ետ։ Այլ զմարմինն Մեղետիոսի յԱնտիոքիա որոց պարտն էր տանէին․ իսկ դարձեալ որք Մեղետիոսն յանկեալք ընդ Պաւղինոսի լինել ոչ կամէին․ այլ ի տեղին Մեղետիոսի զՓլաբիանոս նախակարգեալ յարդարէին․ և դարձեալ ի վերուստ այնուհետև ժողովուրդն խզձայր։

Այսպէս անդէն վասն եպիսկոպոսանցն, և ոչ միայն յաղագս հաւատոյն, Անտիոքացեացն եկեղեցի որոշէր։

1 Տես Բ. 26․

2 Այդ ճառը Գրիգոր Նիւսացու գրուածքների մէջ մնացել է․

Նորա ունի․ որ բերեալ եղև մեծաւ փառաւորութեամբ ի Կոսկիսոն քաղաքէ Հայոց ի Կոստանդնուպոլիս․ և եդեալ ի վկայարանի մեծաւ պատուով ի փառս Աստուծոյ․

Ի նոյն ժամանակի և Մեղետոս եպիսկոպոս վախճանէր յետ ժողովոյն․ յորոյ վերայ զգերեզմանական բանն ի վերայ նորա ասէր Գրիգորիոս․ Իսկ զմարմին[ա] նորա բարձեալ իւրոց աշակերտաց տարան յԱնտիոք․ Իսկ որք նորան ժողովուրդք՝ ընդ Պօղինոսիւ[բ] հնազանդէին․ որ էր ընդ ուղիղ հաւատոյն․

ա Դ. [ս՝] զմարմին յԱնտիոք չէր բ. Բռ. Ձեռ. Պողոսիւ.

Գլ. Ժ.[1]

Այնէին խռովութիւնք և ըստ այլ քաղաքացն արտաքսեցելոցն Արիանոսացն յաղաւթարանոցացն տեղեաց։ Որովք սքանչանալ է ինձ ի վերայ կամաց Թագաւորին, քանզի ոչ ներէր ի վերայ այսքան խռովութեանցն լինել զքաղաքսն. այլ սուղ ինչ անցեալ ժամանակի, նոյնժամայն ամենայն Հերձուածողացն նզովս[2] առնել Հրամայէր, կարծեալ յորոց առ ինքեան եպիսկոպոսացն բանից մին յամենեցունց համաձայն փառս ընդունել։

Զայս համարիմ զկամս Թագաւորին պատճառ նմա բարեգործութեան լինել. քանզի աստուածային իմն Նախախնամութիւն զազգն բարբարոսաց նմա հաւանեցուցանէր։ Յորոց և Աթանարիքոս Գոթացն զաւրավար ինքեան կամաւ ընտանեացն բազմութեամբ եկեալ լինէր, որ և առժամայն իսկ ի Կոստանդինուպաւղսի զվարսն կատարէր։ Յայնժամ և Թագաւորն Թէոդոս զորդին Արկադիոս Աւգոստոս անուանեաց, ի հիւպատուջն Մե-

1 Ցես Սոզ է. 12. կաս Թ. 19 Նիկ. ԺԲ. 15.

2 Կոստանդնուպոլսի հինգերորդ ժողովն էր 383 Թ. Յուլիս ամսում։

Եւ սուղ ինչ անցանելով ժամանակի,[ա] զամենայն ժողով Հերձուածողաց ընդունէր սիրով Թագաւորն զի այնու որսասցէ ըզնոսա յուղիղ[բ] հաւատս, զոր բան[գ] ոչ հաւանեցոյց։ Եւ այնպէս ողոքէր ածել յուղիղ[դ] հաւատս. և զայս համարիմ մեծ գոլ բարեգործութիւն[ե] Թագաւորին։ Քանզի և աստուածային Նախախնամութիւն հնազանդեցոյց նմա զամենայն ազգս բարբարոսաց որք հակառակէին։ Ցայնժամ Թագաւորն Թէոդոս զորդին իւր զԱրկադէոս Աւգոստոս անուանեաց, ոչ ընդ երկարս

ա. Գ. զժամանակ. բ. Ա, Գ. ուղիղ. գ. Ա՛ զայլ բանիւ. դ. Բ. Հիք. Ա, ուղիղ. ե. Դ. բարեգործութեան.

ուրբուզոսի[ա] երկրորդին և Սատոռնիլոսին,[բ] ԺԶ Յունվարի ամսոյ։[1] Ոչ ընդ երկար ինչ ամենայն ուստէք գային եպիսկոպոսունք ամենայն աղանդոյ, ըստ նմին Հրպատուոջին, յամսեանն Յունիսի։

Կոչեալ ապա Թագաւորին զՆեկտարիոս,[գ] Համաբանէր առ նա. զինչ արդեւք լինիցին հնարքն, որպէս զի մի երկձայնեսցի քրիստոնէութիւնն, այլ միաւորեսցի եկեղեցի ի մի հաւատ։ Ասէր պատեհ զոլ կրթիլ զորոշաւղն եկեղեցեացն զխնդիր, և զանմիաբանութիւնն յատից հատանել, զհամաբանութիւն եկեղեցւոյ յաւրինել։

ա. Բն. Μερογαύδου Մեռագաւղոսի.
բ. Բն Σατορνίλου Սատոռնիլոսի.
գ. Բն. աւել ունի. τὸν ἐπίσκοπον
1 Փրկ. 383 Թ.

ինչ իւրոյ Թագաւորութեան.

Գլ. ԺԲ.

*Թէ որպէս Թագաւորն Թէոդոս խնդրէ իւրաքանչիւր աղանդոյ հանգամանքն, եւ աղօթիւք խնդրեալ յԱստուծոյ զուղիղն յայտնել, ընթեռնու զգրեանսն յազդումն լեալ յԱստուծոյ հաստատէ ի միտս իւր, կալ մնալ ի հաւատս համագոյութեան. եւ անգոսնէ զնոցին չար հայհոյութիւնս։*

Յետ այսորիկ ամենայն եպիսկոպոսունք աղանդոց գային առ Թագաւորն Թէոդոս, իսկ նա խորհրդածեալ[ա] առ Նեկտարիոս, եթէ զի՞նչ իցէ[բ] հնար որ միաւորեսցի[գ] քրիստոնէութիւն ի մի փառաբանութիւն Աստուծոյ սրբոյ Երրորդութեան. և նա համարիմ պատեհ բանակռուութիւն[դ] թողուլ՝ և զառաջնոցն բերել զհաւատոյն բան. և թողուլ յորմէ որոշեալ[ե] եղեն,

ա. Ա, խոկմունք ածեալ. բ. Ն. զի՞նչ է հնար. գ. Դ. միաւորի. դ. Ա. զբանակռուութ/ւն. ե. Ա՝ յորմէ որսեալ եղեն այսոքիկ. Գ. յորմէ յորոշեալ եղեն.

Զայս լուեալ Նեկտարիոս ի հոգս լինէր, և կոչեալ այնքան ի Նաւատիանոսացն զեպիսկոպոսն Ագեղիոս, որպէս քան համախորհ ըստ հաւատոյն, յայտնի նմա կարգեաց զկամս թագաւորին: Իսկ նա այլովքն էր բարի, բայց շարականեալ բանս վասն հաւատոյն ոչ կարելով, զնթերցաւղուն յորոց ընդ նովաւն[ա] Սիսիննիոս անուն առ ի պատասխանատուութիւն բանից նախակարգէին: Իսկ Սիսիննոս այր բանաւոր և լիրացն տեղեակ, ծայրակատար գիտելով զաստուածայինսն գրոց մեկնութիւնս, և զիմաստասիրականսն կարգս,[բ] զմտաւ էած որպէս զի բանք ոչ միայն ոչ միաւորեն զհերձուածսն, այլ և վիճագոյն ևս զհերձուածսն յարդարեն, վասն այսորիկ այսպիսի խորհուրդ Նեկտարիոսի ստորագրեն: Քաջ գիտէր որպէս զի նախկինքն սկիզբն գոյութեան Որդւոյն Աստուծոյ տալ փախեան, քանզի թողին զնա միանգամնաւորակից Հաւր լինել, համախորհ լինէր. ապա փախչել ի բանականն մարտիցն, և վկայս կոչել զաւանդութիւնսն ի նախնեացն պատմագրաց և եպիսկոպոսանց,[գ]

ա. Ընթերցող ումն յորոց ընդ իշխանութեամբ ունէր:
բ. Յն. δόγματα.
գ. Յն. ունի միայն τῶν παλαιῶν ի նախնեացն:

զայնոսիկ ասեմ, որ ամենեցունց[ա] են գովելիք և սուրբք. և եթէ ոք[բ] ըստ իւր աղանդին և զբանս ճշմարտիցն թիւրեալ իցէ, գրով ամենայն ոք զիւրն ինձ յանդիման կացուսցէ. զի ծանիցուք զճշմարտութիւն, որոց աշակերտեցաք ուղիղ հաւատոյ: Այսոքիկ կամք թագաւորին պատմեցան[գ] ի Նեկտարեայ այլահաւատ եպիսկոպոսացն: Այնուհետև գրէին ամենեքեան իւրաքանչիւր զդժնդակացն[դ] բանսն և զխոստովանութիւնս,[ե]

ա. Ա, ամենեցուն են եւ սրբոց. բ. Դ. եւ ոքք. գ. Դ. պատմեցաւ.
դ. Ա, զդժնդակ. ե. Ա, զխոստովանութիւնսն:

և զայս փոյթ ի թագաւորէն հերձուածապետացն մատուցանել. ապաքէն երբէք զտեղի առնիցեն զորոց նախկին հերձուածոյն յեկեղեցւոջ անձեցելոց վարդապետացն,[ա] կամ որպէս աւտարս քրիստոնէութիւն ընդհարկանիցին։ Քանզի ասէ թէ զնոսա արհամարհիցեն, ապա և նզովել զնոսա յանդգնեսցին, և եթէ զայս առնել յանդգնեսցին, ի բազմութենէս արտաքս վարեսցին։

Եւ այսոցիկ եղելոյ յայտնագոյն եղիցի յաղթութիւն ճշմարտութեանն։ Իսկ թէ ոչ ընդհարկանիցին առ նախկինս վարդապետացն, մեր եղիցի, ասէ, տալ զգլեանն,[բ] որովք որ ի մեզ փառքն[գ] վկայեսցին ճշմարիտ և հաստատուն լինել.[դ] Զայսոսիկ լուեալ ի Սիսինա Նեկտառիոսի՝ յընթացս ի թագաւորութիւնն[ե] ընթացեալ, ծանուցանէր թագաւորին զՍիսինայ ասացեալն ընդ նմա։ Իսկ նա յափշտակէր զխրատն, և իմաստաբար զիրն փոխաձեռնէր, քանզի ոչ նախկին ասացեալ զդիտումն յայտնեաց հերձուածապետացն, այղ միայն թէ բանս ունիցին և ընդունիցին զպատմութիւնս նախ քան զհերձուածն ըստ եկեղեցեացն վարդապետաց։ Իսկ նոցա ոչ ուրացելոց, այլ պատուեալ յոյժ զնոսա որպէս ըզվարդապետս ասացելոց, նոյնժամայն յայտնէր թագաւորին, թէ այսոքիւք շահեսցին արժանի ի հաւատարմութեան վկայիւքս քրիստոնէականի հաւատոյ։ [զ]

ա. ὁ διδάσκαλος.
բ. Բն. աւել ունի «նախնեացն:»
գ. ἡ δόξα կարծիք. հաւատք:
դ. «ճշմարիտ - - լինել» չկայ Բն.
ե. πι τὰ βασίλεια ի պալատն. Տես Ա. (ե. էջ 11) ծն. Զ.
զ. δόγμα այստեղ «հաւատք» է թարգմանած, իսկ փոքր ինչ առաջ «կարգ»:

Զայսոսիկ լուեալ աղանդոյն առաջնորդաց և իւրաքանչիւրեցն ի նոցանէ բանաւորաց, քանզի էին բազումք ի նոցանէ պատրաստեալք առ հանդէսն տրամաբանութեան, այլ ոչ ինչ ու[նէին]ᵃ զի արասցեն. քանզի անկաւ յամենեսեան անհամաձայնութեանն բան, ոմանց ասելով բարւոք լինել Թագաւորին ընտրութեան. իսկ ոմանց՝ ոչ պատեհ ասելով նոցա դիտմամբն։ Քանզի այլք այլ ազգ իմն ասէին ասէ գրեալս հին վարդապետացն. և ոչ ևս միմեանց համաշունչք լինէին. ոչ միայն առ այլսն յաղանդոցն, այլ և յինքեանս, իսկ որք միայն գոյին հերձուածոյ։ᵇ

Այնուհետև համաձայն նոցա չարութիւն, որպէս զկեզու նախկին սկայիցն ցրուեալ ᶜ լինէր, և աւերիւր չարութեան նոցա աշտարակ։ Իսկ Թագաւորին ծանուցեալ զշփոթեալ նոցա ցրուումն, և որպէս զի բանիւք ոչ միայն յառաջ նոցա արտադրութիւնս քաջալերեցան, ի յերկրորդն գնայր խրատ։ Եւ յայտնէր գրով իւրաքանչիւր աղանդոյ. ծանուցանել նմա զսահմանն զոր ունին հաւատոյ։ Յայնժամ որոց իւրաքանչիւրոցն դըժընդակաց զբանսն ստուգեալ զառտնին հաւատ գրէին. և լինէր սահմանեալ աւր, և որք իւրաքանչիւրոցն եպիսկոպոսունք ի Թագաւորութիւնն ᵈ կոչեցեալք ժողովէին։

Եւ լինէին ապա եկեալքն Նեկտառիոս և Ագեղիոս համագոյութեանն առաջնորդք հաւատոյ։ Իսկ

ա. Ըստ բնագրի. ոչ ունէին (գիտէին) զինչ արասցեն։

բ. Միտքն է. որք հետեւողք նորին հերձուածոյ էին։ Բառացի է եւ դժուարհասկանալի։

գ. խառնակեալ լինէր. տես էջ 120.

դ. ի պալատն.

Արիանոսացն՝ Դիմոփիղոս, իսկ Եւնոմիոսացն ինքն իսկ Եւնոմիոս, իսկ Մակեդոնի խորհողացն՝ Եղևսիոս Կիւզիկոնի: Իսկ թագաւորն զժողովն ընդունէր, և զառ ի յիւրաքանչիւր ումեքէ զհաւատոն գրով առեալ, առանձինն լինելով աղաւթէր բոլորով սրտիւ գործակցեալ նմա յԱստուծոյ. առ ի ճշմարտութեանն ընտրութիւն: Ապա զիւրաքանչիւր որ ի գրեցելոցն ընթերցեալ, զայլսն ամենայն որպէս զորոշումն Երրորդութեանն մուծողս՝ անգոսնեալ պատառեաց, և միայն ըզհամագոյութեանն գովեալ ընկալաւ: Այս պատճառ եղև զՆաւատիանոսն անդրէն բարեգործեալ ի ներքս ի քաղաքն զժողովսն առնել. քանզի թագաւորին սքանչացեալ ընդ որ առ ընտանիսն նոցա հաւատոյն միակամութիւնն, աւրինաւք հրամայէր ընդունել յապահովաբար զառտնելին աղաւթանոցացն տեղիս. ունել և նախ-

Իսկ էր համագոյութեանն գիր միաւորեալ Նեքտառեայ և Ագեղիոսի [ա] որ ըստ Նաւատեայսն, [բ] և Դիմոփիղէս ըստ [գ] Արիոսի, և Նոմիոսացն ինքն իսկ Նոմիոս, [դ] իսկ Մակեդոնիանոսացն [ե] Եղեւսիոս: Իսկ թագաւորն ընկալեալ զիւրաքանչիւրոցն զգիր. ընթերցան [զ] զգրեալսն ամենայն: Եւ առանձին լինելով [է] բարեպաշտ թագաւորին, [ը] կայր յաղօթս բոլորով սըրտիւ հանդերձ արտասուօք. խնդրել [թ] յամենեցունց Տեառնէն և յանմահ թագաւորէն, ցուցանել նմա զճշմարտութիւն հաւատոյն: Եւ ազդումն եղեալ ի միտս նորա, կալ մնալ ի հաւատս համագոյ սուրբ Երրորդութեան. զոր սուրբ ժողովն արտադրեցին, և զորս ի Գրիգորէ ուսաւ. որպէս նորա են աստուածա-

ա Բոլ Ձեռ. արքեղայոսի Դ. Աքեղաիոսի. բ. Ա, Նաւատիանոսն. գ. Ա, ընդ. դ. Ա՛ Եւնոմիոս. ե. Ա, Մակէդոնացւոց զ. Դ. զգիրս ընթերցաւ. Գ. ընկացեալ. է. Դ. լինել. ը. Ա, թագաւորն. թ. Ա, խնդրէր Բ. խնդրեալ.

ուրինութիւն յեկեղեցիսն նոցա, որպէս և որք նորայն Հաւատոյ ունիցին։

Իսկ առաջնորդք այլ աղանդոցն յորմէ առ ինքեանս անմիաբանութենէն ըստգտեալք յորոց ընդ նոքաւք ժողովրդոցն եղեն, և անհնարութեամբ և սրտնեղութեամբ ըմբռնեալք գնային։ Եւ թղթովք զորս իւրեան մխիթարէին, մի տաժանիլ ի վերայ որք թողինն զնոսա բազումք, և ի համագոյութիւնն յաւելան։ Իսկ ի թուղթս նոցա որպէս ասացի՝ և այս ևս լինէր գրեալ.[ա] քանզի բազումս լինել զկոչեալս, և սակաւս զընտրեալսն, զոր ոչ ասէին, յորժամ զբազմութիւնն ժողովրդեանն յանիրաւ զաւրու-

ա. Իսկ ի Թուղթս…գրեալ. չկայ ըն. մէջ։

բանականք. և որպէս Նեքտառեայ են գիրք և Ագեղոսին[ա] միաբանեալ. Ցայսոսիկ հաստատեալ յազդմանէ Սուրբ Հոգւոյն, հաստատէր ի հաւատս համագոյ սուրբ Երրորդութեան. և անգոսնեալ[բ] զնոցա հայհոյութիւնն, պատառեաց զչար շարագրութիւնսն[գ] նոցա,

Եւ Նաւատիանոսք[դ] յայնմ հետէ միաւորեալք եղեն ընդ ուղղափառ եկեղեցիս. իսկ այլ աղանդոյն առաջնորդք անմիաբանք լինել[ե] տխուրք գնացին. այլ և բազումք ի նոցանէ դարձան և խոստովանէին զուղղափառութեան հաւատս[զ] համագոյ սուրբ Երրորդութեան, Եւ սակաւք մնացեալք յաղանդսն,[է] ասէին. բազումք են կոչեցեալք և սակաւք են ընտրեալք, ասէ Քրիստոս, Այլ որ ըստ որէ նուազէին նոքա,

ա. Դ. բանք եւ Ագեղոսի. Ա՝ Ագեղայոսին. բ Դ. եւ անգոսնէր գ. Դ շար·սղաստւթիւն. դ. Բ. Նաւատիանոսքն. ե. Ա, անմիաբան լեալք տխուր Բ. եւ տխուր. Դ. յախուր. զ. Դ. զուղիղ հաւատս. է. Դ. յաղանդոյն.

թենէն ի նոսա յանկչէր։ Այլ նաև ոչ որք համագոյութեանն հաւատոյ ի տրտմականացն կատարելաբար էին ազատք. զի որ ըստ Անտիոքայն գոյս ի ժողովոյն խղճեցուցանէր։ Վասնզի Եգիպտացիքն, և որք յԱրաբիայն և ի Կիպրոս Պաւղինոսի [ա] գործակցելով, զՓղաբիանոս արտաքսել յԱնտիոքայ ասէին։ Իսկ որք ի Պաղեստինայն և ի Փիւնիկոյ և յԱսորեաց, յաղագս Փղաբիանոսի համակարգք կային, բայց այս ապա թէ որպիսի վախճան ունէր ըստ աշխարհին ասասցուք։

Գլ. ԺԱ. [1]

Իսկ ըստ նմին ժամանակաւքն ըստ որոց ի Կոստանդինուպոլսի ժողովոցն լիք լինէին։ [բ] Մաքսիմոս յորոց

ա. Բն. չունի Պաւղինոս յատուկ անունը. այլ παλιν συμπράττοντες «վերստին գործակցելով». Հաւանականաբար Ցոյն արտագրողի սխալն է, որ Παυλῖνος ուղիղ եւ սկզբնական ընթերցուածը աղաւաղել է եւ դարձրել πάλιν որը համապատասխան չէ մտքին:

բ. Բն. աւել ունի «իսկ ի յարեւմտային կողմունս այսպիսիք լինէին»:

[1] Տես Սոզոմ. Է. 13. Թէոդ. Ե. 12. 13. Ռուփ. ԺԱ. 14. 15. Կասիոդ. Թ. 21. Փիլոստ Ժ. 5. Նիկ. ԺԲ. 19. 20.

Գլ. ԺԳ.

Թէ որպէս Մաքսիմիանոս բռնաւոր ի կողմանցն յարեւմտից յարեւելս յառնէ ի վերայ Հռոմայեցւոց եւ Գրատիանոս սպանանի ի Մաքսիմիանոսէ։

Ընդ նոյն ժամանակս [ա] Մաքսիմիանոս [բ] ոմն բնակեալ ի կողմանց [գ] յարեւմտից յարեւս ի Հռոմայեցւոց պետութիւն իջեալ, համարձակեալ ի Վաղէնտիանոսի մանկութիւնն, առնէր զոր ինչ և կամէր. և այսպէս խորամանկեալ զԳրատիանոս սպանանել նենգութեամբք.

ա. Ա. ժամանակն. բ. Դ. Մաքսիմոս. գ. Ա. կողմանցն. դ. Դ. զինչ.

ի Բրիտանիայ[ա] կողմանցն յարեաւ ի Հռովմայեցւոցն պետութիւն, և ի ջանալն Գրատիանոսի ընդդէմ Աղմանացեացն ի պատերազմին աւգնէր: Իսկ յԻտաղիայ մանուկ գոլով[բ] Վաղենտինիանոսի, զգործենայն հոգաբարձութիւն ունէր Պրոբոս ապու հւպատոն, զեպարքոսի ունելով զիշխանութիւն:

Իսկ Յուստինիան Վաղենտինիանոսի մայր Թագաւորի, զԱրիանոսացն խորհելով, կենդանի գոլով առնն, ոչ ինչ ունէր փնասել զխորհուրդս համագոյութեանն: Բայց վասն զի մանուկ էր որդին, հասեալ ի Մեդիոլանոն քաղաք՝ մեծ խռովութիւնս հակառակ եպիսկոպոսին Ամբռոսի[գ] շարժեաց, յաքսորիս առաքել հրամայելով: Իսկ իբրև ժողովուրդն ընդդիմանայր՝ գերազանցաբար սիրելով զԱմբռոս, և որոց ձգեալն զնա յաքսորիս փութային ընդդէմ կային, յայսքանւոջս պատմէր, եթէ Գրատիանոս նենգութեամբ բռնակալին Մաք-

ա. Բռ. Βρετάνια.

բ. Մի քանի անգամ սխալ թարգմանած ղարձուածը, այստեղ ուղիղ է թարգմանել. տես Ա. 15. (էջ 41) ծն. Ա.

գ. Ἀμβρόσιος.

Լեալ ի կերպարանս Յուստիանեայ՝ կնոջ[ա] իւրոյ, և մօր Վաղենտիանոսի. զգացուցանէ նախ, որպէս գալուստ նորա առ նա տեսանել զնա. և խորհել[բ] վասն որդւոյ իւրոյ. և բռնակալին այնորիկ Մաքսիմիանոսի. զի՞նչ խորհիցին և կամ զի՞նչ արասցեն. Իսկ նորա հաւատացեալ եւ ընդ առաջ[գ] նորա ի Լուգդանոն[դ] քաղաքէ. որ ի Գաղիայ[ե] ընդ գետն անցանելով. մեծարելով որպէս թագուհի. անգիտացեալ[զ] զխորամանկութիւնն.

ա. Դ. կնոջ հօր. բ. Դ. եւ խորհել զինչ. գ. Բ. ընդ յառաջ. դ. Բոլ. Ձեռ. Իուղոնոս. ե. Բոլ. Ձեռ. ի Գաղատիայ. զ. Դ. զնորա խորամանկութիւն.

սիմոսի մեռաւ։

Քանզի յաթոռակն ի մահճաց նմանեցելում ի ջորեաց բերեցելում թագուցեալ Մաքսիմոսի զաւրավարն Անդրագաթիոս,[ա] յառաջ ասել զինակրացն, որպէս թէ իցէ թագաւորին Գրատիանոսի ամուսինն, ընդ առաջ ելանէր թագաւորին առաջի Լուգդունոս քաղաքի որ ի Գաղիատիայ[բ] ընդ գետն անցանելով նորա։ Իսկ նորա հաւատացեալ կնոջն նորա լինել, զնենգութիւնն ոչ պահեաց, այլ որպէս զկոյր ի խորխորատ ի պատերազմողին ձեռն անկաւ. քանզի արտաքս վազեալ Անդրագաթիոսի ի ղիկակէն[գ] Գրատիանոսի հպեցաւ։ Եւ վախճանէր ի հիւպատուաջն,[դ] թագաւորեալ ամս ԺԵ, կեցեալ ամս ԻԹ։ Այսորիկ եղելոյ դադարեցոյց զընդդէմ Ամբրոսի զթագաւորին մաւր զբարկութիւնն։

Իսկ Վաղենտինիանոս և ակամա հարկաւ ժամա̃նակին հաւանեալ զՄաքսիմոսի զթագաւորութիւնն ընդունէր։ Յայնժամ Պռոբոսի երկուցեալ ի Մաքսիմոսի զաւրութենէն, յարևելականագոյնս կողմունս գնալ

ա. Ἀνδραγάθιος.

բ. πρὸ Λουγδούνου τῆς ἐν Γαλλίᾳ Լուգդունոն որ ի Գաղղիա: Տես եւ Համ. օր:

գ. ἐκ τοῦ φερέτρου ի կառացն:

դ. Ըստ թն. Մեռոգաւդեայ եւ Սատոռնինեայ:

Իբրև մերձ եղև, ի վերայ վազեալ սպան զնա սրով Մաքսիմիանոս։ Եւ այսպէս վախճանի Գրատիանոս, թագաւորեալ ամս հնգետասան և կեցեալ ամս քսան և չորս։

Այսորիկ[ա] այսպէս եղելոյ, Վաղենտիանոս ակամայ մտանէ ընդ[բ] հարկաւ բռնակալին։ Յայնժամ Եւտրոպիոս եպիսկոպոս աշխարհին ի բռնակալէն կասկածեալ, հանդերձ այլովք գնայր յարևելս ի Թեսաղոնիկէ Մակեդոնացւոց՝ յԻտալիա։

ա. Ա, այսուիկ բ. Ա, Ն. մտանելով.

յորդորէր։ Եւ առժամայնն որպէս կայինն՝ գնային յԻտալիայոյ. և յԻւղիւռիկայ[ա] հասեալ յաշխարհ, ի Թեսաղոնիկեա Մակեդոնիոյ լինէին։

ԳԼ. ԺԲ.[1]

Յայնժամ և Թագաւորն Թէոդոսիոս ի հոգս մեծամեծս անկանէր. և զաւրս բազումս ընդդէմ բռնակալին պատրաստէր. երկուցեալ զի մի և զմանկանն զՎաղենտինիանոսի զմահ խնդրեսցէ բռնակալն։ Իսկ ըստ այնմ ժամանակի և աղաչանք Պարսիցն հասանէին խաղաղութիւն խնդրելով ի Թագաւորէն։ Յայնժամ լինէր և որդի Թագաւորին Ոնորիոս. ծնեալ[2] նմա յամուսնոյն Պղակիղա, ի հւպատուոյն Ռիքոմիռիոսի և Կղէառքոսի. յնանն Սեպտեմբերի ամսոյ։ Ըստ որում հւպատուօք և Ագեղիոս ի Նաւատիանոսացն եպիսկոպոս փոքր ինչ յառաջ վախճանեցաւ։

Իսկ զնոյն հետայն հւպատ ոջն՝ որ էր Արգադիոսի Աւգոստի և Բաւտինոսի առաջին, վախճանեալ[3] Տիմո-

ա. Ձեռ. յիւղիւռիգա. Տես Բ. 2. (էջ 18) ծն. Ա. եւ Բ. 16. (237) ծն. Գ.

1 Տես Սոզոմ. է. 14. Թէոդ. Ե. 15. Ռուփ. ԺԲ. 16 17. Կաս. Թ. 21. Նիկ. ԺԲ 20. 21.
2 Փրկ. 384. Թ.
3 Փրկ 385 Թ.

Ցայնժամ (Մեծն)[ա] Թէոդոս Թագաւոր ի հոգս անկանէր մանկանն Վաղէնտիանոսի. զօրս բազումս պատրաստէր ընդդէմ բռնակալին, զի մի և[բ] զնա սպանցէ։ Եւ անդէն ծնեալ լինի որդի նորա Անորիոս[գ] ի կնոջէն ի Պղակիլայ[դ] Թագուհոյ.[ե] Ի նոյնս

ա. Չիք ի բն. Մով. Խոր. բազում ուր՞ք. բ Ա, եւ. գ. Գ. Նոսորիոս. դ. Բոլ. Ձեռ. Կղակիլա. ե. Գ. Ա, չիք. Թագուհւոյ – Ագիլա.

թէոս եպիսկոպոսն Աղեքսանդրու, Թէոփիղոս զեպիսկոպոսութիւնն ընդունէր։ Իսկ յետ այսորիկ ամաւ մի յետոյ և Դեմոփիղոս Արիոսական աղանդոյն առաջնորդ զվաղճանի վարուցն հպեցաւ։ Իսկ Արիանոսացն զՄարինոս ոմն եպիսկոպոս ընտանի հերձուածոյն կոչել ի Թիրակայ, նմա զեպիսկոպոսութիւնն հրամայեցին։ Այլ ոչ յամեաց Մարինոս. քանզի առ նովաւ որոշեցաւ Արիանոսացն աղանդ, որպէս յետոյն ասացից։ Զդոռոթէոս առժամայն յԱնտիոք Ասորեաց կոչեալ՝ առ նովաւ կարգէին։

Իսկ Թագաւորն ի յընդդէմ Մաքսիմոսի պատերազմ վարեալ լինէր, թողլով ի Կոստանդինուպօլսի զորդի Արկադիոս թագաւորելով, և հասեալ ի Թեսաղոնիկէ գտանէր զորս Վաղէնտինիանոսին ի բազում տրտմութեան կեալով, զբռնակալն վասն հարկի որպէս զթագաւոր ընկալան։ Բայց Թէոդոսիոս յայտնի ոչ ինչ այլ[ա] ցուցանէր. քանզի ոչ արհամարհէր և ոչ ընդունէր։ [բ] Ցեսեալ բռնաւորեալ զհռովմայեցւոցն իշխանութիւն ձևով թագաւորական անուամբն, առնլով այնուհետև զզաւրս զաւրականացն դասուց ի Մեդիողանոն կնայր. քանզի անդր հասանէր Մաքսիմոս։

ա. Ստրկական թարգմանության ամենափայլուն օրինակներիցն է. բն. է ոչինչ. οὐδέτερον բայց այդ բառը բաղկացած է, οὐδ ἕτερον ոչ եւ այլ ոչինչ այլ։

բ. Բն. աւել ունի, զդեսպանութիւն Մաքսիմոսի,· որ անհրաժեշտ է ըստ մտքի։

վախճանի և Ագիղա Նաւատեանոսաց առաջնորդ, որ միաւո րեցաւ ընդ ուղղափառ հաւատոյն, և Տիմոթէոս Աղեքսանդրի եպիսկոպոս, և փոխանորդէ զաթոռն Թէովփիլոս եպիսկոպոս. Եւ յետ այսորիկ գնայր բազում զօրօք ընդդէմ բռնակալին ի մարտ Թագաւորն.

## ԳԼ. ԺԳ.[1]

Իսկ ընդ նոյն ժամանակաւն ըստ որում թագաւորն պատերազմին պարապէր, Արիանոսքն որ ի Կոստանդինուպօլիս, խռովութիւն արարին ի ձեռն այսպիսի մտածութեան։ Սիրեն արքն բանս ստեղծանել սակս որոց ոչինչ գիտեն. և եթէ երբէք ի պատճառոյն առցեն, մեծագոյնս վասն որոց խաւսինն, համբաւս արտաքս վառեցուցանեն։

Այս յայնժամ ըստ քաղաքին եղև. քանզի այլք այլ ինչ յաղագս հեռի լինելոյ պատերազմին ստեղծանելով համբաւէին, միշտ ի վատթարն գլոյսն առնլով։ Եւ ոչ միոյ ուրուք եղելոյ ըստ պատերազմին, նոքա որպէս զորս ըստ նման պատմէին. վասն որոյ ոչն գիտէին ասէին, իբր թէ բռնակալն զաւրագոյն իցէ քան զթագաւորին զաւրս, և եթէ այսքան և այսքան ըստ պատերազմին անկան, և եթէ թագաւորն այսչափ չև ևս թագաւորին ստոյուկ լինի։ Յայնժամ և Արիանոսքն յախտէն շարժեալք, քանզի յոյժ զայրագնէին, զի ըզներսագոյն եկեղեցիսն ունէին որք ի նոցանէ նախկին հալածեալքն, և զհռչակսն բազմաստեղծս յաւրինէին։

1 Տես Սոզոմ. Է. 14. Կաս. Թ. 23. Նիկ. ԺԲ. 21.

Իսկ Արիանոսքն գիտութիւնս իմն ըստ աստեղացն համբաւէին ի վատթարսն. և միշտ զնոսա յոյսն ունէին և զբռնաւորն զօրացեալ ըստ ամենայն իրաց և զնշան իրացն ի բազմաստեղս մոլեալս[ա] համբաւէին և եղեալ զիրսն կարծէին։ Եւ համարձակեալ ի վերայ մոլար գիտութեանն իւրեանց, զառն Ներքատախայ հայրապետին այրէին հրով, յերկրորդ ամի թագաւորութեան Թէոդոսի. Իսկ թագաւորն բայում բազմու-

ա. Ա՝ մոլորեալ.

Վասն զի նշան ասացելոցն զնոսա զմոլորեալսն ածէր ի հաւատս, ոչ որպէս զստեղծեցելոց զորս ստեղծինն, քանզի որոց ի լրոյն առեալ հաստատէին առ բանսին արարողսն, ոչ այղ ազգ ունել քան զոր ինչ ի նոցանէն լուանս Յայնժամ վերստին վստահացեալ Արիանոսացն յանիրաւն լինէին տարեալք գիմուռն. և զառունսն եպիսկոպոսին Նեկտառիոսի հրով վառեալ կիզուին: Այսպիսպէս եղև ըստ հւպատուոջն[1] Թէոդոսի և Կիւնեղեայ երկուց:[ա]

ԳԼ. ԺԴ.[2]

Իսկ Թագաւորին երկթալով ի վերայ բռնակալին, ծանուցեալ զյարդարութիւնն որոց ընդ Մաքսիմոսիւն կարգեցելոց. և ոչ զոր ի հռչակէն ելուին բառնալ կարացին. այլ զարհուրեալք կապեալ նմա զբռնակալն ընձեռեցին, որ և մեռաւ ի նմին հւպատուոջ, ԻԷ Օգոստոս ամսոյ:

Իսկ Անդռագաթիոս Թագաւորին Գռատիանոսի

ա. Թս. ունի Թէոդոսի երկրորդ եւ Կինեգիայ:

1 Փրկ. 388 Թ.

2 Տես Սոզոմ. Է. 14. Կաս. Թ. 23. Նիկ. 21. Վիլոտ Ժ. 8.

Թեամբ երթեալ ընդդէմ Թագաւորեցեալ[ա] բռնակալին, զարհուրեցան որք ընդ նմայն էին զօրքն. և կալեալ զբռնակալն իւր իսկ[բ] զօրացն, կապեցին և մատնեցին Թագաւորին. որ անդէն սատակեալ ի զօրացն, և եղև խաղաղութիւն մեծ: Յայնժամ Մեծն Թէոդոս հռչակեալ բազում գովասանութեամբ,[գ] երթայ ի Հռոմ Վաղենտիանոսիւ. և էր[դ] Արկադեաւ ' որդւովն իւրով

ա. Գ. երթալ ընդդէմ Թագաւորեցուցեալ. Ն. գնացեալ. բ. Ն. իւրոյ. Ա՝ գովասանօք. Գ. գովասացօք. գ. Ա՝ չիք. դ. Ոսրեաւ առէ ըռնագիրն Ա, Արկադեայ.

տպանիչ զպարտմանն զգացեալ, յոր առ ինքեան գետընկեց եղեալ զինքն խեղդէր: Յայնժամ Թագաւորքն յաղթազգեստք ի Հռովմ կոյս երթային, էր և որդի Թագաւորին Ոնորիոս ընդ նոսա՝ նամակ գոլով. քանզի յետ յաղթութեանն Մաքսիմոսի կոչէր զնա Հայրն ի Կոստանդինուպոլիսէ: Եւ էին ապա ի Հռովմ յաղթական տաւնս կատարելով. յորժամ և զիւր զբարերարութիւնն ի վերայ Սիւնմաքոս ապու հւպատի Թագաւորին Թէոդոսիոս եցոյց: Քանզի այս Սիւնմաքոս աւագ էր որոյ ի Հռովմ սինկղիտաւոջն, և սքանչացեալ լինէր ի վերայ բանիցն Հռովմականաց. [ա] վասն զի նորա բազում բանք շարգրեալք Հռովմայեցւոց լեզուովն հանդիպին մինչև ցայժմ: Թագաւորական ապա բան ի Մաքսիմոս տակաւին նորա կեալով գրեալ և արտաքս հանեալ, գերադրեալ վնասուն պարտաւոր յետոյ եղև. վասն այսորիկ երկուցեալ ի մահուանէն յեկեղեցին փախուցեալ ապաւինէր: Իսկ Թագաւորն առ քրիստոնէութիւնն այսպէս էր բարի, որպէս զի ոչ միայն զիւրոյ հաւատոյն քահանայս առաւել պատուել, այլ քանզի և զՆաւատիանոսս զհուպս նոցա հաւատոյն խորհողս, քաղցրաբար ընդունէր: Ղեոնտի ապա եպիսկոպոսին որոյ ի Հռովմ Նաւատիանոսաց աղաչեալ՝ պարգև նմա տուեալ, զՍիւնմաքոս արձակեաց ի վնասուէն: Բայց վասն զի եպիսկոպոսն Հռովմա ի հիւանդութիւն հան-

ա· Միտքն է. Ու զարմանում էին նորա Լատինական ճառերի ընտրութեամբ:

կոչեցեալ ի Կոստանդնուպոլսէ և ի Հռոմ[ա] յաղթական տօն կատարէին ի փառս և ի գովութիւն Աստուծոյ.

ա· Ա, ի Հռոմայ:

դիպէր, այսորիկ աղագաւ Ղեոն աղաչեաց զԹագաւորն.[ա] Թողութեան արժանաւորել, Սիւնմաքոս զաղերսականն բան[բ] յինքնակալն Թէոդոսիոս գրեաց: Բայց պատերազմին մեծ սպառնալիս ըստ սկզբանցն ունելով, յետոյ զփոյթն ընդունէր պատասխանն:

· ԳԼ· ԺԵ·[1]

Իսկ առ. ժամանակաւն ըստ Ասորեացն Անտիոքեայ այս ինչ եղեւ: Պաւղինոսի վախճանեալ՝ որ ընդ նովաւ ժողովուրդն զՓղաբիանոս արտաքս մղէր. և վասն այսորիկ յարդարէր ձեռնադրիլ յընտանի կողմանէ նոցա Եւագրիոս:

Իսկ նորա ոչ բազում վարեալ ժամանակ, և այլ ուրուք ի տեղին նորա ոչ ևս կարգեալ, Փղաբիանոսի զայս յարդարելով: Ոմանք զՓղաբիանոս վասն յանցանաց երդմանցն ի բաց դարձուցին, առանձինն զժողովսն առնէին: Իսկ Փղաբիանոս՝ թէ պատահէ ասել,[գ] զա-

ա· Բն· չկայ· «բայց վասն զի .... զԹագաւորն:»
բ· Բն· τὸν ὀπολογητικὸν λόγον զովասանական բան·
գ· Որպէս ասի:

1 Տես Սոզոմ· Է· 15· Թէոդ· Ե 23· Ռուփին ԺԱ· 20· Կասիոդ· Թ· 26· Նիկ· ԺԲ· 24·

ԳԼ· ԾԴ·

Պօղինոս եպիսկոպոս Անտիոքայ վախճանի, եւ Փլաբիանոս ունի զվերակացութիւն Անտիոքայ եւ զԱրիանոսն արտաքսէ:

Ցայնժամ և Պօղինոս Անտիոքու եպիսկոպոսն վախճանեալ լինէր,[ա] և Փղաբիանոս ունէր զվերակացութիւնն, թէպէտ և ոչ կամէին, զի էր ինքն իմաստուն[բ] և ողոքանօք խառ-

ա· Դ· վախճանէր· բ· Ա, Հիք·

միայն քար շարժէր, ընդ իւր և զնոսա առնել, զոր և փոքր ինչ յետոյ կարաց գործել, զբարկութիւնն բժըշկել զԹէոփիլոսի Աղեքսանդրու եպիսկոպոսին, և ի ձեռըն Թէոփիլոսի հաշտեցուցանել զԴամասոս Հռովմայ եպիսկոպոսն։ Քանզի երկոքինն առ Փղաբիանոս զայրացընէին ոչ միայն երդմնազանցելոյն, այլ և պատճառ տայր ուրուշել զհամախորհսն. բժշկեաւ ապա զբարկութիւնն Թէոփիղոս, և առաքեաւ զԻսիդորոս քահանայ, հաճեցուցանէր զարտմեալ Դամասոս, աւգուտ լինել ասացեալ յաղագս միաբանութեան ժողովոյն անտես առնել զհասեալն Փղաբիանոսի յանցումն։ Այսպէս Փղաբիանոսի հաղորդութեանն տուեցելոյ, որ յԱնտիոքիայ ժողովուրդն ըստ սակաւ ինչ յառաջելոյ ժամանակին (ոչ) հաստատեաց զմիաբանութիւնն։ Որ ինչ ըստ Անտիոքայն այսպիսի ունէր կատարումն. քանզի որք ըստ նմա Արիանոսքն յեկեղեցեացն արտաքսեալք ի դաստակերտսն զժողովսն առնէին։ Յայսքանւոջս և զԿիւրիղոս զԵրուսաղէմացեացն եպիսկոպոսն զվաղճանեալն՝ Յովհանէս փոխանորդէր։

Տեսալ ընդ իմաստութիւնս, ածէր ի միաբանութիւն [ա] զամենայն Անտիոքացիս. Այլ զԴամասոս [բ] զՀռոմայ եպիսկոպոս և զԹէոփիլէ Աղեքսանդրի եպիսկոպոս. և զՆեքտառի Կոստանդնուպօլսի եպիսկոպոս, հաւանեցուցեալ հաստատէ ի վերայ իւր զհայրապետութիւնն Անտիոքայ, և զԱրիանոսսն [գ] արտաքս մղէ ի քաղաքէն և միաբանէ զժողովուրդն.

ԳԼ. ԾԵ.

Կիւրղոս Երուսաղէմի եպիսկոպոսի վախճանի:

Ցայտոսիկ և Կիւրիղոս Երուսաղէմի եպիսկոպոսն վախճա-

ա. Դ. ի հաւանութիւն բ. Գ. Ա, Դ. զԴամասկոս. գ. Ա, զԱրիանոս.

ԳԼ. ԺԶ.[1]

Իսկ ըստ ժամանակին և Աղեքսանդրիայ այսպիսի լինէին կիրք. եպիսկոպոսին Թէոփիլոսի փութոյ Թագաւորին հրամայէին աւրէնք՝ աւերեալ զորս յԱղեքսանդրիայ հեթանոսացն տաճարս.[2] և յայսմիկ լինել Թէոփիղոսի հոգատարութեամբ։ Եւ զայս իշխանութիւն ըմբռնեալ Թէոփիղոսի ամենեւիմբ լինէր յայտնել զհեթանոսացն խորհուրդս, և վերստին քանդէր զՄիթռոնն,[ա] կործանէր և զՍեռապիոն։ Եւ զՄիթռիոնին զապանականսն խորհուրդս[3] հրապարակաւ ծաղէր. իսկ

ա. Μιθρεῖον

1 Տես Սոզ. Է. 15. Թէոդ. Ե. 22. Ռուփ. ԺԱ. 22 30 Կասս. Թ. 27. Նիկ. ԺԲ. 25.

2 Սերապիսի տաճարը կործանեցին 391 Թ.

3 Նրբեմն Միթրա աստուծուն մարդկային զոհեր էին նուիրում մինչեւ որ Հադրիանոս կայսրը յատուկ օրէնքով խստիւ արգելեց այդ բարբարոս սովորութիւնը.

Նաեւ եղեւ[ա] և Յովհաննէս փոխանորդէ զԱթոռ եպիսկոպոսութեան Երուսաղէմի.[բ]

ԳԼ. ԺԷ.

*Թէ վասն ինչ պատճառի լինէր խռովութիւն յԱղէքսանդր քաղաքի. եւ թէ որպէս Թէոփիլոս ըստ ըստ կամաց թագաւորին քակէ զզանազան խաղսն. այլ եւ զբագինսն եւ զմեհեանսն։*

Յայնժամ և յԱղէքսանդրի լինէր[գ] խռովութիւն այսպիսի պատճառով. Թէոփիլոս եպիսկոպոսն[դ] ունի հրաման ի Թագաւորէն[ե] աւերել զմեհեանս կռոցն, և եղծանել զկարծեալ աստուածս հեթանոսաց.

ա. Դ. վախճանի. բ. Դ. մի մեծ հատուած դարձեալ չունի: գ. Ա, լինիւր. դ Ա, եպիսկոպոս. ե. Ն. Թագաւորէն:

զՍեռաւապիանին և զայղոցն ծաղու ցուցանելիս, զայպանակեանն[ա] հրամայել բերել ընդ մէջ հրապարակին։ Այս այսպէս եղեալ տեսանելով որոց ըստ Աղեքսանդրիայ հեթանոսացն. և առաւել իմաստասիրել խոստացելոց, զարտմութիւն ոչ կրեցին, այլ որոց նախկին գործն յաւելլին մեծագոյն։ Քանզի միով դիմմամբ յիմեննէ միաբանութենէ ընդդէմ քրիստոնէիցն գնացեալք զամենայն սպանումն գործէին, փոխարինէին և քրիստոննեայքն, և ամենայն չար հեռանէր չարի. և մինչև ցայնքան ձգեցաւ մարտն, մինչև յագումն սպանմանցն եղեալ դադարեաց։ Քանզի կորնչէին ի հեթանոսացն սակաւք, իսկ ի քրիստոնէիցն յոյժ բազումք. և վիրաւորք բիւրաքանչիւր կողմանէն էին անթիւք։ Եւ ահ յեղելոցն ընդունէր զհեթանոսսն՝ երկուցեալ ի Թագաւորին մարկութենէ։ Քանզի գործեալք զոյս թուէրն նոցա, և սպանմամբքն զարտմութիւն շիջուցեալք, այլ

ա Բն. τοὺς φαλλοὺς առնական անդամս։ Ակնարկուած է. մանաւանդ Եգիպտոսում տարածուած Փալոսի երկրպագութիւնը։

Զայս հրաման Թագաւորին յայտնէր հեթանոսացն, և քանդէր զմեհեանս. և զՄիւթռանն կործանէր, և զՍերապիոնն[ա] և զՄիւթռոնին զպատնականն[բ] խորհուրդսն հրապարակաւ ծաղրէր. իսկ զՍերապիոնին և զայլոյն ծաղրականս արարեալ պատանէր.[գ] Զայս տեսեալ որ յԱղեքսանդրի էին հեթանոսք, ոչ բերելով զարհամարհանս, որպէս նախկին, ի վերայ յարուցեալ քրիստոնէից բազում մահս առնէին. և հեռանէր չար չարի. և մեռան յոլովք ի քրիստոնէից և սակաւք հեթանոսացն. և բազում վիրաւորք եղեալ յերկոցունց կողմանց.[դ] Ապա դադարէր մարտն յահէ[ե] Թագաւորին շիջուցեալք զբարկութիւնն։

ա. Ա, եւ զորեպիոնն. բ. Ա. Բ. Ն. զքանական. Դ. զանապական. գ. Գ. ապանէր. դ. Ա, կողմանցն. ե. Ա, ահէ.

ոք այլ ուր Թաքչէին, իսկ բազումք և յԱղէքսանդրւոյ Թաքչէին ըստ քաղաքացն բաժանեալք։ Յորոց և (ն)երկուքն քերդողք, Էղադիոս և Ամմոնիոս, առ որս ես մանուկ գոլով ի Կոստանդինուպոլիս հպեցայ։ Էղադիոս քահանայ Արամազդայ [ա] ասէր լինել. իսկ Ամմոնիոս Պիթիկայ։ [բ]

Այսպէս չարին դադարեալ, ապա սատարէին Թէոփիղոսի յաւերումն մեհենացն Աղէքսանդրւոյ եպարքոսն և առաջնորդ զաւրակա(նա)ցն դասուն. զմեհեանսն կործանէր, և զկուռս դիցն հալէր ի կաթսայս. և յայլ պէտըս Աղէքսանդրւոյ եկեղեցւոյն Թագաւորին շնորհեալ զաստուածսն ի վճէնակս աղքատաց։ Զամենայն այնուհետև զդիսն խորտակեալ Թէոփիլոսի, զմին անդրի [1] ուրումն աստուծոյ անհալ պահեալ հրամայեալ, հրամայեաց հրապարակաւ յանդիման կացուցանել. զի մի՛, ասէ, ժամանակին յառաջեալ ուրասցին հեթանոսք

ա. Բն. τοῦ Διός Զեւսայ։
բ. Բն. ὁ πίθηκος Կապկէ։

1 Սեմիոս աստուծոյ արձանն էր.

Իսկ բազումք յԱղէքսանդրիայ փախչէին և Թագչէին հեթանոսք յայլ քաղաքսն. յորոց էին երկու քերդողք՝ Եղադիոս և Ամոնիոս [ա] ի Կոստանդնուպոլիս երթեալք։ Եղադիոս էր քահանայ Արամազդայ. իսկ Ամոնիոս Պիւթիկիայ։

Եւ դադարեալ չարին, Թէոփիլիոս և եպարքոսն ձեռնամուխ լեալք այրէին զբագինսն և զկուռսն հալէին ի կաթսայս. [բ] ի պէտս եկեղեցւոյ, յարդարէին ըստ կամաց Թագաւորին. և զմին անդրի [գ] զպատկերն անհալ Թողեալ, ի ծաղանս յանպատեհ տեղւոջ դնէին ի յանդիմանութիւն նոցին։ Իսկ ի միւս մեհենին [դ] քար մի յորմն խաչաձև հաստատեալ կայր.

ա. Ա, ամմնիոն. բ. Ա. կացտայս. Բ. չ/.ք. գ. Բոլ. Ձեռ. Մենանդրի. դ Ա. զեհենին.

այսպիսեաց երկրպագեալ աստուածոց։ Ի վերայ այսոցիկ յոյժ տրտմեալ գիտեմ զԱմմոնիոս զքեր(դ)ող, որ ասէ, դժնդակս կրել զհեթանոսացն կրաւնս. թէ զի և ոչ զմինն այն յանդրեացն հալեցաւ, այլ յայպանումն հեթանոսացն աղանդոյ պահի։ Իսկ Եղադիոս առ ոմանս պարծէր, որպէս թէ ինն արս իցէ ի մարտին սպանեալ։ Որ ըստ Աղէքսանդրոյն յայնմժամ այսպէս լինէր։

### ԳԼ. ԺԷ.[1]

Իսկ ի տաճարին Սերապիոնի յաւերեցելումն և ի կործանեցելումն՝ գտանէր գիր նկարագրեալ ի քարինսն գոչեցելոցն մեհենադրաւշակաց, և էին նկարագիրքն զխաչից[2] ունելով աւրինակս։ Զայսոսիկ տեսանելով քրիստոնէիցն և հեթանոսացն իբր առ առանձինն[ա] աղանդոյ երկաքանչիւրքն պատճառէին։ Քանզի քրիստոնեայքն նշան ըստ Քրիստոսի փրկատուր չարչարանացն լինել ասել զխաչն, ընտանի լինելով զնկարագրութիւնն համարէին. իսկ հեթանոսք զինչ հաշորդութիւն Քրիստոսի և Սերապիոնի ասէին. եթէ խաչաձև նշան այլ ինչ քրիստոնէից և այլ ինչ հե-

ա. տղ̃ ւճւգ սեպհական իւրեանցն:

1 Տես Սոզոմ. Է. 15. Ռուփին ԺԱ. 29. Կաս. Թ. 29. Նիկ. ԺԲ. 26.

2 Հիերոգլիֆների վրայ սովորական են խաչաձև նշաններ։

զոր քրիստոնեայքն իւրեանց ըստ Քրիստոսի կամաւոր չարչարանաց նշան արարին։

Իսկ հեթանոսքն ասէին. զի՞նչ կայ Քրիստոսի և կռոցն։[ա] Իսկ նոքա ասէին. Մի զարմանայք[բ] թէ աներևոյթաբար ի ձեզ մատակարարէր շնորհն Քրիստոսի Աստուծոյ զայժմուս[գ] ձեզ

ա. Ա կռոց. բ. Ա մի զարմանար. գ. Ա՛ զյայժմոյս.

մութիւնն այսպիսի յարդարեալ լինել զի զգոյն խնդրով, զոր և յառաքելոյն Պաւղոսէ եցոյց յառաջագոյն։ Քանզի և նա յաստուածային Հոգւոյն իմաստութեան եղեալ, նմանեալ արուեստին առ Աթենացիսն [1] զբագինն ի Հաւատն էած, յորժամ զոյս ի վերայ բագնին գրեալն իւրոյ բանին պատշաճեցոյց։ Եթէ ոչ ոք արդեաւք ասացէ ազդել Աստուծոյ բանին յԵգիպտացւոցն քահանայս, զոր աւրինակ առ Բաղամով և Կայիափաւ. քանզի և նոքա ակամայ վասն բարեացն մարգարէացան։ Այսքան վասն այսորիկ ճառեցաւ։

Գլ. ԺԸ. [2]

Իսկ Թագաւորին Թէոդոսի սակաւ ինչ յԻտալիա յամեալ՝ մեծամեծս զՀռովմայեցւոցն շահեցոյց քաղաքս. էր ինչ զոր տայր, և էր ինչ զոր բառնայր։ Քանզ(ի) շատ ինչ այնէր զի առատացոյց. և երարձ կրկին զամութ քաղաքին։ Մին զայս իսկ էին խնկըբանէ ի մեծն Հռոմ տունք յոյժ մեծք, յորս որ բազմութեանն Հաց

1 Տես Գործք Առաք. ԺԷ. 22

2 Տես Կաս. Ի. 14. Նիկ. ԺԲ. 22.

խոստնամութեանն Աստուծոյ, որ զամենեցուն կամի զկեալն և ի գիտութիւնն Աստուծոյ գալ։

Գլ. ԺԸ

*Թէ որպէս թագաւորն Թէոդոս ժամանեալ ի Հռոմ, առնէ խաղաղութիւն, քանդայ զխայտառակարանսն այսինքն զտունն հացի. եւ զպոռնկանոցսն եւ զայլ մեղենայական տեղիսն, զՆեթանոսական չար սովորութիւնսն խափանէ, եւ դառնայ ի Կոստանդնուպօլիս:*

Իսկ թագաւորն Թէոդոս սակաւ ինչ յամեալ ի յԻտալիա և բազում խաղաղութիւնս արարեալ և իրաւունս, և յոլովս եցոյց Հռովմայեցւոցն շահս, և երարձ զամօթ քաղաքին, և

բաշխիւր լինէր. և կարգեալքն յայսոսիկ մանկիպէս[ա] Հռովմայեցւոցն լեզուովն կոչին, յառաջեալ ժամանակին աւագակարանս զտունն առնէին։ Քանզի որպէս էին տանցն աղաւրիք ըստ խորոցն զգիրն ունելով, ըստ կողման իւրաքանչիւր տան կապիղայս յարդարեալ, և պոռնիկս ի նոցա կացուցեալս ի ձեռն նոցա գերէին զբազումս, զոմանս պիտոյիւք կերակրոց մեռեալս, իսկ զոմանս և վասն չար և զազիր ցանկութեան։ Քանզի յիմեմէ մենքանայէ ի կապիղէէն յաղաւրին անկանէին. և զայս կրէին առաւել աւտարքն դիմեալք ի Հռովմ։[1] Եւ հարկաւորէին ըմբռնեալքն յաղաւրիսն գործել, իսկ բազումք ծերացան ի նոցանէ՝ ոչ թողեալք ելանել, և ի տունսն նոցա ու մեռանէր փառս ընդունել։[բ] Ցոյտ-

ա. Յն. οἱ μάγκιπες - mancipes

բ. Բառացի է եւ անմիտ. Ու յընտանիս նոցա (գերելոց) մեռեալս զնոսա կարծէին։

1 Այս պատմութիւնը յիշեցնում է մեր ժողովրդական յայտնի առասպելը, որ նիւթ է ծառայել Ղ. Աղայեանի «Անահիտ» հին զրոյցին.

զխայտառականս[ա] թշնամոյն։ Էին տունք հացի ժողովարանի ի Հռոմ, և աղօրիք ըստ նմին ի տունսն, յորս աւազակարանս զտունսն արարեալ նախկին հեթանոսացն ըստ թշնամոյն ներգործութեան։ Էին տունք ի խորս տանցն և գուբք աներևոյթապէս. և պոռնիկս ի նոսա կացուցեալ, և զբազումս նոքօք գերէին. զոմանս վասն կերակրոց և ըմպելեաց, և զոմանս վասն զազիր ցանկութեանց։ Էր և մեքենայ իմն ի կապելւոյն, զոր կամէին մեքենայիւն զըմբռնեալսն զգուշաբար յաղօրիսն ընկենուին, որք այնորիկ[բ] էին չարին գործօնեայք,[գ] մանաւանդ զօտարս, որք ոչ կարէին ելանել. այլ կալ և գործել զաղօրիսն մինչև ի մահ։ Եւ զայս այսպէս առնէին. և յոլով մանկունք

ա. Ա՝ զխայտառակարանսն. բ. Ա, յայնոցիկ. գ. Ա՝ գործունեայք.

գայթս յայս ոմն ի զաւրականացն Թագաւորին Թէոդոսի անկաւ, և քանզի զաւրականն յաղաւրիսն արգելեալ ելանել ոչ թոյլ տուեալ, հանեալ զդ(ա)նակն զոր ունէր, հպեցաւ յարգելաւղսն. իսկ նոցա յերկիւղի հարեալ զզաւրականն արձակեցին:

Ծանուցեալ զայս Թագաւորին զհացուբարան պատժեաց, իսկ զընդունողս աւազակացն զայնս զտունս կործանել հրամայեաց: Զմին այսպիսի ծանականս Թագաւորն երարձ ի Թագաւորեցելոյն քաղաքէ. իս՛ միւս ևս այդ այնպիսի. եթէ անկանէր ի շնութիւն կին ոք, ոչ ի յուղղութիւն, այլ ի յաւելումն մեղաց պատժէին զյանցուցեալն: Քանզի յանձուկ պոռնկանոցի արգելական արարեալ լրբագոյնս տային պոռնկել. զանգակս շարժել ըստ ժամանակի պիղծ գործոյն տային, որպէս զի արդեւք մի ծածկեսցի յորոցն մերձն եղեալն, այլ ի հնչմանէ շարժելոյ զանգակացն Թշնամական պատիժն ամենեցունց ծանիցի:

Ծերանային յորոգայթս յայս. Ոմն ի զօրականաց Թագաւորին անկաւ Թէոդոս անուն, և յաղօրիսն անկեալ մեքենայիւքն արգելաւ:

Եւ հանեալ զդաշնակն ի մահ դիմեաց որք արգելուին զնա. և ոչ կարացեալ զդէմ ունել բացեալ զդուռնն.[ա] բռնաբար ի դուրս ելանէր: Զայս ծանուցեալ Թագաւորին զհացարարսն պատժեաց և զաւազակսն մատնեաց, և զտունսն կործանեաց փապառ: Իսկ միւս այսպիսի օրինակաւ պոռնկոցս[բ] արարեալ ի քաղաքին լրբագոյն գիտութեամբք զանգակս արարեալ առ ի գիտել ամենեցուն ի շարժելն. ով ոք իցէ ի շնութեան ախտի: Զայն ծանուցեալ Թագաւորին, քանդեաց զպոռնկանոցն և զլրբագոյն ախտից գիտութիւնսն և զյանդիմանութիւնսն. այլ

ա. Ա, զդուռն բ. Ա, պոռընկանոց.

Զայս ոչ տարաւ թագաւորն ծանուցեալ զկրօնականըն սովորութիւն. այլ աւերեաց զշարժարանսն, քանզի այսպէս անուանէին այսպիսի պոռնկանոցք. ընդ այլ աւրինաւք արկանել զըմբռնեալսն ի պոռնկութեան հրամայեալ։ Այսպէս ի չարագունից և ի թշնամանականաց երկուց իւրաց թագաւորն Թէոդոս զքաղաքն ազատեաց զՀռոմ։ Կարգեալ բարւոք և զայլ իւր թողոյր ի Հռոմ զՎաղէնտինիանոս թագաւորելով։ Իսկ ինքն որդւովն Արկադիւ ի Կոստանդինուպօլիս գայր. և ի նա մտանէր ի հիւպատոսն Տատիանոսի և Սիւնմաքոսի, տասինն Նոյեմբերի ամսոյ։ [1]

ԳԼ, ԺԹ. [2]

Իսկ ընդ նմին այն ժամանակաւն Թուեցաւ և զօրս ի վերայ զղջման եպիսկոպոսունս բառնալ յեկեղեցեացն վասն այսորիկ պատճառոյ։ Յորմէ Նաւատիանոսք

1 փրկ. 391. թ.
2 Տես Սոզոմ. Է. 16. կաս. Թ. 35. Նիկ. ԺԲ. 28.

զգտեալսն ի պոռնկութեան եկեղեցւոյ օրինօք դատել. Ցայսոսիկ չարեաց ազատեաց զքաղաքն, և զմնացեալսն ինչ ըստ հեթանոսութեան չար սովորութեան ի միջոյ ի բաց եբարձ, և զբարեպաշտութիւն օրինադրեաց. Եւ [ա] Թողոյր զՎաղենտինիանոս թագաւոր ի Հռոմ ունել իրաւամբք. և ինքն որդւովն [բ] իւրով Արկադեաւ գայ ի Կոստանդնուպօլիս մեծաւ փառօք, և բազում դրուատեօք. Եւ սոն ուրախութեան լինէր ի գալըստեան թագաւորին Թէոդոսի բարեպաշտի. որ միշտ զաստուածայինսն և զեկեղեցեաց Աստուծոյ հոգայր ըստ ուղիղ հաւատոյն, և զվարս առաքինութեան գեղեցկապէս յարդարէր ի փառըս երկնաւոր և անմահ թագաւորին. [գ]

ա. Դ. մինչեւ այստեղ չունի: բ. Գ. որդւովքն. գ. Ա. Թագաւորն Թէոդոս.

խղճմտանս, ընդ որոց անկանին առ հալածանօքն Դեկիոսի հաղորդել ոչ կամեցան, եպիսկոպոսունքն եկեղեցական կանոնաւն զքահանայն զոր ի վերայ զղջմանն յաւելին, որպէս զի այդուիկ որք յետ մկրտութեանն մեղուցեալք նախակարգեցելոյն ի վերայ այսոցիկ քահանային խոստովանեսցին զմեղս։ Այս կանոն յայղ հերձուածոյն ունի մինչեւ ցայժմ· բայց միայն որք համագայութեանն խորհրդոյ, եւ որք սոցա ըստ հաւատոյն համախորհուրդք Նաւատիանոսք յոր առ զղջմամբն քահանայէ հրաժարեցին։ Բայց քանզի Նաւատիանոսքն ոչ զիսկզբանն ըզ-

ԳԼ. ԾԸ.

Հեզութիւն Թէոդոսի բարեպաշտի եւ այլ ուղղութիւնք նորին:

Եւ հեզութեամբն զարմանալի էր առ ամենեսեան, եւ ոչ
ւմեք չար ի չար հատուցանէր, զի եւ ոչ Արիանոսացն չարայուշ
գե, որ զնորա [ա] մահ ըղձային· [բ] եւ զբռնակալին Թագաւորել·
ստեղծք իմն մոլորեալք ի մոլորութիւն սնոտիս, եւ ոչ ըզ-
ան զասացեալսն՝ թէ ո՞վ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞վ
ղե նմա խորհրդակից, եթէ գիտասցէ. եւ դարձեալ ամենայն
ր նշմարէ զաստեղս երկնից, իբրեւ զխոիւ ի հուր այրեսցին.
յԱստուծոյ ասէր [գ] զպատիժս նոցա առնուլ։ Բայց ի քաղաքէն
րտաքս հանեալ [դ] զայլահաւատսն, եւ անդ զժողովսն [ե] առնէին·
այց միայն զՆոմիոս հրամայեաց աքսորել։

Եւ զՆաւատիանոսն [զ] ընդունէր զխոստովանողս համագոյ [է] Երրորդութեանն· բայց այսու միայն որոշէին ըստ նախկին Նաւատեայ, որ առ Դեկոսիւ [ը] որք ի հալածանս ուրացան վասն ահի մահու եւ չարչարանաց, եւ յետոյ զղջացան· ոչ ընդունէին

ա. Գ. Նորա· բ. Գ. Դ. ըղձանային· գ. Գ. էր զպատիժն· դ. Գ. Տանել· եւ Ա՛ զժողովս: զ. Դ. զՆաւատիանոս· է. Դ. սուրբ· ը. Դ. որ առ Դեկոս եւ որք·

թիւն ընդունէր զբազմութիւնն. քանզի զայրացնէին ոչ միայն ի վերայ եկելոցն, այլ զի և եկեղեցւոյն հայհոյութիւն և թշնամանս փաղեցաւ։[ա]

Եւդեմոն[բ] ոմն եկեղեցւոյն քահանայ, խրատ տայր եպիսկոպոսին Նեկտարի բառնալ զօրս առ զղջմամբն քահանայ, և թող տալ իւրաքանչիւր ումեք իւրով խղճիւ ի խորհրդոցն վայելել։

Քանզի այսպէս միայն ունել զեկեղեցին անհայհոյ։ Զայս յԵւդեմոնէ լուեալ իմ գրով աւանդեալ վստահացայ. քանզի որպէս ասացի բազում անգամ, զամենայն զփոյթ եդի յիւրաքանչիւր ումեքէ ի գիտնոցն ուսանել զիրսն և ստուգաբար քննել, զի մի արտաքոյ ճշմարտութեանն ինչ գրեցից։

Իսկ ես առ Եւդեմոն ապաքէն ասեմ. խորհրդակցութիւն քո, ով քահանայ, համակարգեաց զեկեղեցի, եթէ ոչ, Աստուած արդեւք հաճեսցի, բայց տեսանեմ զի պատճառ իմն տայր ոչ յանդիմանելոյ զմիմեանց ըղմեղս, և ոչ պահել զառաքելոյն պատուիրանս [1] որ ասէ. Մի հաղորդք լինիք գործոցն պղծոց խաւարի, իսկ յաւէտ և կշտամբէ։ Վասն այսորիկ բաւականաբար ճառեցաւ։

ա. Ձեռ. չկան Եւ քանզի վասն այսր պատճառոյ՝ որք եկեղեցւոյ նախատանս կրէին։

բ. Յն. Εὐδαίμων

1 Պօղ. Թղ. առ Եփ. Ե. 11.

[illegible]ովութիւն ունէր զեկեղեցին Նաւատիանոսաց, ոչ զի այն-
պէս եղև լուծեալ ի կարգէն, այլ զի այպանեալք եղեն։ Իսկ
[illegible]եքստարիոս տայր խրատ զմեղուցեալսն ընդունել խոստովա-
նութեամբ յապաշխարութիւն. և պատշաճ նոցա որոշեաց ըղ-
[illegible]եղիս և զկարգս որում ումեք արժանի իցէ, ով ոք և իցէ,

Գլ. Ի.[1]

Բայց արժանի համարիմ ոչ անյիշատակ թողուլ զորս յոլով հերձուածողն առաջնորդաց՝ յԱրիանոսացն[ա] ասեմ, և ի Նաւատիոսաց և յետոյ ի Մակեդոնէն (և) Եւնոմիոսէն զհամանուանութիւնն առին։ Քանզի եկեղեցին որոշեալ, ի մի անգամ որոշումն ոչ հաստատէր, այլ դարձեալք ընդդէմ ինքեանց գնային անդրէն. և զփոքունս և զսուղս պատճառոյն առեալք ի միմեանց մեկնէին։ Բայց զիարդ, ապա և երբ, և վասն որ պատճառոյ ամենեքին և յինքեանս որոշմունս արարին, առաջնելով բանիս յայտնեսցուք։

ա. Ձեռ. ունի . եւ ի Նաւատիանոսաց . սխալմամբ կրկին անգամ գրած։

1 Տես Սոզոմ. Է. 17. Կաս. ԺԱ. 36. Նիկ. ԺԲ. 29.

Եւ մի անյոյս առնէք[ա] ըստ արժանեացն ապաշխարեն ի հաղորդութենէ. զի ոչ եկն Քրիստոս կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն։ Այսորքիկ զնոսա խոնարհեցուցանէր առ եկեղեցիս[բ] Աստուծոյ. և որ ըստ օրէ յաւելուին ի յուղղափառացն[գ] ի կանոնագրութիւն, գիտելով զԹագաւորին բարեպաշտութիւն և զուղղափառութիւն։

Գլ. ԾԺ.

*Թէ որպէս որոշմունք լինէր ամենայն հերձուածսն վասն Զատկի Նաւատիանոսացն. վասն պահոց սրբոյ Զատկին. վասն ընթերցուածոցն որոշման եւ արիանոսացն, որք որոշեալք միաբանին եւ յարին ըստ ուղղափառսն:*

Այլ և լինէր յամենայն հերձուածսն որոշմունք և բաժանմունք. Արիանոսք առ Արիանոսք[դ] և Հոգէմարտք առ Հոգէմարտք,[ե] Մակեդոնիայ այլ և Նաւատիանոսք, նմանապէս վասն

ա. Ա. ոյք Ն. Դ. որ. բ. Դ. յեկեղեցի. գ Ա, ուղղափառքն. դ. Ա՝ Դ. առ արիանոս. ե. Ա, Դ. առ հոգէմարտս.

Իսկ այս գիտելի, որպէս զի Թագաւորին Թէոդոս զոչ ոք ի սոցանէ հալածէր, բայց զի զՆեստորիոս ի Կոստանդինուպոլսի ի տունսն ժողովելով և զչարագրեալ նորա բանսն ցուցանելով, որպէս զի վարդապետութեամբքն գրագուսն ժանտացուցեալ, յաքսորիս առաքել հրամայեաց։ Բայց յայլոցն ոչ զոք՝ ոչ աշխատ առնէր և ոչ հաղորդս լինել նմա հարկաւորէր, այլ ամենեցունց թոյլ տայր ըստ ընտանի տեղեացն ժողովիլ, և փառաւորել զոր ինչ քրիստոնէութեանն, որպէս զի հասանել իւրաքանչիւր ոք առ նորա փառս կարասցեն. և զայլս արտաքոյ քաղաքացն Թուղացոյց աղաւթանոցաց տեղիս յարդարել։ Բայց զՆաւատիանոսսն՝ որպէս զհամաձայնաւորս նոցայն հաւատոյ ի ներքս ի քաղաքսն զընքեանց եկեղեցիսն վստահացեալս ունել հրամայեաց. որպէս նախկինն ճառեցաւ։[1] Յաղագս որոյ յիշել փոքր ինչ ի դէպ համարիմ, առեալ վերստին սուղ ինչ։

## ԳԼ. ԻԱ.[2]

Զոր Նաւատիանոսացն ի Կոստանդինուպոլսի ըզ[illegible]սուն ամ նախակարգեալ կալաւ Ագեղիոս, ի Կոս[illegible]տնի ժամանակացն մինչև ցվեցերորդ ամ Թագաւո[illegible]Թեանն Թէոդոսի, որպէս ուրանաւր և նախկինն յի-

1 Տես նախնթաց գլ. Ժ.

2 Տես Սոզոմ Է. 18. կաս. Թ. 37. Նիկ. ԺԲ 31.

Ե Կ Ե ղեցւոյ կարգի և կանոնի. նաև ամենայն հերձուածողք. [illegible]նք և վասն իշխանասիրութեան բաժանեալք. Եւ այսպէս [illegible]միաբանք լեալք ընդ[ա] միմեանս վասն հաւատոյ և կրոնից, [illegible]ինի[բ] ի հաւատս ուղիղս և յեկեղեցւոյ Աստուծոյ[գ] սահման.[դ]

ա. Ա, չիք Եւ այսպէս ընդ. բ. Ա, կային. գ. Ա, եկեղեցւոյ Աստուծոյ. դ. Ա՝ սահմանէր ի ժամանակին: Ն. Եւ սահմանս:

շեցի։ [1] Իսկ վաղճանելով ձեռնադրէր եպիսկոպոս ի տեղին իւր զՍիսինիոս. [2] որ քահանայ էր յորոց ընդ նովաւ կարգեցելոցն, իսկ բանաւոր այլ ազգ և ի Մաքսիմոսէ իմաստասիրէ ընդ Յուլիանոսի զիմաստասիրականն խըրատեալ։ Իսկ ժողովրդեան Նաւատիանոսաց անգոսնել եթէ ոչ առաւել զՄարկիանոս զի (ի) վերայ լաւութեանն խախտեալ ձեռնադրեաց, վասն որոյ առ Վաղէսի Նաւատիանոսքն անխռովք մնային. Ագեղիոս մխիթարել զժողովրդին զտրտմութիւն կամեցաւ, ձեռնադրէր ըզՄարկիանոս։ [3] Եւ սակաւ ինչ յապահովացեալ յախտէն էանց յեկեղեցի, և կարդայր անձամբ ասացեալ. զՄարկիանոս, ասէր, ընկալջիք յետ իմ, և յետ նորա զՍիսինիոս։ Զայս ասացեալ յառաջ՝ և սակաւ ժամանակ վարեալ վաղճանեցաւ։ Մարկիանոս ապա եպիսկոպոս Նաւատիանոսաց կարգեալ, զատեցաւ և նոցա եկեղեցի յայսպիսի պատճառոյ։

Սաբբատիոս ոմն ի Հրէից քրիստոնէացեալ, ի Մարկիանոսէ ի քահանայի նախակարգեցաւ պատիւ, ոչինչ նուազ հրէական նախնին ըմբռնմամբ ծառայել փութայր. հանդերձ այսուիկ և որում առ ի նոցանէ եպիսկոպոսութիւնն ցանկայր ըմբռնեալ առնլով։ Ըստ զցանկութիւն նորա գիտակս առնէր երկուց քահանայակիցս զԹեոկտիտոս [a] և զՄակարիոս, զունայնաձևեալն առ Թագաւորութեամբն Վաղէսի զՋատկին զտաւն ի

ա. Յն. Θεόκτιστος

1 Տես Դ. Թ. Ե. 12- Ագեղիոսը եպիսկոպոս էր մօտ 40 տարի 344 մինչև 384 թ.

2 Տես Նախընթաց գլ. Ժ.

3 Տես Դ. գլ. ԻԹ.

Գաղոն աւանի Փռիւգւոյ, որպէս և Նախնիքն ասացին, [1] վճռեցեք կարգեալ խորհէր։ Եւ նախ ծածկութիւն հայեալ ճգնութեանն, յեկեղեցւոյն գնայր, տրտմեալ ասելով առ ամենայն. զի կարգեալ գնոսա ոչ արժանաւորս լինել վարուք խորհրդոցն հաղորդութեանն, իսկ յառաջելով և յայտնագոյն լինէր առանձին ժողով առնել խորհեալ։ Զայս ծանուցեալ Մարկիանոսի անգոսնէր զոր ի վերայ ձեռնադրութեանն մոլորութիւն, զի այսպէս անափառ մարդիկ ի քահանայութիւն մատուցանէր։ Եւ ցանկալով ասէր, վերագոյն լինել ի վերայ փչոց դնել զձեռս իւր, քան զոր Սաբբատիոսին ի քահանայութիւն նախակարգեցէ։ Եւ յարդարէր ժողով Նուատիանոսաց եպիսկոպոսանց լինել ի Սանգարոն[2] ծովեզերին, վասնագահ է սա Բիւթանիոյ, որ մերձ ի Հելլինուպոլիս կայ։ Ուրանաւր ժողովեալք կոչէին զՍաբբատիոս, և առաջի դնել առ ժողովն զպատճառս տրտմութեան հրաժարելոյն։ Իսկ Նոքա զանմիաբանութիւն տաւնին պատճառ տրտմութեանն լինէր ասացեալ. քանզի պարտ գոլ կատարել զտաւնն ասէր որպէս և Հրէայքն պահեն, և որպէս որք ի Պազոնն[ա] ժողովեալք սպասւորեցին։ Զմտաւ ածեալ ապրոց ժողովոյն աթոռասիրութեան աղագաւ պատճառիլ Սաբբատիոսի, երդմամբ զնա հաստատէին, որպէս զի մի երբէք զեպիսկոպոսութեանն յանձն առցէ։ Իսկ Նորա առ սոքաւք երդուեալ, պատաբերէին կանոնս յաղագս տաւնին Զատկի, զոր կոչեցին անտարբերելի ասացեալք. մի արժանաւոր լինել պատճառ առ որոշումն եկեղեցւոյ

ա· ἐν Πάζῳ

1 Տես Դ· գլ· ԻԸ·

2 Սանգարիայի կամ ըստ բնագրի Անգարիայի—երկու ձեւն ել գործածական են· ժողովը տեղի ունեցաւ 591· Թ·

ւնմիաբանութեանն տաւնի. և ոչ որոց ի Վր[...]
ղովելոց խիղճ ինչ կաթուղիկէ կանոնոյն լինել: Քանզի
և նախնոցն,[1] և որոց հուպ յառաջեալն անմիաբանե-
ցելոց յաղագս այս տաւնիս, հաղորդել ընդ միմեանս,
և ոչ երբէք զատիլ: Այլ որպէս զորս ի թագաւորեցե-
լումն Հռովմ զՆաւատիանոս ոչ երբէք հետևիլ Հրէիցն.
այլ առնել միշտ յետ հասարակաւորութեանն Զատկին
տաւն, ոչ խղճալ առ ընտանիս հաւատոյն, յորս ոչ
զնոյն աւրինակ նոցայն կատարաւղս զտաւն Զատկին:

Զայս և այսպիսիս բազումս խորհեալք առհմանե-
ցին զանմիջոցն, որպէս ասացի, զյաղագս Զատկին կա-
նոն. որով իւրաքանչիւր ումեք ըստ սովորութեանն զո
ի նախկին ըմբռնմանէն ունէր, առնել զտաւնն թէ կ·
մեսցի, բայց ոչ ոլոշիլ առ հաղորդութիւնն, այլ ո
շաբաթ տաւնողացն լինել: Դարձեալ միաբանութե·
եկեղեցւոյն սահմանիս այժմ այսօրիկ յաղագս Զա
տաւնի ի նոցանէ յայնժամ հաստատեցելոյ, Սա
տիոս երդմամբքն կապեալ, եթէ զի երբէք անմի
նութիւն լինէր Զատկին, ինքն առանձին յառ
պահէր, և ութագանելով[ա] ի կարծելում Շա
աւուր կատարէր զԶատիկն և դարձեալ զնոյն
հանդերձ ամենեքումբք ըստ եկեղեցեացն ժող·
ի խորհրդոյն հաղորդէր: Եւ առնէր զայս ի բազ
մանակ, և վասն այսորիկ թաքչիլ ի բազմաց
Վասն որոյ և ոմանք ի պարզագունիցն, և ա
ի Փռիւգիայոյ և ի Գաղատիոյ դիմեալքն, կ·

ա Յն. νυχτερεύων.

1 Այստեղ ակնարկուած է երկրորդ դարում Զ·
գած խնդիրը որի պատճառաւ Ս. Պողիկարպոսը Հռովմ
սեբ. Պատ. Ե4. Գ. 14.

-քեանց յայսմանէ արդարանալ, նախանձէին զնորայն, և զՋատիկն նորայն աւրինակաւ կատարէին լռելեայն: Բայց Սամբատիոս ի յետինս ժամանակս և ժողովէր առանձինն, փոքր ինչ երդմանն հոգ տարեալ, և հետեւաւղացն իւր կարգեցաւ եպիսկոպոս, որպէս յառաջեալ յայտնեսցուք:[1]

ԳԼ. ԻԲ.[2]

Իսկ մեզ որ ինչ հասանէ սակս Ջատկին, ոչ որպէս անդէպ համարիմ ի ձեռն սղագունից ասել, ոչինչ թուին և ոչ նախկինքն յաղագս տաւնիս իրաւաբար վիճել, և ոչ ոյք այժմ Հրէիցն փութացեալք հետեւիլ: Քանզի ոչ առնուին ի միտ եթէ Հրէութեան փոխեալ ի քրիստոնէութիւն, ստոյգն և տպաւորականքն Մովսէսական աւրինացն դադարեցին. և այս աստուստ զառատնին ունի զյայտնութիւն: Քանզի հրէանալ քրիստոնէից և ոչ մին աւրէնք Քրիստոսի հրամայեցին, այլ

1 Տես ստորեւ Է. 11.
2 Տես Սաղմ Է. 19. կաս. Թ. 18. Նիկեփ. ԺԲ. 11–15.

Էր ի ժամանակին և վասն Զատկին Նաւատիանոսացն բաժանումն. զի ոմանք ժողով արարեալ փոխեցին զԶատիկն ըստ Հրէիցն ունել, իսկ այլք ոչ նոյնպէս, այլ ըստ լրման: Եւ այսպիսի պատճառով բաժանի նաև այլ ևս կարգօք.

Զի էր ոմն Հրէայ, որ ըստ նոցա հաւատոյ ի Տէր. և [illegible] նմանէ զայսոսիկ ըստ Մովսէսի օրինացն վարդապետեալք, և ոչ յղեալք[ա] զառաքելոյ ասելն[բ] սկսեալ հոգւով. և արդ մարմնով վախճանիք.[գ] զի ի փոփոխել[դ] քահանայութեանն հարկէ և օրինացն փոփոխումն լինել.[ե] որք են սուտերք հան-

ա. Ա. յղեալք. բ. Ա՝ ասացեալսն. գ. Ա, Գ. վախճանեալ. դ. Ա, Գ. փոփոխիլ. ե. Ա, լինիլ. Գ. փոփոխումն.

ի հակառակէն առաքելոյն և արգել, ոչ միայն Թլփատու-Թիւնն ի բաց ընկենլով, այլ և վասն տաւնից ոչ խղ-ճալ յորդորելով, ի ձեռն որոց Գաղատացւոցն[1] գրելով ասէ։

«Ասացէք ինչ ինձ որք ընդ աւրինաւքն կամիք լի-նել։»

Եւ սակս վասն այսորիկ ասացեալ, ծառայ ցուցա-նէ զոր Հրէիցն ժողովուրդ, և ազատս կոչել զժողովեալսն առ Քրիստոս, իսկ վայժ է և ոչ երբէք խորհել աւուրս և ժամանակս և ամիս և տարիս։ Այլ և յորում առ Կողոսացիսն[2] մեծաձայն ասէ, ստուերս լինել զպահ-պանութիւնսն որովք ասէ։

«Մի ոք զձեզ դատեսցէ կերակրովք, կամ ըմպե-լեաւք, կամ մասամբք տաւնից, կամ ամսամտիւք, կամ շաբաթիւք, որք են ստուեր հանդերձելոցն։»

Եւ յորում առ Եբրայեցիսն,[3] իսկ ինքն զերակըն-քելով զայսպիսիս ասէ։

«Քանզի ի փոխել քահանայութեանն, ի հարկէ և աւրինացն փոփոխումն լինի։»

Ոչ ուրեք այժմ առաքեալքն և ոչ աւետարանիչքն լուծ ծառայութեան յորոց վերայ ի քարոզութիւնն մա-

1 Առ Գաղ. Դ. 2.
2 Առ Կողոս. Բ. 16.
3 Առ Եբրա. Է. 12.

դերձողացն որ Քրիստոսիւ լուծանելոց էր.

Էր և յայլ տեղիս որ ոչ միաբանէին զտօն Զատկին տա-նել[ա] զԶատիկն՝ մանաւանդ և զպահս արբոյ Զատկին. և որ ուղղափառութեան են խոստովանողք օրաչին ի միմեանց. որ-պէս և ամենեցուն է քաջայայտ պահոց իրք.

ա. Դ. առնել.

տուցելոց եղեն, այլ զտաւն Զատկին և զայլ տաւնս պատուել՝ ի բարեկամութիւն բարեգործեցելոցն թողին։ Ուստի վասն զի սիրեն զտաւնս մարդիկ յաղագս թուղանալոյ վաստակոցն ի նոսա, իւրաքանչիւր ոք ըստ աշխարհին որպէս կամեցան, զյիշատակ փրկատուր չարչարանացն ի սովորութենէ իմեմնէ ըստ սկսմանցն կատարեցին։ Քանզի ոչ աւրինաւք զայս պահել Փրկիչն և կամ առաքեալքն մեզ պատուիրեցին. և ոչ դատապարտութիւն կամ պատիժս կամ անէծս, որպէս Մովսէսի աւրէնքն Հրէից, և մեզ աւետարանքն կամ առաքեալքն սպառնացին։ Բայց միայն պատմաբար առ յանդիմանութիւն Հրէիցն, զի պղծաձայն էին ըստ տաւնիցն, յաւետարանսն ի ժամանակի բաղարձակերացն չարչարել Փրկչին վերագրեալ։ Բայց դիտումն եղև առաքելոցն ոչ վասն աւուրցն տաւնականաց աւրինադրել, այլ վարս ուղիղս և աստուածպաշտութիւնս մուծանել։ Իսկ ինձ երևի՝ եթէ զոր աւրինակ այլ ինչ շատ ըստ աշխարհացն սովորութիւն է, առ այսպէս և Զատկին տաւն յիւրաքանչիւրսն ի սովորութենէ իմեմնէ իւրացեալս ունէր զխտրութիւնսն, վասն և ոչ մի ինչ առաքելոցն, որպէս և ասացի, աւրինադրեցին։ Իսկ յաւէտ զի ի սովորութենէ քան յաւրինացն ի յիւրաք(անչ)իւրոցն զխըտրութիւն էառ, նոյն իսկ գործքս ցուցանեն։ Քանզի յոլովք ի Փոքր—Ասիա իսկզբանէ զչորեքտասաներորդն պահեցին՝ զշաբաթուն անտես արարեալք զոր և զայս առնելով՝ առ այլսն տաւնին կատարաւղս Զատկի ոչ երբէք լինէին միաբանք, մինչև Հռոմայ եպիսկոպոսն Բիկտոր անբաւս ջեռեալ, անհաղորդութիւն որոց յԱսիայ Չորեքտասաներորդացն առաքեաց։ Յորոց վերայ եղեալ, Իռինէոս[ա]

ա. Εἰρηναῖος.

Պուկգաւնոյ որ Գաղիայ եպիսկոպոսն առ Բեկտոր Թղթովք քաջաբար ընթացաւ, անգոսնեալ զնորա ջերմութիւնն, ուսուցեալ, որպէս զի և նախնիքն անմիաբան կատարելով զՋատկին տաւն, ի հաղորդութենէն ոչ երբէք որոշին։ Եւ եթէ Պաւղիկարպոս Զմռնւոյ եպիսկոպոսն, որ յետոյ առ Գորգիանոսիւ վկայեալ, ընդ Անիկտոսի Հռովմայ եպիսկոպոսին հաղորդէր, ոչ ինչ խղճալով առ նա վասն տաւնին, և զի և ինքն ի յիւրում իսկ ի Զմիւռնի ի սովորութենէ, ի չորեքտասաներորդումն զՋատիկն կատարելով, որպէս և ի հինգերորդում եկեղեցական պատմութեանն ասէ Եւսեբիոս։[1] Բայց ոմանք, որպէս ասացի, ըստ Փոքր—Ասիոյ զչորեքտասաներորդն խտրէին. իսկ ոմանք յարեւելականսն կողմունս զշաբաթ տաւնին պահել, իսկ անմիաբանք լինէին առ ամին։ Քանզի ոմանք Հրէիցն զստոյգն ոչ բառնալով, պարտ է հետեւիլ վասն տաւնին, ասէին. իսկ ոմանք յետ հասարակաւորութեանն միշտ կատարէին, զհամատաւնելն ընդ Հրէիցն հատանելով ասացեալ. Արեգականն միշտ ի Խոյն լինել պարտ գոլ զտաւնն կատարել, ի Քսանթեկի[ա] ըստ Անտիոքացւոցն ամսոյ, իսկ յԱպրիլի ըստ Հռովմայեցւոցն։ Եւ զայս առնել հաւանեալս, ոչ որոց այժմ ըստ ամենայնի մոլորելոց Հրէիցս, այլ առաջնոցն, և Յովսիպոսի ըստ որոց նա յերրորդ Սկզբնաբանութեանն[բ] ասէ այսպէս։ Այլ սոքա առ ինքեանս երկձայնէին. բայց այլքն ամենայն մինչև յարեւմտականսն կողմունսն, և նոյն Ուկեանոս[գ] յետ հասարակաւորութեանն ի նախկին իմեմէ աւանդութենէ

ա. τῷ Ξανθικῷ.

բ. τῆς Ἰουδαϊκῆς Ἀρχαιολογίας·

գ. τοῦ Ὠκεανοῦ,

1 Եւս. Պ. Եկ. Ե. 24.

զԶատիկն արարեալ գտանին։ Քանզի սոքա ամենեքեան զայս առնելով յեղանակ, ոչ երբէք առ ինքեանս անմիաբանեցան, և ոչ որպէս ոմանք զիրարեցան· որ առ Կոստանդնու զժողովն զտաւնս զայս էյեղ։ Որոց[ա] անմիաբանն լինէին յաղագս այս տաւնիս գրելով յորդորեաց, որպէս զի նոքա սակաւք գոլով նմանեսցին բազմաց։ Այլ բոլորովիմբ զԹագաւորին Թուղթ յերրորդ գիրսն Եւսեբիոսի, յորոց ի Վարսն Կոստանդնի գտցես։ Իսկ որ ի նմա յաղագս տաւնին Զատկի մասն, Թէ պատեհ է ասելս,[բ] զայս ունի աւրինակ։

«Ի կարգ բարեվայելուչ, զոր ամենայն, որք արեւմ-
«տականաց և հարաւականաց և հիւսիսականաց տիեզե-
«րաց կողմանց պահեն եկեղեցիք, և ոմանք ըստ արևե-
«լից տեղեաց։ Որոյ աղագաւ առ այժմիս ունել բար-
«ւոք համարեցան, և ես իսկ զձերոյ հպամտութեանդ[գ]
«հերձուած յանձն առի, զոր և Հռովմայեցւոցն քաղաք,
«և Իտալիա, և ամենայն Ափրիկէ, Եգիպտոս, Սպանիա,
«Գաղիա, Բռէտանիա, Լիբիւա, Ասիական կարգաւորու-
«Թիւնդ[դ] և Պոնդականն և Կիւլիկիա, միով կամաւք և հա-
«մաձայնութեամբ պահէ, կամաւորաբար զայս և ձերդ
«ընկալցի հանճար. համարեալ որպէս զի ոչ միայն
«առաւել է որ ըստ նախկին ասացեալդ է տեղեաց եկե-
«ղեցեացն Թիւ, այլ իբրև զի զայս առաւել միաբան
«զամենայն միաբան է խորհել, զոր և ստոյգն բան պահանջել
«համարի, և ոչ մի ինչ ընդ Հրէից երդմնազանցու-
Թեան ունի հաղորդութիւն։» Այսպիսի ունէր Թագաւո-

ա. Բն. աւել ունի. Քանզի ինքնին Կոստանդին որոց։
բ. Բն. չկայ. «Թէ պատեհ է ասելս։»
գ. τῇ ἀγχινοίᾳ
դ. Ձեռ. ունի. «կարգագորութիւն։»

րին Թուղթ։ Իսկ որք զՉորեքտասաներորդացն ասացին· ի Յովհաննէսէ առաքելոյ զխտրութիւն Չորեքտասաներորդի աւանդել նոցա· իսկ որք ըստ Հռովմայն և արեմտական կողմանցն զառաքեալսն զՊետրոս և զՊաւղոս զանգլին աւանդելով սովորութիւն ասեն։ Այլ ոչ ոք ի սոցանէ գրով ունի տալ զյաղագս այսորիկ զյայտնութիւն· զի միայն ի սովորութենէ իմեմնէ առաւել ըստ աշխարհացն, որպէս ասացի, կատարի Զատկին տաւնն։ Եւ անդուստ կարծեմ՝ և ոչ միոյ յազանդոյն զնոյն պահել սովորութիւն, թէպէտ զնոյնս յաղագս աստուածայնւոյն ողջոյնեսցէ զփառս։[ա] Քանզի և որք նոյն հաւատոյ գոլով անմիաբանք լինէին առ ինքեանց սովորութիւն, վասն որոյ փոքր ինչ յաղագս եկեղեցւոյն սովորութեան յարակարգեալ ոչ է անպատեհ։ Եւ առժամայն իսկ որ յառաջ քան Զատիկն պահս, այլ ազգ յայլս պատահէ գտանել։ Քանզի որք ի Հռոմն երիս նախ քան զԶատիկն շաբաթս, բայց ի շաբաթուէ և ի կիւրակէէ, համակարգեալս պահեն· իսկ որք յԻւղիւրիա և յամենայն Ելլադիա, և յԱղէքսանդրիա, յառաջ քան զվեց շաբաթս զոր նախ քան Զատիկն պահս պահեն՝ քառաս-

ա· Միտքն է· ընկալցի զկարծիս, զհաւատ։

Զի ի Հռոմ զտօն Զատկին ըստ փրկաւէտ յարութեան տօնէին և սուրբ զպահսն[ա] ունէին ի մտէն մինչև յելս պահոց[բ] Զատկին· և ոչ ի շաբաթու և ոչ ի կիւրակէի այլափոխել զկերակուրսն։ Եւ ի Պետրոսէ և ի Պօղոսէ ասեն[գ] ունել զաւանդութիւնս տօնից[դ] և պահոց յիւնօրէից։

ա· Ա, զսուրբ պահսն· բ· Ա, ի մտի պահել մինչեւ ելս պահոց սրբոյ Զատկին· գ· Դ· ասէին· դ· Դ· անօթից։

Ներսորդս զնա անուանելով։ Իսկ ուր ի՛նոսա այգքն յառաջ քան զեւթն շաբաթս աւուրն պահոց սկսեալք՝ տօնախմբաւորս ընդ մէջս պահելով, ոչինչ նուազ և սոքա քառասներորդս զժամանակին զայս կոչեն։ Եւ զքանչանալ է ինձ ի վերայ այսոցիկ. զիա՞րդ սոքա առ թիւ աւուրցն երկձայնելով, քառասներորդս զսա կոչեն և այլք այդ բան անուանակոչութեանն բանագիւտ լինելով բացատրեցին։ Բայց է գտանել ոչ միայն առ թիւ աւուրցն անմիաբանս, այլ և զբացակայութիւնն կերակրոց ոչ նման արարեալս։ Քանզի ոմանք յամենայն շնչաւորաց ի բաց կան. իսկ ոմանք ի շնչաւորացն ի ձկանէ միայն յետ պահոցն հաղորդէին, ի Ջրոց և զնոսա ըստ Մովսէսի լինել ասելով։ Իսկ այլք և ի պարարտականացն մրգոց և ի ձուոց ի բաց կան. և ոմանք ի չոր հացէ

Իսկ Ասիա և Եփեսոս նմանապէս[ա] Յովհաննէ աւետարանչէ ունէին զտօն Զատկին կատարել ըստ աւետաւոր յարութեան և պահօք. նմանապէս[բ] յարաձգել[գ] ի մուտս պահոցն մինչև ցկատարումն յիսնեկին.[դ] Իսկ որ յԱղէքսանդրիայ՝ քառասներորդ[ե] անուանելով զօր[զ] բարեբանութեան սրբապէս կատարելով. և յետ այնորիկ զշաբաթն առաւելագոյն պատուով[է] և ընթերցուածովք ի Զատիկն հասուցանէին զփառս. Թէպէտ և ըստ հին[ը] Զատկին պատարագն ընծայաբերի, այլ և ըստ խորհրդածութեան աւուրցն. բայց ի շաբաթու և ի կիւրակէի փրկական պատարագն միշտ կատարի յեկեղեցիսն Աստուծոյ. Է ի նոսա[թ] որոշումն կերակրոց[ժ] զորս յուշ արարաք. Ոմանք յամենայն շնչաւորաց, բայց ի ձկանց և ի ձիթոյ և ի գինւոյ ճաշակեալ, ոմանք յամենայն աւուր, և կէսք ի շաբաթու և ի կիրակէի միայն, և ոմանք հաց և աղ միայն և ջուր,

ա· Ա, նոյնպէս· բ· Ա, նոյնպէս· գ· Ա· Բ· Ն· յետաձգել· դ· Ա, Գ· յիսներեկին· ե· Ա, քառասներորդաց· զ· Ա, զօր· Դ· յօր· է· Դ· պատուովք ը· Գ· ըստ հինն· թ· Գ· էին սորա· ժ· Ա, կերակրոցն·

հաղորդին, իսկ այլք և ոչ յայսմանէ։ Իսկ այղք մինչև ցիններորդ ժամն պահեալք անընդհատաբար ունին զկերակուրսն, և այլ յայղոց պահպանութիւն բեւրք եղեալք հանդիպին։ Եւ զի ոչ ոք վասն այսորիկ գրով ունի ցուցանել պատուիրան, յայտնի է որպէս զի և յաղագս այսորիկ իւրաքանչիւր ուրուք կամաց և յաւժարութեան։ Հրամայեցին առաքեալքն վասն ժուժկալութեան,[ա] զի իւրաքանչիւր ոք մի՛ երկիւղիւ աւրինացն, և մի՛ ի հարկէ զբարին գործեսցէ։ Այսպիսի վասն պահոցն անմիաբանութիւն ըստ եկեղեցեացն էր, իսկ վասն հաւաքմանցն այղ այսպիսի։ Որոց ամենայն ուրեք տիեզերաց եկեղեցեաց յաւուր շաբաթու ըստ ամենայն շաբաթուց պարակացեալ կատարելով զխորհուրդս,[բ]

ա. Բն. չկայ վասն ժուժկալութեան։
բ. τὰ μυστήρια.

և են ոմանք որ յամենայն պարարտ կերակրոց և յըմպելեաց ի շաբաթու և ի կիւրակէի, բայց ի մսոյ արգելեալք։ Եւ այս որպիսի[ա] օրինակաւ և իցէ, եթէ պարկեշտութեամբ և եթէ անպարկեշտութեամբ իմանալի է այսպէս։ Զի առաքեալքն այսպիսի ընտրութիւն ոչ արարին վասն Նորահաւատիցն. բայց ի կարևորացս յայսցանէ. ի բաց կալ ի զոհելոյ[բ] կռոց, և ի պոռընկութենէ և ի հեղձուցելոյ, և յարիւնէ.[գ] որոց պահեալ զանձինս բարիոք գործիցէք, ողջ լիջիք.[դ] Այսպէս առ սակաւ սակաւ աճեն ի ճշմարտութիւն և ոչ բռնաւորապէս։ Անդէն իսկ որք պարկեշտ և ողջամիտք ի հաւատս և ի վարս զառաքելոցն վարս ստացան, իսկ[ե] ծոյլք ոչ բռնադատեալք պատժեցան. զի իւրում Տեառն կայ կամ անկանի, բայց կեցցէ, զի կարող է Տէրն հաստատել զնա։

ա. Ա, Դ. Գ. եւ այսպիսի. բ Գ. ի զոհից. գ. Ա՛ Դ. յարենէ.
դ. Դ. լերուք. ե. Ա, Գ. որք.

Իսկ ուր յԱղեքսանդրիա և ի Հռոմ յիմեմնէ Նախկին աւանդութենէ զայս առնել հրաժարեցին։ Իսկ Եգիպտացիքն դիպացիք Աղեքսանդրիացեացն գոլով, և ուր ի Թիբայիդա բնակեալքն, ի շաբաթու առնեն զժողովսն, բայց ոչ իբրև սովորութիւն քրիստոնէիցն է ի խորհրդոցն հաղորդին։ Քանզի յետ խրախանալոյն և ի կերակրոցն յագենալոյն, ընդ երեկոյսն մատուցեալ, ի խորհրդոցն հաղորդին։ Իսկ անդէն յԱղեքսանդրիա ի չորեքշաբաթւոջ և ի կոչեցելումն ուրբաթու գիրք ընթեռնուն, և վարդապետք զայսոսիկ Թարգմանեն, և ամենայն ինչ պաշտամանն և հաւաքմանն լինի, բայց ի խորհրդոց պատարագէն։ Եւ այս է սովորութիւն Նախկին յԱղեքսանդրիա· քանզի և Որիգէն զշատսն յաւուրսն յայսոսիկ երևէր առ եկեղեցեաւն ուսուցեալ։ Որ իմաստուն գոլով վարդապետ և գիտելով զի անկարութիւն Մովսէսի տկարանայ առ դիտմն բացատրութիւն, զի յաղագս Զատկին բան ի տեսութիւն եբեր, մինչ Զատիկ լինել

Էին ոմանք, որ և զպատարագն խափանել ի կիւրակէի և ի շաբաթու վասն պնդանալոյ պահոց, բայց այս ոչ ընկալեալ եղև ի սրբոց. ա որ զյիշումն յարութեան Քրիստոսի պատարագաւն, և զնահատակութիւն սրբոց անտես ի մոռացունս բ լիցի եկեղեցւոյ։ Էր և որ յամենայն երեկոյս աւուրց ընթերցուած ընթեռնուին, բայց ի կիւրակէի և ի շաբաթու, որ յերրորդ ժամուն է ըստ խորհրդեանն. և էր որ յուրբաթու գ և չորեքշաբթւոջ միայն։ Եւ այսպէս զանազանեալք ի միմեանս էր հաղորդութիւն ընդ միմեանս սիրով հոգւոյն։ Զի և զՈրոգինին ասելն բան վասն Զատկին բարիոք է յուշ առնել. որ

ա. Գ. ի պահոց. բ. Դ. ի մոռացօնս. գ. Դ. յուրբաթւոջ Գ. ուրբաթու.

*ասելով՝ զոր Փրկիչն կատարեաց՝ ազդեալ ընդդէմ հակառակ զաւրութեանցն ի ձեռն նորա մերձահալ խաչիւն, ախոյեանիւս այսուիկ հակառակ բանսարկուին հպեալ։ Իսկ ի նմին Աղեքսանդրիա ընթերցաւղք և սաղմոսք անընտրելիք, եթէ երեխայք իցեն և եթէ հաւատացեալք, իսկ որոց ամենայնն եկեղեցեաց հաւատարիմն ի կարգս յայս նախակարգելոցս։*

*Իսկ ես ծանեայ և միւս սովորութիւն ի Թեսաղիա եղեալ. քանզի ուխտաւոր անդ, եթէ ընդ իւրում կնոջ յոր աւրինաւք ժողովրդական*[ա] *գոլով ածեալ լինէր ննջէր, ելանէր ի քարոզութենէն. իսկ որոց յարևելս ամենայն ուխտաւորաց, և նոյն եպիսկոպոսին կամաւք ի բաց կացելոց, եթէ կամէին՝ ոչ հարկաւ աւրինացն զայս առնողացն։*[բ] *Քանզի բազումք ի նոցանէ ի ժամանակի եպիսկոպոսութեանն և մանկունս յաւրինաւք կնոջէն արարին։ Այլ որոյ ի Թեսաղիա սովորութեանն առաջնորդ Եղիւդորոս Տրիկկուսւոյ*[գ] *եպիսկոպոս, ոչ*

*ա. Ուխտաւոր եւ ժողովրդական յուն. κληρικός բառի թարգմանութիւնն է։*

*բ առնէին։*

*գ. Ἡλιόδωρος Τρίκκης.*

*անկարութիւն ասէ զօրէնսն, զի օրինակ էր ճշմարտութեան մարմնաւոր պատուիրանն։ Եւ յաղագս Զատկին ասէ. զյարութեան օր զոր Փրկիչն չարչարանօք խաչին կատարեաց զփրկութիւն ընդդէմ հակառակ զօրութեանցն, կոխեալ*[ա] *զմահ և բառնալով զմեղս և աւետեօք յարութեանն*[բ] *տօնեցուք, ասէ, նորոգեալք ի հնութենէն։ Այսպէս և զպահս*[գ] *ի նոյն յարէ։ Եւ էր որ ընդ օրինաւոր*[դ] *ամուսնացեալսն ոչ արգե-*

*ա. Դ. զօրութեան կոխել զմահ. բ Ա, աւետեօք եւ յարութեան. գ. Դ. զպահս. դ. Դ. օրինակաւոր.*

տաէր փաստակ լինել զփակկանոն գիրս,ա զորս մանուկ գոլով շարագրեաց, և Ըթեոպականսբ յորջորջեաց. և պաշտի սովորութիւնս այս ի Թեսաղոնիկէ, և ի նմին Մակեդոնիա։գ Բայց այլ սովորութիւն ի Թեսաղիայ գիտեմ եղեալ. յաւուրս Ջատկին միայն մկրտեն. վասն որոյ բայց ի սակաւուցն այլքն ոչ մկրտեալք մեռանին։ Իսկ յԱնտիոքիա Ասորեաց եկեղեցին հակադարձեալ ունի զգիրն.դ քանզի ոչ յարևելս կոյս սեղանն, այլ յարևմուտս հայի։ Իսկ յԵղադիա և յԵրուսաղէմ, (և) ի Թեսաղիա, զորս ի լուցմունսն աղաւթս ե հպաբար որոց ի Կոստանդնուպօղիս Նաւատիանոսացն առնեն։ Նոյնպէս և ի Կեսարիա Կապպադոկիոյ (և) ի Կիպրոս յաւուր կիւրակէի և ի շաբաթու միշտ յերեկորիսն քահանայքըն և եպիսկոպոսունքն զգիրսն թարգմանեն։ Իսկ ուք յԵլլեսպոնտոսի Նաւատիանոսքն ոչ նմանս ըստ ամե-

ա. Որոյ արարեալ էր գիրս յաղագս տռփանաց ἐρωτικὰ βιβλία.

բ. Αἰθιοπικά.

գ. Յն. աւել ունի. καὶ Ἑλλάδι

դ. θέσις սովորութիւն.

ե. Յուն. λυχναψία բառը միանգամ այսպէս է թարգմանել, երկրորդ անգամ, մի երեք տող ներքեւ «յերեկորիսն». որ աւելի լաւ է, քանի որ յուն բառը «ճրագավառութիւն» կնշանակէ: Այդ Յոն բառը տեղ յունարէն ժամակարգութեան մէջ այժմ գործ է ածուում «λυχνικός» [illegible] Լատիներէն lucernarium.

լուծին ի պահսն լինել, և էր որ ծանր ա. և տաղտուկ և դարշելի այս ի պահսն լսել բ և կամ տեսանել. և տեսեալ զայս՝ որոշէին ի բաց, և էր որ ի կամս իւրաքանչիւրոցն թողեալ. գ զի մի փորձիցին ի սատանայէ։ Եւ յաղագս այսորիկ այսքան բաւականասցի։

ա. Դ. ծաղր. բ. Ա, Գ. լինել. գ. Դ. թողուլ։

նայնի որոց ի Կոստանդնուպոլսի Նաւատիանոսացն առնեն զալաւթսն։ Իսկ մերձաւորաբար ըստ բազում իրաց ի կալման եկեղեցւոյն բնաւ իսկ ամենայն ուրեք յաղագս որոց յամենայն աղանդս, ոչ է գտանել միաբանեալս միմեանց զերկուս ի միասին։

Քահանայ յԱղեքսանդրիայ ոչ հայի խաւսիւք. և այս սկիզբն էառ, յորմէ հետէ Արիոս զեկեղեցին խռովեցոյց։ Ի Հռովմ զամենայն շաբաթս պահեն. ի Կեսարիա Կապպադովկիոյ զոյս յետ մկրտութեանն մեղուցեալս ուրոշեն ի հաղորդութենէ, որպէս և Նաւատիանոսքն։ Զնոյնս և Մակեդոնիանոսքն որք յԵղիսպոնտոսի առնեն, և որք յԱսիա Չորեքտասաներորդականքն, Նաւատիանոսք որք ի Փռիւգիա վասն ամուսնութեան ոչ ընդունին. իսկ ի Կոստանդնուպոլսի ոչ յայտնաբար ընդունին, և ոչ յայտնապէս հանեն. բայց յարևմտայինսն կողմունս յայտնաբար ընդունին։ Այլ քանզի պատճառք, որպէս համարիմ, այսպիսի անմիաբանութեանս որք ըստ ժամանակին եկեղեցեաց առաջնորդս, որք առ ընտանի նախկին ըմբռնումն հնազանդիցն տպաւորեցին.[ա] իսկ նոքա զայս առնլով, աւրէնս ի վերայ եղելոցն առաքեցին։ Բայց զամենայն զորս յեկեղեցիսն սովորութիւնս ըստ քաղաքաց և աշխարհաց եղեալսն՝ գրել գործ է, իսկ յաւէտ և անկարութիւն։ Այլ բաւականք են և յարակարգեալքն տաւն Զատկի ի սովորութենէ իմ(եմ)նէ ըստ աշխարհացն . . էսպէսն[բ] ունելով պատ(իւ)։ Վասն որոյ յաւելորդա(բա)նին որք ԾՆիկւոյն ժո(ղով) յեղուլ զԶատիկն զիր(ար)եալք.

ա. Որք առ ընտանի... տպաւորեցին չկայ բն.

բ. Բն. ունի διάφορον այլապէս։ Ձեռ. մի քանի բառերի երկու կամ երեք տառը պատռուած է։

քանզի անդր (ժող)ովեալքն զսակաւս ի միաբանութիւն ածել փութային առ ոյս յոյժ յոլովս յառաջագոյն։ Եւ զի անդէն իսկ առաքելոցն ժամանակաւքն բազում անմիաբանութիւնք վասն այսոցիկ լինէին, և ոչ ի նոցանէ յառաքելոցն ծածկեցաւ, որպէս վկայեն Գիրք Գործոցն։ Եւ վասն զի ծանեան առաքեալքն խռովութիւն յանմիաբանութենէն հեթանոսաց շարժեալ հաւատացելոցն, ամենեքեան ի միասին եղեալք աւրէնս աստուածայինս հաստատեցին, աւրինակաւ թղթոյ գրեալք։ Որով ի ծանրագունէն վասն այսպիսեացս ծառայութեան և հակառակաբանութեան զհաւատացեալսն ազատեց(ին)։ և տպաւորեն զգու(շո)ւթիւն ուղիղ քաղաք(աւ)որութեանն, և զառ (ճշ)մարիտ աստուածպաշտութիւնն ածումն ուսուց(ին), միայն զոլքանս (կա)րեւորապէսն պարտ է պահել ազգեալք։ Այլ թուղթն յառաքելոցն Գործս ա վերագրի. բայց ոչինչ արգելու և աստանաւր յարակարգել զնա։

«Առաքեալք և երիցունք և եղբարք, որոց ըստ Ան-
«տիոքայ և Ասորեաց և Կիւղիկիայ եղբարցդ որոց ի հե-
«թանոսաց, բ խնդալ։ Քանզի լուաք՝ թէ ոմանք եկեալք
«ի մէնջ խռովեցուցին զձեզ բանիւք, խախտելով զան-
«ձինս ձեր. ասելով թլփատիլ և պահել զաւրէնսն որոց
«ոչ պատուիրեցաք, թուեցաւ մեզ եղելոցս միանգամ
«արս ընտրեալս առաքել առ ձեզ ընդ սիրելեաց մե-
«րոց Բառնաբայ և Պաւղոսի, արք որք մատնեցին զան-
«ձինս իւրեանց վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի
«Քրիստոսի։ Արդ առաքեցաք զՅուդայ և զՇիղա գ և

ա. Գործք Առաքելոց։
բ. Թն. ἐξ ἐθνῶν-ի ժողովրդոց։
գ. Σιλαν

«նոցա ի բանից զնոյն ասել։ Զի հաճոյ թուեցաւ Հոգ-
«ւոյն Սրբոյ և մեզ, մի առաւել բեռն դնել ձեզ, բայց
«ի կարևորացս յայսցիկ. ի բաց կալ ի զոհելոց կռոց
«և յարենէ, և ի հեղձուցելոյ, և ի պոռնկութենէ, յո-
«րոց պահել զանձինս, բարւոք գործիցէք. ողջ լերուք։»

Բայց այս թուեցաւ Աստուծոյ. քանզի զայս ասէ թուղթն, թէ թուեցաւ Հոգւոյն Սրբոյ, մի առաւել դնել ծանրութիւն բայց յորոց ի հարկէ պարտիցն պահել։ Իսկ ոմանց ի սոցանէ անփոյթ արարեալ զամենայն պոռնկութիւն համարին, իսկ վասն աւուրցն տաւնից հոգւովք չափ ջանան. և ընդդիմադարձուցեալք զԱստուծոյ պատուիրանն, և աւրինադրել անձամբք, իսկ առ ոչինչ զառաքելոցն աւրինադրութիւն եդեալ, մոռանալով զանձինս, եթէ հակառակ որոց Աստուծոյն թուեցաւ գործեն։ Բայց կարելի էր այսուհետև զյաղագս Զատկին բան առաւել ձգել, և ցուցանել որպէս զի և (ոչ) Հրէայք զստոյգն որոց յաղագս Զատկին ժամանակացն կամ աւրինակաւ պահեն. որպէս և Սամարացիքն, հերձուած զ(ոք)ով Հրէիցն, միշտ յետ հասարակաւորութեանն[ա] զտաւնս զայս կատարեն։ Այլ այսպիսի պատճառս առանձնոյ պէտս ունի և երկայնագոյն արտադրութեան։ Բայց զայս ասեմ, եթէ որք սիրենն Հրէից հետևիլ, և առ տեղիսն ստուգաբանեն, ոչինչ եղանակաւ յայսցանէ անկանիլ պարտին։ Քանզի թէ բնաւ միայն ստուգաբանել կամին, ոչ պարտին աւուրս միայն կամ ամիսս խորել, այլ և զայլսն որքան Քրիստոս ընդ աւրինաւքն եղեալ գործէր հրէաբար, կամ համբերէր ի Հրէիցն անիրաւել, կամ բարեգործելով զամենեսին, աւրինակաբար գործէր։ Իսկ նաւն մնեալ ու-

ա. μετ' ἰσημερίαν հաւասարութիւն տունջեան եւ գիշերոյ։

տուցանէր. ի վերնատանն նմա Ջատիկն պատրաստել հրամայէր. էր կարեալ լուծանել հրամայէր. զբարձաւղն զսափոր ջրոյն նշան տայր փութաւղաց(ն) ի Ջատիկն. Եւ այդս բե(ւ)րս ուրքան յԱւետարան(ս) գրին։ Եւ յայսցանէ ոչինչ մարմնապէս պահել փութանս, որք վասն տաւնին արդարանալն կարծեն։ Քանզի ոչ որ ի վարդապետացն ի նաւէ երբէք վարդապետութիւնս առնէ, եւ ոչ ի վերնատան որ զՋատիկն յամենայնէ կատարեալ փութացաւ, ոչ էր կարեալ լուծանելով առ ժամայն լուծին, ոչ սափոր ջրոյ բառնալ ումեք հրամայեցին, զի նշանքն լցցինն. քանզի զայսոսիկ եւ զայսպիսիս ըղՀրէականս առաւել համարէր։ Քանզի Հրէայքն զպատահմունս մարմնոցն առաւել քան զհոգւոցն ապրեցուցանել փութան. վասն որոյ եւ պարտաւորք անիծիցն լինին, զի զաւրէնսն Մովսէսի յաւրինակս եւ ոչ ի ճշմարտութիւն առնուն։ Իսկ հրէասէրքն զայսոսիկ ի տեսութիւն հանեն, եւ վասն աւուրցն եւ ամսոցն զաննուէրն կամին պատերազմ, զյաղագս այսորիկ տեսութիւն կոխեալք։ Որպէս զի եւ նոցա ըստ այսմ մասին նման Հրէիցն դատապարտիլ, զոր ի յանիծիցն համար[ա] յանձին բերեալ։ Այլ վասն այսորիկ բաւականանալ համարիմ։

Բայց ընթացուք յառաջինկայն, ուրում փոքր ինչ Նախկին արարաք յիշատակ. որպէսզի եկեղեցին որոշեալ եկաց ի Նախկին որոշմանն. եւ որպէս զի զատեալքն ընդդէմ միմեանց դարձեալ գնային. եւ զփոքունս եւ ըղձուղս պատճառոյն առեալք ի միմեանց որոշէին։ Բայց արդ՝ Նաւատիանոսքն վասն տաւնի Զատկի զատեցան. եւ վասն այսորիկ ոչ մին միայն որոշումն ընդունին. քանզի այդք այլ ազգս ըստ աշխարհացն,[բ] ոչ միայն վասն

ա. բն. ή ψῆφος դատավճիռ։ բ. բն. ή ἐπαρχία.

ամնոց, այլ և վասն շաբաթու աւուրցն, և վասն ոչին-
չից տարբերեալք, և երբեմն խղճան, իսկ երբեմն և
զուգին:

### ԳԼ. ԻԳ. [1]

Բայց լինի և յԱրիանոսն որոշումն վասն այս պատ-
ճառիս, որ յամենայն ժամ ի Նոսա Հերձուածական
խնդիրքն յայն տեղիսն իմն զբանս նոցա յառաջ բերեն:
Քանզի յեկեղեցւոջ հաւատացեալ է. Աստուած Հայր
լինել Որդւոյ Բանին. խնդիր անկաւ ի Նոսա եթէ հնա՞ր
իցէ և նախակարգեալ զՈրդի Աստուած կոչիլ Հայր.
քանզի զԱստուածոյ բան ոչ ի հաւրէ ծնանիլ, այլ յո-
չէից գոլ[ա] կարծէին. առ Նախկին և գերագոյն գլուխն
սխալեալք վայելչաբար յաղագս սոսկ անուանն յայն-
տեղի վիճաբանութիւն անկան: Դոռոթէոս որ յԱն-
տիոքա ի Նոցանէ կոչեցեալ ասէր. ոչ հնար լինել Հայր
գոլ կամ կոչիլ, ոչ գոլ Որդւոյ: [ա] Իսկ Մարինոս [զ]որ
ի Թիրակայ նախ քան զԴոռոթէոս լինէր ընտրեալ,
ի հակառակն բան նախակայ իւրոյ: Վասն այսորիկ լինի ի
նոսա հերձուածն, և մեկնեալք յաղագս նախաճառեալն
բանի, առանձինն իւրաքանչիւր ոք զժողովսն առնէին.
որոց ընդ Դէոգոռոսիւն կարգեցելոց. [բ] իսկ որք Մարի-
նոսին հետեւեալք առանձին յարդարեալ տունս աղաւ-
թից զժողովսն առնէին, ասելով. զՀայր լինել միշտ
Հայր, և ոչ գոլով Որդւոյ: Եւ կոչէին զոքա Փսաթիւ-
ռիանոսք, [գ] զի Թէոկտիստոս ոմն Փսաթիւռիայ վաճառ-
աղդաւ Ասորի, ջերմին [դ] բանիւ կայր համակարգեալ.

1 Տես Սոզոմ. Է. 17. Կասիոդ. Թ. 40. Նիկ. ԺԲ. 30.

ա. ԲՆ. ՆԹէ ոչ իցէ որդի. բ. ԲՆ. աւել ունի . յընտանի տեղիսն նոցին .. գ. οἱ Ψαθυριανοί դ. διαπύρως Հրատապ.

քսկ նոցա հետևեցաւ և Սեղինաս [ա] Գոթացն եպիսկոպոս, այր խառնակ ունելով զազգն. ի հաւրէ Գութ գոլով, իսկ ի մաւրէ Փռիւգացի, [1] և վասն այսորիկ երկոքին լեզուաւքն պատրաստաբար ըստ հերձուածոյն նոցա ուսուցանէր։ Բայց յետոյ և սոքա անջատեցան, Մարիանոսի առ Ագապինոս ցասուցեալ, զոր յինքն յեպիսկոպոսութիւն Եփեսոսի նախակարգէր։

Իսկ սոքա ոչ վասն աղանդոյ, այլ սակս նախաթոռութեանն տրտմեալք պատերազմէին ընդ միմեանս, Գոթացն յաւելեալ առ Ագապիոս։ Վասն որոյ բազմաց յորոց ընդ նոքաւք ժառանգաւորացն, ատեալ զառ ի սնափառութենէն ծնեալ մարտն նոցա, մերժելով ի նոցանէ ի համագոյութեանն հաւատ յաւելուլին, և կարգէին ի սրբազոյն մերում եկեղեցւոջն, ի Նեկտառէ եպիսկոպոսապետէ վերստին ձեռնադրեալք։ [բ] Բայց Արիանոսքն զերեսուն [2] ամ զատեալք ի միմեանց, յետոյ առ թագաւորութեամբն Նոր Թէոդոսի ի հւպատուոջն Նո-

ա. Σεληνᾶς.

բ. Վերջի նախադասութիւնը «եւ կարգէին....ձեռնադրեալք» չկայ բնագրի մէջ:

1 Սա առաջ Ուլփիլասի գրագիրն էր. յետոյ նորան յաջորդեց.

2 Այդ միացումը եղաւ 419 թ. բաժանումը 394 թ. էր. ուրեմն ընդամէնը 25 տարի է եւ ոչ երեսուն.

Բայց Արիանոսք որոշեալք [ա] ի միմեանց, յետոյ ի բաց թողեալ զվիճաբանութիւն, և միաբանեցան ընդ ուղղափառ հաւատս եկեղեցւոյ Աստուծոյ մերոյ ի հաւատս և ի կարգս մեր. և դարձեալ վերստին առնուն ձեռնադրութիւն ի Նեքտառիայ ի Կոստանդնուպօլսի հայրապետէն։ [բ] Իսկ որք այլք [գ] ի Կոստանդնուպօլիս էին զղջացեալք յետ երեսուն ամի առ Թէոդոսիւ՝ գան ի խոստովանութիւն համագոյութեան, և օրէնս հաստատեն մի

ա. Ն. Դ. որոշեալ. բ. Դ. եպիսկոպոսէ. գ Ա՝ Դ. այլ.

թիւնան և զոր յաղագս մեկնութեանն իմացեալ, շարակարծեալ գրեան զոր յաղագս կրթութեան մնաց գրեաց։ Զանձրացեալ ընդ իւր հնազանդակիցսն, իբր ապստամբեալ ի նոցանէ արտաքս ելանէր. և ժողովեալ զնոսա յինքենէ համանուանութիւն հերձուածոյն էթող։

Իսկ ի Կոստանտինուպոլսի Եւտիւքէոս ոմն ի ցուրտ խնդրոյ որոշեցաւ յԵւնոմիանոսացն, և այժմ զժողովս առանձինն առնէ։ Արդ՝ անուանին Թէոփռոնիոսի հետևողքն Եւնոմիանոսք — Թէոփռոնիանոսք, իսկ Եւտիքիոսին՝ Եւնոմիանոսք — Եւտիւքիանոսք։ Բայց որպիսի ցուրտ բանք են վասն որոյ որոշին, աւանդեալ պատմութեամբս ոչ արժանի լինել ընտրեցի, զի մի յայդս խոնարհեցուցից զբանս. բայց զի զմկրտութիւնն արտաքսագրեցին, քանզի ոչ յԵրրորդութիւնն, այլ ի Քրիստոսի մկրտեն մահ։ Բայց եղև ի ժամանակս ինչ ի Մակեդով- իանոսն երկպառակութիւն. Եւտռոպիոսի քահանայի առանձին ժողովս առնելով, իսկ Կառտերիոսի ոչ միա- ւորել ընդ նմա։ Թերևս արդեւք և այդ աղանդք են ոցանէ եղեալք յայդս ի քաղաքացն։ Բայց ես ի Կոս- անտինուպոլիս զյամուսն առնելով, յորում ծնայն իսկ

ա. Թեթեւ.

ւսման։ Եւ այլք յայլոց [ա] որոշեալ և անմիաբանք [բ] լինել. գային և խոստովան լինէին [գ] ըստ մերում հաւատոյ ուղղափառութեան և կարգաց եկեղեցւոյ։ Եւ զի երկայնագոյն է զամենայն աղանդիցն ասել զբաժանմունս, մանաւանդ երկիւղ է որ ոչ գիտեմ զբովանդակն հասու լինել և ասել. որ ի Կոստանդնուպօլիս եմ ծնեալ և սնեալ և ուսեալ. անդորրագոյնս պատմեմ, որքան մեզ է հասանելի որք աստէն [դ] լինալք, որոց և

ա. Ա, յայլ. բ. Ա, անմիաբան. գ. Դ. խոստովանէին ըստ մերոյ. դ. Ա՛ Գ. անդէն.

## ԳԼ. ԻԵ.[1]

Ըստ [1] արեւմտիցն կողմանց քերդող ոմն, որոյ անուն

[1] Ճառընտրի հատուածը քաղուածք է, ինչպէս նկատեցինք, Թէոդորոսի պատմութեանը, որ էջ. 415 վերջանում է եւ սկսում դարձեալ այս տեղից, բայց քաղուածք անողը կապը հաստատելու համար աւելցրել է մի կտոր.

· Բայց ընթացուք յառաջիկայն, որոյ փոքր ինչ արարաք սկիզբն յիշատակի: Նախկին որպէս զի եկեղեցին որոշեալ ի Նախկի եղելում թրոշմանն ոչ եկաց. եւ որպէս զատեալք ի միմեանց՝ ընդդէմ կալով գնային եւ զփոքունս եւ զսուտս պատճառոյն՝ առաքեալք առ միմեանս թրոշմն ըստ արեւմտից կողմանն, քերդողովն որում անունն էր Դինիսիոս . . . .

1 Տես Է. 22. 24. Թէոդ. Գ. ԽԿ. Դ. 24. Ռուփ. ԺԱ. 3։ Զոսիմոս. Դ. 53. Փիլոստորգ. ԺԱ. 1. Կասս. Թ. 45. Նիկ. ԺԲ. 39.

ցուցն յԱստուծոյ ըստ բարեաց գործոց [ա] եւ լինին որպէս հրեշտակս ի յերկինս, եւ մեղաւորացն հոգիքն ընդ իւրեանց ընդունին զպատիժս ըստ արժանեացն ի Տեառնէ. Եւ վասն այսորիկ [բ] խնդրոյ, բարեպաշտն Թէոդոս ուժգին դողմամբ [գ] եւ արտասուօք հրամայէր աղօթս առնել առ Աստուած ուղղափառացըն, զի եղիցի ողորմութիւն յԱստուծոյ. եւ ինքն եւս առաւել ի ջանս աղօթիցն եւ ի պահս [դ] պնդեալ աքնութեամբ եւ արտասուօք. Եւ լսելի եղեւ սքանչելի ցուցակութեամբ յարութիւն հոգւոց եւ մարմնոց ի մանկանցն [ե] եւթանց, որք յարեան եւ երեւեցան թագաւորին եւ բազմաց, եւ խօսեցան վասն յարութեան մեռելոց, եւ դարձեալ ննջեցին եւ ի քուն մտին մինչեւ ի հասարակաց [զ] յարութիւն, որպէս եւ ամենեցուն է քաջայայտնի ի նոցին պատմութեանց. Ցայսոսիկ գոհանալով առա-

ա. Դ. պարգեւաց. բ. Դ. այսր. գ. Ա գոչմամբ, միւսները դողմամբ. դ. Դ. աղօթից եւ պահոց. ե. Ա, ի մարմնականացն. զ. Ա, Դ. ի հասարակ.

Նւգենիս, [ա] Հռովմայականս խրատեալ բանս․ սորա Թո-ղեալ զխրատարանսն ի Թագաւորականսն զինուորէր, [բ] և ընդդիմագրաւող Թագաւորին լինէր կարգեալ։ Եւ վասն լինելոյն նորա բանաւոր, առաւել քան զայլսն պատուեալ զբախտ նուաստաբար ոչ տարաւ․ այլ գործակից առ-եալ զՍոգոբաստիս, [գ] որ ի փոքր Գաղատւոյն գիմեալ զաւրական դասու առաջնորդ հանդիպելով, [դ] իսկ աւրի-նակաւ գժնդակ և պղծասպանագոյն։ Խորհին [ե] երկոքինն զմահ Թագաւորին Վաղէնտինիանոսի, յորս ի վերայ

ա․ Դինիսոս․ բ․ ի Թագաւորութեանն զինուորեալ․ գ․ Ἀργοβάστης այլ ցոր ծառգոյքաստիս․ դ․ հանդիպեալ․ ե․ խորհէին զմահս․

ւել հաստատէր ի հաւատս և փառաւորէր զարարիչն Աստուած։¹)

ԳՂ ԺԺԵ․

Թէ ո պէս քերթողն Նւգինէս բռնացեալ, ի քուն անկողնի խեղդէ զԹագաւորն Վաղէնտիանոս, կալնու զհռոմ եւ զիշխանութիւն․

Ցետ այսորիկ յառնէ [ա] աշխարհական պատերազմ յա-րեւմուտս․ Քերթող ոմն Նւգինէս [բ] անուն ի Հռոմայ, [գ] հռետոր իմաստասէր անուանի լեալ․ սորա [դ] Թողեալ զխրատականսն զինուորէր և գիմագրաւ պատուի ի Թագաւորէն․ [ե] առաւել քան զամենեսեան իմաստուն և բանաւոր երևեալ փառաւորի․ Եւ ամ-բարտաւանեալ չար իմացութեամբ զմահ Թագաւորին․ [զ] և առ-նու գործակից իւր զփոքր Գաղատիա զզօրավար Թագաւորին զՍոգոբոստիս, և երկոքին խորհէին զմահ Թագաւորին Վա-ղէնտիանոսի․ և Ներքինիսն [է] որ ի վերայ յօթանոցին [ը] մեծա-մեծ խոստմամբ խորհրդակից առնէ մահու․ և Նոքա պատրեալք

1 Չիք ի բն առեալ է ի վկ․ ՆւԹն Մանկ․ Նփես․ զոր տես ի վկ․ Մ․ Հ․ Ա․ 446․ 502։

ա․ Ա, առնէ բ․ Բոլ․ Ձեռ․ Նւգինէս․ գ․ Ա, Հռոմա․ դ․ Ա, որ․ ե․ Ա, Գ․ վասն առաւել․ զ․ Ն․ եւ ամբարտաւանութեամբ չար իմանա-վաս մահու Թագաւորի․ է․ Գ․ Ներքինին․ ը․ Գ աթանոցին․

ուԹանոցին[ա] ներքինիս հաւատականաւք մտեալ։[բ]

Իսկ նոցա[գ] խոստմունս որոց ունէին պատուոցն[դ] ընկալեալք, ի ննջման զԹագաւորն խեղդեցին։ Եւ առժամայն Եւգենիս կալաւղ[ե] որոց յարեւմտայինսն կողմունս իրաց եղեալ, գործէր որքան և վայել էր ի բանակալն լինել անտեղի իրք։[զ]

Զայս լուեալ Թագաւորին Թէոդոսի, և նոյն ժամայն է ի հոգս մեծամեծս մտանէր, երկրորդ հանդիսից յետ[է] Մաքսիմոսի առաջի կացելոյ ճանապարհի։ Ապա կալեալ[ը] զհեծելական զաւրութիւնսն,[թ] և զորդին Ոնորէոս[ժա] յորջորջեալ ի Թագաւոր յիւրում[ժբ] երրորդ հիւպատուոջն, և Արքադանտիոսի,[ժգ] տասինն Յունուարի

ա. աղաւԹանոցին, բ. հաւատարիմս մտեալ. գ. ի նոցանէ. դ. ըզ-ալատին. ե. Եւգինի կալով որ էր յարեւմտային կողմանս տիրացեալ, գործէր. զ. իրս. է. Չիք. ը. որ յետ. Թ. ը կալեալ. ժ. զաւրսն. ժա. յորում անուն Ոնորիոս. ժբ. իւր. ժգ. Ապուգանտոս.

Իբ խոստմանցն ի քուն յանկողնին ի գիշերի խեղդեցին զԹագաւորն Վաղէնտիանոս։ Եւ անդէն կալաւ զՀռովմ և զիշխանութիւն նորա։

## ԳԼ. ՃԺԲ.

Թէ որպէս Թէոդոս լուեալ զսպանումն Վաղէնտիանոսի, հասանէ զօրօքն ի Գաղայ, մարտնչի ընդ բռնակալին, պարտի բռնակալն եւ հատնի գլուխն։

Զայս լուեալ Մեծին Թէոդոսի Թագաւորին ի հոգս առաւել մտանէր. և ժողովեալ զզօրս իւր, և զմիւս որդին զՈնորիոս[ա] Թագաւորեցուցանէր ի Կոստանդնուպօլիս. Թողեալ զերկուսին որդիսն զԱրկադիոս և զՈնորիոս Թագաւորս ի Կոստանդ-

ա. Ա. Գ. զՈնորիոս.

ամսոյ,[ա] առժամայն յարևմտայինսն կողմունսն[բ] փութանակի գնայր, թողեալ զերկուս ուղիսն իւր ի Կոստանդինուպոլսի Թագաւորս։[1] Իսկ երթալով նորա ի յընդդէմ[գ] Եւգինի, բազումք որոց յայնկոյս Իստրոսի բարբարոսացն հետևէին նմա, մարտակից լինել նմա ընդդէմ բռնակալին յաւժարեալք։ Իսկ յոչ բազում անցեալ ժամանակի,[դ] Գաղիա հասանէր զաւրաւ. բազմաւ. քան(զի) անդ պատրաստէր բռնակալն ունելով և նորա զաւրս բիւր բազումս։ Եւ լինէր խառնակումն առ գետոյն[ե] որ կոչի Փռիգդոն[զ] [2]. և ըստ որում կողման Հռոմայեցիք առ Հռոմայեցիս պատերազմէին, հաւասար լինէր մրցումն ի կողմանն յայնմիկ մարտին, իսկ ըստ որում մարտակիցքն է Թէոդոսի բարբարոսքն, ըստ այնմ կողման որք Եւգինին առաւել զաւրանային։

ա. յամսեանն Յունուարի ի տասն. բ. յարեւմտային կողմն. գ. ընդդէմ Եւգինիա՝ ի պատերազմ. դ. Չիք |յօժարեալք..... ի ժամանակի. ե. գետովն. զ. Փռիւգիոն. է. բարեպաշտին.

1 Փրկ. 399 Թ.

2 Բնագրի մէջ այստեղ բաց է թողնուած մի փոքրիկ հատուած. որ չկայ նաեւ մեր թարգմանութեան մէջ. ասել է՝ թարգմանութեան օրինակն էլ է առանց այդ այժմ կորած հատուածի եղել.

Նուպօլիս, և ինքն գնայր ընդդէմ բռնակալին այնորիկ Եւգինի ի մարտ։ Եւ հասեալ ի Գաղիայ[ա] յոլովք ի բարբարոսացն գան առ Թէոդոս մարտակից լինել ընդ նմա ընդդէմ բռնակալին։ Իսկ յետ ոչ բազում աւուրց գայ և բռնակալն բազում բիւրաւոր զօրօք. և խմբեցաւ պատերազմն առ գետովն որ կոչի Փռիգդոն.[բ] և ըստ որում Հռովմայեցիք էին պատերազմեալ, հաւասար էր մրցումն և ոչ մի զմի ոք յաղթահարէր.[գ] իսկ որ այլազգացն էր զօրն, պարտեցան ի բռնակալի զօրաց ի մարտին։

ա. Բոլ. Ձեռ. ի Գաղատիա. բ. Դ. չիք. գ. Դ. եւ ոչ մի զի մի ոք յաղթահարեաց.

Իսկ Թագաւորին տեսեալ զբարբարոսն լքեալս, և ի մեծ հանդիսի եղեալ, ի գետին ընկենլով զինքն [ա] աւգնական կոչէր զԱստուած, և ի խնդրոյն ոչ նուաղէր։ Քանզի Բանկուրիոս [ա] զաւրավարն [1] նորա այնքան քաջալերեցաւ, [բ] որպէս զի նախկին հանդիսաւորաւքն [բ] ընթանայր, ըստ որում կողման բարբարոսքն [գ] վարեալք լինէին, և պատառէր զռազմունս [դ] պատերազմականացն, և դարձուցանէր ի փախուստ [2] զորս յառաջ

ա. մինչեւ առ զխնդրեւլին ի սիրոյն իւրմէ ի Քրիստոսէ, զի քաջ-Քոլիոս. բ. քաջացաւ գ. զորու բարբարոսացն. դ. Ճառընտիրը ունի ուղիղ. ·զռազմունս· մեր Ձեռ. ·զբաղմունս··

ա. Ռն. Βακούριος.

բ. Ռն. πρωταγωνισταῖς.

1 Բակուրի մասին Զոսիմոսը (Դ. 53) գրում է. Ἔλχων μὲν ἐξ Ἀρμενίας τὸ γένος, ἔξω δὲ πάσης κακοηθείας ἀνήρ, μετὰ τοῦ καὶ τὰ πολεμικὰ πεπαιδεῦσθαι Ազգաւ ի Հայաստանէ ծագեալ, այր անարատ յամենայն վատթարութեանց. ընդ նմին եւ քաջ վարժեալ ի գործս պատերազմաց։

2 Զոսիմոսը պատմում է, որ շատերը. նրանց թւում եւ Բակուրը ընկնում են պատերազմի դաշտում.

Իսկ բարեպաշտն Թէոդոս [ա] ետես պարտեալ և լքեալ զայլազգիսն, որ մարտակիցք նորա էին, ի մեծի հանդիսի լինեալ ընկէց զինքն ի գետին, և մեծաւ հառաչանօք և արտասուօք յօգնութիւն կոչէր զԱստուած, և ոչ անտես լինէր ի խնդրոյն. զի անդէն զօրացեալ եղեն ի վերին զօրութենէն զօրք Թագաւորին. Զի Բակուրիոս [բ] զօրավար Թագաւորին՝ զօրացեալ նախկին հանդիսաւորօքն ընթանայր ի կողմն բարբարոսացն, և պատառէր [գ] զռազմ մարտին, և դարձուցանէր ի փախուստ զմարտուցեալսն. և բազում մահս և վիրաւորս առնէր ի թշնամեացն, և փրկէր զբարբարոսն [դ] անվնաս.

ա. Դ. Թէոս. բ. Բոլ. Ձեռ. Բանգուրիոս. գ. Դ. պարտէր. դ. Դ. բարբարոսացն.

սակաւ ինչ վարաւղս։[ա] Բայց լինէր և այլ զարմանալի իր[բ] ի վերայ՝ ի ձեռն Աստուծոյ շնորհին սքանչման արժանի. քանզի հողմոյ ուժգնի[գ] շնչեալ զվտարեալս[դ] նետս յորոց Եւգենի հակառակ նոցունց շրջեալ յեգոյր,[ե] և ոչ այս միայն, այլ և զընդդիմամարտիցն ուժգին դիմմամբ բերէր ընդդէմ նոցա։ Այսքան զաւրեցին[զ] Թագաւորին աղաւթք առ Աստուած։ Այսու աւրինակաւ եղելոյ պատերազմին պարտման, բռնակալն է ընթացեալ յոտս Թագաւորին աղաչէր փրկութեան հանդիպիլ. այլ առ ոտից Թագաւորին ի զաւրականացն գլուխն հատեալ լինէր։ Այս գործ(ի) ի վեցին Սեպտեմբերի ամսոյ, ի հիւպատուոջն Արկադիա երրորդին և Ոնորի երկրորդին։[1] Իսկ Առգորաստիս որ այսքան չարեաց պատճառն, յետ երկուց աւուրց պատերազմին փա-

ա զորս….վարաւղս Չիբ. բ. իրս ի վերին ընծեռեալ. գ. զի հողմ ուժգին. դ. զվարողսն. ե. զեղոյր. զ. այնքան զաւրացեալ. է. եղեալ պատերազմ Թագաւորին, բռնակալին

1 Փրկ. 391 Թ.

Բայց լինէր և այլ զարմանալիք. հողմ ուժգին հարեալ ընդդէմ բռնակալին և զօրաց նորա, և զնետս իւրեանց ի ձգողսն դարձուցանէր և սատակէր. Զի տէր էր որ պատերազմէր ընդ բռնակալին ընդունելով զԹագաւորին աղօթս, զի այնպէս ճըգնեալ հանդիսաւոր աղօթիւք մինչև պարտեցաւ բռնակալն։ Զի[ա] ոչ էր հնար զնմա փախչել, ի հեզութիւն Թագաւորին վստահացեալ ընթացեալ յոտս Թագաւորին անկանէր, աղաչէր զփրկութիւն և զապրել անձին։[բ] Իսկ անդէն վաղվաղակի առանց իրիք յապաղանաց զինուորքն հատին զգլուխն զբռնակալին Եւգինի։ Եւ այնպէս բարձաւ չարն ի միջոյ, և եղև խաղաղութիւն զօրացն և ամենայն աշխարհացն այնոցիկ։ Իսկ Առգոբաստիոս, որ այսքան չարեաց պատճառ եղև՝ ընդ

ա. Դ. դարձեալ Թերի է. բ. Ա, ապրեցուցանել զանձն.

խուցեալ, իբր ծանեաւ ոչ[ա] լինիլ նմա կեանս, ընտանի սրով յանձն հպեցաւ. և այսպէս կործանեաց զվարսն։

ՆԼ. ԻԶ. [1]

Իսկ Թագաւորն Թէոդոս ի պատերազմական տաժանմանցն չարաչար հիւանդացեալ, [բ] և ակընկալեալ յեղելոյ ի վերայ հիւանդութենէն վախճան ունել նմա զկենացն, [գ] մեծագոյն քան զվախճանին յաղագս աշխարհական [դ] իրաց ունէր հոգս, զմտաւ ածէր որքան հասանին չարիք մարդկան՝ Թագաւորին վախճանելով։ Այնպէս կոչէր ստէպ [ե] զորդին Ոնորիոս ի Կոստանտինու-

ա. ծանուցեալ իբրու ոչ. բ. ի հիւանդութիւն անկեալ չարաչար. գ. [illegible] կենաց. դ. աշխարհի իւրաց հոգայր, զմտաւ ածեալ ինքեան ունելով զվախճան. ե. ստիպով կոչեալ.

1 Տես Սոզոմ. Է. 27. Թէոդ. Ե. 25. Ռուփ. ԺԱ. 34. Փիլոստ. ԺԱ. 2. Կաս. Թ. 50. Նիկ. ԺԲ. 50.

Եւգինիա միաւորեալ ի մահն Վաղէնտիանոսի, փախուցեալ և ոչ կարացեալ զերծանել ի հետամտիցն, ընդ ինքեան սուր եդեալ սատակեցաւ չարն չարիւ իւրով։ (Իսկ Թագաւորն յամենայնի յաղթող լինել. տայր օրհնութիւն Աստուծոյ և գոհանալով փառաւորէր ամենեքումբք զԹագաւորն անմահ.)

ԳԼ. ԺԺԴ.

Թէոդոս բարեպաշտ զՈնորիոս որդին իւր կացուցանէ Թագաւոր յարեւմտեան կողմանցն եւ ինքն խօթացեալ մեռանի Յունվարի ԺԷ:

Ի վերայ այսորիկ եղելոցս հիւանդացաւ բարեպաշտն Թէոդոս, և կոչեաց զՈնորիոս զորդին իւր ի Կոստանդնուպօլսէ, և կացոյց զնա Թագաւոր արեւմտեան կողմանցն ի Հռոմ.

(Եւ պատուիրեաց նմա իրաւամբք ունել զԹագաւորութիւն մի զոք խուել և մի զոք զրպարտել, այլ ուղղութեամբ և ար-

պաւղսէ առ ինքն, կարգել յարեւմտական կողմունսն [ա] փութայր։ Իսկ հասեալ որդւոյն ի Մեդիոլանոն, [բ] առողջացաւ յախտէն. և ասպարէզս յաղթականս կատարելով, [գ] և նախ քան զճաշն առողջ լինէր զասպարէզն տեսանելով։ Իսկ յետ ճաշոյն [դ] խաւթանայր չարաչար. և ի հանդէսն երթալ ոչ կարացեալ [ե] որդւոյն իւրում կատարեալ զասպարէզն հրամայէր. և ի հասանել գիշերոյն վախճանէր, ի հւպատւոջն Ողիմբռիոսի [զ] և Պռոբինոսի, ԺԷ Յունուարի ամսոյ։ [1] Այս էր առաջին

ա. կարգել զնա ի վերայ արեւմտային կողմանցն. բ. ի մադիոլա անդ. գ. կատարէր. դ. ճաշոյն. ե. կարէր. զ. Ողիբռոսի եւ բռնաբանոսի.

[1] Փրկ. 395 թ.

դարութեամբ քաղաքավարեալ զաշխարհ և զեկեղեցի [ա] Աստուծոյ. որով կեցջիք դու [բ] և եղբայր քո, և մի բարկացուցանէք զԱստուած և խոտորիք յարդարութենէ, այլ ուղղափառ հաւատով և ուղիղ [գ] վարուք, կացջիք մնասջիք ի սէր ամենասուրբ Երրորդութեան, և այնպէս վայելեսջիք ի խաղաղութեան զթագաւորութիւնս ձեր [դ] ի փառս Թագաւորին երկնաւորի։)

Եւ զայս ասացեալ խնդրեաց ճաշ ըստ օրինի թագաւորաց. և արար [ե] ուրախութիւն մեծ, և ետ պարգևս ամենեցուն զօրավարացն և զօրացն, և զյաղթականսն կատարէր (ի փառս և ի գովութիւն [զ] ամենեցուն արարչին Քրիստոսի Աստուծոյ. Եւ առողջ և զգաստ ի խօսել և յուտել և յըմպել ըստ նախկին ըստ իւրոյ պարկեշտութեան. և փառս տուեալ գոհացան զԱստուծոյ, և գնացին յիւրաքանչիւր տեղիս։ [է] ) Եւ նա սակաւ [ը] ինչ նիրհեալ և զի երեկոյ դարձեալ խօթացաւ, և ի մէջ գիշերին աւանդեաց զհոգին. ի Յունուարի յիւթևտասն, կեցեալ ամս

ա. Ա՝ զեկեղեցին. բ. Ն. դուք. գ. Դ. բարի դ. Դ. զԹագաւորութիւնդ. ե. Դ. արարեալ. զ. Ա՝ գովութիւնս. է. Ա, ի փառս. ը. Դ. սկսաւ։

ամ[ա] ՄՂԴ Ողիւմպիադային։ Եւ կեաց[բ] թագաւորն Թէոդոսիոս ամս Կ․[գ] թագաւորեաց ամս ԾԶ։ Ունին գիրքս[դ] ժամանակաց ԾԶ․ և ամսոց ութ։[ե]

ա. այս առաջին ամ էր․ բ. եկաց․ գ. Կ. դ. գիրք զժամանակաց․ ե. ամիսս։

Ճառընտրի հատուածը Թէոդոսի պատմութեան՝ այսքանով վերջանում է․ երկրորդ մեծ հատուածը Կոստանդին Մեծի վարքն է, հանուած ոչ թէ Սոկրատի պատմութիւնից, այլ Սեղբեստրոսի վարքից:

վաթսուն, թագաւորեալ ամս վեշտասան բարեպաշտութեամբ ի փառս ամենասուրբ Երրորդութեան.



զՍեռաստիանին և զայլոցն տաղու ցուցանելիս, զայլպանականսն ա հրամայել բերել ընդ մէջ հրապարակին։ Այս այսպէս եղեալ տեսանելով որոց ըստ Աղեքսանդրիւոյ հեթանոսացն. և առաւել իմաստասիրել խոստացելոց, զպատմութիւն ոչ կրեցին, այլ որոց նախկին գործն յաւելլին մեծագոյն։ Քանզի միով դիմամբ յիմենէ միաբանութենէ ընդդէմ քրիստոնէիցն գնացեալք զամենայն սպանութեան գործէին, փոխարինէին և քրիստոնեայքն, և ամենայն չար հեռաւէր չարի. և մինչև ցայնքան հղեցաւ մարտն, մինչև յազգութեան սպանմանցն եղեալ դադարեաց։ Քանզի կորնչէին ի հեթանոսացն սակաւք, բայց ի քրիստոնէիցն յոյժ բազումք. և վիրաւորք խուռնքանչիւր կողմանէն էին անթիւք։ Եւ ահ յեղելոցն ընկաւնէր զհեթանոսան՝ երկուցեալ ի թագաւորին մարկութենէ։ Քանզի գործեալք զոյս թուէրն ձոցա, և սպանմամբքն զպատմութիւն շիջուցեալք, այլ

ա Բն. τοὺς φαλλοὺς առնական անդամս։ Ակնարկուած է. մանաւանդ Եգիպտոսում տարածուած Փալոսի երկրպագութիւնը։

Զայս հրաման թագաւորին յայտնէր հեթանոսացն, և քանդէր զմեհեանս. և զՄիւթռոնն կործանէր, և զՍերապիոնն ա և զՄիւթռոնին զապանականն բ խորհուրդսն հրապարակաւ ծաղրէր. իսկ զՍերապիոնին և զայլոց ձաղրականս արարեալ այլպանէր։ գ Զայս տեսեալ որ յԱղեքսանդրի էին հեթանոսք, ոչ քերելով զարհամարհանս, որպէս նախկին, ի վերայ յարուցեալ քրիստոնէից բազում մահս առնէին, և հեռաւէր չար չարի, և մեռան յոլովք ի քրիստոնէից և սակաւք հեթանոսացն. և բազում վիրաւորք եղեալ յերկոցունց կողմանց. դ Ապա դադարէր մարտն յահէ ե թագաւորին շիջուցեալք զբարկութիւնն։

ա. Ա, եւ զորհալիոնն. բ. Ա. Բ. Ն. զքանական. Դ. զանապական. գ. Գ. ապանէր. դ. Ա, կողմանցն. ե. Ա, ահէ.

ոք այլ ուր Թաքչէին, իսկ բազումք և յԱղեքսանդրեայ Թաքչէին ըստ քաղաքացն բաժանեալք։ Յորոց և (ն)երկուքն քերդողք, Եղադիոս և Ամմոնիոս, առ որս ես մանուկ գոլով ի Կոստանդինուպոլիս հպեցայ։ Եղադիոս քահանայ Արամազդայ[ա] ասէր լինել. իսկ Ամմոնիոս Պիթիկայ։[բ]

Այսպէս չարին դադարեալ, ապա սատարէին Թէոփիլոսի յաւերումն մեհենացն Աղէքսանդրւոյ եպարքոսն և առաջնորդ զաւրակա(նա)ցն դասուն. զմեհեանսն կործանէր, և զկուռս դիցն հալէր ի կաթսայս. և յայլ պէտըս Աղէքսանդրւոյ եկեղեցւոյն Թագաւորին շնորհեալ զաստուածսն ի վզէնակս աղքատաց։ Զամենայն այնուհետև զդիսն խորտակեալ Թէոփիլոսի, զմին անդրի[1] ուրումն աստուծոյ անհալ պահեալ հրամայեալ, հրամայեաց հրապարակաւ յանդիման կացուցանել. զի մի, ասէ, ժամանակին յառաջեալ ուրասցին հեթանոսք

ա. Բն. τοῦ Διός Զեւսայ։
բ. Բն. ὁ πίθηκος Կապիկ։

1 Սեմիոս աստուծոյ արձանն էր.

Իսկ բազումք յԱղէքսանդրիայ փախչէին և Թագչէին հեթանոսք յայլ քաղաքսն. յորոց էին երկու քերդողք՝ Եղադիոս և Ամոնիոս[ա] ի Կոստանդնուպոլիս երթեալք. Եղադիոս էր քահանայ Արամազդայ. իսկ Ամոնիոս Պիւթիկիայ.

Եւ դադարեալ չարին, Թէոփիլիոս և եպարքոսն ձեռնամուխ լեալք այրէին զբագինսն և զկուռսն հալէին ի կաթսայս.[բ] ի պէտս եկեղեցւոյ, յարդարէին ըստ կամաց Թագաւորին. և զմին անդրի[գ] զպատկերն անհալ Թողեալ, ի ծաղանս յանպատեհ տեղւոջ դնէին ի յանդիմանութիւն նոցին. Իսկ ի միւս մեհենին[դ] քար մի յորմն խաչաձև հաստատեալ կայր.

ա. Ա, ամմնիոն. բ. Ա. կացտայս. Բ. չի.ք. գ. Բող. Զեռ. Մենանդրի. դ Ա. գեհենին.

այսպիսեաց երկրպագեալ աստուածոց։ Ի վերայ այսոցիկ յայժ տրտմեալ գիտեմ զԱմմոնիոս զքեր(դ)ող, որ ասէ, դժնդակս կրել զհեթանոսացն կրաւնս. թէ զի և ոչ զմիենն այն յանդրեացն հայեցաւ, այղ յայպանութն հեթանոսացն աղանդոյ պահի։ Իսկ Եղադիոս առ ոմանս պարծէր, որպէս թէ լինն ասս իցէ ի մարտին սպանեալ։ Որ ըստ Աղէքսանդրոյն յայնմժամ այսպէս լինէր։

## ԳԼ. ԺԷ.[1]

Իսկ ի տաճարին Սերապիոնի յաւերեցելումն և կողոպտեցելումն՝ գտանէր գիր նկարագրեալ ի քարինսն գուշեցելոցն մեհենադրաւշակաց, և էին նկարագիրքն զխաչից[2] ունելով աւրինակս։ Զայսոսիկ տեսանելով քրիստոնէիցն և հեթանոսացն իբր առ առանձինն[ա] աղանդոյ երկաքանչիւրքն պատճառէին։ Քանզի քրիստոնեայքն նշան ըստ Քրիստոսի փրկատուր չարչարանացն լինել ասել զխաչն, ընտանի լինելով զնկարագրութիւնն համարէին. իսկ հեթանոսք զինչ հաղորդութիւն Քրիստոսի և Սերապիոնի ասէին. եթէ խաչաձեւս նշան այղ ինչ քրիստոնէից և այղ ինչ հե-

ա. տղ լէւք սեպհական իւրեանցն։

1 Տես Սոզոմ. Է. 15. Ռուփին ԺԱ. 29. կաս. Թ. 29. Նիկ. ԺԲ 26.

2 Հիերոգլիֆների վրայ սովորական են խաչաձեւ նշաններ։

զոր քրիստոնեայքն իւրեանց ըստ Քրիստոսի կամաւոր չարչարանաց նշան արարին։

Իսկ հեթանոսքն ասէին. զի՞նչ կայ Քրիստոսի և կռոցն.[ա] Իսկ նոքա ասէին. Մի զարմանայք[բ] թէ աներևոյթաբար ի ձեզ մատակարարէր շնորհն Քրիստոսի Աստուծոյ զայժմուս[գ] ձեզ

ա. Ա կռոց. բ. Ա մի զարմանար. գ. Ա՝ զյայժմոյս.

թանոսաց առնէ նշան։ Սոցա վիճեցելոց, ոմանք ի հե-
թանոսացն ի քրիստոնէութիւն եկեալք, զմեհենագրաւ-
շականն գտաւղք, թարգմանեալք զխաչաձեւն նկարա-
գրութիւն առէին նշանեալք զկեանսն որ գալոցն են։
Զայս առաւել քրիստոնէիցն յայտնի հաւատն յաղթը-
տակեալք՝ ամբարհաւաճագոյն լինէին եղեալք։ Որպէս
զի և ի ձեռն այդ գրեցելոցն մեհենագրաւշականաց
յայտնիւր, յետոյ զնոյն հետայն տաճարին Սեռապիոնի,
յորժամ խաչաձեւն երևեցի նկարութիւն,[ա] վասն զի
այսմ պարտ է լինել կենացն, որ գալոցն է բազումք մատ-
չէին առ քրիստոնէութիւնն. և զմեղս խոստովանեալք
մկրտէին։ Բայց զորս ի վերայ խաչաձև նկարագրութեանն
եղեալս այսպէս լուայ. իսկ ես ոչ հռչակեմ զԵգիպ-
տացւոցն[բ] քահանայս զոր յաղագս Քրիստոսի նախա-
գիր գտաւղս[գ] տպաւորեալ խաչաձև գիր։ Քանզի թէ
յաղագս յաշխարհ իջմանն խորհուրդ էր թագուցեալ
յաւիտենիցն և յազգացն, որպէս ասէ առաքեալն,[1]
և ծածկեցաւ յիշխանէն չարութեան ի բանսարկուէն,
որչափ ևս առաւել ի պաշտաւնէից նորա ի քահանայիցն
Եգիպտացւոց այս եղև փախուցեալ։ Այդ նախախնա-

ա. Յն. χαρακτήρ.
բ. Ձեռ. ունի զէպւտացւոցն:
գ. Յն. τούς προγινωσκόντας·

1 Պօղ. Թղ. առ Կողոս. Ա. 26.

զգացուցանելով. Եւ բազմաց լուեալ հաւատացին, և խոստո-
վանեալ զմեղս իւրեանց մկրտէին։ Այսպիսիւք բանիւքս զնոսա
հաւանեցուցանէին թողուլ զթշնամին և գալ ի Քրիստոս. ըստ
առաքելոյն բացայայտեալ առ Աթենացիսն անծանօթին Աս-
տուծոյ զգիր բագնին. Նոյնպէս և՛ սա ցուցեալ եղև ըստ Նա-

մութիւնն այսպիսի յարդարեաց լինել զի զլոյսն խնդրով, զոր և յառաքելոյն Պաւղոսէ եցոյց յառաջագոյն։ Քանզի և նա յաստուածային Հոգւոյն իմաստուն եղեալ, Նմանեաւ արուեստին առ Աթենացիսն [1] զբագինն ի Հաւատն էած, յորժամ զոյս ի վերայ բագնին գրեալն իւրոյ բանին պատշաճեցոյց։ Եթէ ոչ ոք արդեաւք ասասցէ աղդել Աստուծոյ բանին յԵգիպտացւոցն քահանայս, զոր աւրինակ առ Բաղաամաւ և Կայիափաւ. քանզի և նոքա ակամայ վասն բարեացն մարգարէացան։ Այսքան վասն այսորիկ ճառեցաւ։

## Գլ. ժԸ. [2]

Իսկ Թագաւորին Թէոդոսի սակաւ ինչ յԻտալիա յամեալ՝ մեծամեծս զՀռովմայեցւոցն շահեցոյց քաղաքս. էր ինչ զոր տայր, և էր ինչ զոր բառնայր։ Քանզ(ի) շատ ինչ այնէր զի առատացոյց. և երարձ կրկին զամաւթ քաղաքին։ Մին զայս իսկ էին իսկզբանէ ի մեծն Հռոմ տունք յոյժ մեծք, յորս որ բազմութեանն հաց

1 Տես Գործք Առաք. ժէ. 22
2 Տես կաս. ի. 14. Նիկ. ժԲ. 22.

խոնարհամութեանն Աստուծոյ, որ զամենեցուն կամի զկեալն և ի գիտութիւնն Աստուծոյ գալ։

## ԳԼ. ԺԸ

*Թէ որպէս Թագաւորն Թէոդոս ժամանեալ ի Հռոմ, առնէ խաղաղութիւն, քանդայ զխայտառակարանսն այսինքն զտունն հացի. եւ զպոռնկանոցսն եւ զայլ մեքենայական տեղիսն, զհեթանոսական չար սովորութիւնսն խափանէ, եւ դառնայ ի Կոստանդնուպօլիս։*

Իսկ Թագաւորն Թէոդոս սակաւ ինչ յամեալ ի յԻտալիա և բազում խաղաղութիւնս արարեալ և իրաւունս, և յոլովս եցոյց Հռովմայեցւոցն շահս, և երարձ զամօթ քաղաքին, և

բաշխիւր լինէր. և կարգեալքն յայսոսիկ մանկիպէս[ա] Հռովմայեցւոցն լեզուաւն կոչին, յառաջեալ ժամանակին աւազակարանս զտունն առնէին։ Քանզի որպէս էին տանցն աղաւրիք ըստ խորոցն զգիրն ունելով, ըստ կողման իւրաքանչիւր տան կապիղայս յարդարեալ, և պառնիկս ի նոցա կացուցեալս ի ձեռն նոցա գերէին զբազումս, զոմանս պիտոյիւք կերակրոց մտեալս, իսկ զոմանս և վասն չար և զազիր ցանկութեան։ Քանզի յիմեմնէ մենքանայէ ի կապիղէէն յաղաւրին անկանէին. և զայս կրէին առաւել աւտարքն դիմեալք ի Հռովմ։[1] Եւ հարկաւորէին ըմբռնեալքն յաղաւրիսն գործել, իսկ բազումք ծերացան ի նոցանէ՝ ոչ թողեալք ելանել, և ի տունսն նոցա որ մեռանէր փառս ընդունէր։[բ] Ցորս-

ա. Բն. οἱ μάγκιπες - mancipes

բ. Բառացի է եւ անմիտ. Ու յընտանիս նոցա (գերելոց) մեռեալս զնոսա կարծէին։

1 Այս պատմութիւնը յիշեցնում է մեր ժողովրդական յայտնի առասպելը, որ նիւթ է ծառայել Ղ. Աղայեանի «Անահիտ» հին զրոյցին։

զխայտառականս[ա] թշնամոյն։ Էին տունք հացի ժողովարանի ի Հռոմ, և աղօրիք ըստ նմին ի տունսն, յորս աւազակարանս զտունսն արարեալ նախկին հեթանոսացն ըստ թշնամոյն ներգործութեան։ Էին տունք ի խորս տանցն և դուռք աներեւոյթապէս. և պոռնիկս ի նոսա կացուցեալ, և զբազումս նոքօք գերէին. զոմանս վասն կերակրոց և ըմպելեաց, և զոմանս վասն զազիր ցանկութեանց։ Էր և մեքենայ իմն ի կապելուղն, զոր կամէին մեքենային զըմբռնեալսն զգուշաբար յաղօրիսն ընկենուին, որք այնորիկ[բ] էին չարին գործօնեայք,[գ] մանաւանդ զօտարս, որք ոչ կարէին ելանել. այլ կալ և գործել զաղօրիսն մինչև ի մահ։ Եւ զայս այսպէս առնէին, և յոլով մանկունք

ա. Ա՝ զխայտառակարանսն. բ. Ա. յայնոքիկ. գ. Ա՝ գործունեայք.

գայթս յայս ումն ի զաւրականացն Թագաւորին Թէոդոսի անկաւ, և վասնզի զաւրականն յաղաւրիսն արգելեալ ելանել ոչ Թոյլ տուեալ, հանեալ զդ(ա)նակն զոր ունէր, հպեցաւ յարգելաւղսն. իսկ նոցա յերկիւղի հարեալ զզաւրականն արձակեցին։

Ծանուցեալ զայս Թագաւորին զհացուբարսն պատժեաց, իսկ զընդունողս աւազակացն զայնս զտունս կործանեալ հրամայեաց։ Զմին այսպիսի ծանականս Թագաւորն եբարձ ի Թագաւորեցելոյն քաղաքէ. իսկ միւս ևս այլ այնպիսի. եթէ անկանէր ի շնութիւն կին ոք, ոչ ի յուղղութիւն, այլ ի յաւելումն մեղաց պատժէին զյանցուցեալն։ Քանզի յանձուկ պոռնկանոցի արգելական ապարեալ լրբագոյնս տային պոռնկել. զանգակս Հարժել ըստ ժամանակի պիղծ գործոցն տային, որպէս զի արդեւք մի ծածկեսցի յորոցն մերձն եղեալն, այլ ի հնչմանէ շարժելոց զանգակացն Թշնամական պատիժն ամենեցունց ծանիցի։

Ծերանայրին յորոգայթս յայս։ Ումն ի զօրականաց Թագաւորին անկաւ Թէոդոս անուն, և յաղօրիսն անկեալ մեքենայիւքն արգելաւ։

Եւ հանեալ զդաշնակն ի մահ դիմեաց որք արգելուին զնա. և ոչ կարացեալ զդէմ ունել բացեալ զդուռնն.[ա] բռնաբար ի դուրս ելանէր։ Զայս ծանուցեալ Թագաւորին զհացարարսն պատժեաց և զաւազակսն մատնեաց, և զտունսն կործանեաց իսպառ։ Իսկ միւս այսպիսի օրինակաւ պոռնկոցս[բ] արարեալ ի քաղաքին լրբագոյն գիտութեամբք զանգակս արարեալ առ ի գիտել ամենեցուն ի շարժելն. ով ոք իցէ ի շնութեան ախտի։ Զայն ծանուցեալ Թագաւորին, քանդեաց զպոռնկանոցն և զլրբագոյն ախտից գիտութիւնսն և զյանդիմանութիւնսն. այլ

ա. Ա, զդուռն բ. Ա, պոռընկանոց.

Զայս ոչ տարաւ թագաւորն ծանուցեալ զկրթական-
ներն սովորութիւն. այլ աւերեաց զշարժարանսն, քանզի
այսպէս անուանէին այսպիսի պոռնկանոցս. ընդ այլ
աւրինաւք արկանել զմտանելն ի պոռնկութեան հրա-
մայեալ։ Այսպէս ի չարագունից և ի թշնամանականաց
երկուց իրաց թագաւորն Թէոդոս զքաղաքն ազատեաց
զՀռոմ։ Կարգեալ բարւոք և զայլ իւր Թողոյր ի Հռոմ
զՎաղէնտինիանոս թագաւորելով։ Իսկ ինքն որդւովն
Ոնորիւ ի Կոստանդինուպօլիս գայր. և ի նա մտանէր
ի հիւպատոսն Տատիանոսի և Սիւնմաքոսի, տասինն Նոյ-
եմբերի ամսոյ։ [1]

Գլ. ԺԹ. [2]

Իսկ ընդ նմին այն ժամանակաւն թուեցաւ և
զօրս ի վերայ զղջման եպիսկոպոսունս բառնալ յեկեղե-
ցեացն վասն այսորիկ պատճառոյ։ Յորմէ Նաւատիանոսք

1 փրկ. 391. թ.

2 Տես Սոզոմ. Է. 16. կաս. Թ. 35. Նիկ. ԺԲ. 28.

զգտեալսն ի պոռնկութեան եկեղեցւոյ օրինօք գատել։ Յայսո-
սիկ չարեաց ազատեաց զքաղաքն, և զմնացեալսն ինչ ըստ
հեթանոսութեան չար սովորութեան ի միջոյ ի բաց եբարձ,
և զբարեպաշտութիւն օրինադրեաց։ Նւ ա թողոյր զՎաղենտիա-
նոս թագաւոր ի Հռոմ ունել իրաւամբք. և ինքն որդւովն բ
իւրով Արկադեաւ գայ ի Կոստանդնուպօլիս մեծաւ փառօք, և
բազում դրուատեօք։ Եւ տօն ուրախութեան լինէր ի գալըս-
տեան թագաւորին Թէոդոսի բարեպաշտի. որ միշտ զաստուա-
ծայինսն և զեկեղեցեաց Աստուծոյ հոգայր ըստ ուղիղ հաւա-
տոյն, և զվարս առաքինութեան գեղեցկապէս յարդարէր ի փա-
ռըս երկնաւոր և անմահ թագաւորին. գ

ա. Դ. մինչեւ այստեղ չունի։ բ. Գ. որդւովքն. գ. Ա. Թագաւո
Թէոդոս.

խղճմայինս, ընդ որոց անկանին առ հալածանօքն Դեկիոսի հաղորդել ոչ կամեցան, եպիսկոպոսունքն եկեղեցական կանոնաւն զքահանայն զոր ի վերայ զղջմանն յաւելին, որպէս զի արդեւք որք յետ մկրտութեանն մեղուցեալք նախակարգեցելոյն ի վերայ այսոցիկ քահանային խոստովանեսցին զմեղս։ Այս կանոն յայղ հերձուածոն ունի մինչև ցայժմ. բայց միայն որք համազգութեանն խորհրդոյ, և որք սոցա ըստ հաւատոյն համախորհուրդք Նաւատիանոսք յոր առ զղջմամբն քահանայէ հրաժարեցին։ Բայց քանզի Նաւատիանոսքն ոչ զիսկզբանն ըղ-

## ԳԼ. ԺԸ.

*Հեզութիւն Թէոդոսի բարեպաշտի եւ այլ ուղղութիւնք նորին:*

Եւ հեզութեամբն զարմանալի էր առ ամենեսեան, և ոչ ումեք չար ի չար հատուցանէր, զի և ոչ Արիանոսացն չարայուշ եղև, որ զնորա[ա] մահ ըղձային.[բ] և զբռնակալին թագաւորել. աստեղօք իմն մոլորեալք ի մոլորութիւն սնոտիս, և ոչ ըղգան զասացեալսն՝ թէ ո՞վ գիտաց զմիտս Տեառն, կամ ո՞վ եղև նմա խորհրդակից, եթէ գիտասցէ. և դարձեալ ամենայն որ նշմարէ զաստեղս երկնից, իբրև զխոիւ ի հուր այրեսցին. յԱստուծոյ ասէր[գ] զպատիժս նոցա առնուլ։ Բայց ի քաղաքէն արտաքս հանել[դ] զայլահաւատսն, և անդ զժողովսն[ե] առնէին. բայց միայն զՆոմիոս հրամայեաց աքսորել։

Եւ զՆաւատիանոսն[զ] ընդունէր զխոստովանողս համագոյ[է] Երրորդութեանն. բայց այսու միայն որոշէին ըստ նախկին Նաւատեայ, որ առ Դեկոսիւ[ը] որք ի հալածանս ուրացան վասն ահի մահու և չարչարանաց, և յետոյ զղջացան, ոչ ընդունէին

ա. Գ. նորա. բ. Գ. Դ. ըղձանային. գ. Գ. էր զպատիժն. դ. Գ. հանել. ե. Ա՛ զժողովս: զ. Դ. զՆաւատիանոս. է. Դ. սուրբ. ը. Դ. որ առ Դեկոս եւ որք.

յաւելուածս զայս ընկալան, ուր այժմ եկեղեցեացն կալաւղք մինչև ցբազում ինչ պահեալք, առ Նեկտարիւ եպիսկոպոսաւ բազում ինչ իւր ըստ եկեղեցւոյն պատահեալ։ Կին ոմն յազնուականաց առաջի եկաց ուրում առ զղջման քահանային, և ըստ մասին խոստովան լինէր ըզմեղսն զորս գործէր յետ մկրտութեան։

Իսկ քահանայն պատուէր տայր կնոջն պահել և ստէպ աղաւթել, զի հանդերձ խոստովանութեամբն և գործ ինչ ցուցեալ ունիցի զղջմանն արժանիս։

Իսկ կնոջն յառաջելով և զայլ մեղս անձինն ապատանէր. քանզի ասէր, իբր թէ իցէ ննջեալ ընդ նմա եկեղեցւոյն սարկաւագի։ Այս ճառեալ զսարկաւագն ի պաշտամանէն արտաքս ընկենուլ յարդարեցին, իսկ խռովու-

յապաշխարութիւն, և ոչ դարձեալ յետ մկրտութեան զպոռընկեալսն.[ա] յայսոսիկ տեղի տային միմեանց, թէպէտ և ոչ կատարելապէս։ Եղև այսպիսի իմն ի Կոստանդնուպօլիս։

ԳՀ. ՃԹ.

Ցաղագս քահանային որ յայտնեաց խոստովանեալ մեղսն կնոջն ազնուականի, որ ընդ սարկաւագին։

Ի ժամանակին առ Նեքտառեաւ կին ոմն յազնուականաց[բ] առաջի կացեալ ումեմն քահանայի[գ] և խոստովանէր զմեղս, զոր գործեալ էր յետ մկրտութեան։ Իսկ քահանայն պատուէր տայր ի պահս պնտութեան լինել և ստէպ աղօթել. զի հանդերձ խոստովանութեամբն և գործ ապաշխարութեան ցուցեալ, արժանի եղեալ զղջման։ Ասէր ի խոստովանելն և զայս՝ թէ ընդ նորին եկեղեցւոյ սարկաւագի եմ մեղուցեալ։ Զայս լուեալ, զսարկաւագն ի կարգէն ի բաց ընկենոյր։ Եւ բազում

ա. Դ. զպոռնկացեալսն. բ. Ա, ազնուականաց. գ. Դ. ումեմն ի քահանայից եւ խոստովանեալ զմեղս իւր։

թիւն ընդունէր զբազմութիւնն. քանզի զայրագնէին ոչ միայն ի վերայ եկելոցն, այլ զի և եկեղեցւոյն հայհոյութիւն և թշնամանս փաղեաց:[ա]

Եւդէմոն[բ] ոմն եկեղեցւոյն քահանայ, խրատ տայր եպիսկոպոսին Նեկտարի բառնալ զօրս առ զղջմամբն քահանայ, և թոյլ տալ իւրաքանչիւր ումեք իւրով խղճիւ ի խորհրդոցն վայելել:

. Քանզի այսպէս միայն ունել զեկեղեցին անհայհոյ: Զայս յԵւդէմոնէ լուեալ իմ գրով աւանդեալ վստահացայ. քանզի որպէս ասացի բազում անգամ, զամենայն զփոյթ եդի յիւրաքանչիւր ումեքէ ի գիտնոցն ուսանել զիրսն և ստուգաբար քննել, զի մի արտաքոյ ճշմարտութեանն ինչ գրեցից:

Իսկ ես առ Եւդէմոն ապաքէն ասեմ. խորհրդակցութիւն քո, ով քահանայ, համակարգեաց զեկեղեցի, եթէ ոչ, Աստուած արդեւք հաճեսցի, բայց տեսանեմ զի պատճառ իմն տայր ոչ յանդիմանելոյ զմիմեանց ըզմեղս, և ոչ պահել զառաքելոյն պատուիրանս [1] որ ասէ. Մի հաղորդք լինիք գործոցն պղծոց խաւարի, իսկ յաւէտ և կշտամբէ: Վասն այսորիկ բաւականաբար ճառեցաւ:

ա. Ձեռ. չկան Եւ քանզի վասն այսր պատճառոյ որք եկեղեցւոյ նախատանս կրէին:

բ. Յն. Εὐδαίμων·

1 Պօղ. Թղ. առ Եփ. Ե. 11.

խռովութիւն ունէր զեկեղեցին Նաւատիանոսաց, ոչ զի այնպէս եղև լուծեալ ի կարգէն, այլ զի այպանեալք եղեն: Իսկ Նեքտարիոս տայր խրատ զմեղուցեալսն ընդունել խոստովանութեամբ յապաշխարութիւն. և պատշաճ նոցա որոշեաց ըզտեղիս և զկարգս որում ումեք արժանի իցէ, ով ոք և իցէ,

Գլ. Ի.[1]

Բայց արժանի համարիմ ոչ անյիշատակ թողուլ զորս յոլոց հերձուածոցն առաջնորդաց՝ յԱրիանոսացն [ա] ասեմ, և ի Նաւատիոսաց. և յետոյ ի Մակեդոնէն (և) Եւնոմիոսէն զհամանուանութիւնն առին. Քանզի եկեղեցին որոշեալ, ի մի անգամ որոշումն ոչ հաստատէր, այլ դարձեալք ընդդէմ ինքեանց գնային անդրէն. և զփոփոքունս և զօտարս պատճառոյն առեալք ի միմեանց մեկնէին. Բայց զիարդ, ապա և երբ, և վասն որ պատճառոյ ամենեքին և յինքեանս որոշմունս արարին, առաջելով բանիս յայտնեսցուք.

ա. Ձեռ. ունի. եւ ի Նաւատիանոսաց. սխալմամբ կրկին անգամ գրած:

1 Տես Սոզոմ. Է. 17. կաս. ԺԱ. 36. Նկփ. ԺԲ. 29.

Եւ մի անյոյս առնէք [ա] ըստ արժանեացն ապաշխարեն ի հաղորդութենէ. զի ոչ եկն Քրիստոս կոչել զարդարս, այլ զմեղաւորս յապաշխարութիւն. Այսոքիւք զնոսա խոնարհեցուցանէր առ եկեղեցիս [բ] Աստուծոյ. և որ ըստ օրէ յաւելուին ի յուղղափառացն [գ] ի կանոնագրութիւն, գիտելով զթագաւորին բարեպաշտութիւն և զուղղափառութիւն.

Գլ. ԺԺ.

*Թէ որպէս որոշմունք լինէր ամենայն հերձուածսն վասն Զատկի Նաւատիանոսացն. վասն պահոց սրբոյ Զատկին. վասն ընթերցուածոցն որոշման եւ արիանոսացն, որք որոշեալք միաբանին եւ յարին ըստ ուղղափառսն:*

Այլ և լինէր յամենայն հերձուածսն որոշմունք և բաժանմունք. Արիանոսք առ Արիանոսք [դ] և Հոգէմարտք առ Հոգէմարտք, [ե] Մակեդոնիայ այլ և Նաւատիանոսք, նմանապէս վասն

ա. Ա. ոյք Ն. Դ. որ. բ. Դ. յեկեղեցի. գ Ա, ուղղափառքն. դ. Ա՝ Դ. առ արիանոս. ե. Ա, Դ. առ հոգէմարտս.

Իսկ այս գիտելի, որպէս զի Թագաւորն Թէոդոս զոչ ոք ի սոցանէ հալածէր, բայց զի զՆեստորիոս ի Կոստանդինուպօլսի ի տունն ժողովելով և զշարագրեալ նորա բանսն ցուցանելով, որպէս զի վարդապետութեամբքն զբազումս ժանտացուցեալ, յաքսորիս առաքել հրամայեաց։ Բայց յայլոցն ոչ զոք՝ ոչ աշխատ առնէր և ոչ հաղորդս լինել նմա հարկաւորէր, այլ ամենեցունց թոյլ տայր ըստ ընտանի տեղեացն ժողովիլ, և փառաւորել զոր ինչ քրիստոնէութեանն, որպէս զի հասանել իւրաքանչիւր ոք առ նորա փառս կարասցեն. և զայլս արտաքոյ քաղաքացն Թուղացոյց աղաւթանոցաց տեղիս յարդարել։ Բայց զՆաւատիանոսսն՝ որպէս զհամաձայնսաւղս նոցայն հաւատոյ ի ներքս ի քաղաքսն զընքեանց եկեղեցիսն վստահացեալս ունել հրամայեաց. որպէս նախկինն ճառեցաւ։[1] Յաղագս որոյ յիշել փոքր ինչ ի դէպ համարիմ, առեալ վերստին սուղ ինչ։

## Գլ. ԻԱ.[2]

Զոր Նաւատիանոսացն ի Կոստանդինուպօլսի ըզքառասուն ամ նախակարգեալ կալաւ Ագեղիոս, ի Կոստանդնի ժամանակացն մինչև ցվեցերորդ ամ Թագաւորութեանն Թէոդոսի, որպէս ուրանաւր և նախկինն յի-

1 Տես նախնթաց գլ. Ժ.

2 Տես Սոզոմ Է. 18. հատ. Թ. 37. Նիկ. ԺԲ 31.

եկեղեցւոյ կարգի և կանոնի. նաև ամենայն հերձուածողք. ոմանք ևս վասն իշխանասիրութեան բաժանեալք. Եւ այսպէս անմիաբանք լեալք ընդ[ա] միմեանս վասն հաւատոյ և կրօնից, գային[բ] ի հաւատս ուղիղս և յեկեղեցւոյ Աստուծոյ[գ] սահման։[դ]

ա. Ա, չիք Ու այսպէս ընդ. բ. Ա, կային. գ. Ա, եկեղեցւոյ Աստուծոյ. դ. Ա՛ սահմանէր ի ժամանակին։ Ն. Ու սահմանս։

չեցի։[1] Իսկ վաղճանելով ձեռնադրէր եպիսկոպոս ի տեղին
իւր զՍիսինիոս.[2] որ քահանայ էր յորոց ընդ նովա-
կարգեցելոցն, իսկ բանաւոր այլ ազգ և ի Մաքսիմոսէ
իմաստասիրէ ընդ Յուլիանոսի զիմաստասիրականսն խր-
րատեալ։ Իսկ ժողովրդեանն Նաւատիանոսաց անգոանել
եթէ ոչ առաւել զՄարկիանոս զի (ի) վերայ լաւութեանն
խախտեալ ձեռնադրեաց, վասն որոյ առ Վաղէսի Նա-
ւատիանոսքն անխռովք մնային. Ագեղիոս մխիթարել
զժողովրդին զտրտմութիւն կամեցաւ, ձեռնադրէր ըզ-
Մարկիանոս։[3] Եւ սակաւ ինչ յապահովացեալ յախ-
տէն էանց յեկեղեցի, և կարդայր անձամբ ասացեալ.
զՄարկիանոս, ասէր, ընկալջիք յետ իմ, և յետ նորա
զՍիսինիոս։ Զայս ասացեալ յառաջ՝ և սակաւ ժամա-
նակ վարեալ վաղճանեցաւ։ Մարկիանոս ապա եպիսկո-
պոս Նաւատիանոսաց կարգեալ, զատեցաւ և նոցա եկե-
ղեցի յայսպիսի պատճառոյ։

Սաբբատիոս ոմն ի Հրէից քրիստոնէացեալ, ի
Մարկիանոսէ ի քահանայի նախակարգեցաւ պատիւ,
ոչինչ նուազ հրէական նախկին ըմբռնմամբ ծառայել
փութայր. հանդերձ այսուիկ և որում առ ի նոցանէ
եպիսկոպոսութիւնն ցանկայր ըմբռնեալ առնլով։ Ապա
զցանկութիւն նորա գիտակս առնէր երկուց քահանայա-
կիցս զԹեոկտիստոս[a] և զՄակարիոս, զունայնաձևեալն
առ Թագաւորութեամբն Վաղէսի զՋատկին զտաւն ի

ա. Թն. Θεόκτιστος

1 Տես Դ. Թ. Ե. 12. Ագեղիոսը եպիսկոպոս էր մոտ 40 տարի
344 մինչեւ 384 թ.

2 Տես Նախընթաց գլ. Ժ.

3 Տես Դ. գլ. ԻԹ.

Պաղոն աւանի Փռիւգւոյ, որպէս և նախկինն ասացի, [1] վճռիւք կարգեալ խորհէր։ Եւ նախ ծածկութի հագեալ ճգնութեանն, յեկեղեցւոյն գնայր, տրտմեալ ասելով առ ամենս. զի կարգեալ գնոսա ոչ արժանաւորս լինել վարուք խորհրդոցն հաղորդութեան, իսկ յառաջելով և յայտնագոյն լինէր առանձին ժողով առնել իւրհեալ։ Զայս ծանուցեալ Մարկիանոսի անգոսնէր զոր ի վերայ ձեռնադրութեանն մոլորութիւն, զի այսպէս սնափառ ամպարտիկ ի քահանայութիւն մատուցանէր։ Եւ ցանկալով ասէր, վերագոյն լինել ի վերայ փշոց դնել զձեռս իւր, քան զոր Սարբատիոսին ի քահանայութիւն նախակալցեալ է։ Եւ յարդարէր ժողով Նաւատիանոսաց եպիսկոպոսանց լինել ի Սանգարոն [2] ծովեզերին, վաճառագահ է աս Բիւթանիոյ, որ մերձ ի Հեղինուպոլիս կայ։ Ուրանաւր ժողովեալք կոչէին զՍարբատիոս և առաջի կնել առ ժողովն զպատճառս տրտմութեան հրաժարէին։ Իսկ նորա զանմիաբանութիւն տաւնին պատճառ տրտմութեանն լինէր ասացեալ. քանզի պարտ գոլ կատարել զ՚տաւնն ասէր որպէս և Հրէայքն պահեն, և որպէս ոյք ի Պազոնն [a] ժողովեալք տպաւորեցին։ Զմտաւ ածեալ որոց ժողովոյն աթոռասիրութեան աղագաւ պատճառիլ Սարբատիոսի, երդմամբ զնա հաստատէին, որպէս զի մի երբէք զեպիսկոպոսութեանն յանձն առցէ։ Իսկ նորա առ սոքաւք երդուեալ, արտաքսելէին կանոնս յաղագս տաւնին Զատկի, զոր կոչեցին անտարբերելի ասացեալք. մի արժանաւոր լինել պատճառ առ որոշումն եկեղեցւոյ

ա. ἐν Πάζῳ

1 Տես Դ. գլ. ԻԸ.

2 Սանգարիայի կամ ըստ բնագրի Անգարիայի—երկու ձեւն ել գործածական են. ժողովը տեղի ունեցաւ 591. թ.

անմիաբանութեանն տաւնի. և ոչ որոց ի Պազոնն ժողովելոց խիղճ ինչ կաթուղիկէ կանոնոյն լինել։ Քանզի և Նախնոցն,[1] և որոց հուպ յառաջեալսն անմիաբանեցելոց յաղագս այս տաւնիս, հաղորդել ընդ միմեանս, և ոչ երբեք զատիլ։ Այլ որպէս զոյս ի թագաւորեցելումն Հռովմ զՆաւատիանոս ոչ երբէք հետևիլ Հրէից. այլ առնել միշտ յետ հասարակաւորութեանն Զատկին տաւն, ոչ խղճալ առ ընտանիս հաւատոյն, յորս ոչ զնոյն աւրինակ նոցայն կատարաւղս զտաւն Զատկին։

Զայս և այսպիսիս բազումս խորհեալք սահմանեցին զանմիջոցն, որպէս ասացի, զյաղագս Զատկին կանոն. որով իւրաքանչիւր ումէք ըստ սովորութեանն զոր ի նախկին ըմբռնմանէն ունէր, առնել զտաւնն թէ կամեսցի, բայց ոչ որոշիլ առ հաղորդութիւնն, այլ որոշաբար տաւնողացն լինել։ Դարձեալ միաբանութեամբ եկեղեցւոյն սահմանիս այժմ այսորիկ յաղագս Զատկին տաւնի ի նոցանէ յայնժամ հաստատեցելոյ, Սամբատիոս երդմամբքն կապեալ, եթէ զի երբէք անմիաբանութիւն լինէր Զատկին, ինքն առանձին յառաջելով պահէր, և աւթագանելով[ա] ի կարծելում Շաբաթու աւուր կատարէր զԶատիկն և դարձեալ զնոյն հետայն հանդերձ ամենեքումբք ըստ եկեղեցեացն ժողովէր, և ի խորհրդոյն հաղորդէր։ Եւ առնէր զայս ի բազումս ժամանակս, և վասն այսորիկ թաքչիլ ի բազմաց ոչ կարէր։ Վասն որոյ և ոմանք ի պարզագունիցն, և առաւել ես ի Փռիւգիայոյ և ի Գաղատիոյ դիմեալքն, կարծելով ին-

ա Յն. νυκτερεύων.

1 Այստեղ ակնարկուած է երկրորդ դարում Զատկի մասին ծագած խնդիրը որի պատճառաւ Ս. Պօղիկարպոսը Հռովմ գնաց. տես Ն[illegible]սեր. Պատ. Եկ. Դ. 14.

քեանց յայսմանէ արդարանալ, նախանձէին զնոսայն, և զՉատիկն նորայն աւրինակաւ կատարէին լռելեայն։ Բայց Սամբատիոս ի յետինս ժամանակս և ժողովէր առանձինն, փոքր ինչ երդմանն հոգ տարեալ, և հետեւաւղացն իւր կարգեցաւ եպիսկոպոս, որպէս յառաջեալ յայտնեցուք։ [1]

## Գլ. ԻԲ. [2]

Իսկ մեզ որ ինչ հասանէ սակս Զատկին, ոչ որպէս անդէպ համարիմ ի ձեռն սղագունից ասել, ոչինչ Թուին և ոչ նախկինքն յաղագս տաւնիս իրաւաբար վիճել, և ոչ որք այժմ Հրէիցն փութացեալք հետեւիլ։ Քանզի ոչ առնուին ի միտ եթէ Հրէութեան փոխեալ ի քրիստոնէութիւն, ստոյգն և տպաւորականքն Մովսէսական աւրինացն դադարեցին. և այս աստուստ զառտնօրին ունի զյայտնութիւն։ Քանզի հրէանալ քրիստոնէից և ոչ մին աւրէնք Քրիստոսի հրամայեցին, այղ

1 Տես ստորեւ է. 11։
2 Տես Սոզոմ է. 19. կաս. Թ. 18. Նիկեփ. ԺԲ. 11–15.

Էր ի ժամանակին և վասն Զատկին Նաւատիանոսացն բաժանումն. զի ոմանք ժողով արարեալ փոխեցին զԶատիկն ըստ Հրէիցն ունել, իսկ այլք ոչ նոյնպէս, այլ ըստ լրման։ Եւ այսպիսի պատճառով բաժանի նաև այլ ևս կարգօք։

Զի էր ոմն Հրէայ, որ ըստ նոցա հաւատայ ի Տէր. և ի նմանէ զայսոսիկ ըստ Մովսէսի օրինացն վարդապետեալք, և ոչ յղեալք[ա] զառաքելոյ ասելն[բ] սկսեալ հոգւով. և արդ մարմնով վախճանիք.[գ] զի ի փոփոխել[դ] քահանայութեանն հարկէ և օրինացն փոխումն լինել.[ե] որք են ստուերք հան-

ա. Ա. յղեալք. բ. Ա' ասացեալսն. գ. Ա, Գ. վախճանեալ. դ. Ա, Գ. փոփոխիլ. ե. Ա, լինիլ. Գ. փոփոխումն.

ի հակառակէն առաքելոյն և պարծել, ոչ միայն Թլփատութիւնն ի բաց ընկենլով, այլ և վասն տաւնից ոչ կարգճալ յօրինաւորելով, ի ձեռն որոց Գաղատացւոցն[1] գրելով ասէ։

«Ասիցէք ինչ ինձ որք ընդ աւրինաւքն կամիք լինել։»

Եւ սակս վասն այսորիկ ասացեալ, ծառայ ցուցանէ զոր Հրէիցն ժողովուրդ, և ազատս կոչել զժողովեալսն առ Քրիստոս, իսկ վայժ է և ոչ երբէք խարել տաւուրս և ժամանակս և ամիսս և տարիս։ Այլ և յորում առ Կողոսացիսն[2] մեծաձայն ասէ, ստուերս լինել զպահպանութիւնան ոյովք ասէ։

«Մի ոք զձեզ պատեսցէ կերակրովք, կամ ըմպելեաւք, կամ մասամբք տաւնից, կամ ամսամտիւք, կամ շաբաթիւք, որք են ստուեր հանդերձելոցն։»

Եւ յորում առ Եբրայեցիսն,[5] իսկ ինքն զերակընքելով զայսպիսիս ասէ։

«Քանզի ի փոխել քահանայութեանն, ի հարկէ և աւրինացն փոփոխումն լինի։»

Ոչ ուրեք այժմ առաքելոյն և ոչ աւետարանիչն լուծ ծառայութեան յոլոց վերայ ի քարոզութիւնն մա-

1 Առ Գաղ. Դ. 2.
2 Առ Կողոս. Բ. 16.
3 Առ Եփես. Է. 12.

դերձողացն որ Քրիստոսիւ լուծանելոց էր.

Էր և յայլ տեղիս որ ոչ միաբանէին զտօն Զատկին տօնել" զԶատիկն՝ մանաւանդ և զպահս արբոյ Զատկին. և ա ուղղափառութեան են խոստովանողք որոշին ի միմեանց. որպէս և ամենեցուն է քաջայայտ պահոց իրք.

ա. Դ. առնել

տուցելոց եդին, այլ զտաւն Զատկին և զայլ տաւնս պատուելի ի բարեկամութիւն բարեգործեցելոցն թողին։ Ուստի վասն զի սիրեն զտաւնս մարդիկ յաղագս թուղանալոյ վաստակոցն ի նոսա, իւրաքանչիւր ոք ըստ աշխարհին որպէս կամեցան, զյիշատակ փրկատուր չարչարանացն ի սովորութենէ իմեմնէ ըստ սկսմանցն կատարեցին։ Քանզի ոչ աւրինաւք զայս պահել Փրկիչն և կամ առաքեալքն մեզ պատուիրեցին. և ոչ դատապարտութիւն կամ պատիժս կամ անէծս, որպէս Մովսէսի աւրէնքն Հրէիցն, և մեզ աւետարանքն կամ առաքեալքն սպառնացին։ Բայց միայն պատմաբար առ յանդիմանութիւն Հրէիցն, զի պղծաձայն էին ըստ տաւնիցն, յաւետարանսն ի ժամանակի բաղարջակերացն չարչարել Փրկչին վերագրեալ։ Բայց դիտումն եղև առաքելոցն ոչ վասն աւուրցն տաւնականաց աւրինադրել, այլ վարս ուղիղս և աստուածպաշտութիւնս մուծանել։ Իսկ ինձ երևի՝ եթէ զոր աւրինակ այլ ինչ շատ ըստ աշխարհացն սովորութիւն է, առ այսպէս և Զատկին տաւն յիւրաքանչիւրսն ի սովորութենէ իմեմնէ իւրացեալս ունէր զփոփոխութիւնսն, վասն և ոչ մի ինչ առաքելոցն, որպէս և ասացի, աւրինադրեցին։ Իսկ յաւէտ զի ի սովորութենէ քան յաւրինացն ի յիւրաք(անչ)իւրոցն զխըտրութիւն էառ, նոյն իսկ գործքս ցուցանեն։ Քանզի յոլովք ի Փոքր—Ասիա իսկզբանէ զչորեքտասաներորդն պահեցին՝ զշաբաթուն անտես արարեալք զոր և զայս առնելով՝ առ այլսն տաւնին կատարաւղս Զատկի ոչ երբէք լինէին միաբանք, մինչև Հռոմայ եպիսկոպոսն Բիկտոր անբաւս չեռեալ, անհաղորդութիւն ոլոց յԱսիայ Չորեքտասաներորդացն առաքեաց։ Յորոց վերայ եղեալ, Իռինէոս ա

ա․ Eἰρηναῖος.

Ղուկդունոյ որ ի Գաղիայ եպիսկոպոսն առ Բնկտոր Թղթովք քաջաբար ընթացաւ, անգոսնեալ զնորա ջերմութիւնն, ուսուցեալ, որպէս զի և նախկինքն անմիաբան կատարելով զՋատկին տաւն, ի հաղորդութենէն ոչ երբէք որոշին։ Եւ եթէ Պաւղիկարպոս Զմռնւոյ եպիսկոպոսն, որ յետոյ առ Գորգիանոսիւ վկայեալ, ընդ Անիկտոսի Հռովմայ եպիսկոպոսին հաղորդէր, ոչ ինչ խղճալով առ նա վասն տաւնին, և զի և ինքն ի յիւրում իսկ ի Զմիւռնի ի սովորութենէ, ի չորեքտասաներորդումն զՋատիկն կատարելով, որպէս և ի հինգերորդում եկեղեցական պատմութեանն ասէ Եւսեբիոս։[1] Բայց ոմանք, որպէս ասացի, ըստ Փռքր—Ասիոյ զչորեքտասաներորդն խտրէին. իսկ ոմանք յարեւելականսն կողմունս զշաբաթ տաւնին պահել, իսկ անմիաբանք լինէին առ ամիսն։ Քանզի ոմանք Հրէիցն զստոյգն ոչ բառնալով, պարտ է հետեւիլ վասն տաւնին, ասէին. իսկ ոմանք յետ հասարակաւորութեանն միշտ կատարէին, զհամատաւնելն ընդ Հրէիցն հատանելով ասացեալ. Արեգականն միշտ ի Խոյն լինել պարտ զոլ զտաւնն կատարել, ի Քսանթեկի[ա] ըստ Անտիոքացւոցն ամսոյ, իսկ յԱպրիէլի ըստ Հռովմայեցւոցն։ Եւ զայս առնել հաւանեալս, ոչ որոց այժմ ըստ ամենայնի մոլորելոց Հրէիցս, այլ առաջնոցն, և Յովսիպոսի ըստ որոց նա յերրորդ Սկզբնաբանութեանն[բ] ասէ այսպէս։ Այլ սոքա առ ինքեանս երկձայնէին. բայց այլքն ամենայն մինչեւ յարեւմտականսն կողմունսն, և նոյն Ովկեանոս[գ] յետ հասարակաւորութեանն ի նախկին իմեմնէ աւանդութենէ

ա· τῷ Ξανθικῷ.

բ· τῆς Ἰουδαϊκῆς Ἀρχαιολογίας·

գ· τοῦ ὠκεανοῦ,

1 Եւս. Պ. Եկ. Ե. 24.

զՋատիկն արարեալ գտանին։ Քանզի սոքա ամենեքեան զայս առնելով յեղանակ, ոչ երբէք առ ինքեանս անմիաբանեցան, և ոչ որպէս ոմանք զիրարեցան. որ առ Կոստանդնու զժողովն զտաւնս զայս էյեղ։ Որոց[ա] անմիաբանն լինէին յաղագս այս տաւնիս գրելով յորդորեաց, որպէս զի նոքա սակաւք գոլով նմանեսցին բազմաց։ Այլ բովանդակիմբ զԹագաւորին Թուղթ յերրորդ գիրսն Եւսեբիոսի, յորոց ի Վարսն Կոստանդնի գտցես։ Իսկ որ ի նմա յաղագս տաւնին Զատկի մասն, թէ պատեհ է ասելս,[բ] զայս ունի աւրինակ։

«Ի կարգ բարեվայելուչ, զոր ամենայն, որք արևմը-
«տականաց և հարաւականաց և հիւսիսականաց տիեզե-
«րաց կողմանց պահեն եկեղեցիք, և ոմանք ըստ արևե-
«լիցն տեղեաց։ Որոյ աղագաւ առ այժմուս ունել բար-
«ւոք համարեցան, և ես իսկ զձերոյ հպատութեանդ[գ]
«հերձուած յանձն առի, զոր և Հռովմայեցւոցն քաղաք,
«և Իտաղիա, և ամենայն Ափրիկէ, Եգիպտոս, Սպանիա,
«Գաղիա, Բռետանիա, Լիբիւա, Ասիական կարգաւորու-
«թիւն[դ] և Պոնդականն և Կիւլիկիա, միով կամաւք և հա-
«մաձայնութեամբ պահէ, կամաւորաբար զայս և ձերդ
«ընկալցի հանճար. համարեալ որպէս զի ոչ միայն
«առաւել է որ ըստ նախկին ասացեալդ է տեղեաց եկե-
«ղեցեացն թիւ, այլ իբրև զի զայս առաւել միաբան
«զամենայն միաբան է խորհել, զոր և ստոյգն բան պահանջել
«համարի, և ոչ մի ինչ ընդ Հրէից երդմնազանցու-
թեան ունի հաղորդութիւն։» Այսպիսի ունէր Թագաւո-

ա. Բն. աւել ունի. Քանզի ինքնին Կոստանդին որոց։
բ. Բն. չկայ. «Թէ պատեհ է ասելս։»
գ. τῇ ἀγχινοίᾳ
դ. Ձեռ. ունի. «կարգագորութիւն։»

րին Թուղթ։ Իսկ որք զՉորեքտասաներորդացն ասացին, ի Յովհաննիսէ առաքելոյ զխոտորութիւն Չորեքտասաներորդի աւանդել նոցա․ իսկ որք ըստ Հռովմայն և արևմտական կողմանցն զառաքեալսն զՊետրոս և զՊաւղոս զանգին աւանդելով սովորութիւն ասեն։ Այլ ոչ ոք ի սոցանէ գրով ունի տալ զյաղագս այսորիկ զյայտնութիւն․ զի միայն ի սովորութենէ իմեմնէ առաւել ըստ աշխարհացն, որպէս ասացի, կատարի Զատկին տաւն։ Եւ անդուստ կարծեմ․ և ոչ միոյ յազանդոյն զնոյն պահել սովորութիւն, թէպէտ զնոյնս յաղագս աստուածայնւոյն ողջոյնեսցէ զփառս։[ա] Քանզի և որք նոյն հաւատոյ գոլով անմիաբանք լինէին առ ինքեանց սովորութիւն, վասն որոյ փոքր ինչ յաղագս եկեղեցւոյն սովորութեան յարակարգեալ ոչ է անպատեհ։ Եւ առժամայն իսկ որ յառաջ քան Զատիկն պահս, այլ ազգ յայլս պատահէ գտանել։ Քանզի որք ի Հռոմն երիս նախ քան զԶատիկն շաբաթս, բայց ի շաբաթուէ և ի կիւրակէէ, համակարգեալս պահեն․ իսկ որք յԻւղիւրիա և յամենայն Ելլադիա, և յԱղեքսանդրիա, յառաջ քան զվեց շաբաթս զոր նախ քան Զատիկն պահս պահեն՝ քառաս-

ա․ Միտքն է․ ընկալցի զկարծիս, զհաւատ:

Զի ի Հռոմ զտօն Զատկին ըստ փրկաւէտ յարութեան տօնէին և սուրբ զպահսն[ա] ունէին ի մտէն մինչև յելս պահոց[բ] Զատկին․ և ոչ ի շաբաթու և ոչ ի կիւրակէի այլափոխել զկերակուրսն․ Եւ ի Պետրոսէ և ի Պօղոսէ ասեն[գ] ունել զաւանդութիւնս տօնից[դ] և պահոց յիսնօրէից․

ա․ Ա, զսուրբ պահսն․ բ․ Ա, ի մտի պահել մինչեւ ելս պահոց սրբոյ Զատկին․ գ․ Դ․ ասէին․ դ․ Դ․ անօթից:

ներքոյդս զնա անուանելով։ Իսկ ուր ի նոսա այգքն յառաջ քան զեւթն շաբաթս աւուրն պահոց սկսեալք, ողբականաւորս ընդ մէջս պահելով, ոչինչ նուազ և սոքա քառասներորդս զժամանակն զայս կոչեն։ Եւ ազքանչանալ է ինձ ի վերայ այսոցիկ․ զիա՞րդ սոքա առ թիւ աւուրցն երկձայնելով, քառասներորդս զսա կոչեն և այլք այլ բան անուանակոչութեանն բանագիւտ լինելով բացատրէին։ Բայց է գտանել ոչ միայն առ թիւ աւուրցն անմիաբանս, այլ և զբացակայութիւնն կերակրոց ոչ նման արարեալ․ Քանզի ոմանք յամենայն շնչաւորաց ի բաց կան․ իսկ ոմանք ի շնչաւորացն ի ձկանէ միայն յետ պահոցն հաղորդէին, ի ջրոց և զնոսա ըստ Մովսէսի լինել ասելով։ Իսկ այլք և ի պարարտականացն մրգոց և ի ձուոց ի բաց կան․ և ոմանք ի չոր հացէ

Իսկ Ասիա և Եփեսոս նմանապէս[ա] Յովհաննէ աւետարանչէ ունէին զաւոն Զատկին կատարել ըստ աւետաւոր յարութեան և պահօք․ նմանապէս[բ] յարաձգել[գ] ի մուտս պահոցն մինչև ցկատարումն յիսնեկին։[դ] Իսկ որ յԱղեքսանդրիայ՝ քառասներորդ[ե] անուանելով ցօր[զ] բարեբանութեան սրբապէս կատարելով․ և յետ այնորիկ զշաբաթն առաւելագոյն պատուով[է] և ընթերցուածովք ի Զատիկն հասուցանէին զփառս․ Թէպէտ և ըստ հին[ը] Զատկին պատարագն ընծայաբերի, այլ և ըստ խորհրդածութեան աւուրցն․ բայց ի շաբաթու և ի կիւրակէի փրկական պատարագն միշտ կատարի յեկեղեցիսն Աստուծոյ։ Է ի նոսա[թ] որոշումն կերակրոց[ժ] զորս յուշ արարաք․ Ոմանք յամենայն շնչաւորաց, բայց ի ձկանց և ի ձիթոյ և ի գինւոյ ճաշակեալ, ոմանք յամենայն աւուրս, և կէսք ի շաբաթու և ի կիւրակէի միայն, և ոմանք հաց և աղ միայն և ջուր,

ա․ Ա, նոյնպէս․ բ․ Ա, նոյնպէս․ գ․ Ա․ Բ․ Ն․ յետաձգել․ դ․ Ա, Գ․ յիսներեկին․ ե․ Ա, քառասներորդաց․ զ․ Ա, ցոր․ Դ․ յոր․ է․ Դ․ պատուովք ը․ Գ․ ըստ հինն․ թ․ Գ․ էին սորա․ ժ․ Ա, կերակրոցն․

հաղորդին, իսկ այլք և ոչ յայսմանէ։ Իսկ այղք մինչև ցիններորդ ժամն պահեալք անընդհատաբար ունին զկերակուրսն, և այլ յայլոց պահպանութիւն բեւլք եղեալք հանդիպին։ Եւ զի ոչ ոք վասն այսորիկ գրով ունի ցուցանել պատուիրան, յայտնի է որպէս զի և յաղագս այսորիկ իւրաքանչիւր ուրուք կամաց և յաւժարութեան։ Հրամայեցին առաքեալքն վասն ժուժկալութեան,[ա] զի իւրաքանչիւր ոք մի՛ երկիւղիւ աւրինացն, և մի՛ ի հարկէ զբարին գործեսցէ։ Այսպիսի վասն պահոցն անմիաբանութիւն ըստ եկեղեցեացն էր, իսկ վասն հաւաքմանցն այղ այսպիսի։ Որոց ամենայն ուրեք տիեզերաց եկեղեցեաց յաւուր շաբաթու ըստ ամենայն շաբաթուց պարականցեալ կատարելով զխորհուրդս,[բ]

ա. Բն. չկայ վասն ժուժկալութեան։
բ. τὰ μυστήρια.

և են ոմանք որ յամենայն պարարտ կերակրոց և յըմպելեաց ի շաբաթու և ի կիւրակէի, բայց ի մսոյ արգելեալք։ Եւ այս որպիսի[ա] օրինակաւ և իցէ, եթէ պարկեշտութեամբ և եթէ անպարկեշտութեամբ իմանալի է այսպէս։ Զի առաքեալքն այսպիսի ընտրութիւն ոչ արարին վասն Նորահաւատիցն. բայց ի կարևորացս յայսցանէ. ի բաց կալ ի զոհելոյ[բ] կռոց, և ի պոռնկութենէ և ի հեղձուցելոյ, և յարիւնէ.[գ] որոց պահեալ զանձինս բարիոք գործիցէք, ողջ լիջիք։[դ] Այսպէս առ սակաւ սակաւ ածեն ի ճշմարտութիւն և ոչ բռնաւորապէս։ Ինքէն իսկ որք պարկեշտ և ողջամիտք ի հաւատս և ի վարս զառաքելոցն վարս ստացան, իսկ[ե] ծոյլք ոչ բռնադատեալք պատժեցան. զի իւրում Տեառն կայ կամ անկանի, բայց կեցցէ, զի կարող է Տէրն հաստատել զնա։

ա. Ա, Դ. Գ. եւ այսպիսի. բ Գ. ի զոհից. գ. Ա՛ Դ. յարենէ. դ. Դ. լերուք. ե. Ա, Գ. որք.

Իսկ որք յԱղեքսանդրիա և ի Հռովմ յիմեմնէ նախկին աւանդութենէ զայս առնել հրաժարեցին։ Իսկ Եգուպտացիքն դրացիք Աղեքսանդրացեացն գոլով, և որք ի Թէբայիդա բնակեալքն, ի շաբաթու առնեն զժողովսն, բայց ոչ երբեք սովորութիւն քրիստոնէիցն է ի խորհրդոցն հաղորդիլ։ Քանզի յետ խրախանալոյն և ի կերակրոցն յագենալոյն, ընդ երեկոյն մատուցեալ, ի խորհրդոցն հաղորդին։ Իսկ անդէն յԱղեքսանդրիա ի չորեքշաբաթւոջ և ի կոչեցելումն ուրբաթու գիրք ընթեռնուն, և վարդապետք զայսոսիկ թարգմանեն, և ամենայն ինչ պաշտամանն և հաւաքմանն լինի, բայց ի խորհրդոց պատարագէն։ Եւ այս է սովորութիւն նախկին յԱղեքսանդրիա. քանզի և Որիգէն զշատսն յաւուրսն յայսոսիկ երևի առ եկեղեցեաւն ուսուցեալ։ Որ իմաստուն գոլով վարդապետ և գիտելով զի անկարութիւն Մովսէսի տկարանայ առ զգիրն բացատրութիւն, զի յաղագս Զատկին բան ի տեսութիւն նքեր, մինչ Զատիկ լինել

Էին ոմանք, որ և զպատարագն խափանել ի կիւրակէի և ի շաբաթու վասն պնդանալոյ պահոց, բայց այս ոչ ընկալեալ եղև ի սրբոց.[ա] որ զյիշումն յարութեան Քրիստոսի պատարագաւն, և զնահատակութիւն սրբոց անտես ի մոռացօնս[բ] լիցի եկեղեցւոյ. Էր և որ յամենայն երեկոյս աւուրց ընթերցուած ընթեռնուին, բայց ի կիւրակէի և ի շաբաթու, որ յերրորդ ժամուն է ըստ խորհրդեանն. և էր որ յուրբաթու[գ] և չորեքշաբթւոջ միայն. Եւ այսպէս զանազանեալք ի միմեանս էր հաղորդութիւն ընդ միմեանս սիրով հոգւոյն. Զի և զՈրոգինին ասելն բան վասն Զատկին բարիոք է յուշ առնել. որ

ա. Գ. ի պահոց. բ. Դ. ի մոռացօնս. գ. Դ. յուրբաթուջ Գ. ուրբաթու.

ասելով, զոր Փրկիչն կատարեաց, ազդեալ ընդդէմ հակառակ զաւրութեանցն ի ձեռն նորա մերձանալ խաչիւն, անդենիւս այսուիկ հակառակ բանսարկուին հպեալ։ Իսկ ի նմին Աղեքսանդրիա ընթերցաւղք և սաղրինչք անընտրելիք, եթէ երեխայք իցեն և եթէ հաւատացեալք, իսկ որոց ամենայնն եկեղեցեաց հաւատարիմն ի կարգս յայս նախակարգելոցս։

Իսկ ես ծանեայ և միւս սովորութիւն ի Թեսաղիա եղեալ. քանզի ուխտաւոր անդ, եթէ ընդ իւրում կնոջ յոր աւրինաւք ժողովրդական[ա] զոլով ածեալ լինէր ննջէր, ելանէր ի քարոզութենէն. իսկ որոց յարևելս ամենայն ուխտաւորաց, և նոյն եպիսկոպոսին կամաւք ի բաց կացելոց, եթէ կամէին՝ ոչ հարկաւ աւրինացն զայս առնողացն։[բ] Քանզի բազումք ի նոցանէ ի ժամանակի եպիսկոպոսութեանն և մանկունս յաւրինաւք կնոջէն արարին։ Այլ որոյ ի Թեսաղիա սովորութեանն առաջնորդ Եղիեդորոս Տրիկկուսայ[գ] եպիսկոպոս, ոչ

ա. Ուխտաւոր եւ ժողովրդական յուն. κληρικός բառի թարգմանութիւնն է։
բ առնէին։
գ. Ἡλιόδωρος Τρίκκης.

անկարութիւն ասէ զօրէնսն, զի օրինակ էր ճշմարտութեան մարմնաւոր պատուիրանն։ Եւ յաղագս Զատկին ասէ. զյարութեան օր զոր Փրկիչն չարչարանօք խաչին կատարեաց. զփըրկութիւն ընդդէմ հակառակ զօրութեանցն, կոխեալ[ա] զմահ- և բառնալով զմեղս և աւետեօք յարութեանն[բ] տօնեսցուք. ասէ, նորոգեալք ի հնութենէն։ Այսպէս և զպահս[գ] ի նոյն յարէ։ Եւ էր որ ընդ օրինաւոր[դ] ամուսնացեալսն ոչ արգե-

ա. Դ. զօրութեան կոխել զմահ. բ Ա, աւետեօք եւ յարութեան. գ. Դ. զպահս. դ. Դ. օրինակաւոր.

տաէր վաստակ լինել զփակկանոն գիրս,[ա] զորս մանուկ զոլով շարադրեաց, և Եթեոպականսն[բ] յորջորջեաց. և պահի սովորութիւնս այս ի Թեսաղոնիկէ, և ի նմին Մակեդոնիա.[գ] Բայց այլ սովորութիւն ի Թեսաղիայ գիտեմ եղեալ. յաւուրս Զատկին միայն մկրտեն. վասն որոյ բայց ի սակաւուցն այլքն ոչ մկրտեալք մեռանին։ Իսկ յԱնտիոքիա Ասորեացն եկեղեցին հակադարձեալ ունի զգիրն.[դ] քանզի ոչ յարևելս կոյս սեղանն, այլ յարեմուտս հայի։ Իսկ յԵղադիա, և յԵրուսաղէմ, (և) ի Թեսաղիա, զորս ի լուցմունսն աղաւթս[ե] հաւասար որոց ի Կոստանդնուպօլիս Նաւատիանոսացն առնեն։ Նոյնպէս և ի Կեսարիա Կապադովկիոյ (և) ի Կիպրոս յաւուր կիւրակէի և ի շաբաթու միշտ յերեկորիսն քահանայքըն և եպիսկոպոսունքն զգրեանն թարգմանեն։ Իսկ ուր յԵղիապոնտոսի Նաւատիանոսքն ոչ նմանս ըստ ամե-

ա. Որոյ արարեալ էր գիրս յաղագս տռփանաց ἐρωτικὰ βιβλία.

բ. Αἰθιοπικά.

գ Թն. աւել ունի. καὶ Ἑλλάδι

դ. θέσις սովորութիւն.

ե. Յուն. λυχναψία բառը միանգամ այսպէս է թարգմանել, երկրորդ անգամ, մի երեք տող ներքեւ ․յերեկորիսն․ որ աւելի լաւ է, քանի որ յուն բառը ․ճրագավառութիւն․ կնշանակէ։ Այդ հին բառի տեղ յունարէն ժամակարգութեան մէջ այժմ գործ է ածուում ․λυχνικός իսկ Լատիներէն lucernarium ·

լուին ի պահոն լինել, և էր որ ծանր[ա]․ և տաղտուկ և գարշելի այս ի պահոն լինել[բ] և կամ տեսանել. և տեսեալ զայս՝ որոշէին ի բաց, և էր որ ի կամս իւրաքանչիւրոցն թողեալ.[գ] զի մի փորձիցին ի սատանայէ. Եւ յաղագս այսորիկ այսքան բաւականասցի։

ա. Դ. ծաղր. բ. Ա, Գ. լինել. գ. Դ. թողուլ։

նայնի որոց ի Կոստանդինուպօղսի Նաւատիանոսացն առնեն զաղաւթսն։ Իսկ մերձաւորաբար ըստ բազում իրաց ի կալման եկեղեցւոյն բնաւ իսկ ամենայն ուրեք յաղագս որոց յամենայն աղանդս, ոչ է գտանել միաբանեալս միմեանց զերկուս ի միասին։

Քահանայ յԱղէքսանդրիայ ոչ հպի խաւսիւք. և այս սկիզբն էառ, յորմէ հետէ Արիոս զեկեղեցին խռովեցոյց։ Ի Հռոմ զամենայն շաբաթս պահեն. ի Կեսարիա Կապպադովկիոյ զորս յետ մկրտութեանն մեղուցեալս որոշեն ի հաղորդութենէ, որպէս և Նաւատիանոսքն։ Ջնոյնս և Մակեդոնիանոսքն որք յԵղիսպոնտոսի առնեն, և որք յԱսիա Չորեքտասաներորդականքն, Նաւատիանոսք որք ի Փռիւգիա վասն ամուսնութեան ոչ ընդունին. իսկ ի Կոստանդինուպոլսի ոչ յայտնաբար ընդունին, և ոչ յայտնապէս հանեն. բայց յարեւմտայինսն կողմունս յայտնաբար ընդունին։ Այլ քանզի պատճառք, որպէս համարիմ, այսպիսի անմիաբանութեանս որք ըստ ժամանակին եկեղեցեաց առաջնորդս, որք առ ընտանի նախկին ըմբռնումն հնազանդիցն տպաւորեցին.[ա] իսկ նոքա զայս առնլով, աւրէնս ի վերայ եղելոցն առաքեցին։ Բայց զամենայն զորս յեկեղեցիսն սովորութիւնս ըստ քաղաքաց և աշխարհաց եղեալսն՝ գրել գործ է, իսկ յաւէտ և անկարութիւն։ Այլ բաւականք են և յարակարգեալքն տաւն Ջատկի ի սովորութենէ իմ(եմ)նէ ըստ աշխարհացն . . էսպէսն[բ] ունելով պատ(իւ)։ Վասն որոյ յաւելորդա(բա)նին որք ԾՆիկւոյն ժո(ղով) յեղուլ զՋատիկն գի(ար)եալք.

ա. Որք առ ընտանի... տպաւորեցին չկայ բն.

բ. Բն. ունի διάφορον այլապէս։ Ձեռ. մի քանի բառերի երկու կամ երեք տառը պատռած է։

քանզի անդր (ժող)ովեալքն զսակաւս ի միաբանութիւն ածել փութային առ որս յոյժ յոլովս յառաջագոյն։ Եւ զի անդէն իսկ առաքելոցն ժամանակաւքն բազում անմիաբանութիւնք վասն այսոցիկ լինէին, և ոչ ի նոցանէ յառաքելոցն ծածկեցաւ, որպէս վկայեն Գիրք Գործոցն։ Եւ վասն զի ծանեան առաքեալքն խռովութիւն յանմիաբանութենէն հեթանոսաց շարժեալ հաւատացելոցն, ամենեքեան ի միասին եղեալք աւրէնս աստուածայինս հաստատեցին, աւրինակաւ թղթոյ գրեալք։ Որով ի ծանրագունէն վասն այսպիսեացս ծառայութեան և հակառակաբանութեան զհաւատացեալսն ազատեց(ին)։ և տպաւորեն զգու(շո)ւթիւն ուղիղ քաղաք(աւ)որութեանն, և զառ (ճշ)մարիտ աստուածպաշտութիւնն ածումն ուսուց(ին), միայն զոլքանս (կա)րեւորապէսն պարտ է պահել ազդեալք։ Այլ թուղթն յառաքելոցն Գործս[ա] վերագրի. բայց ոչինչ արգելու և աստանաւր յարակարգել զնա։

«Առաքեալք և երիցունք և եղբարք, որոց ըստ Ան-
«տիոքայ և Ասորեաց և Կիւղիկիայ եղբարցդ որոց ի հե-
«թանոսաց,[բ] խնդալ։ Քանզի լուաք՝ թէ ոմանք եկեալք
«ի մէնջ խռովեցուցին զձեզ բանիւք, խախտելով զան-
«ձինս ձեր. ասելով թլփատիլ և պահել զաւրէնսն որոց
«ոչ պատուիրեցաք, թուեցաւ մեզ եղելոցս միանգամ
«արս ընտրեալս առաքեալ առ ձեզ ընդ սիրելեաց մե-
«րոց Բառնաբայ և Պաւղոսի, արք որք մատնեցին զան-
«ձինս իւրեանց վասն անուան Տեառն մերոյ Յիսուսի
«Քրիստոսի։ Արդ առաքեցաք զՅուդայ և զՇիղա[գ] և

ա. Գործք Առաքելոց։
բ. Թե. ἐξ ἐθνῶν-ի ժողովրդոց։
գ. Σίλαν

ոցա ի բանից զնոյն ասել: Զի հաճոյ է
-ոյն Սրբոյ և մեզ, մի առաւել բեռն դնել ձեզ, բայց
ի կարևորացս յայսոցիկ. ի բաց կալ ի զոհելոց կռոց,
« և յարենէ, և ի հեղձուցելոյ, և ի պոռնկութենէ, յո-
«րոց պահել զանձինս, բարւոք գործիցէք. ողջ լերուք»:

Բայց այս Թուեցաւ Աստուծոյ. քանզի զայս առէ
Թուղթն, Թէ Թուեցաւ Հոգւոյն Սրբոյ, մի առաւել
դնել ծանրութիւն բայց յորոց ի հարկէ պարտիցն պա-
հել: Իսկ ոմանց ի սոցանէ անփոյթ արարեալ զամե-
նայն պոռնկութիւն համարին. իսկ վասն աւուրցն տաւ-
նից հոգւովք չափ ջանան. և ընդդիմադարձուցեալք
զԱստուծոյ պատուիրանն, և աւրինադրել անձամբք,
իսկ առ ոչինչ զառաքելոցն աւրինադրութիւն եդեալ,
մոռանալով զանձինս, եթէ հակառակ որոց Աստուծոյն
Թուեցաւ գործեն: Բայց կարելի էր այսուհետև զյա-
ղագս Զատկին բան առաւել ձգել, և ցուցանել որպէս
զի և (ոչ) Հրէայք զատոյգն որոց յաղագս Զատկին ժա-
մանակացն կամ աւրինակաւ պահեն. որպէս և Սամա-
րացիքն, հերձուած գ(ոչ)ով Հրէից, մինչ յետ հասա-
րակաւորութեանն [ա] զտաւնս զայս կատարեն: Այլ այս-
պիսի պատճառս առանձնոյ պէտս ունի և երկայնագոյն
արտադրութեան: Բայց զայս ասեմ, եթէ որք սիրենն
Հրէից հետեւիլ, և առ տեղիս ստուգաբանենն, ոչինչ
եղանակաւ յայսցանէ անկանիլ պարտին: Քանզի Թէ
բնաւ միայն ստուգաբանել կամին, ոչ պարտին աւուրս
միայն կամ ամիսս խորել, այլ և զայլոն որքան Քրիս-
տոս ընդ աւրինաւքն եղեալ գործէր հրէաբար, կամ
համբերէր ի Հրէից անիրաւել, կամ բարեգործելով
զամենեսին, աւրինակաբար գործէր: Ի նաւն մտեալ ու-

ա. μετ' Ισημερίαν հաւասարութիւն տունջեան եւ գիշերոյ:

տուցանէր. ի վերնատանն նմա Զատիկն պատրաստել հրամայէր. էջ կապեալ լուծանել հրամայէր. զբարձաւղն զսափոր ջրոյն նշան տայր փութաւղաց(ն) ի Զատիկն. և այղս բե(ւ)րս ուրքան յԱւետարան(ս) գրին: Եւ յայսցանէ ոչինչ մարմնապէս պահել փութան, ուր վասն տաւնին արդարանալն կարծեն: Քանզի ոչ ոք ի վարդապետացն ինաւէ երբէք վարդապետութիւնս առնէ, և ոչ ի վերնատան ոք զԶատիկն յամենայնէ կատարեալ փութացաւ, ոչ էջ կապեալ լուծանելով առ ժամայն լուծին, ոչ սափոր ջրոյ բառնալ ումեք հրամայեցին, զի նշանքն լցցին. քանզի զայսոսիկ և զայսպիսիս ըզՀրէականս առաւել համարէր: Քանզի Հրէայքն զպատահմունս մարմնոցն առաւել քան զհոգւոցն ապրեցուցանել փութան. վասն որոյ և պարտաւորք անիծիցն լինին, զի զաւրէնսն Մովսէսի յաւրինակս և ոչ ի ճշմարտութիւն առնուն: Իսկ հրէասէրքն զայսոսիկ ի տեսութիւն հանեն, և վասն աւուրցն և ամսոցն զաննուէրն կամին պատերազմ, զյաղագս այսորիկ տեսութիւն կոխեալք: Որպէս զի և նոցա ըստ այսմ մասին նման Հրէիցն դատապարտիլ, զոր ի յանիծիցն համար[ա] յանձին բերեալ: Այղ վասն այսորիկ բաւականանալ համարիմ:

Բայց ընթացուք յառաջիկայն, ուրում փոքր ինչ Նախկին արարաք յիշատակ. ուրպէսզի եկեղեցին որոշեալ եկաց ի նախկին որոշմանն. և որպէս զի զատեալքն ընդդէմ միմեանց դարձեալ գնային. և զփոքունս և ըզտուղս պատճառոյն առեալք ի միմեանց որոշէին: Բայց արդ՝ Նաւատիանոսքն վասն տաւնի Զատկի զատեցան. և վասն այսորիկ ոչ մին միայն որոշումն ընդունին. քանզի այղք այղ ազգս ըստ աշխարհացն,[բ] ոչ միայն վասն

ա. Բն. ἡ ψῆφος դատավճիռ: բ. Բն. ἡ ἐπαρχία.

ամսոց, այլ և վասն շաբաթու աւուրցն, և վասն ոչին-չիցն տարբերեալք, և երբեմն խղճան, իսկ երբեմն և զուգին:

ԳԼ. ԻԳ.[1]

Բայց լինի և յԱրիանոսն որոշումն վասն այս պատ-ճառիս, որ յամենայն ժամ ի նոսա հերձուածական խնդիրքն յայն տեղիսն իմն զբանս նոցա յառաջ բերեն: Քանզի յեկեղեցւոջ հաւատացեալ է. Աստուած Հայր լինել Որդւոյ Բանին. խնդիր անկաւ ի նոսա եթէ հնա՞ր իցէ և նախակարգեալ զՈրդի Աստուած կոչել Հայր. քանզի զԱստուծոյ բան ոչ ի հաւրէ ծնանիլ, այլ յո-չէից գոլ[ա] կարծէին. առ նախկին և գերագոյն գլուխն սխալեալք վայելչաբար յաղագս սոսկ անուանն յայն-տեղի վիճաբանութիւն անկան: Դոռոթէոս որ յԱն-տիոքա ի նոցանէ կոչեցեալ ասէր. ոչ հնար լինել Հայր գոլ կամ կոչել, ոչ գոլ Որդւոյ:[ա] Իսկ Մարինոս [զ]որ ի Թիրակայ նախ քան զԴոռոթէոս լինէր ընտրեալ, ի հակառակն բան նախակայ իւրոյ: Վասն այսորիկ լինի ի նոսա հերձուածն, և մեկնեալք յաղագս նախաճառեալն բանի, առանձինն իւրաքանչիւր ոք զժողովսն առնէին. որոց ընդ Դէոդոռոսիւն կարգեցելոց.[բ] իսկ որք Մարի-նոսին հետեւաւղք առանձին յարդարեալ տունս աղաւ-թից զժողովսն առնէին, ասելով. զՀայր լինել միշտ Հայր, և ոչ գոլով Որդւոյ: Եւ կոչէին սոքա Փսաթիւ-ռիանոսք,[գ] զի Թէոկտիստոս ոմն Փսաթիւռիայ վաճառ ազգաւ Ասորի, ջերմին[դ] բանիւ կայր համակարգեալ.

1 Տես Սոզոմ. Է. 17. Կասիոդ. Թ. 40. Նիկ. ԺԲ. 30.

ա. Բն. եթէ ոչ իցէ որդի. բ. Բն. ունել ունի. յընտանի տեղիսն նոցին.. գ. οἱ Ψαθυριανοί դ. διαπύρως հրատապ.

իսկ նոցա հետևեցաւ և Սեղինաս [ա] Գոթացն եպիսկոպոս, այր խառնակ ունելով զազգն. ի հաւրէ Գութ գոլով, իսկ ի մաւրէ Փռիւգացի, [1] և վասն այսորիկ երկոքին լեզուաւքն պատրաստաբար ըստ հերձուածոյն նոցա ուսուցանէր: Բայց յետոյ և սոքա անջատեցան, Մարիանոսի առ Ագապինոս ցասուցեալ, զոր յինքն յեպիսկոպոսութիւն Եփեսոսի նախակարգէր:

Իսկ սոքա ոչ վասն աղանդոյ, այլ սակս նախաթոռութեանն տրտմեալք պատերազմէին ընդ միմեանս, Գոթացն յաւելեալ առ Ագապիոս: Վասն որոյ բազմաց յորոց ընդ նոքաւք ժառանգաւորացն, առեալ զառ ի սնափառութենէն ծնեալ մարտն նոցա, մերժելով ի նոցանէ ի համագոյութեանն հաւատ յաւելուին, և կարգէին ի սրբագոյն մերում եկեղեցւոջն, ի Նեկտառէ եպիսկոպոսապետէ վերստին ձեռնադրեալք: [բ] Բայց Արիանոսքն զերեսուն [2] ամ զատեալք ի միմեանց, յետոյ առ թագաւորութեամբն Նոր Թէոդոսի ի հւպատւոջն Նո-

ա. Σεληνᾶς.

բ. Վերջի Նախադասութիւնը «եւ կարգէին....ձեռնադրեալք» չկայ բնագրի մէջ:

1 Սա առաջ Ուլփիլասի գրագիրն էր. յետոյ նորան յաջորդեց.

2 Ադդ. միացումը եղաւ 419 թ. բաժանումը 394 թ. էր. ուրեմն ընդամենը 25 տարի է եւ ոչ երեսուն.

Բայց Արիանոսք որոշեալք [ա] ի միմեանց, յետոյ ի բաց թողեալ զվիճաբանութիւն, և միաբանեցան ընդ ուղղափառ հաւատս եկեղեցւոյ Աստուծոյ մերոյ ի հաւատս և ի կարգս մեր. և դարձեալ վերստին առնուն ձեռնադրութիւն ի Նեքտարիայ ի Կոստանդնուպոլսի հայրապետէն. [բ] Իսկ որք այլք [գ] ի Կոստանդնուպոլիս էին զղջացեալք յետ երեսուն ամի առ Թէոդոսիւ՝ գան ի խոստովանութիւն համագոյութեան, և օրէնս հաստատեն մի

ա. Ն. Դ. որոշեալ. բ. Դ. եպիսկոպոսէ. գ. Ա՛ Դ. այլ.

րին ի զաւրավարէն Պղինտասայ, որ Փսաթիւռիանոսացն հերձուածոյն էր, հաւանեալք ի վիճաբանութենէն ի բաց կացին, և միաւորեցան, որպէս զի աւրէնս սահմանեալ ոչ երբէք յիշել զգլուխն. վասն որոյ անջատեցան։

Բայց զայս ի Կոստանտինուպոլսի միայն առնել կարէին. քանզի որք յայլ քաղաքսն թէ ուրանաւր և հանդիպէին գոլով տակաւին միան որոշեալք։ Այսքան և վասն որ յԱրիանոսսն որոշմանն ճառեցաւ։

Գլ. ԻԴ.[1]

Այլ և ոչ որք յԵւնոմիոս են անանջատելիք միացին. քանզի ինքն Եւնոմիոս անդէն նախկին[2] Եւդոքսի ձեռնադրեալ զնա եպիսկոպոս Կիւզիկոնի որոշէր՝ պատճառս առնլով, զի զԱւէտիոս[ա] զնորա վարդապետն արտաքս հանեալ ոչ ընդունէր. իսկ որք ի նմանէ ի զանազանս որոշեցան։ Քանզի նախ Թէոփռոնիոս ոմն ի Կապպադովկեցւոյ յԵւնոմիոսէ զհերձուածականսն խրատեալ, և մեծամասն արար զԱրիստոտէլի ստորագրու-

ա. Aëtius

1 Տես Սոզ. Զ. 26 եւ Է. 17.
2 Տես Դ. գլ. Է. ԺԴ.

յիշել զգլուխ մոլորութեան այն[ա] ի վերայ իւրեանց, այլ ուղիղ հաւատոյ պատկառեալք[բ] ի փառս Աստուծոյ կեցցուք. Այս լինէր ի Կոստանդնուպոլիս։ Եւ որ Նոմիոսին[գ] և նորա բաժանեալք և Նոմիոս՝ նախկին իսկ յԵւդոքսէ յԱրիոսէ ձեռնադրեալ. զի ոչ ընկալաւ զնորա վարդապետն[դ] զԱյետիոս՝ արտաքս լինել ի նմանէ, ոչ միաւորի ընդ նմա և ըստ նորա դաժանութեան

ա. Ա, Դ. Գ. մոլորութեանն անուն. բ. Ա Բ. պատկերեալք. գ. Ա՛ Դ. եւ Նոմիոսին: դ. Դ. զվարդապետութիւն.

թիւնսն և զոր յաղագս մեկնութեանն իմացեալ, շարակածեալ գրեան զոր յաղագս կրթութեան մտաց գրեաց։ Զանձրացեալ ընդ իւր հնազանդակիցսն, իբր ապստամբեալ ի նոցանէ արտաքս ելանէր. և ժողովեալ զնոսա յինքենէ համանուանութիւն հերձուածոյն էթող։

Իսկ ի Կոստանտինուպոլսի Եւտիքէս ոմն ի ցուրտ[ա] խնդրոյ որոշեցաւ յԵւնոմիանոսացն, և այժմ զժողովս առանձինն առնէ։ Արդ՝ անուանին Թէոփռոնիոսի հետևողքն Եւնոմիանոսք — Թէոփռոնիանոսք, իսկ Եւտիքէոսին՝ Եւնոմիանոսք — Եւտիքիանոսք։ Բայց որպիսի ցուրտ բանք են վասն որոյ որոշին, աւանդեալ պատմութեամբս ոչ արժանի լինել ընտրեցի, զի մի յայդս խոնարհեցուցից զբանս. բայց զի զմկրտութիւնն արտաքսագրեցին, քանզի ոչ յԵրրորդութիւնն, այլ ի Քրիստոսի մկրտեն մահ։ Բայց եղև ի ժամանակս ինչ ի Մակեդովնիանոսսն երկպառակութիւն. Եւտռոպիոսի քահանայի առանձին ժողովս առնելով, իսկ Կառտերիոսի ոչ միաւորել ընդ նմա։ Թերևս արդեւք և այլ աղանդք են ի սոցանէ եղեալք յայդս ի քաղաքացն։ Բայց ես ի Կոստանտինուպօլիս զյամուռն առնելով, յորում ծնայն իսկ

ա. Թեթեւ.

ուսմանս։ Եւ այլք յայլոյ[ա] որոշեալ և անմիաբանք[բ] լինեալ՝ գային և խոստովան լինէին[գ] ըստ մերում հաւատոյ ուղղափառութեան և կարգաց եկեղեցւոյ։ Եւ զի երկայնագոյն է զամենայն աղանդիցն ասել զբաժանմունս, մանաւանդ երկիւղ է որ ոչ գիտեմ զբովանդակն հասու լինել և ասել. որ ի Կոստանդնուպօլիս եմ ծնեալ և սնեալ և ուսեալ՝ անդորրագոյնս պատմեմ, որքան մեզ է հասանելի որք աստէն[դ] լինալք, որոց և

ա. Ա, յայլ. բ. Ա, անմիաբան. գ. Դ. խոստովանէին ըստ մերոյ. դ. Ա՝ Գ. անդէն.

և անայ, զորս ի նմա եղեալսն անդայրրադդոյն պատմեմ, զի զամանս յայտնեսցէ և ինքնատեսաբար պատմեսցի, և զի պայծառագոյնք որ անդն եղեալքն, և արժանիք յիշատակիք յիշատակի կարգեցան. բայց այս ապա ոչ ըստ նմին ժամանակին, այլ ըստ յոլովից պատահեաց լինել ժամանակաց։ Իսկ դու թէ կամիս ուսանել զանուանս զանազանից հերձուածոց, զվերագրեալսն Անկիւրոս գիրս [ա] զոր շարագրեաց Կիւպրացեացն եպիսկոպոս Եպիփանիոս, ընթեռնլով ուսջիր։

Բայց յաշխարհական գործքն դարձեալ խառնակէին յայսպիսի պատճառոյ։

ա. Αγκυρωτῷ βιβλίῳ Եպիփանի գրուածքն էր, որ 373 կամ 374 արդէն գրուած պատրաստ էր։

ակամատես իսկ. իսկ վասն այլոցն մի զամենայն ի մէնջ պահանջեր։ [ա]

Իսկ եթէ կամիս ուսանել զաղանդից զպէսպէս [բ] և զանազանս բանից և գործոց հերձուածոց [գ] չար յիմարութիւնս, [դ] ընթերցիր զԱնիւկորոս գիրս, զոր շարագրեաց [ե] երանելին Եպիփան եպիսկոպոս Կիւպրացի. և նա ուսուցանէ զհերձուածս.

ՃԺԱ.

Ցաղագս յարութեան մանկանցն Եփեսոսի։

(Ի սոյն ժամանակի յարեան մանկունքն որ յԵփեսոս է ի Հողքոս [գ] լերինն. յայրի անդ ննջեցին, ի Դիկոսէ հալածքրիստոնէից. որ նախախնամութիւն [է] Աստուծոյ յարութ, նոցա շնորհել, հաստատուն արար զյոյս յարութեանն. յարեան ոմանք յաղանդաւորաց եպիսկոպոսաց որք ասէ թէ չիք յարութիւն մարմնոյ. զի հոգիքն ընդունին զհա

ա. Ա, պահանջես. բ. Ա՝ պէսպէս. գ. Ա, հերձուածոյ. դ. Ա յութիւնս. Դ. չարասացութիւնս. Գ. հմայութիւնս ե. Ա՝ Դ. շարագ զ. Դ. յողոքու. է. Ա, նախախնամութեամբն.

## ԳԼ. ԻԵ.[1]

Ըստ[1] արևմտից կողմանց քերդող ոմն, որոյ անուն

[1] Ճառընտրի հատուածը քաղուածք է, ինչպէս նկատեցինք, Թէոդոսի պատմութեանը, որ էջ. 415 վերջանում է եւ սկսում դարձեալ այս տեղից, բայց քաղուածք անողը կապը հաստատելու համար աւելցրել է մի կտոր.

· Բայց ընթացուք յառաջիկայն, որոյ փոքր ինչ արարաք սկիզբն յիշատակի։ Նախկին որպէս զի եկեղեցին որոշեալ ի նախկի եղելում որոշմանն ոչ եկաց. եւ որպէս զատեալք ի միմեանց՝ ընդդէմ կալով գնային եւ զփոքունս եւ զսուտս պատճառոյն՝ առաքեալք առ միմեանս որոշեն ըստ արեւմտից կողմանն, քերդողովն որում անունն էր Դինիսիոս . . . .

[1] Տես Է. 22. 24. Թէոդ. Գ. Եկ. Դ. 24. Ռուփ. ԺԱ. 3։ Զօսիմոս. Դ. 53. Փիլոստորգ. ԺԱ. 1. Կաս. Թ. 45. Նիկ. ԺԲ. 39.

ցուժն յԱստուծոյ ըստ բարեաց գործոց[ա] և լինին որպէս հըրեշտակս ի յերկինս, և մեղաւորացն հոգիքն ընդ իւրեանց ընդունին զպատիժս ըստ արժանեացն ի Տեառնէ։ Եւ վասն այսորիկ[բ] խնդրոյ, բարեպաշտն Թէոդոս ուժգին գողմամբ[գ] և արտասուօք հրամայէր աղօթս առնել առ Աստուած ուղղափառացըն, զի եղիցի ողորմութիւն յԱստուծոյ. և ինքն ևս առաւել ի ջանս աղօթիցն և ի պահս[դ] պնդեալ աքնութեամբ և արտասուօք։ Եւ լսելի եղև սքանչելի ցուցակութեամբ յարութիւն հոգւոց և մարմնոց ի մանկանցն[ե] եւթանց, որք յարեան և երևեցան թագաւորին և բազմաց, և խօսեցան վասն յարութեան մեռելոց, և դարձեալ նիրհեցին և ի քուն մտին մինչև ի հասարակաց[զ] յարութիւն, որպէս և ամենեցուն է քաջայայտնի ի նոցին պատմութեանց։ Յայսոսիկ գոհանալով առա-

ա. Դ. պարգեւաց. բ. Դ. այսր. գ. Ա գոչմամբ, միւսները ղողմամբ. դ. Դ. աղօթից եւ պահոց. ե. Ա, ի մարմնականացն. զ. Ա, Դ. ի հասարակ.

Նուգենիս,[ա] Հռովմայականս խրատեալ բանս. սորա թողեալ զխրատարանսն ի թագաւորականսն զինուորէր,[բ] և ընդդիմագրաւ թագաւորին լինէր կարգեալ։ Եւ վասն լինելոյն նորա բանաւոր, առաւել քան զայլսն պատուեալ զբախտ նուաստաբար ոչ տարաւ. այլ գործակից առեալ զԱռգոբաստիս,[գ] որ ի փոքր Գաղատւոյն դիմեալ զաւուրական դասու առաջնորդ հանդիպելով,[դ] իսկ աւրինակաւ դժնդակ և պղծասպանագոյն։ Խորհին[ե] երկոքինն զմահ թագաւորին Վաղէնտինիանոսի, յորս ի վերայ

ա. Դինիսոս. բ. ի թագաւորութեանն զինուորեալ. գ. Αργοβάστης այլ ցոր ծառգոյբաստիս. դ. հանդիպեալ. ե. խորհէին զմահս.

.եւ հաստատէր ի հաւատս և փառաւորէր զարարիչն Աստուած։[1])

ԳԼ ՃԺԵ.

*Թէ ո՞ պէս քերթողն Նուգինէս բռնացեալ, ի քուն անկողնի խեղդէ զթագաւորն Վաղէնտիանոս, կալնու զՀռոմ եւ զիշխանութիւն.*

Յետ այսորիկ յառնէ[ա] աշխարհական պատերազմ յարեմուտս. Քերդող ոմն Նուգինէս[բ] անուն ի Հռոմայ,[գ] հռետոր իմաստասէր անուանի լինել. սորա[դ] թողեալ զխրատականսն զինուորէր և դիմագրաւ պատուի ի թագաւորէն.[ե] առաւել քան զամենեսեան իմաստուն և բանաւոր երևեալ փառաւորի. Նա ամբարտաւանեալ չար իմացութեամբ զմահ թագաւորին.[զ] և առնու գործակից իւր զփոքր Գաղատիա զզօրավար թագաւորին զԱռգոբոստիս, և երկոքին խորհէին զմահ թագաւորին Վաղէնտիանոսի. և ներքինիսն[է] որ ի վերայ յօթանոցին[ը] մեծամեծ խոստմամբ խորհրդակից առնէ մահու. և նոքա պատրեալք

[1] Չիք ի բն առեալ է ի վկ. ՆւԹՆ Մանկ. Նփեսս. զոր տես ի վկ. Ս. Հ. Ա. 446. 502։

ա. Ա, առնէ բ. Քոլ. Զեռ. Նուգինէս. գ. Ա, Հռոմա. դ. Ա, որ. ե. Ա, Գ. վասն առաւել. զ. Ն. եւ ամբարտաւանութեամբ չար իմանա վասս մահու թագաւորի. է. Գ. ներքինին. ը. Գ աթանոցին.

ուԹանոցին[ա] ներքինիս հուանականաւք մտեալս։[բ]

Իսկ նոցա[գ] խոստմունս որոց ունէին պատուոցն[դ] ընկալեալք, ի.նոյն ժաման զԹագաւորն խեղդեցին։ Եւ առժամայն Եւգենիս կալաւղ[ե] որոց յարեւմտայինսն կողմունս իրաց եղեալ, գործէր ոլքան և փայել էր ի բռնակալէ լինել անտեղի իրք։[զ]

Զայս լուեալ Թագաւորին Թէոդոսի, և նոյն ժամայն է ի հոգս մեծամեծս մտանէր, երկրորդ հանդիսից յետ[ը] Մաքսիմոսի առաջի կացելոյ ճանապարհի։ Այս կալեալ[թ] զհեծելական զաւրութիւնսն,[ժ] և զորդին Ոնորէոս[ժա] յորջորջեալ ի Թագաւոր յիւրում[ժբ] երրորդ հիւպատուոջն, և Արքադանտիոսի,[ժգ] տասինն Յունուարի

ա. աղաւԹանոցին, բ. հաւատարիմս մտեալ. գ. ի նոցանէ. դ. ըզպատիւն. ե. Ուգինի կալով որ էր յարեւմտային կողմանս տիրացեալ, գործէր. զ. իրս. է. Չիք. ը. որ յետ. Թ. ը կալեալ. ժ. զաւրսն. ժա. յորում անուն Ոնորիոս. ժբ. իւր. ժգ. Արկադիոս.

Ի խոստմանցն ի քուն յանկողնին ի գիշերի խեղդեցին զԹագաւորն Վաղէնտիանոս։ Եւ անդէն կալաւ զհռովմ և զիշխանուԹիւն նորա։

ԳԼ. ՃԺԲ.

Թէ որպէս Թէոդոս լուեալ զսպանումն Վաղէնտիանոսի, հասանէ զօրօքն ի Գաղայ, մարտնչի ընդ բռնակալին, պարտի բռնակալն եւ հատնի գլուխն:

Զայս լուեալ Մեծին Թէոդոսի Թագաւորին ի հոգս առաւել մտանէր. և ժողովեալ զզօրս իւր, և զմիւս որդին զՈնորիոս[ա] Թագաւորեցուցանէր ի Կոստանդնուպօլիս. Թողեալ զերկուսին որդիսն զԱրկադիոս և զՈնորիոս Թագաւորս ի Կոստանդ-

ա. Ա. Գ. զՆոնորիոս.

ամսոյ, [ա] առժամայն յարևմտայինսն կողմունսն [բ] փութանակի գնայր, թողեալ զերկուս որդիսն իւր ի Կոստանտինուպոլսի թագաւորս: [1] Իսկ երթալով նորա ի յընդդէմ [գ] Նեգինի, բազումք որոց յայնկոյս Իստրոսի բարբարոսացն հետևէին նմա, մարտակից լինել նմա ընդդէմ բռնակալին յաւժարեալք: Իսկ յոչ բազում անցեալ ժամանակի, [դ] Գաղիա հասանէր զաւրաւ. բազմաւ. քան(զի) անդ պատրաստէր բռնակալն ունելով և նորա զաւրս բիւր բազումս: Եւ լինէր խառնակումն առ գետոյն [ե] որ կոչի Փռիգդոն [զ] [2]. և ըստ որում կողման Հռովմայեցիք առ Հռովմայեցիս պատերազմէին, հաւասար լինէր մրցումն ի կողմանն յայնմիկ մարտին, իսկ ըստ որում մարտակիցքն [է] Թէոդոսի բարբարոսքն, ըստ այնմ կողման ոյք Նեգինին առաւել զաւրանային:

ա. յամսեանն Յունուարի ի տասն. բ. յարեւմտային կողմն. գ. ընդդէմ Եւգինիա՝ ի պատերազմ. դ. Զիք |յօժարեալք..... ի ժամանակի. ե. գետովն. զ. Փռիւգիոն. է. բարեպաշտին

1 Փրկ. 399 թ.

2 Բնագրի մէջ այստեղ բաց է թողնուած մի փոքրիկ հատուած. որ չկայ նաեւ մեր թարգմանութեան մէջ. ասել է՝ թարգմանութեան օրինակն էլ է առանց այդ այժմ կորած հատուածի եղել.

Նուպօլիս, և ինքն գնայր ընդդէմ բռնակալին այնորիկ Եւգինի ի մարտ: Եւ հասեալ ի Գաղիայ [ա] յոլովք ի բարբարոսացն գան առ Թէոդոս մարտակից լինել ընդ նմա ընդդէմ բռնակալին: Իսկ յետ ոչ բազում աւուրց գայ և բռնակալն բազում բիւրաւոր զօրօք. և խմբեցաւ պատերազմն առ գետովն որ կոչի Փռիգդոն. [բ] և ըստ որում Հռովմայեցիք էին պատերազմեալ, հաւասար էր մրցումն և ոչ մի զմի ոք յաղթահարէր. [գ] իսկ որ այլազգացն էր զօրն, պարտեցան ի բռնակալի զօրաց ի մարտին:

ա. Բոլ. Ձեռ. ի Գաղատիա. բ. Դ. չիք. գ. Դ. եւ ոչ մի զի մի ոք յաղթահարեաց.

Իսկ Թագաւորին տեսեալ զբարբարոսն լքեալս, և ի մեծ հանդիսի եղեալ, ի գետին ընկենլով զինքն ա աւգնական կոչէր զԱստուած, և ի խնդրոյն ոչ նուաղէր։ Քանզի Բանկուրիոս ա զաւրավարն 1 նորա այնքան քաջալերեցաւ, բ որպէս զի նախկին հանդիսաւորաւքն բ ընթանայր, ըստ որում կողման բարբարոսքն գ վարեալք լինէին, և պատառէր զռազմունս դ պատերազմականացն, և դարձուցանէր ի փախուստ 2 զորս յառաջ

ա. մինչեւ առ զխնդրեալին ի սիրոյն իւրմէ ի Քրիստոսէ, զի Բազկուրիոս. բ. քաջացաւ գ. զորս բարբարոսացն. դ. Ճառընտիրը ունի ուղիղ. «զռազմունս». մեր Ձեռ. «զբաղմունս»։

ա. Բն. Βακούριος.
բ. Բն. πρωταγωνισταῖς.

1 Բակուրի մասին Զոսիմոսը (Դ. 53) գրում է. Ἔλκων μὲν ἐξ Ἀρμενίας τὸ γένος, ἔξω δὲ πάσης κακοηθείας ἀνήρ, μετὰ τοῦ καὶ τὰ πολεμικὰ πεπαιδεῦσθαι Ազգաւ ի Հայաստանէ ծագեալ, այր անարատ յամենայն վատթարութենէ. ընդ նմին եւ քաջ վարժեալ ի գործս պատերազմաց։

2 Զոսիմոսը պատմում է, որ շատերը. նրանց թւում եւ Բակուրը ընկնում են պատերազմի դաշտում։

Իսկ բարեպաշտն Թէոդոս ա տեսեալ պարտեալ և լքեալ զայլազգիսն, որ մարտակիցք նորա էին, ի մեծի հանդիսի լեալ ընկէց զինքն ի գետին, և մեծաւ հառաչանօք և արտասուօք յօգնութիւն կոչէր զԱստուած, և ոչ անտես լինէր ի խնդրոյն. զի անդէն զօրացեալ եղեն ի վերին զօրութենէն զօրք Թագաւորին։ Զի Բակուրիոս բ զօրավար Թագաւորին՝ զօրացեալ նախկին հանդիսաւորօքն ընթանայր ի կողմն բարբարոսացն, և պատառէր գ զռազմ մարտին, և դարձուցանէր ի փախուստ զմարտուցեալսն. և բազում մահս և վիրաւորս առնէր ի թշնամեացն, և փրկէր զբարբարոսն դ անվնաս։

ա. Դ. Թէոս. բ. Բոլ. Ձեռ. Բանգուրիոս. գ. Դ. պարտէր. դ. Գ. բարբարոսացն.

սակաւ ինչ վարաւղս։[ա] Բայց լինէր և այլ զարմանալի իրք[բ] ի վերայ՝ ի ձեռն Աստուծոյ շնորհին սքանչման արժանի. քանզի հողմոյ ուժգնի[գ] շնչեալ զվտարեալս[դ] նետս յորոց Եւգենի հակառակ նոցունց շրջեալ յեղոյր,[ե] և ոչ այս միայն, այլ և զընդդիմամարտիցն ուժգին դիմմամբ բերէր ընդդէմ նոցա։ Այսքան զաւրեցին[զ] Թագաւորին աղաւթք առ Աստուած։ Այսու աւրինակաւ եղելոյ պատերազմին պարտման, բռնակալն է ընթացեալ յոտս Թագաւորին աղաչէր փրկութեան հանդիպիլ. այլ առ ոտից Թագաւորին ի զաւրականացն գլուխն հատեալ լինէր։ Այս գործ(ի) ի վեցին Սեպտեմբերի ամսոյ, ի հիւպատուջն Արկադիա երրորդին և Ոնորի երկրորդին։[1] Իսկ Աւգոբաստիս որ այսքան չարեաց պատճառն, յետ երկուց աւուրց պատերազմին փա-

ա զորս….վարաւղս Չիք. բ. իրս ի վերին ընծեռեալ. գ. զի հողմ ուժգին. դ. զվարողսն. ե. զեղոյր. զ. այնքան զաւրացեալ. է. եղեալ պատերազմ Թագաւորին, բռնակալին

1 Փրկ. 391 Թ.

Բայց լինէր և այլ զարմանալիք. հողմ ուժգին հարեալ ընդդէմ բռնակալին և զօրաց նորա, և զնետս իւրեանց ի ձգողսն դարձուցանէր և սատակէր. Զի տէր էր որ պատերազմէր ընդ բռնակալին ընդունելով զԹագաւորին աղօթս, զի այնպէս ծրգնեալ հանդիսաւոր աղօթիւք մինչև պարտեցաւ բռնակալն. Զի[ա] ոչ էր հնար զնմա փախչել, ի հեզութիւն Թագաւորին վստահացեալ ընթացեալ յոտս Թագաւորին անկանէր, աղաչէր զփրկութիւն և զապրել անձին։[բ] Իսկ անդէն վաղվաղակի առանց իրիք յապաղանաց զինուորքն հատին զգլուխն զբռնակալին Եւգինի. Եւ այնպէս բարձաւ չարն ի միջոյ, և եղև խաղաղութիւն զօրացն և ամենայն աշխարհացն այնոցիկ. Իսկ Աւգոբաստիոս, որ այսքան չարեաց պատճառ եղև՝ ընդ

ա. Դ. դարձեալ Թերի է. բ. Ա, ապրեցուցանել զանձն.

խուցեալ, իբր ծանեաւ ոչ^ա լինիլ նմա կեանս, ընտանի սրով յանձն հպեցաւ. և այսպէս կործանեաց զվարսն։

ԻԼ. ԻՋ.[1]

Իսկ թագաւորն Թէոդոս ի պատերազմական տաժանմանցն չարաչար հիւանդացեալ, ^բ և ակընկալեալ յեղելոյ ի վերայ հիւանդութենէն վաղճան ունել նմա զկենացն, ^գ մեծագոյն քան զվաղճանին յաղագս աշխարհական ^դ իրաց ունէր հոգս, զմտաւ ածէր որքան հասանին չարիք մարդկան՝ թագաւորին վաղճանելով։ Ապա կոչէր ստէպ ^ե զորդին Ոնորիոս ի Կոստանտինու-

ա. ծանուցեալ իբրու ոչ. բ. ի հիւանդութիւն անկեալ չարաչար. գ. ի կենաց. դ. աշխարհի իրաց հոգայր, զմտաւ ածեալ ինքեան ունելով զվախճան. ե. ստիպով կոչեալ.

1 Տես Սոզոմ. Է. 27. Թէոդ. Ե. 25. Ռուփ. ԺԱ. 34. Փիլոստ. ԺԱ. 2. Կաս. Թ. 50. Նիկ. ԺԲ. 50.

Եւգինիա միաւորեալ ի մահն Վաղէնտիանոսի, փախուցեալ և ոչ կարացեալ զերծանել ի հետամտիցն, ընդ ինքեան սուր եդեալ սատակեցաւ չարն չարիւ իւրով։ (Իսկ թագաւորն յամենայնի յաղթող լիեալ· տայր օրհնութիւն Աստուծոյ և գոհանալով փառաւորէր ամենեքումբք զթագաւորն անմահ.)

ԳԼ. ՃԺԴ.

Թէոդոս բարեպաշտ զՈնորիոս որդին իւր կացուցանէ թագաւոր յարեւմտեան կողմանցն եւ ինքն խօթացեալ մեռանի Յունվարի ԺԷ:

Ի վերայ այսորիկ եղելոցս հիւանդացաւ բարեպաշտն Թէոդոս, և կոչեաց զՈնորիոս զորդին իւր ի Կոստանդնուպօլսէ, և կացոյց զնա թագաւոր արեւմտեան կողմանցն ի Հռոմ։

(Եւ պատուիրեաց նմա իրաւամբք ունել զթագաւորութիւն մի զօք խուել և մի զոք զրպարտել· այլ ուղղութեամբ և ար-

պաւղոսէ առ ինքն, կարգել յարեւմտական կողմանսն [ա] փութայր: Իսկ հասեալ որդւոյն ի Մեդիոլանոն, [բ] առողջացաւ յախտէն. և ասպարէզս յաղթականս կատարելով, [գ] և նախ քան զճաշն առողջ լինէր զասպարէզն տեսանելով: Իսկ յետ ճաշոյն [դ] խաւթանայր չարաչար. և ի հանդէսն երթալ ոչ կարացեալ [ե] որդւոյն իւրում կատարեալ զասպարէզն հրամայէր. և ի հասանել գիշերոյն վախճանէր, ի հւպատուոջն Ողիմբռիոսի [զ] և Պռոբինոսի, ԺԷ Յունուարի ամսոյ: [1] Այս էր առաջին

ա. կարգել զնա ի վերայ արեւմտային կողմանցն. բ. ի մաղիոլա անող. գ. կատարէր. դ. ճաշոյն. ե. կարէր. զ. Ողիբռոսի եւ բռնաքանոսի.

1 Փրկ. 395 թ.

գարութեամբ քաղաքավարեալ զաշխարհ և զեկեղեցի [ա] Աստուծոյ. որով կեցջիք դու [բ] և եղբայր քո, և մի բարկացուցանէք զԱստուած և խոտորիք յարդարութենէ, այլ ուղղափառ հաւատով և ուղիղ [գ] վարուք, կացջիք մնասջիք ի սէր ամենասուրբ Երրորդութեան, և այնպէս վայելեսջիք ի խաղաղութեան զթագաւորութիւնս ձեր [դ] ի փառս Թագաւորին երկնաւորի.)

Եւ զայս ասացեալ խնդրեաց ճաշ ըստ օրինի թագաւորաց. և արար [ե] ուրախութիւն մեծ, և ետ պարգևս ամենեցուն զօրավարացն և զօրացն, և զյաղթականսն կատարէր (ի փառս և ի գովութիւն [զ] ամենեցուն արարչին Քրիստոսի Աստուծոյ. Եւ առողջ և զգաստ ի խօսել և յուտել և յըմպել ըստ նախկին ըստ իւրոյ պարկեշտութեան. և փառս տուեալ գոհացան զԱստուծոյ, և գնացին յիւրաքանչիւր տեղիս. [է] ) Եւ նա սակաւ [ը] ինչ նիրհեալ և զի երեկոյ՝ դարձեալ խօթացաւ, և ի մէջ գիշերին աւանդեաց զհոգին. ի Յունուարի յիւթևտասն, կեցեալ ամ

ա. Ա՝ զեկեղեցին. բ. Ն. դուք. գ. Դ. բարի դ. Դ. զթագաւորութիւնդ. ե. Դ. արարեալ. զ. Ա՝ գովութիւնս. է. Ա, ի փառս. ը. Դ. սկսաւ:

ամ [ա] ՄՂԴ Ողիւմպիադայն։ Եւ կեաց [բ] Թագաւորն Թէոդոսիոս ամս Կ․ [գ] Թագաւորեաց ամս ՃՋ։ Ունին գիրքս [դ] ժամանակաց ՃՋ․ և ամսոց ութ։ [ե]

ա․ այս առաջին ամ էր․ բ․ եկաց․ գ․ Կ․ դ․ գիրք զժամանակաց․ ե․ ամիսս։

Ճառընտրի հատուածը Թէոդոսի պատմութեան՝ այսքանով վերջանում է. երկրորդ մեծ հատուածը Կոստանդին Մեծի վարքն է, հանուած ոչ թէ Սոկրատի պատմութիւնից, այլ Սեղբեստրոսի վարքից։

վաթսուն, Թագաւորեալ ամս վեշտասան բարեպաշտութեամբ ի փառս ամենասուրբ Երրորդութեան․



# ԳԻՐՔ ՎԵՑԵՐՈՐԴ

## ՅԱՌԱՋԱԲԱՆ

Զհրամանդ քո, քաջհանդ Աստուծոյ այրդ Թէոդորէ,[1] ի հնգեսին առաջարկեալ գիրսն որպէս էր վարկանիլ խորհրդիւ վաստակեցաք, զոր ի Կոստանդնի ժամանակացն եկեղեցական պատմութիւն շարագրեալք։

Բայց եղիցի մեզ մի փութալ առ պատմութիւնն, զմտաւ ածեալք որպէս զի թէ փութասցուք գեղեցկաբանութեան հպել, թերևս և ի բաց անկանիցիմք ի դիտմանէն։ Իսկ թէ տիպեսցուք, ոչ այսպիսիս ամենևիմբ կարասցուք գրել, որպիսի ի հին պատմագրացն ճառի, որովք աճեցանել և վատթարագոյն առնել կարծիցէ ոք զիրսն։ Ապա և ոչ երբէք տնաւրինեսցէ զբաղումն և զտգէտս բանն, որք զգործսն միայն կամիցին գիտել, և ոչ ընդ բան իբր գեղեցիկ շարակարծեալ աքանչանալ։ Արդ զի մի երկոցունցն անշահ իրողութիւնն լինիցի, բար խրատիցն, զի ոչ արժանական հինն պատմութեամբ համեմատել, իսկ տգիտացն, զի ոչ կարեն կալ ի վերայ իրացն ծածկելոյ ի ճոռոմասցութեանն բանէ, յայտնագոյն համարեալ զխոնարհագոյնս պատմութիւն այսորիկ աղագաւ արարաք։

Բայց սակայն սկսեալք վեցերորդ ի գրոցս զայս

1 Տես ստորեւ է. 48.

նախ ասեմք, զի որոց առ մերով հասակաւս եղելոց հուպս երկեաք արդէն, մի ոչ հաճոյս բազմացն թուեսցուք գրել, կամ ըստ առակին, եթէ ճշմարիտն եղիցի դառն, կամ զի ոչ ըստ գովութեանն զանուանս որոց սիրեննն ի կիր արկանեմք. և զի ոչ զգործսն նոցա մեծացուցանեմք։ Եւ ուր եկեղեցեացն նախանձայոյզք ըստգտանեն, զի ոչ զեպիսկոպոսունսն ասեմք զաստուածասէրս կամ սրբազոյնս. կամ զայսօսիկ զայսպիսս։ Իսկ այլք և յոյժ քննեսցեն. եղի(ցի) յորժամ զի ոչ զթագաւորս աստուածայինս և տեարս, ա և որքան ի գործ արկեալ զսովորութիւնն անուանեմք։ Բայց ես և յորոց հնոցն գրեցելոց հրաժարումն ունելով, որպէս զի ծառայն ի նոցանէ յանուանէ սովոր էր զտէրն կոչել, վասն պիտոյիցն գործոց, առ ոչինչ զպատիւն եդեալ և աւրինաց պատմութեանն հաւանեալք. որք զգործոցն պահանջեն զպատմութիւն, զմաքուր և զճշմարիտ և զվճարեալն յամենայն ծածկութից, ի վերայ նորա գնացուցից զայդ պատմութիւնն, զորս եսն տեսա շարագրելով, զորս ի տեսաւղացն կարացի ուսանել, ընտրելով զճշմարիտն, յորմէ ոչ փոխելն զճշմարիտն յորմէ ոչ փոխելն ըստ պատմութեանն զպատմողսն զայսոսիկ։ Սորհրդաբար ինչ ճշմարիտն ծանուցեալ լինէր բազմաց և յոլովից պատմելոց և որոց առընթերին գոլով ասելոց գործովք. իսկ ոմանց յամենայնէ առաւել արժանաւորելոց գիտել։

## Գլ. Ա.[1]

Թագաւորին Թէոդոսի վաղճանեալ ի հիւպատուջն ա. քոնաւորս.

1 Տես Սոզոմ. Ը. 4. Թէոդ. Ե. 26. Փիլոստորգ. ԺԱ, 3. Կասիոդ. [illegible]

Ողիւբռոսի և Պռոբինոսի, ԺԷ Յունուարի ամսոյ. Նորուն որդիքն զՀռովմայեցւոցն իշխանութիւնն փոխանորդէին. Արկադիոս զարևելիցն, իսկ Ոնորիոս զարևմտիցն ունէր ունելութիւն։[ա] Իսկ եկեղեցեացն ըստ ժամանակին առաջնորդք էին. ի թագաւորեցելումն Հռովմ Դամասոս.[1] իսկ յԱղէքսանդրիա Թէոփիլոս.[2] իսկ զօրս յԵրուսաղէմ Յովհաննէս ընդունէր. իսկ Փղաբիանոս[3] զԱնտիոքացեացն ունէր. իսկ ըստ Նորին Հռովմայ՝ Կոստանդնուպօղսի Նեկտառիոս ունէր զաթոռն, ըստ որոց

ա. τὸ κράτος իշխանութիւն։

1 Դամասոսը Հիերոնիմոսի վկայութեամբ արդէն վախճանուել էր Թէոդոսի իշխանութեան ժամանակ 384 թ. իսկ նորա տեղը Սիրիկիոսն էր անցել։

2 Սկսած 385 թ. տես վերեւ Ե. 12.

3 Տես վերեւ Ե. 15.

Այսպէս վախճանեցաւ մեծ և երևելի և բարեպաշտ և յաղթող միշտ[ա] թագաւորն Թէոդոս, իսկ որդիք նորա թագաւորեալք, Ոնորիոս[բ] ունի զՀռոմ և զկողմն[գ] արևմտից ըստ հօրն սահմանի. և Արկադիոս զԿոստանդնուպօլիս և զկողմն արևելից ըստ թագաւորին սահմանի նախկին։

ԳԼ. ԾԺԵ.

Թէ ովք էին առաջնորդ եկեղեցւոյ ի նմին ժամանակի։

Իսկ եկեղեցւոյ առաջնորդք էին. Դամասոս[դ] Հռոմայ, և Կոստանդնուպօլսի Նեքտառիոս էր.[ե] իսկ Աղէքսանդրի Թէոփիլէ.[զ] և Անտիոքայ Փղաբիանոս իսկ էր. իսկ Երուսաղէմի[է] Յովհաննէս որ յետ Կիւրղի։

ա. Ա՛ Դ. միշտ յաղթող. բ. Ա. Ն. Դ. Նոնորիոս. գ. Ա. զկողմ. դ. Դ. Դամասկոս. ե. Դ. չիք. զ. Թէոփիլոս. է Դ. յԵրուսաղէմի.

և նախակարգեալ մերում գլխոյն պատմի։ Իսկ յութին Նոյեմբերի ամսոյ, ի նմին հիւպատուոջ, մարմինն Թէոդոսի կարծեցելով էքսուգուոնանւ[ա] բերեալ ուրդին պատուէր Արկադիոս. բայց ոչ ընդ երկար ինչ յետ այսորիկ, ԻԷ նորին ամսոյ և զաւրն հասանէր ընդ Թէոդոսի Թագաւորի զոր ընդդէմ բռնակալին էր զինուորեցուցեալ։ Ապա իբրև Թագաւորն Արիադիոս ըստ սովորութեանն առաջի դրացն ընդ յառաջ ելանէր զաւրուն, յայսքանուոջս և զաւրականքն Ռուբինոս զեպարքոս Թագաւորին սպանին։ Քանզի կարծիք ի բռնակալութիւն Ռուբինոս.[1] և կարծիս ունէր, իբր թէ նա իցէ որ զՈննոսն[բ] զբարբարոսական ազգս[2] կոչեաց ի Հռովմայեցւոցն աշխարհս։ Եւ հասանէին յայնմ ժամանակի ի Հայս և յայլ կողմունս ընթանալով յարևելս։ Բայց ըստ որում աւուր յորում Ռուբինոս մեռանէր, ըստ նմին աւուր և Մարկիանոս Նաւատանիանոսացն եպիսկոպոս վախճանեցաւ. և փոխանորդէր զեպիսկոպո-

ա. մեծաշուք հանդիսիւք։
բ. զՀոնս.

1 Արկադիոսի խորհրդատուն Ռուֆինոսն էր. Ոնորիոսինը՝ Ստիլիքոնը։
2 Հիերոնիմոսը իր Թուղթ առ Հելիոդորոս 14. 16. մանրամասն նկարագրում է հոներից առաջացած արհավիրքները։

Եւ զմարմին Թագաւորին ի հաւատարմաց բերեալ ի Կոստանդնուպոլիս դնի ի Թագաւորական հանգստարանս[ա] մեծաւ պատուով յԱրկադիայ, եկեղեցական օրինօք (ի փառս Աստուծոյ)։ Եհաւ[բ] այսօրիկ և զօրն հասանէր ի քաղաքն ի Յունուարի ԻԷ ամսոյն. և ընդ առաջ եղև Արկադէոս զօրուն։

Զինուորքն զՌուփինոս[գ] եպարքոս Թագաւորին սպանին, կարծիք լինեալ բռնակալութեան. զի զօր բազում բարբարոսացն էր և այլ ևս բազմութիւն զօրացն։ Յայսոսիկ վախճանի

ա. Ա, հանգստա անսն. բ. Դ. Թերի. գ. Բոլ. Ձեռ. զՓռոզինոս.

դոս պատերազմէր ընդ Մաքսիմեայ, Թէոփիլոս ընդ Իսիդորի ընծայս առաքեաց Թագաւորին, և ետ ի ձեռս Նորա Թուղթս երկուս. Հրամայեալ յաղթողին մատուցանել՝ զընծայս և զԹուղթսն։ Իսիդորայ ընկալեալ զհրամանս զայս՝ մնայր ի Հռովմ, ակն ունելով յաղթութեան. այլ ոչ ընդ երկարս ծածկէր խորհուրդն, ընթերցողի որ առ նա գոցացեալ զԹուղթս։ Յաղագս որոյ Իսիդորոս յերկիւղ անկեալ, անդէն յԱղէքսանդրիա փախչի։ Վասն այս պատճառի ջանայր Թէոփիլէ յաղագս Իսիդորայ. բայց որ ըստ Թագաւորին էին, զՅոհան նախընտրեցին։ Եւ քանզի բազումք ընդդէմ Թէոփիլոսի շարժեցան ամբաստանութեամբ, և գիրս ևս մեղադրանաց ետուն եպիսկոպոսացն որ անդ կային։ Եւ աւագ Թագաւորական աւթանոյին Եւտրոպիոս առեալ զգիրս ամբաստանութեան, եցոյց Թէոփիլոսի ասելով ունի ընտրել. կամ ձեռնադրել զՅոհան, և կամ զընդդէմն իւր ամբաստանութիւն ի յանդիմանութիւն ածել. յայսոսիկ երկուցեալ Թէոփիլոս ձեռնադրէ զՅոհան։ Եւ այսպէս ձեռնադրեալ՝ նստէր յաթոռ եպիսկոպոսու-

շարժեցան ընդդէմ Թէոփիլի [ա] ամբաստանութեամբ. իսկ աւագ ներքինեաց [բ] Թագաւորին՝ Եւտրոպիոս [գ] գիր ամբաստանութեան եցոյց Թէոփիլոսի, կամ ձեռնադրել զՅովհաննէս և կամ զընդդէմն [դ] իւր ամբաստանութիւն ի յանդիմանութիւն ածել. Յայսոսիկ երկուցեալ Թէոփիլէ, ձեռնադրէ զՅոհաննէս (զբռնադատեալն ի Թագաւորէն, և զհարկաւորեալն յեպիսկոպոսաց, և յամենայն եկեղեցեաց և ի ժողովոյն. Եւ այսպէս բազում դրուատիւք ընդունի զվերակացութիւն յաչիւ [ե] յարտասուս [զ] եղեալ) և հանեն ի բարձրագոյն աթոռն ի ԺԶ Փետրուարի [է]

ա. Դ. Գ. Թէոփիլոսի. բ. Դ. ներքինեացն. գ. Ա, Դ. Գ. Մոմպիմոս. միւս Ձեռ. Մոպիմոս. դ. Ա. զընդդէմ. Դ. զընդդէմն. ե. Ն. Բ. Գ. աչիւ. զ. Ա՛ Գ արտասուս. է. Ա՛ Դ. Փետրուար ամսոյ.

թեան ի քսան վեցն Փետրուարի ամսոյ, զկնի հիւպատ-ւոջն, զոր կատարէին ի Հռոմ թագաւորն Ոնորիոս, իսկ ի Կոստանդնուպաւլիս Եւտիքիանոսն, որ յայնժամ թա-գաւորին էր եպարքոս։

Եւ վասն զի երևելի էր այրս, յորոց եթող ի բանից (Ճառից), և յորոց ի բազում դժնդակս զյանդիմանու-թիւն արար, արժանիս համարիմ ոչ լռել որ ըստ նմայն էին պատահեալքն, այլ որքան ժամանակի պատ-մութիւնս է վարկանելի, ասել. եթէ ուստի էր, և կամ յորոց, և որքան եկն ի վերակացութիւն եպիսկոպոսու-թեան, և զիարդ դարձեալ որոշեցաւ, և որպէս յետ մահուանն պատուեցաւ առաւել քան ի կենդանու-թեան։

ամսոյն, զկնի հիւպատուոյն զոր կատարէին ի Հռոմ Թագաւորն Ոնորիոս, իսկ ի Կոստանդնուպօլիս Եւտիքիանոս, որ յայնժամ Թագաւորին էր եպարքոս, Եւ վասն զի երևելի էր (և յերե-ւելեաց էր Յոհան կոչեցեալն ի հայրապետութիւն Կոստանդ-նուպօլսի) յորոց եթող ի բանից, [ա] և յորոց ի բազում դըժըն-դակս զյանդիմանութիւն արար, արժանիս համարիմ ոչ լռել, այլ ասել որ ըստ նմայն էին պատահեալքն [բ] ոչ որքան են, այլ որքան ժամանակն պատմութեանս է վարկանելի, Եթէ ուստի էր և կամ յորոց և որքան յայս յառաջադիմութիւն [գ] եկն ի վե-րակացութիւն բազում եպիսկոպոսաց, և զիարդ՝ դարձեալ որո-շեցաւ, և որպէս յետ մահուանն պատուեցաւ յաւէտ յամե-նայն երկրի, և որքան նա փորձանս կրեաց ի մախողաց և յա-պարասանից, [դ]

Կոչեցեալն Յոհան ի վերակացութիւն էր յԱնտիոքայ,

ա. Դ. ի բանիցն. բ. Ա, պատճեալք. Ն. ասել զնմանէ էին պատա-հեալքն. գ. Ն. Դ. առաջադիմութիւն. Գ. յառաջադիմութիւնս. դ. Դ. Դարձեալ թերի ամբողջ թերթեր.

Յոհան Անտիոքացի էր ի խորին Ասորոց, հայրէն Սեկունդոսի և մաւր Անթուսայ, ի բարէտոհմիցն որ անտի. աշակերտեալ Լիբանիոսի իմաստասիրի, և լսող եղեալ Անդրագաթոսի գիտնաւորի: Հանդերձեալ ի դատողութիւն, և տեսեալ ի դատաստանսն անիրաւ տարժամմունք, դիմէր յանապատս: Եւ զայս առնէր նախանձեալ ընդ Եւագրի. որ և նա հպեալ ի նոյն վարս և ի հանդարտագոյնս լեալ առ վարդապետս կրաւնիցն, անդէն փոփոխեալ լինէր ի վարս և ի գնացս և ի զգեստս. և ընթերցանէր աստուածային գրոց, իմաստնանայր և հբո-

1 Մեր ճառընտիրներում կայ Յոհան Ոսկեբերանի վարքը այս վերնագրով. «Պատմութիւն յաղագս ծննդեան եւ սննդեան եւ վարուց եւ վերափոխման սրբոյն Յոհաննու Ոսկեբերանի կոստանդնուպաւլսի եպիսկոպոսի:» Ամենալաւ վարքը հների մէջ՝ Պալադիոսի գրածն է համառօտում:

(ոչ աննշան քաղաքի քաղաքացի,) երևելի և երևելեաց որդի. էր հօրէն Սեկունդոսի[ա] և մօր Անթուսայ, բարետոհմ ծնողաց. (Սնուցեալ հօր քեռ իւրոյ, որ կուսութեամբ նահատակէր յոյժ բարեպաշտօն և երկիւղած յԱստուծոյ, որ զնոյնս հրահանգէր նմա ի տուէ և ի գիշերի, և ուսանէր[բ] դպրութիւն միշտ). Եւ ապա աշակերտեալ Լիբանիոսի[գ] իմաստասիրի և լսողի Անդրագաթոսի[դ] գիտնաւորի և իմաստակի. և հանդերձեալ ի դատաղութիւն. և տեսեալ զորս ի դատաստանսն անիրաւ տարժանմունք[ե] յահի եղեալ և մտախորհ և զմտաւ ածեալ զաշխարհիս սնոտի կեանսն. յանապատս դիմէր նախանձեալ ընդ Եւագրի զբարիոք նախանձն, որ և նա հպեալ[զ] ի նոյն վարս. և

ա. Ա, հօրքրէն կենդղոսի. Բու. Ձեռ. հօրէն կենդանի. բ. Ա, գ.
սանէր գ Բու. Ձեռ. Լիբիոսի. դ. Բու. Ձեռ. առագաթոսի. ե. Ա,
տաժանմունք ահի եղեալ. զ. Ա, որ եւ նա հանապազ.

չակաւոր լինէր ի մէջ ճգնաւորաց։ Եւ յորդորէր և ըզԹէոդորոս և զՄաքսիմոս, զաշակերտակիցսն իւր առ Լիբանիոս իմաստասիրի, թողուլ զկեանս լի տաժանաւք և գալ ի վարս պարզ և առանց ամբոխից։ Յորոց Թէոդորոս յետոյ Մոփսուեստւոյ [1] որ ի Կիլիկիա քաղաքին եպիսկոպոս եղև, իսկ Մաքսիմոս Սելևկիոյ որ յԻսորիան։ [ա] Արդ այսքան սոքա փոյթք առ առաքինութիւնսն եղեալք, աշակերտէին զճգնականսն Դիոդորոսի և Կարտերիոսի, որք յայնմժամ ճգնաւորացն առաջնորդք էին։

ա· Ἰσαυρία Իսաւրիայ·

1. Կորած մասը մինչեւ այստեղ է:

Ի հանդարտագոյնս լեալ առ վարդապետս [ա] կրօնիցն, և անդէն փոփոխեալ [բ] լինէր ի վարս և ի գնացս և ի զգեստս, որ նոցա էր աւանդութիւն ի հարց սրբոց։ Եւ ընթերցասէր աստուածային գրոց իմաստնանայր և յառաջադէմ լինէր ի շնորհաց [գ] Քրիստոսի քան զբազումս բանիւ և գիտութեամբ, զօրաւոր և [դ] հռչակաւոր, և առաքինութեամբն արժանի զարմանալոյ ի մէջ ճգնաւորացն։ Եւ զաշակերտակիցսն [ե] իւր յորդորէր գալ ի նոյն վարս, զԹէոդորոս և զՄաքսիմոս, [զ] և փոխանորդէ զիմաստս ի պարզ և առանց ամբոխից վարս [է] ի խաղաղսն և առանց վիճանաց։ Յորոց [ը] Թէոդորոս՝ Կիլիկիայ եպիսկոպոս յետոյ կոչեցեալ եղև. իսկ Մաքսիմոս [թ] Սելևկիայ եպիսկոպոս, որ յԻսորիա է։ Արդ և սոքա ընդ Յոհաննու ի փոյթ առաքինութեան յորդորեալք աշակերտեցան ի կրօնս Թէոդորոսի և Սարտարիոսի, որ յայնժամ ճգնաւորացն [ժա] առաջնորդք էին։ Որպէս և Թէոդորոս Տարսոնի եղեալ եպիսկոպոս, որ յոլով գիրս

ա· Գ· առ վարդապետսն· բ· Ա, փոխեալ, գ· Ա, Գ· շնորհացն· դ· Ա, չիք· ե· Ա՛ Գ· զաշակերտակիցս· զ· Բոլ· Ձեռ· զՄաքսիմիանոս· է· Ն· վարսն· ը· Ա, որոց· Գ· յորոյ· թ· Բոլ· Ձեռ· Մաքսիմիանոս· ժ· Ա, Գ· ընդ Յոհան որ· ժա· Ա, ճգնաւորաց·

Իսկ Դիոդորոս ի նոցանէ եպիսկոպոս Տարսոնի ե-
ղեալ բազում գրեան շարագրեաց, սոսկ գրով աստուա-
ծայնոցն զգուշանալով գրոց, զտեսութիւն արտաքս
յեղեալ: Արդ այսոքիկ վասն այսորիկ: Իսկ Յովհաննէս
հանդերձ Բարսղիւ, որ յայնմժամ սարկաւագ ի Մեղի-
տոսի կարգեալ. իսկ յետ այնորիկ եղեալ Կեսարիոյ Կա-
պադովկեցւոց եպիսկոպոս, զբազումսն զոյգ կեցեալ, Զե-
ղոն եպիսկոպոս յԵրուսաղէմէ դառնալով ընթերցաւղ
զնա որում յԱնտիոքիա եկեղեցւոյն կարգեաց. յըն-
թերցաւղի կարգ այնուհետեւ կարգեալ զընդդէմ Հրէից
բանն[1] շարագրեաց: Իսկ յետ ոչ բազում իրի եւ սար-

1 Նա «ընդդէմ Հրէից» շարադրեց վեց գիրք։

շարագրեաց աստուածայինս, զգուշանալով գրոց զտեսութիւնն
նոցա արտաքս եղեալ լուծման: Նա ընդ Բարսղի եւ ընդ Գրի-
գորի լեալ Յոհանի ի տեսանել զնոցա[ա] հանդէս վարուց եւ
գիտութեան. եւ տարրանայր ի խորհուրդ[բ] բարեպաշտութեան
եւ գիտութեան, որ ապա եւ նոքա կոչեցեալք եղեն ըստ նա-
խախնամութեան Աստուծոյ ի վերակացութիւն՝ Բարսեղ Կեսա-
րու եպիսկոպոս, եւ Գրիգորն Անձիանձու,[գ] որպէս եւ յառա-
ջագոյն ասացաք: Իսկ յետոյ եւ Յոհան ըմբռնեալ յԵրուսաղէմ
Զինոնէ եպիսկոպոսէ, եւ ընթերցող եկեղեցւոյն Աստուծոյ կա-
ցուցանէր եւ ի վարդապետութիւն: (Զի ոչ, ասէ, պարտ է քեզ
ծածկել զլոյս շնորհիդ որ ի քեզ յանապատի, այլ ի վերայ աշ-
տանակի, ի մէջ եկեղեցւոջ Աստուծոյ, զի լոյս տացես ամե-
նայն աշխարհի լուսաւոր վարդապետութեամբդ որ տուեալ է
քեզ յԱստուծոյ.[դ] Այսոցիկ հաւանեալ նորա բանից, ընդու-
նէր զվարդապետութիւն բանիւ եւ գրով, յորդորէր անհատ ռա
ժողովուրդն) եւ միշտ ընթեռնոյր: Յետ սակաւ աւուրց ի կարգ
սարկաւագութեան կոչեցեալ եղեւ[ե] ի նոյն Մեղիտոսէ եպիսկո-

ա. Ա, զնոցունցն. բ. Գ. ի խորհուրդս. գ. Ա, Գ. եպիսկոպոս. դ. Գ. Ն. Աստուծոյ. ե. Ա, կոչեցաւ, եղեւ ի նոյն.

կաւագի պատուոյ ի Մեղէտիոսի հանդիպելով[1] զյաղագս քահանայութեան բանն հաւմակարգեաց. և զորս առ ի Ստագիրւոյն[ա] ևս և զոր յաղագս Անհասանելիմատին[բ] և զորս վասն Ընիսակտոն։[գ] Իսկ յետ այսորիկ Մեղետիոս ի Կոստանդինուպօլսի վաղճանեալ. քանզի անդ լինէր յաղագս Գրիգորի Աստուածաբանի կարգաւորութեանն, գնացեալ ապա Յովհաննէս ի Մեղէտիանոսացն,

ա. Σταγείριον.

բ. περὶ ἀκαταλήπτου յաղագս անհասանելիութեան (բնութեան Աստուծոյ)

գ. περὶ τῶν συνεισάκτων յաղագս միաւորութեան ընդ կանայս։

1 Փրկ. 381 Թ. Նախ քան Մեղիտիոսի Կոստանդնուպօլիս գնալը, ուր նա վախճանուեց։

պօսէ, յորմէ և Բարսեղ Կեսարացի. ապա և զքահանայութեան շնորհս ընդունի ի Փղաւիանոսէ։ (Եւ եղայր հոգւովն ի բանս առաքելութեան, որ գրովք[ա] և շարագրէին համառօտ զնորա խօսս և ի գիրս հաւաքէին զճառս և զմեկնութիւնս սրբագրացն[բ])։ Եւ Մեղիտոսի եկեալ յԱնտիոքայ ի Կոստանդնուպօլիս առ Գրիգոր գիտնաւոր[գ] աստուածաբան։ (վասն օգտութեան հաւատոյ և վարուց. յորժամ զեղափոխութիւն աթոռոյն առնէր, և զինուորէր ի հոգևոր պատերազմին ընդդէմ Արիանոսաց, Նոմիանոսաց[դ] և Հոգէմարտից, և պարզաբար ասել ամենայն հերձուածողաց. քաջապէս արիացեալ որպէս նախ ասացի, որպէս յետ ժողովոյն և հաստատութեան հաւատոյն)։ Մեղիտոս վախճանի, և Գրիգոր զգերեզմանական բան ասացեալ ի վերայ Մեղիտոսի,[ե] և յուղարկեալ զնա ի հանգիստ յԱնտիոք, գնայր և Գրիգորիոս յիւր եկեղեցին։ Եւ

ա. Ա, որք գրով. Ա, բ. սրբագրեաց. գ. Ա. իմնաւոր. Ն. չիք. դ. Ա, աէր. ե. Գ. ի վերայ Մեղիտոսէ

և ոչ ընդ Պողինոսի հաղորդելով, զերիս ասու լեալեայն կայր։ Իսկ յետոյ Պողինոսի վախճանեալ, յԵւագրիոսէ փոխանորդողէն զՊաւղինա ձեռնադրիւր քահանայ։ Բայց այս Յովաննու նախ քան զեպիսկոպոսութիւնն համառաւտ ասել կենցաղավարութիւն։

Եւ այլն, որպէս ասացին, յաղագս նախանձու ողջախոհութեանն դառնագոյն, և առաւել, որպէս ասաց ումն յընտանեգունիցն նորա ի նոր հասակէ, սրտմտութեամբ յաւէտ քան ամաւթով շնորհէր. և վասն ուղղութեան վարուցն ոչ զգոյշ առ հանդերձեալսն, իսկ վասն պարզագունութեանն խնդամիտ։ Եւ ազատ բերանով առ ընթերցաւղսն հպէր անրաւիւք. և յուսուցանել յոյժ էր աւգտեցուցանել զլսաւղացն վարս, իսկ ի խաւսսն ամբարհաւաճականն տգիտացն նա կարծիւր։

բանս յաղագս Յոհաննու դարձեալ մինչէ զայս. զի ընդ սոսայ եղեալ նախանձեցաւ զնախանձ Աստուծոյ. զի էր այր ողջախոհ և սուրբ և բարեգործ և արդար. մեկնեալ յամենայն իրաց չարաց. և յանդիմանել մոլորեցելոց.ա Ոչ յինքեան արհամարհանացն այնքան հոգ տանէր, որքան Աստուծոյ վրէժխնդրութեանն. ոչ ի տպառնալեացն երկնչէր. և ոչ աչառանօք առ փառաւորս զմարդահաճութիւնն ցուցանէր. այլ էր նուաստ առ խոնարհեալսն, և խորագէտ առ բարձրեալսն որպիսի ոք լիցին. Նա էր պարզագոյն և խնդամիտ և ազատ բերանով յընթեռնուլն, անբաւ ի բանս առատութեան, անձանձրոյթ յուսուցանելն. և յոյժ օգտեցուցանէր զլսողսն. Իսկ յաճախ ի խօսսն ամբարհաւաճ տգիտացն յաչաղկոտացն և ամբարշտացն թուէր նախկին իսկ քան յեպիսկոպոսութիւննբ գալ. Իսկ նախակարգեալ ի հայրապետութիւնն, ևս առաւել յայսոսիկ յորդեալգ ի վարդապետութիւնն, և զանհնազանդսն կշտամբէր գալ յուղղու-

ա. Գ. մնղուցեալ. բ. Գ. եպիսկոպոսութիւն. գ. Ա՛ յորդորեալ.

Գլ. Դ.[1]

Այսպիսի գոլով բարուցն, և յեպիսկոպոսութիւնն նախակարգեալ մեծագունիւ քան զպատոն յաւնիւքն[ա] ընդդէմ հնազանդիցն հպէր, ուղղել զվարս զորոց ընդ նովաւ ուխտաւորացն, որպէս կարծէր, յաւժարեալ։ Արդ առ ժամայն ի սկզբանէ երևեալ որոց ըստ եկեղեցւոյն խաշոր,[բ] յամենեցուն ի նոցանէ ատեալ լինէր, և բազումք առ նա ցասնուին, և իբրև ի բարկացողէ խոտորէին. բայց ածէր առաւել ընդհարկանիլ առ ամենեսին. Սեռապիոն սարկաւագ ի նմանէ կարգեալն։ Եւ երբեմն հուպ գոլով ժառանգաւորացն մեծ ձայնիւ առ եպիսկոպոսն այսպիսի բան բարբառեցան. Ոչ երբէք զայսոսիկ, ո՞վ եպիսկոպոս, ունել կարասցես եթէ ոչ միով զաւազանաւ զամենեսին վարեսցես։

ա. Յունարէն յոնք ὀφρύ: բառը գործ է ածած . խստութեամբ. բառի - մտքով։

բ. τραχύς խստապահանջ։

1 Տես Սոզոմ. Ը. 3. 9. Թէոդ. Ե. 28. Կաս Ժ. 3. Նիկ. ԺԳ 3.

թիւն, որք ընդ ձեռամբ նորա էին. իսկ սովորեալքն չարի տաէին զնա ի տարապարտուց, և բարկացող և ամբարտաւան զնա համբաւէին. Բայց առաւել զայս հաւատարիմ ցուցանէր Սրապիոն սարկաւագ զառ ի նմանէ նախակարգեալ[ա] ի սպասաւորութիւն եկեղեցւոյն Աստուծոյ, որ զժառանգաւորսն խաբէր միշտ. և զմերձ եկեալ եպիսկոպոսն առաւել յամբաստանութիւն[բ] շարժէր, զի էր[գ] չարասէր և երկրասէր այրն. և ոչ առնոյր ի նմանէ զօգտակարսն, այլ անդէն կայր մնայր յապաբասանութեան.[դ] Իսկ եպիսկոպոսապետն Յովհան ոչ ընդ երկարս

ա. Ա, նախկարգեալ բ. Ա՝ ամբաստանութիւն. գ, Գ. չէր. դ. Գ՝ յապաբասանութիւն.

Այս ճառեալ գոլ ընդդէմ եպիսկոպոսին Յովհաննու ատելութիւնն առաւել զարթուցանէին։ Իսկ եպիսկոպոսն ոչ ընդ երկարս ինչ զայլ ոմն վասն այլ պատճառոյ արտաքս հանէր զբազումս յեկեղեցւոյն։ Իսկ որք այսպիսիս սիրեն լինել, այսպիսի դիտմունս կալողացն, ժողովս յարուցին հակառակ նմա, և մատնութեամբք առ ամբոխն հպէին։ Եւ ի հաւատ ածին զլսաւղսն ասացեալքն. վասն ոչ կամելոյն ուտել եպիսկոպոսին ընդ ումեք, և ոչ կոչեցեալ յուտելն երթալն. յորմէ և առաւել մեծագոյն զաւրացաւ մատնութիւնն հակառակ նորա։ Բայց որով դիտմամբ ուտել ընդ ումեք ոչ յաւժարէր, յայտնապէս պատմել ոչ ոք կարէ։ Քանզի ոմանց յաղագս նորա պատասխանեալ կամեցեալ ասէին. որպէս զի թէ տկար է ստամոքսին և դժուարահալ, իսկ այղք թէ յաղագս գերազանցեալ ճգնութեանն զայն առնէր։ Որպէս զի արդ արդեւք ունէր զճշմարտութիւն

ինչ զբազումս յեկեղեցւոյն որոշէր վասն սխալանաց իւրեք. ոմն յայս ինչ, և ոմն յայլ ինչ ի պատճառս մեղաց. Իսկ արտաքս ելեալքն[ա] և մեծամեծքն և փոքունքն ջանային ի չար վասն նորա, և ժողովս յարուցին հակառակ նմա, և ի հաւատս ածէին[բ] զլսողսն իւրեանց ամբաստանութեանն.

Ոչ ասէին ուտել ընդ ումեք հացս և ոչ կոչեցեալ զոք առ ինքն[գ] ուտել, այլ որպէս կամի վարի կերակրով և ըմպելեաւ. բայց ոչ ոք կարծէր զպատճառ վերաբերեալ. Ոմանք ասէին. զի տկար էր ստամոքսիւ և դժուարահալ, իսկ այլք թէ յաղագս գերազանցեալ ճգնութեանն[դ] զայս առնէր. իսկ հակառակորդքն հպարտութեան վարկանէին զայս. Այլ ոչ էր գտանել զճշտութիւն ի հակառակացն. զի ոչ սակաւ պատերազմ էր վասն այսորիկ եկեղեցոյ ուխտին.

ա. Ա, արտաքսեալքն. բ. Ա, ածին. գ. Ն. առ յինքն. դ. Ա, ճգնութեամբ.

ոչ գտանեմք պատմել, զի ոչ սակաւ պատերազմէր ընդ այս առ մատնութիւն ամբաստանողացն զնա։ Բայց ժողովուրդն յաղագս յեկեղեցւոյն ասացելոցն ի նմանէ բանիցն իմաստաբար ընդունէր և յոյժ մեծարէր և սիրէր զայրն, փոքր ինչ հոգ տարեալք չարախաւսել ձեռն արկելոցն զնա։ Իսկ թէ որք են արտաքսեալքն ի նմանէ բանք, և որք յասելոյ նորա երագագրողացն արտաքս ըմբռնեալք, և զիարդ պայծառք և զվերաբերութիւն անելով. զի՞նչ պարտ է այժմ ասել. քանզի յորոց զկամաւղսն նոցա վերստին ասել և զառ ի նոցանէ զաւգուտն և զառաքինութիւնն պտղաբերել։

## ԳԼ. Ե.[1]

Այլ մինչև ցուրանաւր ընդ ուխտին միայն ընդ-

1 Տես Սոզոմ. Ը. 7. կաս. Ժ. 4. Նիկ. ԺԳ. 4.

## ԳԼ ՃԺԸ.

Արտադրութիւն շարադրութեան նորին եւ թէ որպէս զբազումս յանդիմանէր։

Բայց ժողովուրդն զառ ի յեկեղեցւոջն ասացելոց վարդապետականաց բանիցն իմաստնաբար ընդունէին. և յոյժ մեծարէին, և սիրէին միշտ զնորա լուսաւոր վարդապետութիւն, և զարգարեալսն ի նմանէ զմեկնութիւնս գրոց, և զյորդորականս յասելոյ[ա] նորա ի շարագրողացն համառօտ հաւաքեալ գրքեր զբերումնն[բ] ունելով ի համառօտէն ի պարզն և ի պայծառն վերստին բացայայտել. Զի՞նչ պարտ է ասել այժմ, զի զորոց զկամողսն յայտնի էր տեսանել որ զնորա ասելն և զառ ի նոցանէ շահն առաքինութեամբք[գ] պտղաբերեալք,

Արդ՝ մինչև ցուրանոր ընդ ուխտին միայն հարկանիւր,

ա. Ն. ասելոյ. բ. Գ. զբերումն. գ. Ա, առաքինութեամբ. Գ. առաքինութեամբքն.

Հարկանիւր, տկար էր յարդարեալն հակառակ նորա մենքանայք։ Վասն զի զբազումս յորոց ի կատարելութեան առաւել քան զպարտն յանդիմանել համբառնայր, այսքան և որ հակառակ նորա սպանումն առաւել բորբոքէր. որպէս զի կատարել ի վերայ նորա իմաստութեան բանի որ ասէն. մի յանդիմանէր զնոսա, զի մի՛ ատեսցեն զքեզ։ ա Եւ բազում ինչ ասիւր վասն նորա. իսկ յոլովքն ապա և հաւատալ տային լսաւղացն։ Բայց յաւելումն մասնութեանն առնէր հակառակ Եւտռոպոսի յայնժամ ճառեալն ի նմանէ բեմասացութեամբ։ բ Քանզի Եւտռոպիոս ներքինի աւագ թագաւորական աւթանոցին, և զհիւպատոսի պատիւ առաջին ի թագաւորէն առնլով, հատուցանել ոմանց ապաւինե-

ա. Որպէս զի կատարել...... ատեսցեն զքեզ. բառերը չկան բնագրի մէջ։

բ. προσομιλία.

յարդարեալն ի նմանէ այլ ընդ այլոյ ցուցանիւր. վասն զի զբազումս զոր ի փառաւորութեանն առաւել քան զպարտն յանդիմանեալ համբառնայր. այսքան ա և որ հակառակ նմա ի սպանութիւն մտաբերէր զնոսա. Աստանօր ի դէպ ելանէ իմաստնոյն «Մի յանդիմաներ զչարս, զի մի ատեսցեն զքեզ». (յանդիմանեա զիմաստունս և սիրեսցեն զքեզ. զի որ խրատէ զչարս առցէ անձին անարգանս.) Այսպէս ապարասանեալքն ի նմանէ յանդիմանեալք ատէին զնա, և զամենայն մերձաւորս յատելութիւն ջանային առնել. և զյաւելումն ատելութեանն, Եւտռոպիոս առաւելագոյն առնէր առ թագաւորն բանս արկեալ յանդիմանեալն ի նմանէ.

ա. Գ. այլս քան.

լոց յեկեղեցին խորհել փոյթ առնէր աւրէնս[1] յինքնակալացն առաջի դնել որ հրամայէր, մի՛ ումեք ապաւինել յեկեղեցիսն, այլ և զորս արդէն փախուցեալսն ի բաց քարշել արտաքոյ սահմանաց եկեղեցւոյն։ Եւ առժամայն դատաստանն հետևէր. քանզի առաջի կային աւրէնքն, և յետ ոչ բազում իրի ընդհատեալ առ Թագաւորն Եւտրոպիոսի, ապաւինէր յեկեղեցին և նա։ Ապա եպիսկոպոսն Յոհան, Եւտրոպիոսի ընդ սեղանովն կալով

1 Այդ օրէնքը ներմուծեցին փրկ. 398 թ. եւ 431 թ. նորից վերցրին.

ԳԼ. ՃԺԸ.

*Թէ որպէս օրէն էր ի պատիժս Թագաւորական եւ աճապարել յեկեղեցին։*

Օրէնք էր[ա] ի Թագաւորաց. զի որ յանցանէր ի Թագաւորութիւնն և նախ քան զըմբռնումն ի պատիժն կարէր աճապարել յեկեղեցին, ապրեալ լինէր ի մահուանէ և ի պատժոց եկեղեցւոյ զդատաստանն տային և առաջնորդին որում դատեցի. Զայսոսիկ[բ] զօրէնս խափանեալ ջանայր Եւտրոպիոս, որ Թագաւորական օթանոցին էր ներքինապետ, որ զհիւպատոսի պատիւ ունէր. Առնու հրաման ի Թագաւորէն. Ամենայն, ասէ, որ վնասապարտ է առ Թագաւորութիւնս և ապաւինի յեկեղեցին, քարշեալ եղիցի յեկեղեցւոյն և ի սահմանացն, և անդէն մեռցի. Անտանոր հետևի նմա դատաստանն իւր ի կորուստ անձինն. Յետ ոչ բազում իրի Եւտրոպիոս[գ] յանցեաւ առ Թագաւորութիւնն, և փախուցեալ անկանէր յեկեղեցին, և ծածկէր զինքն ընդ[դ] սեղանովն. ապաւինեալ ի հայրապետն, և երկիւղ մահու անկեալ ի նմա. Իսկ Յոհան սուրբ հայրապետն ըստ սովորութեանն իւրոյ մտեալ յամբոխն[1] ճառէր, որ ինչ

ա. Ա, օրինէր. Ն օրէն էր Թագաւորաց. բ. Գ. զայնոսիկ. գ. Ա, Ն. Մռռպիոս. դ. Ա՛ առ.

1. Նոր. Ցամբոխի փոխ. յամբոխի տես եւ ի Ստեփ. Ուռպել. Իէ. 80։

և զարհուրեցելոյ յերկիւղէն, նստեալ ի վերայ ամպոնին[ա] ուրանաւր սովոր էր և յառաջագոյն խաւսել յաղագս լսելոյն, բան ճառական[բ] արտաձգեաց ընդդէմ նորա։ Որով առաւել թուեալ լինէր ընդհարկանել ոմանց, զի անհանդիպեցելոյն[գ] ոչ միայն ոչ ողորմէր, այլ ի հակառակէն և յանդիմանէր։ Բայց Եւտրոպի ապա յայնժամ զհիւպատոսական պատիւն ընձեռեալ, և վասն յանցանաց ինչ Թագաւորին զգլուխն կտրել հրամայէր. և ի բանէ հիւպատոսացն[1] բարձաւ անունն, և միայնւոյ հիւպատոսակցին Թէոդորոսի գրիւր։ Իսկ բան զի եպիսկոպոսն Յովհան և զԳայինաս զոր յայնքանւոջն զաւրավար սովորական համարձակութեամբն հպեալ զաւրագոյն թըշ-

ա. ἐπὶ τοῦ ἄμβωνος. կնշանակէ սեղանի նման կլոր ձեւով բարձրութիւն. որտեղից Յոհան Ոսկեբերանը արտասանում էր իւր ճառերը:
բ. λόγος ἐλεγκτικός բան յանդիմանական:
գ. դժբախտին.

1 Սովորութիւն կար իւրաքանչիւր տարի պաշտօնական տօմարում նշանակել նոյն տարուայ կոնսուլների (հիւպատոսների) անուններն եւ տարին նրանցով կոչել. այդպէս ցուցակները կազմուած Լատիներէն կոչւում էին «fasti consulares». երբ կոնսուլը պատժւում էր, ջնջում էին նրա անունը այդ պաշտօնական ցուցակից.

խորհրդոյն էր ի շահ ժողովրդեանն։ Ընդ նմին արտասուեալ և վասն նորա յանդիմանութիւն[ա] որովք յառաջագոյնն ունէր զամբարշտութիւն. զի՞նչ պարտ էր ասել. որ Թէպէտ և յեկեղեցւոյն և ի նորին բարեխօսութենէն ապրեալ եղև, այլ յետ այսորիկ իրաւունք ոչ ետուն ապրել. զի հատեալ լինէր որով գլուխ ըմբռնեալ ի Թագաւորէն։ Եւ այսպէս Եւտրոպիոս բարձաւ ի միջոյ, Եւտրոպիոսի անուն հիւպատոսութեան Թըշնամանօք յանդիմանէր։ Եւ զԳայինաս[բ] զզօրավար Թագաւորին, որ ընդ Արիանոսս[գ] ունէր զհաղորդութիւնն և խնդրէր զմուտ

ա. Ա, առ յանդիմանութիւն. բ. Ա՝ Գայի՛նոս զօրավար. գ. Ա, Արիոսի.

մանեաց, զի ի մին եկեղեցւոջ յորոց ի ներքս ի քաղաքին ճարակիլ աղանդակցացն իւր Արիանոսաց ի թագաւորէն խնդրել յանդգնեցաւ: Եւ զայլ ումն վասն այլ պատճառոյ կալաւղացն յանդիմանէր համարձակութեամբ բազմաւ, վասն որոյ բազմաց ընդ մէջս էր:[ա] Ուստի Թէոփիլոս Աղէքսանդրոյ եպիսկոպոսն անդէն յետ ձեռնադրութեանն խորհէր. զիարդ զնա խորամանկեսցէ և ոմանց որոյ մերձն յաղագս այսորիկ գաղտաբար խաւսէր. իսկ բազմաց և որոց հեռին ոչ եղելոց զառտնին պատմէր զխորհուրդ: Քանզի տրտմեցանէր զնա ոչ միայն գերազանցեալ երկիւղածութիւնն և համարձակութիւնն, այլ և զԻսիդոռոս զքահանայ զառ ի նմանէ կարգեալն՝ յեպիսկոպոսութիւնն Կոստանդնուպաւլսի ածել ոչ զաւրեաց: Յայսոսիկ ապա որ ինչ Յոհանու եպիսկոպոսին էր, և առ ժամայն իսկզբանէն երկնչէր չարն հակառակ նմա: Իսկ զորս յաղագս նորայն յառաջելով ըստ մասին ինչ յայտնեսցուք:

## Գլ. Զ.[1]

Բայց զգործն արժանաւոր որ առ ժամանակաւքն

ա. διάφορος ἦν թշնամի, ատելի էր:

1 Տես Սոզ. Ը. 4. Փիլոստ. ԺԱ. 8. Թէոդ. Ե. 3[2] Կաս. Ժ. 6. Նիկեփ. ԺԳ 5:

Նոցա ի քաղաքն, և ունել յեկեղեցւոջ, և զայլ ոք վասն այլ իրաց, և ոչ ներէր ումեք. այլ որպէս սրով բանիւ յանդիմանականաւն կամէր կտրել սխալանս յանցուցելոցն, և վասն այսորիկ ատէին զսուրբն. Լինէր ընդ այնոսիկ և Թէոփիլէ գաղտնի խորհրդակցութեամբ, զի յանմահացուցանէր զնա համարձակութիւն լուսաւոր վարդապետութեանն և զի զՍիդոռոս քահանայ ոչ զօրեաց առնել ի տեղի նորին աթոռայն. Եւ խորհէր

եղեալ պատմեցից. զիարդ Աստուծոյն նախախնամու-
թիւն զքաղաքն և զՀռովմայեցւոցն իւրս ի մեծ վշտաց
հրաշալի աւգնականութեամբ փրկեաց։ Իսկ թէ զիա՞րդ
է այս ասելի է աստուստ։

Գայիանոս[ա] ազգաւ բարբարոս էր. իսկ ընդ Հռովմայեցովքն եղեալ և ի զինուորութիւն հպեալ և ըստ սակաւ ինչ յառաջ ատեալ. յետոյ զաւրավար Հռովմայեցւոց զաւրուն հետևակի և հեծելականի ցուցանիւր։ Իսկ առեալ զայսքան զաւրութիւնս զանձն ոչ ճանաչէր, և զինքեանն մտածմունս ունել կարէր. այլ զամենայն քար, ըստ ասացելումն, շարժէր, որպէս զի արդեւք ընդ իւր և զՀռովմայեցիսն արասցէ։ Եւ զամենայն ապա զԳոդացն ազգ յիւրմէ աշխարհէն կոչէր. և

ա. Γαϊνᾶς

միշտ Յոհաննու երանելւոյն ոչ ի բարիսն, այլ զոր ինչ յառաջիկայսն է պատմեսցուք. Բայց զիարդ Աստուած ողորմութեամբ զքաղաքն Հռոմայեցւոց ի մեծ վշտաց հրաշալեօք փրկեաց՝ ասասցուք.

Գլ. ՃԺԹ.

Բռնակալին Գայինայ չարութիւն, եթէ որպէս պարտեաւ եւ սպանաւ

Գայինա յանդիմանեալն[ա] ի հայրապետէն Յոհաննէ, էր ազգաւ բարբարոս և ընդ Հռոմայեցեօք եղեալ ի զինուորութիւն հպէր, և յառաջադէմ երևեալ զօրավար յետևակացն[բ] ի թագաւորէն կացեալ լինէր. Յայսոսիկ լեալ, ոչ ճանաչէր զինքն, այլ ի մեծագոյնն ձգտէր, և զամենեցուն միտս[գ] շարժէր զՀռովմայեցւոցն ընդ իւր առնել, և զամենայն ազգ Գոթացն կոչէր յիւրմէ աշխարհէն յիւր զինուորութիւն, և բազմացուցանէր զզօրս իւր. Իսկ այլ ոմն իւր ազգական որ ի Փռիւ-

ա Ա, յանդիմանեալ. բ. Գ. Ա. յետակացն. գ. Ա. միշտս.

իւրում պատշաճիցն զզինուորական դրաւշուցն իշխանութիւն յարդարեաց։ Իսկ Տռի[տի]պիգիղիդոսի ա միոյ ի նորա ազգականացն հազարապետ եղելոյ որոց ի Փռիւգիա հաստատեցելոց զաւրականացն, և կամաւք Գայինասա յանկուցեալ եղեալ. բ ինքն հրաման առնլով պա(տ)րաստէր նմա զոր անգ գործենոյն հոգաբարձութիւն։ Եւ վասն զի Թագաւորին Արկադիոսի ոչինչ յառաջ իմացեալ պատրաստաբար, հրամայեաց և առ ժամայն Գայինաս. գնայր բանիւք գ ընդդէմ Տռիբիգիղդոսի, իսկ գործովք բռնակալ լինել խորհեալ. և ածէր ընդ իւր ի Գդաց բարբարոսաց ոչ սակաւ բեւրս, և հասեալ ի Փռիւգիայ զամենայն խախտէր։ Եւ նոյն ժամայն անուհետև էր ի խռովութեան Հռովմայեցւոցն իրք. ոչ միայն որ առ Գայինասա; բազմութիւն բարբարոսա;;ն, այլ և զի զարևելից զչէն կողմունս վշտացանել հանդերձէր, եթէ ոչ Աստուծոյ էր պահեալ զվշտացեալ Հռովմայեցոց պետութիւնն։ դ

ա․ Τριβιγίλδου

բ․ Թարգմանը բաց է թողել «եւ հիմնովին աւերեալ զերկիրն Փռիւգիացւոց» նախադասութիւնը:

գ․ τῷ λόγῳ

դ․ «եթէ ոչ… պետութիւնն» չկայ բնագրի մէջ:

գիայ հաստատեալ զօրավար, որ կամօք Գայինա ամբոխ բազում արարեալ խռովէր զաշխարհն։ Եւ լուեալ Թագաւորին Արկադիա, հրամայէր Գայինա ամենայն ա զօրօք երթալ և տեսանել զչարիքն. վասն այնորիկ անգիտացեալ զխորհուրդ չարութեանն։ Եւ երթեալ առ ազգայինն իւր, ամենայն ուստեք ժողովէին բազում զօրս և վշտացուցանէին զամենայն աշխարհն

ա․ Ա, բազում․ Ա․ Գ․ գային այսպէս․

Իսկ Թագաւորին քաղցր կամաւք առ ժամայն ժամանակ հպեալ, արուեստիւ անցոյց զբարբարոսսն. քանզի առաքեալ առ նա ամենայն բանիւք և գործովք ի մեծարեալ պատրաստէր։ Իսկ նորա խնդրեալ երկուս յաւագաց սինկղիտուոյն արս ապոհիւպատոս, զորս հրամայէր հատանել զիւրոսն դիմմունս զՍատորնիղոս[1] և զՍուրեղիանոս. ակամա զնոսա հարկաւ ժամանակին տայր Թագաւորն։ Իսկ նոքա վասն ամենեցունց յառաջ մեռանել փափագեալք, քաջաբար Թագաւորին հրամանի հնազանդէին։ Եւ հեռի ի Քաղկեդոնէ ի գիւղն[ա] որ ասպարէզն կոչի պատահէին պատրաստ կրել զամենայն զոր ինչ բարբարոսն կամեսցի։ Այլ նոքա ոչինչ չար կրեցին, իսկ Գայինաս հասանէր ի Քաղկեդոն, պատահէր անդ և Թագաւորն Արկադիոս։ Եւ լինելով ի մատրանն ուրանաւր մարմինն վկայուհւոյն Եւփիմեա կայ

ա. ἐν χωρίφ ի տեղւոջն.

1 Սատուրնինոսը հիւպատոս էր նաեւ 383 թ. տես վերեւ Ն. 10։

Հռոմայ։ Զայս ծանուցեալ վնոցա չարութիւն, և զիւր զանգիտութիւն,[ա] քաղցր կամաւ և մեծամեծ խոստմամբք առ ժամանակին լուծանէր զչար բարբարոսացն ժողովս բիւրաւորս։ Իսկ նոցա խնդրեալ երկուս ոմանս ի սինկղիտոսացն ապուհիպատոս,[բ] զոր ասէր հաւանել այնուիկ զդիմունս չարութեանն՝ զՍատուռնինոս և զԱւռեղիանոս[գ] զոր ի հարկէ տայր. և նոքա յօժարեալք վասն աշխարհի փրկութեան ի մահ։[դ] Իսկ նոքա ըստ նախախնամութեանն Աստուծոյ երթեալ առ բարբարոսն, ոչինչ վնաս կրեցին ի նոցանէ. Իսկ Գայինաս հասանէր ի Քաղկեդոն. և պատահէր Թագաւորին Արկադիայ. և մտեալ ի մատուռն՝ ուրանօր մարմին վկայուհւոյն Եփեմիայ, երդմամբ առ-

ա. Ա՝ անգիտութիւնն. բ. Գ. Սինղիտոս նապատուպսին. գ. Բաղ. Ձեռ. զՍղոգինոս եւ զՈրեղինոս: դ. Ա, ի մահուանէ.

երդմամբք հաւատարմացանէին զմիմեանս Թագաւորն և և բարբարոսն. մի ինչ երբէք խորամանգել միմեանց։ Այլ Թագաւորն հաստատուն երդմամբն մնայր և վասն այնորիկ աստուածասէր յերդմունսն էկաց։ Իսկ Գայինաս ուխտազանց լինէր և յընտանի դիտմանէն ոչ ելանէր, այլ այրեցմունս և աւարառութիւնս պատրաստէր առնել ընդդէմ Կոստանդնուպօլսի, և ամենայն իսկ թէ կարասցէ Հռովմայեցւոց պետութեան։ Ապա բարբարոսանայր քաղաքն ի բազում բիւրուցն Գթաց. և որք նորա բնակիչքն գերեալք լինէին։ Եւ այնքան էր ի վերայ կախեալ քաղաքին վիշտն, որպէս զի և լալիւն մեծ ի յերկնից մինչև յերկիր հասանէր, և որպիսի ոչ ոք եւս յառաջագոյն ազդեալ զնա։ Իսկ Գայինն նախ փորձեցաւ լիրբ անզգայութեամբն որում հրապարակաւ ի գործարանս վաճառելոյն արծաթոյ առնել։

Իսկ իբր հռչակին յառաջ ազդեցելոյ և պահեցին առաջի ի սեղանն դնել զարծաթն, առժամայն ի միւս այլն գնայր խորհուրդ. և ի մէջ գիշերին առաքէր բազմութիւն բարբարոսաց ի հրձիգ առնել զպաղատնն։

նէին դաշինս Թագաւորն և Գայինաս. մի ինչ խորամանգել միմեանց։ Եւ Թագաւորն աստուածասէր մնայ ողջ ի դաշինս երդման բարբարոսին, այլ նա ուխտազանց եղեալ յիւր [ա] չարութեանն կամս դառնայր։ Այլ աւարառմունս առնէր ի սահմանս Կոստանդնուպօլսի և [բ] այրեցածս. Նաև [գ] զկորուստ երանելոյն Յոհաննու սակս յանդիմանութեան խորհէր։ Եւ այնքան վիշտս հասուցանէր աշխարհին, որ ոչ եղեալ այնպիսի սուգ չարեաց. և օր քան զօր յաւելոյր [դ] ի չարն [ե] և ոչ ոք էր որ արգելոյր, եթէ ոչ Աստուծոյ Նախախնամութիւն էր օգնել։ Առաքէր

ա. Ա, իւր. բ. Աˊ Նաեւ. գ. Ա, սրտիւ միշտ խորհէր։ դ. Աˊ օր ըստ օրէ առաւելոյր. ե. Գ. ի հարն.

Յայնժամ երեւեցաւ գերերեւապէս զիարդ Աստուած նախախնամութիւն առնէր քաղաքին. քանզի բազմութիւն հրեշտակաց երեւեցաւ խոլամանկանցն ձեւով վառելոց մեծամեծս ունելով մարմինս։ Զորս կարծեալ բարբարոսացն ճշմարտապէս զաւր լինել և բազում քաջագոյն զարհուրեցան և գնացին։ Իսկ եթէ պատմեալ այս Գայինասա անհաւատ լինէր թէ երեւեալ է. քանզի գիտէր ոչ հուպ լինել զբազում ըզ-Հռովմայեցւոցն զզինել զզաւրսն, վասն զի ըստ քաղաքացն լինէին. և առաքէր առժամայն այլս ի նմին գիշերին և յետ այնորիկ բազում անգամ։ Որպէս զի և յոլովապէս առաքեալ նոյնքն պատմեալ լինէին. քանզի միշտ հրեշտակք Աստուծոյ զնոյնն դաւաճանիցն տային զերեւումն. իսկ յետոյ ինքն ամբոխիւ բազմաւ երթեալ զփորձ առնոյր զքանչելեացն, կարծեալ ճշմարտապէս զաւրաց լինել բազմութիւն։ Եւ այսոցիկ ի տունջեան ծածկիլ, իսկ ի գիշերի առ նորա ձեռնարկումն ընդդի-

բռնակալն [ա] բազում բիւրաւոր զօրս ի գիշերի հրձիգ առնել զպալատն. յայնժամ երեւեալ լինէր բազմութիւն երկնաւորացն որք պահէին զքաղաքն հզօր սպառազինութեամբք. Զայս տեսեալ խորամանգաց զօրացն, զարհուրեալ փախեան, և պատմեն [բ] Գայինայ և ազգականի նորա. ոչ հաւատայր նոցա՝ գիտելով զզօրս Հռովմայեցւոցն. Դարձեալ այլ առաքեաց յիւրոց հաւատարմաց և զնոյնս [գ] եկեալ պատմեցին զբազմութիւն զօրաց որք նրդէին [դ] երկնաւորք զօրք հրեշտակաց որ երեւէինն, որք պահէին զքաղաքն որպէս կարծէին երկրաւոր. Իսկ յետոյ ինքն իսկ նրթայր բռնաւորն բազում ամբոխիւ, զփորձ առնուլ զքանչելի տեսլեանն կարծէր բռնակալն և զօրն ճշմարիտ զօրաց եկեալ նոցա ի մարտ. Իսկ այսոքիկ ի գիշերի երեւեալ, և ի

ա. Գ. բռնաւորն. բ. Գ. եւ պատմել. գ. Գ. զնոյն. դ. Ա, որք էին.

մանալ արուեստաւորէր խորհուրդ, բայց իբր կարծէր զՀռովմայեցիսն վնասել, յաւգուտ լինէր, որպէս ելքն ցուցին։ Քանզի կեղծաւորեալ զդիւահարութիւն իբր յաղթել ի մատուռն առաքելոյն Յովհաննու հասանէր, եւթն մղոն ունի սա ի քաղաքէն։ Ելին ընդ նմա և բարբարոսք զզէնս գաղտաբար հանելով, էր ինչ զոր խեցեաւք թագուցեալ, և էր ինչ զոր այլովք հնարիւք գործաւորեալ։ Իսկ իբր պահապանաց դրանցն գտեալ զնենգութիւնն արտաքս հանեալ զզէնսն ոչ արգելուին, իսկ բարբարոսացն զսուրսն մերկացուցեալս ի պահապանսն հպեցան։ Եւ ամբոխումն որ աստուստ ունէր զքաղաքն դժնդակ և ամենեցունց մահ առընթեր լինել թուէր։ Բայց սակայն քաղաքն ի զգուշութեան յայնժամ լինէր, ամենայն ուրեք դրանցն նորա ամրացելոց։ Իսկ Թագաւորին քաղցր կամաւք հպէր ի ժամանակին, և յայտնագոյն պատերազմող քարոզեալ զԳայինաս, հրամայէր զմնացեալս ի քաղաքին զբարբարոսն սպանանել։ Եւ միոյ ի միջի յետ դռնապանաց մահուան անցելոյ աւուր, պատերազմէին որք մերձ զաւրականքն ընդ բարբարոսացն ներքսագոյն դրանցն առ եկեղեցւոյն Գոթաց. քանզի անուանաւր ամենայն մնացեալքն ժողո-

տունջեան անտես լինել, զարհուրեալ հիանային ընդ տեսիլն. Զայս լուեալ Թագաւորին զնախախնամութիւն Աստուծոյ, քաջալերեալ ի հայրապետէն Յոհաննէ, թէ բանակք հրեշտակաց շուրջ են զնովօք և պահեն զնոսա,¹ ելանէր ի պատերազմ յուսացեալ ի տէր Աստուած. և մարտուցեալ պարտեաց զայլազգիսն[ա] և զբազումս[բ] վիրաւորեաց, և զմնացեալսն փախըստականս արարեալ,

ա. Գ. Յոհաննու. բ. Ա՛ Գ. սպան եւ.
1 Սղմ. ԼԳ. Ը.

վեցան։ Բայց զնա հրձիգ առնէին, և սպանանէին ի նոցանէ յոյժ բազումս. իսկ Գայինաս լուեալ զոչ ժամանեալն ելանել ընդ դլուխն սպանանել, և ծանուցեալ ոչ ևս տանել նմա զպատրանսն, համբարձեալ ի մատրանէն վարէր ի Թիրակայ կողմունսն։ Եւ հասեալ ի Քեռսոն կղզին,[ա] ի նմանէ անցանել, և հասանել ի Ղամփսակ փուԹայր, որպէս զի արդեւք զարևելից կողմունսն ունել կարասցէ։

Իսկ իբր Թագաւորին առժամայն ծանուցեալ դարձեալ զաւր արձակեալ ընդ ծով և ընդ ցամաք, ստանաւր դարձեալ Աստուծոյ նախախնամուԹիւնն սքանչելի գործ ցուցանիւր։

Քանզի որպէս բարբարոսացն տարակուսելով ի նաւուցն լաստս կազեալ ի վերայ այնոցիկ անցանէին, իսկ Հռովմայեցւոց զինուորական նաւուցն այնքան ևս հասելոյ հողմ զեփիւռոս շրնչեալ յոյժ։ Հռովմայեցիքն նաւովն ուժգին վարէին, իսկ բարբարոսքն երիվարաւքն

ա. Χερσόνησος Քերսոնէսոս Թերակղզու անուն է՝ Քերսոնեսեան Թերակղզի, իսկ Թարգմանը չհասկանալով բառի երկրորդ մասը որ է νησος կղզի, Թարգմանել է, իսկ առաջին մասը այնպէս է Թողել. բայց ամբողջը իբրեւ յատուկ անուն ամենեւին կարիք չկար Թարգմանելու։

Եւ բռնակալն փախուցեալ ի Թիրակ[ա] և հասեալ ի Ղամփսակ.[բ] որպէսզի կարասցէ ունել[գ] զկողմն արևելից. Իսկ Թագաւորն զօր[դ] առաքէր ընդ ծովեզրն զկնի, իսկ բարբարոսքն տարակուսեալ.ք և ըմբռնեալ նաւս կամէին անցանել՝ ուր խորհէին։ Իսկ Աստուծոյ սքանչելեացն վրէժխնդրուԹիւն և անդ ցուցեալ եղև. և յարուցեալ հողմ սաստիկ զբազումս ի նոցանէ սատակեաց ծովն։

Եւ ապրեալքն ի նոցանէ զԱստուծոյ վրէժխնդրուԹիւնն

ա. Ա՝ ի Թրակեայ. բ Ա. ի Ղափսակ. գ, Բ. գ. առնել. դ Դ. զաւս.

ի Նաւսն յալեացն ի վերայ ձգեալք արտաքս հոսէին և ի ծովուն ապականէին։ Իսկ յոլովք և ի Հռովմայեցւոցն կորնչէին. այսպէս ապա բազում մասն բարբարոսացն ի Նաւեմն յայնժամ կորնչէր։ Իսկ Գայինաս չուեալ և ընդ Թիրակ փախուցեալ, անկանէր յայլ զաւրս Հռովմայեցւոյն և մեռանէր հանդերձ որ ընդ նմա բարբարոսաւքն։

Այսոքիկ իբր յընթացման յաղագս Գայինասայ լիով ճառեցաւ։ Բայց թէ կամեսցի ոք ստուգաբար իմանալ զորս յայնմ պատերազմի եղեալս, ընթերցցի զԳայինիտիա[ա] զգիրս զՔողոստիկոսին Եւսեբիոսին, որ հուպ էր յայսքանւոջս առ Տռուղոսի[բ] իմաստակի,[1] և իքնատես պատերազմին եղեալ ի չորրորդ գիրսն իւրոն[գ] չափովն զեղեալսն պատմեաց. և առժամայնցն եղելոց գործոցն յոյժ ի վերայ արարածոցն[դ] եղեալ սքանչելի։ Եւ այժմ իսկ արարողին[ե] Ամմոնիոսի զնոյն պատճառն հագներգեալ, ի տասն և ի վեցն հիւպատւոջն[2] թա-

ա. τῇ Γαΐνᾳ
բ. Τρωΐλῳ
գ. ἡρωϊκῷ
դ. τοῖς ποιήμασιν
ե. ὁ ποιητής·

1 Տես ստորեւ Է. 1.
2 Փրկչի 398 թ.

ծաննեան վասն մեծամեծ չարեացն զոր գործեցին ի Հռոմայեցւոց իշխանութեան։ Իսկ Գայինա ի փախստեան հանդիպի զօրացն Հռոմայեցւոց և մեռանի սրով զգլուխն հարեալ, և առ Թագաւորն հասուցանէին։ Եւ եղև խաղաղութիւն մեծ ընդ ամենայն աշխարհն, ողորմութիւն յԱստուծոյ եղեալ գոհանալով փա-

գաւորին Նորին Թէոդոսի, զոր Հանդերձ Փաւստոսիւ կատարէր, առ նոյն ինքնակալաւն ցուցեալ պայծառաբար շինեաց։ Այս պատերազմն լինէր ի Հիւպատուոջն Ստեղիքոնի և Աւռեղիանոսի։ [1] Իսկ զնոյն Հետայն Հիւպատին [2] տայր Փռաւիտոս, Գոււտ էր և սա ազգաւ, իսկ մեծ բարեմտութեամբ առ Հռովմայեցիսն անկեալ ի գործ։ [ա] Իսկ այսքանեացս այսոցիկ չացեացս թողեալ զՀռովմայեցւոցն գործս, ուր զքահանայութիւնն Հաւատացեալք ի կարգելոյ Հակառակ ինքեանց նենգութիւնս թշնամանաւք քրիստոնէութեանն ոչ երբէք ի բաց կացին։ Քանզի յայնմ ժամանակին վերա յարուցմունս խոկացելոց քահանայիցն, իսկ սկիզբն չարին յՆ-

ա․ Այստեղից Թարգմանը մի կտոր բաց է թողել․ ուր ի միջի այլոց գտնուում է նաեւ Արկադիոսի որդի Թէոդոսի ծննդեան յիշատակութիւնը որ եղաւ 401 Թ։

1․ Փրկ․ 400 Թ․

2 Փրկ․ 401 Թ․

ռաւոր առնէին զտուիչն այնպիսի այցելութեան․ Եւ եթէ կամիցի ոք զայս ուսանել զգաստանս, ի գիրս Սեբէոսի Քողոստիկոսի ընթերցեալ ուսցի զժամանակին չարիսն [ա] և սքանչելիս զոր եցոյց Տէր [բ] և փրկեաց զՀռոմայեցիս Տէր, զոր եցոյց և զոր Հանդերձեալ էր ցուցանել բռակալն որ արագ բարձաւ ի միջոյ։

ԳԼ․ ԾԻ․

Թէ որպէս Հռաւիտոս պատերազմ յարուցանէ եկեղեցւոյ՝ ասելով թէ Աստուած մարմին ունի թէ անմարմին է․ եւ թէ որպէս Թէոփիլոս եպիսկոպոս Աղէքսանդրի խոստովանի զաստուածութիւն՝ անմարմին։

Իսկ նոյն Հետայն եկեղեցւոյ պատերազմ յառնէ․ Գ Հռաւիտոս ոմն Գուտ էր ազգաւ․ որ ի պատերազմունս արիութիւն ցու-

ա․ Ա՛ ժամանակի չարիսն․ բ․ Ա, Հիբ․ գ․ Ա՛ Գ․ առնէ․

գիպտոսի առնոյր ըստ սովորութեանն վասն պատճառոյս այսպիսւոյ։

Գլ. Է.[1]

Որ փոքր ինչ յառաջ խնդիր շարժեալ. ապաքէն Աստուած մարմին է և զմարդոյ ունի ձև, և կամ անմարմին է և ի բաց վճարի ի մարդկայնւոյ, և յամենայն պարզաբար ասել, մարմնական ձևոյ։

Իսկ յայսմ խնդրոյս հեռ և վիճաբանութիւն յամենայն ժամ ի բազումս լինէին, ոմանց յայսքան յաւելելոց, իսկ ոմանց յայղոցն ջատագով եղելոց։ Բայց առաւել բազումք ի պարզականաց ճգնաւորացն մարմնական և մարմնակերպ գոլ զԱստուծոյ ասէին. իսկ յոլով ի սոցանէ ընդդէմ ելեալք անմարմին գոլ ասէին զԱստուած, և արտաքոյ յամենայն մարմնական կերպարանէ վճիռ հատանէին։ Ընդ որս և Թէոփիլոս միաբանեալ լինէր Աղէքսանդրւոյ եպիսկոպոսն, որպէս զի և

[1] Տես Սոզոմ. Ը. 11. Կոս. Ժ. 7. Նիկ. ԺԳ. 10.

ցեալ և պատուեալ զհւպատութեան պատիւ առնու, զհակառակութիւն բուսուցանէր։ Եւ սկիզբն չարին յԵգիպտոսէ առնու այսպիսի իրօք, որ ինչ յառաջ խնդրի շարժեալ. ապաքէն ասեն Աստուած մարմին ունի և զկերպարան մարդոյ. և դարձեալ թէ անմարմին է և որոշեալ և զատեալ ի մարդկային ձևոյ։ Իսկ այսոսիկ [ա] խնդրոյ հեռ [բ] և բազում վիճմունք լինէին, ոմանք յայսոց աւելեօք, [գ] և ոմանք յայն։ Եւ յոլովք ի պարզամտացն [դ] ճգնաւորաց մարմնական ձևով կերպարանաւ ասէին զԱստուծոյ պատկերն, իսկ բազումք ի նոցանէ ընդդիմացեալք, անմարմին գոլ ասէին զԱստուած, և արտաքոյ ամենայն [ե] մարմնական կերպարանաց. և վճիռ հատեալ յայս զբանս [զ] խոստովանութեան որ առ Աստուած։ Իսկ Թէոփիլոս

ա. Ա՝ Ն. յայսոսիկ. բ. Դ. մինչեւ այստեղ թերի է. գ. Ա՝ յաւելեօք դ. Ա՝ ի պարզամտաց. ե. Ա՝ յամենայն. զ. Դ. յայս բան.

առ եկեղեցեաւն գալով ժողովրդին ընթանալ որոց մարմնակերպն ասելոց զաստուածայինն անմարմին աւրինագրել զԱստուած ի բեմասացութեանն իւրում։

Զայս լսելով Եգիպտացւոցն ճգնաւորաց՝ ժողովեալ[ա] զմիայնարանսն յԱղեքսանդրիա գային, և ամբոխէին ընդդէմ Թէոփիլոսի դատեալք որպէս զամբարշտեալ սպանանել զնա կամէին։

Զայս ծանուցեալ Թէոփիլոսի ի հանդէս մտանէր, և խորհէր հնարս որպէս զի արդեւք ճողոպրեսցի ի սպառնալեաց մահուանն։

Եւ երևեալ նոցա ողոքանաւք փոփոխեաց զարսն, ասացեալ ցնոսա. այնպէս զձեզ տեսի որպէս զԱստուծոյ պատկեր. զայս ճառեալ թուղացոյց զմիայնացեալսն ի դիմմանէն։ Եւ ասէին ցնա, այլ թէ ճշմարիտ ճառես զի Աստուծոյ դէմս է որպէս զմերս, նզովեա զՈ-

ա. Ըստ ԲՆ. Թողեալ.

Աղէքսանդրի եպիսկոպոսն օրինադրէր ի բեմասացութեան եկեղեցեացն իւր[ա] խոստովանել անմարմին զաստուածութիւնն միշտ։ Զ.այս լուեալ բազմաց ճգնաւորացն, թողեալ զմիայնաստանս[բ] յԱղէքսանդր գային և ամբոխէին ընդդէմ Թէոփիլոսի, ամբարշտեալ զնա և[գ] արժանի մահու յաղագս այնորիկ։

Իսկ Թէոփիլոս ի հանդէս մտեալ, թէ զիա՞րդ ճողոպրեսցի ի մահու սպառնալեաց, և ողոքեալ զնոսա ասէ. Ո՞վ հարք. այնպէս տեսի զձեզ որպէս Աստուծոյ պատկերս,[դ] և մի՞ զիս այլ ազգ համարիք աւել. Այսոքիւք ցածոյց[ե] զնոսա ի ցասմանէն, որք և ասէին ցնա. Թէ ճշմարիտ ասես զԱստուծոյ[զ] դէմս որպէս և զմերս, նզովեա զՈրոգինի գրեանն.[է] զի ի նո-

ա. Դ. իւրոց բ. Դ. զմենաստանս. գ. Ա՝ համարէին. դ. Դ. պատկեր. ե. Դ. շիջոյց. զ. Գ. ասես զայս. է. Ա՝ գրեանքն.

բազինեն գրեանն. քանզի ի նոցանէ ոմանք խաւսելով ընդդիմանան մերոցս կարծեացս, իսկ թէ ոչ զայս արասցես ըստ որում ամբարշտացն և աստուածամարտիցն իրի, ականկալցես ի մէնջ։ Այլ ես, ասէ Թէոփիղոս, արարից զաւրինագրեալսն ձեզ, և մի դժնդականայք առ իս. քանզի և ես ցասմամբ եմ առ Որիգինի գրեալսն, և անգոսնեմ զունաւղսն զնոսա։

Այսպէս ապա յայնժամ զմիայնացեալսն խաղաղացուցեալ առաքեաց. թերևս արդեւք որ յաղագս այսորիկ խնդիրն մինչև աստանաւր յառաջ եկեալ դադարեաց, եթէ ոչ էր վառեալ ի վերայ նորա այլ գործոյ, իսկ թէ որպիսի և զինչ ասացից։

Որոց յԵգիպտոս միայնարանացն առաջնորդք եղեն չորք այր երկիւղածք. Դիոսկուռոս, Ամմոնիոս, Եւսեբիոս։ [ա] Սոքա եղբարք էին. իսկ Երկայնք ի դրութենէ

ա. Չորորդ անունը՝ Εὐθύμιος Եւթիմիոս բաց է թողած. որ սակայն համառոտ օրինակի մէջ կայ։

ցանէ ոմանք ընդդիմանալով [ա] մերոցս խոստովանութեան. Թէոփիլոս ասէ. Եւ ես առաւել ցասմամբ իմ ընդ Որոգինէսի, և զօրինագրեալն ի ձէնջ ասացի. [բ] և դուք մի դժընդականայք ընդ իս և անգոսնեմ զունողսն. Զայս ասացեալ զնոսա խաղաղէր, և սիրով յուղարկեալ [գ] զնոսա ի տեղիս իւրեանց. Եւ այսպէս դադարեալ եղև որ յաղագս այսր [դ] էր խնդիրն.

### ԳԼ. ԺԻԱ.

Յաղագս չորից արանցն Եգիպտացւոց մենաստանացն առաջնորդացն. Թէ որպէս չար համբաւեցան ի Թէոփիլոսէ Աղէքսանդրու եպիսկոպոսէ:

Էին եղբարք չորք առաջնորդք [ե] մենաստանացն Եգիպտացւոց՝ արք երկիւղածք յԱստուծոյ. [զ] Դիոսկորոս, Ամմոնի-

ա. Դ. Գ. ընդդիմանան. բ Ա. վասն այնորիկ զի և դուք Դ. [illegible] գ. Ա. Գ. ուղարկեաւ. Դ. ուղարկէր. դ. Ն. այս. ե. Գ. առաջնորդ.

մարմնոյ անուանէին, և էին բանիւ և վարուք վայելչելով, և վասն այսորիկ բազում էր ընդ Աղեքսանդրւոյ որ ընդ նոցա բանն։ Եւ Թէոփիղոս Աղեքսանդրւոյ եպիսկոպոսն յոյժ սիրէր և պատուէր զարսն. վասն որոյ զմինն ի նոցանէ զԴիոսկուռոս եպիսկոպոս Եռմուպողսի կարգէր՝ բռնութեամբ քարշեալ։ Իսկ զերկուսն ի նոցանէ աղաչէր լինիլ առ իւր, և հազիւ հաւանեցուցանէր որպէս եպիսկոպոս։ Բայց սակայն և հարկաւորեաց և ժառանգաւորացն արժանեւք պատուեալ զտնտեսութիւն եկեղեցւոյն ընձեռեաց նոցա։ Իսկ նոքա ի հարկէ կային բարւոք տնտեսութեանն զգուշանալով, բայց սակայն տրտմէին զի ոչ իմաստասիրէին որպէս և կամէին ի ճգնութիւնն յարեալք։ Վասն զի ի յառաջիլ ժամանակին, և վնասել զանձինս համարէին, տեսանէին զեպիսկոպոսն ի յընչականն փոխել վարս, և բազում փոյթ վասն ընչիցն ստացման եդեալ. և յաղագս այսորիկ ընդ ասացելումն զամենայն քար շարժելով, առ ի գտանել

ոս, Սեբիոս, Թէմիոս և էին առաքինիք և գիտնաւորք. և վասըն] ա այսորիկ սիրեցեալք յԱղեքսանդրի եպիսկոպոսաց, Եւ զԴիոսկորոս բռնութեամբ եպիսկոպոս ձեռնադրէր բ Թէոփիլոս Երմուպօլսի, գ և զերկուսն ի նոցանէ աղաչէր առ իւր ունել մեծաւ պատուով. և հազիւ հաւանեցուցանէր, և հարկաւորէ ըզտնտեսութիւն և զհոգաբարձութիւն եկեղեցւոյն ունել, Եւ նոքա ի հարկէ ունէին, և բարւոք տնտեսէին. դ բայց միշտ տխրեալ լինէին, զի թերի համարէին զանձինս ի ճգնաւորական կարգաց մեկնեալք և վնասել զանձինս համարէին, տեսեալ եպիսկոպոսին զընչասիրութիւնն ամենայն ուստեք հաւաքեալ.

[Զայս տեսեալ [աստուածասէր արանցն, հրաժարէին

ա. Ա՟ Գ. եւ վասն. բ. Դ. բռնադատութեամբ ձեռնադրեալ եպիսկոպոս. գ. Բոլ. Ձեռ. Երամուպօլսի. դ. Դ. տնտեսեալ. Ը. անտես էին,

և ժողովել զինչս։ Զայս տեսանելով աստուածասէր արանցն[ա] հրաժարէին ի լինելոյն առ նմա. զանապատ սիրել սասցեալք, և զայն նախապատուեալ քան զոր ի քաղաքին կեանս։ Իսկ Թէոփիղոս մինչ ցուրանաւր ոչ գիտէր զճշմարիտ պատճառն, աղաչէր կալ նոցա. իսկ իբրև ծանեաւ՝ ըստգտեալ ի նոցանէ բարկութեամբ լնոյր, և զամենայն չար սպառնէր առնել նոցա։

Իսկ նոքա փոքր ինչ հող տարեալք սպառնալեացն և յանապատ գնացեալ Ջերմիկ ոմն, որպէս նմանեցաւ, զոլով Թէոփիլոս, ոչ զփոքրն առնէր հակառակ նոցա շարժումն, այլ խորամանգեալ զարսն ամենայն հնարիւք փութայր։ Առեալ և առժամայն զնոցունց եղբայրն զԴիոսկուռոս, զՀեռմուպոլսի եպիսկոպոս։

Բայց տրտմեցուցանէր զնա բաւականաբար յանկչիլն նոցա ի ճգնութիւնսն, և վասն նոցա պաշտաւն ունել բազում։

Եւ գիտէր որպէս զի ոչինչ աւրինակաւ վնասեսցէ զարսն, եթէ ոչ զմիայնացեալսն պատերազմեցուսցէ ընդ նոսա։ Ապա արուեստի[բ] հպէր այսպիսում. քաջ գիտէր զարսն բազում անգամ յաղագս Աստուծոյ ընդ իւր բանս շարագրելով. որպէս զի թէ Աստուած անմարմին է, և ոչ երբէք մարդակերպ, քանզի հետևի երբեմն մարդակերպին ի հարկէ մարդկային կիրն, և

ա. «Զայս . . . արանցն» չիք ի Ռն.
բ Ռն. μέθοδος ճանապարհ. եղանակ։

ի նմանէ յանապատն,[բ] զի մի կորուսցեն զկարգն։ Իսկ Թէոփիլոս աղաչէր մնալ անդէն և ունել զանտեսութիւնն։ Իբրև ոչ կարէ հաւանեցուցանել, բարկութեամբ լնոյր և սպառնայր չարաչար անցս[գ] անցուցանել ընդ նոսա. իսկ նոքա գնային յանապատս յառաջին իւրեանց կարգն։

ա. Դ. յանապատ. բ. Դ. չարչարանացն. գ. Դ. կրճատ է.



զայս կրթիլ ի հնազունիցն․ և յաւէտ յՈրիգինեա։ Որք՝ այսպէս ունելով և խորհելով յաղագս Աստուծոյ Թէոփիղոսի, վասն հաստուցանելոյ թշնամեացն ընդդէմ դարձուցանել զբարուռս իւր աւրինադրեալսն ոչ ծուլացաւ, այլ յափշտակէր զբաղումս ի միայնացելոցն արս աղջախոհս և ազէտս բանիւ, իսկ զյոլովս և առանց դպրութեան։ Եւ առաքէր յորս յանապատին միայնարանս. ոչ պարտ լինել հաւանել Դիոսկուռոսի և ոչ եղբարցն նորա, ասէ, անմարմին զԱստուած ասեն։ Քանզի Աստուած, ասէ, ըստ ատուածային գրոյ և աչս ունի և ականջս և ձեռս և ոտս, որպէս և մարդիկ. իսկ որք առ Դիոսկորոսն՝ Որոգէնի հետևելով հայհոյականս առբէնս մուծանեն, որպէս զի ուրեմն Աստուած ոչ աչս, ոչ ականջս, ոչ ձեռս, և ոչ ոտս ունի։ Այսուիկ իմաստմամբ յափշտակէր զբազումս ի միայնացելոցն. և լինէր ջերմագոյն ապշոյ ի նոսա։ Բայց որքան կրթեալ ունէին զմիտսն, ոչ յափշտակեցան յիմաստմանէն. այլ որոց Դիոսկորոսին և Որոգէնին հետևէին։ Իսկ պարզամիտքն յոլովք գոլով և նախանձ ունելով ջերմագոյն ընդդէմ

Իսկ Թէոփիլոս խորամանկեալ ամենայն ուսանք ի վերայ նոցա չար և զմիայնացեալսն պատերազմեցուցանէր[ա] ընդ նոսա որ յանկուցեալն էին ի նոսա. Այսպէս դժրեալք. թէ վասն այսորիկ որոշեալք եղեն, զի ասէին անմարմին զԱստուած և ոչ մարդակերպ, զի թէ մարդակերպ ապա և կիրս մարդոյ պարտ է ասել Աստուծոյ. և զայս ի հանդունից զՈրոգինի[բ] հաստատեն, զիւրն ասելն ի նոսա փոխարկէր յաղագս չարի արանցն այնոցիկ. Եւ այսպէս յափշտակեալ[գ] զբազումս ի միայնակեցաց արս աղջախոհս և անգէտս գրոց, ոմանք և առանց դպրութեան գրոց,[դ] մի ընդունել զԴիոսկորոս և զեղբարս նո-

ա. Ա, պատերազմեցուցանէր. բ. Դ. Որոգինի հաստատէր եւ զիւր. գ. Ա. ափշտակեալ. դ. Դ. ոմանք գրոց չիք.

եղբարցն գնային։ Էր ապա հերձուած ի միջի նոցա և զվիճմանս որպէս զամբարշտեալս քարշէին. և որք Թէոփիլոսին զգուշանալով Որիգէնի, անմիտս և ամբարիշտս կոչէին զեղբարսն, իսկ այլքն մարդակերպացիս[ա] զորս ի Թէոփիլոսէ հաւանեալք անուանէին։ Եւ յայսմանէ ընտրերահաւատութիւն լինէր ոչ փոքր. և էր ի միջի միայնացելոցն պատերազմ անուխտելի։ Իսկ Թէոփիլոս իբր ծանեաւ յառաջեալ զգլխումնն իւր, հանդերձ ամբոխով հասանելով ի Նիտրիայ, ուրանաւր էին միայնարանքն, վառեցանէր զմիայնացեալսն ընդդէմ Որիգ-

ա· 'Ανθρωπομορφιανοί.

էնի. զայսպէս ասողսն որ զինքն[ա] համբաւեցին կարծիս անմարմին զԱստուած։ Եւ միաբանք եղեալ ջատագով Աստուծոյ կարծեցեալ զինքեանս ամբոխէին,[բ] իսկ որ կրթեալ ունէին զմիտս գրոց, ոչ խոտորեցան յիմաստիցն. այլ ընդ Դիոսկորոսի և ընդ եղբարս նորա ոչ մարմին գոլ զԱստուած որպէս մերս, այլև ոչ անմարմին որ և մեզ է հասանելի, այլ որպէս ինքն գիտէ յիմանալեացս մերով[գ] զերծեալ. Իսկ պարզամիտք և անգէտքն բազում գոլով. ջերմագոյն[դ] ընդդէմ եղբարցն զինէին բանակռուեալք.

Եւ էր մարտ ի մէջ նոցա ի սատարելոյ չարին և Թէոփիլոսի կերպարան մարդոյ ասէին ունել աչս[ե] և ականջս. և հոտոտելիս և ձեռս և ոտս, և որ ինչ դէմ է[զ] մարդոյ, բայց[է] ի կրիցս։ Ցայսորիկ[ը] Թէոփիլոս ամբոխիւ երթայր ի Նիտրիա,[թ] ուրանօր մենաստանքն, և վառէր[ժ] զմիայնացեալսն ընդդէմ Դէոսկորոսի և եղբարց նորա։ Եւ նոքա վշտացեալք, հազիւ

ա. Ա. Բ. Ն. Գ. որ զինեն. բ. Ա՛ համբաւէին. Դ. չունի ամբողջ նախադ. գ. Դ. մերոց. դ. Դ. վեհագոյն. ե. Ա՛ աչս. զ. Ա՛ դէպ է Գ. զիմէր. է. Ա՛ բաց. ը. Բ. կրիցս. այսուցիկ։ Ցետ այսորիկ. թ. Բող. ձեռ. ի Մետրիայ. ժ. Ն. վարէր.

կուռոսի և Նորին եղբարցն. իսկ նոքա վշտացեալք կո-րընչիլ հագիւ ճողոպրէին: Զայսոսիկ զըստ Եգիպտոսի եղեալս, Կոստանտինուպոլսի եպիսկոպոսն Յովհան դեռ անուագան գիտանայր, իսկ վարդապետութեամբքն ծաղ-կեալ և հռչակեալ էր ի վերայ այնորիկ. աճեցոյց նախ և զօր ի գիշերային աւրհնութիւնսն աղաւթս յայս-պիսի պատճառոյ:

Ճողոպրեալք ի չարէ անտի, փախստականք եղեն ի նմանէ, և հասանէին ի Կոստանդնուպօլիս առ երանելին Յոհան, և պատ-մեցին նմա զանցս աղէտիցն որ ինչ միանգամ եղև յԵգիպ-տոս. Եւ նա սիրով ընդունի զեղբարսն.[1]

ԳԼ. ՃԻԲ.

Սիւղոոոս քահանայ թէ որպէս զրպարտի:

[Էր ընդ նոսա և Իսիդորոս[ա] քահանայ սիրելի Թէոփի-լոսի,[բ] բայց այժմ ատելի ի ձեռն Պետրոսի իրիցապետի[գ] Աղեքսանդրի եկեղեցւոյն. զի զնա[դ] որոշէր յաղագս այսպիսի կարծեաց. Որպէս թէ զկին Մանիքեցի նախ քան յաղանդ.յն սրբել, յաստուածային խորհուրդն գայ. իսկ նա նովաւ ասէր մերժել յաղանդէ նախկին և զԻսիդորոս[ե] կոչէր իւր վկայ. Եւ նա անգէտ եղեալ զրպարտութեան, վկայէ զճշմարտու-թիւնն. Եւ սա որոշեալ գայ ընդ նոսա ի Կոստանդնուպօլիս և ընդ նոսա սիրով ընկալեալ եղև յեկեղեցին.[զ] բայց ի հազոր-դութենէ արգելու զնոսա յաստուածային խորհրդոյն, զի գի-տացէ զճշմարիտն զոր լուաւ. և նոցա զանխիշաչարութեան

ա. Բոլոր. Ձեռ. Սիւղիւոոս. բ. Ա. Թէոփիլոս. Դ չունի այս ամբողջ գլուխը, գ. Գ. երիցապետի. դ. Ա՛ զի նա. ե. Բոլ. Ձեռ. զՍեւէղիոոս. զ. Ա եկեղեցին.

1 Հետեւեալ [] մէջ եղած հատուածները համառօտ օրինակի մէջ յետ ու առաջ է դրուած:

ԳԼ. Ը.[1]

Արիանոսքն որպէս ասացաք, արտաքոյ քաղաքին զժողովսն առնէին։ Ապա իբրև իւրաքանչիւր շաբաթուցն տաւնք հասանէին. ասեմ զօրս յայնժամ շաբաթու և կիւրակէի, յորս հաւաքմունք ըստ եկեղեցեացն սովորութեան լինէին,[2] նոքա ներքսագոյն դրանց քաղաքին ի սրահսն հաւաքեալք և աւրհնութիւնս ընդդիմաձայնս առ Արիանոսական կարծիսն յարդարեալք ունէին կամաւ. և զայս ասէին ըստ յոլով մասին գիշերւոյն։ Իսկ յառաւաւտինսն զնոյնպիսիսն ընդ-

1. Տես Սոզոմ. Ը. 8. Կաս. Ժ. 8. Ս. Նիկ. ԺԳ. 8.
2 Տես վերև Ե. 2.

Քորատն աւանդէր միշտ ի խաղաղութեան, և զհռչակաւոր վարդապետութիւն միշտ յեկեղեցւոջ Աստուծոյ անհատ ճառէր.[ա] Եւ շարագրողքն ոչ զանց առնէին զշնորհալից աստուածատուր բանիցն, որպէս յաղբիւրէ հոսեալ արբուցանելով[բ] զաստուածասէր անձինս. և յաշակերտսն[գ] արմնցուցանէր առաւել յոյգութիւն լուսաւոր վարդապետութեան, որ միշտ յեկեղեցւոջ Աստուծոյ]։

ԳԼ. ԾԻԳ.

Թէ որպէս աճեցոյց եւ բազում օրհներգութիւն եւ աղօթս գիշերային փառաբանութեան:

Ի վերայ այսոցիկ աճեցոյց և բազում օրհներգութիւնս և աղօթս ի գիշերային փառաբանութեան ըստ խորհրդածութեան տօնից, և կիւրակէի և շաբաթու, ըստ համագոյութեան հաւատոյ ընդդէմ հերետիկոսացն, մանաւանդ Արիանոսաց, որ նախկին իսկ ունէին առնել ընդդէմ ուղղոց. զգիշերային օրհ-

ա. Ա՝ ճառով. բ. Ա բուծանելով. գ. Ա՝ եւ զյաշակերտսն.

դէմ ընդ մէջ քաղաքին եկանէին ընդ դրունսն, և ի
տեղիսն ուրանաւր ժողովէին հասանէին։ Վասն զի և
հայհոյութիւնս և հակառակութիւնս ընդդէմ խորհաւ-
ղացն համագոյութեանն ասելով ոչ դադարէին, քանզի
բազում անգամ և այսպիսի աւրհնութիւն ասէին.
Որ են ոյք ասեն զերիսն մին զաւրութիւն։

Յայնժամ երկուցեալ Յովհաննու, զի մի՛ ոք ի
պարզագունիցն յայսպիսի աւրհնութեանց արտաքս
քարշեսցի յեկեղեցւոյն, ընդդէմ նոցա կարգէր զորս
իւրոյ ժողովրդին, որպէս զի արդեաւք և նոքա ի գի-
շերինսն աւրհնութիւնս պարապելով չիջուսցեն զնոցա
զոր առ այս փոյթն, և հաստատուն զընտանիսն առ
իւրեանց հաւատ յարդարեսցեն, և ոչ մոլորեսցին յԱ-
րիանոսացն։ Այլ դիտումն Յովաննու լինէր քաղցր, և
խաղովութեամբք և վշտաւք զվաղճանն ընկալաւ։ Քանզի

նութիւնս հնչեցուցանէին ի դուրս ի լսելիս բազմաց. զի այ-
նու կարասցեն որսալ զպարզամիտսն, զնոյն և յառաւօտու
զհակառակս համագոյ Երրորդութեան, որ մին քան զմին
նուազ ասէին յօրհնութիւնսն (Հօր և Որդւոյ և Հոգւոյն Սրբ-
բոյ) բարձր ձայնիւ.

Յայնժամ երկուցեալ Յոհաննու, զի մի ոք յայսպիսի
օրհնութեանց արտաքս քարշեսցի յեկեղեցւոյն ի պարզամտացն.
կամ ի դիւրահաւանիցն. ընդդէմ նոցա կարգէր զօրս փառա-
բանիչս ամենասուրբ Երրորդութեան միոյ աստուածութեան
և փառաց և զօրութեան, որպէս զի արդեօք և նոքա ի գիշե-
րային օրհնութեամբք օրհնեսցեն զԱստուած. և չիջուսցեն
զնոցա հայհոյող օրհնութիւնսն, և զընտանիս հաւատոյ պա-
հեսցեն ի մոլորութենէ աղանդոյ նոցա փառաբանութեամբն.
որ ի Հայր և յՈրդի և ի Հոգին Սուրբ. Այս դիտումն էր բարի

իբրև պայծառագոյնքս այսպիսի համագոյութեանն աւրհնութիւնք ի գիշերայինսն աւրհնաբանութիւնս ցուցանէին. քանզի յարդարեալ լինէին խաչք արծաթիք բերելով և լուցմունս ի մոմեայ ջահուց, թագուհւոյն Եւդոքսեայ տուեալ զոր յայտնի վզենակն։ Ամբոխ գոլով Արիանոսքն և նախանձու աւրինակաւն ըմբռնեալք ի հատուցանելն, և վիրաւորս առնել ձեռն արկէին. քանզի տակաւին ի յառաջել զաւրութենէն ջերմիկքն առ մարտն էին, և արհամարհէին զնոսա։ Ապա ոչ փոքր արարեալ ի միում գիշերի առնէին զմարտն և սպանէին քարինս ձգիլ. և հարկանէր քար զճակատն Բրիսոնի[ա] որ թագաւորին ներքինի էր, ընդունելով յանժամ զաւրհներգողսն, կործէին և ոմանք ի ժողովրդենէն յերկոցունց կողմանցն։ Յորոց վերայ շարժեալ թագա-

ա. Βρισων

և սգով արգելաւ։ Քանզի պայծառագոյն սրբասացութեանն համագոյ Երրորդութեանն ի գիշերայինսն լսելոյ օրհնութիւնս, յարդարեալ խաչիւք և անուշահոտ խնկովք մոմեղինովք և ջահիւք (շրջելով[ա] ընդ քաղաքն օրհնէին[բ] զԱստուած, և զամենեցուն լսողացն միտս շարժէին ի բարեբանութիւն ամենասուրբ Երրորդութեանն, և ընդ առաւօտս սրբասացութիւն Երրորդութեան Որդւոյ ընծայեցուցանէին քաղցրաձայն երգով սուրբ Աստուած ասելով, սուրբ և հզօր, սուրբ անմահ որ խաչեցար վասն մեր, ողորմեա մեզ) Զայս լուեալ Արիանոսացն, մախացեալ ընդ օրհնութիւնն Աստուծոյ, զարթուցին[գ] պատերազմ սաստիկ ի գիշերի, քարինս վիժելով և զօրհներգողսն հարեալ վիրաւորէին և զոմանս սպանին քարկոծեալք. և լինէր գիշերամարտութիւն և բազումք յերկոցունց կողմանց

ա. Դ. շրջեալ. բ. Դ. դարձեալ մի քանի ամբողջ թերթեր չունի. գ. Ա, յարուցին.

ւորն, արգել զԱրիանոսն հրապարակաւ առնել զաւրհ-նաբանութիւնսն. եղեալքն յայնժամ այսպիսիք էին։ Բայց ասելի է թէ ի յորմէ պատճառոյ էառ սովորու-թիւն ընդդիմաձայն աւրհնութիւնս յեկեղեցւոջն ըն-դունիլ։

Իգնատիոս որ Անտիոքայ Ասորւոց երրորդ յառա-ջեւոյն Պետրոսէ եպիսկոպոս, որ և ընդ նոսա ընդ յա-ռաջեւոյն լինէր եղեալ, երևումն հրեշտակաց եսես ի ձեռն ընդդիմաձայն աւրհնութեանցն զսուրբ Երրոր-

վիրաւորեցան և մեռան. Զայս լուեալ Թագաւորին իսկոյն սպառնալեօք արգել զԱրիանոսն ի մարտիցն, և արգել զգիշերա-յին օրհնութիւնսն ասել ի դուրս, այլ ի տունս աղօթից ամե-նեցուն օրհնել զԱստուած.

ԳՂ. ՃԻԴ.

Պատճառ երեք Սրբասացութեան թէ որպէս ի վերայ որդւոյ ասի։

Ասացից և զպատճառս[1] Սրբասացութեան որ ի վերայ Որդւոյ ասի Երրորդութեանն սրբասացութիւնն. Իգնատիոս[2] Անտիոքայ եպիսկոպոս՝ երրորդ յառաջեւոյն Պետրոսէ և աշա-կերտեալ նոցա, որ և յեւթանասնիցն ասի լինել սուրբն, սա տեսանէ երկնաւոր զօրս հրեշտակաց, (որք օրհնէին զամենա-սուրբ Երրորդութիւն երեքկին սրբասացութեամբ մի աստուա-

ա. Գ. մեղաց.

1 Նոյնը Տես. զԹարգմանութիւն հատուածիս ի Զամչեանէ. Հ. Բ. 633: Էջմիածնի մատենադարանի Ձեռագրերից մէկի մէջ թիւ 544 թղ. ՁԸ. ժողովուած է վկայութիւններ զանազան պատմագիրներից, ուր կայ մի նաեւ փոքրիկ հատուած Սոկրատի պատմութիւնից: «Ի Սոկրատէն բանս Իգնատիոս Անտիոքացի յիւր ժամանակն կարգեաց զխաչեցարն յԱն-տիոք զոր ի հրեշտակէն լուաւ, քանզի ականատես էր Քրիստոսի, եւ առեալ անտի ասացին զխաչեցարն ի քաղում եկեղեցիս մայրաքաղա-քաց:»

դուԹիւնն աւրհնելոյ, և զաւրինակ տեսուԹեանն որում Անտիոքիայ եկեղեցւոյն աւանդեաց։ Ուստի և յամենայն եկեղեցիս նոյն աւանդուԹիւնն տուաւ և պահի։ Արդ այս էր որ յաղագս ընդդիմաձայն աւրհնուԹեանցն բանն։

Գլ․ Թ․[1]

Իսկ ոչինչ ընդ երկարս ոյք յանապատէն միայնացեալքն․ ի Կոստանդնուպոլիս գային, հանդերձ Դիոսկորոսիւ և նորին եղբարրքն։ Էր ընդ նոսա և Իսիդորոս[2] որ յառաջ եպիսկոպոսին Թէոփիղոսի սիրելի, իսկ յայնժամ Թշնամի եղեալ վասն այսպիսի պատճառոյ։ Պետրոս ոմն երիցապետ[ա] Աղէքսանդրւոյ եկեղեցւոյն զնա հանել խորհեցաւ,[բ] և մեղադրուԹիւնս ածէր ի վերայ նորա․ որպէս զի Թէ զկին ոմն Մանիքեցի յաստուածայինսն խորհուրդս ընկալեալ էր, ոչ նախկին

ա․ πρωτοβρεσβύτερος.

բ։ Ըստ բնագրի ոչ Թէ Պետրոսն է Իսիդորին հանում, այլ հակառակը լինում է Թէոփիլոսը Պետրոսի պատճառաւ։

1 Տես Սոզոմ․ Ը․ 12․ Սոկրատ․ Զ․ 10․ Նիկ․ ԺԳ․ 11։

2 Սա Աթանասի ժամանակ ձեռնադրուած քահանայ էր եւ մօտ 80 տարեկան արդէն։

ծուԹեանն զփառսն ընծայէին․ զնոյն դարձեալ և ի վերայ Որդւոյ անճառելի ձայնիւ երեքկին սրբասացուԹեամբ։ տան զփառսն։ Որ ի միոս նորա ապաւորեալ եղև սրբասացուԹիւն օրհնուԹեանցն․ որ ի Քրիստոս զխորհրդածուԹիւն[բ] ունի) և զայս յԱնտիոքայ եկեղեցւոյն աւանդէր յերեկոյս և ի վաղորդեան աւուրս սուրբն Իգնատիոս։ Ուստի և յամենայն եկեղեցիս ուղղափառաց տուեալ պահի, (և զամենայն կարգս եկեղեցւոյ յԻգնատիոսէ առէ հաստատեալ։)

ա․ Ա մի աստուածուԹեամբ․ բ․ Ն․ զխորհրդակցուԹիւն․

ի մանիքէական հերձուածոյն մերժեալ զնա։ Եւ վասն զի Պետրոս ասէր փոխել յաղանդոյն զկինն, և ոչ առանց կամաց եպիսկոպոսին ընդունել զնա, զայրացնէր Թէոփիղոս իբր զզրպարտեալ․ քանզի ոչ գիտել ասէր զեղեալն։ Ապա Պետրոս զԻսիդորոս կոչէր վկայեալ նմա, որպէս զի ոչ անգէտ լինել որոց վասն կնոջն եպիսկոպոսին։ Իսկ հանդիպէր որ ինչ ըստ այսմ ժամանակի ի Թագաւորացելումն Հռովմ կելով Իսիդորոսի, քանզի առաքեալ լինէր ի Թէոփիղոսէ առ Դամասոս Հռովմայ եպիսկոպոսն, առ ի հաշտեցանել զնա ընդ Փղաբիանոսի Անտիոքայ եպիսկոպոսին։ Քանզի խղճային[ա] որք Մեղիտիոսին առ Փլաբիանոս վասն երդմանն, որպէս և յառաջագոյնն ճառեցաւ։

Յարուցեալ յայնմժամ ի Հռովմա Իսիդորոս, և ի Պետրոսէ ի վկայութիւն կոչեցեալ, ասէր որպէս զի թէ իցէ ընկալեալ զկինն Մանիքէցի կամաւք եպիսկոպոսին, և տալ նմա կնոջն յաստուածայինցն խորհըրդոց։[բ] Բորբոքէր ապա Թէոփիղոս բարկութեամբ, և զերկոսինն յեկեղեցւոյն արտաքս վարէր։ Այս պատճառս եղև Իսիդորոսի ընդ որոց Դիոսկորոսին հասանել ի Կոստանդինուպաւղիս, որպէս զի արդեւք ի Թագաւորէն և յեպիսկոպոսէն Յովհաննայ, որ ինչ հակառակ նոցա յարդարեալն յանդիմանեսցի։ Զայս ծանուցեալ Յովհաննայ, պատուով ունէր զարսն, և յաղաւթիցն վայելել ըստ եկեղեցւոյն ոչ արգելոյր, իսկ ի հաղորդութենէ խորհրդոցն ոչ ասաց քան զտեղեկանալն տալ նոցա։[գ]

ա․ διεκρίνοντο բաժանեալ լինէին։

բ․ ά μυστήρια.

գ․ Երկու նախադասութիւն է բաց թողած։

Եւ լուեալ Թէոփիղոսի զորս հալածեալ եղեն ի նմանէ, թէ ընկալեալ եղեն ի Յոհաննէ ի հաղորդութիւն և պատրաս-

Եւ ամենայն իրաւք յոյս լինէր, որպէս զի արդեաւք ոչ միայն որոց Դիոսկորոսին հատուցէ, այլ քանզի և զՅովհան ընկեցէ յաթոռոյն։ Ապա առաքէր ըստ քաղաքացն թուղթս առ եպիսկոպոսունսն, թագուցանելով զընքեանն դիտումն, միայն զՈրիգէնին գրեան անգոսնեալ. որովք նախ քան զնա Աթանասիոս վկայութեամբ ընտանի հաւատոյն ի յընդդէմ Արիանոսացն բանս բազում անգամ հպեցաւ։

Գլ. Ժ. [1]

Ուխտէր ապա Թէոփիղոսի հաշտութիւն[ա] առ Եպիփանոս եպիսկոպոսն Կոստանդեայ[բ] որ ի Կիւպրոս, նախկին անմիաբան եղելոյ առ նա. քանզի մեղադրէր Եպիփան Թէոփիլոսի իբր զփոքր իմացողի յաղագս Աստուծոյ, զի մարդակերպ զնա գոլ կար ծէին։ Արդ այսպէս ունելով Թէոփիլոսի յաղագս Աստուծոյ, և անգոսնելով ուք մարդակերպն զաստուածայինն կարծէին.

ա. φιλία
բ. Κωνστατίας
1 Տես Սոզոմ. Ը. 14. Կաս. Ժ. 10 Նիկեփ. ԺԳ. 12.

եցաւ գնալ նոցա։ Եւ այսօրիկ սուտք առաւել զնա չարացուցին առ երանելին, զոր ունէր զմախանս առ Յոհան։ Ապա առաքէ թուղթ ըստ քաղաքաց քաղաքաց առ եպիսկոպոսս. որպէս զի կարասցէ հատուցանել զար Յոհաննու և արանցն, որք ի նա ապաւինեցան։ Եւ թագուցանէ զինքեան գիտումն, և անգոսնէ[ա] զգրեանն Որիգէնի, որ նախ քան զնա Աթանասիոսի վկայութիւնն էր[բ] ընդդէմ հաւատոյն Արիանոսացն մարտի։

Ուխտէր Թէոփիլոս գրով առ Եպիփան եպիսկոպոսն Կիպրացոց, զի անմիաբան էր նախկին ընդ նմա վասն մարդակերպ

ա. Գ. միայն. բ. Ա Աթանասիոս ի վկայութիւն.

Իսկ Անտիոքոս յառաջագոյն ի Կոստանդինուպօլիս ի Պտղոմիդոյ եկեալ, ըստ եկեղեցեացն ժամանակաւ ինչ խորհրդաբար ուսուցեալ և բազումս յայսցանէ ինչս արարեալ,[ա] յիւրն գնաց։ Իսկ Սեւերիանոսի յետ այսորիկ ծանուցեալ՝ զԱնտիոք բազում ինչս ի Կոստանտինուպօլսի ժողովելով, նախանձեալ զայն և ինքն փութացաւ, և ճգնեալ և շարակարգեալ բանս յաճախս և ինքն ի Կոստանտինուպօլիս գնայր։ Եւ ընկալեալ բարւոք ի Յովհաննայ մինչև ցժամանակս ինչ հնազանդ լինէր առնն, և ողոքէր և ինքն ոչինչ նուազ սիրեալ և պատուեալ ի նմանէ, ծաղկէր և ըստ վարդապետութեանցն և բազմաց վեհագունիցն, նաև նմա թագաւորին[բ] լինէր ծանաւթ։ Եւ վասն զի յայսքանւոջ պատահեաց Եփեսոսի եպիսկոպոսի մեռանել, հարկ լինէր Յովհաննու երթալ յԵփեսոս առ ի ձեռնադրել եպիսկոպոս։ Եւ հասանելով անդր, այլոց զայլ նախակարգեալ եպիսկոպոս փութացելոց[գ] նա զՀերակղիտոս զսարկաւագ իւր, ազգաւ

ա. χρηματισάμενος Նա այդ փողը հաւաքել է ժողովրդեան տուած կամաւոր ընծաներից։

բ. Բն. αὐτῷ βασιλεῖ Թագաւորին իսկ լինէր... .

գ. Բնագրից մի ամբողջ պարբերութիւն բաց է թողած։

### ԳԼ. ՃԻԵ.

Երթալն ս. Յոհաննու յԵփեսոս ի ձեռնադրել եպիսկոպոս եւ Սերապիոնի բանսարկութիւն։

Եղև երթալ Յոհաննու յԵփեսոս և ձեռնադրել անդ եպիսկոպոս ի տեղիս վախճանելոցն, և զեկեղեցւոյն կարգս յարդարել[ա] ըստ քաղաքաց քաղաքաց, և զՆաւատիանոսս միաւորելով յեկեղեցիս[բ] Աստուծոյ, և զԶատիկն ըստ մերում առնելեաց. յայսոսիկ յերկարեալ[գ] ի դարձն (առնել Զատիկ)։

ա. Գ. արդարել. բ. Ա յեկեղեցի. գ. Ա՝ երկարեալ.

Կիպրացի, յեպիսկոպոսութիւնն նախակարգէր։ Եւ եղեալ ի վերայ այսորիկ աղմուկ յԵփեսոս իբր թէ ոչ արժանի լինէր առ եպիսկոպոսութիւն Իռակղիդիաս։ ա Հարկ եղև յամել Յովհաննու յԵփեսոս, իսկ յամելով նորա ի նմա, Սեւերիանոս ի Կոստանդնուպօլիս համայագոյն լսաւղացն լինէր։ Եւ այս ոչ թագչէր ի Յոհանայ, քանզի փութապէս նմա եղեալքն պատմէին։ Սեռապիոնի, ո[ւ]րում և նախկին արարաք յիշատակ, բանս արկանել և խռովեցուցանել ասացեալ ի Սեւերիանոսէ զեկեղեցին, առ նախանձ աւրինակին նախակարգեցաւ Յոհան։ Այս ճանապարհին գործ ինչ արարեալ զբազում եկեղեցիս Նաւատիանոսացն և զՉորեքտասաներորդացն բ առնելով, միաւորեցոյց ընդ սրբազոյն եկեղեցւոյ և գայ ի Կոստանդնուպօլիս։ Եւ ինքն դարձեալ զպատշաճ հոգատարութիւն եկեղեցեացն առնէր. իսկ զՍեռապիոնի զամբարտաւանութիւնն և զամբարհաւաճութիւնն ոչ ոք տանել կարէր։ Քանզի զբազում համարձակութիւնն զոր ի Յոհանայ ստանայր, առաւել քան զպարտն ամենեցուն մատուցանէր, վասն որոյ և որ ընդդէմ եպիսկոպոսին ատելութիւնն առաւել բորբոքէր։

ա. Այս նախադասութեան տեղ բնագրի մէջ «երկուքին կողմանց ղաղարէին յընտանի վիճաբանութեանց», որ համապատասխան է բաց թողած պարբերութեան մտքին։

բ. Τεσσαρεσκαι δεκαδιτῶν

Իսկ Սերապիոն բանսարկու, զոր նախ յիշեցաք, սարկա-
ւագ գոլով միաւորի ընդ Սեւերի եպիսկոպոսի. և ամբարհաւա-
ճեալք խաբեն զբազումս ի պարզամտացն ի բաց կալ ի Յոհան-
նու ուսմանցն. և որք էին ատելիք Յոհաննու, առաւել յոր-
դորէին յանկումն նորա. և այս ոչ ծածկէր ի Յոհաննէ։ Բայ[redacted]
երանելին Յոհան ոչինչ փոյթ առնէր զայնմանէ ասացեալսն ,

Երբեմն Սեւերիանոսի առընթեր գոլով, զպատշաճն գոլով եպիսկոպոսին պատիւ ոչ բացատրեաց, այլ նըստելով կատարէր ցուցեալ փոքր ինչ հոգ տարեալ Սեւերիանոսի գալստեանն։ Զայս ոչ տարեալ Սեւերիանոս զՍեռապիոնի արհամարհութիւնն. և առ որս մերձն մեծամեծս կարդայր ասելով, եթէ Սեռապիոն քրիստոնէ մեռանիցի, Քրիստոս ոչ մարդացաւ։ Զայս զպատճառ Սեռապիոնի ըմբռնեալ, յայտնաբար թշնամի զՍեւերիանոս Յովհաննու կարգեաց, թագուցեալ զոր առ որոշումն, զորոյ թէ Սեռապիոն քրիստոնէ մեռանիցի. միայն ճառեալ ասացեալ ի Սեւերիանոսէ, որպէս զի ուրեմն Քրիստոս ոչ մարդացաւ. և զորս իւրն վկայս, իբր ի վերայ տողին, զայս ածէր։ Ապա ոչ փոյթ արարեալ Յովհաննու, արտաքս վարէր զնա ի քաղաքէն։ Ծանուցեալ զայս Թագուհւոյն Եւդոքսիա՝ մեղադրէր Յոհաննայ, և յորդորէր ստէպ կոչել զՍեւերիանոս ի Բիւթինիա Քաղկեդոնէ։ Բայց նա ոչ քան չև ևս հաւանէր, Յոհան յորմէ առ նա հաշտութենէն խոտորէր, և ոչ միոյ ումեք յորդորաւղի էր հաւանելի, մինչև Թագուհին Եւդոքսիա ի համանուան առաքելոյ եկեղեցւոջ զորդին Թէոդոսիոս, զոր այժմ բարեբախտաբար թագաւորելով, յոյժ յայնժամ տղայ գոլով, ի ծունկսն Յոհաննու ընկեցեալ

և դարձեալ ի Կոստանդնուպոլիս՝ ի նոցանէ քամահարեալ[ա] լինէր, զոր ունէին յաղագս ժողովոյն խորհուրդ, այլ ահ երանելոյն ի պատկառ ածէր.[բ] այլ ոչ դադարէր ի թիւրելոյ զուխտըն[գ] և զժողովուրդն։ Իսկ Յոհան արտաքս հանէ զնա ի քաղաքէն և ոչ ընդունի զբարեխօսացն աղաչանս որ վասն նորա։
Յայնժամ առաքէ Թագուհին Եւդոքսի զորդին իւր ըդ-Թէոդոս, զի էր մանուկ, և անկեալ յոտս երանելոյն աղաչէր

ա. Գ. Ա. քամահեալ. բ. Ա՝ ի պատուս կածէր. գ. Ա՝ զոտն.

և երդմունս բազումս վասն նորա երդմնեցուցեալ, հա-գիւ զոր առ Սևեռիանոս հաշտութիւնն հաւանեցոյց ողջունել։

Արդ այսու աւրինակաւ սոքա յայտնապէս հաշ-տեցան. բայց միայն ոչինչ նուազ զկամն դաղտ առ միմեանս ունելով. իսկ պատճառն որ առ Սեւեռիանոս տրտմո. թեանն այսպիսի ինչ էր։

Գլ. ԺԲ.[1]

Յետո բազում իրի ի՛Կիպրոսէ եպիսկոպոս Եպիփա-նիոս ի Կոստանդինուպոլիս գայր պատճառանացն Թէո-փիլոսի հաւանել վերաբերելով ընդ այնուիկ զնզովական-սըն Որիգէնի գրոյն. ի ձեռն որոց ոչ զՈրիգէն[ան] անհա-ղորդելի լինել ասել, այլ զգրեանն միայն զորս մատնեաց։ Ապա դիմեալ ի մատուռն սրբոյն Յոհաննու, որ ունի Է մղոն ի քաղաքէս, և ելեալ ի նաւէն, և հաւաքմունս կատարեալ, և սարկաւագ ձեռնադրել առժամայն ի քա-ղաքս մտանէր։ Եւ ի կողմանէն Յոհաննու խոտորէր

1 Տես Սոզոմ. Ը. 14. կաս. Ժ. 11. Նիկ. ԺԱ. 13։

Թողուլ նմա զկանգանս, որում ոչ անկուր եղեալ կատարէ զխնդիրն. Այլ նա ոչ եկաց յընտանի իւր խորհրդոյն չարէ.

Ցետ ոչ բազում իրի գայ եպիսկոպոսն Եպիփան ի Կոստանդ-նուպօլիս՝ հրապուրեալ ի Թէոփիլէ. և եկեալ ի մատուռն Յո-հաննու առաքելոյ, որ հեռի էր [ա] ի քաղաքէն եւթն մղոնաւ, [illegible] հաւաքմունս [բ] արարեալ անդ. ձեռնադրութիւնս առնէ, և ապ [illegible] ի քաղաքն մտանէր։

Եւ ի կողմանէն Յոհաննու խոտորէր ըստ կարծեաց, Թէոփիլոսի առանձինն հրամայէ իջևանիլ և զժողովեալ [գ] եպի[illegible] կոպոսունսն առ նա, և զնզովս նոցա ընթեռնու նոցա. Վ[illegible]

ա. Ա՛ հեռի է, Գ. հեռի են. բ. Գ. հաւաքմանս. գ. Գ. ժողով[illegible]ալ

Թէոփիլոսի շնորհելով, յառանձնում իջանէր յաւթևանի. և կոչելով զդիմեալսն յեպիսկոպոսացն, զնզովականսն Որիգէնի գրենոյն ընթանայր, բայց ոչինչ ունելով ասել առ այնոսիկ, և թուել նմա և Թէոփիլոսի հաւանել զայնոսիկ։

Եւ ոմանք պատկառելով յԷպեփանաստորագրէին. իսկ բազումք առնել զայն ի բաց դառնային, ընդ որս էր և Թէոդիմոս Սկիւթւոյ եպիսկոպոսն, որ առ Էպիփանն, այսպիսի ինչ պատասխանեաց եւ, ասէ, ով Էպիփան, ոչ զյառաջ բարւոք ննջեցեալն թշնամանեալ յաւժարիմ, և ոչ հայհոյական ինչ իրս ձեռնարկել յանդգնիմ, հանելով զորս որք նախ քան զմեզ ոչ արհամարեցին. այլ որպէս զի և ոչ չար ինչ լինել վարդապետի. յՈրիգէնի գրեանն ասացեալ։ Եւ յառաջ բերեալ զգիրս մի Որիգէնի ընթեռցաւ և ցուցանէր եկեղեցական արտադրութիւնս. և յետ այսորիկ ի վերայ էած ասելով. որք զայսոսիկ թշնամանեցինն, ի յորս վասն որոյ բանքս թշնամանեալք թաքուցին զինքեանս։ Եւ զի զնախահարսն արտաքս մղեալ, զորս յայսցանէ ըն-

Որեգինի Թէոփիլէ առաջի Եպիփանու ի վաղիւն ժողովեալք՝ իսկ ոմանք ակնածեալք Եպիփանայ ստորագրէին․ իսկ բազումք ի բաց կային գիտելով[ա] զճշմարտութիւնն։ Ասէ Թէոգիոս[բ] Սկիւթայ եպիսկոպոս (ո՜վ այրդ Աստուծոյ) Եպիփան, ոչ յօժարեալք զառաջնոց սուրբ հարցն Գրիգորի ասեմ Սքանչելագործի և Աթանասի և զայլոց ևս զընկալեալ գիրս կորուսանել և ի բաց ջնջել[գ] զՈրեգինի, այլ պարտ է գիտել զվնասն և զշահն ի նոցանէ եկեղեցեաց։

ա. Գ. դիտելով. բ. Bոլ. Ձեռ. Թէմոստիոս. Գ. Դեմաստիոս. գ. Ա՝ ի բաց դնել.

կալաւղսն պիտաւորապէս։[ա]

Գ Լ. ԺԳ.

Զայսոսիկ ի վերայ երկիւղածութեանն և ուղիղ վարուց հռչակեալն Թէոդիմոս առ Եպիփան պատասխանեաց։ Իսկ վասն զի բամբասասէրքն զբազումս յափրշտակեցին, իբր ի հայհոյչէ զգուշանալ յՈրիգէնա, սակաւ ինչ պատմեալ յաղագս այսորիկ ոչ անդէպ համարիմ։

Տկալքն յանձանց ոչ կարելով յերևել, ի պարսաւելոյն զնքեանսն վեհագոյնսն ցուցանել կամէին։ Զայս գրեաց նախ Մեթոդիոս, որ ի Պամփիղայ քաղաքին կոչեցելոյ Ողիմպոսի եպիսկոպոս. ապա Եւստաթիոս, որ յԱնտիոքիայ առ սակաւ ինչ յեկեղեցւոջն նախակարգեալ. և յետ սորա Ապողինարիոս և յետոյ Թէոփիղոս։ Զայն զչար բանիցն զչորրեակ,[բ] ոչ ընդդէմ նոցին եկեալք, զայրն ի բաց հանէին.[գ] այլ քանզի վասն այլ կարգաց ի նորա ամբաստանութիւնն գնային, ցուցանելով

ա. «Ու զի զնախահարսն.... պիտաւորապէս» չկայ բնագրի մէջ։
բ. Այն չորս չարախոսները։
գ. Բամբասէին զանէ։

Զոր յառաջ[ա] բերեալ զՈրեգինի գիրս, մի ըստ միոջէ ընթերցան առաջի ամենեցուն, որ ցուցանէր զարտադրութիւն եկեղեցւոյ Աստուծոյ (գեղեցկապէս յարդարեալ ի փառս Աստուծոյ. Իսկ Թէոփիլոս և որք այնորիկ էին,[բ] յափշտակէին զկամս պարզամտութեանն Եպիփանու. Այսոքիկ գիր բարի ցուցեալ զպարզամիտս խաբէ, և զվնասակարսն[գ] ընդունել անձանց ի կորուստ, բայց զի պարտէ ամենայնիւ հրաժարել յառնէն և ի նորին չարագրացն[դ] թէպէտ յառաջնոց ընկալեալ եղև).

ա. Գ. առաջ. բ. Ա եւ որք ընդ նմայն էին. Ն. որք այնոքիկ. գ. Ա' զվնասակարս. դ. Ա չարագրութենէն. Գ. չարագրեացն.

իւրաքանչիւր ոք ի նոցանէ՝ որպէս զի զոր ոչն մատնէին, զայն ամենեւին ընկալան։ Քանզի այդ ոմն զայդ հաւատոյ զոր մի ըստ միոջէ համարէին յայտնիլ, որպէս զի իւրաքանչիւր ոք որ ոչ խորհէր զայս որպէս զճշմարիտ ամենեւիմբ ընդունէր. որով ի բաց լռեալ գովութեանցն զայս զոր ոչ մատնեացս։

Բայց Մեթոդիոս ապա շատս ընթանալով ընդդէմ Որիգէնի, յետոյ իբր ի նմին ճանապարհէ[ա] սքանչելի առնէր զայլն ի բանին, զոր գերագրեաց Քսենոնա։[բ] Բայց ես և առաւել ինչ ի նոցա պատճառոյն ի շինութիւն[գ] Որիգէնի ասեմ։ Քանզի ովք շարժեցին որքանս կարծէին մեղադրութեան արժանիս, ի ձեռն որոց որպէս չարաչարն փառաւորելով յաղագս սրբոյ Երրորդութեանն[դ] ուստի ցուցանեն գերերևապէս. զուղիղ բարեպաշտութիւնն վկայելով նմա։ Արդ այսոքիկ վասն ոչ անգոսնելոյ ոչ վկայեն նմա։ Իսկ Աթանասիոս որ համագոյութեան հաւատոյ վերապասպարաւղ,[ե] յորս ընդդէմ Արիանոսացն բանս մեծ ձայնիւ վկայ ընտանի հաւատոյն զայլն կոչէ, զնորա զբանսն ի յիւրսն յարելով և ասելով։ Սքանչելին, ասէ, և վաստակասէրն Որիգէն, զայս ինչ յաղագս Որդւոյն Աստուծոյ մերոյս կարծեաց վկայէ, մըշ-

ա. Թարգմանը Յունարէն բառը չի հասկացել παλινῳδία սխալմամբ πάλιν կրկին եւ ὁδὸς ճանապարհ մասերի վերլուծուելով. մինչդեռ երկրորդ մասը ἀοιδή կամ միացեալ ᾠδή երգ-բառերն է, ուստի եւ կնշանակէ. ·նախկին երգածի. ասածի, հակառակը երգել, ասել.. ի կրկին չաքաղարեալ վէպի.

բ. Այդ պալինօդիայի անուն էր Ξενών Հայց. Ξενῶνα այդ ձեւն է պահել Թարգմանը։

գ. συστασις վերահաստատութիւն, պաշտպանութիւն։

դ. τῆς ἁγίας Τριάδος սրբոյ Երրորդութեան։

ե. Բն. ὑπερασπιστής պաշտպան ունող զվահան

*տընջենաւորակից զնա ասելով Հաւր։ Թադուցին ապ զընքեանս բամբասաւղքն զՈրիգէն հայհոյեալք և զզ վաւղն նորա զԱթանասիոս։ Վասն Որիգէնի այսքա ճառեցաւ. բայց զնոյնհետայն պատմութիւնն ընկալցուք*

Գլ. ԺԴ. [1]

*Յոհան ոչ զայրագնեցաւ ի վերայ որոց արտաք կանոնին յորում ընդ նովաւ եկեղեցւոյն Եպիփանի առնէր ձեռնադրութիւն, այլ ազաչէր յեպիսկոպո սանցն տունս գալ նմա։ Իսկ նա, ոչ, ասէ, ոչ կալա նմա և ոչ աղաւթել, եթէ ոչ զորս Դիոսկորոսին ալ տաքս վարեսցէ ի քաղաքէն, և ինքն ստորագրեսցէ նզովականսն Որիգէնի գրենոյն։*

*Իսկ Յոհանայ զայս առնել սպուժեալ, և ասա ցեալ ոչ գոլ պարտ նախ քան զհանրական տեղո թեան[ա] յանդգնութիւնս ինչ առնել, յայլ խորհուր ոըք ցասմամբն առ Յոհան ածէին զԵպիփանիոս։ Քանզ յարդարէին յեկեղեցւոջն ի համանուան առաքելոցն հա*

ա. καθολικὴ διάγνωσις զընդհանրական որոշումն.

1 Տես Սոզոմ. Ը. 14. 15. Կաս. Ժ. 12. Նիկ. ԺԳ. 13.

**Իսկ երանելին Յոհան կայր մնայր կատարածի խորհրդ ծութեանն ժողովոյն. և ոչ զայրանայր որ ձեռնադրութիւ արար յեկեղեցիս նորա Եպիփան արտաքոյ կանոնաց. այլ ա րով ցոյց վարկանի և վստահութեան եղբարց, բայց խորամանկ քըն ոչ դադարէին ի թիւրելոյ զկամս Եպիփանու։ Եւ առ քեալ Յոհաննու կոչէ զԵպիփան յեկեղեցին,[ա] իսկ նա ոչ չ գաւ, զի ոչ կամեցան դժրողքն նորա և նա զայս անգիտ ցեալ։ Առաքէ Եպիփան առ Յոհան, զի զԴէոսկորոս[բ] և զե**

ա. Ա՝ զեկեղեցին. Գ. եկեղեցին. բ. Ա, Դնոսկորոս.

դերձիլ ժողովու լինել և երթեալ Էպիփանայ, և ամենայն ժողովրդեամբն առտաքս արկանել զՍրիգէնի գրեանն, և հանել ի քաղաքութենէ զոյս ի Պիոսկոռոսին, և տարաքարշել զՅոհան, իբրև զնա նոցա հաւանել: Այս պատմեցաւ Յոհանու, և զնոյն հետայնն Էպիփանու հասեալ յեկեղեցին, յղէր ի ձեռն Սեռապիոնի զայս ինչ:

«Արտաքոյ կանոնին գործես բազում ինչ, ով
«Էպիփան, նախ ձեռնադրութիւն յորս ընդ ինև եկե-
«ղեցիսն արարեալ. ապա զի ոչ հրաւիրեալ յինէ[ն]
«ի նոյ[ն]սն պաշտաւն կատարեալ. դարձեալ զի հրաւի-
«րեալ հրաժարեցեր, և այժմ անդէն հրամայեալ ըն-
«քեամբ: Արդ զգուշացիր մի խռովութեան ի ժողովըր-
«դեանս եղելոյ, զոր յայնմանէ վիշտս ընկալցիս դու»:

[illegible]արս նորա արտաքս վարեսցէ, և արտաքագրեսցէ նզովս Որեգինի և նորա շարագրացն:[ա] Իսկ Յոհան զայս առնելով սրուժեաց. Ասէ. Ոչ է պարտ ի վերայ սրբոցն ընդունելութեանց յանդըրդ-[illegible]նել ինչ, և առնել քան զնոցա սահմանս որ յառաջ քան զմեզ [illegible]ին հարքն: Իսկ Եպիփան յարուցեալ գնայր,[բ] և հասեալ յեկեղեցին Յոհաննու առաքելոյ, ուր ղձեռնադրութիւնն տրար. մնայր տեսանել զվախճան իրացն: Եւ նոյն հետայն յղէ Յոհան առ Եպիփան:

«Ո՜վ Եպիփան, որ պարզամտութեամբ հրապուրեալ առաքոյ[գ] կանոնացն եղեր և ոչ զգուշացար ըստ ամենայնի, որ և իշխանութեամբ ձեռնադրութիւնս առնես, որք ընդ ինև[դ] են եկեղեցիք. զի [?]եպէտ և ես ոչ հովուիմ[ե] զառ ի քէն ձեռնադրեալս, այլ զգուշացիր, այրդ Աստուծոյ, մի գուցէ կցորդս տացես[զ] մեղաց, զորս արդարագործութեան արժանիս համարե-

ա. Ա՝ շարագրութեանցն Գ. շարագրեացն. բ. Ա՝ Գ կայր. գ. Գ. առաքս. դ. Գ. Դ. ի նեւս են. ե. Ա՝ Դ. խըւեմ. Գ ես հովուի խվեմ. զ. Ա, լինիցիս. Դ. կցորդ լիցիս.

Զայս լսելով Եպիփանայ, երկուցեալ գնայր յեկեղեցւոյն. և բազումս Յոհաննու մեղադրելով համբառնայր ապա և ի Կիպրոս կոյս գնայր: Իսկ ոմանք ասեն թէ համբառնալով գնալ առ Յոհան զայս ինչ յղեաց. «Յուսամ ոչ մեռանել քեզ եպիսկոպոս:» Իսկ նա ասէ անդէն յղեաց. «Յոյս ունիմ ոչ հասանել ի քոյսն հայրենիս: Զայս ոչ ունիմ ասել թէ ճշմարիտ ասացին որք ինձն պատմեցին. բայց սակայն երկաքանչիւրոք զայս ունէր զելս: Քանզի ոչ Եպիփանիոս ի Կիպրոս էհաս, վասն զի ի նաւուն հեռագոյն մեռաւ իւրով մահուամբ. [1] և Յոհան փոքր ինչ յետոյ անկաւ յաթոռոյն, որպէս զի յառաջելոյ յայտնեսցուք:

1 Եպիփանը մեռաւ 402 թ. մօտ 100 տարեկան հասակում. Նա իր ժամանակւայ ամենահմուտ անձերից մէկն էր. քաջ ծանօթ ժամանակակից լեզուներին.

ցար քեզ, Եւ զայս բան աւանդեմ, զի եթէ ունիմ իրաւունս առ Աստուած, վասն որոյ զքեզ ի վերայ իմ շարժեցին, ոչ հասցես ի քո եկեղեցիս, այլ ի նաւարկութեան ծովու վախճանիս. [ա] ապա թէ արդարութեամբ զայս արարեալ, գրեսցես առ իս յեկեղեցւոյ քո, և արարից զհրամայեալդ ի քէն, այրդ Աստուծոյ»:

Առաքէ և պատասխանի Նորին թղթոյն.

«Ո՜վ երանելիդ Յոհան, աղբիւր եկեղեցւոյ, և եթէ ես վասն քո չարութեամբ և անիրաւ [բ] խորհեցայ առնել ինչ, և դու արտաքսասահմանացն յերկրորդումն տարձցիս ի քո եկեղեցի, [գ] ապա թէ ոչ անդէն վախճանեսցիս. [դ] Ապա թէ ոչ անգիտութեամբ մեղայ, թողցես ինձ, որպէս [ե] և ես քեզ, եմէ էր ինչ և ի քում անձինդ, մանաւանդ զի առ Աստուած եղիցի երկաքանչիւրոցս աղօթք միմեանց թողութեան, անգի-

ա. Դ. վախճանեսցիս. բ. Ա Ն. Գ. Դ. չարութեան եւ անիրաւ. գ. Դ. յեկեղեցի. Դ. յեկեղեցին. դ. Դ. մեռցիս. ե. Ա. այսպէս.

ԳԼ. ԺԵ.[1]

Իսկ նաւելով Եպիփանու, լսէր Յոհան յոմանց որպէս զի թէ Թագուհւոյն Եւդոքսիա զԵպիփան վառեցոյց ընդդէմ Յոհաննու։ Եւ ջերմ գոլով բարուք և առ բանն պատրաստ, ոչ փոյթ արարեալ ասաց պարսաւանս հասարակ ընդդէմ ամենայն կանանց առ ժողովրդիւն։ Յափշտակէր բազմութիւնն զբանն, որպէս զառակ հակառակ Թագուհւոյն ճառեալ· և բանն արտաքս ըմբռնեալ ի գիտութիւն ածիւր ունողացն։ Իսկ ծանուցեալ Թագուհւոյն, առ Թագաւորին զընտանի Թշնամանսն գոլ ասելով զայս։ Այնուհետև յարդարէր զԹէոփիղոս ըղփոյթն առնել ժողով ընդդէմ նորա· յարդարէր զայս

1 Տես Սոզոմ. Ը. 16. Թէոդ. Ե. 34. Կաս. Ժ. 13. Նիկ. ԺԳ. 14.

տացեալք զմարդկայնոցն իրացս.» Այսոցիկ տացելոցս երկաքանչիւրոցս ելք ըստ բանին եղև։ [ա]

Եւ անդէն վաղվաղակի ի նաւ մտեալ [բ] գնայ, ոչ ումեք անսանայր, որք կամեցան ունել զնա։ Եւ ոչ ժամանեաց հասանել յիւր եկեղեցիս, այլ անդէն իսկ ի նաւին հասանէ նմա վախճան ըստ ասացելոյ երանելոյն Յոհաննու։

ԳԼ. ԾՌՁ.

*Ժողով եպիսկոպոսաց վասն Յոհաննու եւ աքսորելն զնա։*

Եւ այսոցիկ այսպէս եղեալ, [գ] ոչ Թողանայր Թագուհին և Թէոփիլէ յայնքան [դ] խարդախանացն. և Թագուհին և Թէոփիլէ շարժէին ղկամս Թագաւորին ի ժողովոյն կամս։

Իսկ ժողովեալքն կոչէին զՅոհան ի ժողովն իւրեանց.

ա. Դ. ելք վախճանին եղեւ. բ. Ա՛ Նալիփան. գ. Դ. ասելոյ. Գ. եղելոյ. դ. Ա՛ այնքան.

և Սեռապիոնոս [ա] քանզի զխռովութիւնն պահէր։ Ապա ոչ բազում ժամանակի միջի եղեալ, հասանէր Թէոփիղոս բազումս ի յոլովից քաղաքաց եպիսկոպոսունս շարժեալ.[1] զայս և Թագաւորին ասէին հրամանք։ Իսկ յաւէտ ժողովէին, ոլքան առ Յոհանն այլ ոմն վասն այլ պատճառոյ տրտմեալ լինէին, հասանէին և զոլս յեպիսկոպոսութենէն ի բաց շարժեաց։ Քանզի զբազումս նզովեաց Յոհան յոլոց յԱսիա եպիսկոպոսանցն, յորժամ վասն Երակղեղիա ձեռնադրութեանն երթայր յԵփեսոս։ Եւամենեքին ապա համախորհք եղեալ ի Քաղկեդոն Բիւթինւոյ ժողովէին։ Իսկ յայնժամ էր եպիսկոպոս Քաղկէդոնի Կիւռինոս անուամբ, Կիպրացի [բ] գոլով. որ բազում ինչ հակառակ Յոհաննու առ եպիսկոպոսունսն ասէր, զամբարիշտն զամբարհաւաճն, զանծունդն [գ] կարդալով. և կամաւք էին ապա ի վերա ասացելոցն եպիսկոպոսունքն։ Իսկ Մառութաս Միջագետաց եպիսկոպոսն ոչ կամաւ զոտն Կիւռինոսի կոխեաց։ Իսկ նա դառնապէս յայսմանէ խաւթացեալ, անցանել ընդ եպիսկոպոսանցն ի Կոստանդինուպոլիս ոչ կարէր, այղ ինքն մնայր ի Քաղկեդոնի և այդքն անցին։ Իսկ Թէոփիղոսի և ոչ միոյ ուրուք յեկեղեցւոյն ընդ յառաջ ելելոցն և ոչ զպատիւն սովորական տուեցելոց, քանզի յայտնագոյն ապա թշնամի ճանաչիւր, բայց Աղէքսանդրացեաց նա-

ա. Բն. Σεβηριτός· Սեւերիանոս.
բ. γένει Αἰγύπτιος ազգաւ Եգիպտացի, ունի բնագիրն։
գ. Յունարէն բառն է ὁ ἀγόνατος ~ τὸ γόνυ ծունգ բառից ածանցած

1 Այգ. ժողովին հաւաքուեցին 45 եպիսկոպոս.

իսկ նա ոչ հաւանի երթալ. զոր չորից անգամ կոչէին. Եւ էր՝ յարդարիչ ժողովոյն Սեւեռ [ա] յետ Թէոփիլոսի որ նախ յիշի։ [բ]

ա. Ա Սեւերոս. բ. Դ. զոր. նախ յիշէ իսկ նա գիտէք.

ւորդացն դէպ եղև յայնժամ հասանել հանդերձ համբաւուք [1] նաւուցն և ընդ յառաջ ելեալ հանդերձ բարի հռչակաւք ընկալան զնա։ Իսկ նա հրաժարէր յաղաւթանոցացն տեղիս երթալ. և ի միում ի թագաւորական տանցն ունիլ զաւթեւանսն, որոյ համանուն Պղաթիտիանա։ Աստանաւր շարժէին վերստինա ամբաստանութիւնք բազումք. և ոչ ևս Որիգէնի գրենոյն յիշումն ինչ էր, այլ յայլ անտեղի հայհոյութիւնս յեղուլին։

Իսկ այսոցիկ այսպէս յառաջ յարդարելոց, եկեալ եպիսկոպոսունքն ի դաստակերտն Քաղկեդոնին, որոյ համանուն կաղնիսբ կոչէին առժամայն զՅոհան պատասխանել վասն որոյ ամբաստանիւրն։ Հրամայէին գալ ընդ նմա և Սեռապիոնի և Տգռիոսի գ ներքինւոյ քահանայի և Պաւղոսի ընթերցողի. քանզի և սոքա ընդ նմա ամբաստանեալք լինէին։ Եւ վասն զի Յոհան զկոչողսն որպէս զթշնամիս արտաքս գրէր, և տիեզերական կարգայր ժողով, նոցա զինչ փոյթ արարեալ, չորիցս անգամ զնա կոչեցին։ Իսկ նորա ոչ կամեցեալ պատահել, այլ զնոյն ասելով, համաընտրաւղի եղեն և ընիցեն զնա, բայց այլ ինչ ոչ պատճառեալք, բայց միայն զի կոչեցեալ ոչ լուաւ նոցա։

ա. Բն. աւել ունի «ընդդէմ Յոհաննու»։
բ. Δρῦς յատուկ անունը թարգմանել է:
գ. Τίγρις

[1] Աղէքսանդրիացիք բազմաթիւ նաւերով ցորեն էին բերել Կոստանդնուպոլիս եւ մեծ պատուով ընդունեցին յրենց եպիսկոպոսին.

Իսկ նա գիտելով զանհանճար միտս նոցա չարութեանն, ոչ հաւանի երթալ։ Իսկ անընտրողք եղեալք ընկենուլ զնա սահմանեցին. և պատճառս ա ոչինչ ունէին ասել, բայց զայս,

ա. Դ. պատճառ ինչ ոչ ունէին,

Այս պատմեալ ընդ երեկան ի մեծ խռովութիւն բորբոքեաց զբազմութիւնն։ Եւ աւթագնացեալք[ա] ոչ տային թոյլ տարաքարշել զնա յեկեղեցւոյն այլ գոչէին պարտ գոլ դատել զոր ընդ նմայն ի մեծ ժողով. որպէս զի գիտասցուք զյայտնին։[բ] Իսկ թագաւորին հրաման լինէր, ստէպ հանել զնա և արտաասահմանել։ Զայս ծանուցեալ Յոհաննու յերկրորդում[գ] յետ ընկեցման աւուր[1] ի հասարակ տունջեան զինքն [նե]ետ ծածուկ ի բազմութենէն. քանզի պահիւր զի մի խռովութիւն վասն նորա լինիցի, բայց նա դարձեալ լինէր։

## Գլ. ԺԶ.[2]

Եւ ժողովուրդն աւերելեալք[դ] աղմկէր։ Եւ որպիսեաւք յայսպիսիսս սիրէ լինել, բազումք յունողացն առ նա թշնամութիւն յոյզս փոխէին. և զրպարտել

ա. διανυκτερεύοντες

բ. Վերջի նախադասութիւնը չկայ բնագրի մէջ։

գ. Բն. յերրորդում։

դ. սաստիկ.

1 Փրկչի 403 թ.

2 Տես Սոզ. Ը. 18. կաս. Ժ. 17. Նիկեփ. ԺԳ. 16.

եթէ կոչեցեալք բազում անգամ ոչ եկն ի ժողովս։ Եւ այսորիկ[ա] ի մեծ բարկութիւն շարժեաց զժողովուրդն նորա։ Եւ զի էր ընդ երեկս օթագացեալք[բ] ոչ տային հանել զերանելին յեկեղեցւոյն զինուորացն, այլ աղաղակէին և ասէին. «վասն որոյ իրիք զարտաքսէք զայրդ[գ] Աստուծոյ.»

Զայս ծանուցեալ երանելւոյն, զի մի լինիցի խռովութիւն ամբոխին, ծածկէր[դ] զինքն ի ժողովրդենէն և զերծեալ տայր զինքն զինուորացն, ուր և կամիցին տանել։ Եւ իբրև[ե] ոչ գտին զհովիւն իւրեանց, հօտն բազում լալիւն եղև խռովութիւն և

ա. Ա՝ այսորիկ. բ. Ա, օթագայեալ. գ, Դ, զայրն Աստուծոյ. դ. Ա՝ ծածկէ. ե. Ա՝ եւ ի վաղիւն.

անէին, զոր փոքր ինչ յառաջ նզովեալ տեսանել ցանկանային։ Ապա բազումք լինէին վասն այսորիկ գովաւղքն ա քան զԹագաւորին և քան զժողով եպիսկոպոսացն։ Եւ յաւէտ զԹէոփիլոսի զչար յարդարմանն յայտնեցին զպատճառս։ Քանզի և ոչ ևս Թաքչել ի վերայ յարդարեցելոցն կարէր որքան գործէր հակառակ Յոհաննու. բայց ի բազում և յայլ նշանաց, մանաւանդ զի որոց Դիոսկոռոսին ընդ կոչեցելոցն Երկայնից, բ առժամայն յետ Յոհաննու նզովիցն հաղորդեցաւ։ Իսկ յայնժամ և Սևերիանոս յեկեղեցւոջն ուսուցանելով ի դէպ համարեցաւ արտաքարշել զՅոհան, ասացեալ, եթէ և ոչինչ այլ ըստգտանիւր Յոհան, այլ սակայն բաւական վնասէ առ նզովսն ամբարհաւաճական նորա բարքն. քանզի ամենայն մեղք Թողումն մարդոյ, բայց ամբարտաւանից Աստուած հակառակ կայ, որպէս ուսուցանեն աստուածային գիրք։ Այսորիկ ճառեալ վիճաւղագոյն առնէին զբազմութիւնն։ Վասն որոյ փոյթ

ա. Բն. Բազումք աղաղակէին ընդդէմ Թագաւորին եւ ժողովոյն եպիսկոպոսաց:

բ. Բն. ol Naxpol·

սուգ մեծ։ Ցայնժամ կացեալ Սևերոս յեկեղեցւոջն ասէ. «Ոչ այլով իւիք ըստգտեալ եղև Յոհան ի սխալանս, այլ բաւական է նմա ի նզովս ամբարհաւաճանալ, որ բանիւք և յանդիմանուԹեամբք յանդիմանէր. և վասն այնորիկ արտաքարշեալ եղև. զի ամենայն մեղք Թողցին ա մարդկան, այլ ոչ ամբարտաւանից. զի տէր ամբարտաւանից հակառակ կայ, տայ շնորհս խոնարհաց։ Զայս լուեալ ժողովրդեան որպէս զհայհոյիչ Թըշնամանեալ զՍևերոս արտաքս հանեալ յեկեղեցւոյն անարգանօք, և խնդրէին միշտ զհովիւն իւրեանց և զլուսաւորիչն։

ա. Դ. Թողցի

վերակոչումն առնել Թագուհւոյն հրամայեաց։

Առաքեալ ապա Թագուհւոյն ներքինի Բռիսոն հասանէր նմա ի Պռիտտոն, ա ծովեզերական տեղի վաճառու է սա. որ կայ ընդդէմ Նիկոմիդիայ, և դարձուցանէր զնա ի Կոստանդինուպոլիս։

Իսկ իբր կոչեցաւ Յովհան ոչ նախ ի քաղաքն մըտանել յաւժարեցաւ, յառաջ քան քննել զոր ինչ ըստ նմայն ի մեծ դատաստանի, և ի դաստակերտին որ կոչի Մասիանայ տակաւին լինէր։ Իսկ ձգտելով նորա, և ոչ կամելով նորա ի քաղաքն մտանել, զայրագնէր ժողովուրդն, և վաղվաղակի հասանիլ նմա ցանկանալով հայհոյականս ընդդէմ կալաւղացն ասացին բանս. վասն որոյ և հարկ ի վերայ եղին դառնալոյ նորա։ Եւ ելեալ

ա. ν πρενέτφ

բ. ἐν προαστείῳ· ուրիշ անգամներ այս բառը չէր թարգմանուած։

ԳԼ. ՃԺԵ.

*Արհաւիրք քաղաքին վասն Յովհաննու եւ փառօք մուծանելն զՅովհան եկեղեցին, եւ զայրացումն Թէոփիլոսի վասն վերադարձմանն Յովհաննու*

Եղև արհաւիրք ի քաղաքին և նոյն իսկ Թագուհոյն. և Ծանուցեալ եթէ վասն նորա եղև այս։ Եւ յետ ոչ սակաւ աւուրց ի զղջման եղեալ, հրաման ելեալ ի Թագաւորէն դարձուցանել զերանելին զՅովհան յաթոռ իւր և յեկեղեցի.

Եւ առաքեալք ի Թագաւորէն զի էր ա ի կղզւոջն որ կայ ընդդէմ Նիկոմիդեայ, ածեն զնա բազում աղաչանօք։ Եւ ոչ կամէր մտանել ի քաղաքն. և դղրդեցաւ քաղաքն ամենայն ընդ առաջ նորա, և մեծաւ խնդութեամբ և փափագանօք ցանկային տեսանել զնա։ Եւ նա արգելոյր զինքն մտանել ի քաղաքն. զի քննել իրաւանց դատաստանի գիտացեն զիրաւն. իսկ ժողովուրդն ոչ անսայր, այլ բռնադատել տարան զնա յեկե-

ա. Դ. կայր.

ընդ յառաջ նորա հանդերձ բազում պաշտամամբք պատուուց, յեկեղեցին առժամայն ածէին զնա, և աղաչէին նստել յեպիսկոպոսական յաթոռն, և սովորաբար ի վերայ ժողովրդեանն զխաղաղութիւն աղաւթել։ Իսկ հրաժարեալ ասելով. այսմ պարտ է դատաստանաւ լինել, և արժան է զընտրաւղսն դարձեալ ի բաց հանել յընտրութենէն։ Բորբոքէր բազմութիւնն տեսանել զնա յաթոռն ցանկացեալք, և դարձեալ նորա վարդապետելոյն լսել յառաքինութեանցն ուսմանցն զորս բարբառէր ի ձեռն Հոգւոյն սրբոյ։ ա Ջաւրեաց ժողովուրդն զայս գործել. և նստեալ Յովաննու յաթոռ եպիսկոպոսական սովորաբար զխաղաղութիւն ժողովրդեանն տայց, իսկ հարկաւորեալ և ուսուցանէր։ Այս գործեալ թշնամաբար առ նա եղելոյն այլ յարդարման տայր պատճառ. այլ զայս դեռ լռեցուցանէին։

## Գլ. ժէ.[1]

Նախ վասն ձեռնադրութեանն Իռակղիդիսի՝ Թէոփիլոս վերստին խնդրել յարդարէր, որպէս զի կարասցէ զնա աստուստ զրպարտել։ Արդ զայս զպատճառս ա-

ա. Բն. չկայ. յառաքինութեանցն . . . սրբոյ։

1 Տես Սոզոմ. Ը. 19. կասիոդ. Ժ. 14. Նիկ. ԺԳ. 17.

ղեցին փառօք և պատուով և պաշտամամբք, խաչիւք և բուրմամբք խնկոց և լուցմամբք, ա և նստուցանեն յաթոռ հայրապետութեան. Զի այնպէս ջերմեռանդ սրտիւ ցանկային լսել զնորա բանս, վասն որոյ ըստ խորհրդածութեան բ անցիցն անցելոց խօսի ճառս գեղեցկայարմարս ի շինութիւն ժողովրդեանն Աստուծոյ, ի փառս՝ և ի գովութիւն ամենասուրբ Երրորդութեան։

ա Դ. եւ լուցմամբ մոմեղինօք. բ. Դ. ըստ խորհրդեան.

ռեալ առ Յովհաննու անգումին դարձեալ փութայր։ Բայց Իռակղիդիս ապա ոչ էր հուպ, զի տարիւր ի հեռի․ որպէս թէ ի վեր հարեալ զոմանս անիրաւաբար, շղթայիւք կապեալ և ծաղեալ ընդ մէջ քաղաքին Եփեսացւոց։ Իսկ յայնժամ որոց Յովհաննուն ասացելոց, ոչ գոլ պարտ հեռագոյն դատաստան առնել, որք յԱղէքսանդրեայն վիճէին, պարտ լինել ասելով ընդունել զամբաստանաւղսն Իռակղիդեայ, թէև ամբաստանեն զնա ի հեռաստանէ։ Խռովութիւն աստուստ և պատերազմ ի մէջ Կոստանդնուպոլսի ժողովրդին և որոց յԱղէքսանդրոյն լինէր զաւրագոյն։ Եւ ի լինել խառնակմանն, բազումք վէրս առնուին, իսկ սակաւք և կորնչէին։ Զայս տեսեալ Թէոփիղոսի, առժամայն յԱղէքսանդրիայ փախեաւ։

Իսկ զայս և այլ եպիսկոպոսունքն առնէին, [և] բայց ի սակաւուց որք զՅովհաննու ողջունէին ամենեքին փախստեամբ յիւրեանցն գնացին։ Այսոցիկ այսպէս եղելոց ի յըստգտմանս էր ամենեցունց Թէոփիլոս․ և ամենցոյց զոր ըստ նմա ատելութիւննս, առժամայն նորա զոչ ոք ուրոշեալն զգլխանն Որոգինէի ճգնել։ Հարցեալ ապա յումեմնէ, զիա՞րդ զորս ընկէցն քարոզութեամբ զայնս դարձեալ ողջունէ։

Զայս պատասխանէր․ Որիգէնի, ասէ, գրեանն բուրաստանի նմանեսցին յոյժ գոլով ի ծաղկաց լցելոց, արդ եթէ ինչ ի նոսա գտից բարի զայն կթեցից, իսկ

Զայս լուեալ Թէոփիլոսի, թէ դարձեալ եղև Ցոհան յաթոռ իւր, վայրանայր և խորհէր զրպարտել զայրն Աստուծոյ. և կամք Սեւերի Թիրակայ եպիսկոպոսի ընդ նմա, և նոյն ինքն սատանայ՝ որ բորբոքէր զչար ՚՚ զնախանձն․

ա․ Դ․Գ․ զչար նախանձն․

եթէ ինչ ինձ ի նոսա փչալիր երևեցի, զայնով որպէս զխեթանաւ զանց արարից: Զայս պատասխանեաց Թէոփիլոս ոչ զմտաւ ածեալ զիմաստնոյն Սողոմոնի.[1] Թէ բանք իմաստնոց որպէս զխեթան եզանց, և որպէս զի թէ ոչ պարտին աքացել առ նոսա որք ի տեսմանցն խոցեալք: Վասն այսորիկ ի յատրգտանս էր ամենեցունց Թէոփիղոս: Իսկ Դիոսկուռոս մին յԵրկայնիցն, որ Հեռմուպոլսի եպիսկոպոսն, փոքր ինչ յետոյ յետ Թէոփիղոսի փախստեանն վաղճանեցաւ, և թաղեցաւ ի մարտիրոսնի[ա] կաղնեոջն, ուրանաւր վասն Յոհաննու ժողովն եղև: Իսկ Յովհան անդրէն ի վարդապետութիւնն պարապէր, և ձեռնադրէր զՍեռապիոն Հեռակղոյ Թրակայ եպիսկոպոս, վասն որոյ ընդդէմ նորա ատելութիւնն յառնէր. իսկ յետ ոչ բազում իրի այս պատահեաց լինել:

Գ.Լ. ԺԸ.[2]

Թագուհւոյն Եւդոքսեայ անդրի կանգնեցաւ արծաթի ի վերայ սեանն ծիրանւոյ՝ քղամիտ զգեցեալ. և կայր այս ի վերայ բարձր բեմի, ոչ մերձ և ոչ հեռի

ա. Բն. ἐν τῷ μαρτυρίῳ · ի մատրանն որ առ . . . .

1 Ժողով. ԺԲ. 11:

2. Տես Սոզոմ. Ը. 20. Թէոդ. Ե. 34. Կասս. Ժ. 15. Նիկ.ԺԳ. 18:

Գ.Հ. ՃԻԸ.

Թէ որպէս Թագուհին Եւդոքսի խաղս յօրինէ մեծ ի սուրբն Սոփիա եւ յանդիմանէ ի Ցոհաննէ:

Եւ յետ ոչ բազում ժամանակի,[ա] կանգնէր անդրի ի վերայ սեան ծիրանւոյ Թագուհին Եւդոքսի՝ ի խաղս ռամկաց, մերձ յեկեղեցին որ կոչի սուրբ Սոփի.

ա. Ա՝ Գ. Դ. ժամանակաց.

յեկեղեցին որ կոչի Սոփիայ, այլ դատապարտեցանէր զեր-
կոսին միջին ընդարձակն ճանապարհն. ի յայս տօմարա-
բար գային ի խաղ ռամիկքն: Իսկ Յովհաննու Թշնամանս
եկեղեցւոյն զեղեալսն համարելով, զսովորական համար-
ձակութիւնն վերստին ստացեալ, դարձեալ զայս ընդդէմ
առնաւղացն վառեցուցանէր զլեզուն: Եւ զունաւղսն նմա
բանիւ մխիթարականաւ հաւանեցուցանել դադարեցու-
ցանել զռամկականսն [ա] խաղս. բայց զայս ոչ առ-
նէր, այլ խիստ լեզուովն հպեալ, պարսաւէր զհրամա-
յաւղսն այնմիկ լինել: Իսկ Թագուհւոյն դարձեալ յինքն
քարշեալ զեղեալսն ի Յոհաննայ, և Թշնամանս անձինն
զբանն կարծեալ, անդրէն յարդարէր միւս ևս առեան
եպիսկոպոսացն ընդդէմ Յոհաննու: Իսկ զգացեալ Յո-
հաննու զգերահռչակեալն զայն, յեկեղեցւոջն ի կիր բա-
նից եբեր բեմասացութեամբ, որոյ սկիզբն է այս. դար-
ձեալ Հերովդիաս մոլի, [1] դարձեալ կաքաւէ, դարձեալ
զգլուխն Յոհաննու ի վերայ սկտեղըն փութայ առնուլ:

ա. Բն. չկայ:

1 Այս ճառը կայ Յոհան Ոսկ. գործերի մէջ.

Իսկ երանելին Յոհան արգելոյր [ա] զանհանճար խաղ-
սըն հակառակ Աստուծոյ, և դորովէր զառնելիս [բ] Նորա. Լուեալ
զայս Թագահոյն զչարացաւ և խորհեցաւ խնդրել զվրէժ [գ]
ի Յոհաննէ, որպէս կարծէր զինքն անարգեալ ի նմանէ. Եւ խոր-
հէր առնել առեան վասն նորա անկման. [դ] և գրէ առ Թէոփի-
լոս զի եկեսցէ բազում եպիսկոպոսօք. Զայս զգացեալ Յոհան-
նու ի վարդապետութեանն իւրում առ կանայս զյանդիմանու-
թեան խրատն առնէ, և զայս ի նոյն յարէ. Դարձեալ, ասէ,

ա. Դ. արգել. բ. Դ. զառնելիսն. գ. Ա' Դ. վրէժ. դ. Դ. միայն ունի անկման. միւսները յանգման.

Այս առաւել վառեցոյց առ բարկութեանն զԹագուհին։ Եւ յետ ոչ բազում իրի հասանէին եպիսկոպոսունք Ղեոնդիոս Անկիւրիոյ ի փոքր Գաղատիոյ, Ղաւոդիկիոյ Ամմոնիոս որ ի Պիսիդեայ, Բռիսոն [ա] Փիլիպեցւոց որ ի Թիրակ, Ակակիոս Բեռիոյ որ յԱսորիս և այլք ոմանք։ Իսկ սոցա եկելոց վերստին շարժէին որք յառաջն ամբաստանաւղք։ Բայց Յովհան ապա վստահէր ի Նոսա, և արժանաւորէր զիւրն ամբաստանեալ խնդրել։ Իսկ տաւն ի Ծննդեան Փրկչին ի վերայ եկելոյ, Թագաւորն ոչ գայր սովորաբար յեկեղեցին. այղ յղէր առ Յոհան որպէս զի ոչ նախ ընդ նմա հաղորդեսցի յառաջ քան զլուծումն մնասուն։ Իսկ վասն զի Յոհաննու վստահացեալ ամբաստանաւղքն և եպիսկոպոսունքն վախաւղագոյնք [բ] ցուցանէին, բայց այլ քննէին և ոչինչ. միայն զայս պարտ ի դատաստան ածել ասէին, թէ յետ ամբաստանութեանն ոչ ընտ-

ա. Βρίσων.
բ. δειλότεροι.

Հերովդիադայ մոլի և խնդրէ զգլուխն Յոհաննու. զոր ի մեծի եկեղեցւոյն ճառէ։

Հասանէ այս ի լսելիս Թագուհոյն, և առաւել բորբոքէր ի չար անգր. և զԹագաւորն հրապուրէ [ա] ի բարկութիւն վասն անարգանացն։ Եւ յետ ոչ բազում իրի, հասանէ Թէոփիլէ բազում եպիսկոպոսովք [բ] ի Կոստանդնուպոլիս, և վերստին շարժեն զԹագաւորն և զԹագուհին ի ցասումն։ Բայց Յոհան ի կամս Աստուծոյ առնէ, և վստահանայ ըստ արդար դատաստանի։ Իսկ ի տօնի ծննդեան ոչ գայ Թագաւորն յեկեղեցին [գ] առ Յոհան ըստ սովորութեանն իւրոյ, մինչև գիտացից [դ] զար-

ա. Աʻ Գ. Դ. հրապուրէր. բ. Աʻ Ն. եպիսկոպոսօք. գ. Աʻ եկեղեցին. դ. Դ առէ.

լեալ ժողովոյ ինքեան հրամանաւ յաթոռն նստաւ։ Իսկ Յովաննու ասելով, որպէս զի ԿԵ եպիսկոպոսունք հաղորդեալ ընդ նմա արարին զընտրութիւնն ընդունել զնա յաթոռն, ուր Ղեւոնդին ի վերայ բերէին։ Այլ բազումք ընդդէմ քո, ով Յոհան, ընտրեցին ի ժողովումն։ Իսկ զի Յոհան զկանոն զայն՝ ոչ նոցա եկեղեցւոյն այլ Արիանոսացն լինել ասէր. քանզի ուր յԱնտիոքիա ժողովեալքն ի յանկումն համագոյութեանն հաւատոյ, ցասմամբն որ առ Աթանասիոս զկանոնս զայս արտադրեցին, այնուհետեւ և ոչ ընկալեալք զպատասխ(ան)ատրութիւնն հատանէին զընտրութիւնն, ոչ իմացեալք թէ զկանոնն զայն ի գործ արկեալք ընկենուին և զԱթանասիոս։ Այս գործիւր ի մերձեալ տաւնին Զատկի. ապա յղէր թագաւորն առ Յոհան ոչ կարաւղ լինել յեկեղեցին գալ, զի երկու ժողով հատին զհակառակ նորա ընտրութիւնսըն։ Այնուհետեւ դատարկանայր Յոհան, և ոչ երբէք յեկեղեցին իջանէր։ Առժամայն ապա ուրոց նորայն յեկեղեցոյն գնացին զԶատիկն յարքունականումն կատարէին Կոստանտինայ. իսկ ընդ նոսա էին և բազումք եպիսկոպոսունք և քահանայք և ի ժողովրդենէն ի քահանայական դասուէ և ժողովրդականաց բազմութիւն. և զսուրբ մկրտութիւնն կատարէին անդ։[a] Եւ յայնմանէ առանձին զհաւաքմունս առնելով ի յոլով տեղի Յոհանիտք[b] կոչեցան։ Իսկ Յոհան ոչ ուրեք զերկու ամիս յառաջ ելանէր, մինչև հրաման թագաւոր

ա. չկայ բնագրի մէջ. ·ի թագաւորական դասուէ· ··անդ։·
բ. Ἰωανῖται

ժանն. բայց եպիսկոպոսքն ոչ այլ ինչ կարէին պարտաւոր
բայց եթէ առանց ժողովոյ եպիսկոպոսաց դարձեալ
զաթոռն։

լինէր արտասահմանել զնա։ Եւ տարեալ լինէր յեկեղեցական տանէն արտաքս քարշեալ։ Իսկ ոմանք ի Յոհանիտացն ի նմին աւուրն զեկեղեցին հրձիգ արարին։ Իսկ նորա այրեալ հողմ արեւելային յոյժ շնչեալ, և զտուն սինկղիտոսին ծերակուտին այրեաց։ Այս եղև ի քսանին Յունի(ս) ամսոյ ի հիւպատուջն Ոնորայ վեցերորդի, զոր հանդերձ Արիստոնէդոսիւ տայր։[1] Բայց որքան ապա վասն եղելոյ այրէցմանն Կոստանդինուպօլսի եպարքոսն, որոյ անուն էր Ոպտատոս, հեթանոս գոլով աղանդով և վասն այսորիկ զքրիստոնեայս ատելով, ընդդէմ բա-

1 Փրկչի 404 Թ.

## ԳՂ. ՃԻԹ.

*Դարձեալ արտասահմանի սուրբն Յոհան յաքսորս ի կողմանս Հայոց կամաւ Թագուհւոյն, եւ անդ վախճանի սուրբն Աստուծոյ։*

Այլ զի կամք Թագուհւոյն և յաչախկոտացն, որ զգլխաւորութիւն ժողովոյն ունէին,[ա] Թէոփիլոս և Սեւեա և որ[բ] այլք ատելիք սրբոյն, արտաքսահմանեալ լինի երանելի Յոհան ի կողմանս Պոնտոսի հուպ ի Հայս,[գ] և ի քաղաքս Նոցա։ Որ յետ բազում իրի վախճանի ի տասն և չորսն Սեպտեմբերի ամսոյ, և բազում սուգ առնոյր ժողովուրդն նորա։ Եւ կատարեցաւ ասացեալն յԵպիփանայ[դ] վասն ոչ դառնալոյ անդրէն յաթոռն Յոհաննու.[ե]

Եւ բազումս եթող յիշատակս գրոց, և գեղեցկայարմարս ի շահ ժողովրդեանն և եկեղեցւոյ Աստուծոյ, զոր[զ] ոչ ոք կարէ թուել։ Եւ այսպէս գովեցաւ և պատուեցաւ ոչ միայն յիւր[է] եկեղեցիս[ը] և ի ժողովուրդս, այլ և յամենայն[թ] տիեզերս[ժ]

ա. Դ. ունէր. բ. Ն. որք. գ. Ա' ի յայս. դ. Ա Եպիփանայ. Դ յԵպիփանէ. ե. Ա' Դ. աթոռն իւր Յոհան. զ. Դ. զորս. է. Ա' Գ. իւր. ը. Ն. յեկեղեցիս. թ. Ն. տեղիս. ժ. Դ. այլ եւ ընդ ամենայն տիեզերս.

ընկամացն Յովհաննու գործեաց, և որպէս զբազումս ի նոցանէ տանջեաց, ի բաց թողուլ ինձ թուի։

## ԳԼ. ԺԹ. [1]

Իսկ սակաւ աւուրց անցելոց, կարգիւր եպիսկոպոս Կոստանդինուպոլսի Արսակիոս, [ա] որ եղբայր էր Նեկտարիոսի, նախ քան զՅովհան զեպիսկոպոսութիւնն բարւոք կարգաւուղին։ Իսկ սա էր ծեր յոյժ, քանզի առաւել քան զութսուն ամի հանդիպէր։

Եւ սորա վասն առաւել զերազանցեալ հեզութեանն, հանդարտաբար զեպիսկոպոսութիւնն հովուեալ։ Իսկ Քաղկեդոնի եպիսկոպոսն Կիւրինոս, զորոյ ոտն Մարութաս Միջագետաց եպիսկոպոսն ոչ կամաւ կոխեաց, այնպէս չարաչար ախտացաւ որպէս զի ցեցակէր լինիլ և հարկ լինել սղոցիլ ոտն նորա։ Եւ այս ոչ մի անգամ լինէր, այլ բազում անգամ սղոցիւր, քանզի ճարակէր առաւելն ըստ ամենայն մարմնոյն, որպէս զի և ի միւս ոտն փոխել չարին զնոյնն կարել, և պարզաբար իսկ ի չարեան էր պատժեալ։ Բայց այսորիկ աղագաւ արարի զսորա յիշատակս, զի բազումք ասէին. վասն զի զՅոհան հայհոյելոյն զայս կրեալ Կիւրինոսի, զի զնա անծունդն կոչէր, որպէս և յառաջն ասացի։ Իսկ այնուհետև պատահեաց և կարկտի յոյժ մեծագունի ի Կոստանդինուպոլիս և յուրս շուրջ զնովաւ իջանել զաստակերտս. իսկ այս եղև ի նմին հիւպատուոյն Ոնորայ, երեռնին Սեպտեմբերի ամսոյ. և զայս ասէին ըստ Աստուծոյ ոխմանն լինել ի վերայ ծայրագոյն անկմանն Յովաննու։

ա. 'Αρσακιος; Արսակիոս, Արշակ։

1 Տես Սաղմ. Ը. 23, 27. Թէոդ. Ե. 34. Կաս. Ժ. 20. Նիկ. ԺԳ 23.

Իսկ աճեցոյց զայսպիսի զբանս ի վերայ Թագուհւոյն Եւդոքսիա եղեալն վաղճան. քանզի ի չորրորդում յետ իջման կարկտին աւուր վաղճանեցաւ։ Իսկ այլք ասէին զՅոհան իրաւացի կրել զանկումն, զի զբազում եկեղեցիս Նաւատիանոսացն էառ և զՔորեքտասաներորդացըն, և այլց ոմանց հերձուածոց ըստ Սաւոյ և Պիդւոյ հասեալ էառ, յորժամ վասն Իրակղիդեայ ձեռնադրութեանն առաքեցաւ յԵփէսոս։ Այլ աս(ե)մ առ որս զայս ճառաւղսն. թէ արդեւք իրաւացի եղև անկումն Յովհաննու, և կամ ըստ բանի որոցն ի նմանէն տրտմեցելոցն լինէր, կամ Կիւռինոս զիրաւացին հայհոյութեանն տայր դատաստան, և ուրեմն վասն Յովհաննու, և կամ կարկուտն որ էջ, և Թագուհին որ վախճանեցաւ։ Քանզի զհերձուածականսն առնուլ եղիցիս և յուղափառ հաւատն հաստատել, բարւոք գիտեմ. զի և Աստուած առ այսոսիկ ուրախանայ ի վերայ զղջացելոցն,ա ի չարեացն ի վեհագոյնսն և կամ թէ այլս վասն այլոցն եղև բանից, և կամ թէ վասն երկաքանչիւրեացն Աստուած գիտէ, գաղտնեացն գիտակ, և նորին ճշմարտութեանն դատաւոր արդար։ Իսկ ես զոր յայնժամ զիրարեալսն գրեցի։

ա. Բն. չկայ. ··քանզի զհերձուածականսն....զղջացելոյն··

գովլի, որպէս աղբիւր ընդհանրական եկեղեցեաց, որ լուսաւոր վարդապետութեամբն արբուցանէ զպաքսումն աստուածտուիրաց անձանց. Եւ Թագուհին ոչ սակաւ զարհուրանս կրեալ վասն առն Աստուծոյ իւրոյ չարութեանն, որ և անդէն վախճանի զըղջացեալ ընդ գործելիս իւր.ա Եւ Թագաւորն յայսոսիկ սուգ առնոյր, յորժամ լուաւ զվախճան առնն Աստուծոյ Յոհաննու ի տարակոյս լինի.բ

ա. Ա՛ զգործելիս իւր. Ն. գործեցեալն. բ. Դ. լինէ.

Գլ. Ի.[1]

Իսկ Ռուսակիոս ոչ զբազում յեպիսկոպոսութեանն եկաց ժամանակ. քանզի զնոյն հետայն ի հիւպատուօջն որ էր Ստեղե[նի]քոնի և Անթեմիոսի երկրորդի, [ա] մետասանին Նոյեմբերի ամսոյ վաղճանեցաւ։[2] Իսկ փոյթ բազմաց եղելոյ վասն եպիսկոպոսութեանն, և յաղագս այսորիկ չորեք ամսեա [բ] ընթացելոյ ժամանակի, զկնի հիւպատուօջն որ էր Արկադիոսի վեցերորդի[3] և Պռոբոսի, [գ] Նախակարգեցաւ յեպիսկոպոսութիւնն. այր երկիւղած որոյ անուն էր Ատտիկոս, որ ազգաւ ի Սեբաստեայ Հայոց իջեալ, ճգնական վարուք ի մանկական հասակէ գոլով, և այլ որպէս զի այսուիկ նուաստաբար խրատիլ, առաւել բնաբար իմաստուն էր. այլ վասն այսորիկ փոքր ինչ յետոյ ասացից։

ա. Բն. երկրորդի Ստիլիքոնին.
բ. Բն. ունի —բազում անցանելոյ ժամանակի—։
գ. Բն. Πρόβος.

1 Տես Սոզոմ. Ը. 27. կաս. Ժ. 22. Նիկ. ԺԳ. 29.
2 Փրկ. 405. Թ.
3 Փրկ. 406. Թ.

Գլ. ԻԱ.

Ատտիկոս փոխանորդէ զհայրապետութիւն Կոստանդնուպօլսոյ։

Եւ յետ այսորիկ կոչեն փոխանորդ նորա զԱտտիկոս ի հայրապետութիւն նորին աթոռոյն, որ էր ազգաւ ի Սեբաստիայ որ ի Հայոց. ճգնաւորական վարս ստացեալ ունէր ի մանկութենէ, երկիւղած յԱստուծոյ, [ա] հեզ և հանդարտ և իմաստուն և ողջախոհ, բայց բանիւ նուաստ առ վարդապետութիւն։

ա. Գ. Աստուծոյ.

ԳԼ. ԻԱ.

Իսկ Յովհան արտաաահմանեալ ի կողմանս Եւքսի- նոս Պոնտոսի վաղճանէր, տասն և չորիցն Սեպտեմբերի ամսոյ, ի նոյնհետայն հիւպատուոջն, որ էր Անորիոսի Ը և Թէոդոսի Բ. այր, որպէս և նախկին ասացի, վասն նախանձու ողջախոհութեանն սրտմտութեամբ առաւել քան պատկառանաւք շնորհելով, և յաղագս զգաստութեանն համարձակագոյնս ի ձեռն վարուցն լեզ- ուովն ի գործ անկեալ: Եւ սքանչանալ է ինձ ի վե- րայ, զի՞որ զայսքան նախանձ ողջախոհութեանն ծըզ- նելով ի խաւսս իւրում արհամարհեալ զողջախոհու- թեանն ուսոյց: Քանզի միոյ յետ մկրտութեանն ի ժո- ղովոյ եպիսկոպոսանցն զղջման մեղուցելոցն տուեցե- լոյ, նա համարձակեցաւ ասել, Ո անգամ զղջացեալ մատ: Յոր վարդապետութեանն վերայ բազումք և յո- րոց նորայն ըստգտին, մանաւանդ Սիսիննիոս Նաւա- տիանոսացն եպիսկոպոս, որ և բան ընդդէմ ճառեցելոյն շարագրեաց, և քաջաբար առ նա վասն այսորիկ ընթա- ցաւ, այղ այս թերևս յառաջ լինէր:

ոչ պիտոյանար շարագրաց այլ վասն Նախանձու ողջախոհու- թեանն. սրտմտութեամբ առաւել քան թէ յաճախ բանիւ պատկառեցուցանէր, և շնորհիւ յաղագս զգաստութեան հա- մարձակագոյնս ի ձեռն վարուցն լեզուին ի գործ անկեալ և ոքանչելիս յայսորիկ երևեալ. զառաւել Նախանձ ողջախոհու- թեանն առ ամենեսեան վարդապետէր.

Ասէ. Ոչինչ պատուականագոյն ընծայ քան յետ մկըր- տութեան մաքրութիւն ախտից. Եւ այսպէս երանելոյն Յո- հաննու շարագրօք մխիթարել զժողովուրդն կալ անշարժ ի Նորա կարգս.

### ԴԼ. ԻԲ.[1]

Բայց վասն Սիսինեայ սուղ ինչ պատմել ի դէպ համարիմ։ Էր այրն, որպէս և բազում անգամ ասացի,[2] բանաւոր և գիմաստասիրականսն կատարելապէս ուսեալ, և տրամաբանականին յոյժ տեղեակ և զաստուածային գիրս ստուգաբար մեկնել գիտէր, որպէս զի Եւնոմիոսի հերձուածողի յոլովաբար փախչել յորմէ ի նորա բանիցն դժնդակութենէ։ Իսկ առ կենցաղոյն էր ոչ սոսկ, այլ ծայրագունիւ ողջախոհութեամբն բազում կատարմամբ այնմիկ հպէր, փափկանալով սպիտակ հանդերձիւք, և երկիցս ի բաղանիսս արքունականս լուանալով կատարէր։ Իսկ երբեմն ասացեալ ուրումն ցնա. Է՞ր աղագաւ եպիսկոպոս գոլով երկիցս լուացիս յաւուրն, վասն զի զերրորդն ոչ ժամանեմ, պատասխանէր։ Այլ յորժամ Արսակիոս ըստ պատուոյն եկեալ, հարցաւ յումեմնէ

1 Տես Սոզոմ. Ը. 1.
2 Տես Ե. 10 և 21.

### ԳՀ. ԺՂԱ.

*Յաղագս Սիսինեայ Նաւատեայ եպիսկոպոսի։*

Բայց Սիսինեայ Նաւատեայ եպիսկոպոսի, զոր Նախկին յուշ արարի, սուղ ինչ ասացից. Զի էր բանաւոր, և զի կատարեալ էր յիմաստասիրականսն,[ա] և զաստուածային գիրս ստուգաբար մեկնէր. որպէս Եւնոմիոս հերձուածողս խուսափէր ի նմանէ. իսկ ի կենցաղոյս ցանկալիս պարկեշտ,[բ] և հանդերձս սպիտակս[գ] ունէր, և յերեկոյս և ի վաղորդեան լուանայր յարքունական բաղանիսն։ Հարցին ոմանք. «Ընդէ՞ր եպիսկոպոս երկիցս[դ]

ա. Դ. յիմաստասիրականս. բ. Դ. պարկեշտս. գ. Դ. սպիտակ. դ. Ա՛ երկուս Գ. երկից. Դ. երիս.

յորոց ընդ Ուռսակայն. ընդէր զանպատշաճ եպիսկոպոսի հանդերձս ագանիցի. և ուր գրեալ է սպիտակս քահանայացելոյն ագանել, իսկ նա. այլ դու նախ, ասէ, ասա ո՞ւր գրեալ է սեաւ հանդերձս ագանել քահանայի և եպիսկոպոսի։ Իսկ նորա ի հարցմանէն ի տարակուսանս եղեալ, առ փոխանակ հարցումն ի վերայ եբեր Սիսիննիոս. այլ դու ոչ յայտնի ցուցանել կարես, իբր զի պարաւէ քահանայացելոյն սեաւ ագանել. բայց զիս և Սողոմոն[1] յորդորեաց ասելով, եղիցին հանդերձք քո միշտ սպիտակք, և Փրկիչն[2] յաւետարանսն սպիտակ հանդերձիւք երևի հպեալ, և ոչ այս միայն, այլ և զՄովսէս և զԵղիայ սպիտակ հանդերձիւք եցոյց առաքելոցն։ Զայսոսիկ և այսպիսս բազումս պատրաստաբար ասացեալ, մեծամեծս յորոց մերձն եղև ոքանչելի։ Իսկ Ղէոնդի որ ի փոքր Գաղատիայ եպիսկոպոսի Անկիւրիոյ, զՆաւատիանոսացն եկեղեցի առեալ[ա] Սիսիննիոս եկեալ առ նա աղաչէր ի բաց տալ զեկեղեցին։ Իսկ նա ջերմ սրտիւ պատահեաց և ասէ ցնա. դուք Նաւատիանոսք

ա. Բն. աւել ունի.— իբրեւ եկեալ էր նորա ի Կոստանդնուպաւլիս.

1 Ժողով. Թ. 8.

2 Մատ. ԺԷ. 2. Մարկ. Թ. 3. Ղուկ. Թ. 32. բայց ոչ մի տեղ կայ յիշուած, որ Մովսէսը եւ Եղիան սպիտակ հանդերձ ունէին.

լուանաս, ասէ. Զի զերրորդն ոչ ժամանեմ. Դարձեալ վասն սպիտակ հանդերձից հարցաւ ասէ. Ո՞ւր է ի գիրս հրաման սեաւ հանդերձս ագանել եպիսկոպոսին. Եւ տարակուսեալ ի պատասխանիս հարցողացն, ասէ Սիսին. Զի Սողոմոն յորդորէ, ասէ եղիցին հանդերձք քո սպիտակք. և Տէրն սպիտակ հանդերձիւ երևի ըստ Աւետարանին. և ոչ այս միայն, այլ և զՄովսէս և զԵղիա սպիտակ հանդերձիւ եցոյց առաքելոցն. Զայսոսիկ ասացեալ սքանչացոյց զլսողսն.

ոչ պարտիք եկեղեցիս ունել, զզջումն բառնալով և զմարդասիրութիւնն Աստուծոյ ի բաց խնուլ։

Զայս և զայսպիսիս բազումս Ղևոնդի զՆաւատիանոսսն չարաչար ասացեալ, ասէ Սիսիննիոս. նաև ոչ ոք զզջանայ որպէս զիսս։ Իսկ նորա դարձեալ ածեալ ի վերայ, և զի՞րդ զզջանաս. զի զքեզ տեսից, պատասխանեաց։ Իսկ Յովհաննու երբեմն եպիսկոպոսի բաղոքեալ նմա և ասացեալ. եթէ ոչ կարէ քաղաքս երկու եպիսկոպոս ունել. Սիսիննիոս, քանզի և ոչ ունի իսկ, ասէ։

Իսկ Յոհաննու զայրագնեալ, տեսանե՞ս զի միայն կամի լինել եպիսկոպոս։ Իսկ Սիսիննիոս, ոչ զայս ասելով, ասէ, այլ զի ես ասէ ոչ ի քեզ է միայնւոյ չեմ եպիսկոպոս, իբր զի և այլոց չեմ։ Իսկ Յովհաննու նոյնժամայն ասացեալ առ ճառեալն. այլ ես զքեզ, ասէ, դադարեցուցից ի բեմասացութենէ, քանզի հերձուածող գոլ։ Առ այս խնդամտաբար պատահեաց Սիսիննիոս. այլ ես, ասէ, և վարձս տաց, եթէ զիս յայսքան աշխատութենէ ի բաց փոխեսցես։ Զիջեալ ի պատասխանւոյն Յոհան. այլ ոչ զքեզ, ասէ, դադարեցուցից ի խաւսելոյն, թէ բնաւ զքեզ ասելն տրտմեցուցանէ։ Արդ այսպէս պատրաստ առ պատասխանիսն էր Սիսիննիոս և խնդամիտ. բայց գրել և յիշել զամենայն ճառեալսն նորա երկայն է, վասն որոյ և սակաւ ինչ ցուցանել որպիսի էրն բաւականանալ համարեալ։ Զայն ասեմ, զի վասն խրատուն գերահռչակեալ էր. և վասն այնորիկ ամենայն եպիսկոպոսունք սիրէին զնա և պատուէին. և ոչ այս միայն, այլ և ամենայն սինկղիտուոյն երևելի հաստատէին զնա և սքանչելի առնէին։ Բազում և գրեան նորա շարադրեալ բանս որսալով ի նոսա և բանաստեղծականս

յարախառնեալ բառս, իսկ ասելոցն յաւէտ քան ընթեռնլոցն սքանչացեալ լինէր։ Քանզի էր ի նմա շնորհ ունայն վարուց ի մարդահաճոյութենէ ի դէմս, և ի ձայն և ի ձևս, և ի հայեցուածս, և բոլոր իսկ շարժմամբ մարմնոյն։ Ապա սիրիւր և վասն այսորիկ յամենայն աղանդոցն և առաւել յեպիսկոպոսէն Ատտիկոսէ։ Բայց արդ վասն Սիսինոսի բաւականանալ համարիմ։

Գլ. ԻԳ. [1]

Իսկ ոչ բազում ինչ վերջոյ յետ վաղճանին Յովհաննու, և Թագաւորին Արկադիոսի այր հեզ և հանդարտ և մերձ ի վաղճան կենացն զաստուածասիրին փառս ստացեալ յայսպիսի պատճառոյ։ Ի Կոստանդինուպօլսի էր տուն մեծ ընկուզի [ա] ունելով զհամանուանութիւնն։ Քանզի կայր ի գաւթի տանն ծառ ընկուզի, յորմէ ասի կախիլ վկայն Ակակիոս, [2] և վկայիլ բարի խոստովանու-

ա. Καρύα.

1 Տես Սոզոմ. Բ. I, կամ. Ժ. 35. Նիկեփ. ԺԳ. 38.

2 Տես վերև Բ. 38.

Գլ. ԾԼԲ.

*Յաղագս Արկադեայ մահուան եւ պարսպին Կոստանդնուպօլսոյ վերստին նորոգման.*

Եւ յետ ոչ բազում աւուրց [ա] ի վախճանի երանելոյն Յոհաննու, և Թագաւորին Արկադիա հեզոյն և հանդարտին հասանէ մահ, որ զաստուածասիրի [բ] զփառս ստացեալ էր այսպիսի [գ] օրինակաւ. Ի Կոստանդնուպօլիս էր տուն մեծ աղօթից, և ի գաւթին ծառ մի մեծ ընկուզի, [ա] յորմէ ասի կախեալ ընդ-վկայն բարի խոստովանութեամբ զԱկակիոս. [դ] վասն այսորիկ և

ա. Աՙ ատուր բ. Դ. զաստուածասէր փառսն. գ. Դ. այնու. դ. Դ. զվկայն Ակակիոսի. | Տես վկայութեան Ակակիոսի։

ռամբ. վասն որոյ պատճառոյ և տուն աղաւթից տա-
ռովն շինեցաւ: Զայն տեսանել կամեցաւ Արկադիոսի,
ինքն Հասանէր և աղաւթեալ նոյնժամայն գնայր: Եւ
ամենքին որ շուրջ զաղաւթանոցաւն տամբն բնակեալք
ի տեսանել զԹագաւորին Համընթաց լինէին: Եւ ոմանք
արտաքս ի տանէն ելեալք յառաջել յանցս ճանապար-
հին փութային, յորոց յայտնագոյն յայնժամ լինէր
Թագաւորին պատկեր և զոր շուրջ զնովաւ զզինակրաւ-
թիւն Համարէին տեսանել, իսկ այլք Հեռաւէին մինչև
ամենեքին Հանդերձ կանամբք և մանկամբք արտաքոյ
տանն լինէին: Եւ յետ այնորիկ որ շուրջ զաղաւթարա-
նաւն կայր տունն անկանէր ամենեւիմբ:

Ցայնժամանէ գոչումն սքանչելեաւք Հեռաւէր, և փա-
ռաւորէին զԱստուած ասելով. որպէս զի Թագաւորին
աղաւթք զայսքանս ի կորստենէն ապրեցուցին: Արդ՝
յայնժամ այսպէս եղև, և վկայեցաւ աստուածատէր
լինել Թագաւորին: Իսկ Թողեալ Թագաւորելով զորդին
Թէոդոսիոս Ը ամեա Հանդիպելով, վախճանեցաւ ի Հիւ-

տուն աղօթիցն առ ծառովն շինեցաւ: Զայն տեսանել կամեցաւ
Թագաւորն Արկադէոս, երթայր յաղօթս ի տեղին յայն և ան-
դէն դառնայր: Եւ ժողովեցան բազումք ի տեսանել զԹագա-
ւորն. ոմանք շուրջ զտամբն, և ոմանք ի վերայ տանեացն, և
և այնքան ծանրացան ի վերայ տանն մինչև կործանեցաւ տունն
խոպա. և ոչ ումեք վնաս լինէր յայնքան բազմութեան.

Գոչումն բարձեալ ամենեցուն ի վերայ զարմանալեացն,
օրՀնէին զԱստուած և գովէին զԹագաւորն, որ աղօթիւք Նա-
րա փրկեցան ի կործանմանէն. Ցայսոսիկ վկայեալ եղև յամե-
Նեցունց. Թագաւորն Արկադէ" բարեպաշտ, զԹագաւորեալ
որդին իւր Թողեալ Թագաւոր զԹէոդոս, վախճանի կեցեալ ամս

ա. գ. Արկադէոս.

պատուոյն Բասսոսի և Փիլիպոսի, յառաջումն Մայիս ամսոյ։[1] Իսկ այս էր ամ երկրորդ ՄՂԷ Ողիւմպիադումն․ Թագաւորեալ ընդ հաւրն ամս ԺԳ, իսկ յետ վաղճանի հաւրն ամս ԺԴ, կեցեալ ամս ԼԱ։[ա]

ա․ Բնագրի մէջ այս Զ-րդ գրքի վերջում դրած է մի գլուխ եւս որ չկայ յունարէն բոլոր ձեռագրերում, այլ միայն մի քանիսում, ասել է, չի եղել նաև մեր Թարգմանի օրինակում։

1 Փրկ․ 408 Թ․

երեսուն և երկու, Թագաւորեալ ընդ հօրն իւրոյ ամս երեք-տասան, և յետ հօրն վախճանի՝ ամս չորեքտասան ի Մայիս ամսոյ ի մին,[ա] և երկերիւր և իննսուն և եւթն Ողոմպիադումն։[բ] Այսպէս կեցեալ և յայսոսիկ վախճանին փառաւորի․

ա․ Գ․ մայիս ամսոյ Ա․ բ․ Դ․ ղմէոսղումն․



# ԳԻՐՔ ԵՒԹՆԵՐՈՐԴ

## Գլ․ Ա․[1]

Թագաւորին Արկադիոսի վախճանեալ յառաջնումն Մայիս ամսոյ, ի հիւպատուօջն Բասսոսի և Փիլիպոսի, Ոնորիոս նորին եղբայրն զարևմտայինսն ուղղէր կողմունս, իսկ ի յորդւոյն ՝նորին Թէոդոսէ յութամեայն[2] հանդիպեցելոյ յարևելիցն կարգիւր․ Անթիմիոսի եպարքոսի զկարգաւորութիւնն առնելով զամենեցունց․ որ էր թոռն Փիլիպոսի[3] զՊաւղոս եպիսկոպոս առ Կոստանդնիւ հանողին յեկեղեցւոյն, և փոխանակ մուծողին զՄակեդոնիոս։ Սա զմեծ պարիսպն Կոստանդինուպողսի էած

ա․ Այս նախադասութիւնը չկայ բնագրի մէջ։

1 Տես Սոզոմ․ Թ․ 1․ Փիլոստ․ ԺԲ․ 7․ Կաս․ ԺԱ․ 1․ Նիկ․ ԺԴ․ 1․
2 Թէոդորոսը ծնուել էր 401 Թ․, տես Ջ․ 5․
3 Տես վերեւ Բ․ 16․

Եւ թագաւորեալ Թէոդոս մանուկ գոլով յութ ամենից սկսեալ կարգաւոր գոլով ի վարս, ուղղէր զթագաւորութիւն իւր ի ձեռն Անթիմոսի եպարքոսի․ Սա զպարիսպն Կոստանդնուպօլսի էած շուրջանակի իմաստնագոյն քան զառաջինն․ զի էր խորհրդական ի տեսութիւն գործոց մեծամեծաց և փոքունց, և ոչինչ[ա] կարօտանայր գործնականաց իմաստից և հնարից․ վասն որոյ գրեաթէ[բ] զամենայն խորհրդակցութեամբ առ ամենայնս[գ] ներգործէ․

ա․ Դ ոչ․ բ․ Գ․ գրէթէ․ գ․ Դ․ առ ամենայն

շուրջանակի, իմաստնագոյն քան զոր յայնժամ մար-
դիկն և թուէր և էր. և անխարհրդաբար գործէր և
ոչինչ այլ հաղորդ լինէր բազմաց ծանաւթից, վասն
գործականացն մանաւանդ Տռովիղոսի ա իմաստակի, որ
եղելով իմաստութեամբ և ըստ քաղաքական իմացու-
թեանց Անթեմոսի էր նման: Վասն որոյ գրեա թէ զա-
մենայն իսկ խորհրդակցութեամբ Տռովիղոսի գործէր:

Գլ. Բ.[1]

Իսկ յայնժամ Թագաւորին Նորին Թէոդոսի յու-
թերորդ ամն ածեցելոյ, երրորդ ամուն էր զայն Ատ-
տիկոս[2] յեպիսկոպոսութեանն վայելելով, այր, որպէս և
հասեալ ասացաք, հանդերձ խրատուն երկիւղած և
իմաստուն, վասն որոյ և զեկեղեցին առ նովաւ պատա-
հեաց ի մեծամեծս վերադրիլ: Քանզի ոչ միայն զընտա-
նիս հաւատոյն ընդունէր, այլ զհերձուածողսն ի-
մաստութեամբ զարհուրեցուցանէր. բայց աշխատ առ-

ա. Տրոյլոսի մասին տես վերեւ Զ. 6,

1 Տես կաս. Թ. 2.
2 Նա ձեռնադրուեց 406 թ.

Գլ. ՃԼԳ.

Յաղագս Ատտիկեայ վարուցն եւ խրատուն:

Իսկ Թագաւորն Թէոդոս ութամեա թագաւորեալ յեր-
րորդ ամի Ատտիկեայ կոչմանն էր ի հայրապետութիւն. և
զի էր երկիւղած և բնաբար իմաստուն, վասն որոյ և զեկեղե-
ցին առ նովաւ պատրաստեաց ի մեծամեծսն վերագրել. ա քան-
զի ոչ միայն զընտանիս բ հաւատոյն ընդունէր սիրով, այլ և

ա. Աʼ Գ. վերագրեալ. բ. Աʼ զընտանեաց.

նել գնոստ ոչ երբէք յաւժարէր, բայց երկեզուցանել ձեռնարկելով առժամայն հեզ նոցա զինքն ցուցանէր։ Այլ նաև ոչ ի բանից դանդաղէր. քանզի վաստակէր առ որս հնոցն ընթերցմունս աւթադանելով[ա] ի նոսա. վասն որոյ և ոչ աւտարաձայնէր յիմաստասիրացն կամ յիմաստակացն։ Էր և հանդիպողացն խնդամիտ, և տրտմեցելոցն տխրակից լինէր և պարզաբար իսկ ըստ առաքելոյն ամենեցուն ամենայն լինէր։ Իսկ յառաջ մինչ ի քահանայութեանց նախակարգիւր, ուսանելով զորս վաստակէրն բանս եկեղեցւոյն ուսուրանէր։ Իսկ յետ այնորիկ վաստակասիրութեամբն և համարձակութիւն ստացեալ յինքենէ, ժողովրդականացն զվարդապետութիւնն առնէր. ոչ այսպիսիք էին բանքն որպէս զի լսաւղացն փութալ գլով ուանդել։ Արդ վասն բա-

ա. διανυχτερεύων անքուն գիշերս անցուցանելով։

զհերձուածողսն խորագիտութեամբ սիրով ընդունէր և աշխատ առնել ոչ երբէք յօժարէր, այլ հեզութեամբ զնոսա յորդորէր[ա] Այլ և ոչ ի պարզ բանս դանդաղէր խօսել ընդ նոսա ի Սուրբ գրոց. որ և ընթեռնոյր զհնոյն և ի նոցանէ ճշմարտէր զհաւատոյն բան, զոր ոչ օտար վարկանէին իմաստասէրքն[բ] և յանդիմանող այնմ խնդամիտ եղեալ, և տրտմեցելոյն[գ] տրտմակից լինէր. և պարզաբար իսկ՝ ըստ առաքելոյն յամենայնի ամենայն լինելով, զի շահել կարասցէ զբազումս. և զառաջինն ի կոչմանն իւրոյ յեկեղեցւոյն վարդապետէր զբանն պատկառանօք։

Իսկ յետ այնորիկ ըստ շնորհին Աստուծոյ և համարձակութիւն ստացեալ յինքն և ի ժողովս զվարդապետութիւն[դ] առնէր, ոչ այնպիսիք էին նորա բանք (որպէս երանելոյն[ե] Յոհաննու), որպէս զի լսողացն փութով շարագրել զնոսա, այլ

ա. Գ. որսայր. բ. Գ. իմաստասէրք. գ. Ա՝ եւ խնդացելոցն խնդակ եւ տրտմեցելոցն. Գ. խնդրամիտ եւ տրտմեցելոց. դ. Ա՝ վարդապետու թիւն. ե. Գ. յերանելւոյն.

րուցն նորա և աւրինակի և խրատու լիովին ճառեցաւ. բայց որքան յիշատակի արժանիք որ առ նորա ժամանակաւքն սկսայց ասել։

ԳԼ. Գ.

Ի Սիւննադոն ա քաղաքի Պակատիանոյ Փռիւգիոյ Թէոդոս ոմն եպիսկոպոս էր, որ զորս ի նմա հերձուածողս մոլեգնաբար հալածէր. և բազումք ի նմա եղեալք հանդիպէին Մակեդոնիանոսականն աղանդոյ և հալածէր ուժգնաբար արտաքս վարելով զնոսա. ոչ միայն ի քաղաքէն, այլ և յագարակաց։ Եւ զայս առնէր ոչ սովորութեամբ հալածել յուղղափառն եկեղեցւոյ, և ոչ նախանձու ուղիղ հաւատոյն, այլ արծաթսիրութեանն ախտի ծառայելով՝ ի հերձուածողացն ինչս ժողովեալ փութայր։ Վասն որոյ զամենայն շարժէր ընդ-

ա. ἐν Συνάδῳ եւ Συνιάδῳ

պարզապէս առնէր խօսս ա ի շահ։ Արդ վասն Ատտիկոսի և նորա վարուցն և խրատուց այսքան ասացաւ։

ԳԼ. ԺԼԴ.

*Յաղագս Թէոդոսի եպիսկոպոսի Սիննիացւոյն, որ ի Փռիւգիայ վասն վշտացուցանելոյն զեպիսկոպոսն Մակեդոնի զԱգապիոս։*

Բայց որքան յիշատակի արժանի առ նովաւ ասացից. ի Սիւնադոն բ քաղաքի ի Փռիւգիայ Թէոդոս եպիսկոպոս, որ զհերձուածողս մոլեգնաբար հալածէր, առաւել զհոգեմարտ Մակեդոնիանոսսն. և զայս առնէր ոչ ուղղապէս ըստ գ Աստուծոյ նախանձու, այլ վասն արծաթսիրութեան ախտի, ինչս հաւաքելով ի հերձուածողացն։ Վասն որոյ և զամենայն ջք շարժէր ընդդէմ նոցա և ոչ ի դատաստանս դ զնոսա թողացուցանէր,

ա. Ա՝ ի խօսս. բ. ի Սինադոն. Բռլ. Ձեռ. Սիւնադոն. գ. Ա՝ ըստ. դ. Դ. ի դատաստանս թողացուցանէր.

դէմ Մակեդոնին խորհողացն՝ վառեցուցանելով ։ որոց ընդ նոմա ուխտաւորացն, և բիւրուք հակառակ ընդդէմ նոցա հպեալ հնարիւք, և ոչ ի դատապարտանէ զնոսա արկանելով վճարէր, իսկ զեպիսկոպոսն նոցա, որում անուն էր Ագապիտոս[ա] յոլովաբար խառնեցուցանէր։ Եւ զի այնուհետև ապա ոյք աշխարհին իշխանք ոչ երբէք բաւականանալ նմա առ պատիժն համարէին, ընթանալով ի Կոստանդինուպոլիս եպարքոսական հրամանացն պիտաւորէր։ Ապա իբրև Թէոդոսիոս ի Կոստանդինուպոլսի վասն այնորիկ յարաքարշէր, Ագապիտոս զոր առաջնորդ Մակեդոնին աղանդոյն տացի, ի բարին եկն բացամտութիւն։[բ] Քանզի խորհեալ համդերձ ամենայն ուխտիւն իւրով, և կոչեալ զոր ընդ իւրև ժողովուրդն, հաւանեցուցանէր զհամագոյութեանն հաւատ ընդունել։ Եւ զայս կարգեալ առժամայն որպէս կայրն հանդերձ ամբոխիւ բազմաւ յաւէտ ամենայն ժողովրդեամբն յեկեղեցին դիմեաց, և զաղաւթսն կատարեալ հասանէր յաթոռն յորում սովոր էր Թէոդոսիոս նախկին նստեալ։

ա. 'Αγαπητός Ձեռ. ունի «Ագատիպոս»։
բ. ἀπόνοια

այլ միշտ կեղէր զանազան հնարիւք և փորձանօք, առաւել զեպիսկոպոսն Մակեդոնի զԱգապիտոս։[ա] Որ և մտախորհ եղեալ, ի բացամտութիւն եկն ուղիղ հաւատոյն, և հաւանեցուցանէր զժողովուրդ[բ] իւր ուղիղն համագոյութեան հաւատն ընդունել, Գայ ի Կոստանդնուպօլիս, և առժամայն ժողովրդովն իւրով յեկեղեցին ընթացեալ, և յաղօթս[գ] մատուցանէր և խոստովանէր զհամագոյ Երրորդութեանն զմիութիւն երից զօրու-

Ա՝ զագապիտոս. բ. Ա՝ զժողովուրդն իւր ուղիղն. գ. Ա՝ աղօթս.

Իսկ միաւորեալ ժողովուրդն և այսուհետև զհամագոյութեանն հաւատ ուսուցանելով որոց ընդ Սիւնաոն եկեղեցեացն կալեալ եղև։ Այսոցիկ այսպէս եղելոց, յառնէր յետ ոչ բազում իրի Թէոդոսիոս զաշխարհական աւգնութիւնսն ճեպեցուցանելով, իսկ ոչինչ զեղելոցն գիտացեալ, որպէս կայրն յեկեղեցին գնայր։ Իսկ անտի արտաքս վարեալ յամենեցունցն առժամայն ի Կոստանդինուպոլիս գնայր։ Եւ հասեալ առ եպիսկոպոսն Ատտիկոս, զոր ըստ ընքեանն յառաջէր իբր զի անիրաւաբար ի յեպիսկոպոսութենէն արտաքսեալ։ Իսկ Ատտիկոսի ծանուցեալ զգործն յաւգուտ եկեղեցւոյն հասեալ, զԹէոդոսիոս բանիւք մխիթարէր, հաւանեցուցեալ անոխաբար զհանդարտականն վարս ողջ ունել, և ընտրեալ զհաղորդս իւրայոցն ուսուցեալ։ Գրէր

Թեանցն որոշելով զառանձնաւորութիւնն։

Զայս տեսեալ Ատտիկոսի հանդերձ ամենեքումբ փառաւորէր զԱստուած, և մեծաւ պատուով և սիրով ընդունէր զնոսա ի միաւորութիւն եկեղեցեաց Աստուծոյ։ Զայս լուեալ զչարացաւ առաւել Թէոդոս եպիսկոպոս. գայ և նա ի Կոստանդնուպօլիս, և հրապուրանս առէ զայսոսիկ զեղեալսն։ Իսկ Ատտիկոս համոզէր զԹէոդոս բանիւ, խոնարհամտութեամբ անյիշաչար լինել առ զղջացեալ եղբայրութիւնդ. և խնդալ պարտ է և նոչ տրտմել։ Այսպէս զնա ողոքէր ի հաշտութիւն և խաղաղութիւն սիրոյ և զնա հաստատէր ի հաւատս, և գրով հրամայէր Ագապիտոսի ունել զեպիսկոպոսութիւնն, և հովուել զժողովուրդ[ա] իւր ուղիղ հաւատով, և անկասկած ունել զեպիսկոպոսութիւնն[բ] ի Թէոդոսէ։ Արդ այսպիսի քաղցր կամօք զնոսա հաշտեցոյց ընդ միմեանս, և սիրով յուղարկեաց[գ] յեկեղեցիսն։

ա. Ա՝ զժողովուրդն. բ. Ա՝ իւր. գ. Ա՝ ուղարկեաց։

ապա Ագապիտոսի ընդունել զեպիսկոպոսութիւնն և մի-
ինչ ի Թէոդոսի տրամութենէն խռովականաց կասկած
ունել։

Գլ. Դ.[1]

Արդ այս քաղցր առ ժամանակաւքն Ատտիկոսի յեկեղեցւոջն գոյացաւ։ Իսկ ոչինչ ի սքանչելի բժշկութեանց ժամանակին կարգաւորութիւն էր անման. քանզի Հրէայ ոմն անդամալոյծ գոլով ի բազում ժամանակաց ի մահիճս դնիւր և ամենայն բժշկական արուեստ ի վերայ նորա կրթեցելոյ և ոչինչ ի վերայ նորա զաւրացելոյ։ Յետոյ ապաւինէր ի քրիստոնէական մկրտութիւնն, նմա միայնւոյ ճշմարիտ բժշկի հպիլ, հաւատացեալ ի բոլոր սրտէ։ Այս յայտնի եպիսկոպոսին Ատտիկոսի լինէր վաղվաղակի, ապա երախայացուցեալ և զառ ի Քրիստոս յոյսն աւետարանեալ, բերեալ հանդերձ մահճաւքն հրամայէր ի լուսարանն։[a] Իսկ անդամալուծն Հրէայ ստոյգ հաւատով զմկրտութիւնն ընկալեալ յաւազանէ

[a] τὸ φωτιστήριον աւազան մկրտութեան։

[1] Տես կաս. ԺԱ. 4. Նիկեփ. ԺԴ. 12.

Գլ. ԾՀԸ.

Վասն Հրէիցն անդամալուծի, թէ որպէս ի մկրտիլն բժշկի.

Հրէայ ոմն էր ի ժամանակին անդամալոյծ, ի բազում ամս լեալ ի մահիճս, և ոչ ուստեք օգնականութիւն գտեալ. ոչ ի հրէական աղօթից և ոչ ի բժշկական արուեստից։ Զբազում ինչս իւր ծախեալ, յետ այսորիկ ապաւինի ի սուրբ մկրտութիւն հաւատով ի բոլոր սրտէ և ծանուցանէ զայս եպիսկոպոսին Ատտիկոսի։ Ապա երախացուցեալ զնա, և զառ ի Քրիստոս յոյսն աւետարանեալ. և ուսեալ զխոստովանութիւն և

մկրտարանին վերացեալ առժամայն վճարիւր յախտէն, և այնուհետև ընդ առողջան էր։ Զայս բժշկութիւն Քրիստոսային զաւրութիւն և առ մերաւքս ժամանակաւքս ցուցեալ մարդկան կամեցաւ։ Վասն որոյ բազում հեթանոսք հաւատացեալք մկրտեցան. իսկ Հրէիցն նշանն խնդրողաց և ոչ զեղեալսն նշանս համարէր։ Այսպիսի ապա ի Քրիստոսէ գոյր քաղցրութիւն։

Գլ. Ե.[1]

Իսկ բազմաց առ ոչինչ զայս համարեալ, յիւրեանցն տաժանմունսն պարապէին. քանզի ոչ միայն Հրէայք եղելոցն նշանաց ոգէտ լինէին, այլ նաև որք սիրէինն հետևիլ նոցա նմանս նոցա խորհելով յանդիմանէին։ Քանզի Սամբատտիոս, յորում փոքր ինչ յառաջն արարաք յիշատակ, ոչ կամելով յընտանի քահանայական կարգին կալ, այլ ախտանալով զեպիսկոպոսականն աթոռ ի սկզբա-

ա. Ձեռ. Քի՞ Ն. ունի.

1 Տես. կամ. ԺԱ. 5. Նիկ. ԺԴ. 13.
2 Տես Ե. 21.

ղցիտութիւն ուղիղ[ա] հաւատոյն, հրամայեալ ածել մահճօքն ի մկրտութիւն. և կատարեալ զմկրտութեան զխորհրդածութիւնն[բ] եկանէ յաւազանէն ողջանդամ։ Զայսպիսի Քրիստոսի զօրութիւն եցոյց որ մեզէն իսկ ականատես եղեալ Նորա ըսքանչելեացն, որ ցուցաւ ամենեցուն, (որք[գ] փառաւորեցին զԱստուած)։ Եւ բազումք ի հեթանոսաց տեսեալ հաւատացին և մկրտեցան. իսկ Հրէայք որք նշան խնդրէին տեսանել, ոչ հաւատային ըստ անզեղջ սրտից իւրեանց. և յանդիմանեալ ի բըժշկեալ Հրէին հաւատային։

ա. Ա՝ ուղիղն. բ. Ա, զխորհուրդն. գ. Ա՝ որք տեսին ամենեքեան եւ փառս մատուցանէին Աստուծոյ.

նէ, ընդ նմին այնմ ժամանակաւքն ի Նաւատիանոսացըն եկեղեցւոյ գնաց, պատճառ զխտրութիւն Հրէական Զատկին առնելով։ Ժողովելով ապա նորա առ եպիսկոպոսին Սիսինա ի տեղւոջ քաղաքիս, որոյ անուն Քսիռողոփոն,[ա] որ այժմ վաճառագահ Արկադի անուանի, իր յանդգնեցաւ բազում վշտաց արժանի։ Քանզի յաւուր ժողովոյն առեալ զգլուխ մի Աւետարանին ընթեռնլով յորում ասին. Թէ էր տաւն Հրէից[1] կոչեցեալն Զատիկ, իսկ Սամբատիոս յաւել. զոր ոչն ուրեք և ոչ երբէք է այս ինչ, անիծեալ ասէ, որ արտաքոյ բաղարջակերացն զԶատիկն արասցէ։ Այս լսելի եղեալ արտաքսեցաւ ի բազմաց։ Եւ յափշտակեալք ողջախոհագոյնքն յոլոց ի Նաւատիանոսան ժողովըր-

ա. Ξηρόλοφος

1 Ի նկատի ունի Ղուկ. ԻԲ. 1։

ԳԼ. ՃԼԶ.

*Վասն ժողովոյն, որ կամեցաւ առնել Ատտիկոս Նաւատիանոսի, որք զԶատիկն ընդ Հրէայսն կամէին առնել։*

Ի նմին ժամանակի Նաւատիանոսաց եկեղեցւոյն[ա] որք զԶատիկն առնէին ըստ Հրէիցն՝ կամեցաւ (Ատտիկոս) ժողովել և գիտել վասն խնդրոյն այնորիկ զպատճառ։ Եւ ժողովքին առ Սիսին գլուխ Նաւատիանոսաց[բ] (և առ Ատտիկոս) և ընթեռնուն զբաղարջակերաց Աւետարանն որ ասէր. Էր տօն Հրէից Զատիկ կոչեցեալ. և զՀետ բան անիծեալ ասէ, որ արտաքոյ բաղարջակերացն առնէ զԶատիկն։ Զոր[գ] ոչ ոք զայս լուեալ յԱւետարանացն,[դ] և որ ողջախոհագոյնք էին, ի բաց կային այնպիսի անհանճար բանից, որ մտացածին[ե] բանիւք հրապուրէր

ա. Ա՝ յեկեղեցւոյն. բ. Գ. Նաւատիանոսացն. գ. Ա՝ որ. դ. Ա՝ Աւետարանացն. ե. Ա՝ մտածին.

դականացն գնային առ նա։

Այլ ոչ հեռացաւ յիմաստմանէն, քանզի ի չար վաղճան նորա նոր ստեղծագրութիւնն կործանեաց։ Վասն զի ոչ յետ բազում իրի, զոր ի նախկին ըմբռնըմանէն տաւն առժամայն կատարէր։ Եւ համաժողով լինէին առ նա յոյժ բազումք, և զոր ի սովորութենէն գիշերապաշտաւն առնելով, ամբոխումն իմն դիւաց անկաւ ի նոսա, որպէս զի ուրեմն Միսինիոս նոցա եպիսկոպոսն հանդերձ ամբոխիւ բազմաւ գայ ի վերա նոցա։ Եւ եղելոյ խառնակման որպիսի վայել է ի գիշերի ի նեղ տեղւոջ ըմբռնելոցն, զինքեանս խորտակեցին որպէս զի կորընչիլ ի նոցանէ ճՀ մարդ։ Այս եղեալ զբազումս զորս Սամբատիոսին մերժեաց. իսկ ոմանք մնացին առ նմա ի վայրաքնակ ի նախկին ըմբռնմանէն ըմբռնեալք։ Այլ Սամբատիոս թէ զիարդ երդմնազանցութեամբն յեպիսկոպոսութիւնն եանց, դոյզն ինչ յետոյ ասացից։

որ զհրէիցն կարծիս ունէր[ա] Սամբատիոս և ոչ հաւանէր ասացելոցն զճշմարտութիւն Աւետարանին։

Եւ յետ ոչ բազում իրի զնոյն տօն կատարէր բազում ժողովով. և ըստ սովորութեան ի գիշերի պաշտաման լեալ ամբոխումն[բ] իմն դիւանական անկաւ ի նոսա։ Իսկ Սիսինոս[գ] (Կոստանդնուպօլսի) եպիսկոպոսն գայ ի գիշերի ամբոխիւ ի վերայ նոցա, որպէս զի խափանեսցէ զՋատիկն. և եղև խառնակումն և ամբոխումն, և ընդ իրեարս հարեալ ի գիշերին մեռան արք հարիւր և եւթանասուն։ Այս եղեալ որք Սաբատայն էին[դ] մեկնեալք, գնացին (ընդ Սիսինայ) և սակաւք մնացին ընդ նմա։

ա. Ն. յայնպիսի. Գ. կարծիս ունէր Սաբաստիոս եւ ոչ հաւանէր ասացելոցն. բ. Ա՛ լեալ ամբոխ. գ. Գ. անկաւ ի նոսա. դ. Ն. Սաբատայն.

ԳԼ. Զ.[1]

Իսկ Դոռոթէոս[2] Արիանոսական հերձուածոյն առաջնորդ, զոր յԱնտիոքա ի Կոստանդինուպօլիս փոխել յԱրիանոսացն վերագոյն յիշեցաք, ծեր յոյժ եղեալ, քանզի ճԺԹ ամ ունելով, վախճանեցաւ[3] ի հիւպատուոջն Ոնորի Է և Թէոսի Բ, Զ Նոյեմբերի ամսոյ. իսկ յետ նորա Արիոսական աղանդոյն նախակարգեցաւ Բարբաս:

Առ այս Բարբասաւ երկուց արանց բանաւորաց Արիանոսացն աղանդոյ հանդիպեցան զպատիւ քահանայութեան ունելով, Տիմոթէոս միոյն անուն, իսկ Գէորգիոս միւսոյն: Այլ Գէորգիոս զհեթանոսականն ուղղէր իսկ Տիմոթէոս առաւել յաստուածայինսն ճգնէր

1 Տես կաս. ԺԱ. Թ. Նիկ. ԺԲ. 13.
2 Տես վերեւ Ե. 3. 12. 33.
3 Փրկ. 407. Թ.

ԳԼ. ԺԷ.

*Յաղագս Տիմոթէոսի եւ Գորգիոսի, թէ որպէս զբազումս ի համագոյութիւն ածեն. եւ Կիւրեղ յաջորդէ զկնի Թէոփիլոսի Աղէքսանդրի քաղաքի:*

Իսկ Դոռոթէոս [ա] Արիանոսաց եպիսկոպոսն, ծեր գոլով վախճանի և ունի զտեղին Բարբաս: [բ] Ի սմանէ երկու արք բանաւորք զքահանայութիւն, [գ] որոց անուանք էին [դ] Տիմովթէոս և Գորգիոս գիտունք, Տիմովթէոս ի Փսանթիրանոսէ [ե] աղախնոյն [զ] էր, որ յաստուածայինսն միշտ ճգնէր, և զաստուածայինսն ի գրոց խօսէր և մեկնէր, և հմուտ էր Եբրայեցի լեզուի, և ոչ անտեղեակ Արիստոտելի և Պղատոնի և Որէգինի գրոց. որ

ա. Ա՛ Գոռղոս. բոլ. Զեռ. Դոռղոս. բ. Ա՛ քահանայք գ. Բոլ. Զեռ. Բարաբաս. դ. Ա. ենն. ե. Գ. Քսանթիրանոսէ. զ. Բ. Ն. աղախնոյն.

գիրս. բայց և զԱրիստոտելի և զՊղատոնին միշտ փոխաձեռնեալ ա ունէր. իսկ Տիմոթէոս զՈրիգէն վերաշնչէր և հրապարակաւ զաստուածայինսն մեկնելով գիրս, և ոչ Եբրայեցւոցն լեզուի էր անփորձ։ Բայց Տիմոթէոս յառաջ Փսաթիւռիանոսացն ¹ աղանդոյ էր, իսկ Գէորգիոս ի Բառբասայ ձեռնադրիւր։ Տիմոթէոսի և ես իսկ հանդիպեցայ և ծանեա որպէս զի պատրաստաբար առ հարցաւղսն պատասխանէր, լուծանելով որքան անյայտ ըստ աստուածայինսցն գտանիցի բանիցն և ամենայն ուրեք զՈրիգէն կարդայր որպէս զճշմարիտ վկայ առ ի նմանէ ասացելոցն։ Յո.. ոց վերայ աքանչանալ է ինձ. զի՞ արդարս այսուքիկ յԱրիանոսականն աղանդ փոխեցանն, յորոց ոմն զՊղատոն միշտ փոխաձեռնեալ ունէր, իսկ ոմն զՈրիգէն գերաշնչէր. քանզի և ոչ Պղատոն զերկրորդն և զերրորդ պատճառ, որպէս նա անուանել սովորեցաւ, սկիզբն գոյութեանն առնուլ ասէ. և Որիգէն մշտնջենաւորակից ամենայն ուրեք խոստովանի զՈրդի Հաւր։

Բայց թէև յինքեանցն եկեղեցւոյ մնային, այլ սակայն զԱրիանոսացն աղանդ եկեալք ի վեհագոյնսն փոխադրեցին. քանզի զբազումս ի հայհոյութեանցն Արիո-

ա. μετὰ χεῖρας.

4. Տես վերեւ Ե. 25.

զՈրդի և զՀոգի մշտնջենակից Հօր ասէ, և ոչ որպէս Արիանոսք։ Իսկ Գորգիոս ի Բարբայ, ա որ յոյժ հմուտ էր արուեստից և արտաքին իմաստութեան. զի և ոչ Պղատոն զերկրորդ և զերրորդ պատճառն որպէս և նա անուանեալ սովորեցաւ սկիզբն գոյութեան առնուլ ասէ. և ի նոսա հարեալք, և զնոցա հայհոյութիւն լուծանէին. և զբազումս յԱրիանոսացն բ ածէին ի համագոյութեան բան ըստ ուղիղ վարդապետութեան։ Իսկ

ա. Բոլ. Ձեռ. ի բարբարոսաց. բ. Ա, Արիանոսացն.

ւի ընտանի վարդապետութեամբքն հանին։ Այլ վասն այսոցիկ այսքան ճառեցաւ։ Իսկ ոչինչ ընդ երկարս և Սիսինայ Նաւատիանոսացն եպիսկոպոսի վախճանելոյ, ձեռնադրիւր Քռիւսանթոս, վասն որոյ փոքր ինչ յետոյ ասացից։

Գլ. Լ.[1]

Իսկ յետ ոչ բազում իրի և Թէոփիլոս Աղեքսանդրու եպիսկոպոսն ի միզադրութեանն ախտ անգեալ վաղճանեցաւ, ի հւպատուոջն Ոնորի Թ և Թէոդոսի Ե, Ժ և Ե-ն Ոկտոմբրի ամսոյ։[2] Մարտ ի վերայ եղեալ և աստանաւր վասն եպիսկոպոսութեանն. ոմանք խնդրէին նոր ուսուցանել զՏիմոթէոս, իսկ այլք զԿիւրիղոս, որ էր եղբաւր որդի Թէոփիղոսի։

Իսկ խռովութեան վասն այսորիկ ի մէջ ժողովրդին շարժեցելոյ, սատարէր կողմանն Կիւրղի զաւրականացն գնդի առաջնորդ Բուրդանտիոս,[ա] վասն որոյ յերրորդում յետ մահուանն Թէոփիղոսի աւուր Կիւրիղղոս նստեալ յաթոռ եպիսկոպոսութեանն, իշխանականագոյն քան զԹէոփիղոս եղև։ Քանզի ի Նմանէ

ա. 'Αβουνδάντιος.

1 Տես կաս. ԺԱ. 7. Նիկ. ԺԴ. 14.

2 Փրկ. 412. Թ.

ի Նոյնս և Նաւատիասաց եպիսկոպոսն վախճանի և ունի զփոխանորդութիւն Քռիւնսանթոս,[ա] որ յետոյ ասացից։

Ցետ ոչ բազում իրի և Թէոփիլոս Աղեքսանդրի եպիսկոպոսն յախտ դժնդակ միզագրաւի անկեալ, (և ոչ ուստեք գտեալ բժշկութիւն,) վախճանի. և ոմանք զՏիմոթէոս, և այլք բազում զԿիւրեղ եղբօրորդի Թէոփիլեայ. Եւ երկրորդ աւուրն

ա. Ա՝ Քսինսանթոս. Բռլ. Ձեռ. Քսիստթոս. բ. Գ. ռամք.

եպիսկոպոսութիւնն Աղէքսանդրու գլխով քահանայա-կան կարգին յաղթահարեալ զգործեսն էառ սկիզբն։

Առժամայն ապա Կիւրղի զօրս յԱղէքսանդրիայ Նաւատիանոսացն եկեղեցիս խցեալ, և զեպիսկոպոսն նոցա զԹէոպոմպոն յամենայնէ զորս ունէրն եբարձ, և զամենայն նոցա աստուածայինս սպասս էառ։

ԳԼ. Ը.[1]

Իսկ ընդ այն ժամանակաւքն և որում ի վարս քրիստոնէութեան ընդարձակիլ պատահեաց յայսպիսի պատճառոյ։ Ի մէջ Հռովմայեցւոց և Պարսից յաճախ միշտ պատգամաւորութիւն լինէր. իսկ պատգամացն պատճառք յոլովք են յաղագս ստիպաբար առ միմեա-նըս պատգամացն։ Յայնժամ պէտք եղեն որպէս զի Մարութասա Միջագետաց եպիսկոպոսին, որում սակաւ

1 Տես Թէոդ. Ե. 32. կաս. ԺԱ. 3. Նիկ. ԺԴ. 8.

յետ մահուն Թէոփիղեայ ձեռնադրի Կիւրեղ և նստի յաթոռ հայրապետութեան. որ առաւել քան զԹէոփիլոս հզօրագոյն երևեալ և վրէժխնդիր ուղիղ հաւատոյն, և անդէն զՆաւատիա-նոսացն եկեղեցին խնոյր, և զսպաս եկեղեցւոյն առնոյր, և բառ-նայր զեպիսկոպոսութիւն զՆաւատիանոսացն անտի.

ԳԼ. ԾԼԸ.

Թէ որպիսի պատճառ լինի սկիզբն քրիստոնէութեան ի Պարս ի ձեռն Մարութայի սրբոյն։

Ընդ ժամանակն ի Պարս քրիստոնէութեան սկիզբն լինի այսպիսի պատճառաւ. Ի մէջ Հռովմայեցւոց և Պարսից յաճախ միշտ լինի պատգամաւորութիւն յաղագս բազում իրի Թագա-ւորացն. Ցայնժամ Թագաւորն (Թէոդոս) առաքէ զՄարութա

ինչ յառաջն արարաք յիշատակ,[1] առաքիլ ի Թագաւորէն Հռովմայեցւոց առ Թագաւորն Պարսից։ Իսկ Թագաւորին Պարսից բազում երկիւղածութիւն յառն գտեալ, պատուով ունէր զնա և իբր արդար և աստուածասիրի զգուշանայր նմա։ Այս եղեալ զկծեցուցանէր զմոգսն. բազումք ի Պարսիցն զաւրէին Թագաւորին վասն զի երկնչէին զի մի զԹագաւորն քրիստոնէանալ հաւանեցուսցէ. քանզի և զգլխացաւութիւնն ժամանակական զոր մոգքն բժշկել ոչ կարէին, զայն Մարութաս աղաւթիւք բժշկեաց։ Ապա այնուհետև խորհէին պատիրող մոգքն և վասն զի Պարսք զհուր պաշտէին, սովոր էր Թագաւորն ի տան միում ցանկ պահեցելում հրոյ երկրպագել։ Ապա մոգուցն ընդ երկրաւ թագուցեալ մարդ, ըստ որում ժամանակի սովոր էր Թագաւորն աղաւթել, յարդարեցին ասելով բարբառել.

1 Տես Զ. 15.

զՄիջագետաց եպիսկոպոս, զայր արդար և. սուրբ և երկիւղած յԱստուծոյ,[ա] ի պէտս ինչ առ Թագաւորն Պարսից, և պատուով ընդունի յաղագս երկիւղածութեան նորա և արդարակորով վարուց, և զգուշանայր ևս վարուցն որպէս աստուածասիրի. Այս զկծեցուցանէր զմոգսն և զբազումս ի Պարսիցն, զի մի Թագաւորն քրիստոնեայ լիցի ի նմանէ. քանզի և զգլխացաւութիւն Թագաւորին, զոր ունէր, ոչ կարացին մոգքն բժշկել. Զայս սուրբն Աստուծոյ Մարութայ աղօթիւք բժշկեաց. և մոգքն առաւել բորբոքեցան[բ] ի նախանձ և ի չար։

Եւ զի սովոր էր Թագաւորն երթալ ի տուն հրոյն և նոցա խորամանգեալ ի տան հրատին առնէին փորուած անյայտ. և մտեալ մոգուցն,[գ] և երթեալ Թագաւորին յաղօթս ի տուն հրոյն ի ձայն եղև ի մտոյն որ ի փորուածին բարբառեալ առ

ա. Աʻ Գ. Աստուծոյ. բ. Գ. բորբոքեցին. գ. Գ. Բ. մոգաց.

արտաքս հանել պարտ դոլ զԹագաւորն, վասն զի ամբարշտեալ է զի զքրիստոնէիցն քահանայ կարծէր աստուածասէր լինել։ Զայս լուեալ Խոզիգեռզիսի,[ա] քանզի այս էր անուն Թագաւորին Պարսից, պատկառեալ ապա լինէր, սակայն արձակել զՄառութաս կամէր։

Իսկ Մառութաս մարտապէս աստուածասէրն այր յաղթութս պարապէր, որովք գտանէր զօր ի մոգուցն եղեալ նենգութեան։ Ապա Թագաւորին. մի խաղատիր ասէր, ով Թագաւոր, այլ մտանելով իբր լուիցես ձայն, փորձեալ գտցես զնենգութիւնն. քանզի ոչ հուրն բարբառի, այլ մարդկանն յարդարումն զայն առնէ։

Հաւանէր ապա Մառութասայ Պարսից Թագաւորն. և առժամայն մտանէր ի տունն ուրանաւր էր հուրն անշէջ, և իբր լսէր անդէն զնոյն ձայնն, բրել զտեղին հրամայէր, և որ յուղարկէր զկարծեալն Աստուծոյ զձայնն յանդիմանեալ լինէր։ Այնուհետև բարկա-

Թագաւորն. Մի ունիր զքրիստոնէից քահանայդ առ քեզ այլ հալածիա։ Զայս լուեալ Թագաւորին Խոզիկեռզիսի[ա] կարծէր Աստուծոյ ձայն լինէր ի հրոյն. ի կասկածս մտեալ և ակնածեալ յառնէն,[բ] կամէր արձակել զնա։ Իսկ Մարութաս կացեալ յաղօթս առ ի գիտել զնոցա զնենգութիւն, և ծանուցեալ զիրն Աստուծոյ՝ ասէ ցԹագաւորն. Մի անգիտանար, ով Թագաւոր, զխորամանգացն խուզեա ի տան հրոյն և գտցես զմոգսն որ ի փորուածէն զբարբառն առնեն, զոր դու կարծես ի հրոյն։ Եւ մտախոհ եղեալ, դարձեալ երթայր յերկրպագութիւն անշէջ հրոյն. և զնոյն բարբառ լսէ. և խուզեալ եգիտ զմոգսն ի փորուածին ուստի բարբառն լինէր։ Եւ բարկանայր ի վերայ մոգուցն, և էառ ի նոցանէ[գ] տասանորդս ամենայն աստուածոց նոցա և առա-

ա. Բոլ Ձեռ. Խոմեռիղեսէ բ. Գ. յառնէր. գ. Ա. Բ. Գ. Ն. առաք.

ցեալ Թագաւորին զմոգուցն ազգ յայնժամ տասանորդեաց։ Այս եղեալ առաւել յանկչէր ի Մառութա Իսդիգերդիս, և հրամայեաց նմա եկեղեցի շինել ուրանաւր և կամեսցի. և յայսմանէ որ ի Պարսս քրիստոնէութիւնն ընդարձակէր։

Յայնժամ Մառութասայ գնացեալ ի Պարսից ի նոյնն ի Կոստանդինուպոլիս հասանէր, իսկ ոչ ընդ երկարս ինչ դարձեալ աղաչանաց աղագաւ առ առաքեալ լինէր։ Եւ առժամայն մոգքն հնարեալ ինչ խորհէին, որպէս զի արդեւք մի երբէք ընկալցի զայրն Թագաւորն. և հնարեցան զժանտահոտութեանն ինչ յարդարումն ուստի Թագաւորն սովոր էր ելանել. և մատնութիւնս առնէին որպէս զի ուրեմն զայս որք ընդ քրիստոնէից զուգեալք արարին։ Իսկ իբր Թագաւորին միշտ կասկած ունելով ի մոգսն, և առժամայն ի նոցանէ գտանէին որք չար հոտոյն արարաւղք. վասն որոյ զբազումս ի նոցանէ առժամայն պատժեաց։ Իսկ զՄառութաս առաւել պատուով

ա. 'Ισδιγέρδης Յազկերտ. լուսանցքի վրայ գրիչը աւելացրել է «Վռամ»

ւել սիրէր զայրն Աստուծոյ. Եւ հրամայեաց Թագաւորն՝ Մարութայի եկեղեցիս շինել ուր և կամեսցի. և յայսմանէ ի Պարսս սկիզբն առնու քրիստոնէութեան, և հաւատացեալ մկըրտէին. Ցայնժամ Մարութաս գնացեալ ի Պարսից գայ ի Կոստանդնուպօլիս և որ ինչ[ա] խորհուրդն էր Թագաւորացն առ միմեանս՝ ի բարին[բ] կատարի. իսկ դարձեալ[գ] առաքեալ[դ] ի Պարս և մոգուցն ի հնարս մտեալ, որպէս զի կարասցեն զայրն Աստուծոյ անընդունելի առնել Թագաւորին։ Եւ առնեն[ե] ժանտա[զ] հոտութիւն իմն հնարիւք ուստի Թագաւորն ելանէր, և զայս

ա. Ա, ոչինչ. բ. Գ. Ն. ի բարի. գ. Գ. Ա՝ դարձեալ կրկին. դ. Ա, առաքեալ լինի. ե. Ա՝ առնէին.

ընդունէր, և սիրէր զՀռովմայեցիս, և զոր առ նոսա հաշտութիւնն ողջունէր։ Իսկ սակաւ ինչ թուեցաւ և քրիստոնէացանել նմա զԹագաւորն Պարսից՝ զփորձն առեալ զմիւս աքանչելեացն Մառութայ, հանդերձ Աբլաբաւ[ա] Պարսիցն եպիսկոպոսաւ։ Քանզի երկոքին զալկողն դև որդւոյ Թագաւորին ի բաց վարեցին, ի պահքս և յաղաւթս պարապեալք։ Այլ Իսդիգեռդիսի եհաս վաղճանել[1] նախ քան զկատարելապէս քրիստոնէանալն. և որդի նորա Բառբանիսբ ածաւ ի Թագաւորութիւնն, առ որով ի մէջ Հռովմայեցւոց և Պարսից դաշինքն լուծան։

ա. Ἀβλάα·
բ. Βαραράνης.

1 Փրկ. 420 Թ.

առ ի նմանէ ասէին լինել ժահահոտ։ Իսկ Թագաւորն խուզեալ եգիտ զժահահոտութիւն ի մոգսն, և պատժեաց զնոսա. և զՄարութաս առաւել պատուէր և սիրէր. Եւ սիրէր զՀռովմայեցւոց Թագաւորն զԹէոդոս. և զառ ի նմանէ սէրն ողջունէր, և յօժարէր ի քրիստոնէութիւն, զփորձ առեալ և միւս աքանչելեացն Մարութայի, և[ա] Պարսից եպիսկոպոսին. քանզի ըզլըլկողն դեւ որդւոյ Թագաւորին[բ] ի բաց վարեցին աղօթիւք և պահովք միշտ։ Այլ յայս[գ] խորհրդի լեալ Թագաւորին Պարսից ի քրիստոնէութեան լեալ, և ոչ զկատարելութիւնն ընկալեալ զառ ի Քրիստոս հաւատոյն և լուսաւոր մկրտութիւն,[դ] հասանէ նմա վախճան մահու։

Եւ առնու զԹագաւորութիւնն որդին[ե] իւր Բարբաղիս. և եղոյծ զդաշինսն որ ի մէջ Պարսից և Հռովմայեցւոց, և Մարութաս դառնայ։

ա. Ա՝ չիք. բ. Բռլ. Զեռ. զլլկողն Դեւղեղոյ Թագաւորին. գ. Ա, այլ այս խորհուրդ Լինեալ Թագաւորն Ն. այլ այս. դ. Գ. մկրտութեամբ. ե. Գ. չիք.

ԳԼ. Թ.[1]

Իսկ առ այնու ժաման(ակ)աւքն ըստ Անտիոքայ Փղաբիանոսի վաղճանեալ, Պորփիւռոս զեպիսկոպոսութիւնն փոխանորդեաց։ Իսկ յետ Պորփիւռիոսի անդէն Աղէքսանդրոս յեկեղեցւոջն յաջորդեցաւ։ Իսկ ի Հռովմ զԴամասոս որ ԺԸ ամ զեպիսկոպոսութիւնն կալաւ՝ փոխանորդեաց Սիռիկիոս, իսկ Սիռիկիոսի ԺԵ ամ կալեալ, Անաստաս ամս Գ եղև առաջնորդ եկեղեցւոյն։ Իսկ յետ Անաստասայ Իննոկէնտիոս նախկին զօրս ի Հռովմ Նաւատիանոս վարել սկսաւ, և զբազում եկեղեցիս նոցա առնոյր։

ԳԼ. Ժ.[2]

Իսկ ընդ այն նոյն ժամանակաւք և զՀռովմ ի բար-

1 Տես Սոզոմ. Ը. 28. Թէոդ. Ե. 35. Կասիոդ. ԺԱ. 10. Նիկ. ԺԴ. 30.
2 Տես Սոզոմ. Թ. 4. 9. 7. 8. 9. Փիլոստ. ԺԲ. 3. Կաս. ԺԱ. Թ. Նիկ. ԺԴ. 57.

ԳԼ. ԾԼԹ.

Ցաղագս Անտիոքայ եպիսկոպոսացն եւ Հռովմայեցւոց եւ թէ որպէս Կելեստիանոս Նաւատիանոսաց զեկեղեցիսն առնոյր։

Ցայնժամ վախճանի և Փլաբիանոս Անտիոքայ եպիսկոպոսն և [ա] Պորփիւր փոխանորդի [բ] ի տեղին. և յետ Պորփիւրի Ալէքսանդրոս, [գ] իսկ ի Հռոմ Դամասոս [դ] տասն և ութ ամ կալեալ զեկեղեցին վախճանի, և յետ նորա Սևեռիոս [ե] տասն և եւթ ամ. և յետ նորա Անաստաս երիս ամ.

ա. Գ. չիք. բ. Դ. փոխանորդէ. գ. Ա՛ Աղէքսանդր. դ. Դ. Դամասկոս. ե. Բոլ. Ձեռ. Սեկեռիոս. Դ. չիք.

բարբառոց առնուլ պատահեաց. քանզի Աշարիքոս ոմն բարբարոս դաշնաւոր գոլով Հռովմայեցւոց, և ընդ Թագաւորին Թէոդոսի ի յընդդէմ Եւգենի պատերազմին մարտակից եղեալ, և վասն այնորիկ Հռովմայական արժանեաւք պատուեալ, ոչ կրեաց զբարեբաղդութիւնն, այլ նաև Թագաւորեալ ոչ ընտրէր։

Իսկ գնացեալ ի Կոստանդինուպօղսէ յարևմտայինան կողմունս անցանէր, և հասեալ յԻւղիւռիացւոց ազգս զամենայնսն խախտէր։ Եւ անցեալ նորա ի Թեսաղեայ, ընդդիմացան յանցան Պինոս գետոյ, ուստի ընդ լեառն Պինդոսի Նիկոպօղիս ի Պիռոնւոյ անցանել, և խառնակեալք սպանին երիս հազարս Թեսաղացիքն։ Յետ այսորիկ ամենայնիւ անկեալք եղծմամբ որք ընդ նմայն, յետոյ և ի Հռովմ հասանէին և աւար հարեալ զնա, զբազումս ի սքանչելեացն այնոցիկ տեսմանցն այրեցին, և զինչսն յափշտակութեամբ առին, և զբազումս ի սիւնկղիտւոյն ընդ զանազան տանջանաւք արկեալ կորուսին. ծաղր առնէին և զԹագաւորութիւնն ցուցանելով զոմն ի Թագաւոր որոյ անունն էր Ատտաղոս։ Որում յաւուր միում որպէս զԹագաւոր զինակրել յառաջ գոլ հրամայէր, իսկ զայլս ի ծառայի կարգս երևէր յարդարիլ։ Եւ զայսոսիկ գործեալ ի փախուստ դարձաւ. հռչակին զնա յերկիւղ արկեալ իբր զի Թագաւորին Թէոդոսի զաւր առաքեալ իցէ պատերազմիլ ընդ նմա։ Բայց համբաւն ոչ էր ստեղծական, քանզի ճշմարտաբար զաւր գնայր. և նորա զհռչակն ոչ կրեալ այլ որպէս ասացի փախուցեալ գնաց։ Իսկ այս ասի որպէս զի հասանելով նորա ի Հռովմ երկիւղած ոմն այր, միայնացեալ վարուք խրատէր զնա. մի՛ ձեռնարկել յայսքան չարիս, և մի՛ խնդալ սպանութեամբք

և արեամբք։ Իսկ նա ասէ, ոչ ես կամէի անդր երթալ, այլ ոմն միշտ նեղէ զիս տանջելով և ասելով. երթ զՀռովմայեցւոցն խախտեա զքաղաք. այսքան վասն այսորիկ։

## ԳԼ. ԺԱ.[1]

Բայց արդ դարձցուք որ յաղագս Նախկին ասացելոցս։[ա] Յետ Ինոկենտիոսի[2] Զոսիմոս[3] զորս ի Հռովմ եկեղեցիան ընկալաւ զերկուս ամս։ Իսկ յետ նորա Բոնոյփատիոս զերիս ամս եղև առաջնորդ եկեղեցւոյն. զոր Կեղեստինոս փոխանորդեաց։ Այս Կեղեստինոս զոր ի Հռովմ Նաւատիանոսացն եկեղեցիս էառ, և զեպիսկոպոսն նոցա զՌուստիկուղաս[բ] ըստ տանցն զգաղտնի ժողովիլն վրդտացոյց.[գ] քանզի մինչև ցայն վայր Նաւատիանոսքն ի Հռովմ մեծապէս ծաղկէին, եկեղեցիս բազումս ու-

ա. Բռ. չկայ. բայց...ասացելոց..։
բ. Ῥουστικουλας
գ. «ստիպեաց»

1 Տես կաս. ԺԱ. 10. Նիկեփ. ԺԴ. 30.

2 Նա Հռովմի եպիսկոպոս եղաւ 402 թ. Ոնորիոս կայսրը 404 նրան ուղարկեց Ալարիկոսի մօտ որ յորդորէ վերցնել Հռովմի պաշարումը յաջողեց. մեռաւ 416 թ.

3 Սա ազգաւ Յոյն էր. եպիսկոպոս ձեռնադրուեց 417 ին մե 418. նրա յաջորդ Բոնիփացիոսը մեռաւ 423 թ.

իսկ յետ Անաստասայ Ինեկենտիոս,[ա] և զորս[բ] ի Հռովմ Նաւատիանոսս Հալածել սկսաւ և զբազում[գ] եկեղեցիս նոցա նոյն յինքն,[դ] և յետ երկուց ամաց վախճանի. Եւ ուն/ սորա[ե] Բոնեփատիոս[զ] երեք ամ, և յետ նորա Կըղստի-

ա. Բռլ. Ձեռ. Նեկիտաս. բ. Դ եւ զորս ի Հռովմ յիւ գ. Ա բազում. դ. Գ. ինքն. ե. Ա Նորա. զ. Բռլ. Ձեռ. Ափեւ Ապիտիկոս. է. Դ. ղարձեալ

նելով և ժողովուրդ ամբոխ հաւաքելով: Այդ բարեխորհքն և սոցա ընդդիմացան ի Հռովմայեցւոցն եպիսկոպոսութենէ, նմանապէս առնել Աղեքսանդրացւոցն, գերագոյն քահանայութեանն անդէն նախկին յառաջեցելոյ: Եւ վասն այսորիկ և ոչ զհամախորհսն եպիսկոպոսունքն իշխանաբար ձեռնարկել թուղացուցին, այլ զամենայն ինչ առեալք զնոցա, միայն վասն համախորհութեանն գովէին զնոսա: Ոչ և որք ի Կոստանդինուպոլիսն զայս կրեցին, այլ յետ հաստատելոյն զնոսա և ներքսագոյն ի քաղաքն ժողովել թուղացուցին որպէս և նախկինն ճառեցաւ:

Գ.Լ. ԺԲ:[1]

Առժամայն ապա, որպէս ասացի,[ա] Սիսինիա վախճանեալ Քրիւսանթոս[2] քարշեցաւ յեպիսկոպոսութիւն,

ա· Բն· չկայ այդ նախադասութիւնը:

1 Տես կամ· նոյն տեղը·
2· Փրկ· 412 Թ·

որ զՆաւատիանոսացն եկեղեցիսն առնու, և որ զեպիսկոպոսն նոցա[ա] վշտացոյց, զոր զաղտնի ժողով առնէին, զի ցայն վայր առաւելեալք էին և աճեցունք միշտ: Այլ և նոցա բարեխօսք լինին ի Հռովմայեցւոցն նմանապէս Աղեքսանդրացւոցն, վասն որոյ զամենայն ինչ առեալ վասն համագոյ խոստովանութեան ոչ հալածէին ի քաղաքէն, այլ ոչ կրեցին զայս որ ի Կոստանդնուպօլիս, այլ յետ հաստատելոյ զնոսա և ի քաղաքէն ժողովելոյ, որպէս նախ ճառեցաւ: Իսկ Սիսինեա վախճանեալ, Քրիսանթոսի ունել զեպիսկոպոսութիւն, ոչ կամայ այլ ի բռնութենէ քարշեալ, և զի էր իմաստուն այր և յոյժ աճեցոյց զՆաւատիանոսաց եկեղեցիսն ինքեամբ·

ա· Գ· Նորա·

որ էր որդի Մարկիանոսի եղելոյն Նաւատիանոսացն եպիսկոպոսի յառաջ քան զՍիսինն։ Ի մանկականն հասակէ ի թագաւորութեանն զինուորեալ, յետոյ առ մեծն Թէոդոսիւ թագաւորաւ եպատիկոս[ա] Իտալւոյ եղեալ, յետ այնորիկ և վիկարիոս[բ] Բռիտանիական կղզեացն կարգեալ, սքանչելի եղև ի վերայ կարգաւորութեանցն։ Իսկ զարգացեալ հասակաւն, և հասեալ ի Կոստանդինուպոլիս, փութալով եպարքոս լինել քաղաքին, յեպիսկոպոսութիւն յակամա քարշեցաւ. քանզի Սիսինն ի ժամանակ վախճանին որպէս պատշաճի առ եպիսկոպոսութիւնն ստացեալ, Նաւատիանոսացն ժողովրդի որպէս զաւրէնս զնորա ձայնն առեալք, ակամայ բռնաբար քարշեալ ձեռնարկէին։ Իսկ Քրիսանթոսի փախուցեալ, Սամբատիոսի ժամանակ ի դէպ գտանել կարծեցեալ, յորում և եկեղեցեացն կալաւղ լինէր, և յարդարէր ձեռս ի վերայ իւր դնել ոմանց աննշանից, զերդումնն զոր երդուաւ յոչինչ համարեալ։ Իսկ ի ձեռնադրողսն նորա էր և Եռմոգէնէս որ ի վերայ հայհոյական շարադրութեանցն ի նմանէ անիծիւք քարոզիւր։ Թէպէտ և նորա դիտումն վախճանի ընկալաւ, քանզի ատեալ ժողովրդին զնորա չար պատճառսն, զի ամենայն դիտմամբ առ ի մտանել յեպիսկոպոսութիւնն խորհէր, ամենիւ լինէր գտանելն ապա զՔրիսանթոս. զոր և գտեալք ի Բիւթինիայ թագուցեալ, յեպիսկոպոսութիւնն քարշեալ նախակարգեցին։ Այս այր իմաստուն էր, ընդ այնուիկ և զգաստ եթէ ոք գոյր այլ, և յոյժ զՆաւատիանոսացն եկեղեցիս ընկալաւ ի Կոստանդինուպոլիս և աճեցոյց։ Եւ սա նախ աղքատացն

ա. ὁ ὑπατικός:
բ. ὁ Βικάριος կառավարիչ:

*ոսկի անդուստ բաժանեաց և յեկեղեցեացն ոչինչ ըն-
կալաւ, բայց ի կիւրակէի երկուս հացս յաւրհնութե-
նէն առնոյր։ Եւ այնպէս էրն առ իւրն եկեղեցի, որպէս
զի և զԱրղարիոս զքաջագոյնն ճարտասան քան զի-
մաստակն Տուոփիղոս առնուլ, և ի կարգի քահանայի
ձեռնադրել. որոյ հաստատուն խաւսք և համառաւտ
բերեալ լինէին։ Այլ Արղարիոս յետոյ ուրում ի Նի-
կիա Նաւատիանոսացն եկեղեցւոյն առաջնորդ եղև ընդ
այնուիկ և իմաստակելով ի նմա։*

ԳԼ. ԺԳ.

*Իսկ ընդ այն նոյն ժամանակաւն և Հրէիցն ազգ յԱղէքսանդրիւոյ արտաքս վարել պատահեաց յայսպիսի պատճառոյ։*

*Աղէքսանդրիացւոցն ամբոխութիւն առաւել քան զայլ դիմոսս[ա] խնդամիտ է ի խռովութիւնս, իսկ թէ երբէք պատճառ առցէ առաւել ի վեր յանկրելիսն յեղուչարիս. քանզի առանց արեան ոչ դադարէ ի դիմմանէն։ Իսկ յայնժամ դէպ եղև բազմութեանն ամբոխիլ յընքեան ոչ վասն կարևոր ինչ պատճառոյ, այլ յաղագս գէրաւնեաց*

ա. δῆμος *ժողովուրդ։*
բ. Բն. ἐπιπολάζων *առաջացեալ, առաւելեալ։*

ԳԼ. ԺԴ.

*Թէ որպէս հալածեալք լինէին Հրէայք ի յԱղէքսանդր քաղաքէ ի սորոյն Կիւրղոսէ հայրապետէ։*

*Ընդ այն ժամանակս Հրէայքն ի յԱղէքսանդրիայէ ի Կիւրղէ հայրապետէն Աղէքսանդրի հալածեալք եղեն. զի Աղէքսանդրացիք խռովարարք են և սիրեն զմարտ։ Էին խաղք յաւուր[ա] շաբաթու, և Հրէայքն դատարկացեալք, ոչ ըստ մտադիւր օրի-*

ա. Գ. *աւուր.*

քան զամենայն քաղաքացն չարին ասեմ զփութալն առ կաքաւիչսն։ Վասն զի որ յաւուրն շաբաթու կաքաւէր բազում ամբոխ ժողովէր, զՀրէայսն դատարկացուցեալս ի նմա. ոչ մտադիւրութեամբ աւրինացն, այլ ի հեռատանսն պարապել մարտ ի վերայ ամբոխին կողմանց աւրն այն կարգեցաւ։ Եւ այսորիկ պատճառով իմն յեպարքոսէն Աղէքսանդրիու կարգաւ հաստատեցելոյ, ոչինչ նուազ միային Հրէայքն միւսոյ կողմանն ախտակցեալք. և միշտ պատերազմաւղք ամենայն ուրեք քրիստոնէիցն կարգեալք, բայց անդ առաւել վասն կաքաւչացն պատերազմէին ընդ նոսա։ Եւ երբեմն Առեստոսի[ա] եպարքոսին Աղէքսանդրիու քաղաքաւորութիւն թէատրոնին արարեալ, այսպէս անուանել սովորութիւն է զաշխարհականս աւրինակս, առընթերէին և ոյք եպիսկոպոսին Կիւրղի ուրացաւղք զեղեալս կարգս իմանալ կամեցեալ յեպարքոսէն։ Եւ էր ի նոսա այր, որոյ անուն էր Յեռաքս,[բ] որ մանկանցն դպրութեան վարդապետ էր, և ջերմ սրտիւ լսաւղ եպիսկոպոսին Կիւրղի կարգեալ, և առ ի հաչակ յարուցանել ի վերայ վարդապետութեանցն նորա էր փութացաւղագոյն։ Զսա ապա յանժամ զԵ-

ա. ʽΟρέστος'
բ. 'Ιέραξ,

նացն ի տեսարանսն պարապեալք, մարտ առ միմեանս Հրէից և քրիստոնէից լինէր. յաղթահարեալ զքրիստոնեայսն մնային առանց վնասու, բայց սրտմտութիւն ունէին։

Այր ոմն էր եկեղեցոյն վարդապետ, որ զաշակերտս իւր ժողովէր և յարդարէր յանուն առաքելոցն. զսա տեսեալ աշակերտացն, ամբոխ Հրէից[ա] կարծիս առեալ համարեցան առ

ա. Գ. Հրէիցն.

ռաքս ամբոխութեանն Հրէից տեսեալ ի տեսարանին
գուշէին առժամայն. որպէս զի թէ ոչ վասն այլ ինչ
առնելոյ է ի թէատրոնին, բայց զի աղմուկ ամբոխին հա-
սուսցէ։ Իսկ Առեստոս ատեալ և նախկին զզաւրութիւն
եպիսկոպոսացն Աղէքսանդրու, զի արհամարհէին յոյժ
զզաւրութիւնն զորոց ի թագաւորէն կարգեցելոց, մա-
նաւանդ զի և ի վերայ հայել նոցա աւրինակացն կա-
մէր Կիւրղոս։ Ապա յափշտակեալ զԻեռաքս ի թէատ-
րոնին հրապարակաւ ընդ տանջանաւք էարկ դժընդա-
կաբար։ Զայս ծանուցեալ Կիւրղի, կոչէր զՀրէիցն գըլ-
խաւորս և որքան պարտն էր. եթէ ոչ դադարեսցին
ի յընդդէմ քրիստոնէիցն աղմկելոյ սպառնացաւ նոցա,
զպատճառ չարեացն որ ի վերայն գալոցն էր գրեաց։[ա]
Յայնժամ բազմութեան Հրէիցն զսպառնալիսն զգա-
ցեալ վիճողագոյն լինէին, և հնարս խորհէին ի վերայ
քրիստոնէից. յորոց զկանխագոյն պատճառս արտաքս
վարելոյն նոցա յԱղէքսանդրոյ պատմեցից։ Նշան տա-
լով ինքեանց, զգեստ մատանւոյ յարմաւենւոյ եղեալ
տերեւոյ, գիշերամարտութիւն ընդդէմ քրիստոնէից հը-
նարեցան. և ի նմին գիշերի քարոզել ըստ թաղուց
քաղաքին պատրաստեցուցին զոմանս գոչելով, որպէս

ա. Բն. ¿կայ զպատճառ . . . գրեաց.

իւրեանց զժողով աշակերտացն, և ի վերայ ընթացեալ աղաղա-
կաւ վիշտս նոցա առնէին։ Զայս ծանուցեալ Կիւրղի, կոչէ ըզ-
գլխաւորս Հրէիցն, և սպառնալիս նոցա առնէ. եթէ ոչ դա-
դարեսցին յաղմկէն յայնմանէ և ի խռովելոյ զքրիստոնեայսն.[ա]
և զոր առնելոց էր ի վերայ նոցա յառաջագոյն գուշակէր եթէ
ոչ դադարեսցին։ Զայս լուեալ Հրէիցն, խորհեցան ի չարութիւն,
և տարեալ նշան յարմաւենեաց վասն գիշերամարտութեան,

ա. Ն. զքրիստոնեայս.

զի թէ համանունն Աղէքսանդրի եկեղեցին ամենայնն հրով այրեցի։

Զայն լուեալ քրիստոնէիցն այդ ոմն այլուր համընթաց լինէին որպէս զի զեկեղեցին ապրեցուսցեն. իսկ Հրէայքն առժամայն ի վերայ անկեալք սպանանէին ըզհանդիպեալսն քրիստոնեայս։ Բայց ի միմեանց ի բաց կացեալք ցուցանելով զմատանիսն, իսկ զանկեալսն ի նոսա քրիստոնեայս սպանեալք։ Եւ լինել աւուրն ոչ թաքչէին, որք յառաւաւտին գործէին. յորոց վերայ շարժեալ Կիւրղի հանդերձ ամբոխիւ բազմաւ, և ի ժողովս [ա] Հրէիցն հասեալ, քանզի այսպէս անուանեն զաղաւթիցն նոցա տեղիս, զայնս բառնայր, և զնոսա վարէր արտաքոյ քաղաքին. զբազումս սպանանելով ի նոցանէ, և զէութիւնս նոցա յափշտակել ամբոխին հրամայեալ։ Արդ այնուհետև Հրէայքն յԱղէքսանդրի Մակէդոնէ ժամանակացն ի քաղաքին բնակեալք, յայնժամ մերկք ի նմանէ ամենեքին ի բաց կացին, և այլուր ցրուեցան։ Իսկ Ադամանդոս ոմն ի նոցանէ բժշկակա-

ա. συναγωγή

և ի մէջ գիշերի ըստ [ա] եկեղեցեացն Աստուծոյ հուպ [բ] եղեալ՝ աղաղակեցին թէ այրեցին զեկեղեցիսն, և ընթացեալ [գ] յիւրաքանչիւր տեղեացն առ ի թափել հրոյն. իսկ Հրէայք ըստ խորամանկութեան իւրեանց չարիւ [դ] զբազումս սպանին, և իւրեանց ոչ մեղան. Եւ ի լինել առաւօտուն, հայրապետն Կիւրեղ բազում ամբոխ ժողովեալ՝ և զտունս նոցա աւար հարկանէր, և զաղօթից [ե] նոցա տունս կործանէր, և բազումք վիրաւորք էին. և այնպէս հալածէր զնոսա ի քաղաքէն. Յայնժամ ցրուեցան յամենայն քաղաքս, ունայն յամենայն ստացուածոց.

ա. Ա ընդ. բ. Ա՝ մերձ. գ. Ա Ն. ընթացեալք. դ. Գ. չարի. ե. Գ. Ա՝ աղօթիցն.

նացն բանից իմաստակ, ի Կոստանդինուպոլիս դիմեալ, և առ եպիսկոպոսն ապաւինեալ Ատտիկոս քրիստոնէանալ խոստանալով. առժամայն ի վերջին ժամանակին յԱղէքսանդրիայ բնակեցաւ։

Յայնժամ եպարքոսն Աղէքսանդրւոյ յոյժ ի վերայ եղելոյն գժնդանանայր, և ի սուգ մեծ անկանէր. զի այնպիսի քաղաք այնպէս մի աւուր յայնքանեաց Թափեցաւ մարդկանէ, վասն որոյ և զեղեալսն ծանուցանէր Թագաւորին։ Իսկ Կիւրիղոս և ինքն զՀրէիցն յանցանս ծանաւթս կարգելով, ոչինչ նուազ վասն հաշտութեանն առ Որեստիոս աղաչէր. քանզի զայն առնել նմա Աղէքսադրացեաց ժողովուրդ հարկաւորէր։ Իսկ զի զորս վասն հաշտութեանն բանս Որեստիոս ոչ ընդունէր, զգիրս աւետարանացն Կիւրեղոսուն էր յառաջ, ի ձեռն այնորիկ ապա կապեալ զՈրեստիս համարեալ։ Իսկ իբր և ոչ այն պատճառով զիջանէր Որեստիս, այլ մնայր ի միջի նոցա անհնուէրն պատերազմ. այս ինչ պատահեաց լինել։

Գլ. ԺԴ. [1]

Յորոց ի լերինն Նիտրիոյ միայնակեցաց ոմանց ըղջերմն ունելով խորհուրդ ի Թէոփիլոսէ սկսեալք, յորժամ զնոսա նա՝ ընդդէմ որոց Դիոսկորոսին անիրաւապէս վառեցոյց, նախանձ յայնժամ ստացեալք յաւժարաբար և վասն Կիւրղի մարտնչիլ նկրտէին։ Թողեալ ապա զմիայնարանսն արանց իբրև երեք հարիւրից, և հասեալք ի քաղաքն սպասէին ի վերայ կառուց գոլով եպարքոսին պատահել։ Եւ մատուցեալ կոչէին զոհաւղ

1 Տես Կաս. Նոյն տեղը Նիկ. ԺԴ. 15.

նել նմա։ Քանզի ամենեքեան վասն գերազանցեալ իմաստութեանն առաւել սիրէին զնա և պատուէին և զարմանային։ Իսկ յայնժամ ընդդէմ նորա նախանձ զինեցաւ. քանզի ապա խաւսէր համարձակագոյն ընդ Առեստիոսի, մատնութիւնս այս շարժեցաւ նմա յեկեղեցւոյն ժողովրդենէ. որպէս զի ուրեմն նա իցէ որ ոչն թողացուցանէ զԱռեստիոսի հաշտութիւն եպիսկոպոսին պատահել։ Եւ համախորհք եղեալ խորհէին արք ջերմիկք, յորոց համարեալ լինէր Պետրոս ոմն ընթերցող, սպասէին կնոջ ելանել ի տունն ուրեմն. և յաթոռակէն հանեալ յեկեղեցին կոյս, որոյ համանուն Կեսարիոս, քարշէին և մերկացուցեալ զհանդերձսն խեցեաւք սպանին, և յաւշեալ զանդամսն, և ի կոչեցեալն Կինառոնայ կոյս քարշեալ հրով կիզին։

Այս ոչ փոքր ինչ վէրս Կիւրղի և Աղէքսանդրացւոցն ժողովրդի գործեաց, քանզի աւտար ամենեւիմբ ի խորհաւղն արագ էին սպանութիւնք և կռիւք. և որ ինչ յայսոսիկ մերձն։ Այս գործէր ի չորրորդ[1] ամի եպիսկոպոսութեանն Կիւրղի, ի հիւպատութեանն Ոնորի Ժ և Թէոդոսի Զ, յամսեանն Մարտի պահոց գոլով։

1 փրկ. 415 թ.

ամենեցուն հանդիպէր[ա] արանց՝ մեծի և փոքու. [բ] Ցայսոսիկ նախանձ ի վերայ կնոջն շարժեցաւ, [գ] և խորհեցան արք ոմանք քարշել զկինն,—որում անուն էր Պետրոս որ զխորհրդոյն ունէր զնախանձ գրակարդաց եկեղեցւոյն—սպասեալ կնոջն ի դիպող ժամու պատահեալ սպանին զկինն և այրեցին զնա հրով.
Այս գործեցաւ ի չորրորդ ամին Կիւրղի.

ա. Ա ուսուցանէր. բ. Գ. Ա. Ն. փոքունց. գ. Ա. շարժեցան։

ի պահեստի կարգեաց. և առաքէր զզաւրավարն Արդաբուրիոս, որ և ի պարսկականն պատերազմին[3] մեծամեծն հանդիսացաւ։ Սորա ի Սաղոնաս հասեալ, անտի նաւէր յԱկիւղիա կոյս, հպէր հանդիպման արդեւք որպէս կարծիւրն, բայց բարեբախտ էր որպէս յետոյն ցուցաւ։ Քանզի հողմ ոչ ի դէպ շնչեալ, ի ձեռս բռնակալին էարկ զնա. որոյ ըմբռնեալ զնա յուսայր ի միջոս կարգեալ զԹագաւորն, որպէս զի ընտրել և ցուցանել զնա ի Թագաւոր, եթէ ապրեցուցանել զզաւրավար կամեսցի։ Եւ ճշմարտապէս ի հանդիսի էր Թագաւորն զայն լսելով, որ ի բռնակալն կոյս առաքէր զզաւրականսըն՝ զի մի ինչ չար կրեսցէ ի բռնակալէն Արդաբուրիոս։

Իսկ Ասպառառայ[ա] որդւոյն Արդաբուրի լուեալ և հայրն ի բռնակալէն ըմբռնիլ, և բազում բիւրուց բարբարոսաց ի մարտակցութիւն բռնակալին հաւանել, ոչինչ ունէր զի գործեսցէ։ Նաև յայնժամ աստուածա-

ա. Ἄσπαρ

I Տես վերև 18։

Զայս լուեալ Թագաւորին, ի հոգս եղեալ առ Աստուած ապաւինի աղօթիւք խնդրելով զելս իրացն. Եւ ոչ անյոյս լինի ի վստահացեալսն. Եւ առաքեալ զօրս Թագաւորն և զորդի զօրավարին՝ որ ի ձեռս բռնակալին ի վերայ զօրուն փոխանակ հօրն[ա] իւրոյ. Որոյ հասեալ յաշխարհն,[բ] և լուեալ զբազում զօրաց բարբարոսաց յօգնութիւն[գ] բռնակալին և զհայրն ի ձեռս նոցա, տարակուսեալ ոչ գիտէր զինչ արասցէ. Եւ հասանէ հրաման ի Թագաւորէն երթալ ի վերայ նորա ըստ յա-

ա. Ա՝ հօր. բ. Ա՝ աշխարհն գ. Գ. յօգնականութիւն.

սիրին Թագաւորի աղաւթք դարձեալ զաւրեցիս։

Քանզի հրեշտակ Աստուծոյ ձեւով հովուի առաջնորդէր Ասպարայ և որոց ընդ նմա, և ածէր ընդ ծովակն որ կայ մերձ յԻուեննայ. քանզի յայնմ քաղաքի կողմ բռնակալն ունէր զզաւրավարն, ընդ որ ոչ ոք չեւ եւս անցանել գիտէր։ Յայնժամ և Աստուած զանկոխն կոխելի յարդարեաց։ Քանզի անցեալք ընդ ցամաք ընդ ջուրս ծովակին, և գտեալք ի բաց զդրունս քաղաքին, զաւրավորք քան զբռնակալն եղեն։ Եւ յայնժամ բարեպաշտ Թագաւորին զոր ունէրն առ Աստուած սէր և երկիւղածութիւն վերագոյն յայտնեաց. քանզի առապարէզ կատարելով նորա ազդ եղև մեռանել բռնակալին։

Ապա ձայն տայր ամբոխին. Եկայք, ասէ, յորդորելով զվայելչութիւնս յաղաւթանոցացն տեղիս հա-

ջողելոյն Աստուծոյ, և մի զարհուրել. զհրեշտակ [ա] Աստուծոյ ասէ առաջնորդիսցէ ընդ ծով իբրև ընդ ցամաք երկիր. Զայս լուեալ զօրավարացն և զօրացն, յուսացեալք յԱստուած և ի Թագաւորին յաղօթսն [բ] ճանապարհորդեցան [գ] զգիշերն. Եւ զձևով հովուի հրեշտակ Աստուծոյ առաջնորդէր նոցա ըն ծովն իբրև ընդ ցամաք երկիր [դ] յԻուլինա [ե] քաղաք. քան անդ էր բռնակալն. Եւ զի էր առաւօտ, բացան դրունք քաղաքին. ' և մտեալ զօրն [զ] ի ներս ի քաղաքն, և մարտուցեալ բռնաւորն ոչ կարաց ունել ընդդէմ, այլ անդէն վախճանի. զօրն ոչ գիտէր զնախախնամութիւնն Աստուծոյ, մինչև ս զեղեալն ըստ Թագաւորին հաւատոյ և աղօթից. [է] Ա յ

ա. Ն. զի հրեշտակ. բ. Ն. յաղօթս. գ Դ. ճանապար դ. Ա՛ անցան. ե Բոլ. Ձեռ. յառաւինա. զ Ա՛ զօրքն. է. Ա՛ մրի

1 Նոր. «Իբրեւ այգն զառաւօտն մերկացաւ. դրունք քաղաք ցան եւ զօրքն առհասարակ ի ներքս մտանէին»: Ագաթան. 46։

անալք, գոհացողական աղաւթս Աստուծոյ վերառաքեսցուք, փոխանակ զի նորա ձեռնն երարձ զբռնակալն։ Այս ճառեալ որ ինչ հանդիսին դադարէր և անփոյթ լինէր. և ընդ մէջ ասպարիզին ամենեքին միաբանապէս հանդերձ նովաւ գոհականս սաղմոսելով յեկեղեցին կոյս երթային. և ամենայն քաղաքն մի լինէր եկեղեցի։ Իսկ յաղաւթարանացն տեղի հասեալք՝ անդ լինեն զաւրն ողջոյն։

### ԳԼ. ԻԴ.[1]

Բռնակալին ապա մեռեալ, ի հոգս լինէր ինքնակալն Թէոդոս. զոմ արդեւք ցուցանէ արեւելիցն կողմանց թագաւոր։ Իսկ էր նորա ազգական յոյժ մանուկ գոլով Վաղէնտիանոս անուն, ի Պղակիդեայ նորա հաւրաքեռէն եղեալ, որ էր դուստր մեծին Թէոդոսի թագաւորի, Արկադի և Ոնորի երկուցն Օգոստոսաց քոյր. իսկ հայր էր Վաղէնտիանոսի Կոստանդիոս որ յՈնորա թագաւոր յայտնեալ, եւ սուղ ժամանակ նորա թագաւորակից եղեալ, առ ժամայն վաղճանեցաւ։[1] Զնա ապա զՎաղէնտիանոս կայսր կարգեալ[2]

1 Տես Փիլոստ. ԺԲ. 12. Կաս. ԺԲ. եւ Նիկ. ԺԴ. 7.
2 Փրկ. 421 Թ. նոյն Թուին էլ մեռաւ.
3 Փրկ. 424 Թ.

երևեցաւ բարեպաշտ թագաւորին սէրն որ առ Աստուած էր։ Ապա ի ձեռն քարոզաց ձայնէր ամենեցուն զեկեղեցիս Աստուծոյ յարդարել ի գոհութիւն հանապազ ամենասուրբ Երրորդութեանն.

Եւ կացուցանէր թագաւոր ի Հռոմ և յարևմուտս Վաղէնտիանոս զմանուկ տիովք, զհօրաքեռ որդի իւր որ Պղակիդիոս կոչէր. Եւ պատուէր տայր Վաղէնտիանոսի գնալ ի ճանապարհս արդարութեան, և ունկնդիր լինել[3] խրատուց սրբոց և տրանց

ա. Բոլ. Ձեռ. Պաղակտիոս. բ. Ա՛ լինէր.

յարեւմտայինսն կողմանս առաքեաց. մաւրն նորա Պղակիդիա զհոգատարութիւն գործենոյն հրամայեալ։ Փութալով և ինքն հասանել յԻտաղիայ, որպէս զի զՎաղէնտիանոս յաջորդել ի թագաւոր մերձ գոլով և իւրով իմաստութեամբն խրատել զորս անդն, մի ակնարկել առ բանակալսն փութաքար. այլ հաստատուն կալ և հնազանդել օրոց յԱստուծոյ տուելոց նոցա թագաւորացն։ Իսկ հասեալ մինչև Թեսաղոնիկ ի հիւանդութենէ արգելաւ։ Ապա առաքեալ պսակ թագաւորական Վաղենտիանոսի ի ձեռն պատրկին Իղիոնի, ինքն ի Կոստանդնուպոլիս դարձաւ։ Այլ արդ վասն այսորիկ բաւականանալ համարիմ լնուլ զպատմութիւնն։

## Գլ. ԻԵ.[1]

Իսկ Ատտիկոս եպիսկոպոս սքանչելաբար զեկեղեցեացն աճեցոյց իւրս հոգատարութեամբ զնոսա կարգելով.

1 Տես կաս. ԺԲ. 2. Նիկ. ԺԴ. 24. 25. 26. 27.

արդարոց, և հօրաքեռ իւրոյ՝ և մօր Վաղէնտիանոսի. Եւ դարձեալ ի Կոստանդնուպօլիս տօն յաղթական ամենայն եկեղեցեաց հրամայէր առնել. Եւ ոչ այսոսիկ դրդուէր ի գովութիւնն, այլ Աստուծոյ տայր զփառս։

## Գլ. ՃԺԴ.

*Թէ որպէս Ատտիկոս հայրապետն կոստանդնուպօլսոյ զեկեղեցիսն Աստուծոյ յարդարէր եւ ի մահուան մխիթարէր զժողովուրդն, կալեալ զեպիսկոպոսութիւն ամս ԻԱ.*

Իսկ Ատտիկոս սքանչելաբար զեկեղեցեացն աճեցոյց իւրս.[ա] հոգատարութեամբ զնոսա կարգաւորեալ և վարդապետութեամբ զժողովուրդս[բ] յառաքինութիւն յորդորելով. Եւ

ա. Ն. իր. բ. Ա՝ զժողովուրդն.

իսկ վարդապետութեամբ զժողովուրդն յառաքինութիւն յորդորելով։ Իսկ տեսեալ զեկեղեցին որոշեալ վասն Յոհաննիտացն արտաքոյ նորա ժողովելոյն, յիշատակ Յոհաննու յաղաւթսն առնել հրամայեաց, որպէս և զայլ ննջեցեալ եպիսկոպոսանցն սովորութիւն է առնել. ի ձեռըն այսորիկ զբազումս յեկեղեցին դարձուցանել յուսացեալ։ Եւ այնպէս էր առատաձեռն, որպէս զի ոչ միայն որոց ի նորա պանդխտութեանն աղքատաց նախախնամութիւն առնել, այղ և որոց ի մաւտաքնակ քաղաքսն ինչս առաքեալ առ ի մխիթարութիւն կարաւտելոցն։

Քանզի Կաղիոպի քահանայ Նիկիացեացն եկեղեցւոյ երեք հարիւր առաքեալ ոսկեղէնս՝ զայս ինչ գրեաց։

«Լուայ բեւրս ի քաղաքիդ քաղցեալս կարաւտել «որում ի բարեպաշտացն. իսկ զբեւրս ասեմ զբազմու«թիւնդ, ոչ զստոյգն յայտնի թիւ։ Արդ՝ զի ես ու-

զյիշատակի օր հանգստեանն Յոհաննու յեկեղեցիսն կատարէր ամի ամի, որպէս և զայլ սրբոց. և նորա վարդապետութեամբն զժողովուրդն սփոփէր և խրատէր չթողուլ ի մտաց զնորա լուն սաւոր վարդապետութիւնն։ Եւ ոչ միայն զիւրոց եկեղեցեացպէտսն լնու՝ և զաղքատաց և զպանդըխտաց. այլ և զամենեացուն իսկ զեկեղոցն առ նա զկարիսն լուծանէր։ Քանզի և քահանային եկեղեցւոյն Նիկիա տայր երեք հարիւր դահեկանոսկեղէնս։ Եւ այս ինչ՝ նմա. այլ և բիւրս է ասել զնորա՝ տուրս ըստ քաղաքաց քաղաքաց եկեղեցեաց և կարօտելոց. զի ոչ էր բաւ նորա առատաձեռնութեանն՝ զի առ ամենեսեան բարեգործեալ, ամենեքեան հանգչէին ի նա։

ա. Ա՝ զի՞նչ. Ն. զայս ինչ. բ. Ն. զնոր. գ. Ա՝ առատաձեռնութեամբ քաղաքաց.

«նիմ առեալ յառատն ձեռամբ տուող է անտեսողացն
«թալուոց, փոխադրեա կարաւտելոցն յիշելով զբան Փրկ-
«չին մերոյ Քրիստոսի որ ասէ. ամենայն որ խնդրէ
«քեզ տուր։ Իսկ ոմանց պատահէ տարակուսիլ փորձու-
«թեանն աղագաւ, ունողացն ոչ տուելոց նոցա առնլով.
«ո՞վ սիրելի իմ գլուխ, զայսոսիկ զերեքհարիւր ոսկե-
«ղէնսս ծախեա՛յ որպէս զի արդեւք կամիմ գիտել թէ
«տուր ամենեւիմբ պատկառելոցն խնդրոյ, այղ որոց
«ի վաճառականութիւն ի ձեռն վարուց զորովայնն առա-
«ջի դնաւղաց տալով։ Եւ ոչ կրաւնաւորութիւն համա-
«րեացիս ըստ այսմ մասին. միոյ միայնւոյ սնուցանելոյն
«զքաղցեալսն, և այղ և ոչ ըմբերանել զորս մերն աւ-
«րինակաւ ոչ խորհաւղս ։»

Այսպէս և կարաւտելոցն հեռագոյն եղելոց հոգ-
տանէր. և ոչ այս միայն այլ և զպաշտաւնս ոմանց հա-
տանել փութայր։ Լուեալ ապա զի որոց վասն Հրէական
Ջատկին երբեմն որոշողացն ի Նաւատիանոսաց զմար-
մինն Սամբատիոսի յՌոդա փոխելոյ, քանզի յայնմ
կղզւոջ լցեալ բարկութեամբ վաղճանեցաւ և թաղեաւ,
ի վերայ գերեզմանին աղաւթել. առաքեալ Ատտիկոսի
ի գիշերի զմարմինն յայղ գերեզմանփոխել. հրամայեաց։
Իսկ նոցա սովորաբար եկեալ, և վերաբերել զգերեզմանն
գտեալ, այնուհետև ի պաշտելոյ զգերեզմանն դադարե-
ցին։ Իսկ էր և առ դրութիւն անուանց բարեսէր. քան-
զի Նաւահանգիստ մի, որ կայ ի բերանն Եւքսինոս Պոն-
տոսի, ի վաղուէ Կախարդութիւնք[ա] կոչեցեալ, Բժըշկու-
թիւնս անուանեաց. զի մի ժողովսն անդ արարեալ հայ-
հոյական անուամբ անուանեացէ զտեղին։ Եւ զայլ դաս-

ա. Φαρμακέα

տակերտ մի Կոստանդինուպօլսի Արծաթիքաղա՛ք [ա] անուանեաց, յայսպիսի պատճառէ։ Ոսկինքաղաք [բ] Հին է նաւահանգիստ որ կայ ի սկզբանն Բոսպորոսի. [գ] և յիշեն զնա բազումք ի Հնոյն շարագրաւղաց. մանաւանդ Ստրաբոն ճարտասան, և Դամասկինոս Նիկողաւոս։ Եւ որ ի բանսն պքանչելիս Քսենոփոն ի վեցերորդում Կիւրոսի ելմանն, [դ] և յառաջնում Հեթանոսականաց [ե] ասէ վասն նորա. թէ Ա(լ)կիբիադա պարսպեալ զնա տասանորդարան ի նմա կարգեաց, քանզի զտասանեկորդն որք ի Պոնտոսէն նաւելով ի նմա տային։ Տեսեալ ապա Ատտիկոսի զոր ընդդէմ Քրիւսոյպօղսի տեղին բարեվայելուչ հանդիպեալ, վայելուչ է ասէ զայն Արծաթիքաղաք անուանեալ. և ճառեալ բանն առժամայն զմականունութիւն զաւրացոյց։

Իսկ ոմանց ասացեալ ցնա. ոչ պարտիլ զՆաւատիանոսն ներքսագոյն քաղաքացն ժողովել. ո՞չ գիտէք, ասէ, որքանս մեր հալածելոց առ Կոստանտիոսիւ և Վաղէսիւ ախտակիցք եղեն. այլ որպէս ասացաւ, և վկայք մերոյն հաւատոյ կարգեցան. քանզի նախկին յեկեղեցւոյն որոշեալք ոչինչ ի հաւատն նորա հաստատեցան։ Իսկ ի Նիկիայ երրեմն ձեռնադրութեան եպիսկո-

ա. Ἀργυρόπολις
բ. Χρυσόπολις
գ. Βόσπορος.
դ. Κύρου Ἀναβάσεως.
ե. τῶν Ἑλληνικῶν.

Ոմանք ասացին յԱտտիկոս. ոչ է պարտ զՆաւատիանոսս ներքնագոյն քաղաքացն ժողովել։ Ոչ գիտէք, ասէ, որքան մեզ ախտակիցք եղեն ի մեր հալածանսն առ Կոստանդիւ և Վաղէսիւ, և եղեն վկայք մերոյ հաւատոյս, և հալածեալք ի նո-

ոսի հասեալ՝ զԱսկղեպիադ զՆաւատիանոսացն եպիս-
ոպոս տեսեալ ծերագոյն գոլով եհարց. քանի՞ ամս ու-
իս եպիսկոպոս գոլով։ Իսկ նորա ծ ասացեալ՝ ասէ Ատ-
տիկոս. երջանիկ հանդիպիս, ո՞վ մարդ, այնքան ժամա-
նակ բարի գործոյ խնամ տարեալ։ Իսկ ցնոյն Ասկղեպիա-
դէս ասէ. զՆաւատիոս գովեմ իսկ զՆաւատիանոս ոչ
ընդունիմ. սքանչելաձայնեալ Ասկղեպիադեայ. զիա՞րդ, ա-
սէ՝ զայս ասես եպիսկոպոս։ Զնա, ասէ Ատտիկոս, գովեմ,
զի ընդ որոց զոհինն հաղորդել ոչ համբարձաւ, քանզի
զայս արդեւք և ես արարի. բայց զՆաւատիանոս ոչ գո-
վեմ, զի վասն փոքր յանցանաց ի հաղորդութենէ զժո-
ղովրդականսն արգելուն։ Առ այսոսիկ Ասկղիպիդ. արտա-
քոյ ասէ, զոհելոյն և այլ բազում ըստ գրոց մեղք առ
մահ տանողք՝ վասն որոյ դուք զժառանգաւորս, իսկ մեք
զժողովրդականսս արգելումք, Աստուծոյ միայն զԹողու-

ցանէ ոչ հեռացան ի մէնջ։ Տեսեալ զԱսկղիպոս Նաւատիանո-
սաց եպիսկոպոսն Նիկիայ, ծեր յոյժ, եհարց Ատտիկոս. «քա՞նի
ամ ունիս յեպիսկոպոսութիւնդ»։ Ասէ. «Յիսուն»։ Ասէ գոր-
ձեալ. «Երջանիկ հանդիպիս, ով այր, այնքան ժամանակս ու-
ռուչ լեալ»։ Ասէ Ասկղիպա. «զՆաւատիոս գովեմ ես, այլ
զՆաւատիանոս ոչ ընդունիմ»։ Ատտիկոս ասէ. «ո՞րպէս»։ Ասկղե-
պիդա ասէ. «գովեմ, վասն զի ընդ որոց զոհեցին ոչ հաղոր-
դեցաւ. քանզի զայս արդեւք և ես արարի. այլ զի ոչ ընդու-
նիմ, զի վասն փոքր յանցանաց զժողովուրդս արգելուն ի հա-
ղորդութենէ. Զի զոհելոյն մեղք ի մահ ձգէ զոգին ըստ Յո-
հաննու՝ որ ոչ ասէ աղօթել. վասն որոյ դուք զժառանգաւոր
արգելուք ի վիճակաւորութենէ զմեղուցեալս. իսկ մեք և զժո
ղովրդականս արգելումք Աստուծոյ միայն զԹողութիւնն յա
սալով։

ա. Ա' ամ. բ. Ն. արդ՝ եւ քեւ ես արարի. գ. Ա' գ. յառօ

թիւնն նոցա վերայ յեղլով։ Իսկ Ատտիկոս դարձեալ ընդդիմադրեաց նմա. եթէ առ մահ հոգւոյ և մարմնոյ ոչ է այլ ինչ, բայց միայն կռապաշտութիւն և արծաթսիրութիւնք. այսինքն արծաթսիրութիւն, ագահութիւն, զորս բազումս յորոց ձերն գտանին ունելով. ասեմ զորս արծաթսիրութիւնն ընդունել որպէս զմեծամեծաց յարդարիչս, իսկ զորս վասն պոռնկութեան ի բաց ընկենուլ և զայս յորժամ ծանիցեն. իսկ թէ ոչ մոռացաբար հազորդին յաստուածայինսն խորհրդոց մանկունքն վասն երկիւղի ծնաւղացն և վասն ամաւթոյ կանանց այրքն նոյնպէս և կանայք յաղագս արանց։ Արդ ահա որպէս ասացերն ոչ ես առ մահ թողութիւնն ի ձեզ, այլ որպէս հասեալն ասացի. զի երկիւղիւ և ամաւթով մարդկայնւոք էք ըմբռնեալք։ Եւ զայս ասացեալ արձակեաց զԱսկղիպիադ, քանզի էր եկեալ յայցելութիւն Ատտիկոսի։

Ատտիկոս ասէ. առ ի մահ ձգեալ մեղք ոչ այլ ինչ է բայց կռապաշտութիւն, այլ և զագահութիւն ընդ սմա յարէ առաքեալ[ա] ագահութիւն ասէ, որ է կռապաշտութիւն, որ է ամենայն չարեաց պատճառ ընչասիրութիւն։ Այլ և յատամանէ ըստգանեալք ապաշխարութեամբ որոշեալք ժամանակաւ ընդունիմք, այլ և զպոռնկեալսն որոշեմք զժառանգաւորս և զժողովուրդս յեկեղեցւոյ և ի հաղորդութենէ. այլ զդարձեալս[գ] խոստովանութեամբ յապաշխարութիւն[դ] ընդունիմք. և ըստ արժանեացն որոշեմք զսեղիս ժամանակօք, և ըստ արժանեացն հատուցմունք, որ ըստ վիճակաւորութեանն. և որ ըստ ժողովրդեանն ի հաղորդութիւն ընտրութեամբ կանոնի և գիտնոց։ (Եւ զայս ասացեալ Ատտիկոսի ընդունէր Ասկղիպիդա

ա. Ա' Գ. ընդդէմ յարէ, առաքեալս. բ. Ա' զժառանգաւոր. գ. Ա' Գ. զդարձեալսն դ. Ն. յապաշխարութեամբ.

Իսկ Ատտիկոս յառաջ ծանեաւ զմահն իւր.[1] քանզի գնալով ի Նիկիոյ առ Կաղիպոս[ա] քահանայ որ անդ. փութայ, ասէ, նախ քան զաշունն ի Կոստանդինուպաւլիս թէ կամիս զիս անդէն կենդանի տեսանել. վասն զի յամիս ոչ հասանես ինձ։ Եւ զայս ասացեալ ոչ մեղաւ. քանզի ԻԱ ամի եպիսկոպոսութեանն իւրում Ցոկտեմբերի ամսոյ փաղճանեցաւ. ի հիւպատութեան Թէոդոսի ԺԱ, և Վաղէնտիանոսի կայսեր Ա։ [2] Իսկ թագաւորն Թէոդոս ի Թեսաղոնիկէոյ դարձեալ, ի թաղումն ոչ եհաս, քանզի եհաս նախ քան զաւր մտից թագաւորին։ Ատտիկոս աւան-

ա. Καλλιόπιος

1 Նա մեռանելոց առաջի իրան համար գերեզման պատրաստել տուեց։
2 Փրկ. 425.

յօժար կամօք, և յուղարկեցաւ ի նմանէ սիրովն Քրիստոսի)։ Իսկ Ատտիկոս յառաջագոյն գիտացեալ զմահ իւր (և կոչեալ[ա] զհաւատոյ միաբանեալսն համազգոյ ամենասուրբ Երրորդութեան զձեռնադրեալսն զեպիսկոպոսս և զքահանայս, յինքենէ յանձն առնէ զինքն նոցա աղօթից և յիշատակաց մինչ յեկեղեցիս Աստուծոյ. և ոչ անտես առնել ի նորայոց[բ] կարգաց[գ] և յիրաւանց եկեղեցեաց և կալ մնալ ի սուրբ վարս հաւատով. և զժողովուրդն մխիթարէր ըստ իւրաքանչիւրոցն, որում իւրաքանչիւր ոք պէտս ունէր օգտի)։ Եւ յետ այսորիկ հիւանդացաւ, որով և մեռաւ իսկ քսան և մի ամ կալեալ զեպիսկոպոսութիւնն, ի թագաւորութեանն Թէոդոսի բարեպաշտ թագաւորին բազում դրուատեօք։

Եւ չի էր թագաւորն Թէոդոս ի Թեսաղոնիկէ, յետ միոյ աւուր վախճանի Ատտիկոսի Կոստանդնուպօլսի եպիսկոպոսի, գայ թագաւորն ի թաղումն նորա։ (Եւ ապաշաւանօք արտասուեաց զայրն բարեխօհ[դ] և բարեգործ։ Եւ աղօթս արարեալ ի վերայ

ա. Գ. կոչեցեալ. բ. Ա՝ ի նոցունց. գ. Դ. կարեացն. դ. Ն. բարեխոհ.

դեալ Թաղմանն, ոչ ընդ երկարս ինչ և յոլջոլջուածն Նորին Վաղէնտի ազդեցաւ. քանզի ԻԳ նոյն Ոկտոմբեր ամսոյ լինէր։

### ԳԼ. ԻԶ.[1]

Իսկ յետ մահուանն Ատտիկոսի բազում վէճ վասն եպիսկոպոսանց լինէր. այլոց զայլ խնդրելոց։ Քանզի ոմանք զՓիլիպպոս քահանայ խնդրէին, իսկ ոմանք զՊրոկղ, և սա քահանայ էր։ Իսկ միաբան ամենայն ժողովուրդն փափագէր առնել զՍիսին որ էր քահանայ. և ոչ ի միում յորոց ի ներքս ի Կոստանդնուպօղսի եկեղեցեացն կարգեալ լինէր, այլ ի դաստակերտի միում Կոստանդինուպօղսի, որում համանուն Զիթենի,[ա] զքահանայութիւն ժառանգէր. որ դաստակերտ կշիռ կայ[բ] ի քաղաքիս. իսկ

ա. Ἐλαία

բ. κατάντικρυ ի հակառակ կողմն,

1 Տես կաս. ԺԲ. 3. Նիկ. ԺԴ. 29։

գերեզմանին, օրհնելով զնա գոհացաւ զԱստուծոյ ասէ. Տէր ետ և Տէր էառ. և այժմ Ձեր հոգացէ տեսուչ ժողովրդեանն իւրոյ. և մի անտես լիցուք ի խնամոց մարդասիրութենէ)։

### ԳԼ. ԾԺԴ.

*Յաղագս Սիսինոսի, թէ որպէս ընտրի եպիսկոպոսութիւն Կոստանդնուպոլսոյ։*

Եւ բազում հակառակութիւն լինէր ընդ ընտրութեան ի տեղի նորա զփոխանորդութիւնն ունել. Չի ոմանք զՓիլիպպոս քահանայ ասէին. (որ էր աշակերտեալ Յոհաննու ոսուգս). իսկ ոմանք զՊրոկղ քահանայ (Լիւկիացի[ա] և աշակերտ Յոհաննու.) իսկ ոմանք զՍիսին քահանայ, ոչ ի Կոստանդնու քաղաքին

ա. Դ. Լիկիացի.

*ի նմա ի սովորութենէ ի համբարձմանն Փրկչին կատարէ ամեն հուշակաւն։ Եւ փափագ ունէին առնն ամենայն ժողովրդականքն. զի ի վերայ երկիւղածութեան հռչակեալ լինէր, և մանաւանդ զի զաղքատս և առաւել քան զկարն ջեռուցանել փութայր։ Զաւրացաւ ապա փոյթ ժողովրդականացն. և ձեռնադրիւր Սիսինոս ի* ԻԲ Փետրուարի *ամսոյ ի զնոյն հետայն ի հիւպատուջն որ էր Թէոդոսի* ԺԲ, *և Վաղենտիանոսի մանկագունին* Բ[1]։ Ի *վերայ յառնէ* Փիլիպպոս *քահանայ, զի քան զնա ընտրեցաւ միւսն, թագուամս ինչ հպեցոյց ձեռնադրութիւնն. մատնելով զձեռնադրեալն և զձեռնադրողսն,*[ա] *եւ եւս առաւել զժողովրդականսն։ Այսքանս ասաց որպիսիս ոչ կամիմ աւանդել գրով զի զնա ոչ ընդունիմ զյանդգնութեանն, որպիսիս գրով աւանդել զյանդըգնեալն. իսկ սակաւս վասն նորա ասել ի դէպ համարիմ։*

*ա. Բն. աւել ունի. .. ի շարագրեալն յիւրմէ պատմութեան քրիստոնէական :*

1 Փրկ. 426.

*կարգաւորեալ, այլ ի դաստակերտի միում քաղաքին, որ էր ի նմա մատուռն համբարձման Փրկչին, և տօն ժողովոց ի նմա ամ յամէ կատարի. Եւ զի էր հռչակաւոր Սիսին ըստ երկիւղածութեան Քրիստոսի և սուրբ, և առ աղքատս առաւել քան զկարն առատաձեռնութեամբ երևեալ, և համաձայնութիւն լինէր առաւել ի վերայ նորա քան յայլոցն. Եւ ձեռնադրեն զՍիսին*[ա] *ի հայրապետութիւն*[բ] *Կոստանդնուպօլսի՝ յերկոտասան*[գ] *ամի Թէոդոսի թագաւորութեանն և յերկուսն Վաղէնտիանոսի*[դ] *թագաւորին.*

*ա. Ա՝ Սիսին. բ. Դ. քահանայապետութիւն. գ. Ա՝ երկոտասան. դ. Բոլ. Ձեռ. Վաղէսի.*

Գւ· Իէ·

Այս Փիլիպոս Միգացի [ա] էր ազգաւ· իսկ Միգի քաղաք է Պամփիլւոյ, յորմէ դիմէր եւ Տռովիղոս իմաստակ, որոյ և ազգական լինել ասէր։ Իսկ սարկաւագ գոլով զամս բազում առ Յոհաննու լինէր· եւ վաստակաւէր լինէր առ բանս, եւ զբազումս եւ զամենայնս իսկ ի գիրս ժողովէր։ Իսկ Նախանձեալ զԱսիականն [բ] բանի Նկարագիր, շատս համագրեաց· զԹագաւորին Յուլիանոսի զընդդէմ քրիստոնէից գրեանն խախտելով և քրիստոնէական պատմութիւն համագրեաց, զոր յերե-

ա· Σιδίτης
բ· 'Ασιανος յայտնի ծառախոս էր

Գւ· ԾԺԵ·

Յաղագս Փիլիպպոսի աշակերտին Յոհաննու· Թէ զկնի մահուանն Յոհաննու զինչ շարագրեաց:

Իսկ Փիլիպպոս ընչիւք հպեալ եղև ի վերայ Նորա· զոր ոչ ընկալեալ եղև, ոչ ձեռնադրեալն և ոչ ձեռնադրողն յեկեղեցւոյն Աստուծոյ ի Թագաւորէն Թէոդոսէ։

Փիլիպպոս այս էր ազգաւ Միդայեցի [ա] և էր ի քաղաքէն Պամփիւլիա· ուսեալ ի Տռոյլոսէ [բ] իմաստակէ, որ էր ազգ Նորա։ Աստուածասէր եղեալ և սարկաւագ եղեալ սրբոյն Յոհաննու և վաստակասէր եղեալ առ Նմաւ առ բանս [գ] Նորա շարագրեաց, և ժողովէր ամենայն ուստեք զգիրս (Նորա վարդապետութեանն, Իսկ յետ մահուան երանելոյն Յոհաննու այլափոխեալ, հպարտութեան միտս առեալ) և զԱսիական [դ] բանիցն Նկարագիրս շարագրեաց զԹագաւորին Յուլիանոսի։ Որ ընդդէմ [ե]

ա· Ա՝ Սիփայեցի· Բռլ· Ձեռ· Սիգայեցի· բ· Բռլ Ձեռ· ի յաւռնլեաւէ· գ· Ա՝ եւ զբանս Նորա· դ· Ա՝ եւ զռամկա՛ան ե· Ն· ընդ·

զիւրոյ կամացն և հանճարոյ դատեսցի. իսկ ես զայլ ասեմ զի զժամանակս պատմութեանն շփոթէ: Քանզի յիշեալ զինքնակալին Թէոդոսի ժամանակս առ ժամայն յԱթանասայ եպիսկոպոսին ժամանական ընթացաւ, և զայս առաւելաբար առնէ: Այսքան վասն Փիլիպոսի, իսկ որ առ Սիսինոսիւն եղև՝ կարևոր է ասել:

## ԳԼ. ԻԸ. [1]

Կիւզիկոնացեացն եպիսկոպոսի վախճանեալ, Սինինիոս զՊրաւկղ, զոր այժմ յիշեցի, յեպիսկոպոսութիւն Կիւզիկոնի նախաձեռնէր: Իսկ նորա հանդերձեալ երթալ, ժամանէին Կիւզիկոնացիք և ձեռնադրէին այր ճգնաւոր որոյ անուն էր Դաղմատիոս: Եւ զայս արարին անփոյթ զաւրէնսն որ հրամայեն ոչ առանց կամաց ե-

[1] Տես. Նաւ. ԺԲ. Ց. Նիկ. ԺԴ. 31:

համարիմ ընթեռնուլ՝ և կամ գրել)· այլ իւրաքանչիւր ոք ըստ իւր իմաստից և հանճարոյ դատեսցէ զՓիլիպպոս:

## ԳԼ. ՃԺԶ.

*Դարձեալ Սիսինու հայրապետին Կոստանդնուպոլսոյ եւ վարուցն նորին:*

Իսկ դարձայց [ա] առ Սիսինոս (որ զհայրապետութիւնն ընկալաւ զԿոստանդնուպոլսի. զի էր այր բարեպաշտօն և երկիւղած յԱստուծոյ, [բ] և աղքատասէր առաւել քան զայլսն): Յայնոսիկ [գ] վախճանի Կիւզիկիանոսաց եպիսկոպոսն. և Սիսին ձեռնադրէ զՊրոկղ յեպիսկոպոսութիւն և առաքէ ի Կիւզիկոն: Իսկ Կիւզիկեցիք յառաջագոյն ձեռնադրեն իւրեանց յեպիսկոպոսութիւն [դ] զԴաղմատիոս զայր ճգնաւոր, անփոյթ արարեալ զօրէնս. ոչ ձեռնադրել եպիսկոպոս առանց Թղթոյ և Հրամանի

ա. Ա՝ դարձեալ. բ. Ա՝ Աստուծոյ. գ. Ա՝ յայնմ ժամանակի. դ. Ա՝ եպիսկոպոս.

պիսկոպոսին Կոստանդնուպոլսի ձեռնադրութեան եպիսկոպոսին լինել, և անփոյթ արարին զաւրէնսն զայն. որպէս զի Ատտիկոսի միայնոյ ի դէմս տուեալ է։ Ապա Մեայր Պրոկղոս ընտանին եկեղեցւոյ, ոչ եղեալ առաջնորդ յեկեղեցին Կոստանդնուպաւղսի ըստ վարդապետութեանց ծաղկելով։ Այլ վասն այնորիկ ըստ աշխարհին ասասցուք։ Իսկ Սիսին ոչ զերկու ամսն կեցեալ յեպիսկոպոսութեանն վաղճանեցաւ, ի հիպատուոջն Իեռիոսի և Արտաբրի ԻԴ Դեկտեմբեր ամսոյ։[1] Այր ի վերայ ողջախոհութեան և ուղիղ վարուց և աղքատասիրութեան հռչակեալ, իսկ բարուքն բարեընկեալ և անսուտ, և վասն այնորիկ անհոգագոյն. վասն որոյ և գործասիրացն տրամագոյն էր, և զանգործի փառս էառ ի նոցանէ։

1. Փրկ. 427 Թ.

Կոստանդնուպոլսի գլխաւոր հայրապետի։ (Եւ երթեալ Պրոկղ ի Կիւզիկովն՝ հանդիպի այնոցիկ և ոչ վրդովի, այլ ուրով հըրաժարեալ ի Պաղմատիայ, դառնայ ի Կոստանդնուպոլիս, և համոզէր խաղաղութիւն զՍիսին վասն Կիւզիկեցւոցն) և ինքն ոչ եպիսկոպոսութեամբ վարի, այլ վարդապետութեամբ ի Քըրիստոս ապաւինեալ. զոր յետոյ ասասցուք.

Իսկ Սիսին զերկուս ամս կալեալ զեպիսկոպոսութիւն առողջութեամբ և ուղիղ վարուք աղքատասիրութեամբ հըռչակեալ, և ամենայն բարեձևութեամբ կարգօք. վախճանի ի փառըս Աստուծոյ (և բազմաց շարժեաց ատօսր աղքատացն դասուց զոր ունէր).

ԳՀ ԾԾԸ.

Նեստորի յառաջանալն եպիսկոպոսութիւն։

Եւ յետ վախճանի Նորա դարձեալ եղև հակառակութիւն.

## ԳԼ. ԻԹ.[1]

Իսկ յետ վախճանին Սիսինի, թուեցաւ կալաւղացն զոչ որք վասն սնոտի փութողացն եպիսկոպոսութիւնն նախանձեռնել բազմաց. ապա զՓիլիպպոս, իսկ ապա զՊրոկղ նախանձեռնել փութացելոց։ Յետ այնորիկ եպիսկոպոս յԱնտիոքա ածել կամէին. քանզի էր անդ այր Նեստորիոս անուն ազգաւ Գերմանիկեցի,[ա] բարեձայն այլ որպէս զի և քաջախաւս։ Վասնորոյ զպատճառ վարդապետութիւնըն ծանեան, և այնորիկ աղագաւ կամեցան կոչել զնա յեպիսկոպոսութիւն։ Ապա երից անցելոց ամսոց ածիւր յԱնտիոքայ Նեստորիոս, որ ողջախոհութեամբն գոհութիւն ի բազմաց ստանայր։ Իսկ որպիսի Լին յայլսն բարքըն ի նախկին նորա վարդապետութենէ ի խորհրդականացն ոչ ծածկեցան։ Քանզի ձեռնադրեալ ի տասն Ապրիլի ամսոյ, ի հիւպատոսջն Փիլիքսի և Տաւռոսի, առժամայն զայն զգերահռչակեալն եթող զձայն առ ամենայն ժողովրդեամբն, առ Թագաւորին բանս արարեալ. Տուր

ա. Γεργμανικεύς

1 Տես Կաս. ԺԲ. 4. Նիկ. ԺԳ. 31.

ոմանք էին ի Պրոկղ և ոմանք ի Փիլիպպոս։ Եւ անմիաբանք լինել կոչեն զ՛նեստոր յԱնտիոքայ յեպիսկոպոսութիւն, Գերմանիկեցի ազգաւ, բարձրաձայն և քաջախօս, (այլ ոչ գիտնաւոր սուրբ գրոց. Իսկ Թագաւորն ոչ յայտնիկ[բ] յընտրութիւնս զինքն ի ներքս մուծանէ. զի մի լուծցէ զօրէնս եկեղեցւոյ Աստուծոյ ըստ իշխանութեան երևեալ ցուցի)։ Եւ ապա ձեռնադրի Նեստոր յեպիսկոպոսութիւն[բ] Կոստանդնուպօլսի ի տասն Ապրիլի, իսկ որպէս էին նորա բարքն ի խորհրդականաց իւրոց ոչ ծածկէր։ Եւ յետ երից աւուրց ձեռնադրութեան իւրոյ, առ-

ա. Ա՝ այսոսիկ. բ. Ա՝ յեպիսկոպոս

ինձ, ասէ, ով Թագաւոր, մաքուր զերկիր ի հերձուածողացըն, և ես քեզ զերկինս փոխադրեցից. համակործանեա ընդ իս զհերձուածողս, և ես ընդ քեզ կործանեցից ըզ Պարսս։ Այսոքիկ ճառեալք, թէև ոմանք ի բազմացն ցասումն առ հերձուածողսն ունէին, կամաւորաբար ըզբանսն ընդունէին։ Այլ արդ որպէս ասացի տպիտացն ի բանէ կամ ոք նշանակեալն ոչ ծածկեցաւ, և ոչ դատարկութիւն մտացն, և ոչ սրտմտականն ընդ այնուիկ և անափառութիւնն. զի ոչ զողագոյնն ի սպուժումն ասացեալ, այլ թէ պարտ է ըստ առակին ասել, և ոչ ի ջրոյ քաղաքին տակաւին ճաշակել. ջերմ սրտիւ հալածիչ ցուցանիւր։ Քանզի ի հինգերորդումն յետ ձեռնադրութեան աւուր զաղաւթարանն Արիանոսացն յորում ի ծածուկ

ժամայն զայն իբրև հռչակեալ եթող զձայն առ ամենայն ժողովրդեամբն, առ Թագաւորն բանս առնէ համդերձ այլովն[ա] ևս. «Տո՛ւր ինձ ասէ, ո՛վ Թագաւոր, մաքուր ի հերձուածողաց, և և ես քեզ զերկինս փոխադրեցից. համակործանեաց ընդ իս զգունդ հերձուածողաց, և ես ընդ քեզ կործանեցից աղօթիւք զբիւրաւոր բանակս պատերազմողաց թշնամեաց՝ երևելեաց և աներևութից. Եւ բազմաց որ զցասումն ունէին (առ Թագաւորն, յորդորական բանս առնէին. առնել զասացեալսն ի Նեստորէ և հաւանեալ լինի)։ Արդ՝ որպէս ասացի ի բանէն Նորա նշանակել ոչ ծածկեցաւ դատարկութիւն մտացն, և ոչ սրտմըտականն ընդ այնոսիկ և մեծափառութիւն ըստացեալ ունէր. զի և ոչ երկայնամտութեամբ ձեռնամուխ լինի յիրողութիւնն, այլ ըստ առակին նմանի.[բ] ոչ ասէ ի ջրոյ քաղաքին ճաշակիլ.[գ] Եւ անդէն իսկ յետ հինգ աւուր ձեռնադրութեանն,[դ] ջերմ սրտիւ հալածիչ ցուցաւ, և զաղօթարան Արիանոսացն[ե] քա-

ա. Ա՛ Գ. այլովքն. բ. Ա՛ նմանին. գ. Ա՛ ճաշակեալ, դ. Ա՛ ձեռնադրի. ե. Ա՛ արիոսացն.

աղաւթէին, աւերեալ կամեցեալ, յանմտութիւն էած ըզ
նոսա։ Քանզի տեսեալք աւերելով զաղաւթարանն, հուր
արկեալք այրեցին. իսկ Ճարակեալ հուրն ըստ մերձակայ
տանցն կիզոյր. ամբոխ յայսմանէ լինէր ի քաղաքին, և
Արիանոսքն առ ի հատուցումն պատրաստէին. այդ զչարն
յառաջեալ ի գործ ոչ թողացոյց որ միշտ զքաղաքն պահող
Աստուած։ Եւ սակայն այնուհետև հրէայրեցութեան ըզ
նա կոչէին. ոչ միայն ովք հերձուածոցն, այլ նաև ովք ըն-
տանի հաւատոյն. քանզի ոչ դադարէր յայղժամ յայ-
ղըս ընդդէմ հերձուածոցն ա(ր)ուեստաւորելոյ և զոր
ընդ նովաւն արդեւք զքաղաք խախտելով։ Վասն զի և ըզ-
Նաւատիանոսսն խախտել համբառնայր. զչարեալ ի վե-
րայ որոց Նաւատիանոսացն եպիսկոպոս Պաւղոս երկիւղա-
ծութեամբ հռչակեալ էր. այլ կալաւղք յորդորմամբ դա-
դարեցուցանէին զնորա դիտումնն։ Իսկ ո՛րքան յԱսիա և

կել կամեցեալ. և անիմաստ զայս[ա] հրամայէր հուր արկեալ
փլուցանել.[բ] Եւ Ճարակեալ հուրն հողմով ըստ մերձակայիցն կի-
զոյր ամբոխ բազում, և տունս, և ստացուած ի քաղաքին։ Եւ
ժողովեալ Արիանոսքն ի հատուցումն[գ] պատրաստեցան Նեստո-
րի. այլ ահ Թագաւորին արգել. և եթէ ոչ խնամարկութեան
Աստուծոյ պահեալ էր զքաղաքն, իսպառ կիզեալ էր ըստ յա-
ռաջեալ չարի նորա. վասն որոյ հրայրեաց զՆեստոր[դ] կոչէին
քաղաքացիքն։ Այլ և ոչ պատկառեալ դադարէր. այլ անդէն ընդ-
դէմ[ե] հերձուածողացն և որք ընդ նովաւ էր քաղաք և գա-
ւառք խախտէր։ Եւ որ[զ] զՆաւատիանոսացն եպիսկոպոսն զառա-
քինութեամբ հռչակեալն Պօղոս, մախացեալ ընդ նորա համ-
բաւն, կամէր եղծանել զնա և զեկեղեցի նորա. այլ արգելեալ
լինէր ի Թագաւորէն վասն երկիւղածութեան առն այնորիկ։ Իսկ

ա. Ա* եւ անիմաստս այս. բ. Ա* եւ փլուցանել արկանել. գ. Ա. Գ. Ն. ի հատուսն. դ. Ա*. Նեստոր. ե. Ա* չիք. զ. Ա* որ եւ.

ի Լիւկիա և Կարիա չորից Զօրեքտասաներորդացն արար, և զի՞նչ քաղաքացն որք վասն նորա ի Սարդիսն ա և ի Մելիտոն յեղելումն աղմկի մեռան, թողլով ինձ թուել։ Բայց որպիսի ապա նա և վասն այսորիկ և վասն անկաւոր նորա լեզուին դատաստան եառ, յետ ասելոյ ինչ էրի ա-սացից։

### Գլ․ Լ․[1]

Բայց էրին զառ ժամանակաւքն արժանի յիշատակի եղեալ պատմեցից։ Ազգ է խուժադուժ․ յայնկոյս գետոյն Ոինաւի․[2] [ունի զբն]ակութիւն, [Բուլղարնգի] ոնք կո-

ա․ Ձեռ․ ունի Սարդիոն բն․ Σάρδεις

1 Տես կամ․ Նիկ, ԺԴ․ 40։

2 Ձեռագրի այս Թերթը կիսով չափ կտրուած է, ուստի իւրաքանչիւր երեսի մի մի սիւնակի կէս մասը չկայ։ Կորած մասը լրացրինք բնագրից․ մեր աւելցրածը փակագծի մէջ դնելով։

որք յԱսիայ և ի Լաւոդիկեայ և ի Կարիայ չորից Զօրեքտասաներորդական այնպէս արար, և ա որպէս ի Մելիտէ և ի Սարդիկէ յելումն ի նորա աղմկէ մեռան, թողից բ ի բաց զչարիսն․ Բայց ապա որպիսի նա վասն այսորիկ, և վասն անկաւ և Հայհոյիչ լեզուին դատաստան եառ, ասացից գ իմոց․

### Գլ․ ՃԺԸ․

*Թէ որպէս խուժադուժ ազգն Բոգոզոնքն կոչեցեալք եւ սահման ազգացն ի հաւատս քրիստոնէութեան դիմեալք մկրտեցան։*

Եղեալ դ ի ժամանակի արժանի յիշատակի պատմութեան յազգէ խուժադուժ յայնկոյս գետոյն Ոինոսի Բոգոզոնք ե կոչեցեալք․ ամենեքեան Հիւսոնք, զ և անարուեստիւ կեան ի մեջ․

ա․ Ա՝ եւ Թէ որպէս․ բ․ Ա՝ Թողցի․ գ․ Ա՝ զոր յետոյ ասացից․ դ․ Ա՝ Գ․ եղեալ․ ե․ Ն․ Բուլղարնդիոնք․ զ․ Ա․ Հասոնք․

[եալ արձակե]աց։ Այնուհ[ետեւ վասա]հագոյնք նոք[ա
ընդդէմ ազ]գին Ունանցն [ընթանային, ե]ւ յաւսոյն ոչ
[վրիպեցա]ն։ Զի թագաւ[որն Ու]նաց ի գժն[եայ կերա-
կրո]ց ի գիշերին [հերձեալ,] որոյ անուն է [Ուլտպա]
ոխոս, Բուռ[գունդիոնաց]ն առանց զաւր[ավարաց զո]
լով նոցա, ի [վերա ան]կեալք սակաւ[ք ընդ յո]յժ
բազումս պա[տահեալք] զնոսա քաջաբ[ար հարե]ան։
Զի երեք հազա[րքն միայն] առաւել քան [զբիւրս զ]
արտեցին յաղթ[ութեամ]բ։ Եւ յայնման[է ջեր]մ սըր-
տիւ ազգն այն [քրիստո]նէանալ փութ[ացաւ։ Ի]սկ ընդ
այնունոյն [ժամանա]կաւքն և Բառ[բաս Նաւ]ատիանո-
սաց [բ] ե[պիսկոպո]ս վախճանեց[աւ ի հիւ]պատուոջն Թէ-
[ոդոսիայ Գ] և Վաղէնտի[անոսի] ԻԴ Յունիս[ամսոյ], և
կարգէր ի տե[ղի նորա] Սամբատիոս։ [գ]

Վասն այսոցիկ այսքան ճառեցաւ։

## ԳԼ. ԼԱ.

### Իսկ Նեստորիոս ի սովորութենէն յեկեղեցւոջն

ա. Թնագրի մէջ չկայ։ • Ու յայնմանէ … փութացաւ.։
բ. Թն. τῶν Αρειανῶν Արիանոսաց...
գ. Σαββάτιος

Նոցա ի գժնեայ կերակրոց կերեալ, որովայն նորա հերձեալ մեռաւ. Եւ թագաւոր և զորավար ոչ էր. և անկան [ա] երեքհազարք ի վերայ բիւրոցն և մարտուցեալք ընդ միմեանս, [բ] յաղթեցին նոցա. (և զաշխարհն նոցա և զիւրեանց յինքեանս գրաւեցին ի ծառայութիւն, և զօրացան ի վերայ նոցա)։ Եայնմհետէ ազգըն այն ջերմ սրտիւ ի հաւատս և ի կարգս քրիստոնէութեան հաստատեալք եղեն (ի Քրիստոս Յիսուս մինչև ցայսօր ժամանակի)։

ա. Ա՛ անկանէ. բ. Ա՛ Գ. Ն. ի նոցա.

գործելով, և այլոց զնա յայնպիսիսն նմանել առնէր, որ-
պէս ուք ի նմանէ եղեալքն ցուցանեն։ Քանզի ի Գերմի
քաղաքին Եղիսպոնտոսի Անտոնինոս եպիսկոպոս գոլով,
և լուեալ զՆեստորի առ հերձուածողսն դիմունմն. և ինքն
զոր շուրջ զԳերմինաւ Մակեդոնիանոսն վարել փութա-
ցաւ. պատճառս պատասխատրութեան զգործս Հայրա-
պետին Նեստորի առնելով, Մակեդոնիանոսքն ապա մին-
չև ցժամանակ ինչ զաշխարանաց համբերէին։ Իսկ զի ըզ
Նոսա Անտոնինոս զաւրագոյն աշխատեցուցանէր, ոչ ևս
բերելով զցասումն ի դժնդակն անմտութիւն յեղուին։
Եւ արձակեալք արս յերկրայլին զբարին կամաւ եղեա-
լըս սպանանէին զնա։

Զայս անիրաւութիւն Մակեդոնիանոսեացն գոր-
ծեալ, Նեստոր պատճառ ընտանի դիմմանն էառ զե-
ղեալսն և հաւանեցուցանէր զունաւղսն զեկեղեցիսն նոցա
բառնալ։ Եւ առան ապա որ ի Կոստանդնուպոլսի առա-
ջի հին պարսպին քաղաքին և որ ի Կիւզիկոնին և այլ

ԳԼ. ԾԺԹ.

Նեստոր թէ որպէս մարտն յարուցանէ առ ընտանիսն հաւատոյ։

Իսկ Նեստորիոս ըստ [ա] առաջնոյ սովորութեան և այլոց [բ]
զնա այնպիսումն նմանելոց առնէին նման. որպէս առ ի նմանէ
լեալքն [գ] ցուցանիւր. Զի ի Գերմին քաղաքին Անտոնիոս [դ] ե-
պիսկոպոս լուեալ ի Նեստորէ զդիմումն առ հերձեւածսն [ե] ըզ-
Մակեդոնիանոսն որ անդ վարեալ, փութայր՝ պատճառս առէ [զ]
զՆեստորի հայրապետի հրամանն, և նոքա ոչ բերելով զնորա
փոյթն սպանին զնա ի ձեռն արանց ոմանց. Իսկ Նեստոր պատա-

ա. Ա. ընդ միմեանց. բ. Ն. ընդդէմ. գ. Ա. շինեալ են. Ա՛ եւ
այլոցն. դ. Բոլ. Ձեռ. Անանիոս. ե. Ա՛ հերձուածս որ անդ փութայր.
զ. Ն. վարել է. Ա՛ պատճառ առէ.

բաղումն զոր ունէին յաղթարական Եղիսպտոսի։ Իսկ ոմանք ի նոցանէ տարեալք եղեն յեկեղեցին զհամագոյութեանն հաւատ խոստովանեալք. այլ քանզի զինէալբին ասէ տուաւորեքն, զինի ոչ պահպանէ, և ոչ միճաղէն մարտ ասէ. և Նեստորի սիրողին վարել զայս իւր արտաքս վարել պատահեաց յայսպիսի պատճառոյ։

Գլ. ԼԲ.

Էր ընդ նմա Անաստաս ոմն քահանայ ընդ նմա, առաքեալ յԱնտիոքայ զսա պատուով ունէր բազմաւ. և ի գործեանն խորհրդակից համդիպէր։ Եւ երբեմն առ եկեղեցեաւն ուսուցանելով Անաստիոս, Աստուածածին ասէ զՄարիամ մի ոք կոչեսցէ, քանզի Մարիամ մարդ էր, իսկ ի մարդոյ Աստուած ծնանիլ անհնար է։

Ճառ իւր գտեալ հաւանեցուցանէր[ա] զունողս նոցա զեկեղեցեցին բառնալ. առնու և որ արտաքոյ քաղաքին և որ ի Կիւզիկեանին, և որ յազգարական. Եւ ոմանք ի նոցանէ գային և խոստովանէին զհամագոյութիւն. բայց վիճողասիրի մարտ[բ] ոչ գադարէ միշտ, որպէս զի ոչ Նեստոր զխաղաղութիւնն ողջունէր. յարուցանէ մարտ և առ ընտանիս հաւատոյ.

Գլ. ԾԱ

*Թէ որպէս քահանայն Անաստաս զՆեստորի միտն ուսուցանէ, զի մի ասիցեն Աստուածածին այլ մարդածին:*

Էր սմն Անաստաս[գ] քահանայ Անտիոքայ եկեալ ընդ[դ] նմա խորհրդակից, և յոյժ պատուեալ ի նմանէ. Էր երբեմն զի յեկեղեցւոջ[ե] ուսուցանէր զժողովուրդն. մի ասել Աստուածածին զՄարիամ, զի Մարիամ մարդ էր և ի մարդոյ Աստուած

ա. Ա՝ հաւանեցուցանէ զունողսն. բ. Ա՝ մարտն. գ. Ա՝ Անաստաս. դ. Ա՝ ընտ. ե. Ա՝ Դ. եկեղեցւոջ.

Այս ճառեալ զժառանգաւորսն և զժողովրդականսն ամենայն խռովեցոյց· քանզի էին յառաջ ուսեալք աստուածաբանեալ զՔրիստոս, և ոչ երբէք զնորա զանաքէնութեան մարդ որոշեալ յաստուածութենէն: Հաւանեալք առաքելոյն ձայնի որ ասէն· Թէև զՔրիստոս երբեմն ըստ մարմնոյ գիտէաք, այլ այժմ ոչ գիտեմք, վասն որոյ թողլով զոր յաղագս խոկ զբանն Քրիստոսի բան՝ ի կատարելութիւնն եկեսցուք: Իսկ խռովութեան աղագս որպէս ասացի, յեկեղեցւոջն եղեալ, Նեստորիոս զԱնաստասեայ բանն հաստատել փութայր· քանզի ոչ յանդիմանել որպէս հայհոյիչ զնա յիւրմէ պատուեալն կամէր, յաճախապէս վասն այսորիկ յեկեղեցւոջն ուսուցանէր· վիճաւղագոյն վասն Նորա զխնդիրսն արարեալ, ամենայն ուրեք զբանն Աստուածածնին հանելով: Վասն որոյ և որ յաղագս այսորիկ խնդրոյն յայլոց յայլ ազգ ընկալեալ, հերձուած անիրաւ յեկեղեցւոջն լինէր: և իբր ի գիշերամարտութեան կարգեալք, մերթ զայս ասէին, մերթ զայլս խոստովանէին, ընդ այնուիկ և ու-

ծնանել անհնար է: Զայս լուեալ ժառանգաւորաց եկեղեցւոյն և ժողովրդեանն, եղև խռովութիւն ոչ սակաւ· զի էին ուսեալք Աստուծոյ ի սուրբ հարցն Աստուածածին զՄարիամ անուանել և զծնեալն առ ի նմանէ Որդի Աստուծոյ ըստ միաւորութեան անորէնութեան. (յԱթանասէ[ա] ասեմ և ի Գրիգորեանց և[բ] ի Բարսղէ և Յոհաննէ և ի սուրբ ժողովոյն․[գ] ) Իսկ Նեստորիոս զնա ի յԱնաստասեայ ասելն հաստատէր և ամենայն[դ] ուրեք զբանն Աստուածածնին որ ի գիրս սրբոց և ի յօրհնութիւնս խորամանգեալ՝ հանել ջանայր իշխանաւորութեամբն ըմբռնեալ, զի Թէպէտ և բարեձայն էր և քաղցրախօս, այլ ոչ գիտութեամբ յարդարեալ: Սորին աղագաւ եմուտ հերձուած յեկե-

ա․ Ա՝ յաԹանասայ․ բ․ Ա՝ երկուց․ Ա՝ չիք․ գ․ Ա՝ ժողովոցն․ դ․ Ա յամենայն․

րախանային։ Իսկ Նեստորիոս կարծիս ի բազմաց ունէր. որպէս զի սոսկ մարդ ասելով զՏէրն, և որպէս զի ըզՊաւղոսի Սամուսատացւոյ և զՓոտինոսի աղանդն յեկեղեցին մուծանելով։ Այլ վասն այսորիկ այնքան շարժեցաւ խնդիր և խռովութիւն, որպէս զի տիեզերական ժողովու պիտաւորել։ Իսկ ես ընթեռնլով զարտադրեալն ի Նեստորէ բանս, անմիտ գտանեմ զայրն. ճշմարտութեամբ ասեմ։ Քանզի ոչ ցատուցեալ ինչ առ նա յորոց ունէր նուազագունիցն յիշեցի, և շնորհս առնել ումանց անխորհ գտեալ արտադրեցից։ Ոչինչ թուի Նեստոր, ոչ զՍամոսատացին Պաւղոսի նախանձեալ և ոչ զՓոտինոսի, ոչ բնաւ իսկ սոսկ մարդ ասել զՏէրն, այլ ի բանէն միայնւոյ որպէս փախչէր. և զայս կրեաց յանուսումնութենէ բազմէ։ Վասն զի բնաբար քաջախաւս գոլով խրատել խորհիւր, իսկ ճշմարտութեանն

ղեցիս[ա] Աստուծոյ։ Որ պարզամիտք էին ընդ[բ] նմա ոչ առէին Աստուածածին, անգիտացեալ զնորայսն դժրանացն[գ] մուտս յեկեղեցիս. իսկ ողջամիտքն առէին Աստուածածին, և ընդդէմ կային որք ոչ առէին։ Եւ էր հակառակութիւն ի մէջ նորա և եկեղեցեացն. և կարծիս տայր Նեստոր ամենեցուն, սոսկ մարդ ասելով զՔրիստոս, որպէս Պօղոս Սամոսատացի և Փոտինոս (Լիւբիացի։ Եւ այնքան շարժեցաւ Նեստոր ի գիշերամարթեան և խառնակութեան անգիտութիւնք և հայհոյութիւնք, որ առաւել քան զԱրիոն և զՄակեդոնին դժնդակութիւնս եցոյց։) Եւ զի ճշմարիտ է ասելս յորժամ ընթեռնում զնորա արտադրութիւնս, անմիտ գտանեմ զայրն ճշմարիտ. զի ոչ ցատուցեալ առ նա զայս ասեմ, և շնորհաւք ինչ[դ] առնեմ մե-

ա. Գ. եկեղեցիս. բ. Ա՛ ընդ. գ. Ա՛ զնորա դժրանաց. դ. Ա՛ ձեռ.

անհաս էր. և զհնոցն մեկնութեան գիրս ոչ արժանաւորէր ուսանել. քանզի հպարտացեալ յեղելոյն առ նա բարեկեցութեանն, ոչ զգուշանայր ստուգութեամբ հնոյն, այլ քան զամենայն որ վեհագոյն կարծէր զինքն: Քանզի առժամայն տգիտացաւ, զի ի կաթուղիկէին ի Յովհաննու Թղթին գրիւր ի հինան փորագիրս. Թէ ամենայն հոգի որ ոչ որոշէ զՈրդի չէ նա յԱստուծոյ: Քանզի զայս զմիտս ի հնոցն ընդդիմագրաց բառնային, որք որոշել ի տնաւրութենէ մարդոյն կամէին զաստուածութիւնն: Վասն որոյ և հին Թարգմանիչք զայսոսիկ վերանշանեցին. որպէս զի ոմանց փոյթ գործեալ ի Թըղթին որոշել յԱստուծոյ զմարդն կամելով՝ խառնի մարդկութիւնն յաստուածութեանն, և ոչ են երկու, այլ մի: Յայս վստահանալով հինքն Աստուածածին զՄարիամ ոչ ծուլացան ասել. քանզի այսպէս Եւսեբիոս Պամփիղիա, յերրորդ ճառին որոց ի վերան Կոստանտի ըստ բանի զայս ասէ:

«Քանզի և ծննդեան համբերել որ ընդ մեզն Աս-
«տուած. վասն մեր էառ յանձն և տեղի նորա մարմնով

բոցն. Զի զայսոսիկ կրեաց զհայհոյութիւն յանուսումնութենէ [ա] և հպարտացեալ յեղելոցն. [բ] բերէ ի նա լեզութեան բանաւորութիւն. զի ճարտար էր [գ] քաջախօս. այլ և ոչ գիտութեամբ. քանզի ոչ գիտէր զմիտս գրոց մեկնել, և ոչ ուսանէր ի լեզուն վստահացեալ. քան զամենայն որք զինքն վեհագոյն կարծէր: Եւ անկաւ որոգայթ սատանայի անմիտն և վնասակարն. ընկղմելով զմարդիկ ի կորստեան վիհն: Եւ զի ոչ ուսաւ յառաքելոց [դ] և ի մարգարէից և ի սուրբ հարց առաջնոցն, այլ և ոչ զօրութեան [ե] տեղիացն Երուսաղէմի [զ] միտ առ՝ զծը-

ա. Ա՝ զհաճոյութիւնն. Ա՝ անուսումնութենէ. բ. Ա՝ բարուցն.
գ. Ա՝ առաքելոցն. դ. Գ. սրբութիւն. ե. Ա՝ յԵրուսաղէմի ի միտ էառ.

«ծննդեանն անուանի յԵբրայեցւոցն Բեթղեհէմ քաղա-
ւղիւր։ Վասն որոյ և Թագուհին Հեղինէ բարեպաշտու-
ւհի զծնունդ Աստուածածնին սքանչելապէս զարդարեաց
և ամենայնիւ զառաձայրն անտառն[ա] պայծառացուցանե-
լով»։

Որինչէն յառաջնում տոմին յորում առ Հաւանեա-
լոցին զառաքելոյն Թուղթ մեկնելով, թէ զխորհ Աս-
տուածածնին ասի ընդարձակապէս արտակարգեալ։ Արդ
արժէր երկեր Նեստորիոս ողիմացեալ զերրորդութեան
հնոցն՝ վասն որոյ որպէս սաստի զբանն միայն շրջադե-
րէ։ Զի նա ինչ սուտ մարդ զՔրիստոս ոչ ասէ, որպէս
Փոտինոս և Պաւղոս Սամոսատացի, և արտաքրեալ նո-
րա խաւարն ուսուցանեն. քանզի ոչ ուրեք զԱստու-
ծոյն Բանի էութիւն բառնայ, այլ ամենայն ուրեք էա-
կան և գոյական զնա խոստովանի։ Իսկ ոչ որպէս զՓո-
տինոս զՍամոսատացին բառնայ զնորա գոյութիւնն,
քանզի զայս և Մանիքեցիքն և որք ի Մոնտանայն աղան-

ա. Յունարէն բառն է τὸ ἄντρον այր։

Ննդեան և զանուանադրութեանն զոր աստուածասէր տուրք տիկինն Հեղինէ չինէր յանուն Աստուածածնին[ա] և զծննդեանն որ ի Բեթղեհէմ. (Եւ որ այլքն որ անուանցն[բ] զուշակումն ունին զխորհուրդ աստուածութեան իրս. որպէս մատուռն,[գ] և Սիոն, և Յարութիւն. և Գողգոթայն և որ այլքն են. Նոյնպէս և տուրք Աստուածածնի եկեղեցին զանունն ի վերայ ունելով որ ամենեցուն է քաղաքայտ մեծու սքանչելեօք պատուեալ ի տիեզերական եկեղեցւոյ)։ Զի այսպէս էր նա անդիտութեան օրինակ խառնափնդոր. ոչ ինքեանք գիտեն՝ զոր ասեն և ոչ այլոց կարեն տալ. որպէս Սամոսատացին Պօղոս, կամ որպէս Փոտինոս, այլ այլ իմն շփոթեալ խառն ի խուռն

ա. Ա՛ յաստուածածնին. բ. Ա՛ յանուանցն. գ. Ա. մատուռն.

գաւսրել յանդգնեցան։

Արդ այսպէս խորհել զՆեստոր գտանեմ ես, յորոց բանից նորա ընթերցայ, և յորոց համաւղքն նորա ասեն։ Բայց ոչ փոքր խռովութիւն շարժեաց աթենքերաց ցրտաբանութիւնն Նեստորի։

## ԳԼ. ԼԳ.

Եւ այսոցիկ եղելոց ի վերայ, պատահեաց անիրաւինչ գործ ըստ եկեղեցւոյն լինել։ Քանզի ծառայք միոյ մեծի ի զաւրավարացն, բարբարոս գոլով ազգաւ, անհաւանք եղեալ տեառն իւրեանց յեկեղեցին փախչէին. և սուրս զգեցեալք ի սուրբն սեղան վազէին, և աղաչեցեալք ելանելն ոչինչ աւրինակաւ հաւանէին, այլ խափանիչք աստուածայինցն պաշտաման լինէին։ Եւ զաւուրս բազումս զսուրսն մերկս ունելով, պատրաստք ի հատուցանել ամենայն մերձողի լինէին։ Եւ զմին ի ժառանգաւորացն սպանեալ և զմիւս ոմն վիրաւորել, յետոյ սպանին զինքեանս։ Եւ ոմն յորոց առ ընթերն, ոչ

շատախօսութեամբն և աղճատանօքն [ա] ոչ փոքր շարժեաց հերձուած կորստեան ամենայն աթենքերաց Նեստորիոսի։ Եւ եղև այսչափ պատահումն յեկեղեցւոջ նորա. ծառայք միում զօրավարին անհաւան լինեալ տեառն իւրոյ [բ] փախուցեալ յեկեղեցի.[գ] և հեռամուացն զհետ մտեալ խնդրէին զծառայն [դ] և ոչ տայր այլ և [ե] ոչ աղերսէր նոցա։ Եւ նոքա կային մնային դիպող ժամու և խնդրէին զայրագնեալք ի մեկնել [զ] բազմութեան ակն կալեալ, հարին և սպանին զծառայն, [է] և մի ի ժառանգաւորացն եկեղեցւոյն, [ը] որք ընդդիմացան։ Անէին ամենք ոչ բար-

ա. Ա՛ շատախօսութեամբն եւ աղճատանօք. բ. Ա՛ Գ. իւրեանց. գ. Ա՛ եկեղեցին. դ. Ա՛ զծառայսն. ե. Ա՛ չէր. զ. Ա՛ ի մեկնել. է. Ա՛ զծառայսն. ը. Ա՛ եկեղեցւոյ.

բարի, ասէր, նշանակեալ զշաղախումն տաճարին. զի առելոյ նախնւոյ ուրում բանաստեղծի երկուս բանս.[ա]

«Քանզի նշան այսպիսիս սիրէ լինել»

«Յորժամ ինչ ի տաճարս անկցի պղծութիւն:»

Եւ կարծեացն զոր ասաց ոչ մեղաւ. քանզի զորաշումն ժողովրդին, որպէս նմանեցաւ, նշանակեաց և զնզովս պատճառոյ որոշմանն:

## Գլ. ԺԴ.[1]

Քանզի ոչ զբազում ընդ մէջ ժամանակ, և որոց ամենայն ուստեք եպիսկոպոսանց հրաման Թագաւորական յԸփեսոս ժողովիլ ասէր:[2] Առ ժամայն ապա յետ

ա. δύο ἴαμβος երկու տող իամբոս չափական ոտանաւոր:

1 Տես կաս. ԺԲ. 5. Եւագր. Պատմ. Եկ. Ա. Զ. 3. 4. Լէօնտիոս, Յաղագս հերձուածոց. Դ. 4. Գործք. ժողովոյն Եփեսոսի. ԺԴ. 34.

2 Այդ հրամանը գրուած էր երկու կայսրների անունով փրկ. 43. Թ. Դեկտեմբ. 13-ն եւ կայ ժողովի գործերի մէջ:

ւոյ նշանակ է շաղախումն արեան ի տաճարի Աստուծոյ. իսկ այլ ոմն ողջախոհ ասէ. Նշանս է յորժամ ի տաճար Աստուծոյ պղծութիւն վերաբերի: Եւ ի կարծեացն զոր ասաց ոչ մեղաւ, քանզի զորոշումն ժողովրդեանն նշանակեաց, որպէս և նմանի և նզովս պատճառաց[ա] որոշմանց:

## Գլ. ՃԿԱ.

*Յաղագս ժողովոյն Եփեսոսի եւ ղասեցելոյն Նեստորի, եւ յաքսորիլն նորին ի Խուժաստան:*

Քանզի ոչ յետ բազում ժամանակի ընդ մէջ անցանելոյ[բ] ամենայն ուստեք լինի ժողով յԵփեսոս եպիսկոպոսաց ըստ հրամանի Թագաւորի, (վասն խնդրոյն[գ] այնորիկ որ վասն

ա. Գ. պատճառացն. բ. Ա՛ անցելոյ. գ. Ա՛ խնդրոյ.

Զատկի տաւնին Նեստորիոս հանդերձ բազում զաւրաւ-
ամբոխից հասանէր յԵփեսոս և գտանէր զբազումս յե-
պիսկոպոսացն ժողովեալս անդր։ Բայց Կիւրղի Աղէք-
սանդրի եպիսկոպոսին սակաւ ինչ յամեալ, ի Պենտէ-
կոստէն կոյս պատահէր, ի հինգերրորդում Պենտէ-
կոստէի աւուր. և Յուբնաղիոս[ա] Եւղմացեացն լինէր
եկեալ, և Յովհաննու յԱնտիոքայ յամեալն, եկեալքն
վերաշարժէին զխնդիրն։

Իսկ Կիւրեղ Աղէքսանդրւոյ ծայրարկութիւնս[բ] իմն
առնէր բանից զՆեստոր զիրարարեալ կամելով. վասն

ա. Ἰουβενάλιος
բ. ὁ ἀκροβολίσμος

Նեստորի սփռեցաւ ընդ աշխարհն ամենայն։ Եւ Նեստոր հա-
մոզէ զՅովհաննէս Անտիոքայ և այլս ևս ընդ իւր առնել.
զի առաւել կասկածէր ի Կիւրղէ Աղէքսանդրի յեպիսկոպոսէն.
և կարծիս տայ զնմանէ սղոսկեալ յԱպողինարի դիմումն
և ինքն խորամանկեալ Աստուածածին ասէ)։ Յայսոսիկ յետ
Զատկին Նեստոր բազում զօրօք և ամբոխիւ երթայ յԵփեսոս
և գտանէ բազում եպիսկոպոսս անդ. բայց Կիւրեղ յետ Պեն-
տէկոստէին և յետ հինգ աւուր գայ յԵփեսոս, և Յոբնաղ
Երուսաղէմի եպիսկոպոսովք ընդ նմա, և այլ բազում եպիս-
կոպոսունք էին. իսկ Յովհաննէս Անտիոքայ յամէ ըգալն իւր
առ նոսա անդ. Իսկ եկեալքն[ա] զիրարեալք ընդ միմեանս՝ շար-
ժէին զխնդիրն. և զի ցասմամբ էր Կիւրեղ ընդ Նեստորի,
(յաղագս նախանձու Քրիստոսի մարդկանալոյն. և վրէժխնդ-
րութեան սրբոյ Աստուածածնին Մարիամայ, զոր մարդածին
ասէր և զծնեալն առ[բ] ի նմանէ ի սոսկ մարդ փոխարկեալ, և
ըստ շնորհի որդեգրութեան արժանաւոր լեալ Որդի Աստուծոյ
անուանի և կոչի. և ոչ ասի Էմմանուէլ[գ] ըստ մարգարէու-
թեան Եսայեայ զառ ի կուսէն ծնեալն. և յոլով թուղթս գրէր

ա, Ա՝ եկեալք. բ. Ա՝ հիք. գ. Ա՝ եւ ոչ ասի եմ Մանուէլ.

զի և ցասմամբ էր առ Նա, նախանձելով ընդ Նմա վասն քաջախաւս լինելոյ Նորա և բարեպատասխանատու ի խաւսս իւրում և բազմաց։[a] Այս աստուածաբանելոյ զՅիսուս։ Եւ ասէ Նեստորիոս զեղեալս երկամենայ կամ երեքամենայ ոչ արդեւք Աստուած անուանեցից։ և վասն այսորիկ մաքուր եմ յարենէ ձերմէ, և յայսմ հետէ առ ձեզ ոչ եկից։ Եւ զայսոսիկ ասացեալ ընդ այլ եպիսկոպոսացն լինէր՝ որք Նորայնոցն հետևէին կամաց։

Այս բաժանէին որք մերձն յերկուս հատածս․ իսկ ոյոց Կիւրղին ատեան նստուցեալ կոչեցին զՆեստորիոս, իսկ Նա ոչ լուաւ, ի գալուստն Յովհաննու

ա․ Չկայ բնագրի մէջ, «Նախանձելով ․ ․ ․ եւ բազմաց․

իսկզբան մոլորութենէ Նորա ի բաց կալ և յանհանճար[a] աղանդիցն։ Իսկ Նեստոր ոչ ընդունի զԿիւրղի թուղթս ըստ անբարհաւաճութեան իւրոյ, և ի լեզուաշատութիւն վստահացեալ, և բազումս խորախորհար խօսս արարեալ առաջի ամենայն եպիսկոպոսացն, որ ճշմարիտ և որ սուտ, յափշտակելով զգովիչսն Աստուածաբանելոյ)։ Եւ զայս ևս ասէ Նեստոր, զծընեալն (ի Մարիամայ և կաթնասուն եղեալ․) երկամենայ կամ երեքամենայ, ոչ Աստուած անուանիցի, (այլ տաճար Աստուծոյ Բանին, որ էակից է Հօր և փառակից սուրբ Հոգւոյն)։ Վասն այսորիկ մաքուր եմ ես ի ձէնջ և այլ ևս առ ձեզ ոչ եկից։ Եւ զայս ասացեալ ընդ այնոսիկ որք իւրն էին եպիսկոպոսք։ Նոքօք հանդերձ բաժանի ի ժողովոյն որ ընդ Կիւրղի էին։ և ասացեալք ի ժողովին Նեստորի շարագրեցան առժամայն։ Իսկ որ ընդ Կիւրղի էին ժողովն, ատեան դրեալ քննեցին զՆեստորի արտագրեալսն բազում անգամ ընթեռնլով։ գտեցին զնա որպէս հայհոյիչ Որդւոյն Աստուծոյ Յիսուսի Քրիստոսի և

ա․ Ա՛ Գ․ անհանճար․

եպիսկոպոսին սպուժեալ. ա ասելով եթէ ոչ Նա եկեսցէ ոչ է մեծ ատեան ժողովոյդ. բ իսկ որոց Կիւրղին զբեմբա-սականան Նեստորի զոր վասն խնդրոյն ասէր, բազում անգամ ընթեռնլով, և ի նոցանէ դատելով, զնա որպէս հայհոյիչ յՈրդին Աստուծոյ ընկենուէին զնա: Այսորիկ եղելոյ, ուք Նեստորին այլ ատեան իւրեանց արարեալ, նզովէին զԿիւրեղ, և ընդ նմաւ զՄեմնոնէ գ Եփեսոսի եպիսկոպոս: Իսկ ընդ երկար ինչ եհաս և Յովհաննէս Անտիոքայ եպիսկոպոսն, և ծանուցաւ զեղեալսն. ցասնոյր առ Կիւրեղ, որպէս զի թէ պատճառ եղև հասելոյ խռովութեանն, առ ի ջերմ սրտիւ առնել զՆեստորի նզովսն: Իսկ Կիւրեղ հանդերձ Յոբնաղոսիւ

ա. Բն. աւել. ունի. τοῦ Ἀντιοχέως; Անտիոքայ:
բ չկայ բն. մէջ. «ասելով . . . ժողովոյդ.»:
գ Μέμνων

սուրբ ա Աստուածածնին Մարիամայ. Եւ բազում անգամ դարձեալ կոչէին զՆեստոր ի ժողովն և ոչ չոգաւ: Ասէ, չմեծարեմ զայդ ժողովդ, բ մինչև եկեսցէ Յովհաննէս Անտիոքայ գ հայրապետն. Իսկ սուրբ ժողովն որ ըստ Կիւրղի յետ բազում ընտրութեան նզովեալ, ընկենուն արտաքս զՆեստոր յեկեղեցւոյն Աստուծոյ. Իսկ ոչ ընդ երկար ինչ գայ Յովհաննէս Անտիոքայ հայրապետն, որ Նեստորին էր հրապուրեալ վասն Կիւրղի, որպէս ի նախանձուէ զնզովսն ասէր. դ Իսկ Յոհաննէս ցասնու ընդ Կիւրղի ի վերայ այնոցիկ եղելոցն, ե և ընդ Նեստորի զինքն կամեցեալ առնել անգիտացեալ զիրսն. (Յայնժամ լինի խռովութիւն ոչ սակաւ ի մէջ ժողովոյն, որ էին երեսուն եպիսկոպոսք. որք ըստ Նեստորի և Յոհաննու բաժանեցան ըստ արևելից կողմանցն. իսկ որք ըստ Կիւրղի էին աւելի քան զհարիւր և եօթանասուն, և անմիաբանք լեալք ծանուցին Թագա-

ա. Ա՛ սրբուհւոյ. բ. Ա՛ ժողովուրդ. գ. Ա՛ Գ. Ն. Անտիոքայ. դ. Ն ասէր. ե. Ա՛ եղելոց.

հատուցանէր Յովհաննու, նզովէր զնա։ Այսոցիկ այսպէս յայնժամ խառնակելոց՝ ծանուց(եալ)[ա] Նեստորի իչարն յառաջեալ զվիճաբանութիւնն, ի զղջմանէն Աստուածածին զՄարիամ կոչէր ասելով. աստացիր[բ] ասէ, և Աստուածածին Մարիամ և դադարեցին տրտմականքս։ Այլ ոչ ոք զնա ի զղջմանէ ասելով ընկալաւ, վասն որոյ և մինչև ցայժմ նզովեալ և արտասահմանեալ յՈասին[գ] բնակէր։

Բայց որ յայնժամ եղեալն ժողով այսպիսի վաղճան ընդունէր։ Եւ լինէր այս ի հիւպատուոջն Բասսոսի

ա. Ձեռ. ունի. «ծանուց»
բ. բ. Ձեռ. ունի. «ասացի»
գ. Ὄασις

ւորին. որպէս ունի յաղագս այնորիկ անդուստ յիշատակարան նոցա։ Իսկ Թագաւորին ժողովեալ զժառանգաւորս եկեղեցւոյն, և հարցանէ[ա] վասն վարդապետութեան նորա։ Ծանեաւ զմոլորութիւն նորա չարութեան, և առաքէ ի ժողովն ոչ արժանի հարկանել զՆեստոր աթոռոյն և ընդունելութեան, այլ և ուխտ եկեղեցւոյն գրեն ի ժողովն զնորա հայհոյիչ խոստովանութիւնն և նզովեն զՆեստոր։ Եւ հասեալք այսոքիկ թուղթք ի Թագաւորէն և ի ժառանգաւորաց եկեղեցւոյն, և գործեալ քննութիւն առնեն Նեստորի արտագրութեանն և ժառանգաւորաց եկեղեցւոյն և Թագաւորին։

Եւ ամենեքեան արժանի դատեցան նզովելոյ և որոշելոյ յեկեղեցւոյ Աստուծոյ։) Ծանուցեալ Նեստորի զչարն յառաջեալ ի վերայ իւր ի վիճաբանութենէն պագարէ. և որպէս ի զղջման եղեալ ցուցանէ զինքն և ասէ ցրտաբանութեամբ. Ահա աստացիր և Աստուածածնին զՄարիամ և դադարեցին տրտմականք և խռովութիւնք[բ] ի ժողովոյդ։ Այլ ոչ ընկալեալ եղև

ա. Աʼ Գ. հարցանել. բ. Գ. խռովեալք.

և Անտիոքայ, ԻԲ Յունիս ամսոյ։ [1] Իսկ Յովհաննու հասեալ յԱնտիոքայ և բազում ժողովեալ եպիսկոպոսունս Նզովէր զԿիւրիղոս, անդէն հասեալ յԱղէքսանդրեայ։ Իսկ յետ փոքր իրի լուծեալք զթշնամութիւնն, հանդիպեցան ի հաշտութիւն և միմեանց ետուն զաթոռսն։ Իսկ յետ Նեստորի Նզովիցն դժնդակ խռովութիւն ի Կոստանդնուպաւղիս ըստ եկեղեցեացն լինէր։ Քանզի խորշեցաւ ժողովուրդն, որպէս հասեալն ասացի, վասն ցըրտաքանութեան նորա։ Եւ միաբան ընտրութեամբ ամենայն ժառանգաւորքն զլով զնա Նզովեցին. քանզի այսպէս քրիստոնէք կոչել սովորեցաք զընդդէմ հայհոյչին հարարի, յորժամ զայնոցիկ որպէս յարձանի հաստատելով յայտնի ամենեցուն կարգեսցուք։

ԳԼ. ԼԵ.[2]

Իսկ դարձեալ վասն ընտրութեան եպիսկոպոսի խնդիր լինէր. և բազումք զՓիլիպոս զոր անդէն յիշե-

1 Փրկ. 431. Թ.
2 Տես Կաս. ԺԲ. 7. Նիկ. ԺԴ. 37.

ի ժողովոյն որպէս զճշմարիտ զղջումն. այլ միաբանեալք եպիսկոպոսք (երկերիւր) Նզովեցին զՆեստոր և արտաքսասահմանեցին ի հեռաբնակ Օվասին ի յաքսորս (ի Խուժաստան)։

ԳԼ. ՃԿԲ.

**Որ է որպէս յաջորդելոյն Նեստորի Մաքսիմիանոս կալնու զաթոռն Կոստանդնուպօլսոյ՝ եւ վասն Պրոկղի եւ Գրիգորի Աստուածաբանի եւ Սուզիանոսի բանք։ Եւ վախճանի Մաքսիմիանոս կացեալ եպիսկոպոսութեան ամս երեք։**

Եւ յետ այսորիկ լինի սիրելութիւն առաւել Կիւրղի և Յովհաննու։ Եւ լինի վասն հայրապետութեան ընտրութիւն ի մէջ Պրոկղի և Փիլիպպոսի. և բազում վիճումն լինէր յե-

ցի՝ [ա] կամէին, իսկ բազումք զՊրաւկղ ընտրէին։ Նա
զաւրացաւ որ վասն Պրաւկղի բանն, եթէ ոչ ոմանց
ի մեծամեծս զաւրելոցն էր արգելեալ. ասացեալ կանոնն[1]
ի եկեղեցւոյն արգելուլ զանուանեալն ուրուք քաղաքի
եպիսկոպոս յայլ փոխեալ քաղաք։ Այս ճառեալ և հա-
ւատալի եղեալ ձեռնարկէր, զժողովուրդ լռեալ հարկա-
ւորեաց։ Իսկ չորեքամսեա անցելոյ ժամանակի յետ Նես-
տորի նզովիցն, ձեռնադրիւր առ եպիսկոպոսութիւնն
Մաքսիմոս անուամբ. այր ճգնաւոր վարուք ի քահա-
նայսն և սա էր կարգեալ։ Սա զպատիւ երկիւղածու-
թեանն ստանայր յառաջ. վասն որոյ ընտանի ծախուք
կազմէր գերեզմանս և տապանս, որպէս զի ի նոսա թա-
ղեալ զերկիւղածսն վաղճանեալս. էր և ոգէտ բանիւ և
անհոգագոյն կեալ յաւժարեալ։

## ԳԼ. ԺԶ.[2]

Բայց զի ոմանք ասացեալ եկեղեցական կանոնի
արգելուլ զՊրաւկղ ի նստուցանելոյ յաթոռ թերիւս [բ]
Կիւզիկոնի անուանեալ եպիսկոպոս, կամիմ վասն այսո-

ա. յիշեցաք.
բ. արդէն.

1 Կան. Առաք. ԺԵ. ԺԹ.
2 Տես Կաս. ԺԲ. 7. Նիկեփ. ԺԴ. 37.

կեղեցւոջն Կոստանդնուպոլսի։ Եւ անմիաբանք լեալք Մաքսի-
միանոս ումն քահանայ ճգնաւոր կարգեալ յեկեղեցւոջն, նա
կոչի ի հայրապետութիւն փոխանորդեալ զՆեստորի աթոռն։ Սա
երևեալ երկիւղած յառաջ իսկ, որ և իւր ընչիւք կազմէր ըզ-
գերեզմանս երկիւղածայն Աստուծոյ, զյառաջագոյն վախճա-
նելոցն։ Եւ էր ողջախոհ և սուրբ բայց ագէտ էր բանիւ, և անհա-
գութեամբ յօժարէր զկեանս իւր յարգարել ըստ ամենայն

քիկ սուղ ինչ ասել: Ոչ թուի ինձ զճշմարտիլ որք զայս յայնժամ ասել ձեռնարկեալքն, այլ կամ ասել նախանձուն ու առ Պրոկղ, և կամ տգիտանալ և կանոնացն զօրս բազում անգամ պիտաւորութեամբ յեկեղեցիսն եղեալս: Քանզի Եւսեբիոս Պամփիլեայ ի վեցերորդում եկեղեցական պատմութեանն զԱղէքսանդրոս միոյ ի քաղաքացն Կապադովկիոյ եպիսկոպոս եղեալ, աղօթից աղագաւ յԵրուսաղէմ երթեալ, ընդունել յԵրուսաղէմացեացն ասէ, և ի տեղւոջն Նարկեսոսի նստել, և այնուհետև ի ձեռն վարուց եկեղեցւոյն առաջնորդ լինել:

Արդ այսպէս նախնեացն մերոց անընտրելի էր քաղաքէ ի քաղաք փոխել եպիսկոպոս, որքան անգամ պէտքըն հրամայէին ի բարեգործութիւն եկեղեցւոյն.[ա] իսկ թէ պարտ է և զօրս վասն այսորիկ կանոնն շարալծել, զրով ցուցից թէ զիարդ ստեցին որք յայնժամ զՊրոկղի ձեռն նստուցանելոյ յաթոռն արգելլին: Եւ է կանոնն այս:

«Եւ կանոն իմն, եթէ ոք եպիսկոպոս ձեռնադրել ի «պանդխտութիւն ոչ երթիցէ յոր ձեռնադրեցաւն, ոչ առ«ընքեանն պատճառ, այլ կամ վասն ժողովրդին հրաժար-

ա. Թն. չկայ «ի բարեգործութիւն եկեղեցւոյն»:

իրաց. (Եւ յետ այսորիկ ժողովն ցրուեցան յիւրաքանչիւր[ա] տեղիս.) Եւ Պրոկղ վասն այսր[բ] պատճառի խափանի ի հայրապետութենէ Կ. Պօլսի. զի ասէին թէ յայլմ[գ] եկեղեցւոյ փոփոխել ոչ է արժան որ ոչ յանուն նորա կոչեցաւ ի ձեռնադրութիւն. Այլ ես ասեմ և զԳրիգոր Աստուածաբանն յայլ եկեղեցիս կոչել յայլ փոփոխեցին վասն օգտի եկեղեցեացն Աստուծոյ, որպէս յայտնի է.

ա. Ա՝ իւրաքանչիւրս. բ. Ա՝ այս. գ. Գ. այլոց.

